# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1758 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՅՈՒՆՈՒԱՐ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. عدد رقم ١٧٥٨ الخميس ١٤ يناير ٢٠١٦


## ԻՆՉՈՒ Է ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ԿՈՐԾԱՆԻՉՆԵՐ ԲԵՐՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆ

**ՆԱԻՐԱ ՀԱՅՐՈՒՄԵԱՆ**

Lragir.am, 6 Յունուար 2016

Հայաստանը ռուսական բազայի վերածելու գործընթացը մօտենում է աւարտին:

Ռուսական լրատուամիջոցները, յղում անելով Հարաւային ռազմական օկրուգի մամուլի ծառայութեանը, տեղեկացնում են, որ Էրեբունիի ռուսական աւիացիոն բազան 2016 թուականի երկրորդ կէսին կը համալրուի ՄԻԳ-29 կործանիչների նոր խմբաքանակով:


Նաիրա Հայրումեան

Աղբիւրները պնդում են, որ այդ ինքնաթիռների մեծ մասը վաղուց բարոյապէս ու տեխնիկապէս մաշուել են եւ հիմա դրանք վերանորոգում են: Ինքնաթիռների մի մասը միջուկային զէնք կրելու հնարաւորութիւն ունի, իսկ միւս մասը, յատկապէս արտահանման համար արտադրուածները, ոչ մի հնարաւորութիւն չունեն: Հաղորդագրութիւնում նշուած չէ, թէ որ ինքնաթիռներն են Հայաստան բերուելու: Նշուած է միայն, որ դրանք պաշտպանելու են «ԱՊՀ սահմանները»:

Դեկտեմբերի 31-ին Վլադիմիր Պուտինը ստորագրել է Ռուսաստանի ազգային անվտանգութեան թարմացուած ռազմավարութիւնը: Ըստ դրա, Ռուսաստանը մտադիր է իր տեղը զբաղեցնել «բազմակենտրոն դարձող» աշխարհում: Այսինքն, Մոսկուան ընդունում է, որ աշխարհը միաբեւեռ է, եւ այդ միակ բեւեռը Ռուսաստանը չէ:

Միեւնոյն ժամանակ, Մոսկուան սպառնալիք է համարում ՆԱՏՕ-ի ընդլայնումը դէպի Արեւելք եւ եւրասիական տարածութիւնում ինտեգրացիային խոչընդոտելու «որոշ երկրների» փորձերը: Այլ կերպ ասած, Մոսկուան յայտարարում է, որ ցանկանում է բեւեռ դառնալ ու ինտեգրել «իր» տարածաշրջանը:

Փաստացի, Հայաստանում ռուսական բազա բերուող ինքնաթիռները դիմադրելու են «եւրասիական ինտեգրացիային խանգարելու փորձերին» ու օգնելու են Ռուսաստանին ամրապնդուել տարածաշրջանում: Այդ ինքնաթիռները խոչընդոտելու են Հայաստանում անվտանգութեան այլ երաշխիքների յայտնուելուն, որոնք կարող է առաջարկել գլխաւոր «բեւեռը», այսինքն՝ ԱՄՆ-ը եւ ՆԱՏՕ-ն:

Ամբողջ հարցն այն է, թէ որքան երկար է «գլխաւոր բեւեռը» շարունակելու առաջարկել: Անցեալ տարուայ Յուլիսին Հայաստանի պաշտպանութեան փոխնախարար Դաւիթ Տոնոյեանը մեկնել է ԱՄՆ, որտեղ հանդիպել է Պետդեպի ու Պենտագոնի բարձրաստիճան պաշտօնեաների: Նրանք խօսել են ռազմական համագործակցութեան ինչ որ նոր ծրագրերի մասին:

Մինչ Տոնոյեանը Վաշինգտոնում էր, անսպասելի Երեւան էր ժամանել Ռուսաստանի Գլխաւոր Հետախուզական Վարչութեան պետ Իգոր Սերգունը: Նրա այցից ու Տոնոյեանի վերադարձից յետոյ պաշտպանութեան ոլորտում Հայաստանի ու ԱՄՆ-ի համագործակցութեան մասին չի խօսուել:

Երկու օր առաջ յայտնի դարձաւ Սերգունի մահուան մասին, սակայն Ռուսաստանը հազիւ թէ մտադիր է փոխել քաղաքականութիւնը Հայաստանում: Այն ինքնաթիռներ է ուղարկում, որոնք պէտք է պաշտպանեն ոչ թէ Հայաստանի, այլ տխրահռչակ ԱՊՀ-ի սահմանները, որի կազմում է նաեւ Ադրբեջանը:

Հայաստանը վերջնականապէս ռուսական բազայի է վերածւում, իսկ Հայաստանի ղեկավարութեանը նոյնիսկ չեն հարցնում, թէ ինչ զէնք է բերւում Հայաստանում եւ ինչպէս կարող է այն ազդել երկրի պաշտպանունակութեան վրայ: Հարցնում են Վրաստանին ու Իրանին, որոնց տարածքով այդ զէնքը տեղ է հասցուելու:

(http://www.lragir.am/index/arm/0/comments/view/125884)

**ԹՈՒՐՔԻԱ**

## ԹՈՒՐՔԻՈՅ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԵՆԹԱՐԿՈՒԱԾՆԵՐՈՒ ՇԱՌԱՒԻՂՆԵՐՈՒՆ ՔԱՂԱՔԱՑԻՈՒԹԻՒՆ ՇՆՈՐՀԵԼՈՒ ՕՐԻՆԱԳԻԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԱԾ Է

*7 Յունուար 2016, Գանձասար – Էրմենի Հապէր կը հաղորդէ, որ Թուրքիոյ գլխաւոր ընդդիմադիր Ժողովուրդի Հանրապետական Կուսակցութեան խորհրդարանական խմբակցութեան փոխնախագահ Սէզկին Թանրըքուլու Թուրքիոյ խորհրդարան ներկայացուցած է օրինագիծ մը, որմով կը նախատեսուի Թուրքիոյ քաղաքացիութիւն տրամադրել 1914 թուականէն բռնագաղթի ենթարկուածներուն, ինչպէս նաեւ այս կամ այն պատճառով քաղաքացիութենէ զրկուածներու սերունդներուն:*

*Ըստ Թրքական Հապէր Էքչուըլ լրատուական կայքին, օրինագիծի ընդունման պարագային քաղաքացիութիւն պէտք է տրամադրուի ցեղասպանութեան ընթացքին հայրենազրկուած եւ ցարդ ողջ մնացած հայերուն, յոյներուն եւ ասորիներուն եւ անոնց շառաւիղներուն՝ մինչեւ 4-րդ սերունդ: Օրինագիծին համաձայն՝ Թուրքիոյ Հանրապետութեան քաղաքացիութիւն պիտի տրամադրուի կոտորածներու եւ բռնագաղթի օրերուն Թուրքիոյ տարածքին մէջ բնակածներուն:*

*Օրինագիծը կ'ընդգրկէ նաեւ 1955-ի Սեպտեմբեր 6-7-ին Պոլսոյ մէջ կազմակերպուած կոտորածներէն տուժած հայերը, յոյները եւ հրեաները, ինչպէս նաեւ անոնց սերունդները:*

*Օրինագիծի օրէնքի վերածուելու պարագային Հայոց Ցեղասպանութենէն փրկուածներն ու անոնց սերունդները, ինչպէս նաեւ կոտորածներէն տուժած յոյները, ասորիներն ու հրեաները Թուրքիոյ քաղաքացիութիւն ստանալու նպատակով կրնան դիմում ներկայացնել որոշ փաստաթուղթեր ունենալու պարագային, ինչպէս՝ տուեալ ժամանակուայ անձնագիր, եկեղեցական արձանագրութիւններ, Օսմանեան կայսրութեան փաստաթուղթեր եւայլն:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## 2015-ի 11 ԱՄՍՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԸ $40 ՄԻԼԻՈՆԻ ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹԻՒՆ Է ՍՏԱՑԵԼ

*9 Յունուար 2016 –PanARMENIAN.Net – Ֆինանսների նախարարութեան կողմից տրամադրած բեռնամաքսային յայտարարագրերի տուեալների համաձայն, 2015-ի Յունուար-Նոյեմբերին մարդասիրական օգնութեան կարգով ՀՀ է ներմուծուել 4 միլիոն 525 հազար տոննա ապրանք:*

*Ազգային վիճակագրական ծառայութեան հրապարակած տուեալների համաձայն, դրա արժէքը կազմել է 19.1 միլիարդ դրամ կամ 40 միլիոն դոլար:*

*Ստացուած օգնութեան 45.3%-ը կազմել է քիմիայի եւ դրա հետ կապուած արդիւնաբերութեան ճիւղերի արտադրանքը, 12.3%-ը՝ սարքեր եւ ապարատները, 7.5%-ը՝ մանածագործական իրերը, 7.5%-ը՝ տարբեր արդիւնաբերական ապրանքները, 7.5%-ը՝ մեքենաներ, սարքաւորումներ եւ մեխանիզմները, 3.5%-ը՝* 2

## ՆԱՒԹԻ ԳԻՆԸ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ԴՐԱՄԱՆ

*epress.am – Օրերս նաւթի միջազգային գները 12 տարուայ հակառեկորդ սահմանեցին՝ կայուն կերպով հաստատուելով մէկ բարէլը 30 դոլարի սահմաններում: Նաւթի գինն այդքան ցածր չէր եղել 2004 թուականից, իսկ 2011-ից 2013 թուականներին դրա գինը բաւականին կայուն էր՝ 110 դոլարի շրջակայքում: Այս մասին «2016-ի նաւթի գինի կանխատեսումն ու ՀՀ տնտեսութեան դրաման» յօդուածում գրում է «Իրազեկ քաղաքացիների միաւորում» հասարակական կազմակերպութեան փորձագէտ, լրագրող Հրայր Մանուկեանը:*

*Նա ընդգծում է, որ վերջին տարիներին բաւական զարգացել է թերթաքարային նաւթի արդիւնահանումը, ԱՄՆ-ն երկար տարիների դադարից յետոյ թոյլատրեց նաւթի արտահանումը, իսկ Չինաստանի տնտեսական աճը դանդաղեց, ինչը յանգեցրեց նաւթի պահանջարկի անկմանը: Արդիւնքում նաւթի պահանջարկը նուազեց, իսկ առաջարկը էականօրէն աճեց, ինչը յանգեցրեց արժեզրկմանը:*

*Յօդուածում Մանուկեանը նշում է, թէ ինչպիսին կը լինի իրավիճակը նաւթի գնի հետ կապուած եւ ինչպէս է նաւթի գնի անկումն ազդելու Հայաստանի տնտեսութեան վրայ 2016-ին:*

**Նաւթի գնի կանխատեսումներ 2016-ի համար**

*Աշխարհի տարբեր երկրներ ու կազմակերպութիւններ 2016 թուականի համար տալիս են տարբեր կանխատեսումներ: Այսպիսով, Իրանի պետական բիւջէում նաւթի միջին հաշուարկային գինը 40 դոլար է, Սաուդեան Արաբիայում՝ 29, իսկ Նորվեգիայում գնահատւում է 16 դոլար բարէլի դիմաց: Ռուսական «Սբերբանկը» արդէն պատրաստւում է 25 դոլար գնին, իսկ հեղինակաւոր «Բլումբերգը» հնարաւոր է համարում նաեւ մէկ բարէլի դիմաց 20 դոլար արժէքը:*

*Միեւնոյն ժամանակ Ռուսաստանի 2016 թուականի պետական բիւջէում նաւթի գինն ամրագրուել էր 50 դոլարի մակարդակում: Այդ երկրի բիւջետային մուտքերի կէսից աւելին ապահովւում է նաւթագազային եկամուտներով, հետեւապէս նաւթի գնի անկումը էական հարուած է հասցնելու երկրի թէ՛ բիւջէին, թէ՛ տնտեսութեանը:*

*Բանն այն է, որ Ռուսաստանում նաւթի արտահանման միջին ինքնարժէքը 35-ից 37 դոլար է եւ 30 դոլար սակագինը վնասաբեր է: Նաւթային այս նոր իրականութեան մէջ Ռուսաստանի պետական բիւջէն շուրջ 10 տոկոսով թերակատարում է ունենալու: Զարմանալի չէ, որ այդ երկրում արդէն ակտիւօրէն քննարկւում է տարին դեռ չսկսած բիւջէն սեկվեստրի ենթարկելու հարցը:*

**Ազդեցութիւնը Հայաստանի վրայ**

*Թւում է թէ Հայաստանը, լինելով էներգետիկ ռեսուրսներ ներմուծող երկիր, պէտք է շահէր նաւթի գնի նուազումից, բայց Ռուսաստանի տնտեսութիւնից չափազանց մեծ կախուածութեան պատճառով մեր տնտեսութիւնում սպասւում են տրանսֆերտների, արտահանման ու ներդրումների էլ աւելի մեծ ծաւալի կրճատումներ:*

*2015-ի Դեկտեմբեր ամսուայ տուեալները դեռ ամփոփուած չեն, սակայն ըստ Յունուար-Նոյեմբերի ցուցանիշների՝ տրանսֆերտների նուազումը կազմել է 37.2%: Ակնյայտ է, որ ռուբլու վերջին արժեզրկումից յետոյ Ռուսաստանում աշխատող մեր հայրենակիցների* 2

# ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ՝ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԲԱՆԱՍԷՐԸ(1)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Տիգրան Գէորգեանի անունը չես գտներ Համացանցի մէջ: Ան մրցանակներ չէ ստացած եւ ոչ ալ պիտի ստանայ: Իր գրական գործունէութեան յիսնամեակը կամ վաթսունամեակը չէ տօնակատարուած: Նախագահական եւ նախարարական «գիտական» համագումարներու չէ հրաւիրուած: Պիտի ըսէի ու նոյնիսկ պնդէի՝ որ գիտելիքի չուկայացումի այս դարաշրջանին, բարեբախտութիւն մըն է գտնուիլ այս կացութեան մէջ, բարեբախտութիւն մըն է կարողանալ գիտելիքը ներկայացնել իբրեւ այդպիսին, պահպանել գիտելիքի ներքնականութիւնը, գիտելիքը չդարձնել տիտղոսի, չքանչանի կամ ուրիշ արտաքին դրդումի ածանցեալ ենթական:




Ծնած է Գահիրէ, 1936 Յունուար 6-ին: Նախնական կրթութիւնը ստացած է Գալուստեան Ազգային Վարժարանին մէջ: 1951-1955-ին ուսանած է Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան վարժարանին մէջ, ուսուցիչ ունենալով Մեսրոպ Ճանաչեան եւ Եղիա Փէչիկեան: 1957-1959-ին եղած է *Արեւ* օրաթերթի օգնական խմբագիր: 1972-1973-ին տասնամսեայ սթաժէօրական շրջան մը բոլորած է Երեւանի Համալսարանի բանասիրական բաժանմունքին մէջ, ղեկավար ունենալով Արամ Բարայեան: 1960-1978-ին Գալուստեան Ազգային Վարժարանին, եւ ապա 1978-1996-ին Նուպարեան Ազգային Վարժարանին մէջ(2) դասաւանդած է հայերէն լեզու եւ գրականութիւն(3): 1999-2002-ին եղած է *Տեղեկատուի* պատասխանատու խմբագիրը:

Յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ ստորագրած է *Արեւ* (Գահիրէ), *Յուսաբեր* (Գահիրէ), *Ջահակիր* (Գահիրէ), *Տեղեկատու* (Գահիրէ), *Արաքս* (Աղեքսանդրիա), *Բազմավէպ* (Վենետիկ), *Մխիթարեան ընտանիք* (Վենետիկ), *Հայ արուեստ* (Լոս Անճելըս), *Հայկազեան հայագիտական հանդէս* (Պէյրութ) լրագիրներուն եւ հանդէսներուն մէջ: Տուած է բազմաթիւ բանախօսութիւններ:

Դանդաղ, ծանրակշիռ գրող մըն էր ան: Իւրաքանչիւր բառը հաւասարակշռուած էր, մտածուած ու բխած բովանդակութենէն:

Թռուցիկ ակնարկ մը կրնայ գաղափար մը տալ իր բանասիրական նախասիրութիւններուն մասին:

1969-1970-ին *Արեւի* մէջ հրատարակած է եգիպտահայ մամուլի առաջին լուրջ մատենագիտութիւնը(4):

1970-ին, *Արեւի* 40 յաջորդական համարներու մէջ լոյս տեսած է հայ գրականութեան թարգմանութեան մատենագիտութեան առաջին մասը(5): Մնացած մասերը մնացած են անտիպ:

1978-ին՝ երկու յօդուածաշար *Արեւ*ին մէջ, առաջինը կը պատմագրէ եգիպտահայ իգական մշակութային միութիւններու ծնունդն ու կատարած դերը մինչեւ 1917 եւ Աղեքսանդրիոյ «Հայուհեաց Գրասէր եւ Գեղարուեստասէր Միութեան» հրատարակած *Արաքս* կիսամսեայ հանդէսին առաջին համարը՝ լոյս տեսած 1916 Օգոստոսին(6), երկրորդը կը ներկայացնէ ԺԴ. դարու տեսաբան եւ քերական Յովհաննէս Քռնեցին եւ հայ քերականական գիտութեան մասին տուեալներ(7):

1980-ին, *Արեւ* կը հրատարակէ Կոկանեան Սրահին մէջ իր տուած բանախօսութիւնը ԺԸ. դարու կրօնական շարժումներուն եւ Կոլոտ Պատրիարքի գործունէութեան մասին, հեղինակին բառերով՝ «պատմական շրջագայութիւն մը… մեր իմացականութեան երբեմնի դարբնոցներուն շուրջ»(8):

Դարձեալ Կոկանեան Սրահի բանախօսութիւն մըն է՝ որ 1980-ին կը հրատարակուի *Արեւի* մէջ, նուիրուած ԺԹ.-Ի. դարերու հայ ազատագրական պայքարին(9):

Նոյն տարին, *Արեւի* մէջ լոյս կ'ընծայէ օտար հեղինակներու մատենագիտութիւն մը Մեծ Եղեռնի մասին(10), իբր շարունակութիւն նոյն լրագիրին մէջ Աւետիս Եափուճեանի ուսումնասիրութեան՝ «Մեծ Եղեռնը օտար մտաւորականութեան գնահատումով»: Ասիկա հիմք կը ծառայէ 15 տարի ետք հրատարակած հայկական կոտորածներու ընդհանուր մատենագիտութեան (տե՛ս ստորեւ):

1981-ին, *Արեւի* մէջ կը կարդանք Կոկանեան Սրահի բանախօսութիւնը՝ խորհրդահայ գրականութեան հիմնահոսանքային ուղղութիւններուն մասին(11):

1981-ին լոյս կ'ընծայէ ՀԲԸ-Միութեան ամփոփ պատմութիւնը(12):

1982-ին՝ հայ ձեռագիր պարբերականներու ուսումնասիրութիւն մը *Արեւ*ին մէջ(13):

1990-ին իր խմբագրութեամբ կը հրապարակէ Միքայէլ Նաթանեանի արժէքաւոր ձեռագիրը՝ Արմենական Կուսակցութեան նուիրուած յիշողութիւններու, անձնական փորձառութիւններու եւ փաստագրութիւններու ամբողջ շտեմարան մը(14):




Ինչպէս իր ներածականին մէջ կը գրէ՝ «Միքայէլ Նաթանեանի 121 մեքենագրեալ էջէ բաղկացած այս իւրօրինակ ժամանակագրութիւնը՝ որ կ'ընդգրկէ ազգային-ազատագրական շարժումներու եւ հասարակական կեանքի ամենաբարդ ժամանակահատուածներէն մէկը, ԺԹ. դարու 80-ական թուականներէն մինչեւ Ի. դարու առաջին տասնամեակը, շարադրուած է դէպքերուն վերյիշումով եւ ժամանակի իրադարձութիւններուն մէջ գործօն դեր կատարած անձնաւորութեան մը դրոշմով:»(15)




Գէորգեան 300 էջէ բաղկացած «փորձ» մը կատարած է կազմելու հայկական աղէտին եւ ցեղասպանութեան նուիրուած մատենագիտութիւն մը: Ան իր տեսակին մէջ առաջինն է եւ արդիւնքն է երկարատեւ հետախուզական աշխատանքի, չհաշուելով տպագրութեան հետ կապուած անտեղի ձգձգումները մինչեւ 1995(16): Հատորը բաղկացած է երեք գլուխէ: Առաջին գլուխը՝ «Մատենագիտական փորձ «Հայկական հարց»-ի եւ հայկական կոտորածներու մասին», կը բովանդակէ հայերէն աղբիւրները (1332 անուն գիրք եւ յօդուած): Երկրորդը՝ 'The Armenian Question and the Genocide of Armenians in Turkey: An Essay of Bibliography (of European Materials)', յատկացուած է անգլերէն, ֆրանսերէն, գերմաներէն, իտալերէն եւ թրքերէն աղբիւրներուն (1132 անուն գիրք եւ յօդուած): Այս երկու գլուխները կազմած ու պատրաստած է Տիգրան Գէորգեան: Երրորդ գլուխը՝ «Հայկական հարցը եւ հայերի ցեղասպանութիւնը Թուրքիայում», նուիրուած է ռուսերէն աղբիւրներուն (662 անուն գիրք եւ յօդուած): Կազմողն է Յակոբ Անասեան:




Հայ Կաթողիկէ համայնքները յաճախ անտեսուած են հայ մեծամասնական լուսաւորչականներուն կողմէ: Կարելի է ըսել, անոնք կը կազմեն հիմնահոսանքային հայութեան բազում Այլերէն մէկը: Եգիպտահայ Կաթողիկէ համայնքին մասին մանրամասն ու համակողմանի հետազօտութիւն մըն է 2001-ին լոյս ընծայած գիրքը(17), որ կարեւոր բաց մը կը լրացնէ հայութեան անտեսուած այս համայնքին մասին:

2003-ին, *Հայկազեան հայագիտական հանդէսին* մէջ կը կարդանք երկարաշունչ ուսումնասիրութիւն մը՝ Արփիարեանի դէմ կատարուած մահափորձերուն շուրջ(18):

Աւետիս Եափուճեան 1981-ին կը հաղորդէ, որ Գէորգեան ունի անտիպ աշխատութիւն մը՝ *Հայ գրականութեան ժամանակագրական համայնապատկեր*(19): Ես անձամբ ուսանողական տարիներուս տեսած եմ անոր ձեռագիրը, զայն յատուկ ինծի ցոյց տալու համար բերած էր դպրոց: Մինչեւ այսօր ան կը մնայ անտիպ:

Բացի այդ, մամուլի մէջ հրատարակած յօդուածները կը մնան ցրուած (վերոյիշեալ նմոյշները լոկ փոքր մաս մըն են իր ցրուած յօդուածներուն): ↳ 3

ԳԱՀԻՐԷ

## ՅԱՐՈՒԹ ՖԱԶԼԵԱՆ ԿԸ ՎԱՐԷ ԳԱՀԻՐԷԻ ՍԻՄՖՈՆԻՔ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԸ ԿԸ ԿԱՏԱՐՈՒԻ ՀՐԱՆԴ ՔԷՇԻՇԵԱՆԻ ԳՈՐԾԸ


*Յարութ Ֆազլեան*

Յունուար 9-ին՝ Օփերայի մեծ սրահին մէջ տեղի ունեցող Գահիրէի Սիմֆոնիք Նուագախումբի շաբաթօրեայ հերթական նուագահանդէսին, հրաւիրուած էր ելոյթ ունենալու Երեւանի Կոմիտաս Երաժշտանոցի շրջանաւարտ, Լիբանանի Ֆիլհարմոնիք Նուագախումբի գեղարուեստական ղեկավար եւ գլխաւոր նուագավար Յարութ Ֆազլեան:Նուագահանդէսը կը կրէր *Հայկական բուրմունք* (Armenian Flair) խորագիրը:

Յայտագիրի առաջին մասը հնչեց եգիպտահայ երաժշտահան Հրանդ Քէշիշեանի (ծն. 1947) *Անիս Ալ-Ճալիս* թատերապարի (ballet) նախերգանքը (աշխարհի առաջնեկ կատարում) եւ Սէն-Սանսի դաշնակի հինգերորդ քոնչերթօն՝ *Եգիպտական* (դաշնակահար՝ Սիմոն Ղրայչի): Երկրորդ մասը Ֆազլեան նուիրած էր Արամ Խաչատրեանի թատերապարերուն՝ *Սպարտակէն* երկու պար («Էգինայի փոփոխակները եւ պաքանալիա» եւ «Սպարտակի եւ Ֆրիգիայի Ատաճիօն») եւ *Գայեանէ Նուագաշարը* («Սուրերով պար», «Վարդագոյն աղջիկներու պարը», «Աիշայի պարը», «Օրօր» եւ «Լեզկինքա»):

## ՆԱՒԹԻ ԳԻՆԸ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ԴՐԱՄԱՆ

1 ↳

*աշխատած գումարները դոլարի վերածելիս աւելի քիչ կը լինեն, ինչը նշանակում է առաջիկայ ամիսների համար տրանսֆերտների կրճատման աւելի մեծ թիւ:*

*2015-ի Յունուար-Նոյեմբերին Հայաստանից Ռուսաստան արտահանումը նուազել է 28.1%-ով, իսկ Յունուար-Սեպտեմբերին ռուսական ուղղակի ներդրումները նուազել են 70%-ով: Նուազման այս չափերը եւս կը մեծանան առաջիկայ ամիսներին:*

*Ռուսաստանի տնտեսութեան քայքայումից, իհարկէ, միայն Հայաստանը չէ, որ տուժում է: Միջինասիական երկրները, Վրաստանն ու Մոլդովան եւս տուժում են: Սակայն, եթէ միջինասիական երկրները առանձնապէս այլընտրանք չունէին՝ իրենց տնտեսութիւնը ըստ երկրների դիւերսիֆիկացնելու, ապա Վրաստանը, Հայաստանն ու Մոլդովան ունէին: Եւ, ի տարբերութիւն Վրաստանի եւ Մոլդովայի, Հայաստանը չօգտուեց իր այդ հնարաւորութիւնից: Եթէ Հայաստանը, ստորագրելով ԵՄ հետ Ասոցացման համաձայնագիրը, գրոյացնէր ԵՄ երկրների հետ առեւտրի մաքսատուքերն ու հեշտացրնէր հայկական ապրանքների մուտքը ԵՄ երկրներ, մեր արտահանման կրճատումն այսօր այս աստիճան մեծ չէր լինի: Ճիշտ այնպէս, ինչպէս Վրաստանի պարագայում, որի արտահանման կառուցուածքում Ռուսաստանի տեսակարար կշիռը անցած տարի կազմել է ընդամէնը 7%: Եթէ Հայաստանի ստացած տրանսֆերտների (Համախառն Ներքին Արդիւնք մօտ 21%) մօտ 90 տոկոսը գալիս է Ռուսաստանից, ապա Վրաստանի ստացած տրանսֆերտների (ՀՆԱ մօտ 12%) միայն 40%-ն է Ռուսաստանից: Ներդրումներով Ռուսաստանն աննշան կշիռ ունէր Վրաստանի համար նաեւ անցած տարիներին՝ մօտ 10-15%, իսկ 2015-ի առաջին երեք եռամսեակների դրութեամբ այն կազմել է ընդամէնը 4%:*

*Այսպիսով՝ ստեղծուած գլոբալ տնտեսական նոր պայմաններում, երբ նաւթի գինը ցածր է եւ առաջիկայ տարիներին բարձրանալու հեռանկարները շատ անհաւանական են, Հայաստանը պէտք է փորձի հնարաւորինս կրճատել Ռուսաստանից կախուածութիւնն ու կենտրոնանալ եւրոպական շուկաների ու ներդրողների վրայ, հակառակ պարագայում մեր կորուստները չափազանց մեծ կը լինեն:*

## 2015-ի 11 ԱՄՍՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԸ $40 ՄԻԼԻՈՆԻ ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹԻՒՆ Է ՍՏԱՑԵԼ

1 ↳

*կօշկեղէնը, գլխարկները, հովանոցները, իսկ 16.4%-ը՝ մնացած ապրանքները:*

*Առաւել մեծ չափով մարդասիրական օգնութիւն Հայաստան եկել է Շուէյցարիայից՝ 23.2%, ԱՄՆ-ից՝ 23%, ԵՄ երկրներից՝ 23.8%: ԱՊՀ երկրներից Հայաստան եկած օգնութիւնը կազմում է ընդհանուրի 1.6%, Ռուսաստանից՝ 0.2%:*

2 ↪

## ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ՝ ՅԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԲԱՆԱՍԷՐԸ(1)

Անոնց հաւաքագրումը եւ ամփոփումը հատորի մը մէջ աւելի քան անհրաժեշտութիւն մըն է:

(Շար. 1/2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Այս յօդուածը գրած եմ իմ անձնական նախաձեռնութեամբ՝ առանց հանդիպելու յարգելի բանասէրին հետ: Հետեւաբար, վրիպումներն ու թերացումները ամբողջապէս իմս են:

2. 1978–1980-ին (երկու տարեշրջան), Նուպարեանի մէջ բարեբախտութիւնը ունեցած եմ ըլլալու իր աշակերտը: Մեծապէս թիկունք կանգնած է ինծի եւ քաջալերած է անընդհատ գրել արտադասարանային նիւթեր: Յատուկ ժամանակ կը տրամադրէր այս պատանեկան գրութիւններս բծախնդրօրէն սրբագրելու եւ ապա ինծի փոխանցելու իր դիտողութիւնները: Մինչեւ հիմա կը պահեմ այս սրբագրութիւնները:

3. Գէորգեանի կենսագրութիւնը տե՛ս՝

ա.- Աւետիս Եափուճեան, *Եգիպտահայ մշակոյթի պատմութիւն*, Հրատարակութիւն Հայ Ազգային Հիմնադրամի, Գահիրէ, 1981, էջ 158-160:

բ.- Աւետիս Եափուճեան, «Դաստիարակ բանասէրը. Տիգրան Գէորգեանի ծննդեան 50-ամեակին եւ ուսուցչութեան 25-ամեակին առթիւ», *Արեւ*, օրաթերթ, 2 Յուլիս 1986, 70-րդ տարի, թիւ 20352, էջ 2-3:

4. ա.- Տիգրան Գէորգեան, «Հայ մամուլը Գահիրէի մէջ», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 4 Հոկտեմբեր 1969, ԾԳ. տարի, թիւ 15.442. Հոկտեմբեր 1969, ԾԳ. տարի, թիւ 15.443:

բ.- Տիգրան Գէորգեան, «Ժամանակագրութիւն Եգիպտոսի հայ լրագրութեան 1865-1966», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, ԾԵ. տարի, թիւ 15.619-էն մինչեւ 11-19 Մայիս 1970, թիւ 15.625:

5. Տիգրան Գէորգեան, «Հայ գրականութիւնը օտար լեզուներով», *Արեւ*, օրաթերթ, 1 Հոկտեմբեր 1970, ԾԵ. տարի, թիւ 15.748-էն մինչեւ 9 Դեկտեմբեր 1970, ԾԵ. տարի, թիւ 15.797:

6. «*Արաքս* կիսամսեան՝ Աղեքսանդրիոյ «Հայուհեաց»ին գրական ձեռնարկը. անծանօթ էջ մը եգիպտահայ մամուլի պատմութեան», 4 Փետրուար 1978, 63-րդ տարի, թիւ 17.893 մինչեւ 15 Փետրուար 1978, 63-րդ տարի, թիւ 17.902:

7. «Հայերէն լեզուի գիտական քերականութեան նախաձեռնարկ Յովհաննէս վրդ. Քոնեցի», 8 Մայիս 1978, 63-րդ տարի, թիւ 17.966 մինչեւ 20 Մայիս 1978, 64-րդ տարի, թիւ 17.975:

8. Տիգրան Գէորգեան, «Կրօնական աշխարհայեացքը եւ կրօնական շարժումները ԺԸ. դարու առաջին կիսուն. Կոլոտ Յովհաննէս Պատրիարքի ծննդեան Գ. դարադարձին առիթով», *Արեւ*, օրաթերթ, 4 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.472. 6 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.473. 7 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.474 8 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.475:

9. Տիգրան Գէորգեան, «Պատմական անդրադարձում՝ ճնշուած ազգերու հակասուլթանական եւ ազգային-ազատագրական պայքարին մասին. Ապրիլեան Եղեռնի 65-ամեակին առիթով», *Արեւ*, օրաթերթ, 19 Մայիս 1980, 64-րդ տարի, թիւ 18.556. 20 Մայիս 1980, 64-րդ տարի, թիւ 18.557. 21 Մայիս 1980, 64-րդ տարի, թիւ 18.558:

10. «Համառօտ մատենագիտութիւն Մեծ Եղեռնի մասին», պատրաստեց՝ Տիգրան Գէորգեան, *Արեւ*, օրաթերթ, 17 Յուլիս 1980, 64-րդ տարի, թիւ 18.606 մինչեւ 5 Օգոստոս 1980, 64-րդ տարի, թիւ 18.621:

11. Տիգրան Գէորգեան, «Սովետահայ գրականութեան զարգացումի հանգրուանները», *Արեւ*, օրաթերթ, 2 Փետրուար 1981, 65-րդ տարի, թիւ 18.765-էն մինչեւ 11 Փետրուար 1981, 65-րդ տարի, թիւ 18.770:

12. Տիգրան Գէորգեան, *Հ.Բ.Ը.Մ.. պատմական ակնարկ իր ադամանդեայ յոբելեանին առիթով*, Հրատարակութիւն Հ.Բ.Ը.Մ.ի Եգիպտոսի Շրջանակին, Գահիրէ, 1981:

13. «Հայ ձեռագիր պարբերականները», *Արեւ*, օրաթերթ, 29 Ապրիլ 1982, 66-րդ տարի, թիւ 19133 մինչեւ 21 Մայիս 1982, 67-րդ տարի, թիւ 19151:

14. Միքայէլ Նաթանեան, *Արմենական Կուսակցութիւնը. ծագումէն սկսեալ մինչեւ Սահմանադրական Ռամկավար Կուսակցութեան կազմութիւնը*, խմբագրութիւն եւ ներածութիւն Տիգրան Գէորգեանի, Հայ Ազգային Հիմնադրամ, Գահիրէ, 1990:

15. Անդ, էջ ԺՁ.:

16. Տիգրան Գէորգեան, Յակոբ Ս. Անասեան, *«Հայկական հարց»-ը եւ հայկական կոտորածները. համապարփակ մատենագիտութեան փորձ*, Հրատարակութիւն Հ.Բ.Ը.Միութեան Ալեք Մանուկեան Մշակութային Հիմնադրամի, Գահիրէ, 1995:

17. Տիգրան Գէորգեան, *Եգիպտոսի Հայ Կաթողիկէ համայնքը. անցեալը եւ ներկան իր բոլոր կառոյցներով ու կարկառուն դէմքերով*, Սաթենիկ Ճ. Զագըր Հիմնադրամ, Գահիրէ, 2001:

18. Տիգրան Գէորգեան, «Գաղափարի զոհը՝ Արփիար Արփիարեան», *Հայկազեան հայագիտական հանդէս*, ԻԳ. հատոր, 2003, էջ 9-57:

19. Աւետիս Եափուճեան, նշ. աշխ.ը, էջ 160:

ԽՈՀԵՐ

# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ ԻԲՐԵՒ «ԿԱՐԵՒՈՐԱԳՈՅՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹ»

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

### 5. ԱՅՈ/ՈՉ՝ ԵՐԿՈՒՈՒԹԵԱՆ ԽԱՐՍԽԱՒՈՐՈՒՄ

Ժողովրդավար երեւալու համար իշխանութիւնները (խօսքը բոլոր աշխարհի մասին է եւ ոչ միայն հայկականի) իրենց կողմէ նշանակուած վերջնական, վճռական եւ ամենաազդեցիկ պահերուն, ընտրութիւններու եւ հանրաքուէներու միջոցով ժողովուրդէն «կը պահանջեն» սեւ/ճերմակ պատասխաններ՝ այո/ոչ, Օպամա/Ռոմնի, Սարքոզի/Հոլլանտ, Մորսի/Շաֆիք:

Ասոնք կ'ըլլան այն կիզակէտերը՝ ուր երկուութիւն հասկացողութիւնը կարծես կը դառնայ կենաց-մահու հարց, ան կը վերածուի յարձակողական վէճի, կը մերժէ ամէն տեսակ երրորդ եւ տարբեր լուծումներ, իշխանական (միեւնոյնն է՝ իշխանութեան գլուխ կանգնած կամ ընդդիմախօսական, քանի որ երկուքն ալ կը պատկանին իշխանական դասակարգին) բառապաշարը կը դառնայ ալ աւելի վճռական ու վերջնական, կրնանք ըսել՝ գերվճռական ու գերվերջնական, փոխ-վիրաւորանքները եւ ատելութեան փոխադարձ սերմանումները կը դառնան ընդունելի եւ բնական: Կիզակէտերը յաճախ կը տեւեն երկար, շատ երկար ժամանակ, այնքան երկար՝ որ կարելի ըլլայ խարսխել սեւ/ճերմակ երկուութիւնը: Այս երկուութիւնները ամբոխի յիշողութեան մէջ կը դրոշմուին իբրեւ անձեռնմխելի վաւերականութիւններ, շնորհիւ իրենց վայելած հաղորդամիջոցային անընդհատ, կարծրատիպային եւ ստիպողական հետեւողականութեան ու թատերականացուած ներկայացուցչականութեան:

Հայաստանի վերջին սահմանադրութեան փոփոխութիւններուն պարագային «այո»-ն գերակշռող էր, շնորհիւ պետութեան կամ պետական օլիկարքներուն ունեցած գործարարական-մենատիրական իշխանութեան հիմնահոսանքային լրատուամիջոցներուն վրայ: Բայց այդ «այո»-ն «այո»-էն զատ ուրիշ բան չէր ընդուներ եւ իր մէջ կը կրէր իշխանական-գաղափարախօսական ամբողջ բառամթերքը՝ մենք այսպէս պիտի ընենք, մենք այնպէս պիտի ընենք, մենք պիտի պայքարինք փտածութեան դէմ, մենք պիտի չթոյլատրենք որեւէ խախտում, մենք մեր հանգիստը պիտի զոհաբերենք յանուն հայրենիքի բարգաւաճումին, մենք պիտի աշխատինք յանուն ժողովուրդի բարօրութեան, ինչպէս նաեւ ազգասիրական դարեր շարունակ կրկնուող հազար ու մէկ կարգախօս:

Այս բացարձակ «այո»-ն բնականաբար պիտի արտադրէր բացարձակ «ոչ»-ը: Որոշ վիճակագրութիւններ ըսին՝ թէ հանրային հեռատեսիլները հաւասար ժամանակ տրամադրեցին «այո»-ի եւ «ոչ»-ի կողմնակիցներուն: Պարզապէս կարելի է ժպտիլ այս միամտութեան վրայ: Պետական խեղկատակութիւններէն մէկն է ասիկա: Ճիշդ է, ժամանակի առումով կրնան հաւասար ըլլալ: Հաւասարութիւն՝ «այո»-ն կամ «ոչ»-ը բացատրելու համար: Բայց չէ՞ որ այս սահմանադրական թատերախաղէն անդին, Սերժ Սարգսեան եւ իր նախարարներն ու հանրապետականները մշտաներկայ են այդ նոյն հեռատեսիլներուն մէջ անընդհատ ու անվերջ ինքնափառաբանումներով, իրենց գործունէութիւնները մեկնաբանող լուրերով եւ զրոյցներով, անոնք ներկայ են իբրեւ արտաքին թշնամին կարողապէս հակահարուածողներ, ղարաբաղեան հարցի խաղաղ լուծումի սիրահարներ:

«Այո» ըսողներն են՝ որոնք իբրեւ հայրենիքի բարօրութեան կրողներ, միշտ ներկայ են հանրութեան առջեւ: Իսկ «ոչ»-ի կողմնակիցները՝ բացի սահմանադրական «ոչ»-ին համար տրուած ժամանակային տարածութենէն, ոչ մէկ կարելիութիւն ունէին ուրիշ հիմնական հարցերու համար ըլլալ հեռատեսիլներուն հիւրերը եւ «արմէնփրէս»-ի լուրերուն աղբիւրները: Իրենց գաղափարներուն տեւական գոյութիւնը բոլորովին կը բացակայէր այս տեղերէն: «Ոչ»-ին գոյութիւնը, ինչպէս տեղի ունեցաւ իրենց սահմանուած տարածութիւններուն մէջ՝ հեռատեսիլի կայաններ, Օփերայի Հրապարակի հանրաքուէներ եւ համացանցային կայքեր, բաւական խիտ ու սուր էր, արտայայտուելու սահմանափակութիւնը զայն դարձուցած էր կտրուկ ու խոցող:

Ուրեմն, եթէ հայկական սահմանադրական «այո»-ն իր ուժը ստացաւ ոչ միայն այդ նպատակին համար յատկացուած տարածութենէն, այլ իրեն ի նպաստ գործադրուող ամբողջ անտեսանելի եւ անուղղակի համակարգէն, «ոչ»-ը մնաց «ոչ»՝ առանց շրջապատի: Միեւնոյնն է, երկուութիւնը հզօրացաւ՝ շնորհիւ համակեդրոն «այո»-ին եւ ինքնակեդրոն «ոչ»-ին:

Բայց հայկական սահմանադրական հանրաքուէի «ազգային» երկուութեան յատկանիշները կապուած են «համաշխարհային» երկուութեան գաղափարին հետ: Ամբողջ մարդկային քաղաքակրթութեան պատմութեան մէջ երկուական միտքը երբեք այնքան սուր ու հատու չէ եղած որքան դրամատիրութեան եւ անկէ բխած արդիականութեան ներկայ շրջաններուն:

Ճիշդ է, երկուութիւն եղած է գրաւոր միտքի սկիզբէն ի վեր: Պղատոնի մօտ կարելի է գտնել երկուութիւններ՝ բարի/չար, բնութիւն/աստուածութիւն, միտք/մարմին, որոնք դրուած ըլլալով բանականութեան մասին մեկնաբանութիւններու եւ տրամասացութիւններու բաց իմաստներու շարահիւսութիւններու մէջ, անոնց գոյութիւնը գրգիռ կը դառնայ այլ մտածողութիւններ բանալու:

Նոյնն է նաեւ աւետարանի բարի-սամարացի/նենգ-փարիսեցին, որոնք Յիսուսի առակներու բազմիմաստ պատումնային գաղափարականութեան ներքոյ (առանց յետագային ձեւաւորուած եկեղեցական գաղափարախօսութեան) մեծապէս կախուած կը մնան իրարմէ, ուրեմն՝ չեն կրնար բացարձակ երկուութիւններ ըլլալ:

Ի տարբերութիւն նախադրամատիրական շրջանէն, արդիական երկուութիւնը այլ մտածողութեան ճամբայ չի բանար, ան չի հանդուրժեր շարժում, պատմականացում, պատմողականացում, մեկնաբանութիւն, այլազանութիւն: Ան չոր է, ինքն իր մէջ վերջնական է, կարծրատիպային եւ տարբերակումի անկարող:

Յիշենք հոլիուտեան ֆիլմերը, ուր չար/բարի, չինարար-ամերիկացի/յետամնաց-կարմիր-հնդիկ, փրկիչ-ամերիկացի/կործանիչ-հեռաւոր-արեւելքցի հակադրութիւնները դրուած են մասնաւոր լուսարձակի տակ: Հակադրութիւններուն աջ ու ձախ կողմերը փոխներթափանցելի չեն, անոնք փոխկործանիչ են՝ մէկը պէտք է վերացնէ միւսին, հետեւաբար՝ իրարմէ օտարացած առարկաներ:

Արդիականութեան քաղաքական մտածողութիւնը հիմնուած է երկուութեան կռքապաշտութեան վրայ, նախ իր դրամատիրութիւն/համայնավարութիւն (եւ անկէ բխած ածանցներով՝ ԱՄՆ/Խորհրդային Միութիւն, բարի/չար) հակադրութեամբ, եւ այժմ արեւմուտք/իսլամիզմով (եւ իր ածանցներով՝ քաղաքակրթութիւն/հակաքաղաքակրթութիւն, շինող/քանդող):

Հայոց պատմութեան մէջ Եղիշէի արձակած դաւաճանութեան գաղափարը ծանօթ է բոլորին: Եղիշէի պաշտպանած խմբաւորումի քաղաքական կողմնորոշութեան դէմ եղող Վասակը դարձած է դաւաճան: Բայց Եղիշէի գրաւոր լեզուն ու մտածողութիւնը գրական, պատմողական գեղեցիկ ու գրաւիչ բովանդակութիւն ունի, հաճելիօրէն ընթեռնելի եւ բազում ծալքերով ու իմաստային շերտերով պարուրուած: Համեմատեցէք այս դաւաճանութիւնը 1990-ականներու վերջաւորութեան՝ զարգացած աշխարհի բարձունքներու հասած «քաղաքակրթութեան» այս ժամանակաշրջանին, հայաստանցի խումբ մը պատմաբաններու դաւաճանումը ամերիկահայ պատմաբաններու, որ դիւրին ու արագ տարածում գտաւ Հայաստանի ու Լոս Անճելըսի որոշ հայկական շրջանակներու մէջ: Անոնց դաւաճանումը վայրենի է, յարձակողական, տգեղ, առանց ենթաշերտի, ատելութիւն սերմանող, ստեղծելով մենք-հայրենասէր/անոնք-դաւաճան ահռելի երկուութիւն մը:

Այդպէս չէ՞ր արդեօք Ի. դարու հայկական սփիւռքի քաղաքական-կուսակցական միտքը՝ Մայիս 28/Նոյեմբեր 29, դաշնակցական պլոք/ռամկավար-հնչակեան պլոք:

Միայն դրամատիրական յարաբերութիւններու կազմաւորումի շրջանին է որ Հայաստանի արեւելք-արեւմուտք աշխարհագրական դարաւոր բաժանումները դարձան իմաստային, խորքային տարբերութիւններ, վերջնականապէս

↪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ ԻԲՐԵՒ «ԿԱՐԵՒՈՐԱԳՈՅՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹ»

3 ➩

արմատաւորուեցան գրական արեւմտահայերէնն ու արեւելահայերէնը՝ վանելով հսկայ քանակութեամբ բանաւոր բարբառները: Առաջին անգամ ըլլալով մեր պատմութեան մէջ գոյացաւ արեւմտահայ միտք եւ արեւելահայ միտք հասկացողութիւնները:

Երկուութիւններու կիզակէտային այս շրջանին է որ հանդէս պիտի գար կարեւոր գաղափարական-փիլիսոփայական միտք մը, ընդդէմ այս բեւեռացումին: Այս մտածողներէն մէկն էր Ժաք Տերրիտա: «Տերրիտայի գործին գլխաւոր դրոյթներէն մէկը իմաստի անկայունութիւնն է, կամ թերեւս այն կերպով որ բնագիրի կամ յայտարարութեան մը իմաստը կը գերազանցէ գրողին կամ խօսողին հսկողութիւնը», կը գրէ Ճէյմս Սմիթ(10):

Ժամանակակից փիլիսոփայական-մտաւորական միտքին համար բացառիկ կարեւորութիւն պիտի ստանար Տերրիտայի երկուութիւններուն կազմալուծումը (deconstruction): Տերրիտայի կազմալուծումը՝ բացի ինքն իր մէջ արտայայտած գաղափարներու անսահմանութենէն, կարելի է դիտել նաեւ իբրեւ արդիականութեան միահեծանութեան արմատական ընդդիմադրութիւն մը, թէեւ ընդդիմադրութիւնը Տերրիտայի մօտ բացայայտօրէն արտայայտուած դրոյթ մը չէ: Կը բաւէ բառերու եւ բառակապակցութիւններու հետ իր նաւարկումները եւ բառամիջեան իմաստային յարաբերութիւններու եւ խզումներու շարասիւները ուրպէսզի անոնք ընկալուէին իբրեւ արդիական քարացած հիմնահոսանքի հակաբնագիրներ:

Այս բոլորի բնաբանին մէջ է որ կարելի տեսնել Հայաստանի սահմանադրական վերջին փոփոխութիւններու այո/ոչ-ը իբրեւ արեւմուտքի հիմնահոսանքային երկուութեան ուղղութեան հնազանդ հետեւորդ եւ ամրապնդող, իբրեւ արեւմտեան ժողովրդավարութեան արտահանած մտաւոր սահմանափակութեան վերարտադրութիւն, իբրեւ հակա-տերրիտական գաղափարախօսութիւն:

Սահմանադրական աղմուկէն բոլորովին դուրս մնացին այլընտրանքային ձայները, որոնք խնդիրներ ունէին բուն համակարգային հարցերու հետ: Օրինակ, Դաւիթ Ստեփանեանի «15 դրոյթ սահմանադրութեան փոփոխութեան եւ պայքարի մասին» յօդուածը(11) եւ նման արմատական ձայներ՝ ուր հարցականի տակ կ'առնուին ոչ թէ «այո»-ն, այլ փոփոխութիւններու ամբողջ գործընթացը եւ մտածելակերպը (թէեւ առանց մօտենալու այո/ոչ հակադրութեան հարցին), կրցան յայտնուիլ միայն մեկուսացուած բայց խիստ արտայայտիչ ու թափանցող միտքեր պարունակող համացանցային մամուլի մէջ:

### 6. «ԱՅՈ»-Ն՝ ԼՈՅՍ, «ՈՉ»-Ը՝ ՄԱՌԱԽՈՒՂ

Ասոնք Սերժ Սարգսեանի բառերն են: Վտանգաւոր բառեր են:

Սահմանադրական քուէարկութեան անձնական «յաղթանակ»-էն ետք, «այո»-ն ձեւակերպող եւ անոր հանդէպ գուրգուրալից սէր տածող Սերժ Սարգսեան կ'ունենայ իր սովորական փառապանծ ու ինքնագոհ ելոյթը, ուր, ի միջի այլոց, կ'ըսէ.

«Երէկ մենք միասին հատեցինք մի կարեւոր եզրագիծ, որի առաջ կանգնած էինք վերջին երկու տարիների ընթացքում: Խոհեմութեան, հեռատեսութեան եւ հաւատի լոյսը ցրեց անորոշութեան, կասկածների ու մտահոգութիւնների մառախուղը: Երէկ մենք ընտրեցինք երկարաժամկէտ ու կայուն զարգացման ճանապարհը եւ դրա շնորհիւ հայկական պետականութիւնն այսօր արդէն թեւակոխում է իր զարգացման յաջորդ փուլ:»

Ուրեմն, երկիրի նախագահի ըմբռնումով «այո»-ն խոհեմութիւն է, հեռատեսութիւն, հաւատքի լոյս, երկարաժամկէտ ու կայուն զարգացումի ճանապարհ, հայկական պետականութեան զարգացումի յաջորդ փուլ, իսկ «ոչ»-ը կասկածներու ու մտահոգութիւններու մառախուղ է, կարճաժամկէտ ու անկայուն զարգացումի ճանապարհ, հայկական պետականութեան զարգացումի կասեցում: Մենք բարի ենք, անոնք չար են:

Ապա կ'աւելցնէ.

«Ոչ-ի կողմնակիցները շատերն իրենք իրենց մասին որպէս ճակատ էին խօսում: Ես փորձել եմ այս բառից որքան հնարաւոր է խուսափել: Իմ խորին համոզմամբ, երկրի ներսում ճակատ ունենալու իրաւունքը մենք չունենք: Հայ ժողովրդի պատմութիւնն ունեցած մի ազգի համար դա անթոյլատրելի շռայլութիւն է: Աւելին: Այս փոփոխութիւնների հիմնական նպատակներից մէկն էլ հենց այն էր որ երկրի ներսում ճակատ-ճակատի դուրս գալու ու կռիւ տալու կարիքը չլինի:»

Պր. Սարգսեան եւ իր ճառը գրողը հաւանաբար լեզուական իմացութեան խնդիրներ ունին, երբ կ'ուզեն անպայմանօրէն «ճակատ» բառը հասկնալ միայն կռիւ իմաստով: Այս բառը ունի բազում իմաստներ եւ կարելի չէ գործածութեան մէկ իմաստը փոխարինել ուրիշով՝ ըստ քմահաճոյքի: Ահաւասիկ Հայաստանի Լեզուի Ինստիտուտի տուած բազում իմաստներէն երկուքը. «6. *փխբ.* Հասարակական՝ մասսայական ուժերի միաւորում՝ որեւէ ուղղութեամբ գործելու համար: *Սովետական հայրենիքը թեւակոխեց կոմունիզմի ծաւալուն կառուցման ժամանակաշրջանը, մեծ աշխատանքների ամբողջ լայն ճակատով (Մամուլ)*: 7. *փխբ.* Գործունէութեան բնագաւառ: *Գաղափարախօսական ճակատ*»(12):

Ահաւասիկ Էդուարդ Աղայեանի բացատրութիւններէն մէկը. «5. *փխբ.* Պետական կամ հասարակական գործունէութեան որեւէ բնագաւառ՝ ասպարէզ՝ ոլորտ: *Գաղափարական ճակատի աշխատողներ*: 6. *փխբ.* Որեւէ բանի կողմնակիցների ընդհանուր միաւորում՝ համախմբում որեւէ նպատակի իրականացման համար: *Խաղաղութեան կողմնակիցների ճակատ*»(13):

«Ոչ»-երուն մէջ կային այս իմաստով ճակատներ, օրինակ՝ Նոր Հայաստան հանրային փրկութեան ճակատը, որուն ղեկավարներէն մէկն էր Սարգսեանի համար անհաճոյ դէմք մը՝ Րաֆֆի Յովհաննիսեան: «Ճակատ» բառին համար Հայաստանի նախագահը դիտաւորեալ խեղաթիւրութեամբ ընտրելով անոր կռիւ արտայայտող իմաստը, հասկնալիօրէն իր քաղաքական հակառակորդին դասած պիտի ըլլար կռուարարներու շարքը:

Ատելութեան սերմանո՞ւմ, ուժի միակողմանի բանեցո՞ւմ, թէ՞ բարի/չար երկուութեան ամրապնդում...:

(Վերջ 3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

10. James K. A. Smith, *Jacques Derrida: Live Theory*, London, New York: Continuum, 2005, p. 104:

11. *Քաղաքական դիսկուրս*, 21 Սեպտեմբեր 2015, (http://diskurs.am/2015/09/585/): *Ջահակիր* զայն արտատպած է Հոկտեմբեր 15 համարին մէջ:

12. *Ժամանակակից հայոց լեզուի բացատրական բառարան*, Հատոր 3, Երեւան, Հայկական ՍՍՀ Գիտութիւնների Ակադեմիայի Հրատարակչութիւն, 1974, էջ 432:

13. Է. Բ. Աղայեան, *Արդի հայերէնի բացատրական բառարան*, հատոր 2, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1976, էջ 932:

## ՏԽՐՈՒԹԻՒՆ

Տէր եւ Տիկին Հայկ եւ Այտա Նագաշեան եւ զաւակը՝ Արէն, Տէր եւ Տիկին Ժիրայր եւ Մարիզ Զօրայեան (Գանատա), Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակը՝ Մարալ, Տէր եւ Տիկին Աչոտ եւ Աննա Նագաշեան եւ զաւակները՝ Արեգ եւ Անի (Գանատա), Տէր եւ Տիկին Քրիս եւ Ալին (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Ժիրայր եւ Սեւան Պալաեան (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Մայքըլ եւ Մելանի Զօրայեան եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Թօմ եւ Գարօլին Տրամպալաս եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Ուատիի եւ Անի (ԱՄՆ), Տիկին Պարպարա Զօրայեան (Ֆրանսա), Զօրայեան, Պալաեան, Սանոսեան եւ Կիրակոսեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն դառնակսկիծ մահը իրենց մօր, մեծմօր եւ ազգականին, Ողբ.՝

### ԶԱՐՈՒՀԻ ԶՕՐԱՅԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ Երեքշաբթի, 12 Յունուար 2016-ին, Սէնթ Րիթա հիւանդանոցին մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ նոյն օրը, յ.մ. ժամը 3-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատունը եւ ողբացեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

*Ջահակիրի խմբագրութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Հայկ եւ Այտա Նագաշեաններուն, Ջահակիրի խմբագիր եւ տնօրէն Տիար Մարտիկ Պալաեանին եւ հանգուցեալին սգակիր բոլոր պարագաներուն:*

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

### Սուրբ Ծննդեան Եւ Աստուածայայտնութեան Տօնը Գահիրէի Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Մէջ

Քրիստոսի Սուրբ Ծննդեան եւ Աստուածայայտնութեան տօնը Եգիպտոսի մէջ այս տարի եւս մեծ շուքով տօնուեցաւ:

Երկուշաբթի, 5 Յունուար 2016-ին երեկոյեան ժամը 6-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ մատուցուեցաւ Ճրագալոյցի Ս. Պատարագը. պատարագիչն էր Գահիրէի Հոգեւոր Հովիւ Արժ. Տ. Յակոբ Քհնյ. Յակոբեան:

Յաջորդ օրը՝ Երեքշաբթի, 6 Յունուար 2016-ի առաւօտեան Ս. Պատարագը մատուցեց Թեմակալ Առաջնորդ Գերաշնորհ Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեան:

Ս. Պատարագի արարողութիւնը, ըստ աւանդութեան, ուղիղ հեռարձակմամբ ձայնասփռուեցաւ «ռատիօ»-ով, ինչպէս նաեւ հեռատեսիլի Ղպտի Ուղղափառ Եկեղեցւոյ Մար Մօրքոս եգիպտական կրօնական կայանով: Երգեցողութիւնը կատարեցին «Շնորհալի» եւ «Արաքս» երգչախումբերը՝ ղեկավարութեամբ խմբավար Միհրան Ղազելեանի:

Ս. Պատարագին ներկայ էին Գահիրէի Թեմական եւ Քաղաքական Ժողովներու ատենապետները եւ Ազգային Իշխանութեան անդամներ, որոնց ուղեկցութեամբ եկեղեցի ժամանեցին Եգիպտոսի նախագահ Ապտ Էլ Ֆաթթահ Էլ-Սիսիի ներկայացուցիչ՝ Մոհամմէտ Եհիա, Եգիպտոսի վարչապետ Շէրիֆ Իսմայիլի ներկայացուցիչ՝ Գահիրէի Նահանգապետ Դոկտ. Կալալ Մուսթաֆա Սայիտ, Եգիպտոսի Ներքին Գործոց Նախարարի ներկայացուցիչ՝ Զօրահրամանատար Թարէք Կամիլ, Գահիրէի նահանգի հարաւային բաժնի ներկայացուցիչ՝ Դոկտ. Ճիհան Ապտ Էլ Ռահման, Ներքին Գործոց նախարարի կրօնական եւ վարչական հարցերու օգնական զօրահրամանատար Սամիր Ապտ Էլ-Մէկիտ, Եգիպտոսի Մուֆթի Դոկտ. Շաուքի Ալամի ներկայացուցիչ՝ Տիար Ահմէտ Սամէհ, Կրօնի նախարար Շէյխ Րէֆաաթ Կապէր Ալիի ներկայացուցիչ՝ Դոկտ. Մօխլէս Ալ-Խաթիպ, Եգիպտոսի Ազգային Ապահովութեան վարչութեան օգնական զօրահրամանատար Մահմուտ Շաարաուիի ներկայացուցիչ՝ գնդապետ Շաապան Խալիֆա, Ուայլի թաղապետարանի ղեկավար զօրահրամանատար Էսամ Մոհամմէտ Քամալ եւ ընդհանուր քարտուղար Մոհամմէտ Օսման:

Ներկայ էր նաեւ Եգիպտոսի մօտ ՀՀ Արտակարգ եւ Լիազօր դեսպան Դոկտ. Արմէն Մելքոնեանի կողմէ դեսպանատան առաջին քարտուղար Տիար Վարդգէս Յովսէփեան:

Արարողութեան ներկայ էին նաեւ Ղպտի Եկեղեցւոյ առաջնորդ Թաւատրոս Բ.-ի կողմէ Ղպտի Եկեղեցւոյ ընդհանուր պատասխանատու Սերկիոս Սերկիոս Քահանան, Միջին Արեւելքի Եկեղեցիներու Յանձնաժողովի Պատուոյ ընդհանուր քարտուղար Դոկտ. Կէրկիս Սալէհ, Եգիպտոսի եւ Սուտանի Մարոնիներու Առաջնորդ Ժորժ Շիհան եպիսկոպոս, Ասորի Եկեղեցւոյ ներկայացուցիչ Քիրիլլոս Վարդապետ Մասուտի, նաեւ Տահէր Թաղի Միքայէլ Հրեշտակապետ եկեղեցւոյ Աւագ քահանայ Սաուիրըս Մօրքոս, ինչպէս նաեւ Ղպտի Աւագ Քահանայ Պութրոս Ուիլիըմ, Մինա Նապիհ եւ Լաթիֆ Ուասֆի:

Նաեւ, Բողոքարկող դատավարութեան փաստաբան ու միջազգային դատավարութեան խորհրդատու՝ Մօրքոս Սաուիրըս:

Ս. Պատարագի ընթացքին Պատարագիչ Սրբազան Հայրը ընթերցեց Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսի Ս. Ծննդեան պատգամը, իսկ Դոկտ. Ճորճ Սիմոնեան ընթերցեց Առաջնորդ Սրբազան Հօր խօսքը՝ արաբերէնով, որուն մէջ յատուկ շնորհակալութիւն յայտնուած էր հիւր ներկաներուն:

Յաւարտ Ս. Պատարագի տեղի ունեցաւ Ջրօրհնէքի արարողութիւն, որուն կնքահայրն էր Ե.Գ.Մ. Հոգաբարձութեան անդամ Տիար Վաչէ Արթինեան, որմէ ետք եկեղեցական թափօրը ուղղուեցաւ դէպի Առաջնորդարան, ուր կատարուեցաւ տնօրհնէքի արարողութիւն:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1759 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՅՈՒՆՈՒԱՐ 2016 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٥٩ الخميس ٢٨ يناير ٢٠١٦


## ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ՊԱՐՏՈՒԵԼ Է, ՀԱՅԱՍՏԱՆԸ՝ ՍՏԱՑԵԼ ՅԱՂԹԱՆԱԿԻ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆ

### ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

18 Յունուար 2016, Lragir.am

Ռուսաստանի Խնայբանկի ղեկավար, այդ երկրի էկոնոմիկայի նախկին նախարար Գերման Գրէֆը օրերս յայտարարել էր, որ Ռուսաստանը պարտուել է համաշխարհային տնտեսական մրցակցութեանը, յետ է մնացել տեխնոլոգիական զարգացումից: Ռուսաստանում յետամնացութեան, տնտեսական մրցակցութիւնը տանուլ տուած լինելու վերաբերեալ յայտարարութիւններ հնչել են աւելի վաղ էլ, բայց պարտութեան մասին բաց տեքստով յայտարարութիւնը թերեւս աննախադէպ է:

Այստեղ հետաքրքիր է մէկ այլ հանգամանք: Ռուսաստանը պարտուել է, դա անհերքելի իրողութիւն է: Իսկ ինչ է եղել Հայաստանը, որն իր տնտեսութիւնը Արցախի պատերազմի հրադադարից ի վեր հետեւողական, տարեցտարի աւելի ու աւելի ինտենսիւ կապել է Ռուսաստանի հետ, նրան յանձնել բոլոր ռազմավարական ուղղութիւնները, բոլոր հիմնական ենթակառուցւածքները, կնքել երկարաժամկէտ պարտաւորութիւններ նախատեսող պայմանագրեր, փաստացի վերածուելով ռուսական տնտեսութեան կցորդի:

Աւելին, դա խորացել է մէկ այլ հիմնարար գործօնի հետեւանքով՝ Ռուսաստանն է դարձել Հայաստանի քաղաքացիների հիմնական աշխատատեղը, եւ դրա շնորհիւ է պահպանուել Հայաստանի տնտեսութեան գնողունակութիւնը, «վագրային թռիչքները», ու այդ աշխատատեղի խնդիրների հետեւանքն է, որ Հայաստանում բերել է տնտեսական խնդիրների:

Այդպիսով, եթէ Ռուսաստանը պարտուել է, ապա արդեօք պարտուե՞լ է նաեւ Հայաստանը:

Հաշուի առնելով վերը բերուած տնտեսական իրողութիւնները, ապա եզրակացութիւնը մէկն է՝ Հայաստանն էլ պարտուել է Ռուսաստանի հետ:

Բայց, կան նաեւ այլ իրողութիւններ, որոնց ընդհանուր բնորոշումը կարող է լինել ռուսական մամլիչը, պարտադրանքը, որը հիմնուած է հայկական քաղաքական եւ տնտեսական «էլիտաների» ստրկամտութեան, մորթապաշտութեան, նեղ աշխարհայեացքի եւ սահմանափակ ինտելեկտի, միաժամանակ նաեւ հանրութեան շրջանում նոյն խնդիրների, կարծրատիպերի եւ միֆական ընկալումների, այլ կերպ ասած՝ «օրհնուած սհաթի» վրայ:

Եւ այս պայմաններում, Ռուսաստանի պարտութիւնը կարող է դիտարկուել որպէս Հայաստանի յաղթանակ, կամ աւելի շուտ՝ Հայաստանի համար յաղթանակի հնարաւորութիւն, եթէ իհարկէ Հայաստանը կարողանայ ձերբազատուել այն ներքին հանգամանքներից, որոնք կազմում են այդ «օրհնուած սհաթի» փիլիսոփայութիւնը:

Բանն այն է, որ երբ Ռուսաստանը թոյլ է, երբ ստիպուած է սահմանափակել իր կայսերական հաւակնութիւնը, Հայաստանը ստանում է շնչելու հնարաւորութիւն: Աւելին, թուլացած Ռուսաստանը մի շարք գործօնների հետեւանքով ստիպուած է լինում ակամայ հաշուի առնել հայկական գործօնը, Հայաստանի շահը:

Այլ հարց է, թէ դա ինչպէս կարող է օգտագործել Հայաստանը, ինչպէս կարող են օգտագործել հայկական «էլիտաները», ինչ տրանսֆորմացիա կարող է այդ հանգամանքը առաջ բերել հանրային գիտակցութեան մէջ:

Բայց, որ թոյլ Ռուսաստանը հենց այդ փոփոխութիւնների հնարաւորութիւնն է Հայաստանի համար, աներկբայ է: Եւ դրա վկայութիւնն է նաեւ Արցախի պատերազմի յաղթանակը, որովհետեւ ուժեղ Ռուսաստանի պարագայում այդ յաղթանակը գործնականում կը լինէր անհնար: Ուժեղ Ռուսաստանը ոչ թէ թոյլ կը տար յաղթել հայերին, այլ ինքը կը յաղթէր հայերին էլ, ադրբէջանցիներին էլ, ինչը օրինակ փորձում էր անել պուտինեան Ռուսաստանը:

Կա՞յ Հայաստանում պոտենցիալ՝ օգտուել Ռուսաստանի հնարաւոր թուլացումից եւ նախ վերականգնել Հայաստանի ինքնիշխանութիւնն ու աշխարհաքաղաքական լիարժէք սուբիեկտութիւնը, աշխարհի հետ ինքնիշխան յարաբերութեան, սեփական շահից ու անվտանգութիւնից բխող որոշումների իրաւունքը, լիովին փոխելով համաշխարհային գործընթացներում Հայաստանի գործընկերային պոտենցիալը, տեղն ու դերը միջազգային տնտեսական եւ անվտանգութեան համակարգերում:

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵԳԻՊՏՈՍԻ ՆՈՐ ԴԵՍՊԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ



*Յունուար 15-ին Սերժ Սարգսեանին իր հաւատարմագրերը յանձնեց Հայաստանի մէջ Եգիպտոսի նորանշանակ արտակարգ եւ լիազօր դեսպան Թարէք Իպրահիմ Մուհամմէտ Մաաթի:*

## ԶՈՒՐԱԲԵԱՆ.- «ՀԱՆՐԱՔՈՒԷԻՑ ՅԵՏՈՅ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԹՈՒԼԱՑԵԼ Է»

Սահմանադրական փոփոխութիւնների վերաբերեալ հանրաքուէից յետոյ Հայաստանում Սերժ Սարգսեանի իշխանութիւնը զգալիօրէն թուլացել է: Այդ մասին Յունուարի 18-ի մամուլի ասուլիսին յայտնել է ԵԽԽՎ-ում հայաստանեան պատուիրակութեան անդամ, Հայ Ազգային Կոնկրէսի խորհրդարանական խմբակցութեան ղեկավար Լեւոն Զուրաբեանը:

Մինչեւ հանրաքուէն, պատգամաւորի խօսքով, Սերժ 4

## ՍԷՅՐԱՆ ՕՀԱՆԵԱՆԻ՝ ԲՌՆԱԲԱՐԵԼ ԵՒ ԱԿԱՆՋ ԿՏՐԵԼ ՍՊԱՌՆԱՑՈՂ ՊԱՇՏՊԱՆՆԵՐԸ. ԻՆՉ Է ՍՊԱՍՒՈՒՄ ՇՈՒՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ

### ՆԱԻՐԱ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ, ՆԱՐԵԿ ՍԱՐԳՍԵԱՆ

*15 Յունուար 2016, Ժողովուրդ - Հայաստանի Հանրապետական Կուսակցութիւն խմբակցութեան պատգամաւոր Առաքել Մովսիսեանի դէպքը դեռ չմարսած՝ այժմ սկանդալ է հասունացել մէկ այլ Հայաստանի Հանրապետական Կուսակցական պատգամաւորի շուրջ: Օրեր առաջ պատգամաւոր, երգչուհի Շուշան Պետրոսեանը Ֆէյսբուք սոցիալական ցանցում վիրաւորական արտայայտութիւններ էր հնչեցրել ֆէյսբուքեան օգտատէր Գայեանէ Շահինեանի հասցէին: Այս ամէնն աւարտուեց նրանով, որ Հելսինկեան քաղաքացիական ասամբլեայի Վանաձորի գրասենեակի ղեկավար Արթուր Սաքունցը դիմում է ներկայացրել Ազգային Ժողովի էթիկայի յանձնաժողով, իսկ դիմումն էլ առաջիկայ օրերին կը քննարկուի: Իսկ ինչից սկսուեց այս ամէնը. ամէն ինչի մասին սկզբից: Յունուարի 9-ին հակառակորդի կողմից մահացու հրազէնային վիրաւորում ստացած բանակի զինծառայող, 20 տարին չբոլորած Արամայիս Ոսկանեանի մասին Ֆէյսբուքի օգտատէր Գայեանէ Շահինեանը գրել էր, որ ցաւակցութիւնները միայն խօսքեր են եւ յաւելել, որ զզւում է այս իշխանութիւններից ու պաշտպանութեան նախարարութիւնից եւ ընդգծել, որ Սէյրան Օհանեանին չի կարելի թողնել կանգնել զոհուած զինուորի գլխավերեւում: Այս խօսքերը զայրացրել էին Շուշան Պետրոսեանին, ով արձագանքեց «Լակոտ, աչքերդ կը հանեմ» արտայայտութեամբ: Իհարկէ, ՀՀԿ-ական պատգամաւորների նման պահուածքը բնաւ էլ նորութիւն չէ ոչ ոքի համար: Ընդամէնը մի քանի ամիս առաջ էր, երբ յայտնի Առաքել Մովսիսեանը պաշտպանութեան նախարարին քննադատողներին սպառնացել էր «բռնաբարել» ու «գլխատել»: Ստացւում է՝ պաշտպանութեան նախարարն իրեն պաշտպանողների մի հսկայական բանակ ունի, ովքեր պատրաստ են գլխատել, աչքեր հանել եւ նոյնիսկ բռնաբարել բոլոր նրանց, ովքեր կը փորձեն որեւէ վատ խօսքեր հնչեցնել նրա հասցէին: Չնայած այսքան հնչած քննադատութիւններին եւ էթիկայի յանձնաժողով ներկայացրած դիմումին՝ պատգամաւոր Շուշան Պետրոսեանն ամենեւին էլ չի զղջում իր խօսքերի համար: Յամենայնդէպս, մեզ հետ զրոյցում նա այդպէս արձագանքեց: Ակնյայտ է, որ դիմումի քննութեան արդիւնքը ոչինչ էլ չի փոխի: Ազգային Ժողովի էթիկայի յանձնաժողովը միայն հաստատում կամ հերքում է էթիկայի կանոնները խախտելու փաստը, սակայն դա որեւէ հետեւանք չի թողնում: Հետեւանքը միայն կարող է լինել այսպիսի վիրաւորանքների շարունակական լինելը:*

*(http://armlur.am/471165/)*

*Ջահակիր իր կողմէն կ'աւելցնէ՝ որ Շուշան Պետրոսեան կը հանդիսանայ երգչուհի Արաքս Մանսուրեանի (սոփրանօ) դուստրը եւ երաժշտահան Տիգրան Մանսուրեանի քրոջ որդին: Պիտի նշել՝ որ իր ստեղծագործական որակին ու մակարդակին նկատմամբ մեր կողմէն ոչ մէկ նոյնիսկ հեռաւոր նսեմացում ակնարկելով, Տիգրան Մանսուրեան մշտական հիւրն է պետական-օլիկարքական Հ1 հեռատեսիլի կայանին, մինչդեռ Հայաստանի մէջ գործող ու արտադրող բացառիկօրէն տաղանդաւոր հին ու նոր սերունդի երաժիշտներ ու երաժշտահաններ կը մնան անոր մնայուն բացակաները: Իսկ Շուշան Պետրոսեան այն սակաւաթիւ երգչուհիներէն է՝ որ «իրաւունք» ունի ամբողջ մենահամերգ տալ Սերժ Սարգսեանի հովանաւորութեամբ:*

*Շուշան Պետրոսեանի ամուսինն է ոստիկան Արման Յարութիւնեան, որ մասնակցած է Մարտ 1-ի ահաւոր դէպքերուն, դէպքեր՝ որոնց բուն յանցագործները ցարդ կը մնան քօղարկւած, դէպքեր՝ որոնք երբեք ուղղակիօրէն եւ հետեւողականօրէն չմեղադրուեցան կուսակցական ու եկեղեցական մարմիններուն կողմէ: «Շուշանի ամուսինն աշխատում էր 6-րդ վարչութիւնում, 2008 թուի Մարտի 1-ին ոչ երկրորդական «քաջագործներից» էր, արդարացիօրէն դարձաւ հասարակութեան ատելութեան թիրախ, ընդ որում՝ յիշւում էր հենց որպէս «Շուշան Պետրոսեանի ամուսին»», կը գրէ Մարինէ Պետրոսեան: «Շուշանը հրապարակային պաշտպանում էր ամուսնուն՝ համբերութիւնից հանելով Շարժման մասնակիցներին:» (Մարինէ Պետրոսեան, «Շուշանի համա-* 4

# ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ՝ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԲԱՆԱՍԷՐԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ստորեւ կը գոհանամ *Զարթօնքի* եւ նոր շրջանի *Տեղեկատուի* մէջ լոյս տեսած յօդուածներուն ամբողջական ցանկով:

Ահաւասիկ *Զարթօնքի* յօդուածները.

1. «1915-1920 թթ. երկու վաւերագրեր՝ Մարտինի պատահարներուն մասին եւ Սէֆէր Պիրլիքը Հալէպի մէջ», 10 Սեպտեմբեր 1998, թիւ 1387. 24 Սեպտեմբեր 1998, թիւ 1388. 8 Հոկտեմբեր 1998, թիւ 1389. 22 Հոկտեմբեր 1998, թիւ 1390. 29 Հոկտեմբեր 1998, թիւ 1391:

2. «Հայոց արքաները եւ դչխոները», 4 Փետրուար 1999, թիւ 1395. 4 Մարտ 1999, թիւ 1397. 18 Մարտ 1999, թիւ 1398:

3. «Թ.-ԺԹ. դարերու հայ մանրանկարիչներու մատենագիտութիւնը», 15 Յուլիս 1999, թիւ 1407:

4. «Իւրօրինակ հրատարակութիւն մը», 21 Հոկտեմբեր 1999, թիւ 1413:

5. «Նորանուն պարբերականներու մատենագիտութիւն», 6 Յունուար 2000, թիւ 1417:

6. «Հալէպի հայերուն սպանդը 28 Փետրուար 1919», 30 Օգոստոս 2001, թիւ 1456. 13 Սեպտեմբեր 2001, թիւ 1457:

7. «Կենդանազարդերը հայ մանրանկարչութեան մէջ», 29 Նոյեմբեր 2001, թիւ 1462:

8. «Ակամայ քանի մը նկատողութիւն «Կենդանազարդեր»-ու մասին», 29 Նոյեմբեր 2001, թիւ 1462:

9. «Եսայի՝ Իսրայէլի մխիթարութեան մարգարէն», 20 Յունիս 2002, թիւ 1476:

Ահաւասիկ *Տեղեկատուի* նոր շրջանի յօդուածները.

1. «Համատեղ ջանքերով... հայկական պատմամշակութային անչարժ ժառանգութեան ուսումնասիրութեան առիթով», Ապրիլ 1999, թիւ 11:

2. «Դրոշմագիտական հետաքրքրական աշխատութիւն մը», Ապրիլ 1999, թիւ 11:

3. ««Ագաթանգեղոս գրիչ»-ը», Յուլիս 1999, թիւ 12:

4. «Եգիպտոսի Հայ Կաթողիկէ համայնքը. անցեալը եւ ներկան իր բոլոր կառոյցներով ու կարկառուն դէմքերով», Հոկտեմբեր 1999, թիւ 13. Յունուար 2000, թիւ 14:

5. «Անյայտ մնացած եգիպտահայ արձակագիր մը», Ապրիլ 2000, թիւ 15:

6. «Փրոֆ. Տոքթ. Վահագն Տատրեանի դասախօսութիւնը», Յուլիս 2000, թիւ 16:

7. «Ակադեմիկոս Գրիգոր Խանջեան», Յուլիս 2000, թիւ 16:

8. «Ընդունելութիւն ի պատիւ Աննա Մայիլեանի», Հոկտեմբեր 2000, թիւ 17:

9. «Քերթուածին եւ բանաստեղծին մասին», Հոկտեմբեր 2000, թիւ 17:

10. «Հեղինակային համառօտ բառացուցակ Պատկերաչարքի դժուարիմաց բառերուն», Հոկտեմբեր 2000, թիւ 17:

11. «Carzou ուրուատեսիլ տիեզերքի նկարիչը», Հոկտեմբեր 2000, թիւ 17:

12. «Դէպի հազարամեակներ...», Յունուար 2001, թիւ 18:

13. «Լատինագէտ Վարդապետը պարգեւատրուած», Յունուար 2001, թիւ 18:

14. «Ագաթանգեղոս. պարկեշտագեղ հոփսիմէի վկայաբանութիւնը», Ապրիլ 2001, թիւ 19:

15. «Քրիստոսի Խաչազգեաց վկաները», Ապրիլ 2001, թիւ 19:

16. «Է. դարու հայկական ճարտարապետութեան յուշարձաններ», Յուլիս 2001, թիւ 20:

17. «Փարաւոնեան Եգիպտոսի գրական նմոյշներ», Յուլիս 2001, թիւ 20:

18. «Եգիպտահայ դիմաստուերներ. ծանօթ եւ անծանօթ գորգանկարիչը», Յունուար 2002, թիւ 22:

*Տեղեկատուի* մէջ, բացի վերոյիշեալներէն, ելլելով խմբագրապետի իր պաշտօնէն, թողած է նաեւ անստորագիր գրութիւններ, ինչպէս նաեւ *Տեղեկատու* ստորագրութեամբ զանազան յօդուածներ:

Ուղեղի արիւնահոսութեան հետեւանքով, 2012 Սեպտեմբեր 18-ին Գէորգեան կը փոխադրուի Հելիոպոլիս հիւանդանոց(20): Քանի մը շաբաթ այնտեղ մնալէ ետք, երկարատեւ բուժումի համար կը տեղափոխուի Իտալական Հիւանդանոց, ուր գրեթէ լքուած վիճակի մէջ կ'ապաստանի մինչեւ այսօր իր տիկնոջ եւ զաւակին հոգատարութեան ներքոյ:

Իր հիւանդութենէն քիչ ժամանակ առաջ, անձնական հարուստ գրադարանը կը նուիրէ Հելիոպոլսոյ ՀԲԸՄիութեան: Յոյսով եմ, անոր վերջնական դասակարգումէն ետք կը հրապարակուի ցուցակը եւ գիրքերը մատչելի կը դառնան ընթերցողներուն: Արդեօք իր ինքնագիրները կը գտնուի՞ն այնտեղ:

(Վերջ 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

20. «Եգիպտահայ բանասէր Տիգրան Գէորգեան հիւանդացած», *Զարթօնք*, չաբաթաթերթ, 4 Հոկտեմբեր 2012, թիւ 1691, էջ 3:

# ԳԱՀԻՐԷ

# ԵԳԻՊՏՈՍԻ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ՀՆԳԱՄԵԱԿԸ

2011 Յունուար 25-ին, խումբ մը երիտասարդ աքթիւիսթներ խաղաղ ցոյցեր սկսան Հոսնի Մուպարաքի բռնապետական համակարգին դէմ, որոնք շուտով վերածուեցան համաժողովրդական յեղափոխութեան: 18 օր տեւած յեղափոխական շարժումը աւարտեցաւ Փետրուար 11-ին՝ Մուպարաքի հրաժարականով եւ երկիրին բարիքները յափշտակած իր ընտանիքին վերացումով: Յայտարարուեցաւ զինուորական դրութիւն:

Յեղափոխութեան յատկապէս առաջին թէժ շրջանին (Յունուար 28-ին եւ անոր յաջորդած քանի մը օրերը), ոստիկանական մահացու հարուածներուն զոհ գնաց շուրջ 850 ցուցարար-յեղափոխական: Վիրաւորուեցաւ աւելի քան վեց հազար անձ՝ որուն մէկ մասը մշտական վնասուածքով:

Յեղափոխութեան ընթացքին գտնուեցան նաեւ կացութիւնը շահագործող անձեր ու կազմակերպութիւններ: Մոհամէտ էլՊարատէի՝ Ատոմական Ուժանիւթի Միջազգային Գործակալութեան նախկին ընդհանուր տնօրէն, Նոպէլի խաղաղութեան մրցանակակիր եւ միլիառատատէր Ժորժ Սորոսի պաշտպանեալ, իր եւրոպական նստավայրէն տեսնելով Յունուար 25-ի յաջողութիւնը, վստահաբար ոչ առանց Սորոսի դրդումով, աճապարեց ժամանել Գահիրէ մասնակցելու Յունուար 28-ի ցոյցերուն, միակ նպատակ մը ունենալով յետագային դառնալ երկիրի նախագահ: Մահմետական Եղբայրները՝ յեղափոխական գաղափարներէ խիստ հեռու կանգնած աջակողմեան-պահպանողական խմբաւորում մը, Յունուար 28-ին որոշեցին իջնել Թահրիր հրապարակ, ուր մնացին մինչեւ յեղափոխութեան աւարտը: Նակիպ Սաուիրիս՝ նէօլիպերալ դրամատէր մը, որուն ձեռնարկութիւնները Եգիպտոսի մէջ մեծապէս վնասուած էին Կամալ Մուպարաքի նոր դրամատէրերու քաղաքականութեան պատճառով, նպատակ ունենալով յեղաշրջել Կամալի վարչակարգը (նէօլիպերալ դրամատէր մը կրնայ յեղաշրջող ըլլալ բայց ոչ երբեք յեղափոխական, քանզի ժամանակակից յեղափոխական իրական շարժումները նոյն այդ նէօլիպերալիզմի դէմ կ'ըլլան), դրամական աջակցութիւն ցուցաբերեց Թահրիրի ցուցարարներուն՝ հրապարակին մէջ բեմահարթակ եւ յարակից սարքաւորումներ տեղադրելու համար: Իսմայիլ Սերակէլտին՝ Միջազգային Պանքայի նախկին փոխ տնօրէն (Միջազգային Պանքա եւ յեղափոխութիւն անհամատեղելի են), Աղեքսանդրիոյ Մատենադարանի տնօրէն եւ Սուզան Մուպարաքի բացառիկ հովանաւորեալ, որ քսան հազար տոլար ամսականով (բացի այլ կողմնակի հսկայ շահոյթներէ) հանգիստ նստած է Մատենադրանի գահին վրայ եւ բազմիցս մամուլով բացայայտօրէն գովերգած է Սուզան Մուպարաքի մշակութասիրութիւնը, յանկարծ իր լեզուն հեղեղեց յեղափոխական բառերով, գովերգեց երիտասարդներուն քաջասրտութիւնը, Մատենադարանին երկայնքով փռել տուաւ եգիպտական հսկայ դրօշակ մը: Կարեւոր է այն կէտը՝ որ այս ամենէն աւելի հակայեղափոխականները *ստիպուեցան* խօսիլ յեղափոխութեան անունով:

Յեղափոխութեան ազդեցութիւններէն մէկն էր ասիկա: Յետագային, այս չորսին ճակատագիրներն ալ տարբեր եղան: էլՊարատէի լրիւ ձախողեցաւ: Մահմետական Եղբայրները հասան ժամանակաւոր յաջողութեան: Սաուիրիս վերադարձաւ իր ամբողջ դրամատիրական անյագութեամբ: Սերակէլտին պահպանեց իր նախկին դիրքն ու կչիռը իշխանութիւններուն մօտ:

Հակառակ այս, ինչպէս նաեւ ուրիշ, միջամտութիւններէն, յեղափոխականացած ժողովուրդն էր որ կրցաւ տապալել աշխարհի ամենաբռնապետ նախագահներէն մէկը: Իսկ ինչ կատարուեցաւ Փետրուար 11-էն ետք, բոլորովին ուրիշ պատմութիւն է:

«Զ».

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ ԿՈՉ ԵՆ ԱՆՈՒՄ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԱՍՈՐԻՆԵՐԻ ՈՉՆՉԱՑՄԱՆ ՀԱՐՑԸ

18 Յունուար 2016, epress.am

Միջազգային հանրութիւնը որեւէ իրական քայլ չի ձեռնարկում ոչնչացման եզրին գտնուող ասորիների փրկութեան ուղղութեամբ: Մերձաւոր Արեւելքում ասորիների վիճակի թեմայով Յունուարի 18-ին Երեւանում կայացած մամուլի ասուլիսի ժամանակ նման յայտարարութիւն է արել ՀՀ ԳԱԱ պատմութեան ինստիտուտի աւագ գիտաշխատող Անահիտ Խոսրոեւան:

Ասուլիսի մէկ այլ մասնակից, «Աթուռ» ասորական ասոցիացիայի նախագահ Արսէն Միխայլովն, իր հերթին, Հայաստանի իշխանութիւններին կոչ է արել ասորիների ցեղասպանութեան հարցը բարձրացնել միջազգային մակարդակով՝ նրանց ամբողջական ոչնչացումը կանխելու համար:

Խոսրոեւայի խօսքով՝ Սիրիայի 35 ասորաբնակ գիւղերից վտարուել է շուրջ 100 հազար մարդ, որոնցից 500-ը գերի է վերցուել: 130 ասորի, յաւելել է գիտաշխատողը, մինչ օրս գտնւում է «Իսլամական պետութեան» զինեալների ձեռքում, իսկ գերիների մի մասին հրապարակային մահապատժի են ենթարկել. «Իրաքում էլ վիճակը նոյնն է. Ասորիներն այնտեղ ապրում են տարրական յարմարութիւններից զուրկ եկեղեցիներում, փախստականների ճամբարներում»:

Խոսրոեւան ուշադրութիւն է հրաւիրել իրավիճակի վերաբերեալ Ամերիկայի Միացեալ Նահանգների «զարմանալիօրէն տարբերակուած» քաղաքականութեանը, որը չի ճանաչում քրիստոնեայ ասորիների ցեղասպանութիւնը, մինչդեռ ճանաչում է եզդիներինը:

«Անցեալ տարուայ ընթացքում 100 000 մահմեդականներ, որոնք չեն հալածւում իրենց երկրի իշխանութիւնների կողմից, ստացել են վիզա ԱՄՆ մտնելու համար, բայց քրիստոնեաներին չի թոյլատրւում այդ երկիր մտնել»,- ասել է բանախօսը:

Մերձաւոր Արեւելքում ասորիների կեանքը բարդացնող մէկ այլ գործօն Խոսրոեւան անուանել է տեղի քրդական բնակչութեանը, որը ձգտում է ստեղծել «Սիրիայի եւ Իրաքի Քրդստան»: Գիտաշխատողը նշել է, որ տուեալ հանգամանքի հետեւանքով շատացել են բախումները ասորիների ու քրդերի միջեւ, որոնք փորձում են առաջիններին դուրս մղել իրենց բնակավայրից:

Ասուլիսի մասնակիցները կոչ են արել քուրդ եւ ասորի ժողովուրդներին դադարեցնել պայքարը միմեանց միջեւ ու ուժերը միացնել ընդհանուր թշնամու՝ ԻԼԻՊ-ի դէմ:

# ԵԽԽՎ-Ն ԲԱԺՆՈՒԱԾ՝ ՀԱԿԱՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱՁԵՒԵՐՈՒՆ ՇՈՒՐՋ

Հակահայկական բանաձեւ մը ընդունուած, միւսը մերժուած է: Սթրասպուրկի մէջ Յունուար 26-ին տեղի ունեցաւ Եւրոխորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽԽՎ) հերթական նստաշրջանը, որուն ընթացքին քննարկումի եւ քուէարկութեան դրուեցան բրիտանացի երեսփոխան Ռոպըրթ Ուոլթըրի մշակած *Լեռնային Ղարաբաղի եւ Ատրպէյճանի միւսգրաւուած տարածքներուն մէջ բռնութեան աճը* խորագրեալ զեկոյցը, ինչպէս նաեւ պոսնիացի երեսփոխան Միլիցա Մարքովիչի մշակած *Ատրպէյճանի սահմանամերձ շրջաններու բնակիչները միտումնաւոր զրկուած են ջուրէն* փաստաթուղթի նախագիծը: Զոյգ զեկոյցները մշակած երեսփոխանները չեն այցելած իրենց զեկոյցներուն մէջ ներառուած աշխարհագրական շրջանները, ուստի եզրակացութիւնները մեծ մասամբ հիմնուած են ատրպէյճանական կողմի տրամադրած տուեալներուն վրայ: Ուոլթըրի զեկոյցը մերժուեցաւ, անոր կողմ քուէարկեցին 66 երեսփոխաններ, 70 ուրիշներ դէմ արտայայտուեցան իսկ 45-ը ձեռնպահ մնացին: Մարքովիչի զեկոյցը ընդունուեցաւ 98 թեր քուէներով, թէեւ 71 երեսփոխաններ դէմ արտայայտուեցան եւ 40 ուրիշներ ձեռնպահ մնացին: Մարքովիչ զեկոյցը ներկայացնելով պնդեց, որ այդ կը կրէ մարդասիրական բնոյթ: Երեսփոխանը սակայն չմոռցաւ յիշեցնել, որ Մինսքի խմբակը 20 տարի չէ կրցած կարգաւորել ղարաբաղեան հակամարտութիւնը:

Ընդհանուր առմամբ, Եւրոպայի միաւորուած ձախերու, ընկերվարականներու, Եւրոպական Ժողովրդական Կուսակ-

 4

# ԼՈՒՍԱՆԿԱՐԻՉՆԵՐ՝ ՅԱԿՈԲ ԵՒ ՆՈՒՊԱՐ ՔԵՐՈԲԵԱՆՆԵՐ

Քանի մը ամիս առաջ Գահիրէի իր բնակարանին մէջ մահացած գտան եգիպտահայ լուսանկարիչ Նուպար Քերոբեան՝ սեփականատէրը Էմատ Էլ-Տին փողոցին վրայ հաստատուած (չատոնց արդէն գործելէ դադրած) հանրայայտ Studio Kerop-ին: Նուպար իր արուեստը ժառանգած էր հօրմէ՝ Յակոբէն:

Իրենց անունները տեղ գտած են եգիպտացի լուսանկարիչներու նուիրուած Մարիա Կոլիայի աշխատութեան մէջ (2010).

«Յակոբ Քերոբեան (1891-1978) աւելի արհեստավարժ էր քան արուեստագէտ: 1920-30-ականներուն եղած է արքայական լուսանկարիչ Հանսելմանի օգնականը: Ան կը հետեւի չուկայի պահանջքին՝ արտադրելով ոչ-սուր, տիպական-չափաձեւով ինքնութեան լուսանկարներ: Ան աշխատած է նաեւ Սեմիրամիս եւ Շեփըրտ պանդոկներուն համար, իրենց յայտաբարութիւններուն եւ գրքոյկներուն համար արտադրելով ծանուցողական պատկերներ: Արուեստանոցը տակաւին կը գործէ իր որդի Նուպարին (ծն. 1936) կողմէ, որ ստանձնեց փոխադրութիւնը արկղային քամերայէն դէպի ձեռքի քամերան, եւ սեւ-ճերմակէն դէպի գունաւորը, ցուցաբերելով բաւական խանդավառ փրոֆեսիոնալիզմ բայց նուազ անհատականութիւն» (Maria Golia, *Photography and Egypt*, London: Reaktion Books Ltd, 2010, էջ 108):

Աւետիս Եափուճեան 1981-ին տուած է իրենց ամփոփ կենսագրականները.

«[Յակոբ Քերոբեան] ծնած է Ամասիա: Եգիպտոս եկած է 1913 Թ. Պալքանեան պատերազմին: Նախ Աղեքսանդրիա՝ Ալպանի մօտ աշխատած է: 1915 Թ. փոխադրուած է Գահիրէ եւ աշխատած է արքայական պալատի լուսանկարիչ Հանցլմանի մօտ: 1932 Թ. բացած է իր անձնական լուսանկարչատունը: 1933 Թ. լուսանկարչական արուեստի Գահիրէի Ա. Սալոնին մասնակցած է եւ մրցոյթէ դուրս պատուոգրի արժանացած:



*Մենա Հաուս պանդոկ: Լուսանկար՝ Յակոբ Քերոբեան, 1948*

«Այժմ իր գործը կը շարունակէ որդին՝ Նուպար, ծնած 1936 Թ. Գահիրէ, եւ հօր մօտ գործի սկսած է 1956 Թ.: 1966 Թ. Նուպար Քերոբեան լուսանկարչական հաւաքական ցուցահանդէսի մը մասնակցած է եւ արժանացած Պատուոգրի:» (Աւետիս Եափուճեան, *Եգիպտահայ մշակոյթի պատմութիւն*, Գահիրէ, Հայ Ազգային Հիմնադրամ, 1981, էջ 417-418):

Յակոբի եւ Նուպարի լուսանկարները իրենց արժէքը ունին eBay-ի մէջ եւ հետեւողները կրնան հաստատել՝ որ անոնք գտած են իրենց գնորդները: Կը ներկայացնենք eBay-ի մէջ



*Զակազիկի հայոց Ս. Խաչ եկեղեցին: Լուսանկար՝ Նուպար Քերոբեան, 1960*

վերջերս վաճառքի դրուած հօր եւ որդիի երկու լուսանկար, մէկը՝ Գահիրէի Մենա Հաուս պանդոկը (գինը՝ 20 ամերիկեան տոլար), միւսը՝ Զակազիկի հայոց Ս. Խաչ եկեղեցին (գինը՝ 10 ամերիկեան տոլար):

Նուպար Քերոբեան չունէր ժառանգորդ որպէսզի տէր կանգնէր իր լուսանկարներուն: *Զահակիր* հաւաստի աղբիւրէ կ'իմանայ՝ թէ իր բնակարանը պահուող լուսանկարներուն ամբողջ հաւաքածոն եւ մեծաքանակ նեկաթիւները յանձնուած են աղբամանի անվերադարձ տնօրինութեան:

**ԽՈՀԵՐ**

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԹՈՒԱՅՆԱՑԱԾ ՄԱՄՈՒԼԻՆ ՄԱՍԻՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

## Ա. ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԹՈՒԱՅՆԱՑԱԾ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՄԱՑԱՆՑԻ ՄԷՋ

Շուրջ երկու տարի է Հայաստանի Ազգային Գրադարանը (ՀԱԳ), սկսած է իր պաշտօնական կայքէջին մէջ անճար ներբեռնումի (download) համար վերբեռնել (upload) հայերէն մամուլը իր սկզբնաւորութենէն ի վեր (*Ազդարար*, Մադրաս, 1794) մինչեւ այսօր: Բացառիկ կարեւորութիւն ունեցող հսկայական աշխատանք մըն է ասիկա, որ բնականաբար տակաւին երկար տարիներ պիտի տեւէ: Արդէն տեղակայուած եւ pdf ձեւաչափով մատչելի են մեծ քանակութեամբ հաւաքածոներ(1):

ՀԱԳ-ը գլխաւորաբար կը վերբեռնէ իր սեփական հաւաքածոն իսկ պակասները կը փորձէ համալրել ուրիշ գրադարաններէ, ինչպէս՝ Երեւանի Մատենադարանէն, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանէն, Էջմիածնի Մատենադարանէն, Վենետիկի եւ Վիեննայի Մխիթարեաններէն, ինչպէս նաեւ Անթիլիասի, Ռուսաստանի, Փարիզի, Պէյրութի եւ Պոլիսի գրադարաններէն: Այսինքն, մեզի՝ ընթերցողներուս, խնայել կու տայ հսկայական դրամ, անգին ժամանակ եւ անկարելի ճամբորդութիւններ:

Բայց անհատներ եւս կրնան ունենալ մամուլի հազուագիւտ հաւաքածոներ: Ըստ կայքէջի տուեալներուն(2), ցարդ միակ անհատը որ իր անձնական հաւաքածոյէն թուայնացած նմոյշներ տրամադրած է կը հանդիսանայ եգիպտահայ գիրքերու եւ մամուլի ամբողջական երկու մատենագիտութիւններու հեղինակ, *Յուսաբեր* օրաթերթի նախկին խմբագիր Սուրէն Պայրամեան, որուն ուղարկած թուայնացած հաւաքածոներէն ներկայիս տեղադրուած ու ներբեռնելու մատչելի է հետեւեալ ընտրանին. *Նոր-կեանք* (Աղեքսանդրիա, 1897), *Նշոյլներ* (Գահիրէ, 1916), *Զարթօնք* (Գահիրէ, 1919), *Արարատ* (Գահիրէ, 1924), *Կայծ* (Աղեքսանդրիա, 1924), *Ովասիս* (Գահիրէ, 1927), *Խարոյկ* (Գահիրէ, 1932), *Նոր սերունդ* (Գահիրէ, 1932), *Դալարիք* (Աղեքսանդրիա, 1939), *Մեծ Մասիս* (Գահիրէ, 1939), *Տեղեկատուութիւն* (Աղեքսանդրիա, 1946), *Նոր արուեստ մշակոյթ* (Գահիրէ, 1947), *Շարժում* (Գահիրէ, 1960), *Պարբերաթերթ Հայ Կաթողիկէ Պատրիարքարանի* (Գահիրէ, 1971), *Լրոյ գիր մեծի տէրութեանն Օսմանեան* (Կ. Պոլիս, 1832): Ես, անձամբ, այս բոլորը ներբեռնեցի յիշեալ կայքէջէն, թէեւ անոնց բնագիրները կը գտնուին իմ բնակարանէս քալելով ճիշդ տասը վայրկեան հեռաւորութեան վրայ: Հայաստանի մէջ տեղադրուածը աւելի դիւրամատչելի եղաւ ինծի քան տասը վայրկեան «հեռու» գտնուող բնագիրը: Տարածութիւններու տեղաչա՞րժ թէ ուլթոփիական տարածութիւններու ստեղծում: Ամէն պարագայի, ասիկա կրնայ խթան հանդիսանալ ուրիշ անհատներու եւս իրենց հաւաքածոներուն թուայնացումները դարձնելու հանրային սեփականութիւն:

ՀԱԳ-ը վերբեռնած է նաեւ *Արեւ* օրաթերթին առաջին քսան տարիները (1915-1934), վերտառելով հետեւեալ ազդարարութիւնը. «1915-2000թթ. հաւաքածուի թուայնացուած տարբերակը Ազգային գրադարանին է նուիրել ՀԲԸՄ Կահիրէի մասնաճիւղը: Թուայնացուած տարբերակը պահպանւում է թերթի հրատարակիչ հիմնադրամի (ՀԱՀ, Կահիրէ) մօտ:» Անկասկած ասիկա Գահիրէի ՀԲԸՄ-եան կողմէ կարեւոր ներդրում մըն է գրադարանին համար: Բայց, անկախ բարի կամեցողութենէն, այս հաւաքածոն ունի կարեւոր թերացում մը: Կար ժամանակ մը, երբ եգիպտահայ ողբացեալ ազգային մը ազատ եւ անվերահսկելի ելումուտ ունէր եգիպտահայ սակաւաթիւ, բայց լաւ դասաւորուած գրադարանները: Եւ բնաւ ալ գաղտնիք չէ, որ ան մամուլի հազուագիւտ կազմածոներէն կը մկրատէր յօդուածներ եւ ամբողջական էջեր: Շատեր գիտէին ասոր մասին, բայց այդ ժամանակ ոչ ոք կը փափաքէր բարձրաձայնել ու արգիլել, քանի որ վերջապէս քանդուողը ընդամէնը գիտելիք էր, քանի որ կատարուածը գիտելիքային մաքրագործում մըն էր միայն: Դժբախտաբար, ինչպէս ըսի՝ անկախ եգիպտահայ թուայնացնողներու բարի կամեցողութենէն, այս մկրատում-կտրատումները (թիւով բաւական շատ) արտացոլուած են հաւաքածոյին մէջ:

## Բ. ԲԱՑ ԳԻՏԵԼԻՔ՝ ԻՐԱԿԱՆՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ՊԱՏՐԱՆՔ

Որքան ծանօթ եմ, համացանցին մէջ անվճար ներբեռնելու համար մամուլի ամբողջական ու անսահման հաւաքածոներ չկան: Ֆրանսայի Ազգային Գրադարանը (Bibliothèque nationale de France)(3), Ամերիկայի Քոնկրէսի Գրադարանը (Library of Congress)(4) եւ ուրիշ գրադարաններ անվճար ներբեռնումի համար կը տրամադրեն հսկայ քանակութեամբ մամուլի հաւաքածոներ, այնքան որքան հեղինակային իրաւունքի սահմանած թուականները կ'արտօնեն: Միւս կողմէն, Newspapers.com(5), GenealogyBank.com(6) եւ Newspaper Archive(7) վճարովի կը տրամադրեն ամերիկեան մամուլի մինչեւ այսօր լոյս տեսնող հաւաքածոներ՝ անկախ հեղինակային իրաւունքի սահմանափակումներէն, քանի որ իրաւունքի տէրերը կը վճարուին ըստ համաձայնութեան:

ՀԱԳ-ի պարագային, բարեբախտաբար, հեղինակային իրաւունք գոյութիւն չունի: Այնտեղ կը տեղադրուի բոլորը՝ հինէն մինչեւ այսօր: Գիտելիքը կը դառնայ անսահմանափակ ու հանրամատչելի: Այս բոլորը առիթ կու տայ որոշ մտորումներու.

1. ՀԱԳ-ը մամուլը անվճար տեղադրելով համացանցին մէջ, իր տնօրինութեան տակ գտնուող գիտելիքը՝ գրադարանային *փակ* գիտելիքը, կը վերածէ *բաց* գիտելիքի: Անցում գրադարանային *փակ* սեփականութենէն դէպի հանրային *բաց* սեփականութիւն:

2. Բաց հասկացողութիւնը միշտ եղած է յառաջադէմ միտքի մոթիֆներէն մէկը, բայց անոր ձեւականացումը եւ կաղապարումը յետարդիականութեան «յայտնագործութիւն»-ներէն մէկն է: Բաց հասկացողութեան հիմնարկացումներէն (institutionalisation) մէկը կարելի է յիշատակել վարկածական ու արկածախնդրական դրամատիրութեան յափշտակիչ «արքայ» Ժորժ Սորոսի հիմնած յայտնի Բաց Հասարակութեան Հիմնադրամները (Open Society Foundations): Բաց հասարակութեան ընկերութականացումներէն (corporating) մէկը համացանցն է, որ կը ներկայանայ իբրեւ բաց գիտելիքի կրող ու տարածող: Որքա՞ն կրնայ ընկերութեան մը հիմնած ու արտօնած համացանցը համարուիլ բաց գիտելիքի կրող: Քանի որ թեքնիքական ու վարչական կառոյցն ամբողջութեամբ հսկայ ընկերութիւններու ձեռքը կը գտնուի, եւ քանի որ բոլոր այդ ընկերութիւնները անխտիր կը գտնուին իրենց համապատասխան պետութիւններու արտօնութեան կամ հրամանատարութեան տակ, հետեւաբար պետութիւններու եւ գաղտնի գործակալութիւններու հսկողութիւնը իւրաքանչիւր բաց գիտելիքի վրայ բացարձակ է, անոնք թեքնիքական կարելիութիւն ունին արտօնելու ու արգիլելու որեւէ գիտելիք, միաժամանակ դիտելու իւրաքանչիւր վերբեռնում-ներբեռնում, գիտնալու իւրաքանչիւր անձի կարդացած, դիտած կամ ներբեռնած կայքէջը: Google Search-ը կրնայ նոյնիսկ որոշել որ նիւթը դնել սկիզբը (Wikipedia, YouTube, *New York Times*, Amazon.com, eBay, եւ այլն միշտ կը յայտնուին սկիզբը), որ մէկը մէջտեղը եւ վերջը, եւ որ մէկը բոլորովին մատչելի չդարձնել: Այսօր, Google կը թուայնացնէ աշխարհի բոլոր հին ու նոր հրատարակութիւնները (գիրք, մամուլ, եւ այլն): Ասիկա հազար տարի առջեւ դիտող ծրագիր մըն է: Տպագրուած գիրքին ու մամուլին թուղթը՝ մանաւանդ աւելի նոր շրջաններու իր քիմիական բաղադրիչով, յաւերժական չէ: Մինչ գիրքերը, մանաւանդ նորերը, հարիւրամեակներու ընթացքին կրնան քայքայուիլ, Google պիտի որոշէ ո՛ր գիրքը համացանցով տարածել եւ ո՛ր մէկը չտարածել: Ասիկա կը կոչուի բաց գիտելիք:

3. Համացանցային գիտելիքը «բաց» կը կոչեն անոնք՝ որոնք արդէն կարելիութիւն ունին գործածել համացանցը: *Wikipedia*-ի պարզագոյն հաշուարկով՝ 2014 թուականին, աշխարհի

4




## ԶՈՒՐԱԲԵԱՆ.-

### «ՀԱՆՐԱՔՈՒԷԻՑ ՅԵՏՈՅ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԹՈՒԼԱՑԵԼ Է»

1

Սարգսեանն ընտրութեան առաջ էր կանգնած. կամ կորցնել իշխանութիւնը, կամ կառավարման խորհրդարանական ձեւի անցնելով՝ պահպանել այն, բայց արդէն թուլացած: «Եթէ Սերժ Սարգսեանը հնարաւորութիւն ունենար պահպանելու նախագահական կառավարումը եւ այդ համակարգում իր անձնական իշխանութիւնը, նա երբեք հանրաքուէի չէր գնայ: Նա գնացել է իր իշխանութիւնը թուլացած տարբերակով պահպանելու ուղիով: Նրան անհրաժեշտ էր անձայն բաց անել իր իշխանութեան ուղին եւ երկրորդ՝ վերահսկուող ընդդիմութիւն ստեղծել եւ յաղթել 2017-ի խորհրդարանական ընտրութիւններին՝ չնորհաւորանքներ ստանալ այդ վերահսկուող ընդդիմութիւնից», – նշել է Զուրաբեանը:

### ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ՊԱՐՏՈՒԵԼ Է, ՀԱՅԱՍՏԱՆԸ՝ ՍՏԱՑԵԼ ՅԱՂԹԱՆԱԿԻ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆ

1

Միաժամանակ, այդպիսով էապէս փոխել հայ-ռուսական յարաբերութեան բնոյթն ու բերել այնպիսի պայմանների, որ վասալայինից վերածեն իսկապէս միջպետական տնտեսա-քաղաքական բնոյթ ունեցող եւ հաւասարապէս նաեւ Հայաստանի շահն ու անվտանգութիւնը յարգող ու պաշտպանող յարաբերութեան, այդպիսով այդ յարաբերութիւնը համաշխարհային անվտանգութեան տեսանկիւնից ապակառուցողական եւ ապակայունացնող բնոյթից բերելով կառուցողական դաշտ եւ դարձնելով միջազգային անվտանգութեան կովկասեան համակարգի կարեւոր դետալ:

Բանն այն է, որ անկախ հանգամանքից՝ կ'ունենայ Հայաստանն այդ խնդիրները լուծելու կարողութիւն, թէ ոչ, այդ խնդիրներն այդուհանդերձ լուծուելու են՝ համաշխարհային տնտեսութեան, քաղաքականութեան, քաղաքակրթութեան առաջատարները լուծելու են այդ խնդիրները:

Հարցն այստեղ այն է, թէ Հայաստանն այդ լուծման արդիւնքում ինչ կարգավիճակ է ստանալու՝ բարեխղճօրէն խնամուող հիւանդի՞, թէ աշխարհքաղաքականութեան կենսունակ մասնակցի: Հայաստանեան ներկայիս «էլիտայի» պակերացումների առումով, մեծ է մտավախութիւնը, որ այդ «էլիտային» կ'երջանկացնի «բարեխղճօրէն խնամուող հիւանդի կարգավիճակն» էլ:

Կա՞ն Հայաստանում համաշխարհային եւ տարածաշրջանային դերակատարման եւ միջազգային գործընկերութեան այլ պատկերացումներ:

(http://www.lragir.am/index/arm/0/comments/view/126389)

### ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԹՈՒԱՅՆԱՑԱԾ ՄԱՄՈՒԼԻՆ ՄԱՍԻՆ

3

բնակչութեան 60 տոկոսը համացանց չէ ունեցած(8): Ուրեմն, բաց գիտելիքը բնակչութեան 40 տոկոսին համար է միայն:

4. Համացանցը անվճար գործողութիւն մը չէ: Համացանցը բաց գիտելիքին համար եղած բարեսիրական տարածութիւն մը չէ: Մէջտեղը կանգնած է դրամը՝ վճարողը եւ ստացողը: ՀԱԳ-ը, անկախ իր կամքէն եւ գիտակցութենէն, իր գիտելիքը դարձնելով բաց, կենդանի կը պահէ համացանցը: Այդ նոյն բաց ու անվճար գիտելիք ստացողը պէտք է վճարէ գնելու համար համակարգիչ եւ ունենալու համար համացանցային միացում: Միաժամանակ, այդ նիւթը (pdf) պահելու (կամ պահել տալու) համար ՀԱԳ-ը իր նուիրատուներուն միջոցով մեծ գումարներ կը ծախսէ, գործի անցընելով համացանցային ամբողջ համակարգ մը:

Այս բոլորէն ետք ի՞նչ ընել: Զգնե՞լ մամուլը համացանցի մէջ: Անշուշտ՝ ո՛չ: Պէ՛տք է դնել: Ուրիշ հարց է գիտակցիլ համացանցի համակարգային կառուցուածքը՝ ո՛չ իբրեւ բաց գիտելիքի արտադրող, այլ դրամատիրութեան փայփայած գիտելիքի դասակարգային մատուցումի ամրագրող: Եթէ դիմադրութիւն մը պէտք է կատարուի (բայց ինչո՞ւ համացանցը հանգիստ գործածողները դիմեն դիմադրութեան), ան պէտք է ուղղուի հասնելու համակարգիչ-համացանցի առաւելագոյն մատչելիութեան: Բայց այս պարագային ի՞նչ գործով պիտի զբաղուին բաց գիտելիքի պատրանքին տակ գերշահոյթ ապահովող Apple, IBM, Microsoft եւ միւսները:

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Որոնումի եւ ներբեռնումի համար՝ http://tert.nla.am:
2. Անդ:
3. http://gallica.bnf.fr/:
4. http://chroniclingamerica.loc.gov/:
5. https://www.newspapers.com/:
6. http://genealogybank.com:
7. http://newsapaperarchive.com:
8. ‘Internet’, *Wikipedia*, մուտքագրում՝ 21 Յունուար 2016, https://en.wikipedia.org/wiki/Internet:

### ԵԽԽՎ-Ն ԲԱԺՆՈՒԱԾ՝ ՀԱԿԱՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱՁԵՒԵՐՈՒՆ ՇՈՒՐՋ

2

ցութեան ներկայացուցիչները դէմ արտայայտուեցան հակահայկական զեկոյցներուն: Հետաքրքրական երեւոյթով մը, Եւրոխորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովին մէջ Թուրքիան ներկայացնող հայազգի երեսփոխան Մարգար Եսայեան կողմ քուէարկեց հակահայկական երկու բանաձեւերուն: Քննարկումներուն ընթացքին գերմանացի երեսփոխան Տորիս Պարնէթ յայտարարեց, որ Մինսքի խմբակին զուգահեռ հոլովոյթ սկսելով վտանգուած կ'ըլլայ կացութիւնը: Ան կոչ ուղղեց դէմ քուէարկել հակահայկական փաստաթուղթերուն ու զանոնք վերադարձնել յանձնաժողովներու քննարկումին: Շուէտը ներկայացնող երեսփոխան Լոտա Ֆորնաւրէ Ճոնսըն նշեց, որ Մինսքի խմբակը ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորման միակ ձեւաչափն է: Մէկ այլ գերմանացի երեսփոխան Աքսէլ Ֆիշըր յայտարարեց, որ արցախեան խնդիրը մաս չի կազմեր ԵԽԽՎ-ի իրաւասութիւններուն:

### ՍԷՅՐԱՆ ՕՀԱՆԵԱՆԻ՝ ԲՌՆԱԲԱՐԵԼ ԵՒ ԱԿԱՆՋ ԿՏՐԵԼ ՍՊԱՌՆԱՑՈՂ ՊԱՇՏՊԱՆՆԵՐԸ. ԻՆՉ Է ՍՊԱՍՒՈՒՄ ՇՈՒՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ

1

*խրտանիչ», 2 Սեպտեմբեր 2013,* iLur Բլոգ, *http://www.ilur.am/ news/view/17826.html:)*

*«Յիշեցնենք, որ այս նոյն Արման Յարութիւնեանն էր, որ Մարտի 1-ին դաժան ծեծի էր ենթարկել մեր թերթի փոտոլրագրող Գագիկ Շամշեանին, նրա ձեռքերը կապել ձեռնաշղթաներով եւ Կարապի Լճի մօտից մինչեւ Ազատութեան հրապարակ քարշ տուել բերանքսիվայր», կը գրէ Թագուհի Թովմասեան: «Իսկ մինչ այդ էլ Փետրուարին 6-րդ վարչութեան շէնքում անթաքոյց լկտիութեամբ ծեծի էր ենթարկել նաեւ ՀՀ գլխաւոր դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանին: Բայց դրանից յետոյ էլ գնացել եւ բողոք էր գրել Գագիկ Ջհանգիրեանի վրայ, թէ իբր Ջհանգիրեանն է իրեն հարուածել եւ բութ ցաւ պատճառել: Հենց այդ բողոքի հիման վրայ էլ Գագիկ Ջհանգիրեանը դատապարտուեց 3 տարուայ ազատազրկման, սակայն աւելի ուշ համաներմամբ ազատ արձակուեց:» (Թագուհի Թովմասեան, «Շուշանի ամուսինը իր գործից աւել «Պորշին» է սիրում», Զորրորդ իշխանութիւն, 19 Դեկտեմբեր 2009, No. 196:)*

---

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 4 Փետրուար 2016

**ՏՕՆ Է ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԶՕՐԱՎԱՐԱՑՆ ՄԵՐՈՑ ՀԱԶԱՐ ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՎԵՑ ՎԿԱՅԻՑՆ, ՈՐՔ ԿԱՏԱՐԵՑԱՆ Ի ՄԵԾԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ**

Նոյն օրը

**ՏՕՆ Է ԱՆՈՒԱՆԱԿՈՉՈՒԹԵԱՆ ՆՈՐԻՆ ՎԵՀԱՓԱՌՈՒԹԵԱՆ**

**Տ. Տ. ԳԱՐԵԳՆԻ ԵՐԿՐՈՐԴԻ**

ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

Այս առիթներով Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Յընթացս Ս. Պատարագի պիտի կատարուի

**Հոգեհանգստեան Պաշտօն**

Վասն համօրէն ննջեցելոց ազգիս հայոց,

Իսկ

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի

**Հայրապետական Մաղթանք**

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 9.00-ին
Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին
Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:
Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

---

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋ**

**Կիրակի, 14 Փետրուար 2016-ին**
**Նախորդ օրը Շաբաթ, 13 Փետրուար 2016-ին**
**Երեկոյեան ժամը 5-ին,**

Տեղի պիտի ունենայ նախատօնակ եւ մոմավառութիւն՝
Ի Յիշատակ Քրիստոսի Քառասնօրեայ Գալստեանն ի Տաճարն:
Նաեւ, յետ նախատօնակի, խարոյկ պիտի վառուի, որը կը խորհրդանշէ մարդոց հոգիները լուսաւորող Քրիստոսի Լոյսը:

Ծանուցում:- Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճար ժողովուրդին երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:
Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 3:45-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

---

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՄԵՐ ԲԱՐԵՊԱՇՏ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ**
**ԱՅՍ ՏԱՐԻ ՄԵԾ ՊԱՀՔԸ ԿԸ ՍԿՍԻ ՓԵՏՐՈՒԱՐ 8-ԷՆ**
**Մեծ Պահոց շրջանին առաջին ԽԱՂԱՂԱԿԱՆ ԵՒ ՀԱՆԳՍՏԵԱՆ ժամերգութիւնները.**

**1. Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԱՌԱՋՆՈՐԴԱՆԻՍՏ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ**
**Ուրբաթ, 12 ՓԵՏՐՈՒԱՐ -ին, երեկոյեան ժամը 5-ին:**
**2. ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՏՈՒՌԻՆ ՄԷՋ**
**Հինգշաբթի, 18 ՓԵՏՐՈՒԱՐ -ին, երեկոյեան ժամը 5-ին:**

*Այնուհետեւ յաջորդող ամէն **ՀԻՆԳՇԱԲԹԻ եւ ՈՒՐԲԱԹ** օրերուն երեկոյեան ժամը 5-ին, կը հրաւիրենք ներկայ ըլլալու հոգեզմայլ եւ հոգեպարար սոյն արարողութիւններուն, որպէսզի աղօթքի միջոցով Աստուծոյ խաղաղութիւնը եւ Սէրը մշտապէս բնակութիւն հաստատեն մեր հոգիներէն ներս:*

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

---

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327, Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1760 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՓԵՏՐՈՒԱՐ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٦٠ الخميس ١١ فبراير ٢٠١٦


## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԻ 18-ԱՄԵԱԿԸ

ԱՐԾՐՈՒՆ ՊԷՊԱՆԵԱՆ

18 տարի առաջ, Փետրուարի 3-ին, մասնակցում էի մի բազմամարդ խնջոյքի: Երբ հեռուստատեսութեամբ հնչեց Տէր-Պետրոսեանի հրաժարականի ելոյթը, խնջոյքի սրահը բռնուեց ուրախ եւ հրճուալից կանչերով, ասես մարդիկ փրկուել էին անխուսափելի թուացող կործանումից:



Ես այդ լուրով ուրախանալու շատ աւելի մեծ պատճառ ունէի, քան խնջոյքի մասնակիցներից որեւէ մէկը, քանի որ իշխանական վերնախաւի որոշ անդամների կողմից հրահրուած ինտրիգների պատճառով թողել էի աշխատանքս ու դարձել գործազուրկ: Եւ այժմ իմ երբեմնի հակառակորդներն այդ հրաժարականից յետոյ պաշտօնազրկուելու էին: Բայցեւայնպէս, խնջոյքականների հրճուանքին միանալու փոխարէն սրահում յայտարարեցի, որ իրենց ուրախութիւնն անտեղի է եւ մի որոշ ժամանակ անց զղջալու են իրենց այժմեան հրճուանքի համար, քանի որ աւելի վատ իրականութիւն են ունենալու Տէր-Պետրոսեանի հեռանալուց յետոյ:

Ինչո՞ւ էի այդպէս կարծում:

Ցտապեմ ասել, որ ամենեւին նպատակ չունեմ ՀՀ առաջին իշխանութիւնների, ում ճանաչել եմ անչափ մօտիկից, գնահատականը տալ, բայց այդ հրաժարականը նպաստել է մեր իրականութեան աղճատման ահագնացմանը:

Երրորդ հանրապետութեան հռչակումով սկսուեց կացութաձեւի փոփոխութիւն՝ անցում կապիտալիզմի: Այդ ընթացքը կարգաւորելի դարձնելու համար իշխանութիւնները կազմեցին ապագայ կապիտալիստների ցանկ, նրանց անունով ձեւակերպեցին սեփականաշնորհման ենթակայ ձեռնարկութիւններն ու կառոյցները: Բարձր իշխանաւորներից շատերը կամ դրանց չյայտարարուած փայատէր էին, կամ տէրը: Առաջացող նորահարուստները, որոնք ընտրուել էին ամենեւին ոչ մտաւորական շերտերից, գտնւում էին բարձրագոյն նոմենկլատուրայի վերահսկողութեան տակ: Այս փուլը քաղաքագիտութեան մէջ յայտնի է նոմենկլատուրայի կապիտալիզմ անուանումով: Նոմենկլատուրան սահմանափակում էր նորահարուստների քաղաքական նկրտումները: Եղան մի քանի դէպքեր, երբ պատերազմի շնորհիւ կամ տնտեսական գործունէութեան միջոցով ունեցուածքի տէր դարձած որոշ ունեւորներ ինքնագլուխ որոշեցին մտնել քաղաքականութիւն եւ պատգամաւոր դառնալ, սակայն իշխանութիւնները զէնքի սպառնալիքով եւ ուղղակի բռնութեամբ նրանց դուրս մղեցին քաղաքական պայքարից:

Տէր-Պետրոսեանի հրաժարականից յետոյ այդ սահմանափակումները վերացան, նորահարուստները ակտիւացան, նրանցից շատերը հրաժարուեցին արդէն նախկին դարձած իշխանաւորների հետ ունեցած բանաւոր պայմանաւորուածութիւններից: Նոր իշխանութիւնները նաեւ իրենց նորահարուստներին աճեցրին իւրային միջավայրից:

Նորահարուստները մտան քաղաքականութիւն, ունեցուածքի շնորհիւ տիրապետող դարձան կեանքի բոլոր ասպարէզներում, գնովի դարձրին արդարադատութիւնը: Կապիտալիզմի կայացման փուլի տրամաբանութիւնն այնպիսին է, որ այդ փուլում ունեցուածքի տէր ու գերիշխող են դառնում, որպէս կանոն, ներքին շերտերի ներկայացուցիչները, ազգի եւ հայրենիքի թուլացուած զգացողութիւններ ունեցող մարդիկ, որոնք քաղաքագիտութեանը յայտնի են «նոր մարդ» անուանումով: Այդ շերտի ի յայտ գալը յանգեցնում է սոցիալական աղէտի, ժողովրդի այլասերման, հակաարժէքի տիրապետութեան: Աղէտի խորութեան աստիճանը կախուած է ստորին կրքերի յաղթարշաւը կանխելու ունակ գործօնների առկայութիւնից: Տէր-Պետրոսեանի իշխանութիւնը որոշակիօրէն կաշկանդում էր այդ կրքերը: Պատմութիւնը եթէներ չի սիրում, սակայն եթէ չլինէր այդ հարկադիր հրաժարականը, ապա թերեւս մեր հանրային կեանքն այս աստիճան աղճատուած չէր լինի:

**ԹԵՐԹ**.am

(http://www.tert.am/am/author/5/1920712)

## ՋԷՅՄՍ ՈՒՈԼՐԻՔ

## «ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԿԱՐԳԱՒՈՐՄԱՆ ԲԱՆԱԼԻՆ ՆԱԽԱԳԱՀՆԵՐԻ ՁԵՌՔԻՆ Է»

Lragir.am

Եւրոպայի Անվտանգութեան եւ Համագործակցութեան Կազմակերպութեան (ԵԱՀԿ) Մինսկի խմբի համանախագահներն առաջիկայում առաջարկներ կը ներկայացնեն ղարաբաղա-ադրբեջանական շփման գծում եւ Հայաստանի ու Ադրբեջանի սահմանին բախումների ռիսկի կրճատման ու երկխօսութեան խթանման հնարաւորութիւնների վերաբերեալ: Այս մասին «Արմենպրես»-ի հետ հարցազրոյցում ասել է ԵԱՀԿ Մինսկի խմբի ԱՄՆ համանախագահ Ջէյմս Ուորլիքը՝ անդրադառնալով նաեւ տարածաշրջան կատարելիք հնարաւոր այցին ու Հայաստանի ու Ադրբեջանի նախագահների հնարաւոր հանդիպման կազմակերպմանը:

**–ՀՀ արտաքին գործերի նախարար Էդուարդ Նալբանդեանը վերջերս ունեցած մամուլի ասուլիսի ժամանակ յայտնեց, որ առաջիկայում հնարաւոր է հանդիպում ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահների հետ: Մօտ օրերս ծրագրե՞լ էք այցելել տարածաշրջան:**

– Համանախագահները մօտ օրերս տարածաշրջան այցելելու պլաններ չունեն, սակայն յուսով ենք, որ մօտ ապագայում կը լինի այդպիսի այց: Մեր նպատակն այն է, որ քննարկենք կարգաւորման շուրջ բանակցութիւններն առաջ տանելու հնարաւորութիւնները: Մենք նաեւ առաջարկներ ենք ներկայացնելու բախումների ռիսկի կրճատման ու երկխօսութեան խթանման հնարաւորութիւնների վերաբերեալ:

**– Եւրոպայի Խորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովը (ԵԽԽՎ) խորհրդարանական վեհաժողովից առաջ, որտեղ պէտք է քննարկուէին երկու հակահայկական բանաձեւեր, ԵԱՀԿ Մինսկի խումբը հանդէս եկաւ յայտարարութեամբ՝ յորդորելով զերծ մնալ այնպիսի քայլերից, որոնք կը վնասեն ԵԱՀԿ Մինսկի խմբի մանդատին կամ կը բարդացնեն ընթացող բանակցային գործընթացը: Ադրբեջանը խստօրէն դատապարտեց ՄԽ այդ յայտարարութիւնն ու անգամ մեղադրեց համանախագահներին կրօնական խտրականութեան մէջ: Ինչպէ՞ս կը մեկնաբանէք ադրբեջանական կողմի նման պահուածքը:**

– Մենք դէմ չենք Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան քննարկմանը տարածաշրջանային եւ միջազգային կազմակերպութիւններում եւ պաշտպանում ենք իրենց ցանկութեամբ հարցեր առաջ քաշելու Հայաստանի ու Ադրբեջանի իրաւունքը: Յայտարարութեամբ համանախագահները ցանկանում էին շեշտել, որ Մինսկի խումբը շարունակում է մնալ բանակցային գործընթացի այն ձեւաչափը, որ ընդունել են կողմերը: Յուսով ենք, որ Հայաստանն ու Ադրբեջանը հաւատարիմ կը մնան բանակցային կարգաւորման շուրջ

↳ 4

## ՓԱՐԱ ՄԸ ՔԸՐՔԻՑ. ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԵԼՔ Է ՓՆՏՐՈՒՄ ՔԸՐՔՈՐԵԱՆԻ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԻՑ «ՓԱՅ» ՈՒՆԵՆԱԼՈՒ

armtimes.com

*Հայաստանի իշխանութիւնները ելքեր են փնտրում հասանելի լինել ամերիկահայ միլիարդատէր, ՀՀ ազգային հերոս Քըրք Քըրքորեանի թողած ժառանգութեան՝ մեր երկրին բաժին հասնող գումարին: Վերջերս հրապարակում եղաւ, որ ԱՄՆ-ում գաղտնիութեան պայմաններում բացուել է Քըրք Քըրքորեանի կտակը, որի համաձայն, բարերարը յանձնարարել է վաճառել իր ողջ ունեցուածքն ու գոյացած գումարն ուղղել բարեգործութեանը: Կտակի համաձայն, այդ գումարով պէտք է ֆինանսաւորուեն այն ծրագրերը, որոնք գործել են Քըրքորեանի կենդանութեան օրօք, կամ այն կազմակերպութիւնները, որոնց բարերարը գումար է յատկացրել:*

*Յայտնի է, որ Քըրքորեանի «Լինսի» հիմնադրամը 2000-ականների սկզբին ճանապարհաշինարարութեան համար Հայաստանին 200 միլիոն դոլար էր յատկացրել: Այդ գումարով ոչ միայն ճանապարհներ են կառուցուել, այլ վերանորոգուել են դպրոցներ ու մշակութային տներ: Մինչ այդ բարերարը 45 միլիոն դոլար էլ յատկացրել էր աղէտի գօտու բնակարանաշինութեան համար: Որոշ տեղեկութիւնների համաձայն, «Լինսի» հիմնադրամն իր գոյութեան 22 տարիներին Հայաստանին յատկացրել է մինչեւ մէկ միլիարդ դոլար: Բայց Քըրքորեանը զայրացել եւ ֆինանսաւորումը դադարեցրել էր, երբ տեղեկացել էր, որ ՀՀ պաշտօնեաները գրպանել են իր յատկացրած վերջին 200 միլիոն դոլար գումարի մի զգալի մասը:*

*2011թ. բարերարը փակեց «Լինսի» հիմնադրամը՝ հրաժարուելով Հայաստանին որեւէ ցենտ տալ: Լուծարման պահին հիմնադրամի հաշուին մնացած 200 միլիոն դոլարը նա ուղղեց ոչ թէ Հայաստանին, այլ Կալիֆորնիայի համալսարանի Լոս Անջելէսի մասնաճիւղին: Այդ ժամանակ նոյնպէս կարծիքներ էին հնչում, թէ բարերարը նեղացած է ՀՀ իշխանութիւններից իր յատկացրած գումարները գրպանելու համար, այդ պատճառով էլ այդ գումարից որեւէ յատկացում չկատարեց: Եւ հիմա ակնկալւում է, որ Քըրքորեանի մօտ 3 միլիարդ դոլար կարողութիւնից Հայաստանին պէտք է յատկացուի մօտ 200 միլիոն դոլար, գուցէ աւելին:*

*Քըրքորեանի թողած ժառանգութեան բաշխման մասին որեւէ ստոյգ տեղեկութիւն չկայ եւ շրջանառուող լուրերը դեռ ճշտուած չեն: Այդուհանդերձ, Քըրքորեանի փողերի օգտագործման շուրջ ՀՀ իշխանական վերնախաւում արդէն որոշակի կրքեր են բորբոքւում: Մեր աղբիւրների պնդմամբ, Քըրք Քըրքորեանը պատուիրել է, որ այդ գումարը յատկացնելու, բաշխելու կամ օգտագործելու վրայ ՀՀ իշխանութիւնները չպէտք է որեւէ վերահսկողութիւն ունենան: Հայաստանին յատկացուող գումարով իրականացուող ծրագրերի վերահսկողութեան համար պէտք է ստեղծուի յատուկ վերահսկող մարմին, որի անդամներից եւ ոչ մէկը չպէտք է լինի ՀՀ պաշտօնեայ: Վերահսկումը պէտք է լինի հիմնականում ԱՄՆ քաղաքացիներից, միգուցէ նաեւ ամերիկահայերից կազմուած խորհրդի միջոցով: Գումարների տրամադրման կամ այդ գումարներով իրականացուող ծրագրերի վերահսկողութեան մէջ առանցքային դեր է ունենալու նաեւ Հայաստանում ԱՄՆ դեսպանատունը:*

# ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ ԵՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԵՐԹՕՆԸ
## (ծննդեան 85-ամեակին առիթով)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Նախկին եգիպտահայ, այժմ աւստրալիահայ պատմաբան եւ գրող՝ Աւետիս Եափուճեան, ծնած է 1931 Յունուար 10-ին, Գահիրէ:

1965-1967-ին եղած է Գահիրէի *Արեւ* օրաթերթի օգնական խմբագիր, 1967-1990-ին՝ գլխաւոր խմբագիր: 1990-ին գաղթած է Սիտնի, միանալու արդէն այնտեղ հաստատուած իր զաւակներուն: 1998-ին ստանձնած է Սիտնիի *Միութիւն* ամսագիրի խմբագրութեան պաշտօնը: Գահիրէի եւ Սիտնիի մէջ ծաւալած է հասարակական լայն գործունէութիւն:

Եղած է համոզուած Ռամկավար մը եւ այս առումով կը տարբերի այն պատեհապաշտ կուսակցականներու շարանէն՝ որոնք կուսակցական ամպիոնը կ'օգտագործեն ամրապնդելու իրենց անձնական ու դասակարգային դիրքը: Դարձեալ ի տարբերութիւն շատ ուրիշ կուսակցականներէ, ան կուսակցական մտածողութիւնը չէ դարձուցած կղզիացած խմբային կեթոյի, այլ զայն փորձած է մեկնաբանել ընդհանուր հայկական ու մարդկային բնաբաններու մէջ՝ առանց կուսակցապաշտութեան, առանց ազգայնապաշտութեան, այլ սիրով ու համոզումով իր ընդունած պատմագրական ու գաղափարական դիրքորոշումներուն նկատմամբ: Ան գաղափարէն կը մեկնի դէպի կուսակցութիւնը եւ ոչ թէ կուսակցութենէն դէպի գաղափարը: Այս երկուքին միջեւ տարբերութիւնը շատ մեծ է:

Ունի բեղմնաւոր ու յորդառատ գրիչ մը: Հեղինակն է անհամար յօդուածներու զանազան լրագիրներու եւ հանդէսներու մէջ՝ *Փունջ* (Գահիրէ), *Զարթօնք* (Պէյրութ), *Պայքար* (Պոսթոն), *Կեանք եւ գիր* (Գահիրէ), *Շիրակ* (Պէյրութ), *Նոր օր* (Լոս Անճելըս), *Նայիրի* (Պէյրութ), *Միութիւն* (Սիտնի) եւ մանաւանդ ու գլխաւորապէս՝ *Արեւ* (Գահիրէ): *Արեւի* մէջ է որ տպագրած է իր յօդուածներուն մեծամասնութիւնը:

Հրատարակած է շուրջ 40 պատմագրական եւ թարգմանական հատորներ:

Եափուճեանի գրութիւններուն մէջ կարեւոր տեղ կը գրաւեն *Արեւի* մէջ հրատարակած թերթօնները: Թերթօնը եղած է հայկական եւ ոչ-հայկական մամուլի կարեւոր սեռ մը՝ որ խսպառ վերացած է այսօր: Թերթօնի գաղափարը եւրոպական մամուլին մէջ սկսած է ԺԹ. դարու սկիզբը եւ շուտով որդեգրուած հայկական մամուլին կողմէ, դառնալով անոր անբաժանելի եւ մշտաներկայ մասը: Մեծ մասամբ գրական ու գրական-թարգմանական, բայց նաեւ պատմագրական ու վաւերագրական, հայկական թերթօնին շնորհիւ գրուած ու առաջին տպագրութեան արժանացած են Րաֆֆիի, Երուանդ Օտեանի, Յակոբ Օշականի եւ բազմաթիւ այլ մտաւորականներու սքանչելի գործեր: Մամուլին մշակութային-գեղագիտական երանգ մը տալէ բացի, թերթօնը նաեւ մեծապէս կապուած էր յիշողութեան պահպանումի եւ մարզանքի հետ: Ըլլալով երկարատեւ՝ ան կրնար ունենալ հարիւրաւոր շարունակութիւններ, զայն կարողապէս ընթերցելու համար անհրաժեշտ էր յիշողութիւն, յիշողութիւն մը՝ որ մեկնաբանական էր, տարածային ու գծային, եւ ոչ թէ քանակապէս կուտակուած ու ուղղահայեաց, ինչպէս ժամանակակից լրատուութիւնն է:

Անցեալ դարու 80-ականներէն սկսեալ՝ երբ վերջնականապէս տիրակալեց չոր, կարճ, կտրուկ, «առարկայական» լուրերու տարափը, երբ մշակութային-լրատուական հեռատեսիլի կայանները փոխարինուեցան միայն ու միայն քաղաքական կայաններով (CNN, BBC, Al-Jazeera, France 24 եւ այլն)՝ «քաղաքական»-ի վերնախաւային սահմանափակ ու յարձակողական ըմբռնումով, երբ դուրս մղուեցան մշակութային ու գաղափարական տարածութիւնները՝ յանուն քաղաքական կոչուածին, թերթօնը անյայտացաւ մամուլէն: Յիշողութեան սպանութիւն մըն էր ասիկա նախ եւ առաջ: Յիշարժանութիւնը, մեկնաբանական յիշողութիւնը եւ յիշողութեան երկարատեւութիւնը անհամատեղելի էին թէ՛ նէօլիպերալիզմի շուկայական ճշացող անփութութեան եւ թէ՛ յետարդիականութեան մեթապատումներուն (metanarratives) հետ: Հայերը՝ որոնք առանց դժուարութեան ընդունած էին թերթօնի գաղափարը, նոյնքան դիւրութեամբ հրաժարեցան անկէ՝ մէյ մը որ արեւմուտքը այդպէս որոշեց: Հայերը եւս անխօս կերպով արգիլեցին թերթօնը, շատ արագ կերպով գերքաղաքականացնելով իրենց հիմնահոսանքային մամուլը:



Եափուճեանի մեկնումով 1990-ին, *Արեւի* թերթօնները նախ սկսան քանակապէս խիստ նուազիլ, ապա լիովին անհետացան: Եթէ մեկնած չըլլար Սիտնի, արդեօք ան պիտի յաջողէ՞ր մինչեւ վերջ պայքարիլ պահպանելու համար թերթօնի գոյութիւնը եւ դիմադրել նէօլիպերալ-յետարդիականութիւնը, թէ՞ ինք եւս տեղի պիտի տար «ժամանակ»-ի պահանջներուն:

Գաղափար մը տուած ըլլալու համար Եափուճեանի նախասիրութիւններուն մասին, ստորեւ կը ներկայացնեմ *Արեւ* օրաթերթին մէջ իր ստորագրած թերթօններուն ցանկը.

**1. Կրիկորի Շնիրսոն, *Արամ Խաչատուրեան*, անգլերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 1 Օգոստոս 1962, ԽԸ. տարի, թիւ 13.273 մինչեւ 18 Սեպտեմբեր 1962, ԽԸ. տարի, թիւ 13.312 (40 շար.):

Շնիրսոնի գիրքը առաջին անգամ լոյս տեսած է ռուսերէն լեզուով 1958-ին (Մոսկուա, Սովեցքի Քոմփոզիթոր): Յաջորդ տարի լոյս տեսած է անոր անգլերէն թարգմանութիւնը (Grigory Shneerson, *Aram Khachaturyan*, translated by Xenia Danko, Moscow: Foreign Languages Publishing House, 1959), որուն հիման վրայ կատարուած է Եափուճեանի թարգմանութիւնը:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1962:

**2. Վիքթոր Կարտոն (Վահրամ Կաքաւեան), *Կեանքի կանաչ արեւը*, ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 18 Յունուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.414 մինչեւ 11 Ապրիլ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.483 (68 շար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Victor Gardon, *Le Vert soleil de la vie*, Paris: Stock, 1959:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1963:

**3. Վիքթոր Կարտոն (Վահրամ Կաքաւեան), *Զմրուխտակիր ասպետը*, ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 6 Ապրիլ 1964, ԽԹ. տարի, թիւ 13.784 մինչեւ 21 Հոկտեմբեր 1964, Ծ. տարի, թիւ 13.951 (163 շար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Victor Gardon, *Le Chevalier à l'émeraude*, Paris: Stock, 1961:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1964:

**4. Ափթըն Սինքլէր, *Շամբուտը*, անգլերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 2 Օգոստոս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.185 մինչեւ 6 Դեկտեմբեր 1965, ԾԱ. տարի, թիւ 14.292 (105 շար.):

Անգլերէն բնագիրը՝ Upton Sinclair, *The Jungle*, Doubleday, Jabber & Company, 1906:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1965:

Այս թերթօնը երեւութապէս ուղղակի առնչութիւն չունի հայութեան հետ: Բայց թարգմանիչը հետաքրքրական կերպով այս առնչութիւնը կը գտնէ այլ հարթակի վրայ:

Վէպը կը հետեւի ընկերվարական (socialist) ուժեղ ուղղութեան՝ բնաբան ունենալով ամերիկեան կառավարական եւ գործարարական փտածութիւնը եւ դասակարգային ահռելի չահագործումները: Ան կը պատմէ Լիթուանիայէն Զիքակօ գաղթած անձի մը մասին, որ իր եւ իր ընտանիքին համար գոյատեւումի ծանր եւ անելանելի պայքար կը մղէ: Ահաւասիկ թարգմանիչին մեկնաբանութիւնը.

«Իր *Շամբուտը* (Տը Ճընկըլ) գրած է ասկէ վաթսուն տարի առաջ, երբ ինք 26 տարեկան էր: Այս վէպը այդքան հին ըլլալով հանդերձ, զարմանալիօրէն այնքա՜ն այժմէական է այսօր, մեզ՝ մանաւանդ եգիպտահայերուս համար, երբ արտագաղթը կը քայքայէ մեր այս բարգաւաճ գաղութը:

«*Շամբուտը* պատմութիւնն է լիթուան- ➪ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՇՈՐ ՀԱՐԿԱՏՈՒՆԵՐԸ 2015-ԻՆ ԱՒԵԼԻ ՔԻՉ ՀԱՐԿ ԵՆ ՎՃԱՐԵԼ

*Հայաստանի հազար խոշոր հարկատուները 2015-ին աւելի քիչ հարկ են վճարել ոչ միայն 2014-ի, այլեւ՝ 2013 թուականի համեմատ:*

*Ֆինանսների նախարարութեան հրապարակած տուեալների համաձայն, անցած տարի առաջին հազար խոշոր հարկատուները վճարել են 696.5 միլիարդ դրամ, ինչը 2014-ի նոյն ցուցանիշից պակաս է 4 միլիարդով: Բայց եթէ Հայաստանի խոշորագոյն ընկերութիւնների վճարած հարկերը վերածում ենք դոլարի, ապա անկումը աւելի ակնառու է դառնում՝ անցած տարի վճարել են 1 միլիարդ 457 միլիոն դոլար, 2014-ին՝ 1 միլիարդ 684, իսկ 2013-ին՝ 1 միլիարդ 623 միլիոն դոլար, եւ սա այն պարագայում, երբ, դարձեալ ըստ պաշտօնական տուեալների, 2009 թուականից յետոյ Հայաստանում միշտ տնտեսական աճ է եղել:*

*Ֆինանսների նախարարութեան տուեալները վկայում են, որ խոշորագոյն ներկրողը՝ «Ալեքս Գրիգ» ընկերութիւնը, ով ըստ լրատուամիջոցների Հայաստան մի շարք ապրանքների ներկրման մոնոպոլիստն է եւ կապւում է Ազգային Ժողովի մեծահարուստ պատգամաւոր Սամուէլ Ալեքսանեանի հետ, 2015 թուականին վճարել է 38.1 միլիոն դոլար, ինչը ամենափոքր ցուցանիշն է 2009 թուականի տնտեսական ճգնաժամից ի վեր: Անգամ յետճգնաժամային առաջին տարում՝ 2010-ին, «Ալեքս Գրիգ»-ը վճարել էր մօտ 6 միլիոն դոլարով աւելի՝ 44 միլիոն դոլար:*

*2015-ին՝ 2014-ի համեմատ, դոլարով արտայայտուած քիչ հարկ են մուծել նաեւ միւս խոշոր ներկրողները՝ «Նատալի ֆարմ», «Քեթրին գրուպ» եւ այլ ընկերութիւնները:*

# ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԴԱՍԱԽՕՍԸ ՄՏԱՀՈԳՈՒԱԾ Է ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿՈՎ. ՆՐԱՆԻՑ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Է ԽՆԴՐՈՒՄ

8 Փետրուար 2016, armtimes.com - *Սերժ Սարգսեանի նախկին դասախօսներից մէկը՝ Վոլոդեա Յովսէփեանը, ցանկութիւն ունի հանդիպել նրա հետ, յայտնել մեր երկրի տնտեսութեան վերաբերեալ իր մտահոգութիւններն ու նաեւ ներկայացնել համապատասխան առաջարկներ: Պրոֆեսոր Յովսէփեանը, սակայն, ամիսներ շարունակ չի կարողանում Սերժ Սարգսեանի մօտ ընդունելութեան արժանանալ, ուստի որոշել է նրան դիմել Առաւօտի խմբագրութիւն ուղարկուած փոքրիկ բաց նամակով, որը ներկայացնում ենք ստորեւ:*

*«Յարգարժան պարոն նախագահ, նամակի հեղինակը Ձեր քաղաքատնտեսութեան նախկին դասախօս, ներկայումս Երեւանի Պետական Համալսարանի տնտեսագիտութեան ու կառավարման ֆակուլտէտի պրոֆեսոր Վոլոդեա Յովսէփեանն է: Արդէն 4-5 ամիս է՝ սահմանուած կարգով դիմել եմ՝ Ձեզ հետ հանդիպում կազմակերպելու խնդրանքով, սակայն ոչ մի դրական պատասխան չեմ ստացել:*

*Պարոն նախագահ, ես աւելի քան 50 տարուայ աշխատանքային փորձ ունեմ, շատ մտահոգուած եմ մեր տնտեսութեան զարգացման հարցերով: Ներկայումս մեր տնտեսութիւնում առկայ են բաւականին չօգտագործուող հնարաւորութիւններ, որոնց յայտնաբերումը եւ կիրառումը կը նպաստի Հայաստանի տնտեսութեան ակտիւացմանը, ուստի խնդրում եմ Ձեզ չմերժել հանդիպում կազմակերպելու իմ խնդրանքը»,- ասւում է բաց նամակում:*

# «ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԱՆՐԱՅԻՆ ՓՐԿՈՒԹԵԱՆ ՃԱԿԱՏԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ ՄԱՐՏԻ 1-Ի ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻ ՕՐԱԿԱՐԳԻ ՁԵՒԱՒՈՐՄԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

3 Փետրուար 2016 - Երեւան

«Նոր Հայաստան» հանրային փրկութեան ճակատի Քաղաքական Խորհուրդը, Հայաստանում սահմանադրականութիւն հաստատելու եւ Մարտի 1-ի կազմակերպիչներին ու կատարողներին պատասխանատուութեան ենթարկելու պայքարին նոր լիցք հաղորդելու, ժողովրդին մոբիլիզացնելու եւ միջազգային հանրութեան աջակցութիւնն ստանալու համար կարեւորում է ընդդիմութեան համախմբումը:

Այդ նպատակով «Նոր Հայաստան»-ի Քաղաքական Խորհուրդը բանակցութիւններ է նախաձեռնում չահագրգիռ քաղաքական եւ հասարակական ուժերի հետ՝ ս.թ. Մարտի 1-ի հանրահաւաքը միասնական օրակարգով անցկացնելու ուղղութեամբ:

«Նոր Հայաստան»-ը առաջարկում է, մասնաւորապէս, հանրահաւաքի օրակարգում ընդգրկելու համար քննարկել հետեւեալ պահանջների վերաբերեալ հարցերը.

1. Միջազգային պատժամիջոցների ենթարկել Մարտի 1-ի, իշխանութեան խւրացման, 2015 թ. Դեկտեմբերի 6-ի ➪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՅԱԿՈԲ ՄՈՎՍԷՍ.- «ԱՌԱՆՑ ՀՈՒՄԱՆԻՏԱՐ ԿՐԹՈՒԹԵԱՆ ՆԱԵՒ ԼԱՒ ՆԱԽԱՐԱՐ ԼԻՆԵԼ ՉԻ ԿԱՐՈՂ»

30 Յունուար 2016, armtimes.com - Գրականութեան եւ հրապարակախօսութեան ոլորտում 2015 թուականի պետական մրցանակը շնորհուեց բանաստեղծ, թարգմանիչ Յակոբ Մովսէսին՝ Եօթներորդ որսորդութիւն ժողովածուի համար: Յանձնաժողովի ընտրութիւնն այս անգամ ոչ ոք կասկածի տակ չառաւ ու չվիճարկեց:



Բայց նոյնիսկ պետական մրցանակի արժանանալը չի նպաստում հանրութեան շրջանում տուեալ գրքի նկատմամբ հետաքրքրութեան մեծանալուն, եւ մարդիկ չեն շտապում գրախանութներ՝ ձեռք բերելու, ծանօթանալու ընտրեալ գրական գործին: Այլ է իրավիճակը, երբ պետական մրցանակի շնորհումն աղմկահարոյց է դառնում, երբ յանձնաժողովի որոշման յետեւում նշմարւում են մութ ու անարդար մղումներ: Այդպէս եղաւ նախորդ մրցանակաբաշխութեան ժամանակ, երբ պետական մրցանակի արժանացաւ բանաստեղծ Էդուարդ Միլիտոնեանի Է ժողովածուն, ու նրա ստեղծագործութիւնները դարձան փնտրուած: Եւ ստացւում է՝ յաճախ հետաքրքրական է դառնում բացասական արձագանք գտած գրականութիւնը:

Յայտնի լինելով հանդերձ, որ մեր օրերում գիր ու գրականութիւնը յետին պլան է մղուած՝ բանաստեղծ Յակոբ Մովսէսից երէկ հետաքրքրուեցինք, թէ նկատո՞ւմ է հանրային հետաքրքրութեան աճ, երբ խօսքը վերաբերում է պետական մրցանակի արժանացած գրքին: «Չեմ նկատում, եւ որեւէ մրցանակ չի կարող ընթերցողական հետաքրքրութիւն գրգռել: Մրցանակը վայրկենական մատնացուցում է, որը աւելի շատ պոէզիան է պատուի արժանացնում, քան պոէտին: Այդ մասն ուղղուած է մի տեղ, որտեղ եթէ բանաստեղծ կայ կանգնած, մի պահ երեւում է, եթէ բանաստեղծ չկայ կանգնած, ոչինչ էլ չի երեւում»,- պատասխանեց նա:

Գրահրատարակչութեամբ զբաղուող մարդիկ նոյնպէս առիթի դէպքում տխուր ցուցանիշներ են բերում՝ յայտարարելով, թէ տարեկան վաճառուող գրքի տպաքանակն ընդամէնը մի քանի տասնեակով է հաշւում: Այս դէպքում ստացւում է՝ իր ստեղծած գրականութիւնը միայն ապագայի՞ ընթերցողին է ուղղուած: Այս հարցին ի պատասխան՝ բանաստեղծն արձանագրեց. «Ընթերցանութեան խնդիրը մեզանում լուսաւորչական-հումանիտար խնդիր է. չի կարող գիրք կարդացուել մի երկրում, որտեղ հումանիտար կրթութիւն չկայ: Ի դէպ՝ առանց դրա նաեւ լաւ բանկիր, գործարար, հաշուապահ ու նախարար էլ չի կարող լինել»:

Յակոբ Մովսէսի բանաստեղծութիւնների Եօթներորդ որսորդութիւն ժողովածուն պետական մրցանակի արժանացնելու՝ յանձնաժողովի ընտրութիւնը անարդարացի չհամարեցին ու չդատապարտեցին նոյնիսկ այն գրողները, որոնք նոյնպէս յաւակնում էին պետական մրցանակի: Բայց բանաստեղծին անարժան չհամարելով հանդերձ, շատերը գտնում են, որ այդ եւ այդ տեսակ այլ մրցանակաբաշխութիւններն անառողջ մթնոլորտ են ստեղծում, անտեղի կրքեր բորբոքում, ու շատ աւելի ճիշտ կը լինէր, եթէ այդ մրցանակաբաշխութիւններն ընդհանրապէս գոյութիւն չունենան: Պետական մրցանակի դափնեկրից փորձեցինք պարզել՝ կիսո՞ւմ է այդ տեսակէտը: «Միանգամայն կիսում եմ: Աշխարհում ամէնուրեք գոյութիւն ունեն մրցանակներ, բայց դրանք շնորհում են ոչ պետական մարմինները կամ քաղաքական հաստատութիւնները: Եթէ այդպէս լինի նաեւ Հայաստանում, ամէն ինչ տեղը կ'ընկնի»,- նշեց Յակոբ Մովսէսը:

Իմիջիայլոց, նկատենք, որ նրա գիրքը կոչւում է ոչ թէ Եօթերորդ որսորդութիւն, ինչը պահանջում են գրական հայերէնի կանոնները, այլ՝ Եօթներորդ որսորդութիւն, ինչի առաջին բառը նման է գրաբարին՝ հայոց հին եւ չգործածուող գրական լեզուին, բայց գրաբար չէ: Ու քանի դեռ լեզուի պետական տեսչութիւնը «եօթերորդ» բառի նոր ուղղագրութիւն չի սահմանել, ինչքան էլ որ միւս տարբերակը գուցէ աւելի սիրուն ու բարեհունչ է, Յակոբ Մովսէսին հարցրինք, թէ ինչո՞ւ «եօթներորդ» եւ արդեօք մտավախութիւն չկա՞յ, որ կարող է կրկնուել «ճանԱՊԱՐՀ»-ի յայտնի պատմութիւնը եւ «եօթներորդ» գրութեան ձեւը նոյնպէս դառնայ համատարած սխալի պատճառ:

Յիշեցնենք, որ ժամանակին, երբ փողոցներում տեղադրուած մեծադիր վահանակների վրայ ապահովագրական ընկերութիւններից մէկը բառախաղ էր արել ու ճանապարհ բառը դարձրել «ճանԱՊԱՐՀ», ուսուցիչներն ահազանգում էին, որ աշակերտները նոյնպէս սկսել են բառն այդպէս ⇨ 4

ԽՈՀԵՐ

## ԼԵԶՈՒՆ ԻԲՐԵՒ ԱՇԱԿԵՐՏԻ ԲԱԶՄԱԿԵՑՈՒԹԵԱՆ ԽԹԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Աշակերտը ընտրելու իրաւունք չունի Մանկապարտէզի առաջին օրէն սկսեալ, աշակերտին կը տրուին բացարձակ իրողութիւններ, զորս պէտք է սերտէ առանց թափանցումի:

Ուսուցիչը՝ որ առանց ամսական վճարումի հոգը անգամ չէ դաստիարակ ըլլալու (թէեւ դաստիարակութեան մէջ միշտ սերունդներու համար զոհուողի եւ ազգային դաստիարակչութեան նուիրեալի գաղափարը պէտք է չեշտուի, նոյնիսկ ամսական հսկայական գումարներ ստացողներու պարագային) եւ աշակերտը՝ որ պարտադիր կերպով պէտք է դպրոց երթայ, քանի որ եթէ չերթայ հասարակութիւնը իրեն պիտի համարէ տգէտ, ապուշ, սորվիլ չսիրող, եւ կը ստեղծեն փակ շրջանակ մը ուսուցիչ/աշակերտ ուրուագիծով, այսինքն՝ կը յառաջացնեն սորվեցնող/սորվող պարտադիր յարաբերութիւն մը, փոխանակ, օրինակ, յառաջացընելու մտածելու-առիթ-տուող/մտածող, ընտրութիւն-առաջարկող/ընտրող, վիճաբանութեան-տարածութիւն-բացող/վիճաբանող յարաբերութիւններ:

Աշակերտը պէտք է կատարէ ուսուցիչին թելադրանք-պարտադրանքը, այլապէս կը ստանայ զէրօ: Զէրօ չստանալու համար իրաւունք չունի ինքն իր կողմէն մտածել, իր անձնական համոզումները գրի առնել, այլ պարտաւոր է կրկնել ուսուցիչին տեղեկութիւնները: Իսկ ուսուցիչին տեղեկութիւնները անառարկելի են, միակ են:

«Մէկը հաւասար է մէկի», կ'ըսէ ուսուցիչը: Վերջապէս, ինչպէ՞ս կարելի մէկը հաւասար ըլլալ երկուքի:

«Հարցին ճշմարտութիւնը այն է՝ որ դպրոցներուն, ինչպէս նաեւ մեր ամբողջ դասաւանդումին մէջ, իրականութեան աշխարհը հեռու կը պահենք վերացական աշխարհէն (բացառութեամբ դասագիրքերու մէջ ցրուած քանի մը չնչին ու անտեղի օրինակներէ՝ «կիրառումներ»-ու խաբուսիկ վերնագիրին տակ)», կը գրէ Հարվըրտ ուսանած եւ Պաղեստինը նախընտրած պաղեստինցի դաստիարակ-մտաւորական Մունիր Ֆաշէ եւ կ'աւելցնէ. «Վերացական աշխարհին մէջ մենք յաճախ կը համաձայնինք «փաստեր»-ու մասին, բայց իրական աշխարհին մէջ կը բախուինք բազմաթիւ մեկնաբանութիւններու, իմաստներու եւ այս փաստերը դիտելու կերպերու հետ, հետեւաբար կը վիճաբանինք ու կը կռուինք: Օրինակ, մարդիկ համաձայն են՝ որ մէկը հաւասար է մէկի ճշմարիտ է վերացականութեան մէջ, բայց հակաճառային տրամադրութիւններ եւ տարբեր կարծիքներ կը յայտնուին երբ կ'ըսենք, օրինակ՝ թէ «կիները հաւասար են տղամարդոց», կամ երբ կ'ըսենք՝ «ՄԱԿ-ի մէջ Յորդանանի (երկու միլիոն բնակչութեամբ) համար մէկ քուէն հաւասար է ԱՄՆ-ի (200 միլիոն բնակչութեամբ) համար մէկ քուէի:» Դասաւանդել իմաստներով եւ վերացական աշխարհը յարաբերել իրական աշխարհին հետ մաթեմաթիքը կը դարձնէ աւելի պատշաճ եւ աւելի օգտակար: Բացի այդ, ան կ'օգնէ աշակերտներուն արժեւորել որոշ դատողութիւններ, ինչպէս Այնըշթայնի յաճախ վկայակոչուած դատողութիւնը. «Այնքան ժամանակ որ մաթեմաթիքի օրէնքները կը վերաբերին իրականութեան՝ անոնք վճռական չեն, եւ այնքան ժամանակ որ վճռական են՝ չեն վերաբերիր իրականութեան»:»(1)

Ֆաշէ միշտ շեշտած է այս գաղափարը. «Գրեթէ երեսուն տարի դասաւանդած եմ մաթեմաթիք: Այդ շրջանին աւելցաւ իմ համոզումս, թէ մաթեմաթիքը՝ այնպէս ինչպէս կը դասաւանդուի այսօր, չի նպաստեր ազատագրելու մտածումն ու արտայայտութիւնը այլ մեծ մասամբ կը նպաստէ անոնց սահմանափակումը կեանքի եւ իրականութեան հետ ոչ մէկ կապ ունեցող նեղ ուղիներու մէջ, քանզի սովորաբար կը գտնուի ճիշդ, պատրաստ ու միակ պատասխան մը եւ բացարձակ ու համաշխարհային իմաստ մը: Այս հարցին նկատմամբ ուշադրութիւն հրաւիրելու համար որոշեցի հարցնել պարզ հարցումներ: Միտքն ու արտայայտութիւնը ազատագրելու նպաստով հարցումներէն մէկը կապուած էր 1 թիւին հետ: Կը բարձրացնէի մատիտը եւ կը հարցնէի. «Քանի՞ մատիտ կը բռնեմ»: Պատասխանը միշտ կ'ըլլար. «Մէկ մատիտ»: Ապա կը կոտրէի մատիտը, կը տաշէի կոտրած մասը եւ կը հարցնէի նոյն հարցումը: Իրենց դէմքին կը սկսէր յայտնուիլ շփոթութիւնը: Արդե՞օք առաջին (չկոտրած) մատիտը մէկ հատ էր թէ երկու: Այստեղ արդէն պատասխանները կը ստանային տարբեր ուղղութիւն: Սկիզբի մատիտը կրնայ հաւասար ըլլալ մէկ, երկու, հինգ կամ տասը մատիտի: Ասիկա սկիզբն էր իրենց երեւակայութիւնն ու մտածողութիւնը ազատագրելու պատրաստ եւ բնաբանէն անջատուած պատասխանէ: Սկիզբն էր երեւակայութիւնն ու մտածողութիւնը ազատագրելու որոճումի եւ զգացումները ջնջելու (կամ թմրեցնելու) գործողութենէն, ինչպէս նաեւ յաւակնելէ՝ թէ թիւ 1-ին համար կը գտնուի միակ ու միջազգային իմաստ մը: Երեւակայութիւնը ազատագրելէ եւ զգացումներուն հանդէպ վստահութիւնը վերականգնելէ ետք, իրենց մտածողութիւնը կը սլանար դէպի անսահման հորիզոններ:»(2)

Կրնա՞ք երեւակայել՝ թէ ինչպիսի սերունդ կարելի է կազմել, եթէ աշակերտին տրուի ո՛չ միայն ըստ հարկին *իրապէս* ընտրելու «իրաւունք» այլ մասնաւորաբար բազմազանութիւնը ընդունելու կարելիութիւն: Ընդունիլ՝ որ չկայ մէկ լուծում, մէկ իմաստ, մէկ դրոյթ, ընդունիլ՝ որ մէկը հաւասար կրնայ չըլլալ մէկին:

Առանց հեռուները երթալու, հայերէն լեզուի հետ կապուած որոշ խնդիրներ կրնան այս տեսակ դասաւանդումի ուղեցոյցներ հանդիսանալ: Ստորեւ, քանի մը պարզագոյն եւ դիւրին առաջարկներ՝ որոնք վստահ եմ բոլորովին մերժելի են ուսուցչական աթոռին ամսավճարով յարմարաւէտ նստած ուսուցիչներուն կողմէ եւ անհանդուրժելի՝ իրենց զաւակները թուանշաններու մէջ գնահատել սիրող ծնողքներուն կողմէ:

### 1. ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

Արեւմտահայ ժամանակակից գրական լեզուի ուղղագրութիւնը, օրինակ, կարելի չէ համարել միասեռ: Կը գրուի *ամէնէն* եւ *ամենէն*, *գմբէթ* եւ *գմբեթ*, *երբէք* եւ *երբեք*, *թէզ* եւ *թեզ*, *լեռան* եւ *լերան*, *պատճէն* եւ *պատճեն*, *քօղ* եւ *քող*: Քանի՞ ուսուցիչ պատրաստ է աշակերտին ի սկզբանէ բացատրել՝ որ այս եւ նման բառերը կրնան գրուիլ երկու ուղղագրութեամբ: Քանի՞ ուսուցիչ կրնայ ընդունիլ՝ որ մէկ բառին համար գոյութիւն կրնայ ունենալ աւելի քան մէկ «ճշմարտութիւն»: Շատ քիչ: Մէկը հաւասար է մէկի տեսութիւնը կենդանի է աւելի քան երբեք:

Բայց բաւարար չէ բառին առարկայական կողմին (ուղղագրութեան) բազմակեցութիւնը ցոյց տալ, այլ կարեւոր է այդ առարկայականութիւնը բացատրել մշակութային համակեցութեան շրջանակներու մէջ: Աւելի պարզ, կարեւոր է որ ուսուցիչը տուեալ բառերուն տարբեր ուղղագրութիւններուն համար ցուցադրէ գրականութենէն կամ ազատ (ոչ գաղափարախօսական) մամուլէն կենդանի նմուշներ եւ ամբողջական նախադասութիւններ, որոնց ընդմէջէն բացատրէ՝ թէ այսինչ գրողը կը նախընտրէր այս ուղղագրութիւնը, միւս գրողը՝ այն ուղղագրութիւնը: Աշակերտը կարելիութիւն կ'ունենայ ընտրել, բայց ընտրել առանց մերժելու ուրիշը, ընտրել՝ գիտնալով որ հնարաւոր է նաեւ միւսը:

### 2. ՏՈՂԱԴԱՐՁ

Հայերէն տողադարձը իր գործադրութեան մէջ երբեք չէ եղած միատեսակ, հակառակ քերականական գիրքերու անընդհատ պնդումներուն եւ արդարացումներուն: Կը տողադարձուի *բեմադրրիչ* եւ *բեմա-դրիչ*, *դըր-ւատել*, *դըր-ուատել* եւ *դր-ուատել*, եւ այլն: Ո՞րն է «ճիշդ»-ը: Բոլորն ալ ճիշդ են: Բայց չէ՞ որ աշակերտին ընտրութեան առիթ տալը ոճրագործութեան համազօր երեւոյթ մըն է: Պէտք է ըլլայ մէկ անսխալականութիւն եւ այդ անսխալը ուսուցիչի գիտցածն է: «Սխալ» տողադարձողը թուանշան կը կորսնցնէ: Այսօրուան մանկավարժութիւնը լաւ կ'ըլլայ ինքնամարզումի ենթարկէ ինքզինքը՝ կարողանալու համար ընդունիլ ճշդութեան բազմազանութիւնը: Ընդունի բազմակեցութիւնը:

(Շար. 1/2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Munir Fasheh, 'Mathematics, Culture, and Authority', *For the Learning of Mathematics*, Vol. 3, No. 2, November 1982, p. 5:
2. Մունիր Ֆաշէ, «Հորրէյաթ ալ-ֆէքր ուալ-թաապիր ամ թահրիր ալ-ֆէքր ուալ թաապիր?» (Մտածողութեան եւ արտայայտութեան ազատութի՞ւն թէ մտածողութեան եւ արտայայտութեան ազատագրում), *Ալ-մուլթաքա ալ-թարպաուի ալ-արապի*, www.almoultaqa.com/ Munir_Fasheh.aspx:

# ՔԱՂԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ ԵՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԵՐԹՕՆԸ (ծննդեան 85-ամեակին առիթով)

2

խացի ընտանիքի մը, որ կը հեռանայ իր հայրենիքէն, հեռաւո՜ր, «ազա՜տ», «հարո՜ւստ» հորիզոններէ հասած ղօղանջէն խաբուած: Մեծ եւ սրտակեղեք կ'ըլլայ անոր անդամներուն յուսախաբութիւնը, սակայն այլեւս անօգուտ է ողբալը, որովհետեւ դարմանել կարելի չէ եղած ահաւոր սխալը:»

**5. Մայքըլ Փերէյրա,** ***Արձագանգ մը լռութեան մէջէն,*** **անգլերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 8 Սեպտեմբեր 1969, ԾԳ. տարի, թիւ 15.419 մինչեւ 12 Դեկտեմբեր 1969, ԾԴ. տարի, թիւ 15.499 (62 չար.):

Անգլերէն բնագիրը՝ Michael Pereira, *An Echo from Silence*, London: Geoffrey Bles, 1968:

Ահաւասիկ թարգմանիչին բացատրութիւնը.

«Ան Թուրքիոյ մասին կը գրէ որպէս լաւատեղեակ մարդ, եւ անաչառ ու կարեկից հասկացողութեամբ կը մօտենայ յարատեւ ճակատագրին փոքրամասնութեանց, որոնց անգիտակից դերը պատմութեան մէջ պիտի ըլլար խռովութեան աղբիւր մը իրենց եւ ուրիշներու համար: Ինչպէս որ այս պատմութիւնը ցոյց կու տայ կան մարդիկ, որ բաւական մեծ են ցեղային եւ գաղափարաբանական տարբերութեանց յարուցած ատելութիւններէն վեր մնալու: Բայց կան ուրիշներ, որոնք այդպէս չեն:»

**6. Աւետիս Եափուճեան,** ***Արեւմտահայաստանի կորուստը եւ անոր պատասխանատուները,*** 28 Մայիս 1970, ԾԵ. տարի, թիւ 15.633 մինչեւ 18 Օգոստոս 1970, ԾԵ. տարի, թիւ 15.702:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1970:

**7. Աւետիս Եափուճեան,** ***Եւ վերածնաւ հայ ժողովուրդը հուրէն ու սուրէն,*** 28 Նոյեմբեր 1970, ԾԵ. տարի, թիւ 15.790 մինչեւ 6 Ապրիլ 1971, ԾԵ. տարի, թիւ 15.893:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1971:

**8. Աւետիս Եափուճեան,** ***Սարտարապատի հերոսամարտը եւ իր պահանջատէրը,*** 24 Ապրիլ 1971, ԾԵ. տարի, թիւ 15.907 մինչեւ 17 Մայիս 1971, ԾԵ. տարի, թիւ 15.925 (16 չար.):

**9. Ամերիկեան** ***Նիւզուիք շաբաթաթերթի թղթակիցներ, Վիէթնամի գաղտնի պատերազմը Փենթակոնի գաղտնի փաստաթուղթերուն լոյսին տակ,*** **անգլերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 22 Սեպտեմբեր 1971, ԾԶ. տարի, թիւ 16.032 մինչեւ 23 Նոյեմբեր 1971, ԾԶ. տարի, թիւ 16.083 (44 չար.):

**10.** ***Անաստաս Միկոյեանի յուշերէն դրուագ մը. պայքարի ճանապարհով,*** **անգլերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 29 Փետրուար 1972, ԾԶ. տարի, թիւ 16.162 մինչեւ 27 Մարտ 1972, ԾԶ. տարի, թիւ 16.184 (19 չար.)

Թարգմանուած *Սփութնիք* ամսաթերթէն:

**11. Միքայէլ Սաղաթէլեան,** ***Նախագահ Քենետիի սպանութեան գաղտնիքը. Տալլաս-ո՞վ, ինչպէ՞ս, ինչո՞ւ...,*** **անգլերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 29 Մարտ 1972, ԾԶ. տարի, թիւ 16.186 մինչեւ 15 Մայիս 1972, ԾԷ. տարի, թիւ 16.222 (վերջ 30)

Թարգմանուած *Սփութնիք* ամսաթերթէն:

**12. Աւետիս Եափուճեան,** ***Հայաստանի Հանրապետութեան քաղաքական, զինուորական, տնտեսական, ընկերային կացութիւնը,*** 16 Մայիս 1972, ԾԷ. տարի, թիւ 16.223 մինչեւ 3 Հոկտեմբեր 1972, ԾԷ. տարի, թիւ 16.339:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1972:

**13. Աւետիս Եափուճեան,** ***Պաքուի հերոսամարտը եւ անոր պարտութեան պատասխանատուները,*** 18 Մայիս 1973, ԾԸ. տարի, թիւ 16.522 մինչեւ 28 Յունիս 1973, ԾԸ. տարի, թիւ 16.555:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Ոսկետառ, 1973:

**14. Էրիխ Մարիա Ռեմարք,** ***Արեւմտեան ճակատին վրայ նորութիւն չկայ,*** **ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 2 Յուլիս 1973, ԾԸ. տարի, թիւ 16.558 մինչեւ 15 Սեպտեմբեր 1973, ԾԸ. տարի, թիւ 16.621 (59 չար.):

Ռեմարքի գերմաներէն վէպը իբրեւ գիրք առաջին անգամ լոյս տեսած է 1929-ին (Erich Maria Remarque, *Im Westen nichts Neues*, Propyläen Verlag, 1929): Նոյն տարին հրապարակուած է անոր ֆրանսերէն թարգմանութիւնը (Erich Maria Remarque, *A l'Ouest rien de nouveau*, traduit de l'allemand par Alzir Hella et Okivier Bournac, Paris: Stock, 1929): Երեք տարի ետք՝ ըստ ռուսերէն թարգմանութեան, զայն հայերէն թարգմանած է Եղիշէ Չարենց (Էրիխ Մարիա Ռեմարկ, *Արեւմտեան ֆրոնտում անփոփոխ է*, ռուսերէնէ թարգմանեց՝ Եղիշէ Չարենց, Երեւան, Պետհրատ, 1932):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1973:

**15.** ***Կապրովոյի սրամտութիւնները,*** հաւաքեցին **Սթեֆան Ֆուրթունով եւ Փիթըր Փրոտանով, ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 11 Սեպտեմբեր 1974, ԾԹ. տարի, թիւ 16.918 մինչեւ 11 Հոկտեմբեր 1974, ԾԹ. տարի, թիւ 16.943 (26 չար.):

(Տար. 1/2)

## «ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԱՆՐԱՅԻՆ ՓՐԿՈՒԹԵԱՆ ՃԱԿԱՏԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ...

2

հանրաքուէի արդիւնքների կեղծմամբ ազգի ինքնորոշման իրաւունքի ոտնահարման, մարդու իրաւունքների կոպիտ խախտումների եւ համակարգային կոռուպցիայի մեղաւորներին:

2. Ազատ արձակել քաղբանտարկեալներին:

3. Յայտարարել համաներում՝ բանտերի գերբեռնուածութեան հետեւանքով բանտարկեալների փաստացի խոշտանգումը վերացնելու, ինչպէս նաեւ այդ համակարգում առկայ համատարած կոռուպցիայի ռիսկերը մասամբ չեզոքացնելու նպատակով:

4. Վարչախմբի ձեռքում բռնութեան գործիքի վերածուած ոստիկանութեան զօրքերի ռեսուրսները ազգային անվտանգութեան ապահովման առաջնահերթ չահերի թելադրանքով տրամադրել հայ-ադրբեջանական սահմանի պահպանութեանը:

«Նոր Հայաստան» հանրային փրկութեան ճակատի Քաղաքական խորհուրդ

## ԱՌԱՆՑ ՀՈՒՄԱՆԻՏԱՐ ԿՐԹՈՒԹԵԱՆ ՆԱԵՒ ԼԱՒ ՆԱԽԱՐԱՐ ԼԻՆԵԼ ՉԻ ԿԱՐՈՂ

3

*գրել: «Եթէ նկատի ունէք «եօթներորդ»-ի «ն»-ն, ապա իբրեւ բանասէր պարտաւոր էք իմանալ, որ գրաբարով այդ թիւը գրւում էր այնպէս, ինչպէս ես եմ գրել («եօթներորդ երկինք»): Այո, «եօթերորդ» դասարան, բայց, ներող եղէք, իմ որսորդութիւնը հենց «եօթներորդ» է»,- պատասխանել է բանաստեղծը:*

*Յ.Գ. Երեւանի «Բուկինիստ» գրախանութից նոյնպէս փաստեցին, թէ պետական մրցանակը չի երաշխաւորում, որ տուեալ գիրքը պէտք է զանգուածային հետաքրրքրութիւն առաջացնի, եւ գրախանութում չկայ այն մտայնութիւնը, որ ահա ստեղծագործութիւնը պետական մրցանակի արժանացաւ, եւ պէտք է սպասել ընթերցողների մեծ հոսքի: «Յակոբ Մովսէսի վերջին գիրքը, որ ստացել ենք, Գրառումներն են: Աւելի չատ դա են հարցրել, քան Եօթներորդ որսորդութիւնը»,- ասաց վաճառքի մենեջեր Ժաննա Բաբիկեանը: Նա նաեւ յաւելեց, որ գրքի սպառման հարցում էական նշանակութիւն ունի, թէ որքանով է այն գովազդւել, ինչքանով է հանրութիւնը տեղեակ գրքի մասին: «Վերջին շրջանում չատ լաւ վաճառուող գրքեր ունենք, ինչը գովազդելու արդիւնք է: Կան լաւ գրքեր, որ չի եղել որեւէ ներկայացում, արձագանք կամ գովազդ, չեն վաճառւել»,- չարունակեց գրախանութի աշխատակիցը:*



ՋԷՅՄՍ ՈՒՈԼՐԻՔ

## «ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԿԱՐԳԱՒՈՐՄԱՆ ԲԱՆԱԼԻՆ ՆԱԽԱԳԱՀՆԵՐԻ ՁԵՌՔԻՆ Է»

1

Մինսկի խմբի հետ սերտօրէն աշխատելու իրենց յանձնառութեանը:

**-Ձե՞ք կարծում, որ Ադրբեջանի արտայայտած այդ բացայայտ ըմբոստութիւնը Մինսկի խմբի ձեւաչափը փոխելուն ուղղուած հերթական քայլն էր:**

- Կողմերի խնդրանքով է, որ համանախագահները հանդէս են գալիս որպէս միջնորդ: Մենք կը չարունակենք մեր միջնորդական ջանքերը տեւական կարգաւորում գտնելու ճանապարհին այնքան ժամանակ, քանի դեռ կողմերը հաւատացած են, որ մեր ջանքերն օգտակար են: Իսկ լուծման համար նախագահներն են, որ պէտք է քաղաքական կամք հանդէս բերեն:

**-Մինսկի խմբի համանախագահներ ԱՄՆ-ն, Ռուսաստանն ու Ֆրանսիան մշտապէս յորդորել են Հայաստանին ու Ադրբեջանին ինտենսիւացնել բանակցային գործընթացը: Այս համատեքստում պլանաւորո՞ւմ էք երկու երկրների նախագահների յաջորդ հանդիպումը:**

-Կարգաւորման բանալին նախագահների ձեռքին է: Մենք ուզում ենք նպաստել առաւել ինտենսիւ երկխօսութեան եւ առաւել համակարգուած բանակցութիւնների կայացմանը, որպէսզի խաղաղութեան ուղղութեամբ նրանք կարողանան առաջընթաց արձանագրել:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1761 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՓԵՏՐՈՒԱՐ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ.

عدد رقم ١٧٦١ الخميس ٢٥ فبراير ٢٠١٦


## ՄՈԼԻԲԴԷՆԻ, ԿՈՆԵԱԿԻ, 25 ՏԱՐՈՒԱՅ ՄԱՍԻՆ

### ՅԱՐՈՒԹ ԿԲԷՅԵԱՆ

Հայաստանին արտադրութիւն պէտք չի, Հայաստանին պէտք են սրճարաններ, ռեստորաններ եւ էլիտայի հոգու հանգստութեան համար եկեղեցիներ: Քարից հաց քամող ժողովուրդը դժուար է ինքնակազմակերպւում, որ միասնական ինչ-որ բանի արտադրութիւն հիմնի: Դեռ սովետներից մնացած թարմ յիշողութիւնն էլ պետութիւնից գործարան, փաբրիկա, աշխատատեղ է ուզում, որ առաւօտ 8-ից մինչեւ երեկոյեան 6-ը գնայ գործի, ամսուայ սկզբին ռոճիկ ստանայ, կողքից-կշտից էլ ինչ կարողանայ կպցնի կամ փախցնի:

Դէ իսկ փող ունեցող էլիտան էլ, որը կարող է ցանկութեան դէպքում օրինակ սուրճի բաժակի արտադրութիւն սկսել, փոխարէնը նախընտրում է բացել սրճարան, հիւրանոց կամ ռեստորան, որտեղ 50 դրամանոց ինքնարժէքով սուրճը կը վաճառի նուազագոյնը 500 դրամով: Որովհետեւ էլիտան էլ աշխատել չի սիրում, որովհետեւ էլիտան իր ապագան երկարաժամկէտում հանրապետութեան հետ չի կապում:

Դէ իսկ կարճաժամկէտում եկամտի ամենայարմար աղբիւրն առեւտուրն է, առուծախը ու ինչ-որ ծառայութեան «նաղդ» մատուցումը: Դրա համար էլ փողատէրը, նոյնիսկ իշխանաւոր փողատէրը նախընտրում է հիւրանոց, սրճարան կամ ռեստորան բացել: Որովհետեւ եղածով բաւարարուող, ասել-խօսելը գործից նախընտրող ժողովուրդն իր ժամանցը կազմակերպում է շաբաթուայ բոլոր օրերին ու չի սպասում ուրբաթ օրուան. մէկ ա գործ չկայ, մէկ ա զբաղուելու բան չկայ, կը գնան սրճարաններում կը նստեն ու մի բաժակ՝ ինքնարժէքից մի քանի անգամ թանկ սուրճի բաժակի շուրջ կը բամբասեն ու օդում կը հաշուեն էն նոյն իշխանաւոր էլիտայի փողերն, ում սրճարանում նստած են:

Եթէ նայենք 25-ամեայ հանրապետութեան պատմութեանը նոր հիմնադրուող արտադրութիւնները մատների վրայ հազիւ հաշուենք (խնդրում եմ սովետներից մնացած, արտադրական կարողութիւնները մի թափ թալանուած յետոյ վերագործարկուած արտադրութիւնները չխառնել նոր արտադրութիւն ասուածի հետ):

Ու այստեղ գալիս է ամենակարեւոր հարցը՝ ի՞նչ է այսօր Հայաստանում արտադրւում, ի՞նչն է արտահանւում եւ ինչո՞վ ենք մենք ծանօթ աշխարհին ու ինչո՞վ ենք ներկայանում: Գիտութի՞ւն, արուե՞ստ, տեղեկատուական տեխնոլոգիանե՞ր, կոնեա՞կ, որեւէ այլ ապրա՞նք. թերեւս միայն մոլիբդէնը: Մոլիբդէնի յաղթանակը դեռ անգերազանցելի է զուտ հանքաարդիւնաբերական պաշարների շնորհիւ:

Գիտութեան այն պաշարը, որ 70 տարի շարունակ ձեւաւորել էր ու փայփայել էին ԽՍՀՄ գերտէրութեան գիտական կարիքների համար, իրեն յարմար շուկաներ գտաւ, ինքնաարտահանուեց ու վերջ:

Արուեստում ժամանակ առ ժամանակ փայլատակող աստղերը սուբիեկտիւ դրսեւորումներ են, ոչ թե օբիեկտիւ: Չկայ մի ոլորտ, որ, օրինակ, ասեն հայկական էսինչի դպրոց: Անհատ կատարողներն ու ստեղծագործողները բացառապէս տաղանդի, կ'ասէք թէ, աստուածային նախախնամութեան պատճառով են դառնում համաշխարհային նշանակութեան ապրանքանիշ:

Տեղեկատուական տեխնոլոգիաներում աշխատում է ճկունութեան ու ստեղծագործական մտքի համադրումն ու այն, որ հատուկենտ դպրոցներում դեռ դասաւանդում են սովետների կրթական համակարգի մտածելակերպով փիզմաթ ու ճշգրիտ գիտելիքներ փոխանցող ուսուցիչներ (ուսուցիչն ու դասատուն տարբեր բաներ են, սրա մասին՝ յետոյ առանձին): Դէ իսկ հայկական կոնեակին գոնէ յետխորհրդային շուկաներում մրցակցութեան մէջ է պահում աւանդոյթի ուժն ու մատչելիութիւնը:

Մնացինք մոլիբդէնի յոյսին:

Եւս 25 տարի յետոյ ինչո՞վ են Հայաստանի Հանրապետութիւնը ճանաչելու, ի՞նչ է հանրապետութիւնը արտադրելու՝ լինի դա ապրանքի, գաղափարի, թէ ծառայութեան տեսքով, որ մեզ դարձնելու է մրցունակ, ճանաչելի, յուսալի:

ԹԵՐԹ.am

**ԳԱՀԻՐԷ**

## ՄԱՀԱՑԱՒ ԵԳԻՊՏԱՑԻ ԴԻՒԱՆԱԳԷՏ ՊՈՒԹՐՈՍ ՊՈՒԹՐՈՍ ՂԱԼԻ

Փետրուար 16-ին, 93 տարեկան հասակին, Գահիրէի մէջ մահացաւ եգիպտացի դիւանագէտ Պութրոս Պութրոս Ղալի:

Ան ներքին առումով մասնաւոր ժողովրդականութիւն մը չէր վայելեր եգիպտացի ժողովուրդին մէջ: Իր համբաւը կապուած էր արտաքին աշխարհին հետ, մասնաւոր հոգատարութիւն վայելելով ֆրանսական եւ ֆրանքոֆոնիի շրջանակներուն մէջ:

1977-1979-ին՝ Անուար էլ-սատաթի վերջին շրջանին, եղած է Եգիպտոսի Արտաքին Գործոց նախարար, աշխուժօրէն մասնակցելով Քէմփ Տէյվիտի համաձայնագիրի (1978) նախապատրաստութեան եւ ստորագրութեան՝ պաղեստինեան հողերը գաւթած ու պաղեստինցիները կոտորող Իսրայէլի հետ, համաձայնագիր մը՝ որ մինչեւ այսօր խիստ քննադատութեան առարկայ է բազմաթիւ մասնագէտներու, դիւանագէտներու ինչպէս նաեւ եգիպտացի ժողովրդական տարբեր խաւերու կողմէ:

Լինտա Մելվերն կը բացայայտէ՝ որ 1990-ին, նախքան Ռուանտայի ցեղասպանութիւնը, դուրսէն հրահրուած հակամարտութիւններու թէժ շրջանին, ֆրանսական կառավարութիւնը՝ շնորհիւ իր պաշտպանեալ Պութրոս Պութրոս Ղալիին, կը յաջողի Եգիպտոսի պատասխանատուներուն համոզել Ռուանտայի ֆրանսամէտ կառավարութեան վաճառել որոշ քանակութեամբ զէնք (յայտնի չէ՝ թէ Հոսնի Մուպարաք իրազեկ էր Ղալիի եւ Ռուանտայի նախնական համաձայնութիւններուն մասին թէ ոչ) (Linda Melvern, *A People Betrayed: The Role of the West in Rwanda's Genocide*, London, New York: Zed Books Ltd., 2007g (2000), էջ 31-32, 37, 65-66):

Ճիշդ այս գործարքէն ետք, 1991-ին Պութրոս Պութրոս Ղալի կը սկսի իր ընտրելարշաւը ՄԱԿ-ի ընդհանուր քարտուղարի պաշտօնին համար: Ան Ֆրանսայի եւ Ֆրանքոֆոնիի ընտրեալ թեկնածուն էր: 1992 Յունուար 1-ին կը ստանձնէ իր նոր պաշտօնը: 1994-ի Ռուանտայի ցեղասպանութեան արգելումին համար ոչ մէկ լուրջ քայլ կը նախաձեռնէ եւ ոչ ալ կը փորձէ զօրահաւաքել հանրային կարծիքը:

Ամերիկեան վեթօն կը կասեցնէ իր երկրորդ շրջանի ընտրութիւնը իբրեւ ընդհանուր քարտուղար: Այս կէտը, զուգադիպելով այդ շրջանին ուժեղացող հակա-ամերիկեան տրամադրութիւններուն հետ, Ղալի փորձեց օգտագործել բարձրացնելու համար իր ժողովրդականութիւնը արաբական աշխարհին մէջ:

Ֆրանքոֆոնիի իր ծառայութիւններուն համար Ֆրանսան 1997-ին կը ստեղծէ Ֆրանքոֆոնիի Միջազգային Կազմակերպութեան ընդհանուր քարտուղարի պաշտօնը, զոր կը ստանձնէ մինչեւ 2002 թուական:

Ղպտի ուղղափառ մը, իր հայրն էր Եուսուֆ Պութրոս Ղալի, մայրը՝ Սաֆելա Միխայիլ Շարուպիմ (թոռնուհին եգիպտացի կարեւոր պատմաբան Միխայիլ Շարուպիմի):



Հօրենական մեծհայրն էր Եգիպտոսի արտաքին գործերու նախարար Պութրոս Ղալի՝ որ 1910-ին սպանուած էր ազգայնականի մը կողմէ:

Իր հօրեղբայրն էր (սպանուած Պութրոս Ղալիի զաւակը) Նակիպ Պութրոս Ղալի, որուն տիկինն էր հայուհի Աննա Նակիպ Պութրոս Ղալի (ամուսնացած 1907-ին, Սան-Սթեֆանոյի մէջ), աղջկնութեան անունով՝ Աննա Ասլանեան: Ան իր մօրենական կողմէն եղած է յայտնի Տատեան ընտանիքին շառաւիղը: Աննայի հայրն էր Գէորգ Ասլան (Ասլանեան): Մարի մօրաքոյրը ամուսնացած էր Աննայի մօրենական զարմիկին՝ Պօղոս Նուպարի հետ: Իր Մաքրուհի հօրաքոյրը կը հանդիսանար երգիծագիր Երուանդ Օտեանի մայրը: Իր Նեւզիկ քոյրը Գահիրէի մէջ ամուսնացած էր իրենց մօրենական զարմիկին՝ Առաքել Նուպարի հետ (Տատեան ընտանիքին եւ Աննա Ղալիի անձնական յիշողութիւններուն մասին տե՛ս՝ Աննա Նակիպ Պութրոս Ղալի, *Տատեանները. ընտանեկան յուշեր*, ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան, *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 12 Նոյեմբեր 1981, 66-րդ տարի, թիւ 18.995 մինչեւ 14 Դեկտեմբեր 1981, 66-րդ տարի, թիւ 19022):



*Աննա Նակիպ Պութրոս Ղալի*

Սթանֆորտ Համալսարանի Hoover Institution Archives-ին մէջ՝ ուր կը պահուին Պութրոս Պութրոս Ղալիի թուղթերը, կը գտնուին Աննա Նակիպին հասցէագրուած նամակներ եւ հայկական հարցին նուիրուած գրութիւններ (1915-1933) (http://www.oac.cdlib.org/findaid/ark:/13030/kt4n39s16x/entire_text/):

Նակիպի եւ Աննայի զաւակը՝ Միրիթ Պութրոս Ղալի, եղած է գրող, գործարար եւ փաստաբան, հիմնադիր եւ առաջին տնօրէն Գահիրէի Ղպտիական Հնագիտութեան Ընկերութեան:

Ան հրատարակած է իր ազգականին՝ Նուպար Փաշայի յուշերը (Nubar Nubarian, *Mémoires de Nubar Pacha*, ed. Mirrit Boutros Ghali, Beirut: Librairie du Liban, 1983: Անոր արաբերէն թարգմանութիւնը Կարօ Թապաքեանի կողմէ լոյս տեսած է 2009-ին, Գահիրէ, Տար Ալ-շուրուք):

Հ.Ա.

# ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ ԵՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԵՐԹՕՆԸ (ծննդեան 85-ամեակին առիթով)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

**16. Քլեման Լեփիտիս,** *Հայը (վէպ)*, **ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 2 Յունուար 1975, ՄԹ. տարի, թիւ 17.004 մինչեւ 12 Ապրիլ 1975, ՄԹ. տարի, թիւ 17.084 (80 շար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Clément Lépidis, *L'Arménien*, Paris: Seuil, 1973:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1975:

**17. Աւետիս Եափուճեան,** ***Համառօտ պատմութիւն Ռամկավար Ազատական Կուսակցութեան կազմութեան***, 13 Դեկտեմբեր 1977, 62-րդ տարի, թիւ 17.849 մինչեւ 19 Յունուար 1978, 62-րդ տարի, թիւ 17.879 (23 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1977:

**18. Աւետիս Եափուճեան,** ***Հայ ժողովուրդին անկախութեան պայքարը Կիլիկիոյ մէջ 1919-1921 թթ.*, Ա. մաս.**

ա. «Ակնարկ մը Կիլիկիոյ անցեալին վրայ», 23 Յունուար 1978, 62-րդ տարի, թիւ 17.882 մինչեւ 11 Մարտ 1978, 62-րդ տարի, թիւ 17.921 (40 շար.):

բ. «Հայկական լեգէոնին կազմութիւնը, մասնակցութիւնը Կիլիկիոյ գրաւման եւ զինաթափումը», 13 Մարտ 1978, 62-րդ տարի, թիւ 17.922 մինչեւ 29 Մայիս 1978, 63-րդ տարի, թիւ 17.982 (61 շար.):

գ. «Կիլիկիոյ տնտեսական եւ ընկերային կացութիւնը ներգաղթէն ետք», 30 Մայիս 1978, 63-րդ տարի, թիւ 17.983 մինչեւ 11 Յուլիս 1978, 63-րդ տարի, թիւ 18.018 (35 շար.):

դ. «Կիլիկիոյ անապահով վիճակը ներգաղթէն ետք», 11 Յուլիս 1978, 63-րդ տարի, թիւ 18.018 մինչեւ 15 Օգոստոս 1978, 63-րդ տարի, թիւ 18.047 (29 շար.):

ե. «Ֆրանս. քաղաքականութիւնը Կիլիկիոյ մէջ 1919-1921 թթ.», 16 Օգոստոս 1978, 63-րդ տարի, թիւ 18.048 մինչեւ 16 Սեպտեմբեր 1978, 63-րդ տարի, թիւ 18.073 (25 շար.):

զ. «Ֆրանսացիներուն դաւադիր նահանջը Մարաշէն եւ հայերուն կոտորածը», 18 Սեպտեմբեր 1978, 63-րդ տարի, թիւ 18.074 մինչեւ 16 Նոյեմբեր 1978, 63-րդ տարի, թիւ 18.118 (42 շար.):

է. «Հաճընի ութամսեայ հերոսական ինքնապաշտպանութիւնն ու կոտորածը», 17 Նոյեմբեր 1978, 63-րդ տարի, թիւ 18.119 մինչեւ 8 Յունուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.160 (41 շար.):

ը. «Ուրֆայի ֆրանսական կայազօրին ջարդը եւ հայոց գաղթը», 9 Յունուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.161 մինչեւ 23 Յունուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.173 (13 շար.):

թ. «Ինչպէս յաղթական Այնթապը յանձնեցին պարտուած Թուրքերուն», 24 Յունուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.174 մինչեւ 9 Փետրուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.188 (15 շար.):

ժ. «Զէյթունի վերջին ողբերգութիւնը», 12 Փետրուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.189 մինչեւ 22 Փետրուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.198 (10 շար.):

ժա. «Իրադարձութիւնները Ատանայի մէջ», 23 Փետրուար 1979, 63-րդ տարի, թիւ 18.199 մինչեւ 10 Մարտ 1979, 63-րդ տարի, թիւ 18.211 (13 շար.):

ժբ. ««Անկախութեան» հռչակումը», 12 Մարտ 1979, 63-րդ տարի, թիւ 18.212 մինչեւ 13 Ապրիլ 1979, 63-րդ տարի, թիւ 18.240 (29 շար.):

ժգ. «Դիմումներ Եւրոպայի մէջ», 14 Ապրիլ 1979, 63-րդ տարի, թիւ 18.241 մինչեւ 8 Մայիս 1979, 63-րդ տարի, թիւ 18.257 (17 շար.):

ժդ. «Միհրան Տամատեան ամբողջական Հայաստանի պատուիրակութեան ներկայացուցիչ», 9 Մայիս 1979, 63-րդ տարի, թիւ 18.258 մինչեւ 26 Մայիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.273 (16 շար.):

ժե. «Եւ Կիլիկեան պարպուեցաւ հայութենէն», 28 Մայիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.274 մինչեւ 20 Յունիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.293 (20 շար.):

ժզ. ««Ազգային Տան» փլուզումը Լոզանի մէջ», 20 Յունիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.293 մինչեւ 10 Յուլիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.309 (17 շար.):

ժէ. «Ալեքսանտրէթի սանջաքին կցումը Թուրքիոյ», 10 Յուլիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.309 մինչեւ 25 Յուլիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.321 (13 շար.)

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1977:

**19. Աւետիս Եափուճեան,** ***Հայ ժողովուրդին անկախութեան պայքարը Կիլիկիոյ մէջ 1919-1921 թթ.*, Բ. մաս, Կիլիկեան միջազգային քաղաքականութեան ոլորապտոյտին մէջ.**

ա. «Մերձաւոր Արեւելքի բաժանման վերաբերեալ գաղտնի համաձայնութիւնները», 26 Յուլիս 1979, 64-րդ տարի, 18.322 մինչեւ 22 Սեպտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.368 (44 շար.):

բ. «Մուդրոսի զինադադարը», 22 Սեպտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.368 մինչեւ 5 Հոկտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.379 (12 շար.):

գ. «Քէմալական շարժման ծագումն ու զարգացումը», 8 Հոկտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.380 մինչեւ 15 Նոյեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.409 (30 շար.)

դ. «Անգլեւֆրանսական պայքարը Մերձաւոր Արեւելքի տիրապետութեան համար», 16 Նոյեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.410 մինչեւ 8 Դեկտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.428 (19 շար.):

ե. «Ֆրանքեւքէմալական յարաբերութիւնները եւ Անկարայի դաշնագիրը», 10 Դեկտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.429 մինչեւ 12 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.478 (5 շար.):

զ. «Սեւրի դաշնագրին պատրանքը», 12 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.478 մինչեւ 7 Մարտ 1980, 64-րդ տարի, թիւ 18.499 (22 շար.):

է. «Ամերիկեան յետպատերազմեան քաղաքականութիւնը Մերձաւոր Արեւելքի մէջ», 10 Մարտ 1980, 64-րդ տարի, թիւ 18.500 մինչեւ 24 Մարտ 1980, 64-րդ տարի, թիւ 18.512 (14 շար.):

ը. «Թուրքիան մեկնալաստ ծառայեցնելու ծրագիրը», 25 Մարտ 1980, 64-րդ տարի, թիւ 18.513 մինչեւ 3 Ապրիլ 1980, 64-րդ տարի, թիւ 18.521 (9 շար.):

թ. «Եզրակացութիւն», 3 Ապրիլ 1980, 64-րդ տարի, թիւ 18.521 մինչեւ 4 Ապրիլ 1980, 64-րդ տարի, թիւ 18.522 (2 շար.):

ժա. «Օգտագործուած գրականութիւն», 4 Ապրիլ 1980, 64-րդ տարի, թիւ 18.522 մինչեւ 16 Ապրիլ 1980, 64-րդ տարի, թիւ 18.529 (7 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1977:

**20. Աւետիս Եափուճեան,** ***Հայկական հարցին ծագումը (100ամեակին առթիւ)***, 19 Մարտ 1979, 63-րդ տարի, թիւ 18.218 մինչեւ 17 Ապրիլ 1979, 63-րդ տարի, թիւ 18.242 (24 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1979:

**21.** ***Հայկական հարցի մասին*, հեղինակ՝ Զաւէն Մսըրլեան, գրախօսեց՝ Աւետիս Եափուճեան**, 17 Մայիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.265 մինչեւ 4 Յունիս 1979, 64-րդ տարի, թիւ 18.280 (14 շար.):

**22. Աւետիս Եափուճեան,** ***Մեծ Եղեռնը օտար մտաւորականութեան գնահատումով***, 26 Ապրիլ 1980, 64-րդ տարի, թիւ 18.538 մինչեւ 16 Յուլիս 1980, 65-րդ տարի, թիւ 18.605 (56 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1980:

**23. Աւետիս Եափուճեան,** ***Նանսէն եւ իր Հայաստանի մէջ*** *հատորը ըստ անտիպ փաստաթուղթերու*, 19 Փետրուար 1981, 65-րդ տարի, թիւ 18.780 մինչեւ 21 Մարտ 1981, 65-րդ տարի, թիւ 18.806 (26 շար.):

**24. Աւետիս Եափուճեան,** ***Եգիպտահայ մշակոյթի պատմութիւն***, 28 Մարտ 1981, 65-րդ տարի, թիւ 18.811 մինչեւ 20 Մարտ 1982, 66-րդ տարի, թիւ 190102 (248 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1981:

**25. Աննա Նակիպ Պութրոս Ղալի,** ***Տատեանները. ընտանեկան յուշեր***, **ֆրանսերէնէ թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 12 Նոյեմբեր 1981, 66-րդ տարի, թիւ 18.995 մինչեւ 14 Դեկտեմբեր 1981, 66-րդ տարի, թիւ 19022 (25 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1981:

**26. Աւետիս Եափուճեան,** ***Կեանքիս ճանապարհը. յուշախառն երախտիք***, 30 Սեպտեմբեր 1982, 67-րդ տարի, թիւ 19256 մինչեւ 26 Նոյեմբեր 1982, 67-րդ տարի, թիւ 19303 (41 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1982:

**27. Աւետիս Եափուճեան,** ***Նանսէն եւ հայ գաղթականութեան հայրենադարձութեան հարցը ըստ անտիպ փաստաթուղթերու***, 5 Յունուար 1983, 67-րդ տարի, թիւ 19334 մինչեւ 1 Յուլիս 1983, 68-րդ տարի, թիւ 19479 (135 շար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1983:

**28. Կէորկի Ալեքսանդրով,** ***Նիւրեմպերկ, 1945. սովետ դատախազի մը նոթերը***, **թարգմանեց Աւետիս Եափուճեան**, 1 Յուլիս 1983, 68-րդ

4

ՈՒՐՈՒԿՈՒԷՅ

## ՓԱՐԱՄԱԶԻ ԱՆՈՒՆՈՎ ՀՐԱՊԱՐԱԿ ՈՒՐՈՒԿՈՒԷՅԻ ՄԷՋ

*Ուրուկուէյի մայրաքաղաք Մոնթէվիտոյի կեդրոնական հրապարակներէն մէկը պիտի անուանակոչուի հայ ազգային ազատագրական ականաւոր գործիչներէն, յեղափոխական ռահվիրայ Մատթէոս Սարգիսեանի՝ Փարամազի անունով:*

*Այսպիսի հրամանագիր մը հրապարակեց մայրաքաղաքի քաղաքապետ Տանիէլ Մարթինէզ: Ան իր որոշումը կայացուց հիմնուելով թիւ 35,737 օրինագիծին վրայ: Քաղաքապետութիւնը իր այս որոշումով չեշտեց մեծանուն Հնչակեան ղեկավարի անմահացման կարեւորութիւնը, Փարամազի հետ նահատակուած 19 Հնչակեան ղեկավարներու կողքին:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԱԶԱՐԷԹ ԿԱՐՈՅԵԱՆ «ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԴԱՐՁԱՒ ԱԿՏԻՒ ՈՒ ՆԱԽԱՁԵՌՆՈՂ»

13 Փետրուար 2016, Hraparak.am - *Արուեստագէտ, Արուեստի քննադատների ազգային ասոցիացիայի նախագահ Նազարէթ Կարոյեանը կարծում է, որ Մարտի 1-ից յետոյ մեր հասարակութիւնը դարձաւ աւելի ակտիւ ու աւելի նախաձեռնող: Այսպէս արձագանքեց նա* Hraparak.am*-ի այն հարցին, թէ ինչ է փոխուել մեր երկրի կեանքում անցած ութ տարիներից յետոյ: Նրա դիտարկմամբ՝ մեր հասարակութիւնը սկսեց ինքնակազմակերպուել: Հետաքրքրուեցինք, թէ արդեօք նախկինո՞ւմ էլ մեր հասարակութիւնը չի եղել բաւականին ակտիւ, չէ՞ որ ամէն մի կեղծուած ընտրութիւնից յետոյ էլ եղել են զանգուածային բողոքի ցոյցեր, հասարակութիւնն ընդվզել է միշտ:*

*«Նկատի ունեմ, որ մեր հասարակութիւնը ձեռք բերեց քաղաքացիական գիտակցութիւն, ինքնակազմակերպուեց, այն խնդիրները, որ դնում է մեր հասարակութիւնը, շատ աւելի կոնկրէտ են: Ինչ վերաբերում է քաղաքական համակարգին, ապա այն աւելի դեգրադացուեց: Եթէ տեղի չունենան փոփոխութիւններ, ապա քաղաքական համակարգն աւելի է դեգրադացուելու», - ասաց մեր զրուցակիցը:*

## ՎԱՂԱՐՇԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ.- «ՄՈՍԿՈՒԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՎԵՐԱՆԱՅՈՒՄԸ ԿԱՐՈՂ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ ՕԳՏԱԳԱԿԱՐ ԼԻՆԵԼ»

Ռուսաստանի կողմից 1921թ. Մոսկուայի պայմանագրի վերանայումը կարող է Հայաստանի համար օգտակար լինել: Այս մասին Փետրուարի 15-ին լրագրողներին ասել է ՀՀ պաշտպանութեան նախկին նախարար Վաղարշակ Յարութիւնեանը:

Նրա խօսքով՝ դժուար է ասել, թէ ինչ կ'որոշի Ռուսաստանի ԱԳՆ-ը, որը հիմա քննարկում է վերանայման առաջարկը, բայց Հայաստանի համար նման շրջադարձը միանշանակ շահաւէտ կը լինի:

4

## «ՈՐԵՒԷ ՄԷԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԵ՞Լ Է, ՈՐ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԴՈՒՐՍ Է ԳԱԼՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԻՑ»

Որեւէ մէկը չպէտք է սպասելիքներ ունենայ, որ Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանը դուրս կը գայ քաղաքականութիւնից: Այս մասին, Փետրուարի 15-ին, լրագրողների հետ հանդիպման ժամանակ նշել է ԱԺ ՀՀԿ խմբակցութեան քարտուղար Գագիկ Մելիքեանը:

«Որեւէ մէկը յայտարարե՞լ է, որ Սերժ Սարգսեանը դուրս է գալու քաղաքականութիւնից: Նման սպասելիքներ որեւէ մէկը չպէտք է ունենայ»,- ասել է Մելիքեանը՝ պատասխանելով հարցին, թէ Փետրուարի 12-ին նախագահի ելոյթը նշանակում է, որ վերջինը չի պատրաստւում 2018թ.-ին հեռանալ:

Յիշեցնենք, որ Փետրուարի 12-ին Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանը հանդիպել էր բարձրաստիճան պաշտօնեաների, տարբեր կուսակցութիւնների ներկայացուցիչների հետ: Իր ելոյթում Սերժ Սարգսեանն անդրադարձել էր երկրի ներքաղաքական եւ արտաքին քաղաքական կեանքին:

ԳՐԱԽՕՍԱԿԱՆ

## ՆԱՃԻԲ ՄԱՅՖՈՒԶԻ *ՌԱԴՈԲԻՍ* ՎԷՊԸ

ՎԱՀՐԱՄ ԴԱՆԻԷԼԵԱՆ

Նաջիբ Մահֆուզ, *Ռադոբիս*, արաբերէնից թարգմանեց՝ Ռուզաննա Մանուկեանը, Նոբէլեան Մրցանակակիրներ Մատենաշար, հրատարակչութիւն «Անտարէս», 2015:

*Ռադոբիս* վէպը 1988-ին գրականութեան բնագաւառում Նոբէլեան մրցանակի արժանացած եգիպտացի գրող Նաջիբ Մահֆուզի առաջին շրջանի ստեղծագործութիւններից է՝ լոյս տեսած դեռեւս 1943-ին: Վէպը պատմում է մեզանից մօտ չորս հազարամեակ առաջ կառավարած եգիպտոսի Մերենրա 2-րդ փարաւոնի ժամանակների մասին եւ որոշակի արխայիկ կոլորիտի ու ներքաղաքական համակարգի պատկերման շնորհիւ պատմավէպ է համարուել: Վէպի գլխաւոր առանձնայատկութիւններից մէկն էլ այն է, որ վէպը հիւսւում է պատմական փաստերի «խեղաթիւրման» միջոցով: Մահֆուզը փիքսում է վիպական գործողութիւնների ժամանակը, բայց այդ ժամանակը նշանաւորած դէմքերի ու դէպքերի պատմականութիւնից չի կառչում: Նա պատմութիւնից վերցնում է այլաշխարհի լեզուն (լայն առումով), որն իրեն թոյլ կը տար յօրինելու այդ այլաշխարհի մէկ այլ՝ ոչ պատմական, գուցէ՝ հեքիաթային ճշմարտութիւնը: *Ռադոբիսը* արեւելեան սիրավէպ է, ուր հեքիաթը յաղթում է պատմութեանը, որովհետեւ հեռաւոր անցեալը աւելի շատ զգացողութեամբ է ընթերցւում, քան՝ մտքով, արդիւնքը հաստատապէս գեղեցիկ է եւ ոչ անպայման՝ ճշգրիտ:

Վէպի գործողութիւնները ծաւալւում են մայրաքաղաք Աբուում, իրադարձութիւնները սկսւում են Նեղոսի ամենամեայ տօնախմբութեան նկարագրութեամբ եւ ձգւում մինչեւ յաջորդ տարուայ նոյն տօնակատարութեան օրերը, այսինքն՝ ժամանակային առումով ուղիղ մէկ տարի է ընդգրկում վիպական սիւժէն: Սա շատ կարեւոր գործօն է վէպի ներքին տրամաբանութիւնը որսալու առումով. քանի որ ընթացիկ պատմական ժամանակը հեքիաթայնացուած է, մէկ տարին մի ամբողջ կեանքի համարժէքն է դառնում, գոնէ վէպի երկու գլխաւոր կերպարների՝ փարաւոնի եւ Ռադոբիսի համար: Մերենրա 2-րդը նոր է գահ բարձրացել, Ռադոբիսը արդէն մեծ փառքի ու հարստութեան հասած պարուհի է (կուրտիզանուհի), ում գեղեցկութեամբ շլացած են երկրի գրեթէ բոլոր բարձրաստիճան այրերը, ովքեր պատրաստ են ամէն ինչ զոհել նրա կողքին գտնուելու համար: Բայց երբ խորհրդանշական հանգամանքներում կայանում է այս երկուսի հանդիպումը, ինչը նշանաւորւում է բուռն սիրավէպի ծնունդով, երկուսն էլ ընդունում են, որ իրենց հանդիպումից առաջ նրանց կեանքերը լիարժէք չեն եղել՝ լեցուն միայն անսէր ճոխութիւններով ու վայելքներով: Իսկ քանի որ գործ ունենք զուտ սիրային պատումի հետ, ապա հենց սիրավէպի սկիզբն ու հանգուցալուծումն են ձեւակերպում վիպական ժամանակը:

Եթէ դիտարկենք վէպը Բախտինի նկարագրած քրոնոտոպի տեսակներին բնորոշ առանձնայատկութիւնների համատեքստում, ապա շատ հետաքրքիր տեքստային բացատրութիւններ կը գտնենք: Նախ վէպի պարզ, յաճախ սենտիմենտալ սիրային պատմութեան գիծը ամբողջովին տեղաւորւում է յունական ռոմաններին բնորոշ օրինաչափութիւնների մէջ: Վէպի գլխաւոր հերոսների հանդիպման հիմքը դառնում է պատահականութիւնը՝ չնայած դրան ինչ-որ միֆական բացատրութիւն է տրւում տեքստում (արծիւը գողանում է ջրում լողացող գեղեցկուհի Ռադոբիսի ոսկէ սանդալը եւ նետում այն իր պալատում խորհրդակցութիւն անցկացնող փարաւոնի ձեռքերի մէջ): Սիրային պատմութեան գլխաւոր առանձնայատկութիւնը զոյգի միջեւ ներքին հակասութիւնների իսպառ բացակայութիւնն է. փարաւոնն ու Ռադոբիսը երբեք չեն կասկածում միմեանց, նրանց առաջին հանդիպումից մինչեւ վերջինը զգացմունքների որեւէ տատանում չի նշմարւում, երկուսն էլ որեւէ զարգացում չեն ապրում որպէս սիրահարներ: Սիրային զոյգի միակ կոնֆլիկտը իրենց յարաբերութիւններից դուրս գտնուող «արտաքին» աշխարհի հետ է: Գործ ունենք սիրային կատարեալ ու անփոփոխ իդիլիայի հետ, երբ ժամանակը որեւէ ազդեցութեան գործակից չունի այնքան ժամանակ, քանի դեռ սիրային յարաբերութիւնների ընթացքին է վերաբերում, եւ գործօն ↳ 4

ԽՈՀԵՐ

## ԼԵԶՈՒՆ ԻԲՐԵՒ ԱՇԱԿԵՐՏԻ ԲԱԶՄԱԿԵՑՈՒԹԵԱՆ ԽԹԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

3. ՀՈՄԱՆԻՇ

Աշակերտներուն կը սորվեցնեն՝ որ բառերը ունին հոմանիշներ, որ հոմանիշները նոյն իմաստին երկու տարբեր բառերն են, առանց փորձելու նաւարկել նոյն իմաստներուն ենթակայական չերտաւորումներուն միջեւ, քանի որ ենթակայականութիւնը անկարելի է տեղաւորել մէկ հաւասար է մէկի գաղափարախօսութեան մէջ:

1967-ին, Աշոտ Սուքիասեան այսպէս արտայայտուած է հոմանիշներուն մասին. «Ելնելով հոմանիշների բնութագրման աւանդական եւ ժամանակակից տեսութիւններից, հոմանիշներ ենք համարում միեւնոյն հասկացութիւնն արտայայտող այն բառերը, որոնք նոյնն են կամ մօտ են իրենց իմաստներով, բայց կարող են տարբերուել իրարից կամ իմաստային նրբերանգներով, կամ ոճական առանձնայատկութիւններով, կամ էլ ե՛ւ իմաստային նրբերանգներով, ե՛ւ ոճական առանձնայատկութիւններով միաժամանակ:»(3)

Կարելի է հասկնալ՝ որ հոմանիշներուն բուն իմաստը իրենց բազմակեցութեան մէջ է: Կը բաւէ որ Սուքիասեան անոնց բնութագրութեան համար կը գործածէ «նոյն», «մօտ» եւ «տարբեր» բառերը, ընդ որում երեք տեսակ «տարբեր»-ներ՝ իմաստային, ոճական եւ իմաստային-ոճական: Կ'ենթադրուի, ուրեմն, որ հոմանիշներու ընտրութեան ու գործածութեան կարեւոր մասը ենթակայական բնոյթ ունի: Սակայն, ինչպէս հետեւեալ պարբերութենէն կարելի է հասկնալ, հակառակ գործադրութեան իր հաստատած բազմազանութեան, Սուքիասեան գոնէ տեսականօրէն կը նախընտրէ վերջնականութիւնները. «Պէտք է խոստովանել, սակայն, որ թէեւ սովետական լեզուաբանական գրականութեան մէջ վերջին ժամանակներս [իմա՝ 1960-ականները, Հ.Ա.] աշխուժութիւն է նկատւում խնդրոյ առարկայ հարցերի առաջադրման եւ լուծման ուղղութեամբ, երեւան են եկել զգալի թուով աշխատութիւններ, որոնցում շօշափւում եւ փորձեր են արւում լուծելու հոմանիշների տեսութեան կնճռոտ հարցերը, բայց, ցաւօք սրտի, պէտք է արձանագրել, որ դրանք դեռեւս իրենց վերջնական լուծումը չեն ստացել:»(4)

Ուրեմն, հոմանիշներու առումով Սուքիասեան «վերջնական լուծում»-ի կողմնակից է, թէեւ, ինչպէս տեսանք, իր իսկ մեկնաբանութիւնը ուրիշ ուղղութիւն կը թելադրէ:

Սուքիասեանէն աւելի քան երեք տասնամեակ առաջ, հայերէն լեզուի իր կազմած հրաշալի բառարանի նախաբանին մէջ, Յովհաննէս Գայեան կը թելադրէ հոմանիշներու առումով խուսափիլ բացարձակապաշտութենէ՝ որ կը նշանակէ, թէ բացարձակ-վերջնական լուծումներու միտումներ արդէն կը գտնուէին իր ժամանակ. «Հոմանիշներու էութեան մէջ բացարձակապաշտ չըլլալով հանդերձ՝ կը խորհինք թէ յաճախ յաջողած ենք իբր հոմանիշ հնչող, հինգ, տասը, տասնըհինգ, մինչեւ քսան անառարկելի բառեր մէկտեղ բերել, իսկ առումներու զանազանութեան եւ ճոխութեան մէջ, կրնանք յաւակնիլ եւ ըսել թէ այդ մարզին մէջ մեր ստացումները գրեթէ անմրցելի են. անոնց մէջ կարելի է գտնել ութսունէն մինչեւ երկու հարիւր հատ եւ դեռ աւելի:»(5)

Աշակերտին Սուքիասեանի վերջնականութեան միտումի տեսական-առարկայականութիւնն է որ կ'առաջարկուի, փորձառութեան վրայ հիմնուած ենթակայականութիւնը մնալով բոլորովին անընդունելի ու անհասանելի: Նոյնիսկ կարելի է ըսել՝ որ այդ տեսականութեան լոկ կմախքային լուծումն է որ կ'առաջարկուի աշակերտին:

Հոմանիշները բացառիկ առիթ են զարգացնելու աշակերտին ենթակայականութիւնը: Դժբախտաբար, ենթակայականութիւն հասկացողութիւնը այսօրուան զանգուածային մտաւորականութեան համար ստացած է անձնականութեան կամ եսականութեան խեղաթիւրուած իմաստը, մինչդեռ ենթակայականութիւնը նախ եւ առաջ մարդու մը ներքին անսահման ընդունակութիւններն ու մտածելու կարողութիւններն է: Ենթակայականութիւնը կը կապէ, կը բացատրէ, կը մեկնաբանէ, անձը կը դիտէ համայնքային միջավայրի մէջ, առարկայականութիւնը՝ իբրեւ ենթակայականութեան հիմնահոսանքային եսական ձեւափոխումի կողակիցը, կ'անջատէ, կը զլանայ մեկնաբանել, կանխակալ դրոյթներով կամ առանց քննականութեան կ'ընդունի իրմէ օտար առարկան իբրեւ փաստ:

Ենթակայականութիւնը Մունիր Ֆաշէի փորձուած իրական աշխարհն է՝ ուր փաստերը վիճարկելի են, իսկ առարկայականութիւնը՝ Ֆաշէի վերացական աշխարհը, ուր փաստերը անվիճարկելի են:

Օրինակ, կարելի է աշակերտին տալ նման առաջարկ՝

Հետեւեալ նախադասութիւններուն համար ընտրել տրուած հոմանիշներէն մէկը.

1. Գեղջուկին/Շինականին/Գիւղացիին երգը բխած է իր անմիջական միջավայրէն:

2. Կ'ըսեն՝ որ հեռաձայնը/հեռախօսը կը կրճատէ տարածութիւնները, բայց արդե՞օք անիկա կը մօտեցնէ/մերձեցնէ նաեւ սիրտերը:

3. Նոր տարուայ գիշերուան համար եգիպտահայութիւնը նախընտրեց պանդոկի մը պերճ/փառաւոր/շքեղ/մեծաշուք մթնոլորտը փոխանակ հայկական ակումբի մը մտերմական/հարազատ միջավայրին:

4. Վահան Թէքէեան ծանօթ/հանրածանօթ/ յայտնի/ճանչցուած բանաստեղծ ու հրապարակագիր մըն է:

Ինչո՞ւ նման առաջադրութիւններ անընդունելի են արդի զանգուածային մանկավարժութեան (անշուշտ, ոչ միայն որովհետեւ հայ ուսուցիչը եւ անոր հովանաւորողները կրնան Նովոթէլի նախասիրողները ըլլալ): Նախ, որովհետեւ անոնք անհամատեղելի են թուանշանային պարտադիր դրութեան հետ: Ամենագէտ ուսուցիչը ինչպէ՞ս պիտի գնահատէ երկու «ճիշդ»-երու միջեւ ընտրութիւնը: Թուանշանը պէտք մըն է իսկ թուանշանի համար պարտադիր կերպով բացարձակ ու անվիճելի «սխալ»-ներ պէտք է գոյացուին: Եթէ պիտի ընտրես չորս բառերէն մէկը, անոնցմէ երեքը պէտք է սխալ ըլլայ: Ուրեմն, թուանշա՞նն է խոչընդոտը: Բայց չէ՞ որ թուանշանային դրութիւնը ստեղծուած է այդ խոչընդոտումը հաստատելու եւ վաւերացնելու համար, ինչպէս նաեւ խոչընդոտումը խոչընդոտելը անկարելի դարձնելու համար: Կարծես թուանշաններէն անդին գնահատում գոյութիւն չունի: Կարծես թուանշանը հանդիսանայ գնահատելու միակ, բացառիկ ու վերջնական միջոցը:

Արդիական աշակերտը պարտաւոր է գիտնալ՝ գիտնալ միայն իրեն տրուածը, եւ ոչ երբեք մտածել՝ մտածել ինչ որ իրական գետինի վրայ կ'ապրի ու կը շնչէ: Իրական աշխարհը կենցաղային է, կոշտ է ու անտաշ, կը թելադրուի աշակերտին, մինչդեռ աշակերտին կը ներկայացուի մտացածին իրականութիւն մը՝ հիմնուած ճշգրիտ հաշուարկելի (1=1) գիտելիքի վրայ:

Մինչդեռ դեգերելով հոմանիշներու անսահման/սահմանազերծ/անեզր/անծայրածիր/անսպառ/անչափելի շրջանակներուն մէջ, առարկայականացումները կը դառնան անկարելի՝ աշակերտին լայն հորիզոններ բանալով ինքնուրոյն մտածողութեան եւ ընտրութեան: Ընտրութիւն՝ ոչ թէ կանխադրեալ պարտաւորութիւններու այլ անընդհատ մտոլորող ճաշակներու եւ գեղագիտական ընկալումներու մէջէն: Ընտրութիւն՝ որ կրնայ որեւէ ժամանակ փոխել իր նախասիրութիւնը: Ընտրութիւն՝ որ կրնայ միաժամանակ ընտրել աւելի քան մէկը:

Ահաւասիկ, օրինակ, «Գիրք Ծննդոց»-ի Նիւ Եորքի 1917-ի թարգմանութիւն մը. «Յովսէփը պտղատու ոստ մըն է, աղբիւրի քով տնկուած պտղաբեր ոստ մը՝ որուն բողբոջները պատի վրայ կ'ելլեն» (Գիրք Ծննդոց, ԽԹ/22)(6): Յովսէփ «պտղատո՞ւ» է թէ «պտղաբեր»: Եւ ուսուցիչը կրնայ կտակարաններուն աշխարհաբար թարգմանութիւններուն մէջ տեղ գտած պտղատու/պտղաբեր բառերուն փոխգործածութեան մասին ամբողջ դասապահ մը յատկացնել, ներկայացնելով ոչ միայն այս երկու հոմանիշներուն գեղեցկութիւնները, այլ բացատրելով անոնց շուրջ գտնուող նախադասութիւններուն եւ առակներուն իմաստները, ձգտելով աւետարաններուն տալ մարդկային ու մարդաստեղծ հրաշալի/սքանչելի/հիանալի/զմայլելի դէմք մը:

(Վերջ 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

3. Աշոտ Սուքիասեան, *Հայոց լեզուի հոմանիշների բառարան*, Երեւան, Հայկական ՍՍՀ Գիտութիւնների Ակադեմիայի Հրատարակչութիւն, 1967, էջ 6:

4. Անդ, էջ 6:

5. Յ. Թ. Գայեան, *Բառարան-գանձարան հայերէն լեզուի*, Գահիրէ, Տպագրութիւն Գալֆա, 1938:

6. *Աստուածաշունչ. գիրք Հին եւ Նոր Կտակարանաց*, Նիւ Եորք, Ի Տպարանի Աստուածաշունչի Ընկերութեան, 1917, էջ 55:

ՃԱՌԱԳԱՅԹ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ ԵՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԵՐԹՕՆԸ (ծննդեան 85-ամեակին առիթով)

2

տարի, Թիւ 19479 մինչեւ 2 Օգոստոս 1983, 68-րդ տարի, Թիւ 19503 (22 չար.):

**29. Ճոն Բաքազեան,** ***Հայերը Կոստանդնուպոլսոյ մէջ,*** **Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 1 Դեկտեմբեր 1983, 68-րդ տարի, Թիւ 19599 մինչեւ 9 Դեկտեմբեր 1983, 68-րդ տարի, Թիւ 19606 (6 չար.):

**30. Աւետիս Եափուճեան,** ***Պատմութիւն Հայ Ազգային Հիմնադրամի 1942–1982,*** 30 Յունուար 1984, 68-րդ տարի, Թիւ 19644 մինչեւ 27 Մայիս 1985, 70-րդ տարի, Թիւ 20031 (253 չար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1984:

**31. Կերհարտ Պասարաք,** ***Ամենայն Հայոց Հոգեւոր Հայրը՝ Կաթողիկոս Վազգէն Ա.,*** **անգլերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 22 Փետրուար 1984, 68-րդ տարի, Թիւ 19664 մինչեւ 20 Մարտ 1984, 68-րդ տարի, Թիւ 19687 (19 չար.):

**32. Աւետիս Եափուճեան,** ***Սիմոն Շահրիկեան. մարդը եւ արուեստագէտը,*** 12 Յուլիս 1984, 69-րդ տարի, Թիւ 19779 մինչեւ 20 Յուլիս 1984, 69-րդ տարի, Թիւ 19786 (6 չար.):

**33.** ***Յուշագրութիւն Յովհաննէս Տատեանի որդի մահտեսի Առաքել Տատի 1798–1846,*** **ֆրանսերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 10 Սեպտեմբեր 1984, 69-րդ տարի, Թիւ 19823 մինչեւ 30 Հոկտեմբեր 1984, 69-րդ տարի, Թիւ 19863 (33 չար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1984:

**34. Վահէ Քաչա,** ***Դաշոյն մը այս պարտէզին մէջ,*** **ֆրանսերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 3 Յունիս 1985, 70-րդ տարի, Թիւ 20037 մինչեւ 13 Մայիս 1986, 70-րդ տարի, Թիւ 20312 (259 չար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Vahé Katcha, *Un Poignard dans ce jardin*, Paris: Presses de la Cité, 1981:

Յետագային ան Թարգմանուած է նաեւ արեւելահայերէնի՝ *Մի դաշոյն այս պարտէզի մէջ,* Թարգմանութիւն Ալեքսանդր Թոփչեան, Երեւան, Նաիրի, 1999:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1986:

**35. Հանրի Վերնէօյ,** ***Մայրիկ,*** **ֆրանսերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 14 Մայիս 1986, 70-րդ տարի, Թիւ 20313 մինչեւ 10 Հոկտեմբեր 1986, 71-րդ տարի, Թիւ 20431 (101 չար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Henri Verneuil, *Mayrig*, Paris: Éditions Robert Laffont, 1985, կամ Henri Verneuil, *Mayrig*, Paris: le Grand livre du mois, 1985:

Եափուճեանի Թերթօնը *Մայրիկ*ի առաջին հայերէն Թարգմանութիւնն է: Ժ. ԱԹԹարեանի Թարգմանութիւնը լոյս տեսած է անկէ մէկ տարի ետք (Անրի Վերնէօյ, *Մայրիկ*, հայացուց Ժիրայր ԱԹԹարեան, New York: Prelacy of the Armenian Apostolic Church of Armenia, 1987) իսկ Հայաստանի Թարգմանութիւնը երեք տարի ետք (Անրի Վեռնոյ, *Մայրիկ*, ֆրանսերէնից Թարգմանեց Սոֆի Աւագեան, Երեւան, Խորհրդային Գրող, 1989):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1986:

**36. ՍԹեֆըն Շեփըրտ,** ***ՄոնԹէ-Քարլօ,*** **անգլերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 2 Յունուար 1987, 71-րդ տարի, Թիւ 20500 մինչեւ 25 Յուլիս 1987, 72-րդ տարի, Թիւ 20664 (152 չար.):

Անգլերէն բնագիրը՝ Stephen Sheppard, *Monte Carlo*, New York: Summit Books, 1983:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1987:

**37. Աւետիս Եափուճեան,** ***Սերօ Խանզադեան,*** 6 Ապրիլ 1987, 71-րդ տարի, Թիւ 20579 մինչեւ 11 Ապրիլ 1987, 71-րդ տարի, Թիւ 20584 (6 չար.):

**38. Թագւոր Թագւորեան,** ***Արմենուշ,*** **ֆրանսերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 27 Յուլիս 1987, 72-րդ տարի, Թիւ 20665 մինչեւ 4 Փետրուար 1988, 72-րդ տարի, Թիւ 20820 (127 չար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Takvor Takvorian, *Arménouch ou Pèlerinage d'amour*, Paris: Ophrys, 1981:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք Գահիրէի (Տպարան Արեւ, 1988) եւ Փարիզի մէջ (Gap (52 Av. Jean-Jaurès, 05000): T. Takvorian, 1989):

**39. Թագւոր Թագւորեան,** ***Գրիգոր,*** **ֆրանսերէնէ Թարգմանեց Աւետիս Եափուճեան,** 5 Փետրուար 1988, 72-րդ տարի, Թիւ 20821 մինչեւ 9 Յունիս 1988, 73-րդ տարի, Թիւ 20919 (91 չար.):

Ֆրանսերէն բնագիրը՝ Takvor Takvorian, *Krikor, à la poursuite du passé*, Gap (52 Av. Jean-Jaurès, 05000): T. Takvorian, 1986:

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք Գահիրէի (Տպարան Արեւ, 1988) եւ Փարիզի մէջ (Gap (52 Av. Jean-Jaurès, 05000): T. Takvorian, 1989):

**40.** ***Ղարաբաղ,*** **պատրաստեց Աւետիս Եափուճեան,** 20 Յունիս 1988, 73-րդ տարի, Թիւ 20927 մինչեւ 6 Ապրիլ 1989, 73-րդ տարի, Թիւ 21158 (221 չար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Հայ Ազգային Հիմնադրամ, 1988:

**41.** ***Ղարաբաղեան պահանջատիրութիւնը,*** **պատրաստեց Աւետիս Եափուճեան,** 7 Ապրիլ 1989, 73-րդ տարի, Թիւ 21159 մինչեւ 29 Դեկտեմբեր 1989, 74-րդ տարի, Թիւ 21370 (192 չար.):

Թերթօնը լոյս տեսած է նաեւ իբրեւ գիրք, Տպարան Արեւ, 1989:

(Վերջ 2)

## ՆԱՋԻԲ ՄԱՀՖՈՒԶԻ *ՌԱԴՈԲԻՍ* ՎԷՊԸ

3

է դառնում միայն այն դէպքում, երբ այդ յարաբերութիւնները բախւում են իրական, այս դէպքում՝ արտաքին ժամանակի հետ:

Նոյնքան չեզոք է նաեւ վիպական հիմնական գործողութիւնների տարածութիւն Աբու քաղաքը, այն մեծապէս դեկորատիւ է իր բնոյթով, աւելի շատ բեմ է յիշեցնում՝ իր տարբեր տեսարանների համար նախատեսուած անկիւններով՝ արքայական նստավայր, Ռադոբիսի պալատ, հրապարակ եւ այլն: Վէպի սիւժէի վրայ ազդեցութիւն ունեցող գրեթէ բոլոր գործողութիւնները տեղի են ունենում բեմական քաղաքից դուրս (եկէք դրանք կոչենք կուլիսային քաղաքներ), իսկ բուն քաղաքում խաղարկւում է հիմնականում Նեղոսի տօնակատարութիւնն ու սիրային պատումը:

Հետաքրքիր են նաեւ տարբեր կերպարների գործառոյթները վէպում: Ընդունեցինք, որ գործ ունենք սիրային պատումի հետ՝ իր երկու կարեւոր դերակատարներով: Ո՞րն է միւս կերպարների դերը այս հանգոյցում, եթէ այդ երկուսը առանց նրանց էլ կարող են խաղալ սիրային կառնաւալը: Մահֆուզը իր վէպի գլուխները յաճախ վերնագրում է այս կամ այն կերպարի անունով՝ Տահօ (փարաւոնին կից արքունի զօրքի հրամանատարն է), Բնամոն (Ռադոբիսի պալատի նկարիչ-քանդակագործն է), Խնումհաթէբ (քրմապետն է), Իթոկրիս (թագուհին է, միեւնոյն ժամանակ՝ փարաւոնի քոյրն ու կինը):

Ուշադիր լինելու դէպքում կը նկատենք, որ իրենց խաղացած մանր-մունր դերերի մէջ այս բոլորի գլխաւոր կամ, եթէ կարելի է այդպէս ասել, հաւաքական գործառոյթը սիրային իդիլիան քանդելն է՝ չնայած նրանք այդ մասին իրար հետ ոչինչ չեն պայմանաւորւում: Տահոն մտերիմն ու հաւատարիմ զինակիցն է փարաւոնի, բայց միեւնոյն ժամանակ խենթի պէս սիրում է Ռադոբիսին, եւ երբ գալիս է բախտորոշ պահը, մոռանում է հաւատարմութեան մասին եւ հակառակորդ բանակին փոխանցում սիրահարների՝ իրեն վստահած գաղտնիքը: Բնամոնը սիրահարուած է Ռադոբիսին, պատրաստ է կատարել գեղեցկուհու բոլոր քմահաճոյքները, բայց սէրը կուրացրել է նրան ու «գլխի չի ընկնում», որ տիրուհու հերթական պահանջը կատարելով՝ վերջինիս ինքնասպանութեանն է նպաստում: Խնումհաթէբը ամբողջ երկիրն է ոտքի հանում փարաւոնի դէմ՝ իբր նրա կայացրած վճիռը չեղարկելու համար՝ ըստ որի քրմական դասը պէտք է զրկուէր իրեն պատկանող կալուածքներից: Բայց գլխաւոր բողոքի ալիքը կառուցւում է միայն այն հանգամանքի վրայ, որ փարաւոնը կալուածքների ողջ հարստութիւնը ծախսում է իր սիրելի Ռադոբիսի վրայ: Իթոկրիսն էլ եղբայրամուսնուն խանդելով է պայմանաւորում իր քայլերի տրամաբանութիւնը, ով կարծես ունի ողջ ժողովրդի ու պալատականների սէրն ու վստահութիւնը, բայց երկրի թագուհին լինելով՝ կորցրել է փարաւոնի սրտի թագուհու տիտղոսը:

Ստացւում է, որ վէպի երկու գլխաւոր կերպարները սիրային պատումի հերոսներ են, իսկ մնացած բոլորը ժամանակի պատմական-քաղաքական իրողութիւնների դերակատարները: Վերջիններս, կամայ թէ ակամայ, գործիքներ են, որ պայքարում են պատմական ժամանակ ներխուժած սիրային ժամանակի դէմ, որպէսզի վերականգնեն պատմական ժամանակը: Պատահական չէ, որ վէպի դիպաշարի սիրային հանգուցալուծումից յետոյ նրանցից ոչ մէկի ճակատագրի մասին հեղինակը մեզ՝ ընթերցողներիս, ոչինչ էլ հարկ չի համարում պատմել: Սա նրանց պատմութիւնը չէ, Նաջիբ Մահֆուզը նրանց վկայողը չէ. Պատմութիւնը՝ որպէս ժամանակի դէպքերի արձանագրութիւն, հեղինակին այս վէպում չի էլ հետաքրքրում:

Նոբէլեան իր բանախօսութեան ժամանակ Մահֆուզը խօսում է այն մասին, որ ինքը ծնունդ է մի քաղաքակրթութեան, որը երկու մեծ շրջափուլ է անցել՝ փարաւոնեան եւ իսլամական: Խօսելով փարաւոնների ժամանակի մասին՝ նա ասում է, որ հաւաքուածներից շատերը վստահ գիտեն Ախենաթոնի, եգիպտական բուրգերի ու Սֆինքսի մասին, բայց իր համար այդ դարաշրջանը նշանաւոր է յատկապէս այլ ժառանգութեամբ, որը տեղ է գտել պապիրուսներից մէկում, այն մասին, թէ ինչպէս փարաւոնը լսելով, որ իր հարէմի որոշ կանայք մեղսակցել են իր պալատի որոշ տղամարդկանց հետ, ոչ թէ միանգամից սպանել է տալիս նրանց՝ իր իրաւունքների ու ժամանակի ոգու հանգոյն, այլ հրաւիրում է իր մարդկանց եւ խնդրում հետաքննել դէպքերն ու զեկուցել ողջ ճշմարտութիւնը, որպէսզի կարողանայ արդարադատ լինել իր որոշման մէջ:

Մէկ այլ՝ պատմական մեյնսթրիմից դուրս մնացած անյայտ պապիրուս էլ կարծես Նաջիբ Մահֆուզի *Ռադոբիս*ն է, որը թերեւս հակապատմավէպ է իր բնոյթով, եւ պատճառն այն չէ, որ վէպում բազմաթիւ պատմական անճշգրտութիւններ կան, այլ հենց հեղինակի ընտրած դիրքաւորումը, ով հաստատապէս գեղեցիկի որոնող է եւ համոզուած է, որ այդ գեղեցիկը չի տրուել ու չի տրւում ճշգրիտ փաստագրման:

(*Արտերիա*, մշակութային քննադական ամսագիր, 11 Դեկտեմբեր 2015)

## ՎԱՂԱՐՇԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ.- «ՄՈՍԿՈՒԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՎԵՐԱՆԱՅՈՒՄԸ ԿԱՐՈՂ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ ՕԳՏԱԿԱՐ ԼԻՆԵԼ»

2

Անդրադառնալով ռուս թուրքական յարաբերութիւնների վատթարացմանը՝ Յարութիւնեանը նշեց, որ ռազմաքաղաքական պլանում նրանք երբեք սերտ համագործակցութեամբ աչքի չեն ընկել: «Նման բան երբեք չի եղել: Զբօսաշրջութեան ոլորտում՝ այո, բայց ոչ ռազմաքաղաքական պլանում: Ռուսաստանի համար ՆԱՏՕ-ի անդամերկրները, այսինքն՝ նաեւ Թուրքիան սպառնալիք են ներկայացնում»,- եզրափակել է նախկին նախարարը:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1762 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՄԱՐՏ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ՂԻԿ. عدد رقم ١٧٦٢ الخميس ١٠ مارس ٢٠١٦


## «ՄԱՐՏԻ 1»-Ի ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՆ ԳՈՐԾՈՂ ՈՂՋ ՀԱՄԱԿԱՐԳՆ Է, ՖՈՐՄԱԼ ԵՒ ՈՉ ՖՈՐՄԱԼ ՍՈՒԲԻԷԿՏՆԵՐՈՎ ՀԱՆԴԵՐՁ

**Հարցազրոյց Ստեփան Դանիէլեանի հետ**

**Հարցազրոյցը վարեց Ա. Վարդանեան**

2008 Թուականի մարտեան ողբերգական իրադարձութիւնից տարիներ անց բազմաթիւ անպատասխան մնացած հարցեր կան: Որտե՞ղ պէտք է փնտռել տեղի ունեցածի հիմքերը, ինչո՞ւ համարժէք գնահատական չի տրւում մարտեան ողբերգութեանը: Թեմայի վերաբերեալ *Գալա*ն զրուցել է Համագործակցութիւն Յանուն Ժողովրդավարութեան կենտրոնի նախագահ Ստեփան Դանիէլեանի հետ:

**– Պարոն Դանիէլեան, Ձեր կարծիքով ինչո՞ւ առ այսօր Մարտի մէկին չի տրւում իրական, քաղաքական գնահատական:**

– Իմ տեսակէտն այն է, որ Հայաստանի երկու հիմնական խնդիրներն են՝ պատասխանատուութեան բացակայութիւնը եւ այն, որ երեւոյթները եւ դէպքերը չեն ստանում քաղաքական գնահատական: «Մարտի 1»-ին նոյնպէս չի տրուել քաղաքական գնահատական. ո՞վ է կրակել, ո՞ւմ վրայ են կրակել եւ նոյնպէս շատ կարեւոր մի հարց. ով իրեն ինչպէ՞ս է պահել այդ յանցագործութիւնից յետոյ: Առաջին հայեացքից կարծես թէ այդ բոլոր հարցերի պատասխանները պարզ են, սակայն ընդամէնն առաջին հայեացքից:

Քաղաքական դերակատարութիւն ստանձնած կամ նման դերակատարութեանը յաւակնող շատ սուբիեկտներ մինչեւ օրս այդ ողբերգութիւնը շահարկում են իրենց իրական կամ հնարաւոր շահերի համար: Իմ տեսակէտից առաջին հարցի պատասխանը մէկն է՝ առնուազն 10 անձի գնդակահարութիւնն իրականացրել է համակարգը. մէկը տուել է հրամանը, ձեւաւորուած շտաբը համակարգել է գործողութիւնները, յատուկ ստորաբաժանումները, պատասխանատու կառոյցները եւ ոչ ֆորմալ ռազմականացուած ջոկատները իրականացրել են ուժային գործողութիւնները, իրաւապահ մարմինները ձերբակալել են հարիւրաւոր մարդկանց, դատարանները եւ դատախազներն իրականացրել են պատուէրը, բանակի ղեկավարութիւնն իրականացրել է յատուկ դրութիւնը: Աւելին, ամիսներ եւ տարիներ մարդիկ գտնուել են թաքստոցներում, դատուել են եւ այլն: Սա ի՞նչ է նշանակում: Նշանակում է, որ գործել է մի ամբողջ համակարգ, որտեղ պետական կառոյցներից բացի «միջոցառմանը» մասնակցել են ոչ ֆորմալ կառոյցներ եւ կրիմինալ աշխարհը: Այդ ամէնին ներգրաւուած են եղել հազարաւոր մարդիկ:

Իմ կարծիքով սա է առաջին հարցի պատասխանը: «Մարտի 1»-ի պատասխանատուն գործող ողջ համակարգն է, ֆորմալ եւ ոչ ֆորմալ սուբիեկտներով հանդերձ:

Երկրորդ հարցի (ո՞ւմ վրայ են կրակել) պատասխանը նոյնպէս կարեւոր է: Կոնֆլիկտը եղել է երկու քաղաքական կողմերի միջեւ՝ իշխող համակարգի եւ ընդդիմութեան, սակայն գնդակահարուածների մէջ չեն եղել ընդդիմութեան ներկայացուցիչները: Գնդակահարուել են պատահական մարդիկ, աւելին, նոյնիսկ լրագրողներ կամ հանրային քիչ թէ շատ ճանաչուած դէմքեր չեն եղել նրանց մէջ:

Սա նոյնպէս կարեւոր է գիտակցել: Սպանուել են մարդիկ, որոնք քաղաքական առումով սուբիեկտներ կամ կողմ չեն եղել: Այդ յանցագործութիւնն ուղղակիօրէն ուղղուած չի եղել քաղաքական հակառակորդների դէմ: Իմ կարծիքով հիմնական պատճառը եղել է այն, որ յետագայում հնարաւոր լինի նրանց հարկադրել՝ գնալով երկխօսութեան ճանաչել Մարտի 1-ից յետոյ ստեղծուած քաղաքական ստատուս քվոն, եւ հիմնականում դա յաջողուել է:

Ձերբակալուածների եւ փախուստի մէջ գտնուողների ճակատագիրը հանդիսացել է այն հանրային արդարացումը, որի համար ընդդիմութիւնը համագործակցել եւ ճանաչել է գործող համակարգը: Կամ աւելի ճիշտ կը լինի ասել՝ երկարատեւ ռեպրեսիաներն իրականացուել են հէնց այդ նպատակի համար:

Երրորդ հարցի (ով իրեն ինչպէ՞ս է պահել այդ յանցագործութիւնից յետոյ) պատասխանը նոյնպէս կարեւոր է, որովհետեւ դա ցոյց է տալիս քաղաքական սուբիեկտայնութիւն ունեցող խմբաւորումների դիրքորոշումները: Տեսէք, այսօր Դաշնակցութիւնը յայտարարում է, որ համագործակցում է իշխանութեան հետ, որովհետեւ ցանկանում է ստանձնել քաղաքական պատասխանատուութիւն: Մարտի 1-ից յետոյ 4 կուսակցութիւն կոալիցիայի անդամ էին՝ ՀՀԿ, ՕԵԿ, ՀՅԴ եւ ԲՀԿ: Դա՞ ինչ է նշանակում: Դա նշանակում է, որ այդ ուժերը Մարտի 1-ի արդիւնքների համար ստանձնել են քաղաքական պատասխանատուութիւն: Սակայն դրանով ցուցակը չի սահմանափակւում:

Ընդդիմութիւնը գնաց երկխօսութեան Սերժ Սարգսեանի հետ, նախկին քաղբանտարկեալների մի մասը վերցրեց պատգամաւորական մանդատները եւ Ազգային Ժողովում հարցեր են քննարկում Մարտի 1-ի պատասխանատուների հետ: Ոմանք էլ մասնակցեցին յայտնի ֆոտոսեսիային՝

4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՄԱՐՏԻ 1-Ի ԶՈՀԵՐԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ ԵՐԹ ԵՒ ՈԳԵԿՈՉՄԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ

Երկիր Մեդիա, 1 Մարտ – *Երեւանում, Ազատութեան հրապարակում «Նոր Հայաստան» միաւորման, «Հայաստանի ժողովրդական կուսակցութեան» եւ «Հայ ազգային կոնգրէսի» համատեղ հաւաք է տեղի ունեցել, որից յետոյ սկսուել է երթը՝ դէպի Ալեքսանդր Միասնիկեանի արձան, մահացածների յիշատակը յարգելու համար:*

*«Հայ ազգային կոնգրէսից» բացման խօսքով հանդէս է եկել Արամ Մանուկեանը եւ նշել է, որ հանրահաւաք չի լինելու, քանի որ հաշուի են առել Մարտի 1-ի զոհերի հարազատների ցանկութիւնը եւ չեն ցանկացել Մարտի 1-ի հանրահաւաքն օգտագործել քաղաքական ծրագրով հանդէս գալու համար:*

*«Հիմնադիր խորհրդարանի» նախագահ Գարեգին Զուգասզեանի փոխարէն, ինչի մասին նախապէս յայտարարուել էր, համատեղ յայտարարութիւնը ներկայացրել է «Ժառանգութիւն» կուսակցութեան փոխնախագահ Արմէն Մարտիրոսեանը:*

*Փաստաթղթին իրենց ստորագրութեամբ միացած կազմակերպութիւնները պահանջել են՝ հետեւողական լինել Մարտի 1-ի կազմակերպիչներին եւ կատարողներին պատասխանատուութեան ենթարկելու հարցում:*

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՓՈՐՁԱԳԷՏՆԵՐԸ «ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԵՐ»-ԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Ռուս-հայկական լրատուական գործակալութիւն, 4 Մարտ.

*– Ռուսական Դաշնութեան (ՌԴ) նախագահ Վլադիմիր Պուտինն ընդունել է Հայաստանին «Պաշտպանական համակարգեր» միջպետական ֆինանսաարդիւնաբերական խմբում ընդունելու համար ՀՀ-ի հետ բանակցութիւններ վարելու ՌԴ կառավարութեան առաջարկը:*

*Ըստ ռազմական փորձագէտ,* Ազգային պաշտպանութիւն *ամսագրի գլխաւոր խմբագիր Իգոր Կորոտչենկոյի՝ «Պաշտպանական համակարգեր» խմբին անդամակցելն առաջին հերթին անհրաժեշտ է Հայաստանին:*

4

## ՍԻՐԻԱՀԱՅԵՐԸ ԼՔՈՒՄ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**ՆԱԻՐԱ ԲՈՒԼՂԱԴԱՐԵԱՆ**

Փետրուարի 25-ի առաւօտեան եւս երկու տասնեակ սիրիահայ լքեց Հայաստանը եւ ուղեւորուեց Կանադա՝ այնտեղ գործող Հայ Տուն կազմակերպութեան աջակցութեամբ: Կազմակերպութեան կայքի համաձայն՝ 2014-ից սկսած արդէն Կանադա է տեղափոխուել աւելի քան 500 սիրիահայ: Փետրուարի 25-ին Զվարթնոց օդանավակայանի սպասասրահում հաւաքուած սիրիահայերը խուսափում էին տեսախցիկի առջեւ բացատրել, թէ ինչու են կրկին հեռանում հայրենիքից:

Սիրիական պատերազմի սկզբում Հալէպից Հայաստան եկած Յարութիւն Փալուլեանը երկու օր առաջ էր Երեւանում ամուսնացել, սակայն իր նոր ընտանիքի ապագան հայրենիքի հետ չի կապում: Ապրուստը թանկ է, աշխատավարձը չի բաւականացնում: «Հաստատ ստեղի կառավարութիւնից լաւ ա, արդէն եանըմ սիրիահայերին օգնում են, սուտ է, Հրանուշ Յակոբեանին պէտք է ազատեն աշխատանքից», – ասում է նա:

Օտար Մոնրէալում Յարութիւնի նորաստեղծ ընտանիքին արդէն սպասում են: Խոստացել են նաեւ աշխատանք գտնել:

Ազատութիւն Ռադիոկայանի հետ զրոյցում սիրիահայերն ասում են, որ Կանադա մեկնելու համար անհրաժեշտ պայման է տեղում երաշխաւոր ունենալը, ով բնակարան կը գտնի եւ կ'աջակցի, մինչ իրենք աշխատանք կը գտնեն: «Մոնրէալ ենք գնում, պէտք է որ աշխատանք ճարենք, լիքը բարեկամներ ունենք: Իրենք էլ են հասել այնտեղ, նենց չի, որ մենք առաջինն ենք: Հոսքը շատ շատ է, երեւում է», – ասում է Յարութիւնը՝ ցոյց տալով Կանադա մեկնող սիրիահայերի շարքը:

Հայաստան գալուց կարճ ժամանակ անց Հայկական Ծրագրեր ընկերութիւնում աշխատանք գտած Յարութիւնը փորձել է ինքն էլ նպաստել, որ երկրում փոփոխութիւններ լինեն: Բազմիցս բողոքի ցոյցերի է մասնակցել: Անցած երեքուկէս տարիներին, սակայն, հիասթափուել է: «Փողի խնդիր չի ստեղ, այլ ապրելակերպի, մի հատ 888 համարով աւտոն վրէդ քշում է, չես կարող խօսել, կամ՝ Լիսկայի 777 համարով աւտոն անցնում է վրայովդ, չես կարող խօսել», – ասում է Յարութիւնը:

Նրա մայրը՝ Արաքսիան ասում է, որ իր համար աւելի դժուար է՝ Հալէպից Երեւան, հիմա էլ՝ Մոնրէալ: Օվկիանոսից այն կողմ տարեց կինը չի պատկերացնում իր ապագան, բայց «պարտաւորուած է» գնալ: «Նաւը ուր պիտի տանի, էդտեղ պիտի գնանք: Երեխաներս գնում են, ես էլ պիտի գնամ պարտաւորուած, բայց հաւատայ, որ առանց ուզելու կը գնամ, կեանքն էր Հալէպը, էդտեղ տունս թողեցի, էստեղ տունս թողեցի, հայի բախտ է, էդտեղից փախանք եկանք, էստեղից կը փախնենք, վերջը, վերջը ո՞ւր: Հիմա որ ասեն պատերազմը վերջացել է, չեմ գնայ Կանադա, կը դառնամ տունս», – ասում է տիկին Արաքսիան:

Պետրոս Քիրազեանը որդուն ճանապարհ էր դնում յաջողութեան հասնելու ակնկալիքով՝ «էստեղ հազիւ վարձ ես տալիս, էնտեղ գոնէ կը յաջողի»: Որդին՝ 27-ամեայ Սարգիսը մասնագիտութեամբ խառատ է, ասում է, որ անցած երեք տարիներին Հայաստանում այդպէս էլ չկարողացաւ յաջողութեան հասնել:

Կանադայում իրեն սպասող ծանօթներն են ասել, որ առաջիկայ օրերին արդէն կարող է աշխատանքի անցնել: «3 տարի

4

## 2008Թ.-Ի ՄԱՐՏԻ 1-ԻՑ ԱՆՑԵԼ Է 8 ՏԱՐԻ




### ՄԱՐՏ 1-Ի ՏԱՍԸ ԶՈՀԵՐԸ

Newspress.am, 1 Մարտ – *2008 Թուականի Մարտի 1-ից անցել է 8 տարի, սակայն Երեւանի կենտրոնում սպանուած 10-ը զոհերի համար մինչ օրս որեւէ մէկին մեղադրանք չի առաջադրուել:*

*2008 Թուականի Փետրուարի 19-ին մայրաքաղաքում սկսուել էին բողոքի ակցիաներ:*

*Բողոքներն ուղղուած էին ընտրութիւնների ընթացքում նկատուած խախտումների դէմ եւ կազմակերպուած էին նախագահի թեկնածու, Հայաստանի Հանրապետութեան առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների կողմից: Ազատութեան հրապարակում էին հարիւրաւոր քաղաքացիներ:*

*Ակցիան տապալելու համար, Փետրուարի 29-ին ՀՀ երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը հրահանգեց ոստիկաններին «մաքրել» Ազատութեան հրապարակը:*

*2008 Թուականի Մարտի 1-ին, 6:15-ին, ոստիկանութիւնն անցաւ Ազատութեան հրապարակում քնած ցուցարարներին ցրելու գործին:*

*Միասնիկեանի հրապարակում՝ Իտալիայի, Ֆրանսիայի դեսպանատների մօտ հաւաքուած՝ ուժայիններից պաշտպանուելու համար ցուցարարները կառուցեցին բարիկադներ: Երկու ժամ անց քաղաքապետարանի մօտ յայտնուեց առաջին զրահապատ մեքենան: Մէկ ժամից, տեղի տալով ցուցարարների պահանջներին, ոստիկանական ուժերը ստիպուած հեռացան: Ոստիկանական «Վիլիս»-ը քշեց ժողովրդի վրայ՝ վիրաւորելով մի քանի քաղաքացու: «Վիլիսն» այրուեց, իսկ ոստիկանները փախան:*

*Բաղաք բերուած ոստիկանութեան եւ ցուցարարների միջեւ տեղի ունեցած բախման արդիւնքում զոհուեց 10 եւ վիրաւորուեց մօտ 300 մարդ:*

*Մարտի 1-ի դէպքերի կապակցութեամբ պատասխանատուութիւն կրեցին քաղաքացիական անձինք: Ընդդիմադիր հայեացքներով յայտնի 65 անձ դատապարտուեց ազատազրկման, 6-ը՝ արդարացուեց, իսկ Շանթ Յարութիւնեանը ճանաչուեց անմեղսունակ: Աւելի ուշ ազատազրկուածներից 28-ին ներում շնորհուեց Հայաստանի նախագահի անունից, 26-ը համաներմամբ ազատուեց պատիժը չկրած մասից: Եւրոպական դատարան բողոքներ են գրել տասնեակ ընդդիմադիրներ եւ Մարտի 10-ը զոհերից 9-ի իրաւայաջորդներ:*

## ԹԷՂՈՒՏ ՀԱՆՔԱՎԱՅՐԻ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ ՇՆՈՂ ԳԵՏԻ ՋՐԵՐԻ ՈՐԱԿԻ ՎՐԱՅ. ՍԷՅՐԱՆ ՄԻՆԱՍԵԱՆԻ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆԸ

Lragir.am, 4 Մարտ – Դարաւոր անտառային էկոհամակարգի ոչնչացումից բացի Թէղուտի հանքավայրի շահագործումն առաջացրել է նաեւ այլ լուրջ բացասական հետեւանքներ, որոնցից մէկն է հանքավայրին յարակից տարածքներում հոսող գետերի ջրերի որակի խիստ վատթարացումը: Դրա վառ ապացոյցները ներկայացուած են ՀՀ Գիտական Ազգային Ակադեմիայի Քիմիական ֆիզիկայի ինստիտուտի գիտաշխատող Սէյրան Մինասեանի *Շնող գետի ջրերի որակի դինամիկան 2009-2015թթ. ընթացքում* հետազօտութեան մէջ: Աշխատանքում ներկայացուած են այդ տարածքի բնական միջավայրի կարեւորագոյն բաղադրիչ համարուող Շնող գետի ջրերի որակին վերաբերող խիստ մասնագիտական եւ գիտականօրէն հիմնաւորուած տուեալներ, աղիւսակներ եւ եզրակացութիւններ:

Որպէսզի ոչ մասնագէտ մարդիկ նոյնպէս պատկերացում կազմեն իրական վիճակի մասին, առանձին ներկայացնում ենք Սէյրան Մինասեանի նախնական եզրակացութիւնները, որոնք կատարուել են վերոնշեալ մոնիտորինգային հետազօտութեան արդիւնքում ստացուած տուեալների հիման վրայ.

«Շնող գետի ջրերի հիդրոքիմիական եւ հիդրոկենսաբանական որակի ցուցանիչների մեծութիւնների փոփոխութիւնները 2009-2015թթ. ժամանակահատուածում, ցոյց են տալիս, որ Թէղուտի հանքավայրի շահագործման նախապատրաստական աշխատանքներն ու շահագործումը էական բացասական ներգործութիւն ունեն Շնող գետի ջրային էկոհամակարգի վրայ:

«Գետի ջրերի որակը անշեղօրէն վատանում է հանքարդիւնաբերական գործունէութեան ընդլայնման հետ զուգահեռ, 2009-2015թթ. ընթացքում:

«Գետի ջրերում 2009 թուականի համեմատութեամբ բարձրացել են Mn, Ni, Cu, Zn, As, Se, Mo, Pb տարրերի, սուլֆատ անիոնի տարեկան եւ ըստ ջրաբանական սեզոնների միջին կոնցենտրացիաները:

«Գետաբերանի հատուածում գետի ջրերի ֆիզիկաքիմիական յատկութիւնները սկսել են վատանալ: Նուազել են ջրի թափանցելիութիւնը եւ ջրածնային ցուցիչի արժէքները, աճել են էլեկտրահաղորդականութիւնը եւ կախուած մասնիկների կոնցենտրացիաների արժէքները:

«Գետաբերանում տեղի է ունեցել ջրային կենսաբազմազանութեան կտրուկ անկում:

«Ակունքի եւ գետաբերանի ջրերի որակի ցուցանիշների համեմատութիւնը եւ որակի անկումը պայմանաւորող ցուցանիշների համախումբը ցոյց են տալիս, որ գետի ջրային էկոհամակարգի որակի անկման պատճառը Թէղուտի հանքավայրի շահագործման նախապատրաստումն ու բուն շահագործումն է:

↳ 4

## ՄԱՀԱՑԱՒ ՈՒՄՊԵՐԹՕ ԷՔՕ

*Երբ բանաստեղծը սիրահարուած է, ան անկարող է գրել սիրոյ մասին: Ան կրնայ գրել՝ երբ սիրահարութիւնը դառնայ յիշողութիւն:*

ՈՒՄՊԵՐԹՕ ԷՔՕ

Փետրուար 19-ին, Միլանի մէջ 84 տարեկանին կը մահանայ աշխարհի կարեւորագոյն գրողներէն մէկը՝ Ումպերթօ Էքօ: Եղած է վիպագիր, յօդուածագիր, գրաքննադատ եւ փիլիսոփայ:

«Էկոն՝ որպէս պոստմոդեռնիզմի տեսաբան եւ պոստմոդեռնիստ գրող, իր տեսական գործերում քննում ու բացատրում է պոստմոդեռնիստական գրականութեան մեխանիզմներն ու առանձնայատկութիւնները: Նրա գործերին յատուկ են պոստմոդեռնիզմին վերագրուող գրեթէ բոլոր յատկանիշները՝ ինտերտեքստուալութեան լայն կիրառում, հեգնանք, ժանրերի միախառնում, բաց լինելը, ինչպէս նաեւ իտալական պոստմոդեռնիզմին յատուկ դեդեկտիւային տարրի ընդգրկումը եւ դիմումը պատմութեանը», կը գրէ Յասմիկ Կարապետեան («Պոստմոդեռնիզմը Իտալիայում. Ումբերտօ Էկոյի *Նախորդ օրուայ կղզին*՝ որպէս պոստմոդեռնիստական վէպ», *ԵՊՀ ՌԻԳԸ գիտական յօդուածների ժողովածու*, 1.4 (7) 2015, Երեւան, ԵՊՀ Հրատարակչութիւն, էջ 55):

2014-ին Երեւանի Անտարէս հրատարակչութիւնը լոյս ընծայեց Էքոյի *Վարդի անունը* (Il nome della rosa) վէպը Զաւէն Բոյաջեանի թարգմանութեամբ: Լրագրողներու հետ հանդիպումի ժամանակ, Բոյաջեան կը չեշտէ թարգմանութեան դժուարութիւնը. «Եթէ սկսեմ պատմել, թէ ինչ բարդ վէպ էր ու թէ ինչ ջանքեր պահանջուեց թարգմանելու համար, կը ստացուի, որ ինքնագովեստով եմ զբաղւում, բայց ասեմ, որ ինձնից խլեց 8 ամիս, բայց շատ ինտենսիւ աշխատանք՝ բառիս բուն իմաստով առաւօտից երեկոյ: Յետոյ պարզուեց, որ եթէ վէպը տպագրուի այդպէս, թերի կը լինի եւ որոշեցի, որ նաեւ մեկնութիւններ ու ծանօթագրութիւններ թարգմանել, ինչն էլ պահանջեց 5 ամիս: Մի խօսքով, 1 տարուց աւել թարգմանութեամբ եմ զբաղուել: Շատ ծանր գործ էր, մինչեւ հիմա ուշքի չեմ եկել» («Զաւէն Բոյաջեանը մրցանակ ստացաւ Ումբերտօ Էկոյի *Վարդի անունը* վէպը թարգմանելու համար», *ԹԵՐԹ.am*, 26 Մայիս 2015, http://www.tert.am/am/news/2015/05/26/zaven-boyajyan/1687668):

Պէտք է չեշտել՝ որ Էքոյի գրութիւններէն պատկառելի քանակութիւն մը թարգմանուած ու տարածուած է արաբական աշխարհին մէջ (*Վարդի անունը* նոյնիսկ արժանացած է երկու թարգմանութեան)՝ Եգիպտոս (Ալ-Հայ'ա Ալ-Մասրէյա Ալ-'Ամմա Լըլ-Քիթապ. Ալ-Մակլէս Ալ-Ա'ալա Լըլ-Սըքաֆա), Լիպիա (Տար Օպա. Տար Ալ-Քիթապ Ալ-Ուաթանէյա), Թունիս (Ալ-Մարքազ Ալ-Սըքաֆի Ալ-'Արապի), Սուրիա (Տար Ալ-Թաքուին. Տար Ալ-Հըուար Լըլ-Նաշր Ուալ-Թաուզիի'), Լիբանան (Ալ-Մարքազ Ալ-Սըքաֆի Ալ-'Արապի), Արաբական Միացեալ Էմիրութիւններ (Հայ'աթ Ապու Տապի Լըլ-Սիահա Ուալ-Սըքաֆա) եւ այլուր:

Իսկ 2003 Նոյեմբեր 1-ին, նորաբաց Աղեքսանդրիոյ Մատենադարանին մէջ Ումպերթօ Էքօ բացառիկ դասախօսութիւն մը կարդացած է, որ երկու տարի ետք հրատարակուած է գրքոյկով (Umberto Eco, *Vegetal and Mineral Memory: The Future of Books*, Alexandria: Bibliotheca Alexandrina, 2005): Ան կը հանդիսանայ այն սակաւաթիւ կարեւոր միջազգային գրողներէն մէկը՝ որ երբեւէ հրաւիրուած ըլլայ ելոյթ ունենալու այդ մատենադարանին մէջ (տնօրէն Իսմայիլ Սերակէլտինի համար աւելի կարեւոր են *իր* անձնական ելոյթները Տաւոսի տնտեսական համաժողովներուն, ուր ծառայած կ'ըլլայ



դրամատիրական կլանիչ քաղաքականութեան եւ նպաստած ամրապնդելու անոր գաղափարախօսութիւնը):

Ումպերթօ Էքոյի միտքերն ու ասոյթները ծորուն են ու մշտահոս: Բառախաղեր, իմաստային հեռաւոր թուացող առնչութիւններ միշտ կը գտնուին իր մօտ: Ան կը սիրէր գրել ամէն բանի մասին՝ ոըքան որ կը տիրապետէր նիւթի ներքին հանգոյցներուն: Կարելի է յիշել իր վերջին շրջանի հետեւեալ կարծիքը. «Միայն հրատարակիչներն ու որոշ լրագրողներն են որոնք կը կարծեն թէ ժողովուրդը հասարակ բաներ կը պահանջէ: Մարդիկ յոգնած են հասարակ բաներէ» (Stephen Moss, 'Umberto Eco: 'People are tired of simple things'', *The Guardian*, 20 Փետրուար 2016): Կարծես սփիւռքահայութենէն սորված ըլլար ասիկա: «Մամուլը լուրջ յօդուածներ չի հրատարակեր՝ որովհետեւ ընթերցողը լուրջ գրութիւն չի սիրեր կարդալ», ամէն օր կը լսենք սփիւռքահայ վերնախաւին կողմէ: «Ձեռնարկներուն մակարդակը բարձր չէ՝ որովհետեւ ժողովուրդը չ'ախորժիր լուրջ բաներէ»: Հայութիւնը ծանուցանող ցած մակարդակի գիրքեր ու գրութիւններ կը տպագրուին, մակերեսային հաղորդումներ տեղի կ'ունենան՝ որովհետեւ օտար հասարակութեան դիւրին բաներ պէտք է ներկայացուին: Անմակարդակութիւնը եւ դիւրամատչելիութիւնը կը դառնան հոմանիշներ:

Թէեւ կարծրատիպերէ խուսափող մտաւորական մըն էր, բայց *Վարդի անունը* վէպին շնորհիւ արձանագրած առաջին բացառիկ եւ ուշագրաւ յաջողութիւնը իր անունն ու համբաւը կարծրատիպային սեւեռումով կապեցին այդ գիրքին հետ (յիշենք, օրինակ, թէ ինչպէս Արամ Խաչատրեանի անունը արեւմուտքի մէջ կը սեւեռուի «Սուրերով պար»-ին հետ): Վերջերս, *Վարդի անունը* վէպի հայերէն առաջին տպագրութեան գրեթէ զուգահեռ, Երեւանի *Գրանիշ* գրական հանդէսը փորձեց հայկական ընթերցողին համար քակել այդ կարծրատիպային սեւեռումը, իր էջերուն մէջ թարգմանաբար հրատարակելով Էքոյի կարճ յօդուած-պատմուածքներէն քանի մը հատ, որոնցմէ մէկը՝ *Ինչպէս ճամբորդել սաղմոնով*, կ'արտատպենք ստորեւ իբրեւ յետարդիական մտածողութեան փոքր նմոյշ (*Գրանիշ* տպագիր հանդէսը ունի նաեւ իր համացանցային պլոկը՝ *Գրանիշ*, գրական համայնք: Այստեղ եւս միեւնոյն թարգմանիչը հրապարակած է այդ պատմուածքը (http:// granish.org/how-to-travel-with-a-salmon/): Տպագիրի եւ համացանցի միջեւ տարբերութիւններ կան: Պահպանեցինք տպագիր տարբերակը:)

*Ձ.*

↳ 3



ՄԱՀԱՑԱՒ ՈՒՄՊԵՐԹՕ ԷՔՕ

# ԻՆՉՊԷՍ ՃԱՄՓՈՐԴԵԼ ՍԱՂՄՈՆՈՎ

ՈՒՄԲԵՐՏՕ ԷԿՕ

Իտալերէնից թարգմանութիւնը՝ Լուսինէ Բլրուլեան-Շուքուրեանի

Ամսագրերից դատելով՝ մեր ժամանակը բնորոշող գերխնդիրները երկուսն են՝ համակարգիչների յարձակումը եւ երրորդ աշխարհի մտահոգիչ առաջընթացը: Այդպէս է, ես դա լաւ գիտեմ:

Նախորդ օրերի իմ ճամփորդութիւնը կարճատեւ էր՝ մէկ օր Ստոկհոլմում եւ երեք օր Լոնդոնում:




Ստոկհոլմում ես ժամանակ ունեցայ չատ էժան գնով գնելու ծխեցրած հսկայական սաղմոն: Այն կոկիկ փաթեթաւորուած էր, բայց ինձ ասացին, որ եթէ ես ճամփորդում եմ, ապա աւելի խելամիտ կը լինի այն սառը տեղ պահել:

Հեշտ է ասելը:

Բարեբախտաբար, Լոնդոնում իմ հրատարակիչն ինձ համար հիւրանոցում չքեղ համար էր պատուիրել եւ այնտեղ, բարեբախտաբար, բար-սառնարան կար: Հիւրանոց հասնելուս պէս՝ ինձ մօտ այնպիսի տպաւորութիւն ստեղծուեց, կարծես դիւանագիտական առաքելութեամբ Պեկինում գտնուէի: Հիւրանոցի նախասրահում Բոքսէրների ընդվզումից փախած եւ իրենց ուղեբեռների վրայ ծածկոցներով փաթաթուած փախստականների ընտանիքներ էին քնած...

Հիւրանոցի աշխատողներից, որոնք, ի դէպ, բոլորը հնդիկներ ու մալազիացիներ էին, փորձեցի տեղեկութիւն ստանալ: Նրանք ինձ ասացին, որ հէնց նախորդ օրը այդ մեծ հիւրանոցը համակարգչային սիստեմ էր տեղադրել, որը սխալ չահագործման պատճառով երկու ժամ յետոյ անմիջապէս վթարի էր ենթարկուել: Հնարաւոր չէր իմանալ, թէ որ սենեակն էր ազատ եւ որը՝ զբաղուած: Ստիպուած էի սպասել:

Երեկոյեան մօտ համակարգիչը վերանորոգուել էր, եւ ինձ յաջողուեց մտնել սենեակս: Խիստ անհանգստացած՝ ես ճամպրուկիցս հանեցի սաղմոնը եւ փորձեցի գտնել բար-սառնարանը: Սովորաբար հիւրանոցների բար-սառնարաններում լինում է երկու գարեջուր, երկու հանքային ջուր, խմիչքի մի քանի փոքրիկ չշիկներ, մրգահիւթ եւ երկու տուփ ընդեղէն: Մինչդեռ իմ հիւրանոցի հսկայական բար-սառնարանում կար յիսուն շիշ վիսկի, ջին, Դրամբուէ, Կուրվուազիէ, Գրան Մարնիէ եւ Կալվադոս, ութ շիշ Պերիէ, երկու շիշ Վիթելուազ եւ երկու շիշ Էվիան, երեք միջին մեծութեան չամպայն, մետաղեայ շշերով տարբեր տեսակի Ստաուտ, Պալէ Ալէ, հոլանդական եւ գերմանական գարեջրեր, իտալական եւ ֆրանսիական սպիտակ գինիներ, պնդուկ, աղի թխուածքաբլիթներ, նուշ, շոկոլադէ սալիկներ եւ Ալկա Սելտզէր: Եւ սաղմոնի համար այլեւս տեղ չկար:

Ստիպուած, բար-սառնարանի ամբողջ պարունակութիւնը տեղափոխեցի պահարանի երկու տարողունակ դարակների մէջ, սաղմոնը տեղաւորեցի սառնարանի սառը մասում եւ սկսեցի զբաղուել իմ գործերով: Յաջորդ օրը, երբ ժամը չորսին վերադարձայ սենեակ, սաղմոնը սեղանի վրայ էր, իսկ բար-սառնարանը կրկին թարմացուած էր նոյնիսկ ծայրայեղ թանկարժէք ապրանքներով: Բացեցի դարակները եւ տեսայ, որ նախորդ օրուայ թափքցրած ամբողջ գանձուածը դեռ նոյն տեղում էր: Զանգահարեցի հիւրանոցի ընդունարան եւ զգուշացրեցի, որ եթէ սառնարանը դատարկ էր, ապա դա չէր նշանակում, որ ամէն ինչ սպառել էի, այլ սաղմոնը տեղաւորելու համար դրա պարունակութիւնը տեղափոխել էի դարակների մէջ: Ինձ պատասխանեցին, որ այդ մասին հարկ էր տեղեկացնել կենտրոնական համակարգչի օպերատորին, նաեւ այն պատճառով, որ անձնակազմի մեծ մասն անգլերէն չէր խօսում եւ ձայնային հրահանգներ չէր կարող ընդունել, այլ միայն գրաւոր ցուցումներ: Բացեցի մնացած երկու դարակները եւ բար-սառնարանի պարունակութիւնը տեղափոխեցի այնտեղ: Սաղմոնս կրկին սառը կացարան ունէր: Յաջորդ օրը ժամը չորսին սաղմոնը կրկին սեղանի վրայ էր եւ արդէն կասկածելի հոտ էր արձակում: Սառնարանը պարզապէս պայթում էր շշերից եւ շշիկներից, իսկ չորս դարակները ոգելից խմիչքների անօրինական խանութի չհրկիզուող պահարան էին յիշեցնում: Զանգ տուեցի հիւրանոցի ընդունարան, ինձ ասացին, որ համակարգիչը կրկին վթարուել է: Իջայ ընդունարան եւ փորձեցի իմ դէպքը բացատրել պարանոցի վրայ պոչիկ կապած մազեր ունեցող մի տիպի, որն ինձ հետ խօսում էր այն բարբառով, որն, ինչպէս ինձ բացատրեց մարդաբան գործընկերս, օգտագործուել էր Կեֆիրիստանում եւ միայն այն ժամանակ, երբ Ալեքսանդր Մեծը սիրոյ կամուրջներ էր նետում առ Ռոսաննայ:

Յաջորդ առաւօտեան գնացի հաշիւը ստորագրելու: Մի աստղաբաշխական գումար էր:

Այդ հաշուից կարելի էր եզրակացնել, որ երկու եւ կէս օրում ես սպառել էի հեկտոլիտրերով Վիով Քլիքոտի, տասը լիտր հազուագիւտ ածիկներ պարունակող տարբեր տեսակի վիսկիներ, ութ լիտր ջին, քսանհինգ լիտր Պերիէ եւ Էվիան, ինչպէս նաեւ մի քանի շիշ Սան Պելեգրինօ ու այնքան մրգային հիւթ, որ բաւական կը լինէր կեանքի կոչելու UNICEF-ի կողմից հովանաւորուած բոլոր երեխաներին:

4

ԽՈՀԵՐ

# ՅԱՂԹԱՆԱԿ/ՀԱՅԱՏԵԱՑՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Բառեր, բառեր, բառեր...:

Յաղթանակ ու հայատեացութիւն հականիշներ չեն, թէեւ այդպէս կը սիրենք ներկայացնել դէպքերը:

Երբ պատերազմական գործողութիւնները կ'աւարտենք յաջողութեամբ, երբ «միջազգային» ատեանները, խորհրդարանները, քաղաքական թատերաբեմերը կ'ընդունին հայերուն «ի նպաստ» օրէնքներ ու որոշումներ, անմիջապէս կը խօսինք *յաղթանակի* մասին:

Երբ տեղի կ'ունենայ հակառակը, ամբողջ պատճառը կը բեռցնենք *հայատեացութեան* վրայ: Հայատեացութիւնը առաջ քաշելով՝ մենք կը դառնանք ոչ թէ պարտուողներ այլ զոհեր:

Երբ կ'ընդունիս յաղթանակ, պէտք է ընդունիս նաեւ պարտութիւն, քանի որ լեզուական աննախադէպ գիւտ մը ըրած ըլլալու համար ըսեմ՝ որ յաղթանակն ու պարտութիւնը... հականիշներ են, ուրեմն՝ իրարու լրացնող գոյութիւններ: Երբ կ'ընդունիս խնդուքը, ընդունած կ'ըլլաս նաեւ լացը, իսկ լացը չես կրնար փոխարինել, օրինակ, գոռալով, կամ վազելով, կամ...:

Բայց մենք պէտք չէ պարտուինք: Երբ կը յաղթենք, պատճառը մեր հերոսութիւնն է: Երբ կը պարտուինք, յանցանքը մերը չէ, յանցաւորը թշնամիի հայատեացութիւնն է (հերոսները յանկարծ կը չքանան): Յաղթանակը կ'ինքնավերագրուի, պարտութիւնը կ'ապաինքնաւորուի: Աւելորդ է ըսել՝ որ երկուքն ալ կը տանին դէպի միտքի ինքնասահմանափակում:

Այս մօտեցումը չատ աւելի չեչտուեցաւ Ժթ. դարու վերջաւորութեան ազգայնական մարմիններու յայտնութեամբ: Խնդիրը ազգայնականութիւնը չէ, խնդիրը ազգայնականութեան չահագործումն ու կուքապաշտութիւնն է: Ազգայնական չարժումին հետ ամրացան մշտական ինքնաարդարացումները՝ քանզի ձախողութիւնները այնքան ալ քիչ չէին, փոխանակ ամրանալու ինքնամեկնաբանութիւնները, ինքնաբացատրութիւնները կամ ինքնադիտարկումները:

Պարտութիւնը ա՛լ աւելի չեչտուած բառերով ներկայացուեցաւ իբրեւ արտաքին քաղաքականութեան արդիւնք՝ որ տեղի ունեցած է անկախ մեր բարի կամքէն: Իսկ այդ արտաքին քաղաքականութիւնը դրուեցաւ ոչ թէ դիւանագիտական ուժային յարաբերութիւններու չահադիտական ծիրին մէջ, այլ հայատեացութեան: Հայերուս կ'ատէին, հետեւաբար արտաքին ուժերը համախմբուելով դաւաճանեցին մեզի: Իսկ ինչո՞ւ պիտի ատէին բարի ու աշխատասէր հայերուս: Որովհետեւ այդ միւսները չար մարդիկ էին:

Բայց երբուընէ՞ ի վեր քաղաքականութիւնը սիրոյ-ատելութեան վրայ հիմնուած է: Չէ՞ որ քաղաքականութիւնը հիմնուած է չահի (interest) վրայ, իսկ չահը կը ճանչնայ ո՛չ սէր եւ ո՛չ ատելութիւն: Շահը կը ճանչնայ յարձակողականութիւն, կը ճանչնայ չահամոլութիւն՝ մրցակցութեան կեղծ անուանումին տակ:

Արդէն աւելի քան մէկ դար է՝ որ իշխանական մարմինները կ'ապրին ինքնաարդարացումներով, առանց ինքնաարդարացումներու անոնք կրնան փլուզուիլ: Հսկայական գումարներ կը ծախսուին վարձելու հլու-հնազանդ մտաւորականներ որպէսզի վաւերացնեն իշխանական արդարացումները, ծախսալից չքեղ հատորներ կը տպագրուին ինքնաարդարացումի համար, նոյն նպատակով կը հիմնուին հեռատեսիլի կայաններ: Ինքնաարդարացումը կը գրաւէ չուկան:

Ապրիլ 1918-ին Կարսը ինկաւ՝ օտար ուժերու հայատեաց քաղաքականութեան պատճառով, Հոկտեմբեր 1920-ին Կարսը ինկաւ՝ օտար ուժերու հայատեաց քաղաքականութեան պատճառով, 1921 Հոկտեմբերին Կարսը ինկաւ, կամ Կարսի պայմանագիրով տրուեցաւ Թուրքիային՝ հայատեաց քաղաքականութեան պատճառով: Ոչ ոք կրնայ հերքել արտաքին քաղաքականութիւններուն խաղացած դերը, բայց ոչ ոք պէտք է հերքէ նաեւ ներքին անկազմակերպուածութեան ու բանակային դասալքումներուն ճակատագրական փաստերը: Չկայ մէկ պատճառ, չկայ մէկ պատասխանատու (բայց կա՛ն պատասխանատուներ) եւ մանաւանդ չկայ բարոյալքուած պատճառ՝ հայատեացութիւն: Կայ ներքին ու արտաքին բարդ բայց ընթեռնելի յարաբերութիւններ:

Հայերը մեծ աղմուկ բարձրացուցին Եւրոպայի Խորհուրդի Յունուարի երկու զեկոյցներուն կապակցութեամբ՝ զանոնք տեղաւորելով հայատեացութեան ծիրին մէջ: Ամէն տեղ չեչտուեցաւ «հակահայկական» բառը: Առաջինը Ռոպըրթ Ուոլթըրի զեկոյցն էր՝ *Բռնութիւններուն աճը Լեռնային Ղարաբաղի եւ Ատրպէյճանի միւս գրաւեալ տարածքներուն մէջ*, ուր, ի միջի այլոց կ'ըսուէր՝ թէ հայկական զօրքը պէտք է ամբողջապէս նահանջի Ղարաբաղի տարածքէն: Այս զեկոյցը քուէարկութեամբ կը մերժուի, այսինքն՝ հայկական զօրքը արդէն պէտք չէ նահանջի Ղարաբաղէն, իսկ այս մերժումը հայամէտութիւն չհռչակուեցաւ մեր լրատուամիջոցներուն կողմէ: Զեկոյցը՝ հակահայկականութիւն, անոր մերժումը՝ ոչ անպայմանօրէն հայասիրութիւն:

Միւսը Միլիցա Մարքովիչի զեկոյցն էր՝ *Ատրպէյճանի սահմանամերձ շրջաններու բնակիչները միտումնաւոր զրկուած են ջուրէ*, որ քուէարկութեամբ կ'ընդունուի: Ըստ զեկոյցին, չնորհիւ Մարտակերտի Սարսանգ ջրամբարին, հայերը կ'արգիլեն ջուրի մատակարարումը սահմանամերձ ատրպէյճանական տարածքները: Հետեւաբար, հայերը պէտք է նահանջեն այդ տարածութենէն (եւ ոչ թէ ամբողջ Ղարաբաղէն) որպէսզի անկախ մասնագէտներ մտնելով այնտեղ կարողանան տնօրինել ջուրի ճիշդ մատակարարումը: Ասիկա անուանուեցաւ հայատեացութիւն որովհետեւ, ըստ հայերուն, զրպարտութիւնը բոլորովին սուտ էր: Չեմ կարծեր այնքան դժուար ըլլար Մարքովիչին հրաւիրել Ղարաբաղ եւ ցոյց տալ իր զեկոյցին սխալականութիւնը: Բայց զեկոյցը կարելի է ընթերցել նաեւ ուրիշ կերպով: Եթէ այնտեղ հայկական զօրքին կը հրահանգուի նահանջիլ Սարսանգի ջրամբարի տարածքէն (եւ ոչ ամբողջ Ղարաբաղէն) որպէսզի ջուրի մասնագէտները կարողանան մուտք գործել, կը նշանակէ որ տակաւին այդ տարածքը կը պատկանի հայերուն: Ենթադրաբար կը նշանակէ նաեւ, որ եթէ հայերը «սրբագրեն» իրենց սխալը, զօրքերու նահանջ պէտք պիտի չըլլայ: Երբ զեկոյցը ուղղակիօրէն կը հրահանգէ՝ որ «հայկական իշխանութիւնները դադրին ջուրի աղբիւրները օգտագործել իբրեւ քաղաքական ազդեցութեան գործիք», պիտի նշանակէ որ Եւրոպայի Խորհուրդը կ'ընդունի հայերուն գոյութիւնը այնտեղ, այլապէս ինչպէ՞ս իշխանութեան մը պիտի հրահանգէր բարելաւումներ կամ գործողութիւններ կատարել օրինականօրէն իրեն չպատկանող տարածութեան վրայ: Իրապէ՞ս հակահայկական է այս բոլորը:

Բոլորովին տարբեր հարց է իւրաքանչիւր զեկոյցի մէջ գոյութիւն ունեցող հակասութիւնները՝ սովորական երեւոյթ մը նման քաղաքական բնագիրներուն համար: Տարբեր հարց է նաեւ հետեւեալը. եթէ ենթադրենք երկու զեկոյցներն ալ ընդունուէին՝ ինչպէ՞ս հայկական զօրքը միաժամանակ երկու հրահանգ պիտի կատարէր, թէ՛ հեռանալ ամբողջ Ղարաբաղէն՝ անոր տնօրինութիւնը յանձնելով Ատրպէյճանին (Ուոլթըր) եւ թէ՛ հեռանալ *միայն* ջրամբարի տարածքէն՝ առանց այդ տարածքը յանձնելու Ատրպէյճանին (Մարքովիչ): Բայց ատոր մասին ուրիշ անգամ: Կարեւորը՝ այս խառնարանը կոչուեցաւ հայատեացութիւն, մարդիկ ու լրագրողներ հայատեացները մերկացնելով դարձան աւելի հայրենասէր, հայատեացութեան հաստատումով ցոյց տուին իրենց հայասիրութիւնը:

Յաղթանակի ու հայատեացութիւն-զոհուածութեան օրինակները չատ են:

Անշուշտ, պատմական դէպքերուն նշանակումները յաղթանակով (ներքին պատճառներ) կամ հայատեացութեամբ (արտաքին պատճառներ) պատմութեան իմաստը կը դարձնէ հասարակ ու անհրապոյր: Պատմութիւնը չատ աւելի չերտաւոր ու բազմիմաստ չարժում մըն է, չատ աւելի խճճուած ու հետաքրքրական:




## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՓՈՐՁԱԳԷՏՆԵՐԸ «ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ...

1

*«Հայաստանը հնարաւորութիւն կը ստանայ նուազագոյն ծախսերով անցկացնել հակաօդային պաշտպանութեան հնացած խորհրդային համակարգերի արդիականացում՝ ընդլայնելով դրանց չարժունակութեան եւ մարտական թիրախների յայտնաբերման եւ չէզոքացման հնարաւորութիւնները», – RUSARMINFO-ի հետ զրոյցում ասել է Իգոր Կորոտչենկոն:*

*Այդ համագործակցութեան շրջանակներում Հայաստանը կը ստանայ այնպիսի զենիթահրթիռային համակարգեր, որոնք տեղակայուած են բազմաթիւ երկրներում եւ ստացել են դրական արձագանք, նշել է Օդատիեզերական պաշտպանութիւն ամսագրի գլխաւոր խմբագիր Միխայիլ Խոդարիոնոկը:*

*«Պեչորա-2 համակարգն, անշուշտ, կը հզօրացնի Հայաստանի զենիթահրթիռային համակարգը: Յետագայում հնարաւոր է, որ Հայաստան տեղափոխուեն հակաօդային պաշտպանութեան նորագոյն C-400 համակարգերը», – RUSARMINFO-ի հետ զրոյցում նշել է Մ. Խոդարիոնոկը:*

## «ՄԱՐՏԻ 1»-Ի ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՆ ԳՈՐԾՈՂ ՈՂՋ ՅԱՄԱԿԱՐԳՆ Է, ՖՈՐՄԱԼ ԵՒ ՈՉ ՖՈՐՄԱԼ ՍՈՒԲԻԷԿՏՆԵՐՈՎ ՅԱՆԴԵՐՁ

1

համապատասխան դիրքով նկարահանուելով Սերժ Սարգսեանի հետ:

Փաստօրէն միայն Շանթ Յարութիւնեանը չընդունեց ոչ անկախ դատարանի լիազօրութիւնն իրեն դատելու համար, եւ ստիպուած իրեն ազատեցին առողջական պատճառաբանութեամբ: Սա մեղադրանք չէ մնացած բոլորին: Շանթի նման դիրքորոշում ունենալու համար պէտք է ունենալ նման սկզբունքային դիրքորոշում եւ համապատասխան կամք: Դա քչերին է տրուած:

Հիմա հարցը հետեւեալն է, այսօր ո՞ր քաղաքական ուժն իրաւունք ունի Մարտի 1-ի զոհերի յիշատակի օրը ծաղիկներ դնել «Ռուսաստանի հրապարակում» գտնուող արձանին [Միասնիկեանի արձանը, Ջ.]: Այ այս առումով էի ես ասում, որ Հայաստանում գոյութիւն չունի պատասխանատուութեան ինստիտուտ: Կան միայն չահարկումներ ինչ-որ իրավիճակային խնդիրներ լուծելու համար: Եթէ ազնուօրէն յայտարարեն, որ այսօր այլ ելք չունեն եւ մասնակցում են իշխող ուժի կողմից պարտադրուած խաղին, սակայն յետագայում, երբ ստեղծուի յարմար իրավիճակ, իրենք հետամուտ կը լինեն արդարադատութեան իրականացմանը, իսկ մինչ այդ չեն խօսելու դրա մասին, ապա իմ կարծիքով այդ կեցուածքն աւելի ընդունելի կը լինի, քան այդ ողբերգութեան օգտագործելն իրենց այսօրուայ չահի համար: Այսինքն՝ չօրոնել ինչ-որ ձեւակերպումներ Մարտի 1-ի արդիւնքում ստեղծուած քաղաքական իրավիճակից օգտուելու համար:

**– Պարոն Դանիէլեան, Մարտի 1-ի ողբերգական իրադարձութիւններից տարիներ անց ի՞նչ կարող ենք արձանագրել, դասեր քաղե՞լ ենք տեղի ունեցածից, Մարտի 1-ն ի՞նչ փոխեց մեր երկրում:**

– Իմ կարծիքով քաղաքական առումով կամ անգամ հանրային գիտակցութեան ձեւաւորման առումով ոչ մի դրական բան չի փոխել, աւելին, Մարտի 1-ի դէպքերն աւելի խորացրեցին թողտուութեան սահմանները եւ քաղաքական ցինիզմն աւելի լայն մասշտաբներ ընդունեց:

**– Ի՞նչ էք կարծում, որտե՞ղ պէտք է փնտռել Մարտի մէկի հիմքերը, կարծիք կայ, որ իրականում Մարտի մէկի հիմքերը դրուել էին 2008-ից աւելի շուտ... ի՞նչը նպաստեց, որ հայ ժողովրդի պատմութեան մէջ արձանագրուի նման ողբերգութիւն:**

– Մարտի մէկի հիմքերը դրուել են 1995-ին, երբ առաջին անգամ կեղծուեցին ընտրութիւնները: Իսկ դրա պատճառներն աւելի հին են: Այն ժամանակուայ քաղաքական իշխանութիւնները չէին ցանկանում ընտրութիւնների իրական արդիւնքներով յանձնել իշխանութիւնը, որի պատճառով սկսուեց իշխանութեան, բիզնեսի եւ կրիմինալ աշխարհի սերտաճում: Նիւթական միջոցներին տիրապետելը դարձաւ ամենագլխաւոր քաղաքական գործօններից մէկը: Յետագայում այդ ամէնն աւելի է կատարելագործուել, եւ քայլ առ քայլ մենք հասանք այսօրուան:

**– Ինչպէ՞ս խուսափել Մարտի 1-ի կրկնութիւնից:**

– Լինել հնազանդ: Կան նաեւ այլ տարբերակներ, սակայն դա առանձին քննարկման թեմա է:

*Գալա*, 29 Փետրուար 2016 (http://galatv.am/hy/anatylitcs/1-48/)

## ԻՆՉՊԷՍ ՃԱՄՓՈՐԴԵԼ ՍԱՂՄՈՆՈՎ

3

Փորձեցի բացատրել, բայց պղպեղաբոյսից սեւացած ատամներով ժպտացող աշխատողը վստահեցրեց, որ դրանք համակարգչի ցուցմունքներն էին: Ես, խիստ վրդովուած փաստաբան (avocato) պահանջեցի, սակայն ինձ մանգո բերեցին:

Հրատարակիչս խիստ զայրացած էր եւ համոզուած էր, որ ես իսկական մակաբոյծ եմ: Իսկ սաղմոնն արդէն ուտելու բան չէր: Իսկ զաւակներս ինձ յորդորում են, որ ես մի քիչ պէտք է ալկոհոլ օգտագործեմ:

(*Գրանիշ*, գրական հանդէս, 2013 (03), Երեւան, Անտարէս, էջ 94–95)

## ՍԻՐԻԱՀԱՅԵՐԸ ԼՔՈՒՄ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

1

7 ամիս է էստեղ եմ, չեմ կարայ առաջ գնամ, տեղ հասնեմ, սեփականութիւն վերցնեմ, մի բան անեմ: Ես չեմ կարայ ընտանիք կազմեմ Հայաստանի մէջ: Աշխատանք չկայ, ասում են՝ դուք ակցենտ ունէք, ռուսերէն չգիտէք, չենք կարայ աշխատացնենք ձեզ, ինչ-որ խնդիր կայ ստեղ երկրի մէջ: Էսօր մի ապրանք եթէ ես ներմուծեմ, օրինակ, ինքնարժէքը նստում է իմ վրայ 15 հազար դրամ, իսկ ուրիշ տեղեր էդ վաճառւում է 14 հազար դրամով, էդ ո՞նց կարող է տենց լինի. անօրինական ինչ-որ բաներ կայ», – տարակուսում է սիրիահայ երիտասարդը:

Կնոջ եւ երկու երեխաների հետ մեկնելու իր հերթին սպասող Ալեքսան Կոյումջեանը եւս արհեստաւոր է: Չնայած դեռ աշխատանք չի գտել Կանադայում, բայց վստահ է՝ ծանօթները կ'օգնեն այդ հարցում: «Ոնց եկանք Հայաստան, չէինք իմանում ինչ էինք անելու, հիմա որ երեք տարի ապրեցանք, տեսանք ինչը ոնց է, դժբախտաբար...»:

Կանադայում գործող Հայ Տուն հասարակական կազմակերպութիւնն օրեր առաջ Ֆեյսբուքի իր էջում գրել է, որ սիրիահայերին հովանաւորելու ծրագիրը նոր դիմումներ չի ընդունում: Սիրիահայերի հարցերով զբաղուող Սփիւռքի Նախարարութիւնում յստակ տուեալներ չունեն, թէ անցած ամիսներին որքան սիրիահայ է Հայաստանից մեկնել Կանադա:

## ԹԷՂՈՒՏ ՀԱՆՔԱՎԱՅՐԻ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ ՇՆՈՂ ԳԵՏԻ ՋՐԵՐԻ ՈՐԱԿԻ ՎՐԱՅ.

2

«Քանի որ տեղի է ունեցել եւ շարունակւում է Շնող գետի ջրերի որակի անկում ըստ քիմիական, ֆիզիկաքիմիական եւ հիդրոկենսաբանական ցուցանիշների մոնիտորինգային տուեալների, ապա կարելի է արձանագրել, որ Թէղուտի հանքավայրի կողմից ճնշումը գետի ջրերի որակի եւ էկոհամակարգի վրայ կրում է լայնածաւալ բնոյթ:

«Շնող գետը ըստ Եւրոմիութեան Ջրի Շրջանակային Դիրեկտիւի (ՋՇԴ) մօտեցումների, ներկայումս արդէն դասւում է ռիսկային ջրային մարմինների դասին:

«Հիմնական եզրակացութիւն. բնապահպանական նպատակային միջոցառումներ չիրականացնելու դէպքում Շնող գետի էկոհամակարգը մօտակայ տարիներին կը նմանուի Ախթալա եւ Կարճեւան «գետերի» ջրային էկոհամակարգերին»:

**ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԲՆԱՊԱՀՊԱՆԱԿԱՆ ՃԱԿԱՏ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Կիրակի, 20 Մարտ 2016**

**ԾԱՂԿԱԶԱՐԴ**

**ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՄՈՒՏՔԸ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ**

Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի Ս. Պատարագ:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի նաեւ՝ **ԴՌՆԲԱՑԷՔ** -ի արարողութիւն ապա **ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ**:

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 8:30-ին
Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Դէպի եկեղեցի երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն հոգեպարար արարողութիւններուն:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԹԻ, 24 Մարտ 2016-ին,**

**ՅԻՇԱՏԱԿ ԸՆԹՐԵԱՑ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ**

Ս. Պատարագ Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 8:30-ին
Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին
**Ոտնլուայի** Կարգ կէսօրէ վերջ ժամը 5:00-ին
**Խաւարումի** Կարգ կէսօրէ վերջ ժամը 7:00-ին

***ԾԱՆՕԹ***. Ոտնլուայի արարողութեան կրնան մասնակցիլ 4 տարեկանէն վեր մանուկներ: Այն ծնողները, որոնք կը փափաքին որ իրենց մանուկները մասնակցին ոտնլուայի արարողութեան, կը խնդրուի որ նախօրօք արձանագրուին՝ հեռաձայնելով՝ Բարեշնորհ Րաֆֆի Սրկ. Պօղոսեանին՝

Գահիրէի Ազգային Առաջնորդարան՝
Հեռ. 25902083 – 25901385
Բջջ. 01220599862

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

ԱՒԱԳ ՇԱԲԱԹ, 26 Մարտ 2016-ին,

**Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ՊԱՏԱՐԱԳ**

Երեկոյեան, պատարագէ առաջ պիտի կարդացուին Մարգարէական գիրքեր եւ Դանիէլի Թուղթը:

Սկիզբ Երեկոյեան Ժամերգութեան ժամը 4:30-ին
Ընթերցում Մարգարէական գիրքերու ժամը 5:00-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 6:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**ԿԻՐԱԿԻ, 27 Մարտ 2016-ին,**

**ՏՕՆ Է Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ (ԶԱՏԻԿ)**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ Պատարագը պիտի մատուցանէ՝

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ**

**ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ**

Յընթացս Ս. Պատարագի պիտի ընթերցէ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ Ամենայն Հայոց Կաթողիկոսի Ս. Յարութեան պատգամը:

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 8:30-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 10:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1763 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՄԱՐՏ 2016

ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٦٣ الخميس ٢٤ مارس ٢٠١٦


## ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԸ ՁԱԽՈՂՈՒԵՑ ԴԵՌ ՉՍԿՍԱԾ

ՀԱՅԿԱԶՆ ՂԱՀՐԻՅԵԱՆ

Բարգաւաճ Հայաստան Կուսակցութեան պատգամաւոր Վարդան Օսկանեանը Մարտի 14-ին ուշադրութեան կենտրոնում էր յայտնուել, այս անգամ կուսակցութիւն բացելու յայտարարութեան համատեքստում: Եւ նոյն պահին էլ փաստացի ձախողուել է՝ չդիմանալով լրագրողների հետ «առերեսմանը»:

Լրագրողները նրան հարցրել են Մարտի 1-ի իրադարձութիւնների մասին: Ինչպէս յայտնի է, Մարտի 1-ի իրադարձութիւնների նախօրէին Վարդան Օսկանեանը ելոյթ էր ունեցել, որը բուռն արձագանք էր գտել ոչ միայն այն օրերին, այլեւ յիշւում է մինչ այժմ:

«Իհարկէ, այդ օրուայ իշխանութիւնը միանշանակօրէն պատասխանատուութիւն է կրում դրա համար: Իշխանութիւնը թոյլ չպիտի տար, որ նման բան տեղի ունենար: ... Հէնց Մարտի մէկի օրը, խորհուրդ կը տամ թարմացնել յիշողութիւնը, կայ իմ ելոյթը, որ կրակոցներից 3-4 ժամ առաջ է եղել: Ուղղակի օդում զգալով, որ լարուած իրավիճակ է եւ նման զարգացումներ կարող են լինել, փորձել եմ կանխել», լրագրողներին ասել է նա:

Քաղաքականութիւնը լուրջ ու հետաքրքիր բան է, այստեղ շատ բաներ չեն մոռացւում: Առաւել եւս այն իրադարձութիւնները, որոնք մարդկային զոհերի պատճառ են դարձել: Օսկանեանը, եւ այն ժամանակուայ «օրուայ իշխանութիւնը», մտնելով քաղաքականութիւն, պէտք է որ հասկանայ, որ այդ հարցը, անկախ չարժառիթներից ու «յետին նպատակներից», մշտապէս տրուելու է, դրանից չես փախչի, եւ պէտք է պատրաստ լինել դրան:

Ռոբերտ Քոչարեանն, օրինակ, մի անգամ ակնարկեց, թէ այն վայրը, որտեղ տեղի են ունեցել սպանութիւնները, չէր վերահսկւում ոչ իշխանութեան, ոչ ընդդիմութեան կողմից: Ասել է թէ՝ առկայ էր մի երրորդ, չվերահսկուող ուժ, որն իրագործել է այդ սպանութիւնները: Քոչարեանի այս յայտարարութիւնը իրաւապահներն անուշադրութեան մատնեցին, եւ այն այդպէս էլ հարցի պատասխան չդարձաւ ու չէր կարող դառնալ:

Օսկանեանը ճիշտ է ասում՝ «այդ օրուայ իշխանութիւնը միանշանակօրէն պատասխանատուութիւն է կրում դրա համար»: Քոչարեանի յայտարարութիւնը իմաստ կ'ունենար, եթէ այդ վարկածը քննուէր, եւ ճշտուէր իշխանութեան պատասխանատուութեան չափը: Սակայն դա տեղի չի ունեցել, այդպիսով փաստացի առաւել խորացնելով պատասխանատուութիւնը, կամ էլ ստանձնելով «երրորդ ուժի» մեղքը:

Վարդան Օսկանեանը Մարտի 1-ի սպանութիւններից մի քանի ժամ առաջ ունեցած իր ելոյթում, ի դէպ, ասել էր. «Ընտրութիւնը հետեւեալի մէջ է՝ աւելի մեծ իմիջին վնաս հասցնել՝ թողնելով, որ այդ մարդիկ անկարգութիւններ անեն, թէ օրէնքի շրջանակներում ինչ-որ քայլեր անել եւ դրանով սահմանափակել այն վնասը, որը պէտք է հասցուէր Հայաստանի իմիջին: Փողոց դուրս եկած մարդիկ անկարգութիւններ են իրականացնում եւ ունեն ըմբոստութեան դրսեւորումներ»:

Սա շատերը գնահատել են եւ մինչ այժմ էլ գնահատում են որպէս բռնութիւնների «ազդանշան» եւ հիմնաւորում, նախապատրաստում: Մասնաւորապէս, այն ժամանակուայ «օրուայ ընդդիմութիւնը»:

Հանրային-պետական տեսակէտից քաղաքական գործիչը նա է, ով պատրաստ է ստանձնել առնուազն իր բաժին պատասխանատուութիւնը եւ ոչ թէ արդարանալ, այլ կրել այդ պատասխանատուութիւնը: Օրինակ, ներողութիւն խնդրել: Կամ էլ ուղիղ ասել՝ լաւ եմ արել: Դա էլ է պատասխան: Ինչպէս, օրինակ, Ճմայսը, կամ Թոխմախի Մհերը, կամ գեներալ Սէյրանը, ով Արամ Մանուկեանին բացատրում էր, որ ամէն դէպքում մաստը պէտք չէ փոխել, դա է քաղաքականութեան իմաստը:

Հայաստանում քաղաքական գործիչներ այս առումով գրեթէ չկան: Օսկանեանն իր հիմնադրած կառոյցներով բաւականաչափ դրական աշխատանք է կատարել հանրային-քաղաքացիական ոլորտում եւ թերեւս պատրաստւում է այդ ռեսուրսով մտնել քաղաքականութիւն: Բայց արդէն քաղաքականութեան մէջ չարունակութիւնը չի երեւում: Քաղաքական ուժի, գործչի արժէքը հարցերին պատասխանելու մէջ է, ոչ թէ արդարացումների:

Այս առումով, հանրային-քաղաքացիական տեսանկիւնից Օսկանեանը ձախողուեց՝ դեռ չսկսած: Մնացեալն արդէն այլ ոլորտ է՝ հայկական աւանդական «քաղաքականութեան» ոլորտը, որը հանրութեանը վաղուց հետաքրքիր չէ:

(http://www.lragir.am)

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ՀՀ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՄԱՐՏԻ 1-Ի ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՄԻԵԴ-Ի ՀԱՐՑԵՐԻՆ ՊԷՏՔ Է ՊԱՏԱՍԽԱՆԻ ՄԻՆՉԵՒ ԸՆԹԱՑԻԿ ԱՄՍՈՒԱՅ ՎԵՐՋ». *ՀԱՅԿԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ*

Epress.am, 11 Մարտ – *Մարտի 1-ի սպանութիւնների վերաբերեալ Մարդու Իրաւունքների Եւրոպական Դատարանից ՀՀ կառավարութեանն ուղղուած հարցերին պատասխանելու ժամկէտը սպառուել է Մարտի սկզբին, սակայն ՄԻԵԴ-ի կողմից այն երկարաձգուել է, գրում է Հայկական ժամանակ օրաթերթը:*

*Արդարադատութեան նախարարութեան հասարակայնութեան հետ կապերի եւ լրատուութեան վարչութիւնից թերթին հաղորդել են, որ իրենց պատասխան դիրքորոշումը յայտնելու համար վերջնաժամկէտը երկարաձգուել է մինչեւ Մարտի վերջ, որը, ըստ նախարարութեան, սովորական պրակտիկա է ՄԻԵԴ-ի հետ աշխատանքներում:*

*«Նախորդ տարուայ Սեպտեմբերին Եւրադատարանն առաջին հարցերն էր ուղղել Հայաստանի իշխանութիւններին: ՀՀ կառավարութիւնը, ըստ իրեն ուղղուած հարցերի, պէտք է պարզաբանի, թէ արդեօք խախտուե՞լ է Մարտի 1-ի զոհերի՝ Եւրոպական կոնվենցիայի երկրորդ յօդուածով երաշխաւորուած կեանքի իրաւունքը: Արդե՞օք նրանց մահը այնպիսի ուժի գործադրման հետեւանք է, որը եղել է «բացարձակ անհրաժեշտութիւն»: Արդե՞օք ներպետական ատեաններում քննութիւնն ընթացե՞լ է Կոնվենցիայի խախտումներով: Արդեօք զոհերի իրաւայաջորդներին համար մինչեւ ՄԻԵԴ դիմելը սպառուած են եղել երկրի ներսում արդիւնաւէտ քննութեան հասնելու հնարաւորութիւնները», – գրում է Հայկական ժամանակը:*

*Նշենք, որ 10 զոհերից 9-ի (բողոքարկման գործընթացին չի միացրել միայն ոստիկանութեան սպայ Համլէտ Թադեւոսեանի ընտանիքը) հարազատները 5 տարի առաջ դիմել են ՄԻԵԴ՝ պահանջելով ճանաչել կեանքի, խոշտանգումներից ու անմարդկային վերաբերմունքից զերծ մնալու արդիւնաւէտ քննութեան, համարժէք փոխհատուցման ու այլ իրաւունքների խախտումները:*

## ԻՆՉՈ՞Ւ Է ԼԵՒՈՆ ՄԿՐՏՉԵԱՆԸ ԳԱՂՏՆԻ ՊԱՀՈՒՄ ԻՐԵՆ ՊԱՏԿԱՆՈՂ ԲԱԺՆԵՄԱՍԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

Ժողովուրդ *օրաթերթը գրում է. «Նախօրէին Ժողովուրդը հրապարակել էր կրթութեան եւ գիտութեան նորանշանակ նախարար Լեւոն Մկրտչեանի յայտարարագիրը: Ըստ այդմ, վերջինս յայտարարագրել է միանգամից երեք ընկերութիւնների բաժնեմաս՝ 70 միլիոն 444 հազար դրամ, 37 միլիոն դրամ եւ 85 հազար դրամ արժողութեամբ: Երէկ Ժողովուրդը անձամբ նախարարից հետաքրքրուեց, թէ այդ բաժնեմասերը ո՞ր ընկերութիւններում են: Հարցին ի պատասխան՝ ԿԳ նախարարն ասաց. «Ես մօտ 8 տարի պետական պաշտօնեայ չեմ եղել, եւ այդ գումարները ԼՂՀ-ում ազատագրուած տարածքներում 2 հիդրոէլեկտրոկայանների կառուցման ծրագրերն* 4

## ԻՆՉՊԷՍ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ԹՈՅԼ ՉՏՈՒԵՑ ՄԵԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

Lragir.am, 13 Մարտ – *The Financial Times*-ը հրապարակել է Նորման Սթոունի «Ռուսաստանը խանգարել է Անգլիային վեստեղծել Մեծ Հայաստանն ու Մեծ Յունաստանը» յօդուածը: Ներկայացնում ենք մի հատուած այդ յօդուածից:

1833 թ. ռուսական զօրքերը եգիպտա-սիրիական զօրքերին թոյլ չտուեցին գրաւել Ստամբուլը: Իսկ երբ 1920 թ. վերջնականապէս փլուզուեց Օսմանեան կայսրութիւնը, եւ բրիտանացիները սկսեցին հանդէս գալ Յունաստանի ու Հայաստանի կողմից՝ հետապնդելով նրանց շահերը, ռուսներն օգնութեան հասան թուրքերին: Իրականում կասկած կայ, թէ Թուրքիան առհասարակ կը կարողանա՞ր գոյութիւն ունենալ առանց օգնութեան, որը տրամադրել է Մոսկուան:

Ստամբուլի Թաքսիմ հրապարակում չորս յայտնի արձան կայ, որոնցից ամենանկատելին թուրքական հանրապետութեան հիմնադիր Մուստաֆա Քէմալն է: Սակայն ամէնից զարմանալին այն է, որ այդ քառեակից մէկը Թուրքիայում խորհրդային առաջին դեսպան Սէմիոն Արալովն է: Նա համագործակցել է թուրք ազգայնականների հետ, որոնք 1919 թուականին ցանկացել են ոչ մեծ մասշտաբներով գործարար կապեր հաստատել Ռուսաստանի հետ եւ դիմագրաւել արեւմտեան դաշնակիցների ծրագրերին Անատոլիայում:

1920 թ. ամռանը սուլթան Մեհմէդ Զորրորդի ներկայացուցիչները ստորագրեցին Սեւրի պայմանագիրը, որը նախատեսում էր Մեծ Հայաստանի, Մեծ Յունաստանի եւ Քուրդիստանի ստեղծում: Սուլթանն էլ պէտք է դառնար անհասկանալի էմիրութեան կառավարիչ:

Պայմանագրին հզօր դիմադրութիւն եղաւ, որին աջակցեց Խորհրդային Միութիւնը: Այդ պայմանագրի ստորագրման ժամանակ Մոսկուայում հանդիպեցին արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գէորգի Չիչերինը եւ Անկարայի ներկայացուցիչ Ալի Ֆուատ փաշան: Նրանք պայմանաւորուեցին, որ Խորհրդային Միութիւնը կը մոռանայ Հայաստանի մասին, իսկ թուրքերը կը մոռանան Ադրբէջանի մասին: Յետոյ թուրքերը փող ու զէնք ստացան, որն օգնեց յաղթել թշնամիներին:

Թէ Ռուսաստանը, թէ Թուրքիան անվստահութեամբ էին վերաբերւում Արեւմուտքին: Դրանցից իւրաքանչիւրը հանդէս էր գալիս իսլամի առաւել վայրենի դրսեւորումների դէմ: Աթաթուրքը մասնաւոր գրոյցներում այն անուանում էր քայքայուող դիակ: Նրա կինը նամակագրութեան մէջ էր լուսաւորութեան ժողկոմիսար Անատոլի Լունաչարսկու քրոջ հետ եւ խորհուրդներ էր հարցնում թուրք գիւղացիներին գրագէտ դարձնելու մասին:

1929 թ. Ստալինը որոշեց աքսորել Տրոցկուն, սակայն չէր կարողանում գտնել մի երկիր, որը պատրաստ կը լինէր ընդունել նրան, մինչեւ համաձայնութիւն չտուեցին թուրքերը: Տրոցկին այնտեղ ապրեց չորս տարի:

Սակայն ամէն ինչ խափանուեց 1945 թուականին, երբ Ստալինը որոշեց փոշուց հանել հին ցարական փաստաթղթերը: Նա աջակցեց հայկական հարցին եւ պահանջեց նրանց վերադարձնել Թուրքիայի երեք գաւառ: 4

## ՀԱՐՑԱԶՐՈՅՑ

# ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ ԵՒ ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ

Աննա Պօղիկեան եւ Ռոպերթ Շահպազեան առաջին անգամ հանդիպեցան 2003-ին, Աննայի տանիքը: Իրենց ծանօթութիւնը կատարուեցաւ փոխադարձ ընկերոջ մը միջոցով՝ որ մտածեց թէ բան մը կրնայ արձագանքել իրենց միջեւ, նուազագոյնը քիչ մը փոխադարձ հայկական սէր: Անհաւանական եղանակով յարմարեցան իրարու, որմէ ետք սկսաւ Ռոպերթի աւելի յաճախակի ուղեւորութիւնները Պեւերլի Հիլսէն դէպի Գահիրէ, ինչպէս նաեւ հաղորդակցութիւն մը որ կ'ընդգրկէր հեռաձայն, ել-նամակ եւ հանդիպումներ՝ ինչպէս այս մէկը:

Պօղիկեան նկարչուհի մըն է: Ծնած է Գահիրէ, 1946-ին: Գահիրէի Ամերիկեան Համալսարանին մէջ ուսանած է քաղաքական գիտութիւն, որմէ ետք Մոնրէալի Քոնքորտիա Համալսարանէն ստացած է Գեղեցիկ Արուեստներու Պսակաւոր (BFA) աստիճանը տեսողական արուեստի եւ երաժշտութեան ճիւղին մէջ: Ան նկարազարդած է բազմաթիւ գիրքեր, ներառեալ բանաստեղծական ժողովածուներ՝ Քոնսթանթին Քաւաֆիի *Poèmes*-ը (Ֆաթա Մորկանա Հրատարակչութիւն, 1997) եւ Ճիուզեփփէ Ունկարեթթիի *Carnet égyptien*-ը (Ֆաթա Մորկանա Հրատարակչութիւն, 1998): Ֆաթա Մորկանա հրատարակած է նաեւ իր անհատական գիրքը՝ *Images du Nil* (1999): 2003-ին իր գծագրութիւնները կը ցուցադրէ իբրեւ Քաթրին Տէյվիտի Contemporary Arab Representations ծրագիրին մէկ մասը: Նոյն տարին, Գահիրէի Ամերիկեան Համալսարանը կը հրատարակէ իր գծագրութիւններու, նկարներու եւ գրութիւններու ժողովածուն՝ *Anna's Egypt* խորագիրով:

Շահպազեան հիմնադիր-տնօրէնն է Լոս Անճելըսի Կակոսեան Պատկերասրահին (Gagosian Gallery), ուր աշխատած է տասը տարի: Նախքան Կակոսեանը, ութ տարի տնօրէնը եղած է Լափիս Հրատարակչութեան՝ արուեստագէտ Սամ Ֆրանսիսի սեփականութիւնը հանդիսացող գիրքի մրցանակակիր հրատարակչատան: Մաս կը կազմէ Մեթրոփոլիթընի Արուեստի Թանգարանի Լուսանկարներու Յանձնախումբին, ինչպէս նաեւ Հարվըրտի մէջ ուսանած է անգլիական գրականութիւն:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ահաւասիկ, Աննա, այժմ կը գտնուինք Գահիրէի արուեստանոցիդ մէջ, որ տեղադրուած է Նեղոսի մէջտեղը գտնուող կղզիի հին շէնքի մը տանիքը, ուր մեր շուրջը 360 աստիճանով կը տարածուի հին ու նոր Գահիրէն: Շլացուցիչ ու մոլորապտոյտ տեսարան մըն է: Քու հրաշալի գծագրութիւններուդ ու նկարչութիւններուդ մէջ զգալի է այդ ճակատագիրը եւ գլխապտոյտը:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ինծի համար ասիկա ընդամէնը շէնքի մը գագաթը գտնուող վայր մը չէ, այլ վայր մը՝ որ կը ծփայ օդին մէջ: Կը կարծեմ շատ լաւ է շնչել Գահիրէի օդը, Գահիրէն դիտել գագաթէն եւ մտիկ ընել ձայները: Այնտեղէն կը տեսնես որոշ դրուագներ որոնք անմատչելի են սովորական պայմաններու մէջ, ինչպէս՝ առաւօտ կանուխ քալող ուղտերը, գոմէշները, համբուրուող զոյգերը, գետին մէջ լողացող մերկ տղաքը, ցնցոտիներ հագուած երիտասարդները՝ որոնք գետին մէջ կը փայլեցնեն իրենց Ռիպոքները կամ չեմ գիտեր թենիսի որ թանկարժէք կօշիկները: Եւ կը փայլեցնեն, եւ կը փայլեցնեն, եւ կը փայլեցնեն՝ յունական աստուծոյ նման: Հրաշալի է Գահիրէն տեսնել առաւօտեան ժամը հինգին, վեցին, եօթնին:

Երբեմն կը զգամ որ իմ մտապատկերս, կամ այն ինչ որ կը դնեմ կտաւներուս վրայ, չի հաղորդեր քաղաքին մէջ իմ ապրած բոլոր փորձառութիւններս:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Հիմա, եկուր անկեղծ ըլլանք՝ չենք կրնար քեզի ամենատենչագին արուեստագէտը համարել: Դուն այնքան ալ շատ ժամանակ չես յատկացներ արուեստ կերտելու համար: Փոխարէնը, շատ ժամանակ կը վատնես երերալով, Գահիրէի մէջ քալելով եւ օտար երկիրներ ճամբորդելով: Դուն հաստատապէս այն արուեստագէտներէն չես՝ որոնք ամէն օր աշխատանքի կը սկսին ժամը ութին եւ կը մեկնին ժամը հինգին: Ի՞նչն է որ վերջապէս կը ստիպէ քեզի վերցնել մատիտը կամ գրիչը եւ պատրաստել նկար մը:**



*Աննա Պօղիկեան*

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Եղած է ժամանակ մը, երբ կը նկարէի ու կը գծէի օրական քսան ժամ: Երբ ճամբորդէի կամ գտնուէի պանդոկի մը կամ քաղաքի մը մէջ, միշտ հետս կը վերցնէի թուղթըն ու մատիտը, որոնցմէ չէի կրնար բաժնուիլ: Ընդամէնը վերջին վեց տարիներուն է որ այնքան շատ չեմ աշխատիր, թէեւ կ'աշխատիմ օրական եօթը ժամ: Կ'աշխատիմ ըստ իմ կարիքներուս: Կը հասկնաս, երբ արթննամ անմիջապէս չեմ աշխատիր, այլ կը սպասեմ մինչեւ գիշերուայ ժամը եօթը կամ ութը, որմէ ետք կ'աշխատիմ մինչեւ ժամը երեքը: Կամ յանկարծ կը սկսիմ նկարել ամէն օր, որմէ ետք կրնայ ըլլալ մէկ ամիս չնկարեմ: Կախում ունի:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Իսկ ի՞նչն է որ քեզի կը մղէ նկարելու որոշում կայացնել:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Զեմ գիտեր: Ան շատ ինքնաբերական կերպով կու գայ: Կը տեսնես, ես երբեք չեմ մտածեր: Բայց կը մտածեմ երբ չեմ ուզեր նկարել:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – (Խնդուք:) Ախ, կը մտածես երբ չես ուզեր նկարել: Ուրեմն, դուն կը կրես հետեւեալ միտքը. «Ես այլեւս չեմ ուզեր նկարել:»**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այո, նկարել չեմ ուզեր որովհետեւ կ'ուզեմ հանգստանալ: Կը կարծեմ այս հանգիստը շատ կարեւոր է: Բայց սկսած եմ նկատել՝ թէ այս հանգստութիւնը կը պարունակէ ընկերականացում: Հետեւաբար, կը դառնաս աւելի ջղագրգիռ: Որովհետեւ երբ կ'ընկերանաս մարդոց հետ, պէտք է անոնց բան մը տաս: Եւ ինչ որ ալ տաս՝ միշտ անբաւարար է:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Անբաւարար իրե՞նց թէ քեզի համար:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Իրենց համար: Կարծեմ ասիկա կու գայ մանկութենէն՝ երբ իրենց մայրերը խործունձները [diapers] կամ շատ նեղ եւ կամ շատ թոյլ դրած էին: Ասիկա շատերուն դիւրագրգիռ դարձուց: Անոնք կ'ուզեն որ իրերը կատարուին մասնաւոր եղանակներով: «Գիտես ինչպէս պէտք է կատարուի: Բաւարար չէր տուածդ:» Կը կարծեմ՝ թէ ասիկա կրնայ եկած ըլլալ սովորական բանէ մը, օրինակ՝ պատշաճօրէն չյարամարցուած խործունձէն: Որով ընկերականացումը շատ դժուար կը համարեմ: Այսինքն, ասիկա կրնայ իմ անձնական գլխաւոր դժուարութիւնս ըլլալ, բայց յարաբերիլը շատ դժուար կը գտնեմ: Յատկապէս Գահիրէի մէջ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Բայց միւս կողմէն դուն չափազանց ընկերային ես: Երբ կը հրջինք Գահիրէի մէջ, դուն միշտ զրուցել կը սկսիս մէկու մը հետ: Դուն խիստ ինքնաբուխ ես եւ հետաքրքրասէր, եւ զրոյցներու կը մասնակցիս: Բայց ունիս նաեւ քիչ մը ճգնաւորական կողմ մը: Կը ճամբորդես առանձին, կ'աշխատիս առանձին: Արուեստը առանձին զբաղում մըն է: Ուրեմն ասիկա տեսակ մը...**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Հակասութիւն մըն է:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Այո, հակասութիւն մը: Եւ անշուշտ, ասիկա խիստ զգալի է արուեստիդ մէջ: Ինչպէ՞ս քու գծագրութիւններդ եւ նկարներդ կը յարաբերես քու շուրջդ գտնուող կեանքիդ հետ՝ զոր կ'ապրիս եւ կը տեսնես Գահիրէի մէջ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Որոշ փորձառութիւններ ուղղակիօրէն կու գան իմ փորձառութենէս, ուրիշներ՝ ոչ: Որոշ փորձառութիւններ մէկ կողմ կը նետեմ որովհետեւ կը գտնեմ թէ երբեմն ընկերային տհասութիւն մը կը մտնէ

↳ 3

# ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻՆԵՐ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Յունուար 30-ին, Գահիրէի մէջ մահացաւ եգիպտահայ սիրուած պարուհի եւ դերասանուհի Ֆայրուզ (չշփոթել լիբանանցի երգչուհի Ֆայրուզի հետ), բուն անունով՝ Փերուզ Արթին Գալֆայեան (ծնած 1943-ին): Խաղացած է տասը եգիպտական ֆիլմերու մէջ (1950-1959) եւ վաստակած «հրաշք մանուկ» մականունը: Բոլոր եգիպտական լրագիրները անդրադարձան իր մահուան մասին: Այս առիթով, ստորեւ թարգմանաբար կը ներկայացնենք *Ալ-Եօմ Ալ-Սապէէ'* օրաթերթին մէջ մէկ ու կէս տարի առաջ տպագրուած հակիրճ յօդուած մը, որ նուիրուած է արուեստի աշխարհին մէջ Եգիպտոսի մէջ հռչակ վաստակած քանի մը հայուհիներուն:

Ջ.

## ՀՐԱՇՔ ՄԱՆՈՒԿ ՖԱՅՐՈՒԶԷՆ ՄԻՆՉԵՒ ՍԱՖԻՆԱԶ՝ ԵԳԻՊՏՈՍԸ ԻԲՐԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ «ՈՒՂԵՎԱՅՐ» ԸՆՏՐԱԾ ՀԱՅՈՒՀԻՆԵՐՈՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ՀԱՍԱՆ ՄԱԿՏԻ

Իման, Ֆայրուզ, Լէպլէպա, Նէլլի, Մարիա, Սաֆինազ. բացի իրենց բացառիկ գեղեցկութենէն, Եգիպտոսի մէջ փայլած այս աստղերուն եւ արուեստագիտուհիներուն միաւորողը այն է՝ որ բոլորն ալ Եգիպտոս եկած են միեւնոյն հեռաւոր երկիրէն, իրենց հետ կրելով հռչակի եւ համբաւի երազները: Այդ երկիրը՝ Հայաստան, որուն դրօշակը թերեւս անծանօթ է եգիպտացիներուն, կը գտնուի Եգիպտոսէն հազարաւոր մղոններ հեռու: Երկար տարիներ է արդէն ան Եգիպտոս կ'ուղարկէ գեղեցկուհիներ, որոնք մտած են եգիպտացիներուն սիրտերը: Եգիպտացիները անոնց համարեցին իրենց երկիրի բնակիչները առանց նոյնիսկ հարցնելու ակունքներուն, երկիրին կամ գործածած իրական լեզուին մասին:



Այս արուեստագիտուհիներուն եւ գեղեցկուհիներուն ամենահիներէն մէկն է եգիպտական սինեմայի աղջնակը՝ Ֆայրուզ, որուն իրական անունն է Փերուզ Արթին Գալֆայեան: Անուար Ուակտիի հետ իր խաղացած զուգերգը մինչեւ այսօր իր հետքը թողած է եգիպտացիներու սիրտերուն մէջ: Թէեւ ան խաղացած է ընդամէնը տասը տարի՝ մեծ մասամբ իր մանուկ հասակին, բայց իր ծիծաղը եւ ոգին մինչեւ այսօր դրօշմուած են բոլորի յիշողութեան մէջ: Փոքրիկ դերասանուհի Ֆայրուզը կը սերի Սուրիոյ Հալէպ քաղաքի հայ ընտանիքէ: Ան ծնած է 1943-ին, Գահիրէ: Սկիզբը հռչակուեցաւ իբրեւ Շիրլի Թեմփըլ մինչեւ որ Անուար Ուակտի իրեն համար ընտրեց Ֆայրուզ մականունը:



Գեղեցիկ արուեստագիտուհի Իման հռչակուեցաւ բազմաթիւ ֆիլմերու մէջ, ինչպէս՝ *Զէ'ապ լա թա'քըլ ալ-լահմ* [Գայլեր որոնք միս չեն ուտեր], *Շաա'պան թահթ ալ-սէֆր* [Շաա'պան զերոյէն վար], *Ալ-ա'ամիլ ռաքամ 13* [Թիւ 13 գործակալը], *Հաթթա ուըլատ ալ-ա'ամմ* [Նոյնիսկ զարմիկները]: Բուն անունով էլիզապէթ Թորոս Սարգիսեան, ան իր գործունէութիւնը սկսած է Պէյրութի հայկական ընկերութեան հետ, երգելով ու խաղալով հայերէն լեզուով: Բայց իր փառքը սկսաւ Եգիպտոսի մէջ, երբ Ֆաթէն Համամայի եւ Ֆարիտ Ալ-Աթրաշի հետ մասնակցեցաւ *Ալ-հոպպ ալ-քապիր* [Մեծ սէրը] ֆիլմին մէջ:



Իման եւ Լէպլէպա ծնած են նոյն տարին՝ 1945-ին: Լէպլէպա եւս կը սերի հայ արմատներէ: Իր իսկական անունն է Նինոչքա Մանուկ Քիւփէլեան: Ծնած է Գահիրէ: Զայն յայտնագործած է գրող Ապու Ալ-Սը'ուտ Ալ-Էպիարի, որ ընտրելով Լէպլէպա գեղարուեստական մականունը զայն առաջին անգամ ներկայացուցած է *Հապէպթի Սուսու* [Սիրելիս Սուսու] ֆիլմին մէջ:



Նէլլի՝ իրեն այսպէս կը ճանչնան բոլորը: Իսկ ո՞վ ծանօթ է իր անունին չարունակութեան: Ո՞վ արդեօք մտածած է թողուլ Նէլլիի գեղեցկութիւնը փնտռելու համար իր ամբողջական անունը՝ Նէլլի Արթին Գալֆայեան, որ կը մերկացնէ իր հայ արմատները, արմատներ՝ որոնք կու գան Սուրիոյ Հարըթ Ալ-Ճէպ թաղամասէն: Ֆայրուզի քոյրն է եւ Լէպլէպայի ազգականուհին: Բոլորն ալ հռչակի հասան եգիպտական սթուտիոներու եւ քամէրաներու ընդմէջէն:

Տարիներ ետք Հայաստանը մեզի կը յայտնուի նոր գեղեցկուհիով մը՝ որ իր երգով ու պարով կը խլէ բոլորին ուշադրութիւնը:

↳ 4

2 ➪

ՀԱՐՑԱԶՐՈՅՑ

## ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ ԵՒ ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ

ուղեղիս մէջ: Գահիրէն մեծ հակասութեան եւ շփոթութեան վայր մըն է, եւ այս է պատճառը որ...

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Եւ երթեւեկութիւնը: Ըսիր՝ թէ քեզի համար Գահիրէն մեծ մասամբ երթեւեկութեան մասին է:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այո, գիտակցութեան հոսանք մը կ'անցնի Գահիրէի ընդմէջէն, իր ամբողջ ինքնաշարժներով եւ ամբողջ շարժումով: Գահիրէի շարժումն է ասիկա, գահիրեցիներուն մտայնութիւնը ինքնաշարժ ունենալու եւ անով շրջագայելու: Նոյնիսկ եթէ ինքնաշարժը ամբողջապէս քանդուած եւ ժանգոտած է, ինչպէս մեծամասնութիւնը, ան տակաւին կը շրջագայէ եւ չես գիտեր ուր պիտի կանգնի: Շատ ինքնաշարժներ կը նկարեմ, եւ կը կարծեմ թէ այս եգիպտական մտայղացումը եւ իր շարժունակութիւնը խիստ հետաքրքրական երեւոյթ մըն է: Ստանալով ազատութիւն, Եգիպտոս խիստ շարժուն երկիր մը կրնայ ըլլալ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Շերտերու եւ շփոթութեան այս բազմազանութիւնը յոյժ ներկայ է արուեստիդ մէջ, մասնաւորապէս գծագրութիւններուդ մէջ: Գիրքերէդ շատերը կը նային դէպի քաղաքին յորձանուտը, ուր իրերը կը շարժին եւ կը տարուբերին, ինչպէս հեղեղուող ջուրը որ կը տարուբերի ջրատարի մը շուրջ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այո, ան կը պարունակէ այս երեւոյթը՝ շնորհիւ շարժումին: Կրնայ ըլլալ անկարող եղած եմ գայն ցոյց տալ, բայց ասիկա շարժումի գաղափարն է, իսկ շարժումը անհրաժեշտ է: Բայց քանի որ երկիրին մէջ շարժումը խառնաշփոթուած է, ան կրնայ յառաջ գալ միայն իբրեւ գլխապտոյտ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Իսկ ի՞նչ կը մտածէիր ծխելու մասին: Ըսիր թէ կ'ուզես ծխելու մասին խօսիլ: Ինչպէ՞ս կրնայ ծխելը յարմարիլ յորձանուտին եւ ծփանքին եւ...**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կարծեմ իմ սիկարէթ ծխելս խիստ վրդովեցուցիչ է մարդոց համար: Գանատայի մէջ շատ խանգարիչ հանգամանք էր: Բայց այստեղ, Եգիպտոսի մէջ, այո, ընդունելի է, իսկ Փարիզի եւ Իտալիոյ մէջ հանդուրժելի է: Կը գտնեմ որ ծխելս կապ ունի աշխատանքիս աղտոտութեան հետ: Սիկարէթի ծայրը վար կ'իյնայ, սիկարէթի թուղթին մէկ մասը կը խրուի թուղթին վրայ եւ նման բաներ: Ես աղտոտ ծխող մըն եմ: Կը գտնուին մաքուր ծխողներ եւ աղտոտ ծխողներ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Բայց ասիկա բան մըն է որ միշտ շատ կարեւոր, շատ իւրայատուկ նկատած եմ քու աշխատանքիդ համար: Ան միշտ ունի ճմլուածութեան կամ մթութեան կամ մրոտութեան յատկանիշ: Շատ անգամ չես կրնար զանազանել մատիտի կրաֆիթի եւ դիպուածական նշանի կամ կեղտի միջեւ եղած տարբերութիւնը: Վստահ չես եթէ անիկա մատիտի կեղտ մըն է թէ պարզապէս աղտոտած գծագրութիւն:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կը կարծեմ պարզապէս աղտոտած գծագրութիւն է:

(Խնդուք:)

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Բայց անշուշտ, դուն ես որ թոյլ կու տաս գայն, դուն ես որ թոյլ կու տաս որ ան պատահի:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ես կը սիրեմ այն հանգամանքը որ կարելի է անոնց վրայէն քալել: Ես կը քալեմ անոնց վրայէն: Անոնք կը սկսին աղտոտութեան այս յատկանիշը ունենալ: Կը կարծեմ՝ եթէ գծագրութիւնը շատ թանկագին ընես, ան կանգ կ'առնէ: Եթէ ան շատ կոկիկ է կամ շատ մաքուր, անշուշտ, գայն դիտելը իրապէս հաճելի կը դառնայ աչքին համար իսկ դիտող մարդոց մեծամասնութիւնը շատ մաքուր մարդիկ կ'ըլլան: Ըսել կ'ուզեմ, գարշելի ոչ մէկ անձ թանգարան [museum] կ'երթայ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Այո: Հարցը մաքրութեան, կարգ ու կանոնի, յստակութեան մասին է:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կամ անոնք սովորաբար կը փորձեն պատկերասրահ [gallery] երթալ: Գիտես, աղքատ մարդիկ կ'ըսեն՝ թէ իրենք միշտ կը սարսափին արուեստի սրահ մտնել որովհետեւ կը վախնան որ մարդիկ արհամարհանքով նային իրենց:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Այո:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կը կարծեմ կարեւոր է ցոյց տալ թէ մենք արուեստ կը կիրառենք աշխարհի զանգուածներուն եւ ոչ թէ մէկ տոկոսին համար: Բայց, դժբախտաբար, ստիպուած կ'ըլլանք ընդունիլ՝ թէ արուեստը մէկ տոկոսին համար է: Ան միայն հարուստին համար է:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Բայց որոշ իմաստով, չեմ կարծեր որ դուն շատ կապուած կը զգաս այդ մէկ տոկոսին հետ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կը կարծեմ որ ես կ'ընկերանամ բազմաթիւ շատ հարուստ մարդոց հետ: Եւ ասոնք այն մարդիկն են՝ որոնք կը թուին խնդիրներ ունենալ իրենց խորձունձներուն հետ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Քու վարած կեանքդ հաստատապէս մաքրութեան, յղկուածութեան, հարստութեան, ինքնաշարժով հանգստաւէտ պտըտողի տեսակի մասին չէ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ոչ, իմ ընկերականացումս կը կատարուի միայն հեռաձայնով:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Եւ յաճախ քու հագուելու եւ հանրութեան մէջ ներկայանալու եղանակդ շատ արտակեդրոն [eccentric] տպաւորութիւն կը յառաջացնէ: Ճմռթկուած եւ...**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Արդուկելու սովորութիւն չունէի, բայց հիմա վարժուեցայ արդուկել հագուստներս:

(Շար. 1)

Անգլերէնէ թարգմանեց Հ.Ա.

(*Bidouin Magazine*, Issue 8, Vol. 1, Fall 2006, New York: Համացանցի տարբերակը՝ http://www.bidoun.org/magazine/08-interviews/anna-boghiguian-and-robert-shapazian/)

ԽՈՀԵՐ

# ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Մտաւորականներ, մտաւորականներ, մտաւորականներ:

Սփիւռքահայութիւնը լեցուն է մտաւորականներով: Մտաւորականներ մամուլի մէջ, հեռատեսիլի մէջ, ակումբի մէջ, դպրոցի մէջ, համալսարանի մէջ, եկեղեցիի մէջ, ձեռնարկութիւններու մէջ, կուսակցութիւններու մէջ, քաղաքական մարմիններու մէջ: Այսքան մտաւորականութիւն, եւ տակաւին կը խօսինք արուեստի, գրականութեան, մշակոյթի, հայագիտութեան անկումի մասին: Իսկ գանգատողները՝ այդ նոյն մտաւորականներն են:

Այդ նոյն մտաւորականները՝ որոնց պաշտօնն է.

1. Շարադրել մատակարարող խմբակցութիւններուն պատմութիւնները, չարահիւսել անոնց պատմական փառքերը, չարադասել անոնց չկատարած յաջողութիւնները:

2. Գովաբանել լաւը, գովասանել միջակը, գովերգել ցածը, գովազդել անտանելին, որքան ժամանակ որ այս բոլորը կը գտնուի զիրենք պաշտօնավարութեան կոչած հիմնարկներուն տնօրինութեան տակ:

3. Փառաւորել չընտրուած իշխանաւորը, փառազարդել փառասէր վերնախաւը, փառաբանել քագինոյով հարստացած նուիրատուն:

4. Դրուատել իրենց աւագներուն բարեմասնութիւնը:

5. Ներբողել իրենց տնօրէններուն հայրենասիրութիւնը:

6. Պանծացնել իրենց խնամակալներուն վեհանձնութիւնը:

7. Թմբկահարել իրենց հովանաւորներուն նուիրուածութիւնը:

8. Յաւերժ տարփողել իրենց պատկանող ամէն բան:

9. Բայց նաեւ պախարակել, վարկաբեկել, վարկազրկել, նախատել, խծբծել (գրելով, ինչպէս նաեւ իր շրջապատին մէջ մտաւորականի վաստակ վայելած ըլլալուն ուժով՝ ստորագոյն բամբասանքով) իր խմբակը քննադատողը՝ եթէ ռեւէ մէկը երբեւէ համարձակութիւն ունենայ նման քայլի դիմելու, կեդրոնանալով անձին եւ անձի նուաստացումին եւ ոչ թէ գաղափարի քննարկումին վրայ: Հետաքրքրական մօտեցում մը կայ այստեղ՝ վերացնել վատը քննադատողը բայց պահպանել նոյն ինքը վատը:

Մտաւորականներ՝ որոնք կը խօսին ու կը գրեն կարծրատիպերով, կը կրկնեն իշխանաւորական լեզուն, կը հաստատեն իրենց թելադրուած միտքերը: Ուրիշն է որ առկայ է իրենց արտադրանքին մէջ, այդ ուրիշը ըլլալով իրենց վերակացուները:

Մեթրոփոլիթըն Օփերայի բեմադրութիւնները կրնան քննադատուիլ *Նիւ Եորք Թայմզի* մէջ՝ յաճախ բաւական սուր, երբ անոնք ըլլան անորակ կամ միջակ, մինչդեռ սփիւռքահայ ձեռնարկները լիովին պաշտպանուած են որեւէ քննադատութենէ: Սփիւռքահայ ձեռնարկը ունի անձեռնմխելիութիւն մը, շնորհիւ վճարուած մտաւորականներուն: Երբ ձեռնարկը, մամուլը եւ մտաւորականը կը պատկանին միեւնոյն խմբաւորումին, երբ հայ ազատ գրողը թէեւ տեսականօրէն (հանրագիտարաններուն մէջ) կը համարուի սփիւռքահայ բայց գործնականօրէն դուրս է անոր «աւանդական» կառոյցներէն, ուրեմն սփիւռքը սփիւռքին քննականացնել-քննադատելու հաւանականութիւնը կը հաւասարի զերոյի: Բայց ոչ միայն ձեռնարկները: Այս անձեռնմխելիութիւնը կը նպաստէ որ դպրոցներ փակուին առանց հանրային քննարկումներու, ակումբներ գոցուին առանց յուզումներ յառաջացնելու, լրագիրներու դադարումներ նախատեսուին առանց վիճաբանութիւններու, գրադարաններ փակուին առանց ընդդիմութիւններու, իսկ այս բոլորը ոչ երբեք դրամի պակասութեան պատճառով, այլ, գոնէ եգիպտահայութեան պարագային, հսկայական (բառիս իսկական իմաստով) հիմնարկային դրամի եւ դրամագլուխի առկայութեան եւ վաւերացուած մտաւորականներու գոյութեան պայմաններուն:

Կարծես քննականութիւն-քննադատութիւնը ըլլայ կործանիչ երեւոյթ մը, մինչդեռ, ընդհակառակը, անվերապահ ու յաւերժական ինքնափառաբանութիւնն է որ կրնայ առաջնորդել ինքնակործանումի կամ գոնէ լճացումի:

Հասկնալի է, որ վերը բերած օրինակիս մէջ (Մեթրոփոլիթըն եւ *Նիւ Եորք Թայմզ*) խնդիրը այնքան ալ պարզ չէ, քանի որ թէ՛ Մեթրոփոլիթընը եւ թէ՛ *Նիւ Եորք Թայմզը* կրնան ունենալ փոխազդեցութեան մեքանիզմներ, ի վերուստ թելադրուող սահմանափակումներ եւ ենթարկուիլ դրամատիրական համակարգի համատեղ շահերուն: Բայց ասիկա բոլորովին ուրիշ նիւթ է: Որոշիչը այն է՝ որ Մեթրոփոլիթըն ու *Թայմզ* չունին կազմաւորական (organic) կապ, մինչդեռ սփիւռքահայ մարմիններուն եւ մամուլին մեծամասնութիւնը՝ ունին, եւ ունին բացայայտ ու յայտարարուած կերպով: *Թայմզի* երաժշտական քննախօսը չի կրնար պաշտօնավարել Մեթրոփոլիթընի մէջ, օրինակ՝ գրել անոր յայտագիրներն ու ծանօթագրութիւնները կամ պատրաստել մամուլի հաղորդագրութիւնները, մինչդեռ սփիւռքահայ քննախօս-մտաւորականը կրնայ ամէն բան ընել իր խմբաւորումի սահմաններուն մէջ: Ամերիկայի Հանրապետական եւ Ժողովրդավարական Կուսակցութիւնները իրենց հովանիին տակ չեն ընդունիր, օրինակ, մշակութային ձեռնարկներ, մինչդեռ սփիւռքահայ մէկ կազմակերպութիւնը կը զբաղուի ամէն բանով, ամէն բան կը գտնուի իր տնօրինութեան տակ՝ քաղաքականութիւն, արուեստ, գրականութիւն, մամուլ, հեռատեսիլ եւ քննախօսող մտաւորական: Լաւ է, լաւ չէ՝ չեմ գիտեր, բայց գիտեմ որ կը ստեղծուի ինքնագովաբանութեան հզօր մեքանիզմ մը, ուր ոչ միայն իրական թերութիւններ բացարձակապէս կը բացակային այլ կը յառաջանան մեծաքանակ թապուներ: Ինքնաքննադատութիւն տեղի կ'ունենայ միայն այն պարագային՝ երբ ան կրնայ նպաստել ինքնաքննադատողի բարի, մարդասէր, ազգասէր դէմքի բարելաւումին: Օրինակ՝ «մենք թերացանք այսինչ գործին մէջ բայց մենք մեր ամբողջ ջանքը պիտի դնենք որպէսզի գայն բարելաւենք», նկատի ունենալով որ այդ թերացումը համակարգային կամ գաղափարախօսական անձեռնմխելիութիւնը պէտք չէ խախտէ եւ պէտք չէ ուղղակիօրէն քննադատէ *իրենց* ձեռնարկները: Այդ թերութիւնները անվնաս ընհանրութիւններ պէտք է մնան:

Մէկ կողմ ձգելով մարդկային, բարոյական ու գեղագիտական ակնկալումները, խօսիմ մեր շրջապատին չափազանց հարազատ դրամական, դրամասիրական, դրամապաշտական լեզուով: Գովաբանութեան սիրահար մեր մտաւորականները երբեմն կը գովաբանեն այնպիսի վատ ձեռնարկներ՝ որոնց համար ծախսուած է հսկայական գումար: Այդ գումարը անհատական նուիրատուութիւններէ եկած չէ, այլ ծախսուած է գաղութի ներկայացուցչական կազմակերպութիւններու պաշտօնական պիւտճէէն: Այսինքն, այդ գումարը կը պատկանի գաղութին, ան կը պատկանի բոլորիս՝ ինծի, քեզի եւ անոր, որքան որ մենք «պաշտօնապէս» կը կազմենք այդ գաղութի անդամները: Հետեւաբար, եթէ արդիւնքը վատ է, ամէն ոք, ներառեալ տողերուս հեղինակը, իրաւունք ունի հարցադրել ու քննադատել եւ ոչ ոք իրաւունք ունի արդարանալ զոհաբերական սովորական պատրուակներով (այսինչը մեղք է՝ որքան զոհողութիւններու գնով ելոյթ ունեցաւ, այնինչը հրաշալի մարդ է՝ ի՞նչ ընենք որ վատ կատարեց, եւ այլն), որքան որ այս բոլորին մէջտեղը կայ դրամ, ելոյթ ունեցողները եկած են դրամի համար, իրենց գալստեան ու կեցութեան համար ծախսուած է նշանակալի դրամ, ձեռնարկի պիտոյքներուն, նուագարաններուն կամ միքրոֆոններուն համար ծախսուած է դրամ: Բնաւ դէմ չեմ դրամին, բայց դէմ եմ երբ կը մոռցուի դրամական գործօնը: Բոլորովին ուրիշ հարց է, եթէ հրաւիրեալը կամ ելոյթ ունեցողը իրապէ՛ս եկած ըլլայ ինչ-որ հայրենասիրական, գաղութասիրական կամ այլ «սիրական» նկատումներով, այսինքն՝ եկած է բառին իրական իմաստով *նուիրեալ* նպատակներով: Ընթերցասրահի, Գեղարուեստասիրացի, Յուսաբերի, Կոկանեանի աւագ սերունդի ներկայացուցիչները քաջ կը յիշեն՝ թէ ինչպէս իրենց ակումբները կը պահէին

➪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## 2 ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻՆԵՐ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ



Անունն է Մարիա [Մարիա Նալպանտեան], որուն երեւումը 2002-ին՝ երբ կը տիրանար Ասիոյ Պիքինի Գեղեցկուհիի կոչումին, մեծ վիճաբանութեան դուռ բացաւ: Ապա տեսահանեց իր *Էլա'ապ* [Խաղա'] յայտնի քլիփը՝ ծատ Շուէրիի բեմադրութեամբ, որ պատճառ հանդիսացաւ լայնածաւալ քննադատութեան եւ յարձակումի, իր մեկնաբանութիւնը շատերուն կողմէ համարուելով մեծապէս գայթակղիչ:



Սաֆինազ պարուհին կը հանդիսանայ Հայաստանի աստղերու շարքին վերջինը, հակառակ այն մեծ տարբերութեան որ գոյութիւն ունի շարքին սկիզբը կանգնող Ֆայրուզի անմեղութեան եւ Սաֆինազի յառաջացուցած աղմուկ-աղաղակին միջեւ, մանաւանդ եգիպտական դրօշակին հետ կապուած վերջին խնդիրներուն առնչութեամբ: Բայց եւ այնպէս վերջին հաշուով ան շարունակութիւնն է մեզմէ հեռու գտնուող երկիրի մը աղջիկներուն աստղեր դառնալու եւ այս կամ այն ձեւով փայլելու երազանքին:

Սաֆինազ ծնած է Ռուսաստան, 1976-ին: Իր իսկական անունն է Ծովինար եւ այժմ ունի թէ' եգիպտական եւ թէ' հայկական քաղաքացիութիւն:

*Ալ-Եօմ Ալ-Սապէէ'*, 30 Օգոստոս 2014

## 3 ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐ

անվճար թատերախումբեր ու երգչախումբեր: Այստեղ ես չեմ գովերգեր անվճարութիւնը, ոչ ալ կը քաջալերեմ զայն, ոչ ալ կը սիրեմ բազմաչարչար մտաւորականի կամ արուեստագէտի տիպարին չահագործումը, բայց այդ խումբերու ելոյթները գնահատել-քննադատելու համար բոլորովին այլ յատկանիշներ պէտք է չափանշել: Մինչդեռ եթէ կայ դրամ, ան ալ շատ դրամ, ուրեմն այդ անձը կամ խումբը ստացած է շուկայի գին ու արժէք, մտած է փոխանակումի արժէքի ծիրէն ներս, որով թէ' զայն հրաւիրողը եւ թէ' ինքը պատրաստ պէտք է ըլլան, յատկապէս անորակութեան պարագային, որեւէ հակադարձութեան՝ ըստ նոյն իրենց ընդունած շուկայի կանոններուն, քանզի դրամ եւ գոհաբերութիւն, դրամ եւ նուիրաբերում անհամատեղելի հասկացողութիւններ են:

Բայց գովաբանասէր մտաւորականութիւնը կը շարունակէ իր արշաւը: Ասիկա սփիւռքահայ մտաւորականութեան տարածուած դասակարգն է: Այս տեսակ մտաւորականներուն (ոչ)-գաղափարները կ'անէանան իրենց պաշտօնավարութեան վերացումով: Կը մնան այն քիչերը՝ որոնք գիտցած են դիմադրել, գաղափարապէս պայքարիլ, մերժել ենթարկուածութիւնը, ստեղծել *իրենց* գաղափարական աշխարհը: Անոնք քիչ են, բայց կան, կը գործեն ու պիտի մնան: Անոնք պիտի չհարստանան, անոնց մասին բարեբախտաբար փառաբանական յօդուածներ պիտի չգրուին, բայց անոնց գաղափարները (եւ ոչ թէ անձը) պիտի մտնէ շրջանառութեան մէջ: Որոշիչը շրջանառութիւնն է:

Խօսելով մտաւորականութեան մասին, սլովենիացի նշանաւոր փիլիսոփայ Սլավոյ Ժիժէք ըսած է. «Ի՞նչ կ'ընեն մասնագէտները: Անոնք կը լուծեն ուրիշներուն կողմէ ձեւակերպուած խնդիրները: Գիտես, եթէ քաղաքական գործիչ մը գայ քեզի, պիտի ըսէ հետեւեալը. «Տունը քանդուի: Ինքնաշարժները կ'այրին [խօսքը Ֆրանսայի մէջ քանի մը տարի առաջ կատարուած դէպքերուն մասին է, Հ.Ա.]: Ըսէ ինծի ի՞նչ է հոգեբանական մեքանիզմը, ինչպէ՞ս կրնանք վերահսկել կացութիւնը:» Ոչ, մտաւորական մը բոլորովին ուրիշ հարցում մը պիտի հարցնէ. «Ի՞նչ են արմատները: Արդեօք համակարգը յանցաւո՞ր է»: Մտաւորական մը, նախքան հարցումին պատասխանելը, պիտի փոխէ հարցումը: Ան պիտի սկսի այսպէս. «Բայց արդե՞օք ասիկա հարցում հարցնելու ճիշդ կերպն է» (Bradley G. Bolman and Tara Raghuveer, 'A Conversation with Slavoj Žižek', *The Harvard Crimson*, 10 February 2012 (http://www.thecrimson.com/article/2012/2/10/theres-this-slovenian-saying/): Արդե՞օք վերոյիշեալ մտաւորական չերտը երբեւէ կրնայ նմանուիլ Ժիժէքի մտաւորականին: Ժիժէքի մտաւորականին հարցադրումին կերպը արդէն դիմադրութիւն մըն է քաղաքական գործիչի անդամալոյծ ճարտասանութեան: Ո՞ր մտաւորականը հետաքրքրուած է դիմադրութեամբ:

## 1 ԻՆՉՈ՞Ւ Է ԼԵՒՈՆ ՄԿՐՏՉԵԱՆԸ ԳԱՂՏՆԻ ՊԱՀՈՒՄ ԻՐԵՆ ՊԱՏԿԱՆՈՂ ԲԱԺՆԵՄԱՍԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ.

*ԺՈՂՈՎՈՒՐԴ են: Մի տեղում ունեմ 5, միւսում՝ 10 տոկոս մասնաբաժին: Ինքս բիզնեսմէն չեմ: Կան եւ սփիւռքահայ ներդրողներ եւ ՀՀ-ից: Մենք Լաչինի շրջանում կառուցել ենք հիդրոկայանների կասկադ: Ես գտնում եմ, որ հայրենասիրութիւնը նաեւ շահոյթ է բերում, եւ իմ ընտանեկան բարեկեցութիւնը այդտեղից է»: Ի դէպ, նախարարն այդպէս էլ չնշեց այն ընկերութիւնների անունները, որտեղ ինքը բաժնեմաս ունի: Աւելի ուշ փորձեցինք նրա մամլոյ քարտուղար Լուսինէ Մարգարեանից պարզել, թէ կոնկրէտ ո՞ր ընկերութիւններում նախարարն ունի բաժնեմաս, սակայն մամուլի քարտուղարը եւս ասաց, որ Լաչինի շրջանում է՝ առանց կոնկրէտ անունը նշելու»:*

## 1 ԻՆՉՊԷՍ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ԹՈՅԼ ՉՏՈՒԵՑ ՄԵԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

1947 թ. Թուրքիան օգնութիւն ստացաւ Մարշալի պլանով, իսկ աւելի ուշ միացաւ Սակագների ու առեւտրի գլխաւոր համաձայնագրին եւ անդամակցեց ՆԱՏՕ-ին: Ստալինին յաջորդած Նիկիտա Խրուշչովն ընդունեց խորհրդային քաղաքականութեան սխալը, սակայն արդէն ուշ էր վերադասաւորելու դաշինքները: Այդուհանդերձ, դրանից յետոյ խորհրդա-թուրքական յարաբերութիւնները երբեք առանձնապէս վատ չեն եղել: Իսկ երբ 1965 թ. Թուրքիայի վարչապետ դարձաւ Սուլէյման Դեմիրէլը, սկսուեց խելամիտ համագործակցութիւնը: Իհարկէ, այդ ժամանակ ոչ ոք ինքնաթիռ չէր խփում:

Ինքնաթիռի ոչնչացման հիմնաւորումներն առայժմ ձեւական բնոյթ են կրում: Թուրքական ինքնաթիռները յաճախ խախտում են Յունաստանի օդային տարածքը, եւ դա ոչ մի ճակատագրական հետեւանք չի ունենում: Թուրքիայի արձագանքը ռուսական ինքնաթիռի վայրկեաններ տեւած թռիչքին այլ բանի արտացոլումն է: Ռուսներն իսլամի դէմ պատերազմներում յաղթում են 1571 թուականից սկսած, երբ Իւան Ահեղը գրաւեց Կազանը: Փոխանցւող վիրաւորանքն ու դժգոհութիւններն աւելացել են պատմական պահանջներին, եւ դա գլխիվայր շրջել է ռուս-թուրքական համագործակցութիւնը, որը վերջին 15 տարիներին մեծ օգուտներ էր բերում երկու կողմերին:

---

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

ԱՒԱԳ ՇԱԲԱԹ, 26 Մարտ 2016-ին,

**Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ՊԱՏԱՐԱԳ**

Երեկոյեան, պատարագէ առաջ պիտի կարդացուին Մարգարէական գիրքեր եւ Դանիէլի Թուղթը:

Սկիզբ Երեկոյեան Ժամերգութեան ժամը 4:30-ին
Ընթերցում Մարգարէական գիրքերու ժամը 5:00-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 6:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

---

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

ԿԻՐԱԿԻ, 27 Մարտ 2016-ին,

**ՏՕՆ Է**

**Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ**

**(ԶԱՏԻԿ)**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ
Պատարագը պիտի մատուցանէ՝

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ**

ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

Յընթացս Ս. Պատարագի պիտի ընթերցէ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ Ամենայն Հայոց Կաթողիկոսի Ս. Յարութեան պատգամը:

Սկիզբ առաւօտեան ժամերգութեան ժամը 8:30-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 10:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

---

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

**Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ ՄԵՌԵԼՈՑԻ Ս.ՊԱՏԱՐԱԳ**

Կիրակի, 3 Ապրիլ 2016-ին, Ս. Մինաս Ազգային Գերեզմանատան Մատրան մէջ, պիտի մատուցուի Ս. Պատարագ:

Յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ազգային Բարերարներու եւ Եկեղեցւոյ Նուիրատուներու՝

**ԳՐԻԳՈՐ ԵՂԻԱՅԵԱՆԻ,**
**տիկնոջ եւ դստեր եւ ծնողաց նորին**
**ԳԷՈՐԳ ՊԷՅ ՌԱՖԱՅԷԼԵԱՆԻ**
**ՕՆՆԻԿ եւ ԷԼԻԶ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆՆԵՐՈՒ**
**ԱՍԱՏՈՒՐ, ՅՈՎՀԱՆՆԷՍ եւ ԵՐԱՆՈՒՀԻ ՍԻՄՈՆԵԱՆՆԵՐՈՒ**
**ԱՆԺԷԼ ԿԻՐԱԿՈՍԵԱՆԻ**
**ՍԵՐՈԲ ՏԻԼԱՆԵԱՆԻ**
**ՍԵԴՐԱԿ եւ ԱՂԱՒՆԻ ՕՏԱՊԱՇԵԱՆՆԵՐՈՒ**

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Դէպի Մարմինայի Գերեզմանատուն, ժողովուրդին երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) առաւօտեան ժամը 8:15-ին

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին առջեւէն ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

---

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ մեր յարգոյ հասարակութեան, թէ Գահիրէի մէջ լոյս տեսած է արաբերէն լեզուով

**«ՏԱԼԻՏԱ»**



պարբերաթերթի առաջին թիւը, որ ամբողջութեամբ նուիրուած է Հայութեան եւ Հայոց Ցեղասպանութեան 100-րդ տարելիցին:

128 էջնոց գունաւոր սոյն հրատարակութիւնը անվճար կրնաք ստանալ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարաններէն եւ Հայկական ակումբներէն:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

---

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1764 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ԱՊՐԻԼ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ.

عدد رقم ١٧٦٤ الخميس ٧ أبريل ٢٠١٦


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՄԵՆԱՈՒԺԳԻՆ ԶԷՆՔԸ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Հայաստանի եւ Արցախի զինուժը կասեցրել է Ապրիլի 2-ի լուսաբացի Ադրբէջանի խոշորամասշտաբ սադրանքը: Մարտական գործողութիւնները շարունակւում են մի քանի ժամ, սակայն աներկբայ է, որ Ադրբէջանին չի յաջողուել հասնել գլխաւորին՝ ճակատային բեկման: Անկասկած է, որ ադրբէջանական զինուժի գործողութիւնն ունեցել է հէնց այդ նպատակը: Թէ ինչով է դա պայմանաւորուած, ինչ քաղաքական գործօններ են նպաստել կոնկրէտ որոշմանն ու դրա իրականացմանը ձեռնամուխ լինելուն, այլ խօսակցութեան նիւթ է եւ եղել է դրան անդրադառնալու տարբեր առիթներ, ու անկասկած կը լինեն նորանոր անդրադարձեր:

Աներկբայ է, որ այդ ամէնով հանդերձ, բացի իր համար աւանդական կամ միակը դարձած մարտավարութիւնից՝ լարել հակամարտութեան գօտում իրավիճակն ու անընդհատ շանտաժել Հայաստանին ու միջնորդներին, Ադրբէջանը մի շարք նոր գործօնների հետեւանքով գնացել է «բլից-կրիգի» միջոցով ճակատային գօտում բեկում մտցնելու քայլի:

Դրա պատճառը թէ քաղաքական առեւտրի նոր դիրքեր դուրս գալն էր, թէ մէկ այլ՝ առաւել կարեւոր հաշւարկը: Ադրբէջանն այդ բեկման շնորհիւ ցանկանում է ստեղծել լարուածութեան հետեւողական, քայլ առ քայլ թէժացման եւ շանտաժի քաղաքականութեան նոր դիրք: Բանն այն է, որ մի շարք աշխարհաքաղաքական հանգամանքներից ելնելով՝ Բաքուի համար ներկայիս դիրքերը լարուածութեան եւ շանտաժի համար արդէն աւելի շուտ փակուղային են, քան մեկնարկային: Ակնյայտ է, որ միջազգային օրակարգում ամրանում է հրադադարի պահպանման միջազգային մեխանիզմի ներդրման ամերիկեան գաղափարը:

Պատահական չէ, որ Բաքուն գնացել է հէնց մասշտաբային պայմանական «բլից-կրիգի», «դոզան» բարձրացնելով շատ կտրուկ: Դա ինչ որ տեղ նաեւ ճեղքում յիշեցնող քայլ է, այսինքն Բաքուն փորձել է այդ քայլով ճեղքել իր շուրջ սեղմուող քաղաքական կամ աշխարհաքաղաքական օղակը եւ դուրս գալ իր մարտավարութեան փակուղուց:

Հայկական զինուժը թոյլ չի տուել այդ ճեղքումը, անառիկ է պահել փաստացի ոչ միայն հայկական դիրքերն ու բնակավայրերը, այլ նաեւ «անառիկ» է պահել Ադրբէջանի ռազմատենչ քաղաքականութեան փակուղին, խոշոր հաշուով նկատի ունենալով հերթական սադրանքի առանձնայատկութիւնը՝ էլ աւելի խորացնելով փակուղին: Բաքուին խաղի քաղաքակիրթ կանոնների դաշտ բերելու այլ ճանապարհ չկայ:

Միեւնոյն ժամանակ, այստեղ առկայ է նաեւ չափազանց կարեւոր հանգամանք: Հայկական զինուժը լուծում է իր խնդիրը, սակայն այն պէտք է ունենայ նաեւ տնտեսա-քաղաքական շարունակութիւն այդ դաշտում անհրաժեշտ գործողութիւններով, թէ ներքին, թէ արտաքին ոլորտում: Այսինքն, ադրբէջանական փակուղին պէտք է խորացուի, եւ դա անելու լաւագոյն ձեւը Հայաստանի, հայ ժողովրդի, հայաստանցիների եւ արցախցիների ստեղծագործական պոտենցիալի, ստեղծարար ահռելի էներգիայի բացումն է:

Ապրիլի 2-ի ադրբէջանական սադրանքից ժամեր անց եղաւ տեղեկութիւն, որ Հայաստանից կամաւորական խմբեր ու ջոկատներ են մեկնում Արցախ, նաեւ Ստեփանակերտում էլ արցախցիները հաւաքւում են կամաւոր սահման մեկնելու համար: Սա իհարկէ բաւական յախուռն, միաժամանակ չափազանց կարեւոր մի գործօն է:

Սա թերեւս Հայաստանի ու Արցախի ամենաուժգին զէնքն է բառի բուն եւ պատկերաւոր իմաստով: Զէնք, որը Ադրբէջանը որեւէ երկրից չի կարող ձեռք բերել որեւէ միլիարդով:

Եւ սա իհարկէ պաթետիկ բնորոշման խնդիր չէ, այլ լրջագոյն գործօն՝ ռազմա-քաղաքական եւ աշխարհաքաղաքական: Եւ փաստացի, Ադրբէջանի «անզգուշութեամբ» աշխարհի, միջազգային հանրութեան առաջ փորձարկուել է Հայաստանի այդ ամենաուժգին զէնքը՝ ազատ ապրելու իր իրաւունքը արտաքին ոտնձգութիւնից պաշտպանելու հայաստանցիների եւ արցախցիների չմեռած եւ չմեռնող կամքը, էներգիան:

Այդ էներգիան առաւել երկարատեւ եւ հաստատուն յաջողութեան, նաեւ պարբերաբար հէնց այդ առումով «չփորձարկուելու» անհրաժեշտութիւնից խուսափելու համար ունի տնտեսա-քաղաքական ասպարէզում «ինքնապաշտպանութեան» էներգիայով լրացուելու, համալրուելու կարիք: Դրա համար անհրաժեշտ է, որպէսզի Հայաստանում բացուի հասարակութեան ստեղծարար էներգիան ամբողջութեամբ, դրանից բխող տնտեսա-քաղաքական որակական փոփոխութիւններով, արդիականացմամբ:

Դրանով պէտք է ընդգծուի, որ Ադրբէջանը ոչ միայն ռազմա-քաղաքական, այլ պարզապէս քաղաքակրթական փակուղում է: Դա ազգային անվտանգութեան խնդիր է, դա անվտանգութեան խնդրի համակարգային, համալիր լուծման խնդիր է: Զկայ Հայաստանի ու Արցախի, հետեւաբար ամբողջ տարածաշրջանի անվտանգութեան, կայունութեան եւ ստեղծարար ապագայի խնդրի երկարաժամկէտ լուծման այլ տարբերակ:

3 Ապրիլ 2016
www.lragir.am

## ԵԱՀԿ ՄԻՆՍՔԻ ԽՈՒՄԲԻՆ ԿՈՉԸ ԿՈՂՄԵՐՈՒՆ

ԵԱՀԿ Մինսքի խումբը ղարաբաղեան հակամարտութեան կողմերուն կոչ ըրաւ անյապաղ դադրեցնել կրակը: Ասիկա նշուած է Ապրիլ 5-ին ԵԱՀԿ Մինսքի խումբի հանդիպումին առիթով կատարուած յայտարարութեան մէջ:

«Մենք խստօրէն կը դատապարտենք շփումի գիծին երկայնքով տեղ գտած աննախադէպ բռնութիւնները: Մենք կը ցաւակցինք բոլոր տուժած ընտանիքներուն: Մենք կողմերուն կը յորդորենք անյապաղ դադրեցնել ուժի կիրառումը: Այս հակամարտութիւնը ռազմական լուծում չունի», - կը յայտարարէ Մինսքի խումբը եւ կ'ընդգծէ ստեղծուած իրավիճակին մէջ համանախագահներու հովանիին տակ անյապաղ բանակցութիւններ սկսելու անհրաժեշտութիւնը:

Միաժամանակ յայտնի կը դառնայ, որ Մինսքի խումբի համանախագահները պիտի ժամանեն տարածաշրջան: Միջնորդները պիտի այցելեն նախ Պաքու, ապա Ստեփանակերտ եւ Երեւան: Այցի նպատակն է Ատրպէյճանի եւ Հայաստանի քաղաքական ղեկավարութեան հետ երկխօսութիւն վարել՝ բոլոր կողմերուն միջեւ հրադադարի ռեժիմը վերականգնելու համար:

## ՓՈՒԹԻՆԸ ՀԵՌԱԽՕՍԱԶՐՈՅՑՆԵՐ ՈՒՆԵՑԱՒ ԱԼԻԵՒԻ ԵՒ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԵՏ

Ռուսական կողմի նախաձեռնութեամբ Ապրիլ 5-ին տեղի ունեցան նախագահ Վլատիմիր Փութինի հեռախօսազրոյցները Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանի եւ Ատրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի հետ:

«Մանրամասնօրէն քննարկուեցան ղարաբաղեան հակամարտութեան գօտիին մէջ կատարուած իրավիճակի վերջին զարգացումները: Խոր մտահոգութիւն յայտնելով լայնածաւալ ռազմական խախտումներուն կապակցութեամբ՝ որոնք բազմաթիւ մարդկային զոհերու պատճառ հանդիսացան, Վլատիմիր Փութին երկու կողմերուն կոչ ըրաւ անյապաղ ձեռնամուխ ըլլալ ռազմական գործողութիւններու դադրեցումին եւ հակամարտութեան ռեժիմի պահպանումին», - կը տեղեկացնէ Ռուսաստանի նախագահի պաշտօնական կայքը:

Հեռախօսազրոյցներուն ընթացքին կ'ընդգծուի նաեւ ԵԱՀԿ Մինսքի խումբին միջնորդութեամբ Երեւանի եւ Պաքուի միջեւ բանակցային գործընթացի վերականգնումի կարեւորութիւնը՝ ղարաբաղեան հակամարտութեան խաղաղ հանգուցալուծում փնտռելու նպատակով:

Պայմանաւորուածութիւն ձեռք կը բերուի տարբեր ձեւաչափերով շփումները շարունակելու մասին:

## ՄԻՆՍԿԻ ԽՈՒՄԲԸ ՊԷՏՔ Է ՃԱՆԱՉԻ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ

ՀՐԱՆՈՒՇ ԽԱՌԱՏԵԱՆ

Վերջ ի վերջոյ Ալիեւն է հրաժարուել հակամարտութեան ռազմական գօտում մոնիտորինգային խմբի աշխատանքից՝ նախապէս վաւերացնելով, որ իրեն ձեռնտու չի ռազմական գործողութիւնների հրահրման կողմի մասին օբիեկտիւ տեղեկատուութիւն: Դա յայտնի է բոլորին: Դատելով այսօրուայ ողջ իրավիճակից, եթէ ապացուցելի է, որ ադրբէջանական զինուորները սպանուել են հայկական զօրաբանակի կողմից վերահսկուող տարածքներում, ինքնաթիռը խոցուել է նոյն տարածքում, տանկը խփուել է նոյն տարածքում, այսինքն՝ ապացուցելի է, որ ադրբէջանական զինտեխնիկան ու մարդիկ մտել են հայերի կողմից վերահսկուող տարածք, ապա Մինսկի խումբը պէտք է վերջապէս դադարի նեյնիմ-նեյնիմից, դադարի «երկու կողմերին զգուշացնող», «երկու կողմերին զգաստացնող», «երկու կողմերին կոչ անող», «երկու կողմերին յորդորող» ծամոնը ծամել եւ վերջապէս վճռականութիւն ունենայ յայտարարելու, որ իրենց ողջ աշխատանքի արդիւնքում եկան միակ տրամաբանական եզրակացութեանը՝ ճանաչել Լեռնային Ղարաբաղի անկախութիւնը, իսկ իր՝ Մինսկի խմբի գործն արդէն սահմանափակւում է հայկական զօրաբանակի կողմից վերահսկուող տարածքի շուրջ սակարկութիւնը՝ ինչով եւ ինչպէս պէտք է ապահովուի Լեռնային Ղարաբաղի անվտանգութիւնը: Այլ տարբերակն ակնյայտօրէն նշանակում է մշտապէս պահել ռազմական իրավիճակը՝ չանս թողնելով թէ Ռուսաստանին, թէ Թուրքիային՝ նախաձեռնութիւնը վերցնել իրենց ձեռքը: Եթէ ՀՀ Արտաքին Գործերի Նախարարութիւնն (ԱԳՆ) այս կարգի յայտարարութեամբ հանդէս չի գալիս, մնում է կասկածել, որ դա ՀՀ ԱԳՆ չի, այլ Ռուսաստանի ԱԳՆի հայկական մասնաճիւղը: Բայց անկախ ԱԳՆ-ի, վերջ ի վերջոյ խնդիրը Արցախի եւ Հայաստանի քաղաքացիների խնդիրն է: Ինչքա՞ն կարող ենք լսել, որ «այդ հարցը ՀՀ արտաքին քաղաքականութեան օրակարգում չկայ», եւ այդ յայտարարութիւնների վերաբերեալ որեւէ մեկնաբանութիւն չլսել ԱԳՆ-ից: Տպաւորութիւնն այնպիսին է, որ ՀՀ ԱԳՆ-ն աւանդական արեւելեան մշակոյթի նորապսակ հարս է, որի ձայնը չպիտի լսեն իր ամուսնու հարազատները:

3 Ապրիլ 2016
https://www.facebook.com/hranush.kharatyan/posts/624602347692045?notif_t=close_friend_activity&notif_id=1459633234814345

ՅԱՐՑԱԶՐՈՅՑ

# ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ ԵՒ ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Բայց կարծես թէ արդուկուած ըլլալու տեսք չունի (Խնդուք):**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Արդուկուած է: Անիկա պարզապէս կու գայ... արդուկուածի տեսք չունի՞: Տե՛ս:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ախ, ձեւով մը կը տեսնեմ զայն հիմա: Հիմա ինծի թոյլ տուր ըսել՝ թէ արուեստի մասին այս աղտոտութիւնը, կեղտը, ճմռթկուածութիւնը...**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ան կրնայ գալ նաեւ անփութութենէն:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Անփութութիւն: Ես ալ ճիշդ այսպէս պիտի ըսէի: Այս յատկութիւնը քու արուեստիդ մէջ երբեք նախամտադրուած չէ: Ան շատ բնական է եւ կը ծագի իր անձնական ինքնէն [self]: Շատ անգամ այս աղտոտութիւնը, կամ քիչ մը լքուած յատկանիշ մը, դիմադրութեան կը հանդիպի: Անգամ մը քեզի ուղարկեցի բարեկամիս հանդիպելու Նիւ Եորքի Հանրային Գրադարանին մէջ, որպէսզի ցոյց տայիր քու չափազանց փայլուն գիրքդ՝ նուիրուած Սեպտեմբեր 11-ի ժամանակաշրջանի աշխարհին: Կը կարծեմ որ ան արուեստի սքանչելի գիրք մըն է, մեծապէս արտասովոր եւ կեանքով լեցուն: Կը կարծեմ թէ ան իսկապէս հանճարի գործ է:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ինծի ըսաւ որ լաւ չէր նկարուած:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Այո: Ուրեմն դուն գացիր Նիւ Եորքի Հանրային Գրադարան, գիրքդ ցոյց տուիր համադրողին [curator] եւ այս տարրերուն, ըսենք՝ անմաքրութեան, հանդէպ ան շատ բացասական արձագանք ունեցաւ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այո:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Այս յատկանիշով աշխատանքը ինծի միշտ կը յիշեցնէ ճափոնցի գրող Ճունիքիրօ Թանիզաքիի շատ գեղեցիկ գիրքը՝ *In Praise of Shadows*: Այս գիրքին մէջ հատուած մը կայ ուր ան կը խօսի մուրի վայելչութեան եւ գեղեցկութեան մասին: Ասիկա մեծագոյն վայելչագեղութեան մասին է որովհետեւ կը կրէ ժամանակի ընթացքին կուտակուած կեանքի նշանները: Հին կամ վաղեմի բան մը, որ տակաւին կը փայլի ներքուստ: Եւ ես կը զգամ՝ որ այս յատկանիշները բազում կը գտնուին աշխատանքիդ մէջ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կրնայ ըլլալ: Գիտես, ես շատ մտածողութիւն չեմ վատներ գործիս համար:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ամէն անգամ որ Գահիրէ գամ, դուն միշտ մօտս չփոթմունք կը յառաջացնես արուեստի աշխարհին մասին:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այո, զայն շատ հետաքրքրական կը գտնեմ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ուրեմն ի՞նչ է յարաբերութիւնդ արուեստի արդիւնաբերութեան, պատկերասրահներուն հետ, եւ այլն:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ըսեմ քեզի: Կը գտնեմ որ ան նման է անվճար սինեմա երթալու, նման է անվճար ֆիլմի երթալու, նման է անվճար Հոլլիուտի շրջագայութեան երթալու: Ան չունի Հոլլիուտի հմայքը: Ան ոչ մէկ բանի հմայքը ունի: Բայց ունի բոլոր այն մարդիկը որոնք կը նմանին գրասեղաններուն ետեւը նստած եւ, յաճախ, լաւ պատրաստուած պուպրիկներու: Անոնք յաճախ շատ սուղ զգեստներ հագած են եւ յաճախ շատ քաղաքավար են: Եւ յաճախ կը դիտեն քեզի: Եւ ասիկա շատ հետաքրքրական կը գտնեմ: Եւ կը գտնեմ որ այս երեւոյթը որոշ հմայք մը ունի:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Իրապէ՞ս: Արդե՞օք ասիկա քեզի համար հմայք կը ներկայացնէ, «ներս մտնելու» փափաք մը:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ոչ, երբեք չեմ փափաքիր անոնցմէ մէկը ըլլալ: Երբ կը խօսիմ եւ հարցումներ կը հարցնեմ, մէջս հմայքի խնդիրը կը ծագի որովհետեւ զայն շատ զուարճալի կը գտնեմ: Կը գտնեմ որ արուեստի աշխարհը անիրական է ու զուարճալի: Ըսել կ'ուզեմ, կը կարծեմ որ արուեստի աշխարհի ամբողջ ողբերգութիւնը այն է որ ան չի զբաղուիր արուեստով: Եւ ասիկա հրաշալի է: Ան չի զբաղուիր մշակոյթով, եւ չի զբաղուիր մարդասիրութեամբ: Ան կը զբաղուի կոկիկութեամբ, մաքրութեամբ, համակերպուածութեամբ եւ բոլորովին անկարեւոր որոշ թեքնիքական բաներ կ'ըսէ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ըսիր որ կ'ուզես դրամի մասին խօսիլ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Լաւ, ըսի որ շատ հետաքրքրուած եմ դրամով, թէեւ ժամանակ մը կը մտածէի թէ կարեւոր չէր դրամ շահիլ: Կ'ենթադրեմ որ Գանատա ապրիլը քեզի մտածել կու տայ թէ արուեստը պէտք է ըլլայ անվճար: Դուն ո՞վ ես որ այսքան գումար



Արայա

կը պահանջես: Եւ անշուշտ, այժմ այն գաղափարը թէ գին մը ունենալու համար պէտք է պատկանիս շուկային՝ կը յայտնուի Գահիրէի մէջ եւս: Պէտք է պատկանիս արուեստի շուկային: Լաւ, քեզի բան մը ըսեմ: Միակ բանը որ ինծի համար կարեւորութիւն ունի՝ դրամ ունենալն է: Եւ, ըլլալով հայ, դրամը շատ կարեւոր է: Իբրեւ տասնամեակներ շարունակ արմատախիլ եղած ազգութիւն մը, Հայաստան մշակեց այնպիսի զգացողութիւն մը՝ թէ դրամը ապահովութիւն կը շնորհէ, թէ ան ապահովութեան հենք մըն է: Ասիկա կը վերաբերի բազմաթիւ տեղափոխուած մարդոց:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Դուն անձ մը չես որ շատ դրամ կը խնայես, դուն ագահ չես, եւ դուն շատ ստեղծագործութիւններ չես արտադրեր ծախելու համար: Դուն իրապէս քեզի վերաբերող դրամի մասին չես խօսիր: Միակ բանն այն է որ դրամը քեզի կարողութիւն կու տայ որոշ բաներ ընել, օրինակ, ճամբորդել:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ես իրապէս դրամի պէտք ունիմ ճամբորդելու համար: Եթէ դրամ չունենամ անհանգիստ կը զգամ, բայց ոչ ահռելի կերպով, որովհետեւ պիտի գտնեմ իրերը կատարելու ուրիշ եղանակ, ինչպէս կ'ընէի շատոնց՝ երբ դրամ չունէի: Բայց հիմա ես տարիքաւոր եմ եւ աւելի դժուար է, քանի որ աւելի դիւրութեամբ կը յոգնիս: Ընկերութիւնը չի հանդուրժեր տարիքաւոր կին մը՝ որ մայթին վրայ նստած Քոքա-Քոլա կը խմէ: Երբ քսան-քսանհինգ տարեկան ես եւ մայթին վրայ Քոքա-Քոլա կը խմես, մարդիկ կ'ըսեն՝ «Հաճելի ժամանակ կ'անցընէ:» Երբ վաթսուն տարեկան ես եւ կը տեսնեն քու ճերմակ մազերդ, կ'ըսեն՝ «Այս կինը կեանքին մէջ բան մը չէ ըրած:»

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Դուն որոշ ծուլութիւն մը ունիս քու նկատմամբ: Բայց նաեւ բաւական զբաղուած ես: Շատ կը խօսիս, չուրջդ կը դիտես, իրերը կը ստուգես, եւ կը հրջիս աշխարհի չուրջ: Ուրեմն կը գտնուին քեզի վերաբերող այս երկու բաները...**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ես շատ ծոյլ եմ վաճառական առումով գործ ունենալ մարդոց հետ: Որովհետեւ ես...

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Եւ սակայն, ինչպէս յայտարարած ես, դուն կը սիրես դրամը: Որ իրականութեան մէջ չունիս:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Շատ դժուար կը գտնեմ ընկերանալ արուեստի ձեռնարկուներու հետ, եւ միշտ այն զգացողութիւնն ունիմ որ պէտք է երթամ իրենց գրասենեակները եւ պէտք է յաջողութիւն ձեռք բերեմ: Եւ երբեք չի յաջողիր:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ինչո՞ւ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Չեմ գիտեր:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Պատճառը իրե՞նք են թէ դուն:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կարծեմ իրենք են: Կը կարծե՞ս որ այդպէս է:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Չեմ գիտեր: Ինչ որ գիտեմ այն է՝ որ դուն եւ քու վարած կեանքդ բարձր նիւթապաշտական չեն բնաւ: Ամէն անգամ որ դուրս կ'ելլենք, քանի մը ոսկի ունիս գրպանդ որոնք բոլորն ալ տրորուած են եւ աղտոտ, եւ մայթին վրայ կը թափին: Միտքիդ մէջ ձեւով մը ուժեղ յարաբերութիւն կը գտնուի դրամի հետ, բայց իրականութեան մէջ կը թուի ոչ մէկ յարաբերութիւն գոյութիւն ունենալ դրամին հետ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Գրպաններուս մէջ ես միշտ շատ դրամ ունիմ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – (Խնդուք:) Բայց ան տրորուած է եւ աղտոտ, եւ միայն մանր դրամներ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այս մանր դրամներն են որոնք վար կ'իյնան, բայց ես յաճախ շատ դրամ ունիմ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – (Խնդուք:) Ախ այո, ախ, անիկա ուրիշ գրպանէ կ'ելլէ: Ճիշդ է:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կը կարծեմ թէ որոշ յարում ունիմ դրամի նկատմամբ եւ կը կարծեմ նաեւ որ կրնամ մեծ արագութեամբ 100.000 տոլլար ծախսել: Կրնամ կէս միլիոն ծախսել եւ կրկին աղքատ դառնալ: ↪ 3

ՅԱՅԱՍՏԱՆ

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵՒԱՆ

(ժամանակագրութիւն Մարտ ամսուայ Երեւանի դասական երաժշտութեան ներկայացումներուն եւ նուագահանդէսներուն)

Համադրեց՝ Հ.

**1 Մարտ**

– *Նարեկացի Արուեստի Միութիւն – Գարունը սկսենք երեխաների համար դասական երաժշտութեամբ*: Մեներգչուհի՝ Լիլիթ Սանոսեան:

– *Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Թատրոն – Լա Թրաւիաթա* օփերա: Մենակատարներ՝ Արծուիկ Դեմուրչեան, Լիպարիտ Աւետիսեան, Առնոլդ Քոչարեան, նուագավար՝ Յարութիւն Արզումանեան, բեմադրիչ՝ Գեղամ Գրիգորեան:

**2 Մարտ**

– *Գաֆէսճեան Արուեստի Կենտրոն – Դուէտ Արս Լունգա եւ ընկերներ*: Դաշնակ՝ Ջուլիէտա Վարդանեան, թաւջութակ՝ Արամ Թալալեան, ջութակ՝ Անի Կարապետեան, ջութակ՝ Սօնա Ազարեան:

**4 Մարտ**

– *Արամ Խաչատրեան Համերգասրահ – Պրամսի երաժշտութեան երեկոյ*: Ջութակ՝ Թոմաչ Թոմաչեւսքի (Լեհաստան), թաւջութակ՝ Արթուր Հորնիկ (Գերմանիա), Հայաստանի Ազգային Ֆիլհարմոնիկ Նուագախումբ, նուագավար՝ Էդուարդ Թոփչեան:

**6 Մարտ**

– *Պարոնեանի անուան Երաժշտական Կոմեդիայի Թատրոն – Ուշ լինի, նուշ լինի* օփերէթ: Բեմադրիչ՝ Երուանդ Ղազանչեան:

**9 Մարտ**

– *Արամ Խաչատրեան Համերգասրահ – 4 դաշնամուր*: Հայաստանի Պետական Կամերային Նուագախումբ, նուագավար՝ Վահան Մարտիրոսեան, չորս դաշնակ՝ Կլորիա Քամփանէր (Իտալիա), Թրիսթան Փֆաֆֆ (Ֆրանսա), Ֆրանսուա-Կզաւիէ Փոազա (Զուիցերիա), Վահան Մարտիրոսեան:

– *Նարեկացի Արուեստի Միութիւն – Իմպրովիզացիոն երեկոյ*, կազմակերպութեամբ Հայաստանի Կոմպոզիտորների Միութեան Երիտասարդական Մասնաճիւղին:

– *Գաֆէսճեան Արուեստի Կենտրոն – Իմ հոգւոյս հոգի՝ երեկոյ ալտի հետ*: Յայտագիր՝ Տիգրան Մանսուրեան, Եանա Դարեան: Դաշնակ՝ Լուսինէ Յակոբեան, ջութակ՝ Անուշ Նիկողոսեան, թաւջութակ՝ Կարէն Քոչարեան, մեցցօ-սոփրանօ՝ Քրիստինէ Սահակեան:

**10 Մարտ**

– *Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Թատրոն – Իլ Թրովաթորէ* օփերա: Մենակատարներ՝ Լիլիթ Սողոմոնեան, Յովհաննէս Այվազեան, Առնոլդ Քոչարեան, Լիլիթ Յակոբեան, նուագավար՝ Ռուբէն Ասատրեան, բեմադրիչ՝ Նորայր Սարգսեան:

**11 Մարտ**

– *Արամ Խաչատրեան Համերգասրահ* – Յայտագիր՝ Սէն-Սանս եւ Պեռլիոզ: Դաշնակ՝ Վալենթինա Պապոր (Գերմանիա), Հայաստանի Ազգային Ֆիլհարմոնիկ Նուագախումբ, նուագավար՝ Ալտօ Սիսիլօ:

– *Նարեկացի Արուեստի Միութիւն – Յարգէ՛ք հաւասարութիւնը* (նուիրուած կիներու եւ տղամարդոց միջեւ անհաւասարութեան կասեցումին): Յայտագիր՝ Շուպերթ, Մոցարթ, Ռ. Մելիքեան, Է. Աբրահամեան, Կոմիտաս: Մեներգչուհի՝ Աննա Թաթոսեան:

– *Կոմիտաս Թանգարան-Ինստիտուտ – Գերմանական երգի երեկոյ* (կը ներկայացնէ Աննա Մայիլեան Երգարուեստի Կենտրոնը): Յայտագիր՝ Շուման, Պրամս, Մալէր: Սոփրանօ՝ Ալինա Փահլեւանեան, մեցցօ-սոփրանօ՝ Աննա Մայիլեան, թենոր՝ Լիպարիտ Աւետիսեան, պարիթոն՝ Կիմ Սարգսեան, դաշնակ՝ Էլէն Կիրակոսեան:

– *Գաֆէսճեան Արուեստի Կենտրոն – Երաժշտութեան կասկադ*: Կատարողներ՝ Լուսինէ Ազարեան եւ Արաքս Համոյթ:

**16 Մարտ**

– *Նարեկացի Արուեստի Միութիւն – Վոկալ երաժշտութեան երեկոյ*, մասնակցութեամբ Սուսաննա Մարտիրոսեանի ուսանողներուն:

– *Գաֆէսճեան Արուեստի Կենտրոն – Նէապոլիտանական երգերի երեկոյ*: Պաս՝ Պօղոս Բիազբէկեան, դաշնակ՝ Լեւոն Յարութիւնեան:

**17 Մարտ**

– *Պարոնեանի անուան Երաժշտական Կոմեդիայի Թատրոն – Կարինէ* օփերէթ: Նուագավար՝ Եուրի Դաւթեան, բեմադրիչ՝ Շուշանիկ Գէորգեան:

↪ 4

2 ⇨

ՀԱՐՑԱԶՐՈՅՑ

## ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ ԵՒ ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ

Բայց չեմ կրցած հաշուարկել թէ ինչն է հարստութեան չափանիշը:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ի՞նչ կը նշանակէ ասիկա:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ի՞նչ կը նշանակէ աղքատ ըլլալ եւ իրապէս ի՞նչ կը նշանակէ հարուստ ըլլալ: Կը կարծեմ որ այս բոլորը կապ ունի մարդկային միտքի կարողութեան հետ, կապ ունի թէ այս միտքը ինչ կրնայ ընել իրականացնելու ինչ որ կը պահանջես իրմէ: Կրնաս ամէն բան դիւրութեամբ ստանալ եթէ վճռես ընել այն ինչ կ'ուզես ընել:



Թալ'աթ Հարպ հրապարակ

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ի՞նչ կը զգաս ինքզինքիդ հանդէպ եւ ի՞նչ կ'ուզէիր ընել որպէսզի կարողանայիր ուզածդ ստանալ կեանքէն:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Լաւ, կարծեմ որոշ բաներ ստացած եմ կեանքէն, բաներ զորս կ'ուզէի ստանալ:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Գահիրէ կատարած վերջին այցելութիւնս կը համընկնէր կեանքիս այն պահուն՝ երբ խիստ չփոթուած վիճակի մէջ էի եւ ամէն բան քաոս էր ինծի համար: Մենք խիտ երթեւեկութեան ժամանակ թաքսի նստած էինք երբ հարցուցի քեզի. «Ենթադրուած է որ ի՞նչ ընենք կեանքի մէջ: Չեմ հասկնար: Դուն պարզաբանա՞ծ ես այս հարցը:» Եւ դուն նայեցար ապակիին մէջէն եւ ըսիր. «Լաւ, գիտես, վերջին հաշուարկով, կը զգամ թէ մարդ պէտք է փորձէ որքան կարելի է ազնուական ըլլալ: Գիտես, դիւրին չէ ազնուական ըլլալ:»**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – «Ըլլալ մարդ արարած:» Մէկը որ կը սիրէ մարդոց, կը սիրէ մարդկային կեանքը: Եւ Տալայ Լաման՝ որ ըսած է թէ շատ կարեւոր է ըլլալ մարդ արարած: Բայց կ'ենթադրեմ թէ շատեր ինծի կը գտնեն դաժանօրէն գարշելի մարդ արարած մը:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ի՞նչ իմաստով:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Պէտք է իրենց հարցնես:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Անգամ մը ինծի ըսիր թէ դուն հմայուած ես կեանքի առանցքը գտնուող խորհրդաւոր բանի այս յատկանիշով:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Այո, շատ խորհրդաւոր բան մը կը գտնուի կեանքի առանցքը: Երբ երիտասարդ էի, սկսայ գիտակցիլ թէ մեծ խորհուրդ մը կայ որ նաեւ կեանքին մէջ առնչուած է մեծ վախով: Կ'ենթադրեմ, որ երբ կեանքը կը դառնայ ծանօթ, եւ դուն կը դառնաս աւելի բանիմաց, մարդկային գոյութեան մասին վախը կ'անհետանայ եւ աւելի դիւրին կը դառնայ առնչուիլ կեանքի հետ: Խորհրդաւորութիւնը կը սկսի բացայայտուիլ անորոշութենէն դէպի յստակութիւն, անյայտութենէն դէպի յստակութիւն:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ինծի ըսած ես՝ թէ կը զգաս որ որքան տարիքդ յառաջանայ...**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Ան կը դառնայ ապախորհրդաւոր:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Ինչպէ՞ս ասիկա կը որսաս գործիդ մէջ: Զայն ուժեղօրէն կը զգամ նկարներուդ եւ գծագրութիւններուդ մէջ, բայց ինչպէ՞ս խիկապէս կը փորձես իրագործել զայն:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Նախ եւ առաջ, կ'ուզեմ օգտագործել աւելի շատ հիւսուածքներ: Բացի այն նկարներէս ուր մեղրամոմ կը գործածեմ, բաւարար հիւսուածք չէր գտնուիր իմ գործիս մէջ: Մեղրամոմ կը գործածեմ որովհետեւ իմ միտքիս մէջ ան կապուած է մոմերու հետ, իսկ մոմեր կ'ընծայես եկեղեցիներու սրբարաններուն: Անոնք մաս կը կազմեն աստուածութեան համար յատկացուած ընծային: Մեղրամոմի գործածութիւնը տեսակ մը միութիւն կը ստեղծէ վաղանցիկ, միաժամանակ աստուածային, բանի մը հետ: Կը դառնայ լուսաւոր:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Երբ կը դիտես այսօրուայ մեծ քանակութեամբ արուեստի գործերը եւ զանոնք արուեստի արդիւնաբերութեան մէջ առաջնային հանրային տեսանիւթ դարձնող հրատարակութիւնները, բոլորն ալ առաջ մղուած բարձր մշակոյթով, կը տեսնե՞ս արդեօք այս լուսաւորութիւնը կամ անձնապէս քեզի այնքան արժէքաւոր համարուող հիմնական յատկանիշները:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Կը կարծեմ որ անցեալ քսան տարիներուն հռչակաւոր դարձած երիտասարդ արուեստագէտները՝ իրենց աշխատանքի առաջին տասնամեակին ունէին այդ էութիւնը: Բայց վերջ ի վերջոյ անոնք դարձան պարզապէս թեքնիքապէս հմուտ եւ սկսան սպասարկել քիչերու կարիքներուն:

**ՌՈՊԵՐԹ ՇԱՀՊԱԶԵԱՆ – Եւ ինչո՞ւ կը կարծես այսպէս պատահեցաւ:**

ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆ – Որովհետեւ կը կարծեմ անոնք քիչերու հետ կ'ընկերանան: Իրենց իրականութիւնները կը կապուին քիչերու իրականութիւններուն հետ: Եթէ չեմ սխալիր, ընտրելապաշտ [elitist] կը նշանակէ թէ դուն այնքան կը ձերբազատուիս մարդկային ողբերգութենէն՝ որ մարդկային պայքարի իրականութիւնը կը խամրի եւ կը կառուցուի արհեստական իրականութեան ուրիշ շերտ մը: Լաւագոյն արուեստը կը յուզէ մարդոց մեծամասնութեան:

(Վերջ 2)

Անգլերէնէ թարգմանեց Հ.Ա.

(*Bidouin Magazine*, Issue 8, Vol. 1, Fall 2006, New York: Համացանցի տարբերակը՝ http://www.bidoun.org/magazine/08-interviews/anna-boghiguian-and-robert-shapazian/)

ԽՈՀԵՐ

# ԿԸ ՄԱՀԱՆԱՅ ՄԵՆԵՐԳԻՉ ԳԵՂԱՄ ԳՐԻԳՈՐԵԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Եւ մարդու մը կեանքը ի՞նչ բան է արդեօք.
«մէկ» չըսած՝ վերջացաւ:»
Ուիլիամ Շեքսփիր
(*Համլէթ*, Ե. արար, Բ. տեսարան)

Մարտ 23-ին, Երեւանի մէջ 65 տարեկանին քաղցկեղի հիւանդութեամբ մահացաւ հռչակաւոր մեներգիչ՝ թենոր Գեղամ Գրիգորեան:

Իր անցած ստեղծագործական հետաքրքրական եւ բախումնալից ճանապարհին կը յատկացնեմ «Խոհեր»-ու յաջորդական համարները:

## ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

Ծնած է Երեւան, 1951 Յունուարին:

Աւարտած է Երեւանի Կոմիտասի անուան Երաժշտանոցը, ուսուցիչ ունենալով Սերգէյ Դանիէլեան: 1971-ին՝ քսան տարեկանին, սկսած է իր բեմական ասպարէզը եւ 1972-ին ելոյթներ ունեցած Արեւմտեան Պեռլինի մէջ:

Երեւանի Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Թատրոնի իր առաջնեկը տեղի ունեցած է 1975-ին՝ Էտկարտոյի (*Lucia di lammermoor*) դերերգով, որուն յաջորդած են Սարոյի (*Անոյշ*), Տիրիթի (*Արշակ Բ.*), Սայեաթ-Նովայի (*Սայեաթ-Նովա*), Կոմս Ալմաւիւայի (*Il barbiere di Siviglia*), Ֆաուսթի (*Faust*) դերերգները:

## ՄԻԼԱՆԻ ԼԱ ՍՔԱԼԱ ՕՓԵՐԱՆ

1978-ին ուսանելու կ'ընդունուի Միլանի Լա Սքալայի Scuola di Perfizionamento Artistico-ին մէջ: 1979-ին, Լա Սքալայի գեղարուեստական ղեկավար եւ նուագավար Քլաուտիօ Ապպատօ իրեն կ'առաջարկէ Լա Սքալա օփերային մէջ ելոյթ ունենալ *Պորիս Կոտունով* եւ *Թոսքա* օփերաներուն մէջ: Խորհրդային շրջանն էր եւ իւրաքանչիւր խորհրդային քաղաքացիի ելոյթը արտասահմանի մէջ պէտք է ընթանար պաշտօնական խողովակներով: Խորհրդային իշխանութիւնները ոչ միայն մերժեցին իրեն մասնակցիլ այդ բեմադրութիւններուն, այլ տասը տարուան համար արգիլեցին իր ելքը խորհրդային սահմաններէն:

Այս որոշումը կարելի չէ հասկնալ առանց ակնարկ մը նետելու յիշեալ *Պորիս Կոտունովի* բեմադրութեան վրայ, որ տեղի ունեցաւ 1979 Դեկտեմբերին, Ապպատոյի նուագավարութեամբ: Ամբողջ խնդիրը կապուած էր բեմադրիչին հետ՝ խորհրդային ծանօթ արուեստագէտ Եուրի Լիւպիմովին: Ան կը հանդիսանար Խորհրդային Միութեան կողմէ արդէն անվերահսկելի դարձած արուեստագէտներէն մէկը, որուն արտաքին ինքնուրոյն հռչակը եւ ռուսական մշակոյթի «արժէք»-ներուն ինքնատիպ մեկնաբանութիւնները անցած էին ներքին իշխանութիւններուն արտօնած սահմանները: 1977-ին գագաթնակէտին հասած էր իր եւ խորհրդային իշխանութիւններուն միջեւ տարիներ շարունակ հասունցող հակամարտութիւնը, որ արդէն բացայայտօրէն արտայայտուեցաւ արտասահման հրատարակուած հարցազրոյցներուն ու յօդուածներուն եւ ***Փռաւտայ***ի հակայարձակումներուն մէջ (Birgit Beumers, *Yury Lyubimov: At the Taganka Theatre (1964-1994)*, Harwood Academic Publishers, 2005, pp. 169-170): Լիւպիմովի եւ Խորհրդային Միութեան յարաբերութիւններու այս թէժ շրջանին էր որ Գրիգորեանին կ'առաջարկուէր ելոյթ ունենալ Սքալայի բեմադրութեան մէջ: Մնացածը ինքնաբերաբար հասկնալի կրնայ դառնայ:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՇՐՋԱՆ

Բնականաբար, ասոր պիտի յաջորդէր ներքին՝ խորհրդային դժուարութիւններ: Հայաստանի երաժշտական ղեկավարները մերժեցին սրահներ տրամադրել: Վերջերս կատարած հեռատեսիլի գրոյցի մը մէջ, Գրիգորեան կը յիշէ՝ թէ ինչպէս ռուս հռչակաւոր մեներգիչներ Ելենա Օպրազցովա եւ Եւկենի Նեսթերենքօ յատուկ կը հանդիպին մշակոյթի նախարարին հետ Մոսկուայի մէջ, խնդրելու համար որ այս տղան երգէ: Նախարարը, հաւանաբար չիտակ պատասխանէ խուսափելու համար, պատասխանատուութիւնը կը նետէ Հայաստանի վրայ («Արուեստանոց» հաղորդում, *Հայաստանի Հանրային Հեռուստաընկերութիւն*, 25 Մայիս 2014):

Հայաստանի դժկամութենէն ետք, 1980-ին Լիտվայի Օփերայի Թատրոնի տնօրէն Վիրկիլիյուս Նորէյքա կը հրաւիրէ իրեն դառնալու այդ օփերայի մնայուն մեներգիչ: Այնտեղ, Գրիգորեան կը ստանձնէ բազմաթիւ կարեւոր դերերգներ: 1982-ին կը շնորհեն Լիտվայի ԽՍՀ վաստակաւոր արուեստագէտի կոչում:




Գեղամ Գրիգորեանի մեներգային սկաւառակին կողքը, Մելոտիա, 1985:

Երեւանի մերժումը եւ Վիլնիւսի ընդունումը կարելի է դիտել ոչ անպայմանօրէն չար-բարի հակադրութեան մէջ: Անիկա կապուած էր հանրապետութիւններու ունեցած յարաբերութեան խորհրդային կեդրոնին հետ: Պալթեան երեք երկիրները միշտ փորձած են ինքզինքնին հեռացնել խորհրդային համակարգէն: Անոնք վերջին երկիրներն էին որոնք միացած էին Խորհրդային Միութեան կազմին եւ առաջիններն էին որոնք անջատուեցան անկէ: Միւս կողմէն, հայկական իշխանականները առանց դժուարութեան ինքզինքնին կը նոյնացնէին խորհրդային կարգերուն հետ: Եւ եթէ 1960-ականներուն, խորհրդահայ ոչ-իշխանական մտաւորականներ ու արուեստագէտներ փորձած են ճեղքել այդ նոյնացումը, ինչպէս՝ Հրանտ Մաթեւոսեան, Հենրիկ Մալեան կամ Մինաս Աւետիսեան, դասական երաժշտութեան պարագային նման պարագաներ գոնէ առ այժմ չեն արձանագրուած (նկատի չունիմ ազգայինի խորհրդային տարբերակով հպարտացող «ազգայնասէր»-ները): Աւելին. 70-80-ականներուն Երեւանի երաժշտանոց յաճախողները կրնան վկայել, որ այդ հիմնարկը՝ անկախ իր անդրդուելի ու անդրժելի փրոֆեսիոնել մակարդակին, կը հանդիսանար Հայաստանի ամենէն աւելի ռուսախօս հիմնարկը, ռուսամէտութիւն մը՝ որ ստացած էր դասակարգային բարձրութեան չափանիշ: Իսկ բարձր դասակարգը հազուադէպ կ'ըմբոստանայ: Նոյնիսկ Խորհրդային Միութեան փլուզումի տարիներուն, երբ Նկարիչներու Միութեան ներսէն ծնաւ երիտասարդական «3-րդ յարկ» անունով ծանօթ ցուցահանդէս-շարժումը, Կոմպոզիտորների Միութիւնը կամ Երաժշտանոցը հեռու մնացին որեւէ երաժշտական ներքին-իմաստային փոփոխութենէ: Այս բնաբանին մէջ, Գրիգորեանի հանդէպ կատարուածը կրնայ դառնալ հասկնալի, առանց մնալու, սակայն, մեղադրութենէ զերծ:


G. ROSSINI
PETITE MESSE SOLENNELLE
N.GERASIMOVA, E.OBRAZTSOVA
G.GRIGORYAN, E.NESTERENKO
MOSCOW CHAMBER CHOIR
ARTISTIC DIRECTOR AND CONDUCTOR
V. MININ
ДЖ. РОССИНИ
МАЛЕНЬКАЯ ТОРЖЕСТВЕННАЯ МЕССА
Н. ГЕРАСИМОВА, Е.ОБРАЗЦОВА
Г. ГРИГОРЯН, Е. НЕСТЕРЕНКО
МОСКОВСКИЙ КАМЕРНЫЙ ХОР
ХУДОЖЕСТВЕННЫЙ РУКОВОДИТЕЛЬ И ДИРИЖЕР
В. МИНИН

Գեղամ Գրիգորեանի ձայնագրած առաջին սկաւառակին կողքը, Մելոտիա ընկերութիւն, 1981: Ռոսսինի՝ *Petite messe solennelle*.

1981-ին, Մելոտիա ընկերութիւնը կը ձայնագրէ Ռոսսինիի *Petite messe solennelle*-ը, կատարողներ՝ Նաթալիա Կերասիմովա (սոփրանօ), Ելենա Օպրազցովա (մեծծօ-սոփրանօ), Գեղամ Գրիգորեան (թենոր), Եւկենի Նեսթերենքօ (պաս), մասնակցութեամբ Մոսկուայի սենեկային երգչախումբին, նուագավար՝ Վլատիմիր Մինին: Զոյգ սկաւառակները կը հրապարակուին 1984-ին (Melodiya S10 21187): Գրիգորեանի առաջին ձայնագրութիւնն էր ասիկա:

1982-ին կը դառնայ Չայքովսքի Եօթներորդ Միջազգային Մրցոյթի դափնեկիր (երկրորդ մրցանակ): Մրցոյթին կատարած արիաներէն մէկը՝ 'Che gelida manina' (*La bohème*), նոյն տարին Մելոտիա կը հրապարակէ մրցոյթի դափնեկիրներուն յատկացուած սկաւառակին վրայ (Melodiya S10-18105), հանդիսանալով Գրիգորեանի առաջին հրապարակուած ձայնագրու-

⇨ 4

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 24 Ապրիլ 2016 թ.
Տօն Երեւման Սրբոյ Խաչի
Յիշատակ
Սրբոց Նահատակաց Մերոց
Որք Կատարեցան Յընթացս
Հայոց Ցեղասպանութեան
Վասն հաւատոյ Եւ Վասն Հայրենեաց
Յաւարտ Ս. Պատարագի Պիտի Կատարուի
Բարեխօսական կարգ

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին
Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:
Սալահ էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*



## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵՒԱՆ

**20 Մարտ**

– *Պարոնեանի անուան Երաժշտական Կոմեդիայի Թատրոն – Ատամնաբոյժն արեւելեան* օփերէթ: Բեմադրիչ՝ Երուանդ Ղազանչեան:

**22 Մարտ**

– *Կոմիտաս Թանգարան-Ինստիտուտ – 20-րդ դարի եւ ժամանակակից երաժշտութիւն*: Դաշնակ՝ Հայկ Մելիքեան: Յայտագիր՝ Ֆիշէր, Քորսուն, Թաֆրեշիփուր, Լանկ, Վիլլա-Լոպոս, Սեհին, Կրին, Մեսիաէն, Կորեցքի:

– *Կոմիտասի անուան Կամերային Երաժշտութեան Տուն* – Վաչէ Շարաֆեանի 50-ամեակին նուիրուած համերգ: Ջութակ՝ Պոլինա Շարաֆեան, սոփրանօ՝ Արծուիկ Դեմուրճեան, թաւջութակ՝ Կարէն Քոչարեան, դուդուկ՝ Գէորգ Դաբաղեան, դաշնակ՝ Վաչէ Շարաֆեան, Հայաստանի Պետական Կամերային Նուագախումբ, նուագավար՝ Վահան Մարտիրոսեան:

**23 Մարտ**

– *Գաֆէսճեան Արուեստի Կեդրոն – Դաշնամուրային երաժշտութեան գոյները*: Դաշնակ՝ Յովհաննէս Մանուկեան: Յայտագիր՝ Յովհաննէս Մանուկեան, Օթար Թաթիշվիլի:

**24 Մարտ**

– *Կոմիտասի անուան Կամերային Երաժշտութեան Տուն – Տաղարան – 35* (Տաղարան համոյթի 35-ամեակին առիթով): Տաղարան Համոյթ, նուագավար՝ Սեդրակ Երկանեան, սոփրանօ՝ Լուսինէ Մարկոսեան, մեցցօ-սոփրանօ՝ Թամարա Դադոյեան, թենոր՝ Պերճ Քարազեան, քանոն՝ Մարիաննա Գէորգեան, դուդուկ՝ Արտակ Ասատրեան:

**29 եւ 31 Մարտ**

– *Արամ Խաչատրեան Համերգասրահ – Լօ պոհէմ* օփերա (համերգային կատարում): Մենակատարներ՝ Իրինա Զաքեան, Յովհաննէս Այվազեան, Դաւիթ Բաբայեանց, Հայաստանի Ազգային Ֆիլհարմոնիկ Նուագախումբ, նուագավար՝ Էդուարդ Թոփչեան:

**30 Մարտ**

– *Գաֆէսճեան Արուեստի Կեդրոն – Արմէնի տրիօ*: Դաշնակ՝ Կարինէ Յովհաննիսեան, թաւջութակ՝ Աննա Յարութիւնեան, ֆլիւթ՝ Արտաշէս Գրիգորեան: Յայտագիր՝ Պեթհովէն, Շուման:

**31 Մարտ**

– *Կոմիտասի անուան Կամերային Երաժշտութեան Տուն – ՀՊԿԵ-ի համերգը նուիրուած կանանց տօնին*: Հայաստանի Պետական Կամերային Երգչախումբ, խմբավար՝ Ռոբերտ Մլքեյեան: Յայտագիր՝ Պրամս, Պրուքնէր, Վասքս, Վիթաքրէ, Թելֆէր, Ֆօրէ:

Յ. Գ.
Կը փափաքինք դիտել տալ սփիւռքահայ կատարողներու եւ երաժշտահաններու բացակայութիւնը:





## ԿԸ ՄԱՅԱՆԱՅ ՄԵՆԵՐԳԻՉ ԳԵՂԱՄ ԳՐԻԳՈՐԵԱՆ

թիւնը (Ռոսսինիի *Petite messe*-ը հրապարակուած է 1984-ին):

Արդէն ժամանակը եկած էր Երեւանի երաժշտական ղեկավարներուն չարժելու: Վերջապէս, Գրիգորեան դարձած էր «պետականօրէն» ընդունելի անձ մը, ստացած էր միջազգային մրցանակ եւ այլեւս «վտանգ» չէր ներկայացներ տեղական ղեկավարներուն համար:

1984-ին ան կը հրաւիրուի դառնալու Երեւանի Օփերայի գլխաւոր մեներգիչ: Այդ ժամանակ ես կ'ուսանէի Երեւանի մէջ: Զարմանալի մթնոլորտ մըն էր 80-ականներու Հայաստանը: Զգրուած լուրերը, մանաւանդ իշխանական ոտնձգութիւնները, բանաւոր կերպով անմիջապէս կը տարածուէին ժողովուրդին մէջ: Երաժշտական աշխարհը լաւատեղեակ էր թէ՛ Մոսկուայի կեդրոնական մարմիններուն եւ թէ՛ հայ երաժշտական ղեկավարներուն Գրիգորեանի նկատմամբ պարտադրած արգելակումներուն մասին: Այնպէս որ 1984-ին իր վերադարձը Երեւան յառաջացուցած էր մեծ հետաքրքրութիւն: Ես ներկայ էի 1984 Ապրիլ 27-ին Երեւանի Օփերայի նորովի բեմադրած *Արշակ Բ.*-ին: Երեւանի Օփերայի այն քիչ ներկայացումներէն էր՝ ուր սրահը գրեթէ լեցուն էր: Չեմ կրնար ըսել բացառիկ բեմադրութիւն մըն էր՝ Գոհար Գասպարեան (Օլիմբիա) եւ Միհրան Երկաթ (Արշակ Բ.) տարիքի բերումով բաւական պոռացին բեմին վրայ, բայց կարծես հանրութիւնը ներողամտաբար կ'ունկընդրէր իրենց՝ միայն լսելով այս բացառիկ մեներգիչներուն նախկին փառքն ու փայլքը: Իսկ երբ Գրիգորեան աւարտեց Տիրիթի արիան, սրահը ամբողջութեամբ թնդաց՝ բառին իրական իմաստով: Իրապէս տպաւորիչ էր եւ նոյնիսկ անսպասելի: Եւ այսպէս սկսաւ, կամ վերասկսաւ, Գրիգորեանի «հայաստանեան» ուղին:

1985-ին՝ *Արշակ Բ.*-էն ետք, կը ստանայ Հայաստանի ԽՍՀ ժողովրդական արուեստագէտի կոչում:

1985-ին Հայֆիլմը Տիգրան Լեւոնեանի բեմադրութեամբ կը նկարահանէ *Ալմաստ* ֆիլմ-օփերան, որ առաջին անգամ կը ցուցադրուի 1986 Յունուարին: Այնտեղ Գրիրորեան կը ձայնագրէ Աշուղի դերերգը (մեներգիչներն ու ֆիլմի դերասանները տարբեր անձեր էին):

Նոյն տարին Մելոտիա Մոսկուայի մէջ կը ձայնագրէ իր մեներգային սկաւառակը, մասնակցութեամբ Պոլշոյ Թատրոնի Նուագախումբին, նուագավար՝ Մարք Էրմլէր (Melodiya S10 24755-6), որ կը հրապարակուի 1987-ին:

1986-ին Մելոտիա կը ձայնագրէ *Նորմա* օփերան, Նորմա՝ Մարիա Պիեչու, Փոլիոնէ՝ Գեղամ Գրիգորեան, Ադալճիզա՝ Լիւտմիլա Նամ, Օրովեզօ՝ Կէորկի Սելեզնեւ, մասնակցութեամբ Պոլշոյի Նուագախումբին, նուագավար՝ Մարք Էրմլէր (Melodiya S10 25601): Սկաւառակը կը հրապարակուի 1988-ին:

ՔԻՐՈՎ-ՄԱՐԻԻՆՍՔԻ

1989-ին, Քիրով Օփերայի եւ Պալէի Թատրոնի (1992-էն ի վեր՝ Մարիինսքի Թատրոն) նոր նշանակուած գեղարուեստական ղեկավար Վալերի Կերկիեւի հրաւէրով կը սկսի Գրիգորեանի երկարատեւ համագործակցութիւնը Թատրոնին հետ, որ նոր ու կարեւոր փուլ մը կը հանդիսանայ շնորհաշատ թենորին համար: Այս կարեւորութիւնը կարելի է խտացնել երեք կէտերու մէջ.

1. Այդ տարիներուն Լենինկրատ քաղաքի պատասխանատուները դրամական յատկացումներով ու վարչական դիւրութիւններով յատուկ ուշադրութիւն դարձուցին վերակենդանացնելու համար Քիրովը եւ անոր վերադարձնելու իր նախախորհրդային շրջանի վարկը: Մինչ Մոսկուայի Պոլշոյը կ'ապրէր համեմատական վայրէջք մը, Քիրով-Մարիինսքին կարճ ժամանակի ընթացքին դարձաւ յետխորհրդային Ռուսաստանի երաժշտական դէմքը աշխարհին առջեւ: Քիրովի եւ Վալերի Կերկիեւի միջոցով իրենց առաջին քայլերը կատարեցին այսօր ամբողջ աշխարհը շրջագայող Աննա Նեթրեպքօ, Տմիթրի Հվորոսթովսքի, Կալինա Կորչաքովա եւ շատ ուրիշներ: Գրիգորեան անմիջական մասնակիցը դարձաւ Թատրոնի նոր դէմքի կերտումին, միաժամանակ օգտըւելով անոր նորովի համբաւէն:



Քիրովի Թատրոնին հետ ունեցած առաջին ձայնագրութեան տեսասալիկի (DVD) կողքը, Kultur D2903, 1991: Փրոքոֆիեւ՝ *Պատերազմ եւ խաղաղութիւն*:

2. Խորհրդային Միութեան փլուզումէն անմիջապէս ետք, Կերկիեւի ղեկավարութեամբ Քիրովի ամբողջ կազմը կարեւոր եւ բաւական ծանուցուած շրջագայութիւններ ունեցաւ Եւրոպա եւ Միացեալ Նահանգներ (ներառեալ Մեթրոփոլիթըն Օփերա), ներկայացնելով ռուսական օփերաներ: Գրիգորեան իբրեւ գլխաւոր մեներգիչ մասնակցեցաւ այս շրջագայութիւններուն, մեծապէս տարածելով իր հռչակը եւ ստեղծելով օփերայի շուկայի իր արժեգինը: Բաց աստի, իբրեւ օփերայի նուագավար, Կերկիեւ արտասահմանի մէջ կ'ունենար նաեւ իր անձնական ելոյթները, ուր յաճախ հիւրընկալ հիմնարկին կ'առաջարկէր հրաւիրել Գրիգորեանին մասնակցելու իր ներկայացումներուն:

3. Քիրով-Մարիինսքին, դարձեալ շնորհիւ Կերկիեւի, ունեցաւ ձայնագրութիւններու լայն գործունէութիւն մը: Գրիգորեանի յետխորհրդային պաշտօնական ձայնագրութիւններուն գլխաւոր մասը կապուած էր Քիրով-Մարիինսքիի հետ եւ կատարուած Կերկիեւի նուագավարութեամբ: Ահաւասիկ անոնց ամբողջական ցանկը համառօտակի կերպով.

ա.- 1991 Թուական, Փռոքոֆիեւ՝ *Պատերազմ եւ խաղաղութիւն*, Փիէռ Պեզուխովի դերերգ, կենդանի տեսագրութիւն-ձայնագրութիւն: Լոյս տեսած է տարբեր ձեւաչափերով՝ լազերային տեսասկաւառակ (laser disc) (Philips 070 527-1), խտասալիկ (CD) (Philips 434 097-2; Philips 070 427-1), տեսաերիզ (VHS video) (Philips 070 527-3; Philips 070 427-3) եւ տեսասալիկ (DVD video) (Philips 070 427-9; Dreamlife DLVC 1107; Kultur D2903; Arthaus Musik 100 370):

բ.- 1992 Թուական, Չայքովսքի՝ *Փիքովայա տամա*, Հերմանի դերերգ, կենդանի տեսագրութիւն, լազերային տեսասկաւառակ (Philips 070 534-1; Philips 070 434-1; Philips 070 434-9), տեսաերիզ (Philips 070 534-3; Philips 070 434-3) եւ տեսասալիկ (Philips 070 434-9):

գ.- 1992 Թուական, Չայքովսքի՝ *Փիքովայա տամա*, Հերմանի դերերգ, սթիւտիօ ձայնագրութիւն, խտասալիկ (Philips 438 141-2):

դ.- 1993 Թուական, Ռիմսքի-Քորսաքով՝ *Սատքօ*, հնդիկ վաճառականի դերերգ, կենդանի տեսագրութիւն-ձայնագրութիւն, լազերային տեսասկաւառակ (Philips 070 539 859.95; Philips 070 439-1), խտասալիկ (Philips 442 138-2), տեսաերիզ (Philips 070 539 842.99; Philips 070 439-3) եւ տեսասալիկ (Philips 070 4399):

ե.- 1993 Թուական, Պորոտին՝ *Իշխան Իկոր*, Վլատիմիր Իկորեվիչի դերերգ, սթիւտիօ ձայնագրութիւն, խտասալիկ (Philips 442 537-2):

զ.- 1994 Թուական, Չայքովսքի՝ *Եոլանթա*, Վօտըմոնի դերերգ, սթիւտիօ ձայնագրութիւն, խտասալիկ (Philips 442 796-2):

է.- 1995 Թուական, Վերտի՝ *La forza del destino*, Տոն Ալվարոյի դերերգ, սթիւտիօ ձայնագրութիւն, խտասալիկ (Philips 446 951-2; Decca 4783465):

ը.- 1998 Թուական, Վերտի՝ *La forza del destino*, Տոն Ալվարոյի դերերգ, կենդանի տեսագրութիւն, տեսաերիզ (VideoLand Klassik VLRM 023) եւ տեսասալիկ (Arthaus 100.078; Kultur D2079):

(Շար. 1)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1765 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ԱՊՐԻԼ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ՂԻԿ. عدد رقم ١٧٦٥ الخميس ٢١ أبريل ٢٠١٦


## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ

### ԺԱՆՆԱ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

Ես ոչ մի ադրբէջանցի չեմ ճանաչում, բացի առաջին դասարանի վինետկայում Ռուստամ Ալիեւ անունը ներքեւում գրուած ու լուսանկարում այդպէս էլ չժպտացող ու կարճ կտրած բիզ-բիզ մազերով տղայից, որ էնքան հեռու է, որ չգիտես էլ՝ իրականում ճանաչել ես, թէ չէ: Անձնական լալահառաչ չփման ու ինքնազիտակցման փորձի բացակայութեան պայմաններում շատ աւելի պրագմատիկ դիրքորոշում ունեմ՝ հասկանալու, թէ որտեղ եմ ապրում ու վերջապէս որտեղ են ապրելու իմ երեխաները այսօր, վաղը, հինգտասը-քսան տարի անց: Հա, էդքան հեռու եմ ուզում նայել, որովհետեւ կարծում եմ նոյնիսկ էդքան հեռու նայելը չի ազատում յետ նայելու էն անվերջ սովորութիւնից, որ ունենք ու որի հետեւանքում վիզներս մի քիչ ծռուել են:

Ֆուկոն [Michel Foucault] ասում էր, որ ճշմարտութիւն է այն, ինչ արտադրւում են հասարակական պրակտիկաներն այդ հասարակութիւնում եւ այդ դարաշրջանում: Ճշմարտութիւնն արտադրւում է բազմաթիւ կանոնների եւ սահմանափակումների պարագայում: Իւրաքանչիւր հասարակութիւն ունի ճշմարտութեան իր վարչակարգն ու ընդհանուր քաղաքականութիւնը, որ մի շարք բաղադրիչների ամբողջութիւն է: Այն է՝ դատողութիւնների տիպեր, որ ընդունւում եւ ընկալւում են իբրեւ ճշմարիտ: Մեխանիզմներ եւ հանրային մարմիններ, որոնք կոչուած են ճշմարիտ դատողութիւնները տարբերակել կեղծից: Այն միջոցները, որոնցով դրանք հաստատւում են, տեխնոլոգիաները եւ ընթացակարգերը, որոնք համարւում են ճշմարտութիւնը ստանալու գործող տարբերակները, ինչպէս նաեւ որոշակի ակտորներ, որոնք դիրքաւորուած են իբրեւ ճշմարիտ անուանելու իրաւասութիւն ունեցողներ:

Այն պրակտիկաները, որ գործում են մեր եւ ադրբէջանական հասարակութիւններում՝ պատերազմի ճշմարտութեան պրակտիկաներ են: Պատերազմը հանդէս է գալիս իբրեւ ճշմարտութեան մի մեծ քաղաքականութիւն, որում իւրաքանչիւր առանձին բաղադրիչ մի պտուտակ է այս ընդհանուր տրամաբանութեան մէջ: Մենք արտադրում ենք պատերազմն իբրեւ ճշմարտութիւն կրթական մակարդակում՝ թշնամու եւ վտանգներով լի աշխարհի պատկերը մեր երեխաների տեսադաշտը դարձնելով, մեդիադաշտում՝ նոյն տեսադաշտը լրատուութեան ու վերլուծութիւնների միջոցով փոխանցելով, տնտեսութեան եւ քաղաքական խոշոր խաղացողների միջոցով, որոնք դադարում են լինել միայն լոկալ ակտորներ՝ ներառելով նաեւ տրանսազգային սուբիեկտների եւ շահերի, ինչպէս նաեւ հանրային ցանկացած քննարկում աւարտելով բարձրագոյն ճշմարտութեամբ՝ հայրենասիրութեամբ ու այն դիմացինին, այսինքն ինչ դիմացին, տականք թշնամուն կզզացնելու միջոցով իրացնելը դիտելով դրա դրսեւորման իրական ձեւ: Այս պարագայում ցանկացած խօսք, որ դուրս է պատերազմն իբրեւ ճշմարտութիւն ներկայացնելու պրակտիկաներից, դիտւում է ոչ ճշմարիտ՝ մշտապէս պարտուելով պրակտիկաների արտադրութեան ուղղակի հետեւանք ու հետեւաբար եւ իսկապէս ճշմարիտ հանդիսացող պատերազմին: Այստեղ միշտ կան հերոսներ եւ հրէշներ, մարդիկ եւ չմարդիկ: Մարդիկ միշտ մենք ենք: Չմարդիկ միշտ նրանք են, ովքեր մեզ պարտադրել են պատերազմը: Մարդիկ միշտ խաղաղասէր են: Չմարդիկ՝ ռազմատենչ ու կռուարար: Չմարդ սպանելով մարդասպան չենք դառնում:

Ինչ է սպասւում այն հասարակութեանը, որտեղ ճշմարտութիւնը պատերազմն է: Որտեղ կեանքը միշտ պարտւում է հայրենասիրութեանը: Որտեղ խաղաղութիւն առաջարկելը թուլութեան նշան է, քանի դեռ դիմացինը չի կզզել մինչեւ վերջ եւ ուրեմն դադարել գործել որպէս սուբիեկտ, որի հետ խաղաղութիւնը նրան մեծահոգաբար այլեւս որեւէ մէկին անպիտան կեանք շնորհելն է: Կեանք, որը գրոշի արժէք չունի:

Տրամադրութիւն ունենայի, հեռուն գնացող լեզուական խաղ կ'առաջարկէի գրոշի արժէք չունեցող կեանքի ու գին չունեցող կեանքի միջեւ ու նրա, թէ ինչպէս է դրանցից մէկը անխուսափելիօրէն վերածւում միւսի: Լեզուական խաղերը, ցաւօք, իրականութիւն չեն փոխում. թեթեւացնում են այդ իրականութեան ընկալման բեռը:

Պատերազմի ժամանակ խաղաղութիւն ջատագովելը կարծես թէ պատերազմի ճշմարտութիւնը փոխելու փորձ է: Բայց ճիշտ լեզուական խաղի նման: Ճշմարտութեան իրական փոփոխութիւնը այն արտադրող պրակտիկաները փոխելն է: Քանի դրանք անփոփոխ են, ցանկացած խաղաղութիւն զինադադար է եւ յարաբերական անդորր՝ յաջորդ պատերազմին պատրաստուելու ճանապարհին:

(http://socioscope.am/archives/704)

## ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ԱՌՋԵՒ




*Ապրիլ 13-ին, Երեւանի մէջ հարիւրաւոր մարդիկ բողոքի ցոյց կատարեցին Ռուսաստանի դէմ՝ Ատրպէյճանին զէնք ծախելու առնչութեամբ:*

*Հաւաքուելով Ազատութեան Հրապարակ, ցուցարարները մեկնեցան դէպի Կառավարութեան շէնք, ապա Արտաքին Գործերու Նախարարութիւն եւ վերջապէս Ռուսաստանի դեսպանութիւն, ուր իրենց դժգոհութիւնը յայտնեցին Ռուսաստանի եւ Ատրպէյճանի միջեւ զէնքի վաճառքի պայմանագրութեան նկատմամբ:*

## ՀԱՅԱՍՏԱՆ ԲՈՂՈՔ ՅԱՅՏՆԱԾ Է ԻՍՐԱՅԷԼԻՆ

*Իսրայէլեան մամուլը կը հաղորդէ որ, Հայաստանը բողոք յայտնած է Իսրայէլին, Ատրպէյճանին զէնք վաճառելուն կապակցութեամբ:*

*Հայաստանի բողոքը հետեւած է ատրպէյճանական բանակին կողմէ Լեռնային Ղարաբաղի դէմ յարձակման ժամանակ իսրայէլական արտադրութեան ինքնասպան-անօդաչու սարքերու կիրառման:*

*«Երուսաղէմի մէջ բարձր աստիճան պաշտօնեաներէն մէկը յայտարարած է, որ հայկական կողմը բողոք յայտնած է Իսրայէլի կողմէ Ատրպէյճանին զէնքի մատակարարումների առիթով, որը կիրառուած է հայկական բանակի դէմ», - կը գրէ Հաարեց թերթը:*

## ՓԱՆԱՄԱՅԻ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԵՐԸ ԵՒ... ՀԱՅԵՐԸ

Որքան կը զարգանայ դրամատիրութիւնը, այնքան կ'աճի փտածութիւնը: Նէօլիպերալիզմը՝ ազգերն ու պետութիւնները ճեղքելու ու տիրապետելու իր աննախադէպ մեքանիզմով, փտածութեան նոր ու անխուսափելի «որակ» մը բերաւ իր հետ: Այսօր, համաշխարհային դրամատիրութիւնը հասած է այնպիսի մակարդակի մը՝ որ գոնէ առերեւութապէս անկարող է գոյատեւել առանց փտածութեան:




Ուիքիլիքսի յայտնագործութիւնները կապուած են քաղաքական փտածութեան, երկդիմութեան եւ խաբէութեան հետ: Չկայ Ուիքիլիքսի մէկ փաստաթուղթ մը՝ ուր արտացոլուած ըլլայ «մաքուր» քաղաքականութեան մը հետքերը: Ասիկա անգամ մը եւս կը հաստատէ քաղաքականութիւն կոչուած բնագաւառին կեղծաւորութիւնը, աներկբայ կեղծաւորութիւն մը, որուն հետ մենք՝ մաքրամաքուր հայերս, կ'ուզենք անընդհատ գործ ունենալ, ձգտելով մեր արդար դատերը լուծել այդ նոյն անարդար քաղաքականութեան գործիքներով:

Պանքայի աւազակային թալաններու առնչութեամբ, 2001-ին եւ 2002-ին Տընի Ռոպէր եւ Էռնեսթ Պաք իրենց երկու գիրքերուն մէջ (*Révélation$* եւ *La Boîte noire*) կը բացայայտեն Լիւքսէմպուրկի եւ Գերմանիոյ մէջ գործող Clearstream անունով պանքայի (պանքաներու պանքան) գոյութեան իրական իմաստը իբրեւ դրամի լուացումի կազմակերպութիւն մը եւ իբրեւ համաշխարհային կեդրոն մը որ կը ծառայէ քօղարկելու մեծագոյն պանքաներու, ծածկութային ընկերութիւններու (shell companies) եւ կազմակերպուած ոճիրի կողմէ կատարուող փինանսական ոճիրները:

Տակաւին չհաշուելով այն բազմաթիւ գիրքերն ու յօդուածները՝ որոնք յատկացուած են առանձին հիմնարկներու, կազմակերպութիւններու, բազմազգ ընկերութիւններու եւ անձերու «օրինական» թալաններուն բացայայտումին:

Եւ ահաւասիկ, 2016 Ապրիլ 3-ին աշխարհի հաղորդամիջոցները հանրութիւնը կ'արթնցնեն համաշխարհային դրամի լուացումի նոր յայտնաբերութեամբ՝ զոր կը կոչեն Փանամայի Փաստաթուղթեր (Panama Papers): Ասիկա կը հանդիսանայ օֆշորային ընկերութիւններու գաղտնազերծումի առաջին հիմնաւոր գործողութիւնը:

Այսպէս, 2015-ին, գերմանական *Süddeutsche Zeitung* օրաթերթը անյայտ անձէ մը կը ստանայ Փանամայի Փաստաթուղթերուն ամբողջականութիւնը, որ կը պարունակէր օֆշոր ընկերութիւններու մասին գաղտնի տեղեկութիւններ: Լրագիրը համագործակցելով Հետախուզական Լրագրողներու Միջազգային Միութեան (The International Consortium of Investigative Journalists) հետ կը սկսի համակարգումի ու վերլուծութեան ծաւալուն աշխատանք մը: Իրենց առաջին արդիւնքները կը հրապարակեն 2016 Ապրիլ 3-ին: Ի տարբերութիւն Ուիքիլիքսին՝ որուն հրապարակումները կը գտնուին իր անձնական կայքէջին մէջ, Փանամայի Փաստաթուղթերը կը հրապարակուին ոչ միայն Հետախուզական Լրագրողներու կայքէջին մէջ, այլեւ իւրաքանչիւր լրագրող իր կատարած վերլուծութիւններով հանդէս կու գայ տարբեր լրագիրներու մէջ եւ տարբեր վաւերագրական ֆիլմերու միջոցով:

Աւելի յստակ գաղափար կազմելու համար այս Փաստաթուղթերուն բովանդակութեան մասին, թարգմանաբար կը ներկայացնենք զանոնք բացայայտող Հետախուզական Լրագրողներուն այս առիթով ստեղծած կայքէջին հաղորդագրութիւնը.

«Փանամայի Փաստաթուղթերը ➪ 4

# ՄԱՐՈՒՇ ԵՐԱՄԵԱՆ՝ ԵՐԿՈՒ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

Մարուշ Գազանճեան-Երամեան ծնած է Հալէպ: Աւարտած է Հալէպի Ազգային Քարէն Եփփէ ճեմարանը: Աւարտած է նաեւ Պէյրութի Պետական Բարձրագոյն երաժշտանոցի դաշնամուրային բաժինը եւ ապա վկայուած Քաշանի (Ֆրանսա) պետական երաժշտանոցէն:

Բանասիրական գիտութիւններու թեկնածու դարձած է, Երեւանի Մանուկ Աբեղեան ինստիտուտին մէջ *Սփիւռքահայ բանաստեղծութիւնը 1965-1995 թուականներուն* նիւթը պաշտպանելով, 2002 թուականին:

2001-2013-ին եղած է Հալէպի Համազգային Հայագիտական Հիմնարկի Սփիւռքահայ գրականութեան դասախօս: Վերջին տարիներուն դասախօսած է նաեւ «լեզուի գործնական դասեր» նիւթը, հայերէն լեզուի ուղղագրութիւն եւ միջազգային գրականութիւն:

Աւելի քան հինգ տարիներ եղած է դաշնամուրի դասատու Հալէպի Հ. Ե. Ընկերակցութեան Ա. Խաչատրեան երաժշտանոցէն ներս:

Հրատարակած է քերթողական վեց գրքոյկներ՝ *Հում բառերս կը բերեմ դիմակներու հանդէսին* (Հալէպ, 1991), *Տարբերակներ* (Հալէպ, 1995), *Հալոց* (Հալէպ, 1998), *Գիշերներ* (Հալէպ, 2001), *Հին քերթուածներ* (Երեւան, 2004) եւ *Գաղտնագրութիւն* (Երեւան, 2015): Ունի պատմուածքներու երկու հատորներ՝ *Մոր գոգնոցը* (Գ. Մելիտինեցի մրցանակին (թիւ 52) հրատարակութիւն, Անթիլիաս, 2003) եւ *Տաճարացում* (Երեւան, 2007):






Ունի սփիւռքահայ եւ հայրենի թերթերու մէջ ցրուած բազմաթիւ յօդուածներ (*Բագին*, *Գանձասար*, *Հորիզոն*, *Յառաջ*, *Առաւօտ*, *Գարուն*, *Գրական թերթ*, *Ազգ* եւ այլն):

Խմբագիրներէն մէկն է *Բանաստեղծութիւն* պարբերագիրքին եւ Մաշթոց մատենաշարին:

Հալէպի վերջին դէպքերուն հետեւանքով, 2013-ին ստիպուած հեռացած է իր բնակավայրէն՝ բնակութիւն հաստատելով Երեւան: Ան Հալէպի իր բնակարանին մէջ ճակատագիրի տնօրինութեան թողած է շուրջ վեց հազար գիրք հաշուող անձնական գրադարան մը եւ իր անտիպ գրութիւններու մեծաքանակ ձեռագիրներ:

2015 Մարտ-Ապրիլին հրաւիրուած է Գահիրէ՝ ծանօթանալու Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի հայերէն լեզուի դասաւանդումի մեթոտներուն: 2015 Սեպտեմբերէն մինչեւ այսօր ան կը պաշտօնավարէ նոյն վարժարանին մէջ իբրեւ հայերէն լեզուի խորհրդատու:

Իր նոր բանաստեղծութիւնները կարելի է կարդալ Ֆէյսպուքի իր անձնական էջին մէջ՝ «Մարուշ Երամեան - Maroush Yeramian»:

*Գաղտնագրութիւն* հատորը կարելի է կարդալ հետեւեալ կայքին մէջ՝ https://issuu.com/maroushyeramian/docs/gaxtnagrutyun:

Տիկին Երամեան յորդառատ գրող մըն է: Ունենալով ֆեմինիսթական հրաշալի սլացում մը, իր գրութիւններուն մէջ, արդարեւ, ներքին ըմբոստութիւն մը կայ սովորամոլութիւններուն դէմ, ներքին անհանգստութիւն մը՝ յարմարուէտութեան հանդէպ, ներքին անհամաձայնութիւն մը՝ համակերպութեան նկատմամբ: Բայց ինչպէ՞ս կրնայ ապա- եւ հակա-սովորամոլութիւնը գոյատեւել սովորամոլութեան համատարած յարմարուէտութեան մէջ: Երամեանի գիրը նաեւ պայքար մըն է գաղափարի գոյատեւումի եւ խանդի համար:



Ան չի գրեր ցնորական համայնքներու մասին, իր համայնքը *իր* եւ շրջապատի ենթական է: Նոյնիսկ երբ օգտագործած առարկան հին է կամ պատմական, ան ամբողջապէս ընդելուզուած է միտքի յաւերժ շարժումի իրադարձային ենթակայականութեան եղանակին մէջ:

Ունի իւրայատուկ բառակազմութիւններ եւ բառակապակցութիւններ (այս առումով կարելի է յիշել Զարեհ Խրախունին), առանց երբեք իյնալու կառուցողապաշտութեան ոչ-բնաբանային ծուղակին մէջ եւ ոչ ալ տարուելու բառային հմայքի անշարժութեամբ:

Յոյսով ենք եգիպտահայ գաղութը կը կարողանայ առաւելագոյն չափով օգտուիլ իր ներկայութենէն:

Իբրեւ նմոյշ, *Ջահակիր* ստորեւ կը ներկայացնէ Երամեանի բանաստեղծութիւններէն երկու հատ.

## ՔԵՐԹՈՂ

գիշերուան մէջ միակ լոյս մը
կը պլպլայ.
կայ ու չկայ.
կա՞յ թէ չկայ.
ոտնաձայն մը փափուկ, զգոյշ,
ելքեր փնտռող նապաստակի քայլքի նման:

ծիւնին վրայ ոտնահետքեր.
կա՞ն թէ շուք են.
ու կաթիլներ արեան փոքրիկ
վիրաւորուած գա՞յլ թէ եղնիկ:

եւ հովը որ անգութ, անխիղճ,
արեան կաթիլ թէ ոտնահետք
կը տարտղնէ, կը հեռանայ:

արշալոյսը կը գտնէ զինք
տափաստանին առջեւ էջին
ուժաթափ եւ արիւնաքամ.

էջը՝ ծաղկած ...

## ԱՆՎԵՐՆԱԳԻՐ

ճակատագրէն փախուստ չկայ
ոչ ալ սէրէն
ոչ քաղաքէն

սէրը միշտ ալ աչկապուկ խաղաց
հեռացա՞ր կանչեց
կանչեցի՞ր փախաւ
ու յետոյ յոգնած անկիւն մը մտաւ
մրափեց հանդարտ

իսկ քաղաքը
հաստատուն բարի իմաստուն ու հին
մեծ-հօր գրկի պէս ապահով ու տաք
սրտաճաք եղաւ ու գիշերուան մէջ
անլուսին սոսկում
բորենիներու կեր դարձաւ գնաց

ճակատագիրը մնաց միս-մինակ
մէկ ափին՝ սէրը միւսին՝ քաղաքը
անշունչ անկենդան

եւ հիմա արդէն
հաւասարումի եկան
ճակատագիրը
սէրն ու

ԳԱՀԻՐԷ

# ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾ ՍԱՐԳԻՍ ԹՕՍՈՒՆԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Ապրիլ 11-ին, Զամալէքի Սաֆար Խան պատկերասրահին մէջ բացումը կատարուեցաւ քանդակագործներ Սարգիս Թօսունեանի եւ Ալֆոնս Լուիսի համատեղ ցուցահանդէսին: Ցուցահանդէսը բաց պիտի մնայ մինչեւ Մայիս 4:

Ցուցահանդէսին առիթով հրապարակուած մամուլի հաղորդագրութեան մէջ Մոնա Սաիտ կը գրէ.

«Թօսունեան քանդակագործ մըն է՝ որ իր պրոնզէ կերպարանքներուն մէջ աչքի կը զարնէ շարժումի եւ զանազան հիւսուածքներու վարպետութեամբ: Իր ցուցադրած կերպարանքներն ու կիսանդրիները կը յիշեցնեն յունահռոմէական եւ փարաւոնական աստուածութիւնները»:

Սարգիս Թօսունեան ծնած է 1953-ին, Աղեքսանդրիա: 1979-ին աւարտած է Աղեքսանդրիոյ Կերպարուեստի համալսարանը: 1980-ին սկսած է մասնակցիլ ցուցահանդէսներու:




Թօսունեանի 2009-ի անհատական ցուցահանդէսին (Սաֆար Խանի մէջ) առիթով գրած քննախօսականը Հեպա Ալքաեալ կ'եզրափակէ այսպէս.

«Հաստատապէս Թօսունեան օր մը պիտի նկատուի իբրեւ Եգիպտոսի քանդակի դափնեկիրը: Իր մեծ սէրը Եգիպտոսի հանդէպ, անոր ժողովուրդին եւ պատմութեան հանդէպ, կը բացայայտէ արուեստագէտ մը եւ բանաստեղծ մը որ վեհապանծ եւ փառաւոր ոճով իւրացուցած է անցեալի եւ ներկայի եգիպտացիներուն էութիւնը» (Heba Elkayal, 'Tossoonian Reconciles Sculpture with Poetry', *Daily News Egypt*, 7 January 2009):

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄԱՐԴԿԱՆՑ ԱՄԵՆԱՅՈՒԶՈՂ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆՆ ԵՆ

Epress.am, 15 Ապրիլ – *Հայաստանում եւ Վրաստանում մարդիկ համակարծիք են՝ հիմնական խնդիրներն աղքատութիւնն ու գործազրկութիւնն են:*

*Ապրիլի 15-ին Հետազօտական Ռեսուրսների Կովկասեան Կենտրոն (ՀՌԿԿ) – Հայաստանը հրապարակել է Կովկասեան բարոմետր 2015՝ 100 հարցից կազմուած հանրային կարծիքի հետազօտութիւնը: Հարցումն իրականացուել է Հայաստանի եւ Վրաստանի 4200 տնային տնտեսութիւններում՝ սոցիալ-տնտեսական, ժողովրդագրական եւ քաղաքական զարգացումների մասին հանրային կարծիքի վերաբերեալ:*

*Ըստ հարցումների արդիւնքերի՝ 2 երկրներում էլ հանրութեան առաւել յուզող խնդիրները աղքատութիւնն ու գործազրկութիւնն են: Հայաստանում գործազրկութիւնը, որպէս կարեւոր խնդիր, մատնանշել են հարցուածների 40 տոկոսը, Վրաստանում՝ 51 տոկոսը: Ի տարբերութիւն 2013 թուականի հետազօտութեան արդիւնքների՝ աճել է նաեւ իրենց երկիրը ոչ ժողովրդավարական համարողների թիւը՝ Հայաստանում՝ 32 տոկոս, Վրաստանում՝ 17 տոկոս:*

*Երկու երկրներում էլ հարցուածների շրջանում վստահութեան բարձր աստիճանով առանձնանում է բանակը. Հայաստանում բանակի նկատմամբ վստահութիւն է յայտնել հարցուածների 76 տոկոսը, Վրաստանում՝ 74 տոկոսը:*

*Ի տարբերութիւն Վրաստանի (21 տոկոս), Հայաստանում աւելի շատ են Եւրասիական տնտեսական միութեան կողմնակիցները՝ 52 տոկոս: Եւրոպական միութեանն անդամակցելուն հաւանութիւն է տուել Հայաստանում հարցուածների 37 տոկոսը, Վրաստանում՝ 41 տոկոսը:*

*Կենտրոնը նաեւ հարցրել է, թէ մարդիկ որքանով են իրենց երջանիկ զգում. 2 երկրներում էլ երջանկութեան միջին ինքնագնահատականը 1-ից 10 սանդղակով կազմում է մօտ 6.6 միաւոր:*

## ՉՈՐՍ ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ՀՐԱՆԴ ՏԻՆՔԻ ՀԵՏ (Յաւելուած *Ճահակիրի*)

Ապրիլ 24-ի առիթով *Ճահակիր* լոյս ընծայեց իր առաջին յաւելուածը՝ *Չորս Հարցազրոյց Հրանդ Տինքի Հետ* խորագիրով (60 էջ):

ՉՈՐՍ ՀԱՐՑԱԶՐՈՅՑ
ՀՐԱՆԴ ՏԻՆՔԻ ՀԵՏ

ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա.

ԳԱՀԻՐԷ
2016

Հրանդ Տինքի սպանութենէն ի վեր 2007-ին, սփիւռքահայ մամուլը բաւական զբաղուեցաւ մեռած Տինքով՝ մեղադրելով իր սպանութեան հարցով ընթացող դատավարութեան անվստահելի ու ձեւական բնոյթը, կատարելով հոգեհանգիստներ, յօրինելով գեղարուեստական գործեր, տարածելով մեռած Տինքին լուսանկարը եւ ծայր աստիճան քաղաքականացնելով իր ողբերգական վախճանը:

Անկասկած, այս բոլորը կարեւոր հարցեր են: Բայց ո՞ւր մնաց բուն ինքը Տինքի գաղափարները՝ որոնց համար ան զոհուեցաւ: Ո՞ւր մնաց *կենդանի* Տինքը:

Բացի իր գաղափարներուն ուրուագծային ու կմախքային ներկայացումէն, Տինք մտածողը մնաց սփիւռքի լրագրութեան բացական, քանի որ շատ կողմերով իր բուն գաղափարները անհամատեղելի էին սփիւռքի ինքն իր համար ստեղծած պատկերումներուն հետ:

Օրինակ, Հրանդ Տինք դէմ էր հայոց ցեղասպանութեան ժխտումը քրէականացնող ֆրանսական օրէնքին: Բայց կը բաւէ որ դէմ ըլլար՝ որպէսզի Յարութ Սասունեան գրէր. «Պր. Տինքնին մոլորեցուցիչ խօսքերը յենարան կը տրամադրեն ցեղասպանութիւնը ժխտողներուն Թուրքիոյ մէջ» (Harut Sassounian, ‘Brief Comments on Many, Farcial Turkish Missteps’, *The California Courier*, 12 October 2006):

Ուժեղ եւ մոլորեցուցիչ գրպարտութիւն: Իրականութեան մէջ ճիշդ հակառակն էր Տինքի հետապնդածը: Տինքի ամբողջ գործունէութիւնը յենարան կը պատրաստէր ցեղասպանութեան ճանաչումին Թուրքիոյ մէջ: Իր նպատակն էր ներսէն՝ Թուրքիոյ մէջէն, պատրաստել ցեղասպանութիւնը ճանաչող Թուրք մտաւորականներու եւ մտածող անձերու շերտեր: Իր նպատակն էր ուղղակի կապի մէջ մտնել Թուրքիոյ մէջ ապրող այն մտաւորականներուն հետ՝ որոնք պատրաստ էին խօսիլ ցեղասպանութեան գոյութեան մասին, բայց պետական-ազգայնական տիրական պատումներուն պատճառով կը վախնային բացայայտօրէն արտայայտուիլ: Իր նպատակն էր Թուրքիոյ մէջ ստեղծել *իրական* ժողովրդավարութիւն (ի տարբերութիւն արտասահմանի խօսնակներէն՝ որոնք միայն կը քննադատէին ժողովրդավարութեան պակասը Թուրքիոյ մէջ, առանց խորապէս փափաքելու տեսնել անոր գործադրութիւնը), համոզուած ըլլալով որ ազատ միտքի ու խօսքի միջավայրի մէջ շատ աւելի պիտի դիւրանար ցեղասպանութեան մասին խօսքը: Մէկ խօսքով, իր նպատակն էր Թրքական հասարակութիւնը շարժել ներսէն եւ ոչ թէ դուրսէն: Իսկ ներսի պայմանները շատ աւելի դժուար, վտանգաւոր եւ արկածախնդրական էին, միաժամանակ շատ աւելի ազդեցիկ ու արդիւնաւէտ:

Այս բոլորին մասին կարելի է գտնել Յաւելուածի չորս հարցազրոյցներուն մէջ, որոնց կը նախորդէ իր գաղափարները մեկնաբանող նախաբան մը:

Գրքոյկը տպագրուած է սահմանափակ տպաքանակով: Ցանկացողներուն կը տրուի անվճար:

Ստանալու համար դիմել *Ճահակիրի* խմբագրութեան՝
tchahagir@journalist.com

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 24 Ապրիլ 2016 թ.

**Տօն Երեւման Սրբոյ Խաչի**
**Յիշատակ**
**Սրբոց Նահատակաց Մերոց**
**Որք Կատարեցան Յընթացս**
**Հայոց Ցեղասպանութեան**
**Վասն հաւատոյ Եւ Վասն Հայրենեաց**
**Յաւարտ Ս. Պատարագի Պիտի Կատարուի**
**Բարեխօսական կարգ**

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:
Սալահ էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

ԽՈՀԵՐ

## ԿԸ ՄԱՀԱՆԱՅ ՄԵՆԵՐԳԻՉ ԳԵՂԱՄ ԳՐԻԳՈՐԵԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

### ԱՅԼ ԵԼՈՅԹՆԵՐ

1989 Մայիս 12-ին կ'ունենայ միակ ելոյթ մը Քաւարատոսսիի դերերգով (Tosca) Վիեննայի Օփերային մէջ, նուագավար՝ Եուժէն Քոհն:

Լոնտոնի Արքայական Օփերային մէջ կը մասնակցի եօթը բեմադրութիւններու: Իր առաջին ելոյթը տեղի կ'ունենայ 1993 Յուլիս 13-ին Լենսքիի դերերգով (Եւկենի Օնեկին), որ կը կրկնուի Յուլիս 15, 17, 20, 22 եւ 24-ին, բոլորն ալ Կերկիեւի նուագավարութեամբ: Կը յաջորդէ Կուսթաւուս Գ.-ի դերերգը (*Un ballo in maschera*) 1995 Ապրիլ 21-ին նուագավարութեամբ Էտուարտ Տաունսի, Եուրիի դերերգը (*Զայքովսքի՝ Կախարդուհին*) 1998 Յունուար 31-ին նուագավարութեամբ Կերկիեւի, Իշխան Վասիլի Կոլիցին (*Խովանշչինա*) 2000 Յուլիս 3-ին նուագավարութեամբ Կերկիեւի (Քիրով Օփերայի արտադրութիւն), Կոմս Փիոթր Պեզուխով (*Պատերազմ եւ խաղաղութիւն*) 2000 Յուլիս 11-ին (Նուագավար՝ Ճիանատրէա Նոսետա) եւ 15-ին (Նուագավար՝ Կերկիեւ) (Քիրով Օփերայի արտադրութիւն), Տոն Ալվարօ (*La forza del destino*) 2001 Յուլիս 14-ին նուագավարութեամբ Նոսետայի (Քիրով Օփերայի արտադրութիւն) եւ Ռատամէս (*Aida*) 2001 Յուլիս 17-ին նուագավարութեամբ Կերկիեւի (Քիրով Օփերայի արտադրութիւն):

1992 Յուլիսին, Կերկիեւի ղեկավարութեամբ Քիրով Օփերան առաջին անգամ իր ամբողջական կազմով եւ բեմադրութիւններով ելոյթ կ'ունենար Մեթրոփոլիթընի մէջ՝ ներկայացնելով երեք ռուսական օփերաներ: Գրիգորեան կը մասնակցի երկու դերերգով՝ Տմիթրի (*Պորիս Կոտունով*) (կը գտնուի 1992 Յուլիս 11-ի բեմադրութեան առեւանգային ձայնագրութիւնը՝ House of Opera cdald27481) եւ Հէրման (*Փիքովաեա տամա*) (կը գտնուի 1992 Յուլիս 16-ի բեմադրութեան առեւանգային ձայնագրութիւնը՝ House of Opera cd506):

Իսկ առաջին պաշտօնական ելոյթը Մեթրոփոլիթընի արտադրութեան մէջ տեղի կ'ունենայ 1995 Դեկտեմբեր 27-ին՝ Հերմանի դերերգով, որ կը կրկնուի 30-ին (կը գտնուի առեւանգային ձայնագրութիւնը՝ The Opera Lovers PIQ-199501, House of Opera CDNY208 եւ House of Opera CD11122) եւ 1996 Յունուար 2-ին (կը գտնուի առեւանգային ձայնագրութիւնը՝ House of Opera CD11123): Նուագավարն էր Վալերի Կերկիեւ:

Մեթրոփոլիթընի մէջ կը մասնակցի նաեւ երկու այլ բեմադրութիւններու՝ 2001 Փետրուար 3-ին, Ռատամէսի դերերգով (*Aida*), նուագավարութեամբ Փօլ Նատլէրի, եւ Փրոքոֆիեւի *Պատերազմ եւ խաղաղութիւն* օփերայի Մեթրոփոլիթընի առաջնեկ բեմարութեան՝ Կոմս Փիոթր Պեզուխովի դերերգով, 2002 Փետրուար 14, 18, 21, 26, Մարտ 2 (կը գտնուի առեւանգային ձայնագրութիւնը՝ House of Opera CDNY175, House of Opera CD92613), 15 եւ 19-ին, նուագավարութեամբ Կերկիեւի եւ Նոսետայի:

1998 Մարտ 3-ին կ'ունենայ իր առաջին պաշտօնական ելոյթը Միլանի Լա Սքալայի մէջ՝ Իշխան Վասիլիի դերերգով (*Խովանշչինա*), որ կը կրկնուի Մարտ 5, 6, 8, 11 (բոլորը Կերկիեւի նուագավարութեամբ) եւ 13-ին (նուագավարութեամբ Ալեքսանդր Փոլիանիչքոյի): Այս նոյն ներկայացումներուն հանդէս կու գար նաեւ Յասմիկ Պապեան Էմմայի դերերգով: Պապեանի երկրորդ ելոյթն էր սակայն Սքալայի մէջ, առաջինը ըլլալով միակ ելոյթ մը Ապիկայի դերերգով (*Nabucco*) 1996 Մարտ 20-ին:

Սքալայի մէջ Գրիգորեան կ'ունենայ նաեւ երեք այլ ելոյթներ՝ Տոն Ալվարօ (*La forza del destino*) 1999 Մարտ 9-ին նուագավարութեամբ Ֆիլիփ Օկուինի, Փիէռ Պեժուքով (*Պատերազմ եւ խաղաղութիւն*) 2000 Սեպտեմբեր 29 եւ Հոկտեմբեր 2-ին նուագավարութեամբ Կերկիեւի, եւ Տոն Ալվարօ (*La forza del destino*) 2001 Սեպտեմբեր 30, Հոկտեմբեր 3-ին նուագավարութեամբ Կերկիեւի (Մարիինսքի Թատրոնի արտադրութիւն):

1998 Դեկտեմբեր 4, 5, 6, 9, 11, 13-ին Վենետիկի Ֆենիչէ Թատրոնին մէջ կը խաղայ Ռատամէսի դերերգը (*Aida*), նուագավար՝ Իսաաք Քարապչեւսքի:

Գեղամ Գրիգորեան, 1982:

Բազմաթիւ բեմադրութիւններ Ամսթերտամի Royal Concertgebouw-ի, Պուենոս Այրէսի Teatro Colón-ի, Հռոմի Օփերայի (Teatro dell'Opera di Roma), Պեռլինի Օփերայի (Berlin Staatsoper) մէջ: Մասնակցած է փառատօնային բեմադրութիւններու՝ Chorégies d'Orange, Քարաքալլա, Ռաւեննայի Փառատօն, Սաւոնլիննայի Օփերայի Փառատօն, Maggio Musicale Fiorentino, Փուչչինիի Փառատօն, Սալցպուրկի Փառատօն եւ այլն: Երգած է նաեւ Ուաշինկթընի, Թոքիոյի, Փարիզի, Միւնիխի, Մոնթէ Քարլոյի, Ժընեւի մէջ եւ այլուր:

### ԱՅԼ ՁԱՅՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Ինչպէս արդէն նշեցի, կը գտնուի Գրիգորեանի կատարումներուն պաշտօնական եւ առեւանգային (pirate) ձայնագրութիւնները: Խորհրդային շրջանին պաշտօնական ձայնագրութիւնները կապուած էին Մելոտիա ընկերութեան հետ իսկ յետ-խորհրդային շրջանին՝ Քիրով-Մարիինսքիի ներկայացումներուն հետ:

Պաշտօնականներու ցանկին մէջ պէտք է աւելցնել նաեւ երեք ձայնագրութիւն-տեսագրութիւն: Առաջինը Կոմիտասի Պատարագի սթիւտիօ ձայնագրութիւնն է,

Գեղամ Գրիգորեան (թենոր), Կոնստանտին Սիմոնեան (պարիթոն), Սարգիս Թօրոսեան (թենոր), մասնակցութեամբ Սուրբ Գայեանէ Տաճարի Արական Ա Քափելլա Երգչախումբին, խմբավար՝ Կոմիտաս Քէշիշեան: Զոյգ խտասալիկները արտադրուած են Լոս Անճելըսի Բարսեղեան Ռեքորտսի կողմէ (Parseghian Records PR 11-149) եւ հրապարակուած 1996-ին: Ինչպէս Բարսեղեանի սովորութիւնն է, սկաւառակին վրայ նշուած է ո'չ ձայնագրութեան թուականը եւ ո'չ ալ վայրը (Գայեանէ տաճա՞ր թէ այլուր):

Երկրորդը Գրիգորեանի տարբեր տարիներու կատարած հայկական եւ իտալական երգերու սթիւտիօ եւ կենդանի ձայնագրութիւններու խտասալիկ մըն է (Sarian E. Group SEG-12152), հրապարակուած 2001-ին: Դարձեալ չկան թուականները, վայրերը եւ նոյնիսկ նուագակցող նուագախումբերուն եւ նուագավարներուն անունները:

Երրորդը *Նորմայի* ֆիլմ-տեսագրութիւնն է, ամբողջութեամբ նկարուած Հայաստանի բնավայրերուն մէջ: Մեներգիչներն ու դերասանները միեւնոյն անձերն են՝ Յասմիկ Պապեան (Նորմա), Գեղամ Գրիգորեան (Փոլիոնէ), Վարդուհի Խաչատրեան (Ատալճիզա), Միքայէլ Յովակիմեան (Օրովեզօ), Վարուժան Մարտիրոսեան (Ֆլաւիօ), Ալլա Աւետիսեան (Քլոթիտէ), Երեւանի Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Թատրոնի երգչախումբ եւ նուագախումբ, նուագավար՝ Կարէն Լաւչեան, բեմադրիչ՝ Պորիս Հայրապետեան: Թէ' ձայնագրութիւնը եւ թէ' նկարահանումը կատարուած են 2004-ին եւ արտադրուած տեսասալիկով (Decca 074 3147): Նկարահանումը կատարած է A.B.A. ընկերութիւն մը (ռուսակա՞ն թէ հայկական), որ ապա զայն վերջնական վիճակի մէջ վաճառած է Decca-ին: Կը բաւէ միայն ուշադրութեամբ լսել *Նորմայի* բացառիկօրէն նրբագեղ Նախերգանքը: Երեւանի օփերայի նուագախումբի հնչողութեան ծանօթ ռեւէ ունկնդիր կրնայ անմիջապէս անորոշութեան մատնուիլ: Կարելի՞ է արդեօք հնչողութեան այսքան տարբերութիւն եւ բիւրեղեայ այսքան յստակութիւն: Կարելի է նոյնիսկ զայն համեմատել երեք տարի առաջ Մոսկուայի մէջ Երեւանի Օփերայի բեմադրած *Նորմայի* առեւանգային տեսագրութեան հետ (House of Opera DVDNOV07-58; Premiere Opera DVD 9834), զարմանալու համար թէ երեք տարուան ընթացքին նուագախումբի մը հնչողութիւնն ու մեկնաբանութիւնը ինչ չափով

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

3 ➩

## ԿԸ ՄԱՀԱՆԱՅ ՄԵՆԵՐԳԻՉ ԳԵՂԱՄ ԳՐԻԳՈՐԵԱՆ

կրնան արմատապէս փոխուիլ: Յետագային արդէն կը բացայայտուի՝ որ ոչ միայն Նախերգանքը, այլ ուրիշ բազմաթիւ հատուածներ A.B.A. ընկերութեան կողմէ լռելեայն փոխարինուած են ուրիշ, միջազգային ձայնագրութիւններով, հաւանաբար սթիւտիոյի թեքնիքական անհարթութիւնները վերացնելու նպատակով: Նորմայի դերակատարուհին՝ հռչակաւոր սոփրանօ Յասմիկ Պապեան, կը դիմէ Միւնիխի Մարզային Դատարան, որ 2007-ին վճիռ կ'արձակէ Decca-ին դադրեցնել վաճառքը: Բայց, անշուշտ, արդէն մաս մը վաճառուած էր (ես ինքս հատ մը գնած էի), նոյնիսկ *BBC Music Magazine* գրած էր իր սովորական չուտասելուկ քննախօսականներէն մէկը:

Գալով համացանցային շուկային մէջ վաճառուող Գրիգորեանի առեւանգային ձայնագրութիւններուն (House of Opera, Premiere Opera, Fiori, Celestial Audio եւ The Opera Lovers), անոնք, ինչպէս բոլոր նման ձայնագրութիւնները՝ կատարուած անկախ կատարողներու կամքին, կը բացայայտեն մեներգիչի աւելի ընդարձակ երգացանկը եւ ձայնային կարողութիւնները:



Տոն Ալվարոյի դերերգին մէջ, Մարիինսքի Թատրոն, 1998:

ՅԵՏ-ԵՐԳՉԱՅԻՆ ՇՐՋԱՆ

2005-ին, Ռոբերտ Քոչարեան Գրիգորեանին կը նշանակէ Երեւանի Օփերայի գեղարուեստական տնօրէն, զոր կը վարէ մինչեւ 2007: 2015-ին Սերժ Սարգսեանի «խնդրանք»-ով դարձեալ կը նշանակուի նոյն պաշտօնին, զոր կը վարէ մինչեւ իր վաղաժամ վախճանը: Գեղարուեստական տնօրինութեան երկու շրջաններուն, Գրիգորեան կ'անցնի նաեւ բեմադրիչի աշխատանքի:

Ընդհանրապէս, նախագահական նման նշանակումները եւ նախագահական միջամտութիւնները այնքան ալ նպաստաւոր մթնոլորտ չեն ստեղծեր արուեստի աշխարհի ստեղծագործական մթնոլորտին համար: Ի՞նչ գործ ունին հայ նախագահները երաժշտութեան մէջ: Իսկ երբ այդպէս կը վարուին, արդե՞օք իրենց եւ իրենց օլիկարքական շրջապատի նպատակը իշխանութիւն բանեցնել չէ արուեստի աշխարհին վրայ: Օրինակ, Գեղամ Գրիգորեանի վերջին ամիսներուն՝ 2015 Դեկտեմբերին, աշխատանքէ հեռացուեցաւ գլխաւոր նուագավար Կարէն Դուրգարեան: Մինչեւ այսօր յայտնի չէ թէ որուն հրամանով կատարուած է այս քայլը: Իսկ Գրիգորեան այնպէս ալ չկրցաւ յստակ պատասխան տալ այս հարցին: Ի վերուստ եկած հրահանգ մըն էր հաւանաբար:

ՎԵՐՋԻՆ ԿԱՐԾԻՔ ՄԸ

Հեռատեսիլի զրոյցի մը ընթացքին, Գրիգորեան կը կրկնէ հետեւեալ բազմաչարչար խօսքը. «Օպերային արուեստը առաջին հերթին սինթեզ է, ես կ'ասէի բոլոր արուեստների իրար հետ միասին, սկսած նկարչութիւնից, երգեցողութիւն, դրամատիկ խաղ, փիլիսոփայութիւն» («Արուեստանոց» հաղորդում, *Հայաստանի Հանրային Հեռուստաընկերութիւն*, 25 Մայիս 2014):

Եթէ օփերան այս բոլորին միաձուլումն է, ապա ո՞ւր է արդեօք բուն ինքը օփերան...:

ՅԵՏ ԳՐՈՒԹԻՒՆ

Պալթեան շրջանի իր առաջին ամուսնութենէն (յայտնի սոփրանօ Իրենա Միլքեւիչիութէի հետ) Գրիգորեան ունեցած է դուստր մը՝ Յասմիկ (ծնած Վիլնիւս, 1981): Այսօր Յասմիկ Գրիգորեան (Asmik Grigorian) բաւական «տարածուած» մեներգչուհի մըն է՝ Մարիինսքի, Պոլշոյ, Վիլնիւսի Օփերա, Ռիկայի Օփերա, Երեւանի Օփերա, Wigmore Hall (Լոնտոն), Komischen Oper Berlin, Cologne Opera, Opera Graz, Staatsoper Hamburg, Bayerischen Staatsoper (Միւնիխ) եւ այլն:

(Վերջ 2)





## ՓԱՆԱՄԱՅԻ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԵՐԸ ԵՒ... ՀԱՅԵՐԸ

աննախադէպ հետախուզութիւն մըն է՝ որ կը բացայայտէ աշխարհի ամենէն ականաւոր դէմքերուն օֆշորային յարաբերութիւնները:

«Հետախուզական Լրագրողներու Միջազգային Միութիւնը, համագործակցութեամբ *Süddeutsche Zeitung* գերմանական լրագիրին եւ աւելի քան 100 ուրիշ լրատուամիջոցային գործակիցներու, մէկ տարի շարունակ մաղեց գաղտնապէս տարածուած 11.5 միլիոն թղթածրար, որպէսզի բացայայտէ աշխարհի քաղաքական առաջնորդներու օֆշորային ունեցուածքները, համաշխարհային խայտառակութիւններուն հանգոյցները, ինչպէս նաեւ կաշառակերութեան, զէնքերու առեւտուրի, տուրքերէ խուսափումի, ֆինանսական խարդախութեան, թմրանիւթերու շրջանառութեան, միլիառատէրերու, հանրայայտ դէմքերու, աստղային մարզիկներու եւ այլոց թաքուն ֆինանսական գործարքներուն մանրամասնութիւնները:

«Փաստաթուղթերու այս գանձարանը հաւանաբար կը հանդիսանայ պատմութեան մէջ երբեւէ տեղի ունեցած ներքին տեղեկութեան ամենամեծ տարածումը: Ան կը պարունակէ Փանամայի մէջ հաստատուած սակաւ յայտնի բայց հզօր օրէնսդրական ընկերութեան մը շուրջ 40 տարուայ տուեալները: Այդ ընկերութիւնը՝ Mossack Fonseca, ունի աշխարհի աւելի քան 35 վայրերու մէջ տարածուած գրասենեակներ եւ կը հանդիսանայ ծածկութային ընկերութիւններու եւ ընկերութենական [corporate] կառոյցներու աշխարհի գլխաւոր ստեղծողներէն մէկը, որոնք կրնան գործածուիլ թողօններուն [assets] սեփականութիւնները թաքցնելու համար:

«Հետախուզական Լրագրողներուն կատարած այս արձանագրութիւններուն վերլուծութիւնը բացայայտեց աւելի քան 214 հազար օֆշորային ընկերութիւններու գործողութիւններ՝ կապուած աւելի քան 200 երկիրներու եւ տարածքներու մարդոց հետ:

«Տուեալները կը պարունակեն ել-նամակներ, ֆինանսական ցուցակներ, անցագիրներ եւ ընկերութենական արձանագրութիւններ, որոնք կը բացայայտեն պանքային հաշիւներու եւ ընկերութիւններու գաղտնի սեփականատէրերու անունները 21 օֆշորային իրաւասութիւններու մէջ, ներառեալ Նեւատա, Հոնկ Քոնկ եւ Բրիտանական Վիրճին Կղզիներ:

«Հետախուզական Լրագրողներու տուեալներու եւ ուսումնասիրութեան միաւորը կազմակերպեց եւ վերլուծեց 2.6 թերապայթ ծանրութեամբ տուեալներ, համագործակցական հարթակներ ստեղծելով մօտաւորապէս 80 երկիրներու մէջ գտնուող 25 լեզուով արտայայտուող լրագրողներու [թիւով՝ 376, Հ.] հետ» (https://panamapapers.icij.org/about.html):

Հրապարակուած վերլուծութիւնները լոկ սկիզբ մըն են: Փանամայի Փաստաթուղթերը տակաւին պիտի բացայայտեն ստուերային արդիւնաբերութեան հսկայ ցանց մը:

Ցարդ յայտնաբերուած անուններուն մէջ կը գտնուին Իլհամ Ալիեւի ընտանիքը եւ Վլատիմիր Փութին ու իրեն շրջապատող անձերը: Ղարաբաղեան վերջին պատերազմի օրերն էին: Հայաստանեան լրատուամիջոցները Ալիեւի դէպքը օգտագործեցին բացասական կէտ մը եւս աւելցնելու Ատրպէյճանի նախագահի անունին, մոռնալով, անշուշտ, հայերու «պաշտպան» Փութինի նոյնանման արարքը:

Վերոյիշեալ 376 լրագրողներէն մէկն է Քրիստինէ Աղալարեան, որ ստանձնած է Փանամայի Փաստաթուղթերու հայ անձերուն օֆշորային ունեցուածքի գաղտնազերծումի աշխատանքը: Հետաքննող Լրագրողներու Հայաստանի մասնաճիւղի պաշտօնական համացանցային լրագիրը՝ *Հետք* (http://hetq.am/arm/), Ապրիլ 4-ի թուականով կը հրապարակէ լրագրողուհիին առաջին (ցարդ միակ) բացայայտումը՝ *Պանաման նուաճած հայ գեներալը. Միհրան Պօղոսեանի օֆշորային ընկերութիւնները եւ հաշիւները շուէյցարական բանկերում*: Աղալարեան այսպէս կը սկսի յօդուածը. «ՀՀ գլխաւոր հարկադիր կատարող, արդարադատութեան գեներալ-մայոր Միհրան Պօղոսեանը խորը արմատներ է գցել օֆշորային գօտիներում: Այնտեղ գրանցած ընկերութիւնների միջոցով բիզնէս է անում, իր պաշտօնն օգտագործում է սեփական բիզնէսի զարգացման համար եւ թաքցնում է եկամուտները»: Ապա, լրագրողուհին մանրամասն կը վերլուծէ ամբողջ գործընթացը եւ կը հրապարակէ փաստաթուղթերուն պատճէնները, հաստատելով՝ որ «[մ]ասնագիտութեամբ տնտեսագէտ Միհրան Պօղոսեանը տիրապետում է օֆշորային գաղտնիքներին»: Յօդուածի վերջաւորութեան, Աղալարեան կը բացայայտէ Պօղոսեանի ընտանիքի տարբեր անդամներուն օֆշորային ներդրումները:

Եւ այս բոլորը տակաւին սկիզբն է: Սպասենք յաջորդին: Բայց սպասենք՝ առանց զարմանալու, քանի որ արդէն գիտենք՝ որ դրամատիրութեան վերջին փուլը՝ նէօլիպերալիզմը, անկարելի գոյութիւն մըն է առանց փտածութեան, գիտենք՝ որ վարկածային դրամատիրութեան վրայ հիմնուած ստուերային առեւտուրի եկամուտները յաճախ կը գերազանցեն նոյնիսկ զարգացած երկիրներու ՀՆԱ-ն, գիտենք՝ որ փտածութեան խրախուսած դրամները կրնան վերացնել աշխարհի ամբողջ աղքատութիւնը:

Հ.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1766 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ՄԱՅԻՍ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٦٦ الخميس ٥ مايو ٢٠١٦


## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԲԵԼԳԻԱԿԱՆ ՈՃՈՎ

### (Ապրիլի 24-ի կապակցութեամբ)

**ՎԱՀԱՆ ԻՇԽԱՆԵԱՆ**

**Ռուանդա**

Երկու հազար թութսի չէին կոտորուի, եթէ բելգիացի խաղաղապահ զինուորները չթողնէին նրանց անպաշտպան:

Ռուանդայում 1994-ին իշխանութիւնը յանձին հութուների վերնախաւի պետական բոլոր մարմիններին հրահանգում է թութսիներին կոտորել:

Հարիւր օրուայ ընթացքում Ապրիլի 7-ից մինչեւ Յուլիսի 4-ը ռուանդական բանակը - հութուների ինտերհամուէ եւ իմպուզամուգամբի աշխարհազօրայինները կոտորում են մօտ մէկ միլիոն մարդ, բռնաբարում 250 հազար կին: Ցեղասպանութիւնը դադարեցնում են հարեւան Ուգանդայից եկած թութսիների ռուանդական հայրենասիրական ճակատի գրոհայինները:

Ռուանդայի մայրաքաղաք Կիգալիի Դոն Բոսկօ դպրոցում կենում էին բելգիացի 90 խաղաղապահներ, եւ նրանց պաշտպանութեանը ապաւինելով՝ այստեղ ապաստան էին գտել 2 հազար թութսի, որոնց մէջ 400 երեխայ, նաեւ շրջակայքում բնակուող եւրոպացիները:

Ապրիլի 11-ի առաւօտեան գալիս են ֆրանսիացի զինուորականները եւ էվակուացնում բոլոր եւրոպացիներին, իրենց հետ տանում են միայն սպիտակ մաշկ ունեցողներին, ոչ մի սեւամորթ չեն փրկում:

Ապա բելգիացի զինուորները, ենթարկուելով իրենց հրամանատար Լիւկ Մարշալի հրամանին, մեքենաները նստում ու գնում են: Ապաստանեալները փռւում են մեքենաների դիմաց, փորձում պահել զինուորներին, սակայն նրանք կրակում են օդ ու քշում բոլորին: Անմիջապէս բելգիացիների յետեւից նրանց աչքի առաջ դպրոցի տարածք են ներխուժում հրոսակները եւ մաչետաներով կոտորում բոլորին:

Դոն Բոսկոյի նախճիրի մասին ֆիլմ է նկարահանուել՝ *Շներին գնդակահարելիս*. ճանապարհներին բլոկպոստեր, որ ստուգում են իւրաքանչիւր մեքենայ եւ հէնց թութսի են յայտնաբերում տեղում սպանում են, Դոն Բոսկոյի դպրոցն էլ շրջապատուած է մաչետաներով զինուած հութու հրոսակներով: Հոգեւորականը դիմում է բելգիացի հրամանատարին, որ հրոսակներին հեռացնեն կրակելով նրանց վրայ. «Մենք մանդատ չունենք նրանց վրայ կրակելու, մենք կարող ենք զէնք կիրառել միայն այն ժամանակ, երբ մեզ վրայ են կրակում», - ասում է հրամանատարը: Բայց նա պատրաստւում է կրակել շների վրայ որոնք փողոցներում փռուած դիակներով են սնուել. «Շները կրակե՞լ են ձեզ վրայ, որ ուզում էք կրակել», - հարցնում է զինուորականին հոգեւորականը:

Նրանք անպաշտպան են թողնում թութսիներին, որ պահպանեն օդանաւակայանը:

Սա բելգիացիների միակ յանցանքը չի:

Կիգալիի օդանաւակայանը պահպանում են 1000 բելգիացի եւ ֆրանսիացի զինուորներ: Ապրիլի 9-ին այդ զինուորների մի խումբ գնում է Կիգալիի հոգեբուժարան էվակուացնելու եւրոպացի անձնակազմին: Հիւանդանոցում ապաստան էին գտել մի քանի հարիւր թութսի, նրանք խնդրում են զինուորներն փրկել իրենց, սակայն նրանք ոչնչով չեն օգնում, եւրոպացիներին տանում են, իսկ նրանց յետեւից ներխուժում են հրոսակները ու կոտորում թութսիներին:

Ռուանդայի վարչապետ Ագաթա Ուվիլինգիյմանան պատրաստւում էր բռնութիւնները կանխել, նրա անվտանգութիւնը հսկում էին բելգիացի զինուորները, սակայն երբ Ապրիլի 6-ին նրա տունը շրջապատում են Ռուանդայի նախագահի գվարդիան եւ պահանջում յանձնել Ուվիլինգիյմանին, բելգիացի զինուորները զէնքերը վայր են դնում, ու յանձնւում: Վարչապետն ու նրա թութսի ամուսինը փախչում են, սակայն գվարդիականները նրանց գտնում ու գնդակահարում են, իսկ յետոյ խոշտանգելով սպանում են նաեւ յանձնուած բելգիացի զինուորներին:

Վահան Իշխանեան

Թութսիների եւ հութուների հակամարտութիւնը, որ յանգեց թութսիների ցեղասպանութեան, հրահրել էին բելգիացի գաղութարարները:

15-16-րդ դարերում Ռուանդայի տարածքում բնակութիւն հաստատած թութսիների եւ հութուների ցեղային ու լեզուական տարբերութիւնները վերացել էին, նրանք մի լեզուով են խօսում, նոյն մշակոյթն ունեն, կրօնով երկիրը հիմնականում կաթոլիկ է:

Միակ տարբերութիւնը մնացել էր այն, որ փոքրամասնութիւն հանդիսացող թութսիները իշխող դիրք ունէին, երկրի թագաւորը թութսի էր (թութսիները բնակչութեան 15 տոկոսն են, հութուները 84 տոկոսը): Այդ երկու հանրոյթները վերածուել էին միայն սոցիալական շերտերի, երբ թութսին աղքատանում կամ իշխող դիրքից ընկնում էր, դառնում էր հութու, եւ հակառակը՝ երբ հութուն իշխանութեան էր հասնում դառնում էր թութսի:

1890 թուին Ռուանդան դառնում է գերմանական գաղութ, ապա 1915 թուին Կոնգոյից բելգիական զօրքերը ներխուժում եւ գրաւում են այն՝ դարձնելով բելգիական գաղութ:

Բելգիական իշխանութիւնները արհեստականօրէն խորացնում են թութսիների ու հութուների տարբերութիւնը, մտցնում են փաստաթղթային համակարգ, որտեղ պարտադիր պէտք է նշուէր քաղաքացու ազգութիւնը՝ թութսի կամ հութու: Բելգիացիները իւրայատուկ մշակոյթի մէջ ներարկում են ռուանդացիների համար անծանօթ նացիոնալիզմ եւ երկու շերտերին դարձնում հակամարտող ազգեր:

Յիսունական թուերին թութսիները սկսում են պահանջել անկախութիւն, իսկ բելգիացիները սկսում են սահմանափակել թութսիների իշխանութիւնը, մտցնում են ընտրական համակարգ, եւ տեղական խորհուրդներում հիմնականում յաղթում են հութուները: 1959-ին հութուները ապստամբում են թութսի թագաւորի դէմ եւ մէկ տարի անց նրան տապալում: 1962-ին երկիրը անկախութիւն է հռչակում, բելգիացիները հեռանում են՝ իշխանութիւնը թողնելով հութուներին, եւ սկիզբ է առնում հութուների ու թութսիների թշնամանքը:

1994-ի Ապրիլի 6-ին խփւում է Ռուանդայի նախագահ Ժիւվենալ Հաբիարիմանի ինքնաթիռը, բոլոր ուղեւորները նախագահի հետ զոհւում են, որն էլ օգտագործում են հութու իշխանութիւնները թութսիներին կոտորելու համար:

Յետագայում ցեղասպանութեան կազմակերպիչները պատասխանատուութեան են ենթարկւում, նոյնիսկ Բրիւսէլում են լինում դատեր, 2001-ին Բրիւսէլի դատարանը մեղաւոր է ճանաչում ռուանդացի կաթոլիկ միանձնուհիների, ովքեր հութու հրոսակներին էին յանձնել ↳ 4

**ԱՐՑԱԽ**

## ՁՈՀՈՒԱԾ ԶԻՆՈՒՈՐՆԵՐԸ՝ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍՏՈՐԻՆ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐ

Ըստ Ղարաբաղի պաշտպանութեան նախարարութեան մամուլի ծառայութեան տուեալներուն, Ապրիլ 30-Մարտ 1-ի գիշերը, Ատրպէյճան խախտած է հրադադարի համաձայնութիւնը: Մարտունիի եւ Թալիշի ուղղութեամբ մահացած են չորս հայ զինուորներ:

Կը փափաքինք յիշեցնել՝ որ Պետրոս Ղազարեանի *Հայկական Ուրբաթ* (Կենտրոն հեռատեսիլի կայան) հաղորդաշարի Ապրիլ 15-ի հաղորդումին խորագիրն էր՝ «Յետպատերազմեան ճշմարտութիւններ»: Հրաւիրեալներէն մէկը՝ Ժառանգութիւն Կուսակցութեան փոխնախագահ Արմէն Մարտիրոսեան, խօսելով Ղարաբաղի ապրիլեան բախումներուն ընթացքին զոհուած աւելի քան իննսուն հայ զինուորներուն մասին, կ'ըսէ. «Էդ բոլորի դռները բացում ես՝ սոցիալապէս անապահով ընտանիքներ են: Էդ ո՞ր մի պաշտօնաւորի տղան ա գնացել զոհուելու»: Այս խօսքը կ'արժանանայ ներկաներու ինքնաբուխ ծափահարութեան:

Հասարակական առումով հայկական բանակի դասակարգային կառուցուածքը հազուադէպ շօշափուող հարց մըն է: Տակաւին պէտք է բացայայտուի՝ թէ ի՞նչ հիմքի վրայ կը կայանայ սահմաններուն վրայ ծառայող զինուորներուն ընտրութիւնը: Եւ ասոր պատասխանը պէտք է տան ոչ թէ պաշտօնավարները՝ որոնք միշտ պատրաստ պատասխաններ ունին եւ որոնց զաւակները սահմանի առաջին գիծերուն վրայ չեն գտնուիր, այլ իշխանական ներքին ծալքերուն ծանօթ անձեր:

Բայց մէկ բան մը կը մնայ յստակ: Զոհուածներուն ընտանիքները, ինչպէս Մարտիրոսեան ըսաւ՝ սերած են «սոցիալապէս անապահով» ընտանիքներէ: Իշխանականները տակաւին կրնան ապահով կերպով խօսիլ պատերազմական քաջագործութիւններու մասին:

*Ջ.*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԲԱՆԱԿԻ ԵՐԵՔ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՅԻ ԱԶԱՏԵԼ ԵՆ ԶԲԱՂԵՑՐԱԾ ՊԱՇՏՕՆՆԵՐԻՑ

Epress.am, 26 Ապրիլ - *Ապրիլ 26-ին ՀՀ նախագահ Սերժ Սարգսեանը զբաղեցրած պաշտօններից ազատել է բանակի երեք բարձրաստիճան պաշտօնեայի: Մասնաւորապէս, Սարգսեանի հրամանագրի համաձայն, ՀՀ պաշտպանութեան նախարարի տեղակալ-նիւթատեխնիկական ապահովման դեպարտամենտի պետի պաշտօնից ազատուել է Ալիկ Միրզաբէկեանը:*

*Վերջինս Պաշտպանութեան Նախարարութիւնում աշխատում է 1992 թուականից. տարբեր տարիներին նա զբաղեցրել է ՊՆ սպառազինութեան վարչութեան շտաբի պետի եւ ՊՆ ինժեներական զօրքերի պետի պաշտօնը: 2001 թուականից ՀՀ Պաշտպանութեան նախարարի տեղակալ է, իսկ 2007-ից՝ ՀՀ պաշտպանութեան նախարարի տեղակալ-նիւթատեխնիկական ապահովման դեպարտամենտի պետ:*

*Բացի Միրզաբէկեանից, ՀՀ Զինուած Ուժերի գլխաւոր շտաբի հետախուզութեան վարչութեան պետի պաշտօնից ազատուել է գեներալ-մայոր Արշակ Կարապետեանը, իսկ ՀՀ զինուած ուժերի կապի զօրքերի պետ-կապի եւ աւտոմատացուած կառավարման համակարգերի վարչութեան պետի պաշտօնից ազատուել է գեներալ-մայոր Կոմիտաս Մուրադեանը:*

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆԸ՝ 76 ՏՈԿՈՍ. ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐԸ ԽՕՍՈՒՄ ԵՆ ԿՐՃԱՏՄԱՆ ՄԱՍԻՆ. *ՀՐԱՊԱՐԱԿ*

*Համաշխարհային բանկի օրերս հրապարակուած զեկոյցի համաձայն՝ Հայաստանում աղքատութիւնը կազմում է 76 տոկոս: Ընդ որում՝ աղքատ են համարւում օրական 5 դոլարից պակաս սպառում ունեցողները, գրում է Հրապարակ օրաթերթը:*

*ՀՀ Ազգային վիճակագրական ծառայութեան համաձայն, սակայն, աղքատութիւնը վերջին 3 տարիներին կրճատուել է 5 տոկոսով՝ հասնելով 30-ի: Չնայած նրան, որ Ազգային* ↳ 4

# ԻՍԼԱՄԱՑԱԾ ՀԱՅԵՐ՝ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ

Ապրիլ 17-ին, Պըլըքտաննեան սրահին մէջ տեղի ունեցաւ Թորոնթոյէն հրաւիրուած Րաֆֆի Պետրոսեանի դասախօսութիւնը՝ *Իսլամացած Հայերու վերադարձը դէպի իրենց արմատները*: Դասախօսութեան քննախօսականը չէ որ պիտի ներկայացնեմ, այլ անձնական մտորումներ՝ բխած ներկայացուած նիւթէն: Բարդ ու բազմաշերտ նիւթ մըն է ասիկա, որուն համար անհրաժեշտ է թափանցիկութիւն ու թափանցողութիւն:

Աւելորդ չեմ նկատեր բարձրացնել քանի մը խնդիրներ.

1. Իսլամացած հայեր հասկացողութիւնը ունի լայն ըմբռնում: Պատմականօրէն, հայերը իսլամական աշխարհին մէջ, հետեւաբար այդ աշխարհին մէկ մասը կազմող իսլամ հայերուն պարագան, առաջին անգամ նոր ակնոցով ուսումնասիրած է Սեդա Տատոյեան՝ *Հայերը միջնադարի իսլամական աշխարհին մէջ. փոխներթափանցումի յարացոյցներ, Է.-ԺԴ. դարեր* եռահատոր անգլերէն հրաչալի հետազօտութեան մէջ:

Առաջին հատորի յառաջաբանին մէջ, Տատոյեան կը գրէ՝ թէ իսլամ հայերուն «պարագան անջատուած ընդգծում մը չէ, այլ պարզապէս կը կազմէ այն ընդհանուր առարկութեան մասը՝ որ կը միտի հայկական պատմութիւնը դիտել ըստ հնարաւորին աւելի չատ հեռանկարներէ» (Seta B. Dadoyan, *The Armenians in the Medieval Islamic World: Paradigms of Interaction Seventh to Fourteenth Centuries*, Volume one, New Brunswick and London: Transaction Publishers, 2011, p. xxiv): Թէեւ Տատոյեանի ուսումնասիրութեան կեդրոնը միջնադարն է, որուն համար, բնականաբար, իսլամ հայերուն ողնասիւնը պիտի ըլլար փաթիմեան չրջանը, բայց հատորի խորագիրին մէջ նչուած փոխներթափանցումի յարացոյցը նոյնն է նաեւ նոր չրջանի իսլամ հայերուն նկատմամբ:

Նչելի է նաեւ, որ Տատոյեան՝ երբ կը խօսի փաթիմեան եւ այլ հայերու մասին, կը գործածէ «իսլամ հայեր» արտայայտութիւնը, փոխանակ Արեւմտահայաստանի հայերուն համար այսօր գործածուող «իսլամացած հայեր»-ուն:

Հայերը Դ. դարէն առաջ քրիստոնեայ չէին: Կարելի՞ է արդեօք Դ. դարուն քրիստոնեայ դարձած հայերուն անուանել «քրիստոնէացած հայեր»: Բացի այդ, որքա՞ն վստահ կրնանք ըլլալ որ հայ ժողովրդական խաւերը սրտաբաց ընդունած են քրիստոնէութիւնը: Կարելի է ուսումնասիրել, օրինակ, ԺԹ. դարու հայկական ամենակարեւոր կրօնական ուխտագնացութիւններէն մէկը՝ Վարդավառի տօնին առիթով դէպի Մչոյ Ս. Կարապետ կատարուող տարեկան համահայկական ուխտագնացութիւնը, որ ամէն անգամ կը վերածուէր ժողովրդական մեծ համախմբութեան եւ խանդավառ տօնակատարութեան: Այս առիթով պահպանուած նիւթերը, ժողովրդական երգերուն բանաստեղծութիւնները եւ եղանակները կը վկայեն *համաժողովրդական* հաւատքի մը մասին՝ խառնուրդ մը բնատոհմիկ, հեթանոսական ու քրիստոնէական հաւատքներու, որոնք ոչ անպայմանօրէն համատեղելի են եկեղեցական-հիմնարկային քրիստոնէութեան կանոններուն հետ: Նոյն ինքը եկեղեցին քաջատեղեակ էր այս չերտային տարբերութիւններուն մասին, բայց եւ այնպէս կ'ընդունէր այս զանգուածին համախմբումը իր կառոյցներուն չուրջ (նիւթական եկամո՞ւտ մըն էր ասիկա եկեղեցիին համար, թէ միջոց մը իր չուրջը համախմբելու այդ զանգուածը՝ որ այլապէս կրնար ինքն իր միջոցներով համախմբուիլ ինքնաստեղծ տարածութիւններու վրայ, վնասելով եկեղեցի-հիմնարկին գերիչխանութիւնը): Բայց, միեւնոյնն է, այս հաւատացեալներուն չենք անուաներ «քրիստոնէացած հայեր», թէեւ գիտենք թէ անոնց քրիստոնէական հաւատքը էապէս ժողովրդական է եւ ոչ հիմնարկային, այսինքն՝ ոչ մայրուղային:

Ուրեմն, բառերը վերածելով եզրերու, եւ եզրերը եւս կրկնակի եզրաւորելով (իսլամ-իսլամացած), կրնանք կորսնցնել երեւոյթին բազմակողմանիութիւնը, բազմաչերտութիւնը եւ առկայ իմաստային բարդութիւնը: Եզրերու գործածութիւնը անխուսափելի է, բայց կարելի է խուսափիլ անոնց սեւեռումէն ու բառային պաչտամունքէն, կարողանալու համար բացայայտել երեւոյթին բազմազանութիւնը:

Դասախօսութեան աւարտին, Պետրոսեան արտայայտեց իր ամենահամարձակ կարծիքներէն մէկը՝ թէ պէտք չէ էթնիքականութիւնն ու կրօնքը անպայմանօրէն կապել իրարու, եւ թէ կարելի է հայ մնալ նոյնիսկ առանց քրիստոնեայ դառնալու: Ասիկա կարեւոր հարցադրում մըն է, որ կարելի է դիտել իբրեւ ուրիչ երեւոյթներու չարունակութիւն: Օրինակ, հայերը խնդիր չունին անաստուած (աթէիսթ) հայերուն հայ նկատել: Անաստուած բանաստեղծներ Յակոբ Յակոբեանի կամ Եղիչէ Չարենցի հայութիւնը ոչ ոք կը մտածէ կասկածի ենթարկել: Բացի այդ, առաքելական հայերուն համար կաթողիկէ կամ աւետարանական հայերուն հայութիւնը թէեւ կասկածի չի ենթարկուիր, բայց գործնականօրէն՝ գաղութային պատմութիւններուն, լրագրութեան եւ տեղեկատուութեան մէջ անոնց գոյութիւնը գրեթէ կը բացակայի: Հայ-քրիստոնեայ միասնութեան պարտադրանքը կը դառնայ խնդրական, քանի որ մէկ կողմէն՝ անաստուած հայը կը նկատուի հայ, իսկ քրիստոնեայ՝ բայց ոչ առաքելական հայը, մնալով հանդերձ հայ՝ կը մեկուսացուի:

Քրիստոնեայ-հայ կապը որոչ բանաստեղծներ կը տեսնէին ոչ այնքան համերաչխ համակեցութեան մէջ: Ֆրիկի մօտ տանջուող հայոց ազգը եւ այդ տանջանքը անտեսող Աստուած դժուար յարաբերութեան մէջ կը գտնուին. «Որքա՞ն տանջեն զմեզ յաչխարհի, / Եւ կեղեքեն զկեանս մեր յայտնի. / Եւ դու ներես յամենայնի, / Անտես առնես զմեզ ի վըչտի» (*Բան ի Ֆրիկ գրքոյն*): «Դու» դերանունը կը վերագրուի Աստուծոյ: Պետրոս Դուրեանի ըմբոստութիւնը Աստուծոյ դէմ՝ «Թող յորջորջեմ քեզ «Աստուած ոխերիմ»» կամ «Աստուծոյ ծաղրն է Աչխարհն ալ արդէն...» (*Տրտունջք*) եւ համակերպութիւնը հայրենասիրութեան հետ՝ «Հէք մարդկութեան մէկ ոստը գոս՝ / Հայրենիք մը ունիմ թըչուառ, / Զ'օգնած անոր՝ մեռնի՛լ աննչան, / Ո՜հ, ա՛յս է սոսկ ցա՛ւ ինձ համար» (*Իմ ցաւը*), քրիստոնեայ-հայ յարաբերութեան «բիւրեղութիւն»-ը կը դնէ հարցականի տակ:

Իսլամ հայուն հայութիւնը, ուրեմն, կրնայ դառնալ ըմբռնելի:

2. Պետրոսեան իր դասախօսութիւնը սկսաւ կրկնելով *Armenian Weekly*-ի մէջ արտայայտած իր հիմնական կարծիքը (նոյնութեամբ կը մէջբերեմ *Weekly*-ի կարծիքը). «Հայաստանէն, Ղարաբաղէն եւ Հայկական Սփիւռքէն ետք, այժմ կը զարգանայ հայկական *չորրորդ* աչխարհը՝ Թուրքիոյ Իսլամացած Հայերը» (Raffi Bedrosyan, 'The Islamized Armenians and Us', *The Armenian Weekly*, 15 November 2013, http://armenianweekly.com/2013/11/15/the-islamized-armenians-and-us/): Իսկ *Weekly*-ի յօդուածի վերնագիրն է՝ «Իսլամացած Հայերը եւ մենք»: Մէկ կողմէ՝ ըստ վերնագիրին, կը գտնուի երկուութիւն մը որուն կեդրոնը մենք ենք մինչդեռ իսլամացած հայերը կը ներկայացնեն մեր Այլը, միւս կողմէ՝ ըստ յօդուածին, աչխարհի հայութիւնը կը ներկայանայ քառակի կազմութեամբ: Ինչպէ՞ս կարելի է այս բոլորը դիտել ներթափանցումի յարացոյցի մէջ: Պարզապէս կարելի չէ: Բայց այդ յարացոյցը կարելի կը դառնայ երբ ընդունինք հայութիւնը իբրեւ մէկ համակեցութիւն, որուն մէջ փնտռենք, տեսնենք եւ գտնենք բազմաչերտութիւն, բազմազանութիւն եւ բազմիմաստութիւն: Հայաստանի եւ Ղարաբաղի անջատումը զուտ քաղաքական երեւոյթ է, որ կրնայ պարզապէս իչխանութիւններուն առիթ տալ բանակցութիւններ վարել Ղարաբաղի հարցի կապակցութեամբ: Բայց քաղաքական բաժանումները չեն կրնար արտացոլել նոյն այդ տարածութիւններուն մարդկային-մչակութաբանական բաժանումները: Հայաստանի, Ղարաբաղի, սփիւռքի եւ իսլամացած հայերուն միջեւ յիչեալ տարբերութիւնը արհեստական է: Շատ աւելի ընկալելի պիտի ըլլար ընդունիլ *քաղաքական* բնորոչումներէն անդին գտնուող *բնական* սահմանները՝ հիմնուած բնատոհմիկ եւ մչակութա-տարածային տարբերութիւններու վրայ, օրինակ՝ Այրարատ, Վաս-

⇨ 4

ԳԱՀԻՐԷ

## *ԱՐԵՒ* ՕՐԱԹԵՐԹԸ ՏՕՆԵՑ ԻՐ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 100-ԱՄԵԱԿԸ

Ապրիլ 27-ին, Կոկանեան Սրահին մէջ, Գահիրէի *Արեւ* օրաթերթը տօնեց իր հիմնադրութեան 100-ամեակը, նախագահութեամբ Հայ Ազգային Հիմնադրամ-*Արեւի* վարիչ մարմինի նախկին երկարամեայ ատենապետ ու անդամ, *Արեւի* աչխատակից եւ Կոկանեան Սրահի ցկեանս նախագահ Կարպիս Եազըճեանի: Պատուոյ հիւրերն էին՝ *Արեւի* նախկին խմբագիր, ՀԱՀ-*Արեւի* վարիչ մարմինի նախկին անդամ եւ *Արեւի* աչխատակից Ալիս Տեփոյեան, եւ ՀԱՀ-*Արեւի* վարիչ մարմինի նախկին անդամ, *Արեւի* աչխատակից եւ ՀԲԸՄ-ի Եգիպտոսի Շրջանակային Յանձնաժողովի եւ Գահիրէի Մասնաճիւղի պատուոյ ատենապետ Պերճ Թէրզեան: Երեւանէն բանախօսելու հրաւիրուած էր գաղափարակից *Ազգ* թերթի խմբագիր Յակոբ Աւետիքեան: Տեղի ունեցաւ նաեւ Ալիս Տեփոյեանի *Խօսուն զօղանջներ մօտիկ անցեալէն* գիրքին չնորհանդէսը: Գիրքը կ'ամփոփէ տարիներու ընթացքին *Արեւի* մէջ լոյս տեսած Տեփոյեանի յօդուածները: Տիկին Տեփոյեանին յանձնուեցաւ Հայաստանի Լրագրողներու Միութեան չքանչանը: Նչենք, որ *Արեւի* ներկայ խմբագիրն է Ասպետ Արթինեան (*Արեւի* խմբագիրներու եւ արտօնատէրերու ամբողջական ցանկը եւ այլ մանրամասնութիւններ տե՛ս՝ Սուրէն Ն. Պայրամեան, *Հայ մամուլը Եգիպտոսի մէջ. մատենագիտական ցուցակ*, Գահիրէ, 2005, էջ 104-107):

Միտքի ու մտածողութեան օրրան մը եղած է *Արեւ*, որ հարիւր տարի չարունակ ձգտած է ըլլալ դատողական, քննական ու կչռադատեալ:

Ուղղութեամբ պուրժուա-լիպերալի եւ պուրժուա-ազգայինի խառնուրդ մը, ան իր ամբողջ տեւողութեան հաստատուն մնաց իր սկզբունքներուն մէջ:

*Արեւի* առաջին համարը լոյս տեսած է 1915 Մայիս 11-ին, Աղեքսանդրիա, իբրեւ անկախ (ոչ-կուսակցական) եռօրեայ լրագիր: Ինչպէս իր առաջին համարի խմբագրականին մէջ Թէքէեան կը նչէ՝ «*Արեւ* քաղաքական կուսակցութեան մը օրկանը չէ եւ չպիտի ըլլայ»: 1921 Մայիս 4-էն սկսեալ ան կը դառնայ «Պաչտօնաթերթ Հայ Ռամկավար Կուսակցութեան Եգիպտոսի չրջանակին»:

Յառաջդիմական գաղափարներու տէր, անոր արտայայտած գաղափարները նոյնքան այժմէական կրնան հնչել նաեւ այսօր: Օրինակ, տակաւին 1926-ին, «Ի՞նչ կ'ընեն մեր մտաւորականները» խմբագրականին մէջ *Արեւ* կը զգուչացնէր՝ թէ «հայ տպագրական գործը յանձնուած է անխչխանութեան յորձանքին» (17 Սեպտեմբեր 1926, ԺԲ. տարի, թիւ 2305): Ան ազատօրէն կը խօսէր հայերէն լեզուի եւ կրթութեան մասին, կը փորձէր մերկացնել ազգային չարաչահումները եւ ինքնանպատակ ձեռնարկումները:

*Արեւ* փորձած է հեռու մնալ ահաբեկչական մտածողութենէ, ծայրայեղ դատումներէ, ազգայնամոլ հռետորութիւններէ:

Ան անցած է տարբեր փուլեր, ունեցած է մտածողութեան այլազան չերտեր:

*Արեւի* մէջ ի սկզբանէ իր ազդեցիկ գերակայութեամբ կը սլանար Վահան Թէքէեան: Այսօր, Թէքէեանի վաստակը յաճախ կը նուազեցուի բանաստեղծութեան «անվնաս» բնագաւառին մէջ: Բայց վստահաբար իր բանաստեղծութիւններուն թողած հետեւանքներուն պատճառով չէր որ ան պիտի գրէր *Մէկ հատիկս* բանաստեղծութիւնը: *Արեւի* էջերուն մէջ ստորագրած սուր յօդուածներն ու հրապարակախօսութիւնները՝ գրեթէ անկարելիութիւններ ասօրուայ մայրուղային մտածողութեան համար, կրնան յստակ պատկերացում տալ *Մէկ հատիկս* բանաստեղծութեան դրդապատճառներուն մասին: Այս առումով, *Արեւ* բաց էջ մըն է մեծանուն մտաւորականի *իրական* միտքերուն յայտնաբերումին համար:

*Արեւ* հպարտ պէտք է զգայ, օրինակ, ըլլալու Երուանդ Օտեանի *Հայ տիասբորան* վէպի առաջին հրատարակիչը, որ իբրեւ թերթօն լոյս տեսած է 1924 Հոկտեմբեր 18-էն մինչեւ 1925 Հոկտեմբեր 7, ընդամէնը 211 չարունակութեամբ:

Անչրջանցելի կարեւորութիւն ունի Օտեանի ամենօրեայ սիւնակը՝ «Վերնատունէն», զոր սկսած է հրատարակել 1925 Դեկտեմբեր 2-ին: «Վերնատունէն» սիւնակը, իր էութեան մէջ, հետեւողական քննադատութիւններու չարք մըն է ուղղուած վերնատունին, ուրեմն՝ վերնախաւին, որ դարձեալ, ինչպէս Թէքէեանի պարագային, անգոյութիւն մըն է այսօրուան հիմնահոսանքային մամուլին համար: «Վերնատունէն» սիւնակին վերջինը լոյս տեսած է 1926 Սեպտեմբեր 1-ին: Յաջորդ օրը՝ Սեպտեմբեր 2-ին, Օտեան կը փոխադրուէր Իտալական Հիւանդանոց, ուր կը մահանար Հոկտեմբեր 3-ին:

Միքայէլ Կիւրճեան՝ իր նրբադիտակ ու ներհայեցողական գրիչով, Թէքէեան-Օտեանի հետ կը կազմէր *Արեւի* առաջին չրջանի երրեակային ողնասիւնը:

*Արեւի* յետագայ զարգացման մէջ կարելի է գտնել հայ պատմագրութեան ու բանասիրութեան առաջաւոր ներկայացուցիչ Արչակ Ալպօյաճեանի անգերազանցելի ուսումնասիրութիւնները:

1960-ականներէն մինչեւ 80-ականներուն վերջը կարելի է անուանել եափուճեանական չրջան՝ բառին ամենադրական իմաստով: Աւետիս Եափուճեան՝ որուն ծննդեան 85-ամեակը լրացաւ Յունուար 31-ին, կը հանդիսանայ *Արեւի* պատմութեան քանակապէս ամենաչատ գրողը: 27 տարուայ ընթացքին (1962-1989)՝ մինչեւ Սիտնի գաղթելը, հրատարակած է իր հեղինակած, թարգմանած եւ պատրաստած 41 ծաւալուն թերթօններ: Հեղինակութիւններուն մեծամասնութիւնը պատմագիտական ուսում-

⇨ 3

## ՄԱՅԻՍԻ ՄԷԿԸ

Գարնան յուսատու, այս ուրախ օրին
Դուրս ելէք խումբ-խումբ, բանուո՛ր ընկերներ
Եւ ողջո՜յն տալով դաշտ ու ձորերին,
Երգէ՛ք ձեր ազատ, տօնական երգեր:

Գոռ արձագանքը ձեր յաղթ երգերի
Թո՛ղ սարսափ ազդի թշնամու սրտին,
Թո՛ղ ցնցի հոգին բռնաւորների,
Հանգիստը խլի ճնշող հարուստին:

Գարնան անդրանիկ մեր այս տօն օրին
Պահ մի մոռանանք վիշտը բանուորին.
Մեր ցաւ ու հոգսեր սար ու ձորի տանք,
Ազա՜տ երգերով գովենք աշխատանք:

Եւ թո՛ղ խլանայ ձայնը բռնութեան-
Աղմուկ չլսուի գործարաններից.
Այսօր մեր տօ՛նն է *վեհ գիտակցութեան*-
Թո՛ղ պայթի աղան յամառ զայրոյթից:

**ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆ (ՊՐՈԼԵՏԱՐ)**

(*Կայծ*, սոցիալ-դէմօկրատական օրաթերթ, Թիֆլիս, թիւ 6, 20 Ապրիլ 1906)

2 ⇨ *ԱՐԵՒ* ՕՐԱԹԵՐԹԸ ՏՕՆԵՑ ԻՐ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 100-ԱՄԵԱԿԸ

նասիրութիւններ են: Իսկ թարգմանութիւնները մեծ մասամբ կը պատկանին գրականութեան ոլորտին: Օրինակ, Եափուճեանի թարգմանութեամբ *Արեւի* մէջ կը հրատարակուի *Մայրիկ* վէպի առաջին հայերէն թարգմանութիւնը 1986-ին: Եւ ասիկա, դարձեալ ի պատիւ *Արեւին*: Բացի թերթօններէն, Եափուճեան ստորագրած է հարիւրաւոր թէ հազարաւոր (պէտք է հաշուել) յօդուածներ, քննախօսականներ ու գրախօսականներ:

Յունուար 6-ին լրացաւ *Արեւի* ուրիշ բեղմնաւոր գրիչի մը՝ Տիգրան Գէորգեանի, ծննդեան 80-ամեակը: *Արեւի* մէջ լոյս ընծայած իր բազմաթիւ ուսումնասիրութիւնները (1960-ականներէն մինչեւ 1980-ականները) ունին գիտական բացառիկ կարեւորութիւն: Կը բաւէ յիշել՝ որ 1969-ին եւ 1970-ին հրատարակած է եգիպտահայ մամուլի մատենագիտութեան առաջին լուրջ փորձերը: Կը բաւէ յիշել՝ որ 1980-ին, իբրեւ թերթօն, լոյս ընծայած է Հայոց ցեղասպանութեան առաջին ամբողջական մատենագիտութիւնը, զոր յետագային հաւաքած է հատորի մը մէջ: Այժմ ան կաթուածահար վիճակի մէջ կ'ապաստանի Գահիրէի Իտալական Հիւանդանոցին մէջ:

Յիշելով լոկ այս քանի մը անունները իբրեւ նմոյշ, բնաւ նպատակ չունինք չուքի մէջ ձգելու միւս անհամար մտաւորականները՝ որոնք ելոյթ ունեցած են հարիւրամեայ *Արեւի* էջերուն մէջ: Ընդհակառակը, *Արեւի* գոյութեան իմաստը կը գտնուի այդ բոլոր գրողներու համաստեղութեան մէջ, գրողներ՝ որոնք կը սիրէին ու կը պաշտէին գրելը, գրողներ՝ որոնց համար գրելը տարերք մըն էր, բնազդ մը եւ սկզբունք մը, գրողներ՝ որոնք չէին ճանչնար տիտղոսները, կոչումները եւ մրցանակները, գրողներ՝ որոնք իրենց գրութիւններով կենդանի կը պահէին արեւմտահայ լեզուն, քանզի լեզու մը կը պահպանուի ու կը նորոգուի ոչ թէ արտատպում-վերարտադրութեամբ՝ ապահովաբար պահուըտելով այդ արտատպութիւններուն ետեւ, ոչ թէ լեզուի *մասին* ելոյթներով, գովերգութիւններով եւ հռետորաբանութիւններով, այլ միայն ու միայն գործածութեամբ ու գործադրութեամբ, այսինքն՝ խօսելով ու գրելով, հետեւաբար, ուղղակիօրէն դիմագրաւելով բոլոր հարուածները եւ քննադատութիւնները:

*Զահակիր*

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ 2016 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ Ա. ՆԻՍՏ**

Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի 2016 տարեշրջանի Ա. Նիստը պիտի գումարուի Ուրբաթ, 13 Մայիս 2016-ի առաւօտեան ժամը 11:00-ին Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:

Դիւան Աղեքսանդրիոյ
Ազգային Առաջնորդարանի

ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**Ամավերջի Հանդէս**

Ուրբաթ, 20 Մայիս 2016, երեկոյեան ժամը 6:30-ին

Հովանաւորութեամբ՝

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ Ս. ԵՊՍԿ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց Թեմի

Նախագահութեամբ՝

**ՏԻԿԻՆ ՏԻԱՆԱ ԱԻԱԳԵԱՆԻ**

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

ԽՈՀԵՐ

## ՄԱՅԻՍ ՄԷԿ

**ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ**

Քանի մը օր առաջ յիշատակուեցաւ Մայիս մէկը՝ բանուորներու եւ աշխատաւորներու միջազգային օրը:

Աւելորդ չէ կրկնել՝ որ արդիւնաբերական յեղափոխութիւնը եւ ապա դրամատիրութիւնը իրենց հետ բերին աշխատաւորական դասակարգի անընդհատ դժգոհութիւն:

Անոնք իրենց հետ բերին Ընդհանուր Գործադուլը, ինչպէս՝ Ֆիլատելֆիայի Ընդհանուր Գործադուլը 1835-ին, Հոկտեմբերի Ընդհանուր Գործադուլը Ռուսաստանի մէջ 1905-ին, Ֆրանսական Ընդհանուր Գործադուլը 1968-ին եւ անթիւ ուրիշներ:

Իրենց հետ բերին մեծ գործադուլերն ու ցոյցերը, ինչպէս՝ Չիքակոյի աշխատաւորական ցոյցերը 1886-ին, որ հիմք հանդիսացաւ Մայիս մէկի հռչակումին իբրեւ աշխատաւորական օր, Սիլվերթաունի բանուորներուն ցոյցը 1889-ին, Ալ-Մահալլայի բանուորական գործադուլը Եգիպտոսի մէջ 2008-ին, որ որոշ ուղղութեամբ նախապատրաստեց Յունուար 25-ի յեղափոխութիւնը երեք տարի ետք, եւ անթիւ ուրիշներ:

Իրենց հետ բերին փոքր, անվերջանալի գործադուլերն ու ցոյցերը, որոնք իրական գլխացաւ կը հանդիսանան դրամատէրերուն համար:

Իրենց հետ բերին աշխատաւոր դասակարգի շարժումներ, ինչպէս 1838-1858 թուականներու բրիտանական Chartism-ը, ուր աշխատաւորները պահանջեցին քաղաքական արմատական բարեփոխումներ:

Տակաւին 1845-ին, Ֆրետերիք Էնկելս կը գրէր այդ ժամանակաշրջանին Անգլիոյ մէջ անընդհատ տեղի ունեցող գործադուլերուն մասին.

«Այս գործադուլերուն անհաւատալի յաճախութիւնը լաւագոյն կերպով կը փաստէ՝ թէ հասարակական պատերազմը ինչ ծաւալ ունի ամբողջ Անգլիոյ մէջ: Իրաւամբ, չկայ ամիս մը, նոյնիսկ օր մը, որ կ'անցնի առանց տարբեր նպատակներ հետապնդող գործադուլի՝ մերթ աշխատավարձքի կրճատումի դէմ, մերթ աշխատավարձքի բարձրացում պահանջելու համար, մերթ գործադուլաբեկերու [knobsticks] պաշտօնակոչումի կամ չարաշահումներու շարունակութեան պատճառով, մերթ նոր մեքենաներու ներբերումի դէմ, կամ հարիւրաւոր ուրիշ պատճառներով: Այս գործադուլերը կրնան սկսիլ ընդհարումներով, բայց կրնան հիմք հանդիսանալ ծանրակշիռ պայքարի: Ճիշդ է, անոնք ոչինչ կրնան փոխել, բայց ամենաուժեղ կերպով կ'ապացուցեն՝ որ մօտ է քաղքենիներու [bourgeoisie] եւ բանուորներու միջեւ վճռական պայքարը:»(1)

Նկարագրելով 1899-ի Ռուսաստանը, Լենին կը շեշտէր աշխատաւորական գործադուլերուն մշտագոյ վիճակը այնտեղ. «Վերջին տարիները, աշխատաւորներուն գործադուլերը շատ յաճախակի դարձան Ռուսաստանի մէջ: Այլեւս չկայ մէկ արդիւնաբերական նահանգ մը՝ ուր տեղի ունեցած չըլլան զանազան գործադուլեր: Իսկ մեծ քաղաքներուն մէջ գործադուլերը երբեք չեն դադրիր: Հետեւաբար, հասկնալի է, որ աշխատաւորներուն եւ ընկերվարականներուն դասակարգային գիտակցութիւնը աւելի ու աւելի յաճախակի պիտի մտահոգուի գործադուլերու կարեւորութեան խնդիրով, զանոնք առաջնորդելու մեթոտներով եւ անոնց մասնակցող ընկերվարականներուն առաջադրանքներով:»(2)

Միացեալ Նահանգներու մէջ, կը գրէ Ահարոն Պրեննէր, «[ք]սանհինգ տարուան ընթացքին՝ 1881-1905, տեղի ունեցաւ տարեկան միջին հաշուով 1492 գործադուլ (օրական աւելի քան չորս գործադուլ), բողոքի երթ կատարելով տարեկան միջին հաշուով 381 հազար աշխատաւոր: 1914-1980-ին, տարեկան միջին հաշուով 1.7 միլիոն աշխատաւոր մասնակցեցաւ 3448 գործադուլի: Յստակօրէն, գործադուլերը հանդիսացած են գերակշիռ երեւոյթ մը ամերիկեան պատմութեան մէջ:»(3)

Չինաստանի մէջ 2012-ին արձանագրուած է 382 աշխատաւորական գործադուլ, 2013-ին՝ 656, 2014-ին՝ 1378(4):

Եգիպտոսի աշխատաւորական շարժումներու մասնագէտ Ճոէլ Պէյնին կը գրէ՝ թէ «Մուպարաքի հեռացումին նախորդող տասնամեակին, աւելի քան երկու միլիոն աշխատաւոր մասնակցած է շուրջ 3400 գործադուլի եւ հաւաքական գործողութեան:»(5) Մարդու Իրաւունքներու Տեղեկատուութեան Արաբական Ցանցի տուեալներով, 2009 Մայիսէն մինչեւ 2010 Դեկտեմբեր Եգիպտոսի մէջ տեղի ունեցած է աշխատաւորական 753 նստացոյց, գործադուլ, ցոյց, բողոքացոյց եւ հաւաքացոյց(6): Բաց աստի, նախապուրաքեան շրջանին բազմացած էին լրագրողներու, դատաւորներու, փաստաբաններու, ուսանողներու եւ այլ խումբերու բողոքացոյցերը:

Փոքր, մեծ եւ ընդհանուր ցոյցերն ու գործադուլերը մեծ թափով կը շարունակուին մինչեւ այսօր ամբողջ արդիւնաբերական աշխարհին մէջ: Բայց Էնկելսի նախատեսած վճռական պայքարը քաղքենիութեան ու բանուորութեան միջեւ՝ որ ենթադրուած էր վերջ տալ դրամատիրութեան (ասիկա նաեւ Մարքսի համոզումն էր), մինչեւ այսօր տեղի չունեցաւ: Պատճառները բազմազան են եւ յօդուածիս սահմաններէն դուրս է անոնց քննարկումը: Միայն մէկ խօսքով կարելի է ըսել՝ որ դրամատիրութիւնը սորվեցաւ վերարտադրել ինքզինքը, մէկ կողմէ գործածելով աշխատաւորներուն գոհացում տալու խաբուսիկ միջոցները, միւս կողմէ ուժեղացնելով ոստիկանական գոյութիւնները՝ որոնց գլխաւոր նպատակն է, ըստ օրէնքի կանոններուն, ամենավայրագ միջոցներով լռեցնել աշխատաւորական եւ այլ շարժումները: (Ո՞վ ըսաւ՝ որ ոստիկանական դաժանութիւնը բնորոշ է միայն միապետականբռնատիրական երկիրներուն: Այսօր, Ուոլ Սթրիթ մէկ օր չի կրնար դիմանալ առանց ոստիկանական պաշտպանութեան: Հանրութիւնը քաջատեղեակ է այնտեղ կատարուող համաշխահային աւազակութիւններուն մասին, քաջատեղեակ է որ այնտեղ կը գտնուին ընտրելախաւային մէկ տոկոսին գերիշխանութեան բանալիները: Բայց, շնորհիւ ոստիկանական ծայր աստիճան պաշտպանութեան, ոչ ոք կարող է թափանցել Ուոլ Սթրիթի հիմնարկները՝ զանոնք կազմաքանդելու եւ բարենորոգելու համար:)

Արդարեւ, մեծ ու փոքր ցոյցերն ու գործադուլերը կարելի չէ դիտել իբրեւ հասարակական ու քաղաքացիական շարժումներէ անջատ շարժումներ: Բոլորն ալ կրնան միանալ դիմադրութեան գաղափարին շուրջ:

Եգիպտոսի Ալ-Մահալլայի բանուորական ցոյցերը սերտօրէն կապուած էին Յունուար 25-ի յեղափոխութեան հետ: Ինչպէս Ալան Մաաս կը գրէ՝ որեւէ աշխատաւորական շարժում իր մէջ ունի հասարակական պայքարի վերածուելու ներունակութիւն.

«Դրամատիրութեան բնորոշ շահագործողի եւ շահագործուողի միջեւ տեղի ունեցող հիմնական հակամարտութիւնը բազմաթիւ դժգոհութիւններ կը յառաջացնէ աշխատաւոր ժողովուրդին մէջ: Բայց այս դժգոհութիւնները անհատապէս դիմագրաւելով ոչ մէկ արդիւնքի կարելի է հասնիլ: Ընդամէնը հրաժարելով իրենց անձնական աշխատանքէն, աշխատաւորները յայտնուած կ'ըլլան անզօր վիճակի մէջ, քանի որ շատ դիւրութեամբ կրնան փոխարինուիլ ուրիշով: Հետեւաբար, դիմադրութեան նոյնիսկ հիմնական գործողութիւնները կը պահանջեն անհատներու միացում:

«Որքան պայքարի տեւողութիւնը երկարի, այնքան աւելի կը հաստատուի միութեան կարիքը, եւ այնքան աւելի մասնակցողներուն համար համակեցութիւնը կը դառնայ գործադրութեան սկզբունք: Այսպէս, օրինակ, գործադուլերը յաճախ կը սկսին յատուկ աշխատավայրի մը հետ կապուած խնդիրով, օրինակ՝ աւելի բարձր աշխատավարձքի պահանջքով: Բայց փորձելով վաստակիլ այս պահանջքը, գործադուլաւորները կը ստիպուին գործադրել այնպիսի եղանակ մը՝ որ կ'ընթանայ հասարակութեան հրահանգներուն դէմ: Ասիկա կը նպաստէ ուրիշ խնդիրներու եւ քաղաքական հարցերու մասին արձակել նոր հորիզոններ, երբեմն բաւական հեռանալով սկզբնական դժգոհութենէն:

«Նախ եւ առաջ, որեւէ տեսակ պայքարի մէջ ներգրաւուած աշխատաւոր մարդիկ ի վերջոյ ստիպուած են դիմագրաւել իրենց ⇨ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

3 ➩

## ՄԱՅԻՍ ՄԷԿ

աստիճաններուն միջեւ կառուցուած բաժանումները, եւ մինչ պայքարը կը շարունակուի, համակեցութեան զգացումները եւ վտանգուած աւելի լայն հարցերու զգացողութիւնը կը սկսին նոյնքան կարեւոր դառնալ որքան սկզբնական խնդիրները:»(7)

Ճիշդ այս էր որ կատարուեցաւ Ալ-Մահալլայի 2008-ի ցոյցէն մինչեւ 2011-ի յեղափոխութիւնը:

Իսկ ո՞ւր մնաց բանուորական շարժումին գլխաւոր ու հռչակաւոր կարգախօսը՝ «Բանուորներ բոլոր երկիրներու՝ միացէ՛ք»: Եթէ բանուորներ հասկացողութիւնը հասկնանք լայն իմաստով՝ իբրեւ հասարակական շարժումի մասնակցողներ, կը գտնուի՞ արդեօք միացութիւն կամ համակեցութիւն տարբեր շարժումներու միջեւ: Բնականաբար, այս տեսակ շարժումները կարելի չէ ընդունիլ իբրեւ միատարր ամբողջականութիւն, հետեւաբար, շարժումներուն յարաբերութիւնները եւ առնչութիւնները կրնան ըլլալ տարբեր ու այլազան:

Կարելի՞ է, օրինակ, կապ գտնել 2008 Փետրուարի երկրորդ կէսին Երեւանի մէջ բռնկած զանգուածային ցոյցերուն եւ մէկ ու կէս ամիս ետք՝ 2008 Ապրիլ 6-ին, Եգիպտոսի Ալ-Մահալլայի մէջ ծագած բանուորական մեծ գործադուլին միջեւ: Առաջինը՝ նախնական հիմք ունենալով նախագահական ընտրութիւններու բացայայտ զեղծարարութիւնը, իր խորքին մէջ դիմադրութիւն մըն էր Հայաստանի իշխանութիւններուն ընդհանուր տնտեսական ու քաղաքական ձախողած քաղաքականութիւններուն, իսկ երկրորդը՝ ըլլալով հիւսուածեղէնի գործարանի բանուորներուն վերելքային շարժում մը, վերածուեցաւ անարդարութեան եւ շահագործումի դէմ պայքարի մը, ուր առաջին անգամ ըլլալով բացայայտօրէն պահանջուեցաւ Մուպարաքի հրաժարականը: Երկուքն ալ յառաջացուցին նոր քաղաքացիական հասարակարգային շերտ մը՝ գիտակից իր իրաւունքներուն: Երկու շարժումներուն միջեւ կազմական կապ կարելի չէ գտնել, քանի որ ո՛չ եգիպտացիները տեղեակ էին հայաստանցիներէն եւ ո՛չ ալ հայաստանցիները եգիպտացիներէն: Բայց երկուքն ալ արդիւնքն էին երկու երկիրներուն մէջ նոր ներխուժած նէօլիպերալիզմին, Հայաստանի պարագային՝ Քոչարեանի նախագահութեան երկրորդ շրջանէն (2003) սկսեալ, իսկ Եգիպտոսի պարագային՝ Ահմատ Նազիֆի եւ Կամալ Մուպարաքի շրջանէն (2004) սկսեալ: Չմոռնալով նաեւ երկու երկիրներուն մէջ հասունցած նոր երիտասարդութիւնը:

Մինչդեռ դժուար չէ ուղղակի կապ տեսնել 2011 Յունուարին սկսած արաբական յեղափոխութիւններուն միջեւ, ինչպէս նաեւ անոնց եւ նոյն տարուայ Սեպտեմբերին սկսած Գրաւել Ուոլ Սթրիթ շարժումին միջեւ, ուր Նիւ Եորքի աքթիւիսթները բացայայտօրէն յայտարարեցին իրենց համակրանքը Թահրիր հրապարակի ցուցարարներուն նկատմամբ: «Բանուորներ (կամ ճնշուածներ, տուժածներ, շահագործուողներ) բոլոր երկիրներու՝ միացէ՛ք» հասկացութիւնը հրաշալիօրէն գործեց այս պարագաներուն:

(Շար. 1)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ
1. Frederick Engels, *The Condition of the Working-Class: From Personal Observation and Authentic Sources*, in Marx & Engels, *Collected Works, Volume 4*, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 512:
2. V. I. Lenin, 'On Strikes', in V. I. Lenin, *Collected Works, Volume 4*, Moscow: Progress Publishers, 1960, p. 310:
3. Aaron Brenner, Benjamin Day, Immanuel Ness (editors), *The Encyclopedia of Strikes in American History*, Armonk, London: M.E.Sharpe, 2009, p. xxxi:
4. Congyue Dai, 'China: Significant Upsurge in Workers' Strikes and Protests in 2014', *In Defence of Marxism*, 27 January 2015, http://www.marxist.com/massive-upsurge-in-workers-strike.htm:
5. Joel Beinin, 'Egyptian Workers After June 30', *Middle East Research and Information Project*, 23 August 2013, http://www.merip.org/mero/mero082313:
6. http://www.anhri.net/:
7. Alan Maass, 'Marx's Theory of Working-Class Revolution', *Socialistworker.org*, 14 October 2010, https://socialistworker.org/2010/10/14/marxs-theory-of-revolution:



## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆԸ՝ 76 ՏՈԿՈՍ. ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐԸ ԽՕՍՈՒՄ ԵՆ ԿՐՃԱՏՄԱՆ ՄԱՍԻՆ. ՀՐԱՊԱՐԱԿ

1 ➩

*վիճակագրութեան ծառայութիւնը փաստում է աղքատութեան կրճատման մասին, այնուամենայնիւ, 2011 թուականի համեմատութեամբ Հայաստանում մեծացել է նպաստառուների թիւը, որը խօսում է աղքատութեան մեծացման մասին: Հրապարակը նշում է, որ 2011 թուականին նպաստառու ընտանիքների թիւը եղել է 84 հազար, 2012-ին՝ 101 հազար, 2013-ին՝ 103 հազար, իսկ 2015-ին՝ 105 հազար 408:*

*«Հարց. ինչպէ՞ս պատահեց, որ նպաստառուների թիւը մեծացաւ... մշտապէս լինում են, որ նպաստի ծրագրերում ընդգրկուելու համար համակարգ են մուտք գործում բարենպաստ դիրք ունեցողները, իսկ չատերն էլ ոչ օրինական ճանապարհով դուրս են մնում համակարգից», - գրում է օրաթերթը:*

*Ըստ Ազգային վիճակագրութեան ծառայութեան՝ Հայաստանում ամէնից հարուստների եկամուտները վերջին 7 տարիներին աճել են 2.1 անգամ, ամէնից աղքատների եկամուտները՝ նուազել:*

## ԻՍԼԱՄԱՑԱԾ ՀԱՅԵՐ՝ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ

2 ➩

պուրական, Տուրուբերան, Սիւնիք, Արցախ, սփիւռքներ եւ այլն, իւրաքանչիւրն ալ իր մէջ ունեցած տեղային ու գաւառային տարբերութիւններով՝ Վան, Մուշ, Շուշի, եգիպտահայ, ամերիկահայ, որոնք անվերջանալի են, ինչպէս անվերջանալի է մարդոց միջեւ գոյութիւն ունեցող մշակութային տարբերութիւնները: Իսլամ հայերը կը կազմեն այս տարբերութեան մէկ մասը, իրենք իրենց միջեւ եւս ունենալով տարբերութիւններ, պատմական՝ փաթիմեան հայեր, Անատոլիայի հայեր, տարածական՝ ըստ բնակավայրի, եւ մշակութային՝ ըստ իսլամի հետ ունեցած իրենց իրական կամ ձեւական առնչութեան եւ ըստ իրենց հայ նախնիներուն նկատմամբ ունեցած կենդանի կամ կենդանացուած յիշողութեան աստիճանին: Այս տարբերակային բազմազանութեան ոլորտին մէջ արդէն կարելի կ'ըլլայ անուանումներ ու եզրեր փնտռել, ինչպէս՝ իսլամ հայեր, եւ անկէ սերած իսլամացած-իսլամացուած հայեր, որոնց միջեւ կարելի կ'ըլլայ գտնել յարացուցային փոխներթափանցումներ:

(Շար. 1)



## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԲԵԼԳԻԱԿԱՆ ՈՃՈՎ (Ապրիլի 24-ի կապակցութեամբ)

1 ➩

վանքում ապաստանած հազարաւոր թութսիների, նաեւ այլ ռուանդացիների: Սակայն բելգիացի եւ ֆրանսիացի զինուորներին պատասխանատուութեան չեն կանչում:

Այսօր Ռուանդայում ֆրանսերէնի նկատմամբ տհաճութիւն կայ, ֆրանսիական ամէն ինչի հետ են նրանք կապում իրենց դժբախտութիւնները (տես՝ աֆրիկագէտ Դմիտրի Բոնդարենկոյի խօսքը lenta.ru-ում):

**Կոնգօ**

Լուսանկարները մնացել են այն վկայութիւնները, թէ ինչ դաժանութեամբ են բելգիացի գաղութարարները աշխատացրել Կոնգոյի տեղաբնիկներին:

Բելգիայի թագաւոր Լէոպոլդ 2-րդը 1877 թուին հետազօտում է Կոնգոն եւ պարզում, որ երկիրը հարուստ է ռեսուրսներով, որից յետոյ 1885-ի Բեռլինի կոնֆերանսի ժամանակ ձեւակերպում է, որ նպատակ ունի Կոնգոյում քրիստոնէութիւն տարածել եւ եւրոպական երկրները նրան ճանաչում են որպէս Կոնգոյի օրինական տիրակալ: Գաղութացնելով երկիրը հիմնադրում է Կոնգոյի ազատ պետութիւնը, որ գոյութիւն է ունենում 1885-1908 թթ, այն փաստացի Լէոպոլդի սեփականութիւնն էր:

Բնական կաուչուկի պահանջարկը գնալով աճում էր, իսկ Կոնգոն հարուստ էր կաուչուկի ծառերով: Բելգիացիները տեղաբնակներին ահաւոր դաժանութիւններով ստիպում էին առանց վճարուելու կաուչուկ հաւաքել:

Կանանց եւ երեխաներին պատանդ էին վերցնում եւ տղամարդկանց ստիպում էին կտրել կաուչուկի ծառերը: Միայն այն բանից յետոյ, երբ Լէոպոլդի պաշտօնեաները ստանում էին կաուչուկի անհրաժեշտ բաժինը, վերադարձւում էին կանանց եւ երեխաներին: Այս համակարգը օրինականացուել էր, եւ հսկիչները ստացել էին պատանդ վերցնելու օրինական իրաւունք, իսկ պատանդ վերցուած կանանց եւ երեխաներին բռնաբարում էին ու պահում ծայրայեղ վատ պայմաններում:

Հսկիչները կտրում էին նրանց ձեռքերը, ովքեր կաուչուկի օրուայ չափը չէին ապահովում, իսկ աւելի վատ աշխատողներին հրապարակայնօրէն սպանում էին: Լէոպոլդի դաժանութիւնները որակում են նաեւ որպէս ցեղասպանութիւն, նրա իշխանութեան ժամանակ Կոնգոյի բնակչութիւնը 20 միլիոնից դառնում է 10 միլիոն:

Զանգուածային սպանութիւնների, գիւղերի հրդեհումների եւ անօգնական ժողովրդի աղերսների ականատես եւրոպացի միսիոներները եւրոպական մամուլում ու գրքերով հրապարակում են վաւերագրութիւնները, որոնց շնորհիւ 1908 թուին Բելգիական կառավարութիւնը զրկում է Լէոպոլդին Կոնգոյի վրայ իշխանութիւնից: Կոնգոյում բելգիական գաղութարարութիւնը աւելի բարեկիրթ տեսք է ընդունում, բելգիացիները ստեղծում են դպրոցներ եւ առողջապահական հաստատութիւններ, եւ միեւնոյն ժամանակ երկրի շահագործումը աւելի մեծ չափերի են հասցնում, սկսում են շահագործել պղնձի եւ ալմաստի հանքերը, 1940-ական թուերին Կոնգոն դարձաւ թիթեղի, ոսկու, կոբալտի եւ ալմաստի առաջատար արտադրողը:

1959-ին Կոնգոյի բնակչութիւնը ապստամբում է գաղութարարների դէմ, 1960-ին Բելգիան Կոնգոյին տալիս է անկախութիւն՝ ձերբազատուելով երկրի համար ամբողջ պատասխանատուութիւնից:

Բելգիական գաղութարարութիւնը «թողեց Կոնգոն չահագործուած, թերզարգացած եւ կառավարական չատ թոյլ մակարդակում» եւ երկիրը խրուեց մինչեւ այժմ շարունակուող քաղաքացիական կռիւների մէջ:

**Բրիւսէլեան տեռոր**

Մարտի 22-ին Բելգիայի մայրաքաղաք Բրիւսէլում ահաբեկչական ակտերը խլեցին 34 մարդու կեանք: Իսկ անցեալ տարի Նոյեմբերի 20-ին Փարիզում ահաբեկչական ակտերի զոհ դարձան 130 հոգի: Միջազգային հանրութիւնը բելգիացի եւ ֆրանսիացի ժողովրդի հետ սգում էր զոհերի համար:

Երկու ահաբեկչութիւնն էլ իր վրայ էր վերցրել Իսլամական պետութիւնը, մի կազմակերպութիւն, որ առաջացել է ԱՄՆ-ի եւ Արեւմուտքի պատճառով 2003-ին Իրաքի, 2011-ին Լիբիայի իշխանութիւնները տապալելու, ապա 2012-ից սկսած Սիրիան աւերելու արդիւնքում: Լիբիայի եւ Սիրիայի աւերման մէջ մեծ է նաեւ Ֆրանսիայի եւ Բելգիայի դերը:

Երեք արաբական պետութիւններում ստեղծած դժոխքի քուրաները հարիւր հազարաւոր զոհեր են խժռել եւ միլիոնաւոր մարդկանց փախստական դարձրել, միջազգային հանրութեան անտարբեր հայեացքի առաջ: Բրիւսէլի ու Փարիզի ահաբեկչութիւնները այդ դժոխային կրակի փոքրիկ լեզուակներն էին միայն:

ԹԵՐԹ.am

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly



P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1767 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 19 ՄԱՅԻՍ 2016 *ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ.* عدد رقم ١٧٦٧ الخميس ١٩ مايو ٢٠١٦


## ՕԼԻԳԱՐԽՆԵՐԻՆ ԶԳՈՒՇԱՑՈՒՄ ՍԱՀՄԱՆԻՑ. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԻՍՈՒԵՑ

### ՀԱՅԿԱԶՆ ՂԱՀՐԻՅԵԱՆ

Արցախ այցելած ՀՀ վարչապետ Յովիկ Աբրահամեանը յայտարարել է, որ քառօրեայ պատերազմը ցոյց տուեց՝ հակառակորդը չի կարող հայ ժողովրդին պարտադրել լքել իր հողը: Նա ասել է նաեւ, որ մենք պէտք է միշտ համախմբուած լինենք, որպէսզի յաղթենք:

Յովիկ Աբրահամեանը ճիշտ է՝ հակառակորդը չկարողացաւ հայ ժողովրդին ստիպել լքել հողը: Բայց հայ ժողովրդի մէկ այլ հակառակորդ՝ քրէա-օլիգարխիկ համակարգը, արդէն երկու տասնամեակ չահագործում, իրաւազրկում, տեղահանում է հայ ժողովրդին իր հայրենիքից, նրան դարձնելով գաղթական:

Այս համակարգը խլրացրել է պետական իշխանութեան լծակները եւ ազգային բարիքը, ունեզրկելով հանրութեանը եւ նրան զրկելով հաւասար մրցակցային հնարաւորութիւնից, երկրի զարգացմանն իր նպաստը բերելու հնարաւորութիւնից:

Քառօրեայ պատերազմը սակայն կտրուկ փոխել է իրավիճակը երկրում, մասնաւորապէս հանրային գիտակցութեան մէջ իսկական յեղափոխութիւն է կատարուել: Հանրութիւնը տեսել, զգացել է, որ ինքն է երկրի իրական տէրը, ինքնակազմակերպուել է, տէր կանգնել իր բանակին ու սկսել իրացնել իր պատասխանատուութիւնը: Եւ սկսել է հարցեր բարձրացնել, էական հարցեր, ինչն ակնյայտ լարուածութիւն ու խուճապ է առաջացրել համակարգում:

Համակարգը հիմա փորձում է համախմբման կոչերով. կիսատ-պռատ քայլերով գնել իր ինդուլգենցիան: Խօսւում են գազի ու էլեկտրաէներգիայի ինչ որ ծիծաղելի էժանացման, պարտադիր կուտակային համակարգը մէկ տարով յետաձգելու եւ այլնի մասին: Այսօր հայկական մամուլում տեղեկութիւն տարածուեց, որ խոշոր բիզնէսին պարտաւորեցրել են իրենց չահոյթից մասնաբաժին հանել բանակին:

Այսինքն, համակարգը փորձում է ամէն գնով պահպանել իր դիրքերն ու ստուերային անօրինական իրավիճակը, փորձելով խուսափել հանրային պահանջներից ու փոփոխութիւններից:

Սակայն քառօրեայ պատերազմում տեղի է ունեցել անհրջելին՝ տապալուել է ոչ միայն արտաքին թշնամին, այլեւ յստակ սահմանուել է ներքին թշնամու՝ քրէական օլիգարխիայի պատասխանատուութիւնը:

«Բոլորս յոգնել ենք այս վիճակից, յոգնել ենք որովհետեւ էլ տեղ չկայ դիմանալու, չի կարող, որ ես իմ կեանքը դնեմ, իմ առողջութիւնը դնեմ, ու տեսնեմ, որ դիմացը ոչ մի բան չեմ ստանում, որ ես մարդահաշիւ չեմ, ես մենակ պէտք եմ, որ իրանց ունեցուածքը պաշտպանեմ: Մի բան էլ ես, չէ՛, պէտք է ունենամ, որ մի բանի վրայ էլ իմ սիրտը ցաւայ»: Սա սահմանին մարտական հերթապահութիւն անող զինուորականի խօսքն է, որտեղ ամէն ինչ յստակ սահմանուած է:

Սա է իրավիճակը, եւ նկատելի է, որ համակարգը սպառել է պատերազմի օրերի «լռութեան քուէն», եւ հիմա արագօրէն սպառում է յետպատերազմեայ ժամանակաշրջանի «սպասման քուէն»: Հայաստանը կիսուել է, եւ դա չի կարելի չնկատել: Աւելի ճիշտ՝ Հայաստանը բիւրեղացել է ու սահմանուել՝ դա ժողովուրդն է իր բանակով, իսկ միւս կողմում քրէական օլիգարխիայի համակարգն է՝ իրեն ծառայութեան անցած քաղաքական դասով, որը համախմբման կոչերով յոյս ունի չարունակել նախկին ձեւով:

Այդ «համախմբումը» չի լինելու եւ չի կարող լինել, դա անհնար է: Համակարգը կամ պէտք է ծառայութեան անցնի ժողովրդին եւ իրացնի իր պատասխանատուութիւնը, կամ տեղի է ունենալու անխուսափելին: Վտանգաւոր իրավիճակ է առաջացել, բայց ոչ թէ Հայաստանի, այլ այդ համակարգի համար:

http://www.lragir.am

## ՍԱՐԳՍԵԱՆ-ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՎԻԵՆՆԱՅԻ ՄԷՋ

*Վիեննայի մէջ, Մայիս 16-ի երեկոյեան, Սերժ Սարգսեան եւ Իլհամ Ալիեւ կը մասնակցին ԵԱՀԿ Մինսքի խումբի համանախագահող երկիրներու արտաքին գործերու նախարարներու նախաձեռնութեամբ եւ ԱՄՆ պետքարտուղար Ճոն Քերիի, Ռուսաստանի արտաքին գործոց նախարար Սերկէյ Լաւրովի, Ֆրանսայի եւրոպական հարցերով պետքարտուղար Արլէմ Տեզիրի մասնակցութեամբ տեղի ունեցած քննարկումին:*

*Հանդիպումը արդիւնքն էր ապրիլեան քառօրեայ հակամարտութեան թողած հետեւանքներուն, նպատակ ունենալով բանակցային հողի վրայ լուծել ղարաբաղեան խնդիրը: Մասնակցողները համաձայնութիւն կը կայացնեն քայլեր ձեռնարկել տեղադրելու մշտադիտարկումի եւ միջադէպերու յետաքննութեան մեքանիզմ, աւելցնելու ԵԱՀԿ գործող նախագահի անձնական ներկայացուցիչի անձնակազմի կարողութիւնները եւ վերսկսելու բանակցային գործընթացքը:*

*Վիեննայէն վերադարձի ճանապարհին, օդանաւին մէջ, Սերժ Սարգսեան հարցազրոյց կու տայ իր հետ թռչող լրագրողներուն: Այնտեղ բացայայտօրէն կ'արտայայտուի ապրիլեան կորուստին մասին. «Եթէ զուտ մետրով չափենք, ապա հայկական ուժերը, որոնք որպէս անվտանգութեան գօտի ունէին 800 հազար հեկտար, դրանից կորցրել են մօտ 800 հեկտարը: Դա չի կազմում անգամ մէկ հազարերորդ մասը», աւելցնելով՝ որ այդ տարածքները ոչ մէկ մարտավարական կամ ռազմական նշանակութիւն ունին:*

*Սիվիլնէթի քաղաքական մեկնաբան Դերենիկ Մալխասեան կու տայ իր մեկնաբանութիւնը. «Ապրիլի 4-ին ԵԱՀԿ անդամ երկրների դեսպանների հետ հանդիպման ժամանակ Սերժ Սարգսեանը յայտարարել էր. «Ես ձեզ հաւատացնում եմ, որ որեւէ տարածք ադրբեջանցիները չեն ազատագրել, այս պահին ողջ շփման գծի երկայնքով ընդամէնը մի փոքրիկ հատուած հարաւում եւ մի փոքրիկ հատուած հիւսիսում, որ յոյս ունեմ՝ մինչեւ մեր շփումն աւարտենք, այլեւս այդ հատուածը*

↪ 4

## ՂԱՐԱԲԱՂ ՕԳՆՈՒԹԻՒՆ ՈՒՂԱՐԿԵԼՈՒՑ ՅԵՏՈՅ ԱԼԵՔՍԱՆԵԱՆԸ ԹԱՆԿԱՑՐԵԼ Է ԱԼԻՒՐԸ. *ՀՐԱՊԱՐԱԿ*

*Ղարաբաղին օգնութիւն ուղարկելուց յետոյ Սամուէլ Ալեքսանեանը թանկացրել է ալիւրը, գրում է Հրապարակ օրաթերթը՝ ընդգծելով, որ մի քանի փուռ օգնութիւն ուղարկելուց յետոյ Ալեքսանեանը որոշել է անմիջապէս վերականգնել կրած վնասն ու Մայիսի 2-ից մօտ 1 դոլարով բարձրացրել է մէկ պարկ ալիւրի գինը:*

*«15 տարի է, ինչ Հայաստանում ալիւրի գինը թելադրում է Սամուէլ Ալեքսանեանին պատկանող Ալեքս Գրիգ Փակ Բաժնետիրական Ընկերութեան (ՓԲԸ) Բաղրամեանի ալրաղաց գործարանը: Տարեսկզբին այս գործարանը 50 կիլոգրամանոց մէկ պարկ ալիւրը վաճառում էր 29,2 դոլարով, իսկ երբ սկսեց Ռուսաստանից ալիւր ներկրել, ալիւրի գինն աստիճանաբար իջաւ-հասաւ 22 դոլարի: Ալիւրի գները նշում ենք դոլարով, քանի որ տնտեսվարողները հաւաստիացնում են, որ Ալեքսանեանին պատկանող գործարանից ալիւրը կարելի է ձեռք բերել բացառապէս դոլարով: Իսկ Մայիսի երկուսից 50 կիլոգրամանոց մէկ պարկ ալիւրը դարձել է 23 դոլար: Ու որպէսզի գործարարպատգամաւորը «պալիտ» չլինի, հրահանգել է, որ ալիւրի շուկայում միւս խոշոր ընկերութիւնը՝ Մանան Գրէյնը, նոյնպէս դիմի այդ քայլին: Այս երկու ընկերութիւններին է բաժին հասնում ալիւրի շուկայի 80 տոկոսը: Միւս ընկերութիւններում հիմնականում գնային փոփոխութիւններ չեն նկատւում»,- գրում էՀրապարակը:*

*Օրաթերթի փոխանցմամբ, իրենք զրուցել են այս երկու խոշոր ընկերութիւնների ներկայացուցիչների հետ, սակայն ալիւրի թանկացման վերաբերեալ կոնկրէտ պատճառաբանութիւն չեն ստացել:*

*Թերթի հետ զրոյցում Մանանա Գրէյն ընկերութեան սեփականատէր Գուրգէն Նիկողոսեանը նշել է, որ թանկացումը պայմանաւորուած է Ռուսաստանում ցորենի գների աճի հետ: «Իրականում ռուսական ցորենի շուկայում Ապրիլի 1-ից մինչ օրս գրեթէ փոփոխութիւն չի եղել, ապրիլմէկեան գները*

↪ 4

## ՍԱՄՈՒԷԼ ԲԱԲԱՅԵԱՆԸ ՎԵՐԱԴԱՐՁԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆ. Ի՞ՆՉ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ Կ'ՈՒՆԵՆԱՅ ԹՇՆԱՄՈՒ ՀԱՄԱՐ ԱՀՈՒՍԱՐՍԱՓ ԴԱՐՁԱԾ ԳՈՐԾՉԻ ՎԵՐԱԴԱՐՁԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

Ժողովուրդ *օրաթերթը գրում է. «Ժողովուրդի տեղեկութիւններով՝ ԼՂՀ պաշտպանութեան նախկին նախարար Սամուէլ Բաբայեանը արդէն մի քանի օր է վերադարձել է Հայաստան: Ըստ լուրերի՝ նա ներկայումս գտնւում է Երեւանում եւ փորձում է գնահատել հրապարակային քաղաքական դաշտ վերադառնալու իր հնարաւորութիւնները: Յիշեցրնենք, որ Սամուէլ Բաբայեանը ղարաբաղեան պատերազմի հերոսներից է, ում կեանքը խաղաղ պայմաններում, մեղմ ասած, այդքան էլ չստացուեց: ԼՂՀ նախագահ Արկադի Ղուկասեանի դէմ մահափորձ կազմակերպելու մեղադրանքով 2000*

↪ 4

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՆ ԱՅՍ ՏԱՐՈՒԱՅ ՉՈՐՍ ԱՄԻՍՆԵՐԻՆ 173 ՄԻԼԻՈՆ ԴՈԼԱՐՈՎ ԱՒԵԼԱՑՐԵԼ Է ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

Ժողովուրդ *օրաթերթը գրում է. «Այս տարուայ առաջին չորս ամիսներին ՀՀ կառավարութեան կողմից պետական բիւջէի ծախսերը հոգալու նպատակով ներգրաւած միջոցներից 345 միլիոն 500 հազար դոլարը չեն եղել եկամտային գումարներ: Պաշտօնական փաստաթղթերից* Ժողովուրդը *տեղեկացաւ, որ ՀՀ կառավարութիւնն այս տարուայ չորս ամիսներին 173 միլիոն դոլարով աւելացրել է պետական պարտքը եւ մօտ 172 միլիոն դոլարով էլ նուազեցրել է Հայաստանի միջազգային պահուստները: Այլ կերպ ասած՝ պետական բիւջէի խնդիրները լուծելու համար կառավարութիւնը մի կողմից նորանոր պարտքեր է վերցրել, միւս կողմից էլ ծախսել է «սեւ օրերի» համար ետ գցուած պահեստային միջոցները: Եթէ որեւէ ընտանիք կամ ընկերութիւն նման վիճակում է յայտնւում՝ առանց եկամուտների աւելացման յստակ հեռանկարի, ապա ակնյայտ է, որ սնանկացումը ոչ միայն սարքերի եռեւում չէ, այլ իրատեսական եւ մօտ ապագայ է: Բայց պետութիւնների սնանկացումից հարիւր-հազարաւոր, երբեմն նաեւ միլիոնաւոր մարդկանց ճակատագրեր են կախուած լինում»:*

## ԻՍԼԱՄԱՑԱԾ ՀԱՅԵՐ՝ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ

3. Ընդհանրապէս հայ պատմագրութիւնը կամ պահանջատիրութիւնը շատ քիչ արծարծած է ազգային պետութեան (nation state) խնդիրը: Բացառիկօրէն կարեւոր խնդիր մը պարզապէս դուրս մղուած է ուշադրութենէն: Ազգային պետութեան վերջնական կազմաւորումը կապուած է ԺԹ. դարու Եւրոպայի հետ եւ կը հանդիսանայ դրամատիրական յարաբերութիւններուն պտուղը: Ազգային պետութիւն հասկացողութիւնը կապուած է բնակիչներու էթնիք մեծամասնութեան եւ ի հարկին միաէթնիք ամբողջութեան գաղափարին հետ:

Ցեղասպանութիւնները սերտօրէն կ'առնչուին ազգային պետութեան մը կազմութեան հետ: Հայոց ցեղասպանութեան հիման վրայ կառուցւեցաւ Թրքական ազգային պետութիւնը՝ որ եկաւ փոխարինելու կայսերական պետութեան: Հրեաներուն, գնչուներուն եւ այլ «կիսամարդոց» դէմ կատարուած նացիական ցեղասպանութիւնը կը միտէր գերմանական ազգային պետութիւնը դարձնել էթնիքապէս մաքրամաքուր: Իսրայէլի ազգային պետութիւնը հիմնուեցաւ պաղեստինցիներու ցեղասպանութեան վրայ: Ռուանտայի ցեղասպանութիւնը կարելի դարձաւ միայն երբ հայկական դատին թիկունք կանգնող մարդասէր ֆրանսացիները (եւ իրենցմէ առաջ պելճիքացիները) իր վերջնական փուլին հասցուցին բնատոհմիկ երկու ցեղերուն՝ Թութցիներուն եւ Հութուներուն ազգայնականացումը, անկարելի դարձնելով անոնց հաշտ գոյակցութիւնը ազգային պետութեան մը սահմաններուն մէջ:

Գալով ներկայ Թուրքիային, երկիր մը՝ որ իր ազգային պետութեան համար մէկ դար առաջ դիմած է էթնիքական մաքրագործումի, ինչպէ՞ս կրնայ ընդունիլ միլիոնաւոր զանգուածի մը վերազարթնումը կամ վերակազմաւորումը իբրեւ էթնիքական միաւոր: Ինչպէ՞ս Էրտողանի նման դիւանագէտ մը՝ որ գիտէ երբ պոռալ, երբ հանդարտեցնել, երբ թշնամանալ, երբ բարեկամանալ, կրնայ հանգիստ սիրտով թոյլատրել հարիւր տարի առաջ «յաջողութեամբ» վերացուած զանգուածի մը վերադարձը: Կրնայ թոյլատրել միայն այն պարագային՝ եթէ Թաքուն ու երկարամեայ ծրագիր մը մշակած ըլլայ այդ վերականգնուած (վերականգնուելիք) զանգուածը վերջնականապէս վերացնելու, եթէ նպատակադրած ըլլայ հայերուն ազգայնական պատկանելիութիւնը վերականգնելով եւ հայերուն ու քուրտերուն միջեւ փոխադարձ ատելութիւն սերմանելով, երկու բնիկ ժողովուրդները առճակատել դէմ յանդիման: Քաղաքակիրթ աշխարհը յաճախ կ'ուզէ մոռնալ, որ մինչեւ այսօր, Անատոլիայի մէջ կը շարունակուին պետականօրէն մշակուած հակաքրտական վայրագութիւններն ու տեղահանումները, որոնց նկատմամբ միջազգային լրատուութիւնը կը պահպանէ քար լռութիւն: Իրականութիւնները անաչառօրէն ու առարկայականօրէն ներկայացնող միջազգային լրատուութեան համար շատ աւելի կարեւոր է Քրտական Բանուորական Կուսակցութեան ահաբեկիչ յորջորջումը քան ժողովուրդի մը կոտորումը:

Քրտական հարցը տակաւին չլուծուած հարց մըն է Թրքական ազգային պետութեան մէջ: Հրանդ Տինք իր հարցազրոյցներուն մէջ յստակօրէն դիտարկած է քուրտերը հայերուն դէմ հրահրելու իշխանութեան միտումը: Կը նշանակէ՝ պէտք է գործել ծայրայեղ զգուշութեամբ:

Այս բոլորը չի նշանակեր՝ որ պէտք է անտեսել ու մոռնալ իսլամացած զանգուածը: Ընդհակառակը, անոնց գոյութեան հարցը պէտք է տեղ գտնէ լուրջ, ինքնահաստատումի բարդոյթէ զերծ ոչ-արկածախնդիր կազմակերպութիւններու ծրագիրներուն մէջ: Իսկ ասիկա պէտք է կատարուի կազմակերպուած ու մտածուած կերպով: Կարեւոր է մշակել երկարատեւ ծրագիր, որուն պատրաստութեան համար մասնակցին ոչ թէ «համակիր» անձեր եւ մատակարարողներուն ու հովանաւորողներուն «նուիրեալ» մարդիկ, այլ ամենալայն ուղղութիւններու պատկանող մտաւորականներ եւ մասնագէտներ, որոնց պատկանելիութիւնը նախ եւ առաջ ուղղուած ըլլայ դէպի նիւթը, դէպի այդ տարածութեան վրայ ապրող կենդանի մարդիկը: Ծրագիրի մշակումին պարտադրաբար պէտք է մասնակցին նաեւ խնդրոյ առարկայ իսլամ հայերը:

Այսպիսի ծրագիր տակաւին գոյութիւն չունի, ճիշդ այնպէս ինչպէս գոյութիւն չունին սփիւռքահայերուն, սփիւռք-հայրենիք կամ հայ-թուրք յարաբերութիւններուն վերաբերեալ երկարատեւ (եւ ոչ ժողովէ ժողով որոշուող) ծրագիրներ, հիմնուած խոր, կայուն եւ համակողմանի ուսումնասիրութեան վրայ եւ ուղղուած ապագայի 10-20 տարիներուն (բացառութիւն մըն է Կիւլպէնկեան հաստատութեան տնօրէն Ռազմիկ Փանոսեանի ջանքերով կատարուած խիստ ուշագրաւ փորձը՝ *Հայերը 2115-ին. ռազմավարական ուղղութիւններ 21-րդ դարի համար*, որ իր տարողութեան համազօր արձագանք չէ գտած սփիւռքահայ մամուլին մէջ):

Պիտի աւելցնել՝ որ դատական որոշումները եւ այդ որոշումներուն պարտադրանքները չեն կրնար լուծել ազգային պետութեան հարցը, այլ կրնան աւելի եւս բարդացնել պետութեան մը ներսը գտնուող մարդկային էթնիքական յարաբերութիւնները:

Անհատական նախաձեռնութիւնները եւս խիստ վտանգաւոր են, որոնք կրնան կա՛մ նպաստել Թրքական իշխանական Թաքուն ծրագիրներու իրականացումին, եւ կա՛մ կրնան պարզապէս վտանգել այդ իսլամացած տարրի կեցութիւնը Արեւմտահայաստանի եւ Անատոլիայի մէջ:

Ուշադիր պէտք է ըլլալ՝ որ երկրորդ անգամ Արեւմտահայաստանը չպարպուի հայութենէն, այս անգամ վերջնական կերպով: Կարեւոր է որ հայերը լաւ սերտեն նախաեղեռնեան շրջանի որոշ արկածախնդրական-անհատապաշտական գործունէութիւնները, որոնց Թուրք իշխանութիւնները անմիջապէս կը հակադարձէին նոր բռնութիւններով ու կոտորածներով:

4. Դասախօսութեան ընթացքին Րաֆֆի Պետրոսեան քանիցս ներկայացուց անձնապէս իր տարած գործունէութիւնը Արեւմտահայաստանի մէջ: Յիշեց իր նպաստը Տիարպեքիրի հայկական եկեղեցին վերականգնելու գործին մէջ, եւ ուրախութեամբ նկարագրեց հազարաւոր քուրտերու ներկայութիւնը բացումի արարողութեան, որոնք, ըստ տրամաբանութեան, պէտք է ըլլային տիգրանակերտցի իսլամացած հայեր: Դասախօսը բացատրեց նաեւ՝ թէ ինչպէս յաջողեցաւ իսլամացած հայերու խումբեր զբօսաշրջիկային այցելութիւններու տանիլ Հայաստան, եւ թէ ինչպէս յաջողեցաւ քանի մը անձ Էջմիածինի մէջ մկրտել հայ քրիստոնեայ: Ան բաւարար բացատրութիւն չտուաւ (կամ ժամանակ չունեցաւ տալու) իր համագործակիցներուն կամ գործակցող կազմակերպութեան մասին, եթէ գոյութիւն ունին: Եկեղեցիի վերականգնում, զբօսաշրջիկային խումբերու կազմակերպում՝ Թրքական պետութեան տեսողութեան առջեւ, ենթադրուած չեն դիւրամատչելի գործողութիւններ ըլլալ: Պարզապէս երեւոյթը կարօտ էր յաւելեալ բացատրութիւններու, գոնէ ունկնդիրներուս անձնական հետաքրքրութիւնը յագեցնելու համար:

Պետրոսեան ընդունեց նաեւ, որ իսլամ հայերը այս քայլերուն կը դիմեն վտանգելով իրենց կեցութիւնը, աշխատանքը եւ դրացիական յարաբերութիւնները: Այսինքն, այս քայլին կը դիմեն անձնական պատասխանատուութեամբ: Այստեղ արդէն լուրջ խնդիր մը կայ: Կարելի՞ է հազար, տասնհազար կամ միլիոն իսլամ հայերու հայականութեան վերականգնումը յանձնել սեփական պատասխանատուութեան: Նախ, կարեւոր է գտնել կապը, տիալեքթիքը մէկ վիճակէն միւսը անցնելու համար, անցում մը՝ որ հիմնուած ըլլայ մտաւոր ու հասարակական արմատական նախապատրաստութեան վրայ: Ապա, կարեւոր է երաշխաւորել անցում կատարած անձերուն ապագայ կեցութիւնը պետութեան եւ միջավայրին մէջ: Այլապէս, կատարուածը կրնայ ունենալ տխուր վախճան: Եւ ճիշդ այս պատճառով, կազմակերպչական երկարատեւ նախապատրաստութիւնը՝ մասնակցութեամբ ամենատարբեր հորիզոններու պատկանող մարդոց, բայց ոչ ինքնանպատակ շահոյթէ մղուած կազմակերպութիւններու, կը ներկայացնէ հրատապ անհրաժեշտութիւն մը:

5. 2013 Նոյեմբեր 2-4-ին, Պոլսոյ Համալսարանին մէջ տեղի ունեցաւ՝ *Խորհրդաժողով՝ իսլամաց(ու)ած հայերու մասին*, կազմակերպութեամբ Հրանդ Տինք Հիմնարկին:

↳ 4

## ՍԱՐԴԱՐԱՊԱՏԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ՝ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՉՔՈՎ

98 տարի առաջ, 1918 Մայիս 21-27-ին, սարսափելի, անընդունելի ու երբեմն անհասկնալի կորուստներէ ու ճակատագրական պարտութիւններէ ետք՝ որոնց հետեւանքները մինչեւ այսօր կը կրենք, ժողովրդական աննախադէպ համակեցութեան ու ինքնակազմակերպութեան շնորհիւ տեղի ունեցաւ Սարդարապատի հերոսամարտը, փրկելով Արեւելեան Հայաստանի մնացած բուռ մը հողը:

Այդ ժամանակ, Երեւանի մէջ շաբաթը երկու անգամ լոյս կը տեսնէր ՀՅԴ Արեւմտեան Հայաստանի Կեդրոնական Կոմիտէի *Աշխատանք* լրագիրը, որ հերոսամարտին յաջորդող առաջին համարին՝ Մայիս 29-ին, սկսաւ հրատարակել խմբագրականներ՝ նկարագրելով յետ-սարդարապատեան ապրումները: «Գաւառացի» երեւանցիները (ազնուապաշտ Թիֆլիսեցիներն ու պաքուցիները Երեւանը կ'անուանէին «գաւառ») շատ աւելի մօտէն տեսան ու ապրեցան Սարդարապատի օրերը քան Թիֆլիս ու Պաքու նստած «մայրաքաղաքցի»-ները: Ստորեւ, *Ջահակիրի* ընթերցողներուն կը փափաքինք ներկայացնել այդ «գաւառական» խմբագրականներէն քաղուածքներ, ուր կարելի է գտնել կենդանի եւ իրական յուզումներ ու մտահոգութիւններ պատերազմին նկատմամբ: Աւելորդ չէ նշել նաեւ, որ Մայիս 28-ին Թիֆլիսի մէջ յայտարարուած Հայկական Հանրապետութեան գործնական ազդեցութիւնը երեւանցիները զգացին այդ Թուականէն քանի մը շաբաթ ետք միայն, իրենց գլխաւոր մտոլորումները կեդրոնացած ըլլալով նախա-սարդարապատեան կորուստներուն, սարդարապատեան փրկութեան եւ յետ-սարդարապատեան կորուստ-փրկութեան խառն միտքերուն վրայ:

Ահաւասիկ քաղուածքներ *Աշխատանք*ի խմբագրականներէն.

«Թուրք վայրագ կառավարութիւնը, որ չուզեց ճանչնալ ոչ մէկ դաշն ու պայման, որ մեր ըրած զիջումներու պարագային վայրենի քմծիծաղով շարունակեց ալ աւելի առաջանալ, այսօր հանդիպեցաւ ամուր պատնէշի մը եւ առաջին խորտակումն ունեցաւ:

«Այլեւս դանակը ոսկորին էր հասած. մեր ժողովրդի առողջ եւ անսխալական բնազդը զգաց մօտալուտ սարսափելի աղէտը, ան այլեւս բաւ համարեց Բաթում եւ Թիֆլիս նստողներու խաղք խայտառակութիւնները ու ծառացաւ իր թշնամիին դէմ այն րոպէին, երբ անիկա յարմար առիթը համարած էր հայութեան մահացու հարուած տալու, զայն իր սիրտէն զարնելու: Ան որ կ'ուզէր կտրել Երեւանի հայութիւնը ամէն կողմէ ու զայն պաշարելով բնաջինջ ընել, այժմ շշմած է անսպասելի ուժգին հարուածներէն, ինկած է սուգի միջեւ եւ հետզհետէ կ'օղակուի. թէ Սարդարապատի ուղղութեամբ եւ թէ Մեծ-Ղարաքիլիսէի կողմէ մեր զինուորներն անվեհեր ու խիտ սարքերով կը յառաջանան եւ արագ ու հատու հարուածներ կու տան թշնամիին ու կը հալածեն զայն:

«Եւ սակայն, մեր այս առաջին յաղթանակները թող չգինովցընեն մեզի, եւ ո՛չ ալ մեր կրելիք պարտութիւններն ու տուած զոհերը ընկճեն մեր դիմադրական ոգին, այլ՝ ըմբռնելով որ թշնամին շատ քիչ ուժով եւ միայն մեր տեղի տալու պատճառով կրցաւ կարճ ժամանակուայ ընթացքին Երզնկայէն մինչեւ Ալէքսանդրապոլ հասնիլ, ալ աւելի կրկնապատկենք ու լարենք մեր ուժերը ու պատրաստուինք նոր կռիւներու եւ նոր յաղթանակներու: Եթէ թշնամին այսօր մեր առաջին եւ փոքր հարուածի առաջ պարտուեցաւ ու փախուստի մատնուեցաւ, բայց վաղը անիկա պիտի աշխատի նոր ուժեր համախմբել, յարձակումներու ձեռնարկել՝ իր ծրագիրը իրագործելու, մեզի կոտորելու եւ Կովկասը տիրապետելու համար:»

(«Յաղթանակի հաւատքով», *Աշխատանք*, Երեւան, Գ. տարի, թիւ 3 (203), 29 Մայիս 1918)

«Այսօր լրացաւ մեր հերոսամարտի եւ մեր յաղթանակներու առաջին տասնօրեակը:

«Երեւանի հայութիւնը հիմա, մի՛ս մինակ, գոյութեան սրբազան պայքարի մէջ է մտեր իր դարաւոր թշնամիին հետ, հաւաքականօրէն ապրելու կամ մեռնելու որոշումով: Ու այս վերջին տասնօրեայ պայքարն ապացոյց է, թէ ուրիշ ճար-ճամբայ չկար օրհասական կռիւէն բացի, թէ մեր ժողովուրդը չի սխալուեցաւ եւ թէ կռուելու վճիռ տուող ու ինքնապաշտպանութեան պայքար մղողը չի մեռնիր բնաւ:

«Սակայն եւ այնպէս, մեր այդ գոյամարտն ալ աւելի արդիւնք կրնար տալ, եթէ մենք ամբողջապէս կտրուէինք Թիֆլիսէն ու բանակցութիւններէն, եթէ յոյսի առագաստ մը չունենայինք, եթէ մեր զինուորութեան ուղեղէն վերցուէր ուրիշ միջոցներով փրկուելու գաղափարը եւ մանաւանդ՝ եթէ մեր ղեկավարները չի յուսահատէին փոքրիկ անյաջողութենէ մը, կանգ չառնէին ոեւէ յաղթանակաբեր զոհաբերութեան առաջ ու ալ աւելի թափ տային մեր կռիւին:

«Երբ Թիֆլիսէն նոր հեռագիր, նոր հրահանգ կամ պայման կու գայ, ստրկական ոգին վերստին կը վարակէ շատերը, որոնք կ'աշխատին հաշտութեան, զիջման ճանապարհով վերջացնել մեր պատուաբեր կռիւը, թուլացնել զինուորներու ռազմական կորովը եւ ժողովրդի ուշադրութիւնը դարձնել դէպի անարիւն, անզոհ կեանքը եւ ստրկական ապագան: Թիկունքը գտնուող ժողովրդի եւ ղեկավար շրջաններու վրայ կ'ազդեն փոքրիկ

↳ 3

## ՍԱՐԴԱՐԱՊԱՏԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ՝ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՉՔՈՎ


2

անյաջողութիւններ կամ պարտութիւններ ու սպանըւածներու դիակներ, եւ անոնք իրենց վարակիչ յուսահատութիւնը կը հասցնեն մինչեւ ճակատը ու կը թափանցեն կռուողներու խիտ շարքերը: Դժբախտաբար պէտք է խոստովանիլ, որ այսօր թիկունքը կ'ազդէ ճակատի եւ ճակատը պաշտպանողներու վրայ, թիկունքը՝ իր լեգէոն թափառաշրջիկներով, իր լեփ-լեցուն մայթերով, իր դասալիք սպաներով, իր թեւանցուկներու շարքերով եւ վերջապէս ամենէն աւելի՝ իր ղեկավարող մարմնով, որ խնամքով կը պահէ ու կը հովանաւորէ վերոյիշեալները:

«Ինչ որ ներքին թուլահոգիներ, ստրկամիտներ եւ վաճառուածներ կան, որոնք ամէն րոպէ լքում ու յուսահատութիւն կը ձգեն ժողովրդի ու զօրքի մէջ, ղեկավարներ ալ կան, որոնք յուսահատած մեր դիմադրական կարողութենէն, կամ թերեւս պարտութենէն՝ նոյն ոգին կը սնուցանեն եւ ընդունելու կը պատրաստուին թուրք կառավարութեան վերջնագիրն ու պայմանները:»

(«Մինչեւ վերջին շունչը պատնէշին վրայ», *Աշխատանք*, Երեւան, Գ. տարի, թիւ 4 (204), 1 Յունիս 1918)

«Մինչ Երեւանի հայութիւնը գերագոր ճիգեր կը թափէ փրկելու իր պատիւն ու կեանքը եւ միաժամանակ պարտութիւններու կ'ենթարկէ թշնամին, անդին՝ Բաթումի մէջ դարձեալ կը վերսկսին հաշտութեան բանակցութիւնները, այս անգամ Հայոց Ազգային Խորհուրդին կողմէ:

«Դեռ երէկ էր, երբ ոչ մէկ պայման ու սրբութիւն ճանչցող թշնամին, իր հրէշային նպատակներն իրագործելու փութկոտութեամբ՝ ներս խուժեց Ալէքսանդրապոլը, գրաւեց զայն, հաւաքեց եւ Ղարս ղրկեց այդտեղի 4000 զինուորներ, նաեւ օրիորդներ, բժիշկներ, ֆելդշերներ, գթութեան քոյրեր եւ հիւանդանոցի մէջ ծառայողները, այսօր ալ՝ նոր պայմաններ է առաջարկեր ան եւ վերջնագրով նոր պահանջներ է դրեր՝ «Իր կայսրութեան ցեղական ու կրօնական տեսակէտներով ամուր կապուած Կովկասի մուսուլման ազգաբնակչութեան հանգիստն ապահովելու եւ հարիւր հազարաւոր աւազակախումբերու արիւնոտ լուծէն եւ չափ ու սահման չճանչցող բռնութիւններէն ազատելու համար». նաեւ իր ռազմական նպատակներն իրագործելու համար՝ «պէտք է իրեն զիջուին շարք մը կարեւոր հողամասեր եւ անհրաժեշտօրէն տրամադրելի ըլլան ամբողջ երկաթուղագծերը, զօրքերու անարգել տեղափոխութիւնը կատարելու համար»: Այս բոլոր պատճառաբանութիւններու եւ պահանջներու մէջ, թուրք կառավարութիւնը «խաթաֆուլլահ» երբեք նպատակ չունի հայկական շրջանները կողոպտելու, հայութիւնը ստրկացնելու եւ զայն վերջնական բնաջնջման ենթարկելու...

«Եւ սակայն ասոնց դէմ՝ Երեւանեան զօրամասի հրամանատարը, յայտարարելով որ թշնամին նպատակ ունի ամբողջապէս ոչնչացնել մեզի, կ'ըսէ՝ «Մեր բոլորիս մտքերն ամբողջովին պէտք է ուղղուած լինեն դէպի Ալէքսանդրապոլ, *մենք պէտք է յետ վերցնենք նրան* եւ ապա միայն բանակցութեան մէջ մտնենք տաճիկների հետ, խաղաղութիւն կնքելու համար»:

«Իսկ Հայոց Կեդր. Ազգ. Խորհուրդը, որ իր եւ Թիֆլիսէն զատ ուրիշ ոչինչի մասին մտածեց ու հոգաց եւ թողուց որ հայկական շրջանները մեկուսանան, կտրուին, ապրին կամ մեռնին, եւ որ բոլոր սխալները գործեց իբր թէ ստիպուած?, միւս ազգութիւններու հետ միասին, այսօր կրկին անգամ առանց կապ ունենալու նման ճակատագրական ձեռնարկ մը կատարելու եւ վերջապէս առանց հրահանգ ստանալու՝ բանակցութիւններ է սկսած, ո՞վ գիտէ ինչ մեծ զոհողութիւններով, եւ հայութեան բաղդը տնօրինելու քայլն է առած: Եւ եթէ երբեք կնքուած է հաշտութիւնը, ստորագրուած են պայմանները, ընդունուած է թուրքիոյ վերջնագիրը, զիջուած են այդ հողամասերը առանց հայութեան կամքին եւ կարծիքին, ապա ուրեմն գործուած է յանցանքներու ամենասեւը, դաւաճանութեան ամենասոսկալին, որոնց նման հայկական տարեգրութեան մէջ չէ եղած դեռ:

«Մի՞թէ Երեւանի հայութիւնը կռիւ յայտարարեց, դիմադրութիւն կազմակերպեց, յաղթանակներ տարաւ, անոր համար՝ որպէսզի այսօր ստրկանայ, ստորնանայ, որպէսզի թուրքերուն յանձնէ իր երկրի կարեւոր հողամասերը եւ այդպիսով իր ձեռքով իր գերեզմանը փորէ:» («Մի'շտ նոյն ճամբով», *Աշխատանք*, Երեւան, Գ. տարի, թիւ 5 (205), 5 Յունիս 1918)

ԽՈՀԵՐ

## ՄԱՅԻՍ ՄԷԿ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Մայիս մէկի առիթով պիտի փափաքէի համառօտ կերպով ներկայացնել Մարտ 28-էն մինչեւ Ապրիլ 13 (երկու շաբաթուան այս ժամանակաշրջանը ընտրած եմ պատահականօրէն) կատարուած աշխատաւորական (*միայն* աշխատաւորական) ցոյցերուն եւ գործադուլներուն ժամանակագրութիւնը, ամբողջութեամբ հիմնուելով *World Socialist Web Site*-ի տրամադրած տուեալներուն վրայ(8).

**28 ՄԱՐՏ**

- Ֆիլիփփինի Քոմփոսթելա Հովիտի պանանի աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով իրենց 52 վտարուած պաշտօնակիցներուն վերադարձը աշխատանքի:
- Քոլոմպիայի Քալի քաղաքի Git Masivo ընկերութեան 180 վարորդներուն գործադուլը՝ բողոքելով չարքաշ աշխատանքի, արձակուրդներու կրճատումներուն, աշխատաւորներուն դէմ ոտնձգութիւններու եւ ամսավճարներու անհամապատասխանութեան դէմ:
- Հնդկաստանի Industrial Development Bank-ի 18 հազար պաշտօնեաներու գործադուլը՝ արգիլելու պանքային սեփականաշնորհումը:
- Պուլկարիոյ սեփական եւ թաղապետական հիւանդանոցներու բժիշկներուն եւ բժշկական աշխատողներուն գործադուլը՝ բողոքելով նոյն օրը գործադրութեան դրուող առողջապահութեան բարենորոգութեան դէմ, որ պիտի ազդէ ֆինանսաւորումի եւ ծառայութիւններու վրայ:
- Փորթուկալի փոսթայի ընկերութեան աշխատաւորներու շուրջ 75 տոկոսին գործադուլը՝ մերժելով ամսավճարի յաւելումը, որ անհամապատասխան է ընկերութեան ձեռք բերած գերշահոյթին:

**29 ՄԱՐՏ**

- Արժանթինի Համալսարանի Ուսուցիչներու Դաշնութեան եւ Ուսուցիչներու Ազգային Դաշնութեան գործադուլը՝ պահանջելով ամսավճարի բարձրացում, քաղաքացիական բարելաւումներ եւ աշխատանքային աւելի լաւ պայմաններ:
- Փաքիսթանի Խիպէր Փախթունխուա նահանգի կառավարական առողջապահական հիմնարկներու շուրջ 15 հազար բժշկական աշխատողներու գործադուլը՝ պահանջելով նոր ծառայողական կառուցուածք մը, որ բովանդակէ վճարումի աստիճանական բարձրացում եւ առողջապահական նոր ապահովագրութիւն:
- Յունաստանի Թեսալոնիկէ քաղաքի գործաւորներուն ցոյցը՝ բողոքելով հանրային ապահովութեան, հարկերու եւ գրաւագրկումի կառավարական փոփոխութիւններուն դէմ:
- Քուէյթի Ալ-Ահմատի քաղաքի աւելի քան երեք հազար քարիւղի աշխատողներուն ցոյցը՝ բողոքելով յաւելեալ վճարումներու կրճատումներուն եւ ամսավճարներու հնարաւոր կրճատումներուն դէմ:
- Հարաւային Ափրիկէի Մփումալանկա նահանգի ագարակապաններուն գործադուլը՝ պահանջելով աշխատաւորական միութեան կազմութիւնը:

**30 ՄԱՐՏ**

- Մեքսիքոյի Կուանախուաթօ նահանգի Scientific and Technological Studies College-ի (CECyTE) 57 կրթական կեդրոններու ուսուցիչներուն գործադուլը՝ պահանջելով ամսականի բարձրացում եւ տնօրէնի հեռացում:
- Ուսուցիչներու ցոյցեր Քարաչիի մէջ՝ պահանջելով ամսավճարներու երկարատեւ պայմանագիր եւ պաշտօնի բարձրացումի ներկայ համակարգի փոփոխութիւն:
- Հնդկաստանի Մահարաշթրա նահանգի ռազմամթերքի գործարանի աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով աւելցնել աշխատաւորներուն քանակը:
- Կը սկսի Սրի Լանքայի Ceylon Electricity Board-ի (CEB) 800 պաշտօնեաներուն եւ իրենց ընտանիքներուն ցոյցը՝ պահանջելով ժամանակաւոր պայմանագիրները վերածել մշտականի:
- Տոմինիքեան Հանրապետութեան բժիշկներուն, բուժքոյրերուն եւ հանրային առողջապահութեան այլ աշխատողներու գործադուլը՝ պահանջելով ամսավճարի եւ թոշակի բարձրացում եւ աշխատանքային պայմաններու բարելաւում:
- Սքոթլանտայի Արեւմտեան Տունպարթոնշայր տարածքի դպրոցներու ուսուցիչներուն գործադուլը՝ արգիլելու համար ուսուցիչներու կրճատումներուն ծրագիրը:
- Աթէնքի գործաւորներուն ցոյցը՝ բողոքելով հանրային ապահովութեան, հարկերու եւ գրաւագրկումի կառավարական փոփոխութիւններուն դէմ:
- Նիճերիոյ Premier Lottery-ի աշխատաւորներուն գործադուլը՝ բողոքելով պաշտօններու աւարտումներուն դէմ:

**31 ՄԱՐՏ**

- Աւստրալիոյ Քուինսլէյըն մարզի Essential Energy ելեկտրականութիւն բաշխող ընկերութեան աշխատաւորներուն ցոյցը՝ բողոքելով քսան պաշտօնատեղիներու կրճատումին դէմ: Անցեալ տարուան Յունիսէն ի վեր ընկերութիւնը կրճատած է աւելի քան 530 պաշտօններ:
- Ֆինլանտայի երկաթուղիի վարորդներուն գործադուլը՝ բողոքելով պաշտօններու կրճատումին դէմ:

**1 ԱՊՐԻԼ**

- Պելճիքացի բեռնատար մեքենաներու վարորդներուն ցոյցը՝ բողոքելով նոր օրէնքի անբարենպաստ պայմաններուն դէմ:
- Նիճերիոյ ուղղաթիռի օդաչուներուն գործադուլը՝ պահանջելով դրամական հաւասարութիւն իրենց պաշտօնակից օտար օդաչուներուն հետ:

**2 ԱՊՐԻԼ**

- Հնդկաստանի Քոչի քաղաքի Hindustan Organic Chemicals Limited-ի պաշտօնեաներուն ցոյցը՝ պահանջելով անցեալ 11 ամիսներու չվճարուած աշխատավարձքը:
- Հիւսիսային Իրլանտայի գրաւագիր S P Graham-ի պաշտօնէութեան գործադուլը՝ պահանջելով ամսավճարի յաւելում:

**4 ԱՊՐԻԼ**

- Թեքսասի եօթը բանտերու բանտարկեալները կը մերժեն կատարել բանտային աշխատանքը: Անոնք իշխանութիւնները կը մեղադրեն պարտադիր ստրուկային պայմաններուն համար: Թեքսասի 172 հազար բանտարկեալները գործարանի մը մէջ կը պատրաստեն տարեկան շուրջ երկու միլիառ տոլարի արտադրութիւն եւ ուտեստեղէն: Մինչդեռ բանտերը կառուցուած են ժողովուրդի տուրքերով, բանտարկեալներու պարտադիր աշխատանքին շահոյթը կ'իւրացնեն անձնական ընկերութիւնները:
- Արժանթինցի ուսուցիչներուն, ուսանողներուն եւ այլ աշխատաւորներուն ցոյցը՝ ընդդէմ նախագահի վարչական քաղաքականութեան: Վեց հազար ցուցարարներ կը քալեն Պուենոս Այրէսի փողոցներուն մէջ: Ընդարձակ ցոյցեր տեղի կ'ունենան Արժենթինի այլ քաղաքներու մէջ:
- Սանթիակոյի Sky Airlines-ի աւելի քան 340 օդաչուներու եւ պաշտօնեաներու գործադուլը՝ պահանջելով վճարումի, պայմաններու եւ ապահովութեան բարելաւում:
- Թրինիտատ կղզիի ArcelorMittal պողպատի արդիւնաբերութեան նախկին աշխատաւորներուն ցոյցը՝ բողոքելով թոշակներուն, ապահովագրուած դրամներուն եւ պարտական դրամներուն նկատմամբ փակուած ընկերութեան լռութեան դէմ:
- Աշխատաւորներուն եւ միութեան պատօնականներուն ցոյցը Քամպոտիայի Ազգային Ժողովի շէնքին առջեւ՝ բողոքելով աշխատանքային նոր օրէնքներուն դէմ:
- Պանկլատէշի Խուլնա քաղաքի ջուտի (jute) ութ գործարաններու շուրջ 50 հազար աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով ջուտի արդիւնաբերութեան համար կառավարական պատշաճ ֆինանսաւորում, աշխատավարձքի պարտքերու վճարում, գործարաններուն համար աշխատավարձքի անջատ խորհուրդի մը ստեղծում եւ գործարաններու սեփականաշնորհումներուն դադարում:
- Պանկլատէշի Նարաեականժ մարզի Benetex հագուստեղէնի գործարանի աշխատաւորներուն ցոյցը՝ պահանջելով երկու ամսուայ չվճարուած աշխատավարձք:
- Սլովենիայի ելեկտրականութեան մատակարարութեան աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով տեղեակ մնալ արդիւնաբերութեան առաջարկըւած վերակառուցումին մանրամասնութիւններուն մասին եւ դադրեցնել պաշտօնէութեան կրճատումները:

**5 ԱՊՐԻԼ**

- Օնթարիոյի Morbern Inc.-ի աշխատաւորներուն գործադուլը՝ բողոքելով նոր պայմանագիրի անյարմար պայմաններուն դէմ:
- Հնդկաստանի Ժարխանտ նահանգի գիւղական առողջապահութեան եւ մանկական խնամատարութեան աշխատաւորները կ'աւարտեն իրենց 27 օր տեւած գործադուլը՝ ուր կը պահանջէին ամսավճարի բարձրացում, թոշակի եւ այլ բարելաւումներ:

4

# ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՄԱՅԻՍ ՄԷԿ

3

**6 ԱՊՐԻԼ**

– Օնթարիոյի Family and Children's Services-ի (F&CS) երեխաներու պաշտպանութեան 130 աշխատողներուն գործադուլը՝ մերժելով գործատիրոջ նոր, ոչ-նպաստաւոր պայմանագիրը:

– Քոլոմպոյի նաւահանգիստի աշխատողները՝ Միութեան աջակցութեամբ, ցոյցի միջոցով սկսան կիրառել աշխատանքային իշխանութեան (work-to-rule) գործադրութիւնը, պահանջելով պայմանագիրի յարգում, յատուկ նպաստներու վճարում, աշխատուժի համալրումի անկանոնութիւններու վերացում եւ գոյքերու սեփականաշնորհումի կանգնեցում:

– Հնդկաստանի Քաննուր քաղաքի սեփական հանրաշարժի աշխատողներուն գործադուլը՝ պահանջելով 20 տոկոս պարգեւ եւ 5 տոկոս բարոյական (ex gratia) վճարում:

– Հնդկաստանի Քարնաթաքա նահանգի հանքի աշխատաւորներուն երկօրեայ ցոյցը Շրջանային Աշխատանքային Յանձնակատարութեան գրասենեակին առջեւ՝ պահանջելով փոխհատուցում անօրէն կերպով կատարուած աշխատազրկումներուն պատճառով:

– Սրի Լանքայի Սէյլոնի Ուսուցիչներու Միութեան անդամներուն ցոյցը՝ պահանջելով աստիճանի բարձրացումի կանոնաւորում:

**7 ԱՊՐԻԼ**

– Քուէթթայի (Փաքիսթան) Երիտասարդ Բժիշկներու Ընկերակցութեան ցոյցը՝ պահանջելով աշխատավարձքի բարձրացում, աշխատանքային մնայունութիւն, անգործ բժիշկներու աշխատանքի կոչում.եւ հիւանդանոցային յարմարութիւններու ապահովում:

– Պուէնոս Այրէսի բժիշկներուն եւ բուժական մասնագէտներուն 48 ժամուայ գործադուլը՝ պահանջելով վճարումի բարձրացում եւ աշխատանքային պայմաններու բարելաւում:

– Յունական քաղաքացիական ծառայողներուն գործադուլը Աթէնքի Քլաֆթմոնոս հրապարակին մէջ՝ բողոքելով կառավարութեան առաջարկած ապահովութեան եւ թոշակի բարեփոխութիւններուն դէմ:

**8 ԱՊՐԻԼ**

– Եոհաննեսպուրկի Pikitup ընկերութեան աշխատաւորներուն գործադուլը կը մտնէ իր հինգերորդ շաբաթը՝ պահանջելով ամսավճարի բարձրացում:

– Հարաւային Ափրիկէի Glencore Mining-ի ածուխի հանքագործներուն գործադուլը կը մտնէ իր երրորդ շաբաթը՝ բողոքելով քանիցս փամփուշտներ արձակած ապահովութեան պահակներուն դէմ, որ թողած է բազմաթիւ վիրաւորներ:

– Պուրքինա Ֆասոյի հանրային հանրաշարժի ընկերութեան աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով իրենց պաշտօնակիցներուն հանդէպ կիրառուող պատիժներուն վերացումը:

**9 ԱՊՐԻԼ**

– Ուսուցիչներու ցոյց Նիւ Տելհիի մէջ՝ պաշտօնազրկութեան դէմ: Մարտ 31-ին, աւելի քան 1900 ուսուցիչներ իրենց պաշտօնները կորսնցուցին ժամանակաւոր պայմանագիրներու պատճառով:

**11 ԱՊՐԻԼ**

– Հարաւային Քորէայի Sueng Yeun Technology Industries Corp-ին (SYTIC) պատկանող Ֆիլիփփինի Cavite Export Processing Zone Authority-ի (EPZA) աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով աշխատանքէ հեռացուած 20 գործաւորներուն վերադարձը եւ բողոքելով ընկերութեան կատարած աշխատանքային պայմաններու եւ ամսավճարներու բեկումներուն դէմ:

– Հարաւային Քորէայի Bluecom Vina ելեկտրոնական ընկերութեան Վիեթնամի Հայֆոնկ քաղաքի մասնաճիւղի չուրջ հազար աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով ամսավճարի եւ աշխատանքային ժամերու բարելաւում եւ աշխատաւորներու միութեան ստեղծում:

– Սրի Լանքայի Ceylon Electricity Board-ի (CEB) 800 պաշտօնեաներուն եւ իրենց ընտանիքներուն ցոյցը կը մտնէ իր երկրորդ շաբաթը: Կը պահանջեն ժամանակաւոր պայմանագիրները վերածել մշտականի, մատնանշելով իրենց աշխատանքային դժուար պայմանները:

– Քարաչիի (Փաքիսթան) երկաթուղիի աշխատողներուն գործադուլը՝ պահանջելով պաշտօններու բարձրացում եւ բողոքելով ապահովութեան եւ յարմարութիւններու բացակայութեան դէմ:

– Հնդկաստանի Չեննայի քաղաքի մօտ գտնուող Անաքափութուր Քաղաքապետարանի առողջապահութեան աշխատողներուն ցոյցը՝ զանոնք Խնայողական Հիմնադրամի ծրագիրէն արտաքսուելու պատճառով:

**13 ԱՊՐԻԼ**

– Ասքիանօ ընկերութեան Սիտնիի նաւահանգիստի Patrick Stevedores-ի աշխատաւորներուն 48 ժամուայ ցոյցը՝ բողոքելով նոր գործարքային համաձայնութեան դէմ:

– Նիճերիոյ քարիւղի զտումի աշխատաւորներուն գործադուլը՝ պահանջելով աշխատավարձքի եւ աշխատանքի պայմաններու բարելաւում:

(Վերջ 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

8. https://www.wsws.org/en/topics/site_area/workers:

## ՍԱՐԳՍԵԱՆ-ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՎԻԵՆՆԱՅԻ ՄԷՋ

1

*հիւսխում չի լինի, ընդամէնը 200-300 մետր տարածք են գրաւել ադրբեջանցիները՝ տալով ամէն մետրի համար մէկից աւելի զոհ»: Փաստօրէն, գերագոյն գլխաւոր հրամանատարը ստել է, թաքցրել է տարածքային կորուստների իրական չափը: Եթէ 200-300 մետր տարածքը մէկ ամսուայ տարբերութեամբ դառնում է 800 հեկտար, ապա ինչպէ՞ս վստահ լինենք, որ մէկ ամիս յետոյ 8000 հեկտար չի դառնայ:»*

## ՍԱՄՈՒԷԼ ԲԱԲԱՅԵԱՆԸ ՎԵՐԱԴԱՐՁԵԼ Է...

1

*Թուականին դատապարտուեց 14 տարուայ ազատազրկման: 2004-ին՝ չորսուկէս տարի Շուշիի բանտում անազատութեան մէջ մնալուց յետոյ, Սամուէլ Բաբայեանին ներում շնորհուեց, եւ նա ազատ արձակուեց: Այնուհետեւ տեղափոխուեց Երեւան եւ փորձեց քաղաքական գործունէութիւն ծաւալել: 2005-ին հիմնադրեց Դաշինք կուսակցութիւնը, սակայն այդպէս էլ լուրջ յաջողութիւնների չհասաւ: Իսկ 2008-ից յետոյ Բաբայեանը սկսեց լուրջ ֆինանսական խնդիրներ ունենալ: 2010-ին լուրեր տարածուեցին այն մասին, որ Բաբայեանը մեծ պարտքեր է կուտակել եւ որ գրաւադրել է իր մերձաւորների մեծ մասի բնակարանները, անշարժ գոյքը ու չկարողանալով գումարները վերադարձնել՝ Հայաստանից հեռացել է: Դրանից յետոյ, եթէ անգամ մամուլը յիշում էլ էր Բաբայեանի մասին, ապա գտնուելու վայրը անյայտ էր: Քառօրեայ պատերազմից յետոյ Սամուէլ Բաբայեանի մասին կրկին սկսեցին խօսել այն տեսանկիւնից, որ թշնամու համար ահուսարսափ դարձած գործչի վերադարձը հայրենիք, հնարաւոր է, որ դրական ազդեցութիւն ունենայ, եւ պէ՛տք է, որ նա վերադառնայ: Թերեւս, կարելի է ասել, որ այդ քննարկումներն ու պահանջները տեղ են հասել, եւ Բաբայեանը որոշել է վերադառնալ Հայաստան: Միայն թէ անյայտ է՝ ինչքան ժամանակով եւ ինչ նպատակով»:*

## ՂԱՐԱԲԱՂ ՕԳՆՈՒԹԻՒՆ ՈՒՂԱՐԿԵԼՈՒՑ ՅԵՏՈՅ...

1

*(1 տոննա ցորենը՝ 10-12 հազար ռուբլի) պահպանւում էին նաեւ երեկուայ դրութեամբ: Զգալի փոփոխութիւն չի նկատուել նաեւ ռուբլի-դոլար կուրսում: Երեկուայ դրութեամբ 1 դոլարը 66 ռուբլի էր, մէկ ամիս առաջ՝ 67: Հէնց այս ուսումնասիրութիւններն են հիմք տալիս պնդելու, որ Ղարաբաղին ոչ թէ Սամուէլ Ալեքսանեանն է օգնութիւն տուել, այլ՝ մեզանից խուրաքանչիւրը»,- գրում է թերթը:*



## ԻՍԼԱՄԱՑԱԾ ՀԱՅԵՐ՝ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆ ՄԸ ԱՌԻԹՈՎ

2

YouTube-ի Հրանդ Տինք Հիմնարկի էջը 2013 Դեկտեմբեր 7-16-ին տեղադրած է խորհրդաժողովը ամբողջութեամբ՝ բաժնուած տասը մասի: Բոլոր տասը մասերն ալ վերբեռնուած են երկու տարբերակով՝ անգլերէն եւ թրքերէն: Ըստ 2016 Ապրիլ 16-ին կատարած հաշուարկումիս, անգլերէն տասը տարբերակներու դիտորդներուն ընդհանուր թիւն է 4878, այսինքն՝ իւրաքանչիւր մասին համար միջին հաշուով 488 դիտորդ, իսկ թրքերէն տասը տարբերակներու դիտորդներուն թիւն է 29674, այսինքն՝ իւրաքանչիւրին համար միջին հաշուով 2967 դիտորդ: Թրքերէն դիտարկումներուն ընդհանուր քանակը վեց անգամ աւելի է անգլերէնէն: Տարբերութիւնը նշանակալի է: Ըստ տրամաբանութեան, անգլերէն դիտորդներուն մեծամասնութիւնը ենթադրուած է ըլլալ Թուրքիայէն դուրս ապրող հայերը եւ ոչ-հայ հետաքրքրասէրները: Իսկ թրքերէնի դիտորդներուն մեծամասնութիւնը՝ Թուրքիոյ սահմաններէն ներս ապրող հայերը, ներառեալ՝ իսլամացած հայերը, եւ թուրքերը: Երկկողմանի բացատրութեամբ մը, արտաքին հայերուն հետաքրքրութիւնը Հրանդ Տինք Հիմնարկին նկատմամբ ընդհանրապէս եւ անոր միջոցով ներկայացուած իսլամ հայերուն նկատմամբ մասնաւորապէս, կրնայ ցոյց տալ սփիւռքի եւ Հայաստանի կազմակերպութիւններուն եւ մտաւորականներուն ինքնակեդրոն կեցուածքը համահայկական հարցերուն եւ իրենցմէ դուրս գտնուող «ոչ-աւանդական» հիմնարկներուն նկատմամբ, մինչդեռ Թուրքիոյ ներքին հայերուն եւ թուրքերուն հետաքրքրութիւնը կրնայ վկայել քաղաքացիական հասարակութեան մը կազմաւորումը այնտեղ, հասարակութիւն մը եւ հասարակական գիտակցութիւն մը՝ որ նոր թափ ստացաւ Հրանդ Տինքի սպանութենէն ի վեր եւ ի հեճուկս անոր սպանութեան:

Այս համաժողովին ոչ բոլոր մասնակցողները մտաւոր բարձր մակարդակի վրայ կը գտնուէին: Ըսուեցան բազմաթիւ կարծրատիպեր, որոնք ամէն օր կը կրկնուին Հայաստանի եւ սփիւռքի հայկական լրագիրներուն մէջ՝ յատկապէս անընդհատ, միայն ու բացառապէս զոհուածութեան գաղափարը: Առաջարկուեցան նաեւ բարդ խնդիրներու դիւրին ու պատրաստ լուծումներ: Բայց նոյնիսկ այդ կարծրատիպերու առնչութեամբ, դիտարկումի առարկայ կէտ մըն է՝ որ հայկական կարծրատիպեր կարելի է ներկայացնել Թուրքիոյ որոշ (թէեւ խիստ սահմանափակ ու սակաւագոյն չափով տեսանելի ու հասանելի) վայրերու մէջ, մինչդեռ թրքական կարծրատիպերու սպրդումը հայկական միջավայրերու մէջ անկարելի երեւոյթ մըն է: Ասոր մասին կարելի է քիչ մը մտածել՝ կարծրատիպերէ անդին որոշ եզրակացութիւններ կատարելու համար, բայց, միեւնոյնն է, կարծրատիպերն իրենք անհաճոյ գոյութիւններ են եւ, բնականաբար, խօսքը պէտք է ընթանայ ոչ թէ կարծրատիպերու ելումուտի մասին, այլ անոնց վերացումին կամ գոնէ չրջանցումին:

Միւս կողմէն՝ կային նաեւ լայն մտահորիզոն ունեցող մտաւորականներու ելոյթներ, ուր արծարծուեցան թարմ, մտածումի դուռ բացող կարեւոր գաղափարներ:

Խորհրդաժողովին մէջ տարբեր մտաւորականներ բազմակողմանիօրէն ներկայացուցին խնդիրին բարդութիւնը, փորձեցին մեկնաբանել իսլամացած հայերու զանազան դիմագիծերը՝ հիմնուած տեղագրական ուսումնասիրութիւններու եւ կենդանի հարցափորձերու վրայ, վեր հանեցին բազմակի ինքնութեան հարցերը, խորհրդածութեան նիւթ դարձուցին յիշողութիւնը եւ յիշողութեան վերականգնումի աստիճաններուն հետ կապուած խնդիրները, ինչպէս նաեւ բազմաթիւ այլ գաղափարներ՝ առանց որոնց անիմաստ կը դառնայ իսլամ կամ իսլամացած հայերուն մասին որեւէ քննարկում եւ անոնց «վերադարձ»-ին հետ կապուած որեւէ միջոցառում:

Նման խորհրդաժողովները՝ իբրեւ մտաւոր հարթակ պատրաստելու միջոց, հիմքը պէտք է ըլլան քաղաքական յետագայ գործողութիւններուն: Քաղաքական կողմը՝ առանց մտաւոր հարթակի, առիթ կրնայ տալ միայն չահագործումներու, աննպատակ դեգերումներու եւ նոյնիսկ լուրջ վնասներու:

(Վերջ 2 )

Հ. Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1768 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 2 ՅՈՒՆԻՍ 2016 ՀԱՏԸ ՉԸՆՈՔԷ 75 Ե. Դհկ. ٢ يونيه ٢٠١٦ عدد رقم ١٧٦٨ الخميس

## ՈԳԵՒՈՐՈՒԹԵԱՆ ՍՏՈՒԵՐՈՒՄ

**ԱՐՓԻ ՄԱՆՈՒՍԵԱՆ**

Վերջին շրջանում անընդհատ մի բանի մասին եմ մտածում. ինչո՞ւ ենք մենք շարունակաբար ոգեւորութիւն կամ դրա աղբիւրը փնտռում ամէնուր՝ որեւէ բան անելու կամ արարքի իմաստալիութիւնը հիմնաւորելու համար:

Մտահոգութիւնս ինքնին ոգեւորութեան գաղափարը չէ կամ թէ դրա մոտիւացնող գործառոյթը, երբ որեւէ կարեւոր ու նախկինում բոլորովին անճանաչելի գիտելիքի կամ երեւոյթի ես հաղորդակից լինում ու պայծառացման նման մի բան է ծնւում, որ ուժ ունի փոխելու քեզ ու աշխարհին նայելու քո անկիւնը:

Մտորումներս այլ դաշտում են. ի՞նչ անել, երբ աներեւակայելի անդունդ ես զգում մի որեւէ իրադարձութեան եւ դրանում ոգեւորութեան ծիլեր փնտռել-գտնելու մարդկային ջանքերի միջեւ, երբ ոգեւորութիւն է առաջանում այնտեղ, որտեղ կարծես ընկած պիտի լինեն գայրոյթը, տխրութիւնն ու ցասումը: Նրան փնտռում ենք անգամ պատերազմներում. պատերազմներից կամ դրանց հնարաւորութիւնից ոգեւորւում ենք ու մեզ նոյնիսկ Բաքւում ենք պատկերացնում՝ գեղեցիկ ու վինտաժային սրճարանում (անունն, օրինակ, Մեծ Հայք)՝ մի բաժակ սուրճի կամ թէյի շուրջ՝ ընկերների հետ: Այս իրավիճակում ոգեւորութիւնը կանգնեցնելը դժուար է, բայց մէկ-մէկ ստացւում է, երբ պատկերացնում ես, որ Բաքուի սրճարանին հասնելու համար լիքը մարդ պիտի սպանես, դէ ընթացքում ինքդ էլ կարող ես մեռնել ու ճանապարհին՝ կէս մեռած, կէս կենդանի ոգեւորութեանդ հետ մենակ՝ մտածես:

Բայց որքա՞ն երկար ենք մենք՝ անվերջանալի իրադարձութիւններին յղնթացս ու հպանցիկ ապրող, ուղնուծուծով ժամանակակից մարդիկս՝ կարող մնալ այս գրգռուած-ոգեւորուած վիճակում, ե՞րբ կը լղոզուի մեր յիշողութիւնը ու կը մոռանանք, թէ որտեղից ենք սկսել եւ ուր էինք ուզում գնալ:

«Գիտես, նենց ոգեւորուած եմ...», «Քեզ էս միտքը չի ոգեւորո՞ւմ...», «Զայնիցդ չի երեւում, որ ասածս քեզ ոգեւորեց...», «էս իրադարձութիւններից նենց ոգեւորուած եմ, որ յեղափոխութիւն էլ կ'անեմ...»:

Որոշ հոգեբանական հետազօտութիւններ նոյնիսկ առաջարկում են մեխանիզմներ, որոնց միջոցով գայրոյթը կարելի է փոխարինել ոգեւորութեամբ: Ոգեւորութիւնն աւելի պրոդուկտիւ եւ դրական է գնահատւում: Զայրոյթովդ հեռուն չես գնայ. կարծես յուշեն նմանօրինակ հետազօտութիւնները, միւս կողմից էլ՝ համոզեն, որ լաւ տրամադրութիւն ունենալը գործի կէսն է: Լաւատեսութիւնն էլ իբրեւ ժամանակակից մարդու ու կապիտալիստական աշխարհի նշանակալի մի յատկութիւն կը գայ ի օգնութիւն՝ միաւորելու ու իմաստաւորելու ոգեւորութիւնը, արարքն ու նպատակը:

Սոցիոլոգ Նորբերտ Էլիասն ասում է, որ քաղաքակիրթ հասարակութիւններում մարդիկ անընդհատ ոգեւորութեան կարիք ունեն, եւ միեւնոյն ժամանակ այնպիսի սոցիալական միջավայրի, որտեղ ոգեւորութիւնից կարելի է հաճոյք ստանալ առանց սոցիումի եւ անհատի համար դրա վտանգաւոր դրսեւորումների:

Երբ այլեւս սահմանափակուած ու սահմանուած են սոցիալական ու քաղաքական գործողութիւնների դաշտն ու հնարաւորութիւնները, երբ յարաբերական հանգստում մենք այս մտքի հետ մերթ հաշտ ենք, մերթ կռիւ ենք տալիս՝ փորձելով ընդլայնել այդ տարածքները, քննադատութիւնն ու ռեֆլեքսիան տեղ ունեն: Բայց ծանր բան է, երբ մի սարսափելի փոփոխութիւն խախտում է անշտապ ու ժամանակի մէջ այդքան ձգուած ռեֆլեքսիայի կանոնաւոր ընթացքը: Այդժամ արարելու կամ գոնէ արարքի պատրանք ունենալու համար դիմում ենք ոգեւորութեան մշտնջենական պահանջին. դառնում ենք մի մեծ գործողութեան մասնիկ, ինչ-որ բաներ ենք անում, դեռ միւսներին էլ համոզում ենք, որ իրենք էլ անեն, կոչեր ու յորդորներ ենք յղում համայն մարդկութեանը: Այս գործողութիւնների տեսանելիութիւնն էլ աւելի է մեզ ոգեշնչում եւ ոգեւորում, եւ մի պահ սկսում ենք ուրիշների (յաճախ նրանց, ովքեր մեր ոգեւորութիւնից գուցէ անտեղեակ, բայց այդ ոգեւորութեան արդիւնքների անմիջական կրողն են լինելու) եւ երբեմն էլ ամբողջ հասարակութեան անունից խօսել ու պահանջներ դնել, որովհետեւ չենք էլ կարող պատկերացնել, որ մեր ոգեւորութիւնը կարող են չկիսել միւսները:

Բայց այստեղ է, որ պիտի յուսանք ու փորձենք իբրեւ ոգեւորուած ու էյֆորիկ մի խաղացող աւելի փոքր չլինել, քան բուն խաղն է, ինչպէս կ'ասէր Բոդրիյարը:

(http://socioscope.am/archives/708)

## ԻՆՉՈՎ Է ՊԱՅՄԱՆԱՒՈՐՈՒԱԾ ԱՄՆ-Ի ՉԱՓԻՑ ԱՒԵԼԻ ԱԿՏԻՒՈՒԹԻՒՆԸ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑՈՒՄ

Ռուս-հայկական լրատուական գործակալութիւն, 18 Մայիս - Ամերիկայի Միացեալ Նահանգները մեծ յոյսեր ունի, որ Հայաստանի եւ Ադրբէջանի նախագահների միջեւ Յունիսին նախատեսուած հնարաւոր հանդիպումը կը յանգեցնի ղարաբաղեան հիմնախնդրի ամբողջական կարգաւորմանը: Այս մասին ԱՄՆ-Հայաստան գործարար համաժողովին յայտարարել է Հայաստանում ԱՄՆ-ի արտակարգ եւ լիազօր դեսպան Ռիչարդ Միլսը:

Ղարաբաղեան հակամարտութեան հնարաւոր ամբողջական կարգաւորման մասին գրոյցները ԱՄՆ-ի դատարկ հռետորաբանութեան արդիւնքն են, ասում է REGNUM գործակալութեան գլխաւոր խմբագիր Մոդեստ Կոլերովը:

«Խօսքն, ըստ էութեան, այն պայմանաւորուածութիւնների մասին է, որոնք պէտք է իրականացուեն Վիեննայի հանդիպումից յետոյ, իսկ վերջնական կարգաւորման համար անհրաժեշտ է քաղաքական կամք՝ Լեռնային Ղարաբաղին տրամադրելու բանակցութիւնների մասնակցի կարգավիճակ», - RUSARMINFO-ի հետ զրոյցում ասել է Մոդեստ Կոլերովը:

Ըստ փորձագէտի՝ ամբողջական կարգաւորումը հնարաւոր չէ, քանի դեռ Վրաստանը Ադրբէջանի հետ գտնւում է նոյն ռազմական բլոկում եւ ինչպէս վերջերս այն յայտարարեց, պատերազմի դէպքում հանդէս կը գայ Հայաստանի հանդէպ ոչ բարեկամական չէզոքութեան դիրքերից:

«Բացի այդ, ղարաբաղեան կարգաւորումը հնարաւոր չէ առանց Հարաւային Կովկասին սահմանակից Թուրքական Քուրդիստանի ճակատագրի որոշման, ինչպէս նաեւ առանց «Իսլամական պետութիւնը» արմատախիլ անելու: Վերջինս տարածաշրջանի գլխաւոր ապակայունացնող գործօնն է», - նշել է Մոդեստ Կոլերովը:

Ըստ նրա՝ ԱՄՆ-ի չափից աւելի ակտիւութիւնը ղարաբաղեան հարցում կապուած է ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահ երկրների ռոտացիայի հետ:

Մայիսի 16-ին Վիեննայում ԱՄՆ-ի նախաձեռնութեամբ տեղի ունեցաւ Հայաստանի եւ Ադրբէջանի նախագահներ Սերժ Սարգսեանի եւ Իլհամ Ալիեւի հանդիպումը՝ Ռուսաստանի Արտաքին Գործերի նախարար Սերգէյ Լաւրովի, Ֆրանսիայի եւրոպական հարցերով պետքարտուղար Արլէմ Դեզիրի եւ ԱՄՆ պետքարտուղար Ջոն Քերրիի մասնակցութեամբ:

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութիւնը իր սոյն տարուայ Ապրիլ 30-ի լիագումար նիստին ընթացքին կատարեց դիւանի փոփոխութիւն: Կեդրոնական Վարչութեան ատենապետ ընկեր Յակոբ Տիգրանեան ժողովին տեղեկացուց, որ անձնական պատճառներէ ելլելով, որոշած է հրաժարիլ ատենապետի պաշտօնէն եւ առաջարկեց կատարել դիւանի փոփոխութիւն:

Կեդրոնական Վարչութիւնը բարձր գնահատեց ընկերոջ ցարդ կատարած զոհողութիւնները եւ իր ատենապետութեան շրջանին արձանագրուած յաջողութիւնները: Իր հերթին ընկեր Տիգրանեան հաւաստիացուց, որ պիտի զօրավիգ կանգնի նոր դիւանին եւ պիտի շարունակէ նոյն եռանդով կատարել Կեդրոնական Վարչութեան անդամի իր պարտականութիւնները: Ապա անցնելով նոր դիւանի ընտրութեան, Կեդրոնական Վարչութիւնը միաձայնութեամբ ընտրեց դիւանի նոր կազմ՝ հետեւեալ ընկերներէն բաղկացած.

| | |
|---|---|
| Տօքթ. Համբիկ Սարաֆեան | - Ատենապետ |
| Սեպուհ Գալփաքեան | - Փոխ-ատենապետ |
| Վազգէն Խոտանեան | - Ատենադպիր |
| Վազգէն Գալթաքճեան | - Գանձապահ |

20-05-2016 Ս.Դ.Հ.Կ. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄՇՏԱԿԱՆ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ԵՐԵՔ ԱՄՍՈՒՄ ԿՐՃԱՏՈՒԵԼ Է ՄՕՏ 4000-ՈՎ

PanARMENIAN.Net, 25 Մայիս - Ազգային վիճակագրական ծառայութեան տուեալներով՝ 2016-ի Ապրիլ 1-ի դրութեամբ Հայաստանի մշտական բնակչութեան թուաքանակը կազմել է 2.994.400 մարդ, որից 1.904.700-ը քաղաքային բնակչութիւնն է, իսկ 1.089.700-ը՝ գիւղական:

2016-ի Յունուարի 1-ի դրութեամբ Հայաստանի մշտական բնակչութեան թուաքանակը կազմել է 2.998.600 մարդ: Այսպիսով, երեք ամսում մշտական բնակչութիւնը կրճատուել է 4200 մարդով:

Մասնաւորապէս, Երեւանի բնակչութիւնը նուազել է 300 հոգով՝ դառնալով 1.073.400 մարդ:

2016-ի Յունուարի 1-ի դրութեամբ Հայաստանի մշտական բնակչութեան թուաքանակը կազմել է 2.998.600 մարդ, 2015-ի համեմատ նուազելով 12.000-ով կամ 0.4%-ով:

2015-ի Յունուար-Դեկտեմբեր ամիսների ընթացքում Հայաստանում գրանցուել է 5 միլիոն 462.000 սահմանային գրանցում՝ մուտքերի եւ ելքերի, որոնց հաշուեկշիռը բացասական է՝ 43.438 մարդ, ինչը 1.766-ով աւելի է 2014-ի համեմատ:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## 2015-ԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻՈՒԹԻՒՆ ՍՏԱՑԱԾ Է 10468 ՄԱՐԴ

*2015-ին Հայաստանի նախագահի հրամանով Հայաստանի քաղաքացիութիւն ստացած է 10468 մարդ:*

*Այս տեղեկութիւնը յայտարարեց Վիգէն Սարգսեան՝ Մայիսի 24-ին, Ազգային ժողովի հանրապետութեան պետական պիւտճէի 2015-ի կատարողականի քննարկման ժամանակ: 10468 քաղաքացիներէն 3156-ը սուրիահայ են:*

*Նոյն տարին Հայաստանի քաղաքացիութենէն հրաժարեցաւ 1476 մարդ: Կեցութեան իրաւունք ստացած է 576 մարդ:*

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԴԷՄՔԵՐ

Ներկայ համարէն սկսեալ պիտի հրատարակենք եգիպտահայ քաղաքական ու մշակութային գործիչներու մասին ոչ-հայերէն յօդուածներու թարգմանութիւններ: Ընտրուած բոլոր յօդուածները գրուած են առանց հայ կազմակերպութիւններու կամ հայ բարերարներու դրամական հովանաւորութեան կամ «միջամտութեան»:

Զ.

# ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԸ ԴԷՊԻ ԵԳԻՊՏՈՍ ԺԹ. ԴԱՐՈՒՆ


### ՏՈՔԹՈՐ ԵԷՀԻԱ ՄՈՀԱՄԷՏ ՄԱՀՄՈՒՏ ԱՀՄԷՏ

Արդի պատմութեան փրոֆեսոր, Քաֆր էլ-Շէյխի Համալսարանի Պատմութեան եւ Հնագիտութեան Բաժանմունք



**ԱՄՓՈՓՈՒՄ**

Իր պատմութեան ընթացքին Եգիպտոս ականատես եղած է հայկական գաղթի զանազան ալիքներու, մասնաւորապէս Եգիպտոսի եւ արաբական աշխարհի օսմանեան ժամանակաշրջանին՝ ԺԶ.-ԺԹ. դարերուն: Տարիներ տեւած գաղթէ եւ հաստատումէ ետք, հայկական փոքրամասնութիւնը դարձաւ բազմաէթնիք/բազմամշակութային եգիպտական հասարակութեան մասը: Շնորհիւ իրենց պարտաճանաչութեան եւ նուիրուածութեան, հայերը իբրեւ մասնագէտներ համբաւ վաստակեցին գործարարութեան եւ առեւտուրի բնագաւառներուն մէջ:

Զեկուցումս կը հետազօտէ այս գաղթին ազդեցութիւնը Եգիպտոսի վրայ ԺԹ. դարուն եւ հայ ժողովուրդին մասնակցութիւնը Մոհամմէտ Ալիի քաղաքակրթական ծրագիրին, որ Եգիպտոսը դրաւ արդի աշխարհի քարտէզին վրայ: Զեկուցումը պիտի բացայայտէ Մոհամմէտ Ալիի քաղաքական ու տնտեսական գլխաւոր խորհրդատու Պօղոս Եուսուֆեանին խաղացած նշանակալի դերը Եգիպտական Վերածնունդի զարգացումին մէջ: Հիմնուելով երկու կողմերու (Մոհամմէտ Ալիի եւ Պօղոսի) փոխադարձ թղթակցութեան (ներառեալ՝ նամակագրութեան) վրայ, ինչպէս նաեւ այլ պատմական փաստաթուղթերու վրայ՝ որոնք պահպանուած են Եգիպտոսի պատմական դիւանին մէջ, այս ուսումնասիրութիւնը կը քննէ Պօղոս Եուսուֆեանի խաղացած դերին բնոյթը Եգիպտական Վերածնունդի կերտումին մէջ ԺԹ. դարու առաջին կէսին:

**ԲԱՆԱԼԻ ԲԱՌԵՐ**

Հայերը Եգիպտոսի մէջ: Եգիպտոս ԺԹ. դարուն:


### ՊՕՂՈՍ ՊԷՅ ԵՈՒՍՈՒՖԵԱՆ

Իբրեւ ամենահռչակաւոր հայ պաշտօնատար անձերէն մէկը, պր. Եուսուֆեան իր ջանքերը նուիրեց կերտելու արդիական Եգիպտոս մը, իր օժանդակութիւնն ու աջակցութիւնը մատակարարելով Եգիպտոսի կառավարիչ՝ Եգիպտական Վերածնունդի (նահտա) հիմնադիր Մոհամմէտ Ալի Փաշային: Ըստ պատմական աղբիւրներուն, Մոհամմէտ Ալի հանճարեղ ծրագրաւորող մըն էր իսկ Պօղոս այդ ծրագիրներուն տաղանդաւոր իրագործողը:

Դժբախտաբար, պատմաբանները ուշադրութիւն չեն դարձուցած Պօղոսի խաղացած նշանակալի դերին եւ Եգիպտոսի կառավարիչին առաջարկած իր խորհրդատուութիւններուն վրայ: Օրինակ, *Աճաէպ ալ-ասար ֆի ալ-թարաճէմ ուա ալ-ախպար* ստուար աշխատութեան մէջ, ալ-Ճապարթի Պօղոսին կը յիշէ միայն մէկ անգամ՝ չորրորդ հատորին մէջ(1): Ալ-Ճապարթիի կողմէ այս անտեսումին պատճառները տրուած են բազմաթիւ վէճերու: Որոշ պատմաբաններ ալ-Ճապարթիի դժկամութիւնը կը վերագրեն աշխարհագրական պատճառներու, քանի որ Պօղոս նախընտրած էր մնալ Աղեքսանդրիա իսկ ալ-Ճապարթի ապրած էր Գահիրէ: Ուրիշ խօսքով, ինքնակամ մեկուսանալով Աղեքսանդրիա, Պօղոս հեռու մնաց Գահիրէ ծաւալուող գլխաւոր դէպքերու կեդրոնէն: Իր անտեսանելիութիւնը մայրաքաղաքին մէջ բաւարար պատճառ էր զայն կեդրոնէն հեռացնելու եւ հետեւաբար անտեսուելու այդ ժամանակ մայրաքաղաք Գահիրէ հաստատուած ալ-Ճապարթիի նման պատմաբաններու կողմէ: Ուրիշ պատմաբաններ կը կարծեն՝ թէ Պօղոս կը նախընտրէր ջանասիրաբար աշխատիլ լռութեան մէջ:

Այսուամենայնիւ, իր կարեւոր դերակատարութիւնը ենթադրուած էր դառնալ պատմական կորսուած յիշողութեան մասը՝ եթէ առեւտուրի նախարարութեան դիւաններուն մէջ չյայտնաբերուէին իր թղթակցութիւնները Մոհամմէտ Ալիի հետ: Այս առումով կարելի է հաստատել՝ թէ Պօղոս եւ իր աշխատակազմը դիտաւորեալ կերպով որոշած էին գործել հանրային տեսողութենէն հեռու, որպէսզի առիթ ընծայէին ամբողջ ուշադրութիւնը սեւեռել Մոհամմէտ Ալի Փաշայի վրայ, որ կը փափաքէր անընդհատ յայտնուիլ առաջին շարքերը: Դիտելով իր պատմական բնաբանին մէջ, կարեւոր է բացայայտել Մոհամմէտ Ալիի Վերածնունդին վերաբերող փաստաթուղթերը եւ ընդգծել Պօղոսի եւ հայ փոքրամասնութեան նպաստները:

### ՊՕՂՈՍ ՊԷՅ՝ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ

Պօղոս Պէյ Եուսուֆեանի ծննդեան թուականին մասին մատչելի տեղեկութիւնները հակասական են: Ըստ պատմական աղբիւրներու, ան ծնած է Իզմիր, 1769-ին: Սակայն հայկական վստահելի աղբիւրներ կը նշեն 1768 թուականը: Ակնյայտ է՝ որ զանազան պատճառներով, հայկական աղբիւրները կարելի է համարել վաւերական: Նախ, հայկական դիւանները կը պարունակեն հին պատմական փաստաթուղթեր որոնք անմատչելի եւ անհասանելի կը մնան արդի հետազօտողներուն եւ գոյութիւն չունին ժամանակակից աղբիւրներուն մէջ: Երկրորդ, նկատի ունենալով հայերէնէ արաբերէն թարգմանութեան դժուարութիւնը, արաբական աղբիւրները մնացած են սահմանափակ: Երրորդ, կարելի է հաստատել՝ թէ 1769 թուականը յիշատակած պատմաբանները մատնուած են շփոթութեան, քանի որ Մոհամմէտ Ալի եւս ծնած է այդ տարին:

Երբ 1790-ին կը մահանայ Պօղոսի հայրը, իր խնամատարութիւնը կը ստանձնէ մօրեղբայրը՝ Առաքել, որ Իզմիրի բրիտանական դեսպանատան թարգմանիչն էր: Պօղոս իր նախնական կրթութիւնը կը ստանայ մօրեղբօր տանը: Ան կ'ուսանի մասնաւոր ուսուցիչներու մօտ, քանի որ իրեն չէր արտօնուած յաճախել թրքական պետական դպրոց, հաւանաբար իր կրօնքին (քրիստոնեայ) կամ/եւ էթնիք պատկանելիութեան (հայ) պատճառով: Բացի այդ, որոշ աղբիւրներ կը նշեն՝ թէ դիմելով ոչ-աւանդական կրթութեան, ծնողքին նպատակն էր երիտասարդ Պօղոսին ծանօթացնել հայ եւ այլ լեզուներու հիմունքներուն: Արդարեւ, մասնաւոր կրթութեան եւ դաստիարակութեան շնորհիւ Պօղոս կը կարողանայ սորվիլ արաբերէն, թրքերէն, անգլերէն, ֆրանսերէն, իտալերէն եւ յունարէն լեզուները: Լեզուներու իմացութիւնը կը մղէ իրեն իբրեւ մասնագիտութիւն եւ ասպարէզ ընտրել թարգմանութիւնը: Ըստ հայկական աղբիւրներու, Պօղոսի զբաղումը գործարարութեամբ եւ արտաքին առեւտուրով մեծապէս կապուած էր օտար լեզուներու իր իմացութեան հետ, որ դիւրացուց իր առեւտրական գործունէութիւնը:

Պօղոսի առաջին ժամանումը Եգիպտոս 1791-ին կը հետապնդէր առեւտրական նպատակներ: Ան հանդէս եկաւ իբրեւ վաճառական: Իր գործարարական ձեռնարկութիւնները առիթ տուին իրեն ծանօթանալու Եգիպտոսի տնտեսական պայմաններուն: Առեւտրական գործունէութիւնը հզօրացնելու նպատակով ան նոյնիսկ կը վարձէ մաքսային շէնք մը Ռաշիտի մէջ(2): Սակայն 1798-ին Նափոլէոն

3

## ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ՝ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐ

(Երկրորդ յաւելուած *Զահակիրի*)



2014 Ապրիլին, Երեւանի Ամերիկեան Համալսարանին մէջ տեղի ունեցաւ Հայր Լեւոն Զէքիեանի դասախօսութիւնը՝ *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր* խորագիրով, կազմակերպութեամբ Հայաստանի Ամերիկեան Համալսարանի Հայ Մատենագրութեան Թուանչանային Գրադարանին: Անոր ամբողջական տեսագրութիւնը կը գտնուի YouTube-ի մէջ: *Զահակիրի* Բ. յաւելուածով կը ներկայացնենք այս դասախօսութեան ամբողջական գրառումը, ներառեալ հարցում-պատասխանները:



ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ

ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ՝
ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐ
(դասախօսութիւն)

ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ.

ԳԱՀԻՐԷ
2016

Հայր Զէքիեան այն բացառիկ հայ մտաւորականներէն է՝ որուն համար «մասնագիտական» սահմանազատումներ չկան: Իր գրութիւններն ու ելոյթները բանասիրական, գրական, պատմագիտական եւ փիլիսոփայական ներթափանցումներու ամբողջ աշխարհ մըն են, որուն շնորհիւ անոնք կը դառնան պարփակուն ու բազմաբովանդակ:

Հպանցիկ գաղափար մը տուած ըլլալու համար իր հեղինակութիւններուն մասին, ստորեւ կը ներկայացնենք փոքրիկ ընտրանի մը, որ, բնականաբար, շատ հեռու է ամբողջական ըլլալէ.

### 1. ՄԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

- *Վաւերաթուղթեր. Դաւանական սահմանադրութիւն եւ ժողովական վճռագիրներ*, Վենետիկ, 1967:
- *Հայ թատրոնի սկզբնաքայլերը եւ հայ վերածնունդի շարժումը (համադրական հայեացք)*, Վենետիկ, Հայագիտական Մատենադարան Բազմավէպ, 1975:
- *Համամիութենական տրամախօսութիւն մը ԺԲ. դարուն. Բանակցութիւններ Ս. Ներսէս Շնորհալիի եւ կայսերական նուիրակ Թէորիանոսի միջեւ հայ եւ բիւզանդական եկեղեցիներուն միութեան շուրջ*, Վենետիկ, Հայագիտական Մատենադարան Բազմավէպ, 1978:
- *İnsancılık*, Istanbul: İnkılâp ve Aka Kitabevleri, 1982:
- *«Բաց մեզ, Տէր», կամ երթուղիի մը հանգրուաններ*, Պէյրութ, Տպ. Տօնիկեան եւ որդիք, 1987:
- *Gli Armeni in Italia*, Roma: De Luce edizioni d'arte, 1990:
- *The Armenian Way to Modernity: Armenian Identity between Tradition and Innovation, Specificity and Universality*, Venice: Supernova, 1997:
- *La dialettica tra valore e contingenza: dalla fenomenologia religiosa verso una rifondazione assiologica*, Naples: Edizioni La Città del Sole, 1998:
- I. Altounian, C. Gugerotti, M. Nordio, B. L. Zekiyan, *Armenia: una Cristianità al bivio*, Melzo: Editrice Cens, 1998:
- *Հայերը եւ Իտալիան*, Երեւան, Նաիրի, 1999:
- *L'armenia e gli armeni: polis lacerata e patria spirituale: la sfida di una sopravvivenza*, Milano: Guerini e Associati, 2000:
- *Հոգիի եւ ինքնութեան հետքերով*, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն, 2000:
- *Հայապատում*, Լոս Անճելոս, Ապրիլ Հրատարակչատուն, 2001:
- *Ինքնութեան խճանկար*, Պէյրութ, Մատենաշար ՄԱՅ թիւ 7, 2001:
- *Ermeniler ve Modernite*, translated by Altug Yilmaz, Istanbul: Aras Yayıncılık, 2001:
- *Venedik'ten Istanbul'a, Modern Ermeni Tiyatrosunun Ilk Adimlari, Ermeni Ronesansi ve Mikhitaristlerin Tiyatro Faaliyetleri*, Istanbul: Yayinlari, 2013:

### 2. ՀԱՅԵՐԷՆԷ ԻՏԱԼԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

- Elisē, *Sul monte Tabor: Omelia sulla transfigurazione*, Monastero di Bose: Edizioni Qiqajon, 1996:
- Nerses di Lambron, *Il primato della carita: discorso sinodale*, Comunita di Bose: Edizioni Qiqajon, 1996:
- *Canto d'Armenia*, Bologna: Associazione culturale "In forma di parole", 1998:
- *La spiritualità armena: il libro della lamentazione di Gregorio di Narek*, Roma: Studium, 1999:

### 3. ԽՄԲԱԳՐԱԾ ՈՒ ՀԱՄԱԽՄԲԱԳՐԱԾ ՀԱՏՈՐՆԵՐ

- *Atti del Primo Simposio Internazionale di Arte Armena*, Venezia: San Lazzaro, 1978:
- *Atti del II Simposio Internazionale "Armenia-Assiria": Istituzioni e poteri all'epoca ilkhanide, 30 maggio-2 giugno 1984*, Padova: Editoriale Programma, 1988:
- *Ad limina Italiae / Ar druns Italioy: in viaggio per l'Italia con mercanti e monaci armeni*, Padova: Editoriale Programma, 1996:
- *Bnagirk' yišatakac' / Documenta memoriale: dall'Italia*

4

2

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԸ ԴԷՊԻ ԵԳԻՊՏՈՍ ԺԹ. ԴԱՐՈՒՆ

Պոնափարթի ֆրանսական զօրքերուն արշաւանքը Եգիպտոսի վրայ կը ստիպէ իրեն լքել առեւտուրը եւ նոյն տարին վերադառնալ Իզմիր: Այնտեղ ան կ'աշխատի իբրեւ քաղաքի բրիտանական հիւպատոսարանի թարգմանիչ: Պատմականօրէն, Իզմիրի բրիտանական հիւպատոսարանը նշանակալի դեր խաղաց Եգիպտոսի ֆրանսական գրաւումին դէմ կատարուող արշաւին մէջ: 1800-ին Պօղոս կը վերադառնայ Եգիպտոս, ուր կ'աշխատի իբրեւ Սիտնի Սմիթի անձնական մեկնաբանը: Սմիթ բրիտանացի հրամանատար մըն էր՝ որուն վարած ռազմական գործողութիւնները վերջ պիտի դնէին ֆրանսական կայսրութեան գոյութեան Եգիպտոսի մէջ(3):

Յայտնապէս, Սիտնի Սմիթ Պօղոսին ընտրեց նախ եւ առաջ իր բազմալեզուանի ունակութիւններուն համար: Բացի այդ, իբրեւ հնարամիտ վաճառական՝ որ որոշ ժամանակով վարձած էր Ռաշիտի մաքսային կայանը, Պօղոս ունէր Եգիպտոսի մասին այն անհրաժեշտ գիտելիքը որ օգտակար կրնար ըլլալ Սիտնի Սմիթին: Սմիթի եւ Պօղոսի համագործակցութիւնը կը շեշտէ եգիպտացի վաճառականներուն խաղացած դերը Ֆրանսայի Եգիպտոս գալթումին ժամանակ: Անոնք բրիտանական ռազմական ղեկավարութեան տրամադրեցին ռազմագիտական տեղեկութիւններ որոնք հնարաւորութիւն տուին բրիտանական ուժերուն դիմակայելու ֆրանսական զօրքը եւ զայն վտարելու Եգիպտոսէն: Ֆրանսայի պարտութենէն եւ Սիտնի Սմիթի Եգիպտոսէն հեռանալէն ետք, Պօղոս կը դառնայ Եգիպտոսի օսմանեան նոր կառավարիչ Խուրշիտ Փաշայի անձնական թարգմանիչը: Պատմական ապացոյցներու սակաւութեան պատճառով, դժուար է որոշել թէ ինչ դեր խաղացած է Պօղոս՝ Խուրշիտ Փաշայի դէմ երեւելի ժողովրդական առաջնորդներուն ղեկավարած ապստամբութեան ընթացքին: Արդարեւ, կարելի է հաստատել՝ թէ Պօղոս լրիւ տեղեակ էր այն իրադարձութիւններուն, որոնք ճամբայ հարթեցին Մոհամմէտ Ալիին դառնալու Եգիպտոսի կառավարիչ: Մոհամմէտ Ալիի իշխանութեան ժամանակ, Պօղոս կը դառնայ Եգիպտոսի քաղաքական իշխանութեան թարգմանիչը:

Ապա Պօղոս կը հաստատուի Աղեքսանդրիա: Մոհամմէտ Ալիի հետ ունեցած իր յարաբերութիւնը կ'օգնէ իրեն գործարարական ձեռնարկութիւններ իրականացնել կառավարութեան հետ: Հետեւաբար, ան Մոհամմէտ Ալիէն հինգ տարուայ համար կը վարձէ Աղեքսանդրիոյ մաքսային կայանը՝ փոխան 2500 դրամի(4): Ըստ երկու կողմերուն (եգիպտական կառավարութեան եւ Պօղոսի) միջեւ կնքուած համաձայնագիրի պայմաններուն, ենթադրուած էր որ եթէ մուտքը պակաս ըլլար յիշեալ գումարէն, միեւնոյնն է, Պօղոս պարտաւոր էր զայն վճարել ամբողջութեամբ, իսկ եթէ մուտքը անցնէր այդ գումարը, երկու կողմերը պարտաւոր էին մասնաբաժնել շահոյթը(5): Այս համաձայնագիրը կը բացայայտէ Պօղոսի առեւտրական հանճարը եւ ունեցած դրամական կարողութիւնը, որոնք իրեն թոյլ տուին յաջողութեամբ համալրել Աղեքսանդրիոյ մաքսային վարչութեան կողմէ առաջադրուած բոլոր պայմանները: Շնորհիւ Ռաշիտի մէջ իր ունեցած մաքսային փորձառութեան եւ իր վարչական ընդունակութիւններուն, Պօղոս կարողացաւ յաջողութեամբ վարել Աղեքսանդրիոյ մաքսատունը, ձեռք բերել շահոյթներ եւ խուսափիլ ֆինանսական անկումէ: 1814-էն մինչեւ 1819, Պօղոս եւ Մոհամմէտ Ալի դարձան յաջող առեւտրական գործակիցներ: Այս կապը ապացոյց մըն էր Ալիի ֆինանսական քաղաքականութեան, որուն նպատակն էր շահոյթներ վաստակիլ եւ աւելցնել ազգային եկամուտը: Ալի-Պօղոս յարաբերութիւնը նաեւ արտացոլում մըն էր Պօղոսի հանդէպ Ալիի ունեցած վստահութեան իբրեւ մաքսային հարցերու եւ վարչութեան մասնագէտ: Աւելին, շահոյթը աւելցնելու նպատակով, Մոհամմէտ Ալի շահագրգռուած էր Պօղոսին քաջալերելու զբաղուիլ ֆինանսական հետապնդումներով: Այս բնաբանին մէջ, Պօղոսին արտօնուած էր տուրք հաւաքել այն օտար վաճառականներէն՝ որոնք ելումուտ ունէին եգիպտացի ցորենահատիկի վաճառականներուն մօտ:

(Շար. 1/2)

Անգլերէնէ թարգմանեց Հ.Ա.

(Dr. Yehia Mohamed Mahmoud Ahmed, 'The Armenian Immigration to Egypt in the 19th Century', *European Scientific Journal*, December 2013, Vol. 2, էջ 378-383)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. *Mémoires de Nubar Pacha*, Beyrouth: Librairie du Liban, 1983, էջ 6:

2. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի թղթակցութիւններու եւ նամակներու հաւաքածոյ, թղթածրար թիւ 3, փաստաթուղթ թիւ 2345:

3. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի թղթակցութիւններու եւ նամակներու հաւաքածոյ, թղթածրար թիւ 3, փաստաթուղթ թիւ 1234:

4. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի թղթակցութիւններու եւ նամակներու հաւաքածոյ, թղթածրար թիւ 3, փաստաթուղթ թիւ 7631:

5. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի թղթակցութիւններու եւ նամակներու հաւաքածոյ, թղթածրար թիւ 3, փաստաթուղթ թիւ 3456:

ԽՈՀԵՐ

# ԳԱՂԱՓԱՐԱԽՕՍԱԿԱՆ ԼԵԶՈՒ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Գաղափարախօսական լեզուն կը հանդիսանայ լեզուական շերտերուն, պիտի ըսէի, ամենավտանգաւորը: Ասիկա այն լեզուն է որ կը ձեւաւորուի վերը, իշխանականներուն կողմէ, ժողովուրդէն ու ստեղծագործ մտաւորականներէն անդին ու անկախ, կը գործածուի ու կը կրկնուի իշխանական խաւին ծառայող մտաւորականներուն կողմէ: Անոր նպատակն է ազդել ժողովուրդին վրայ:

Բոլոր երկիրներու ղեկավարները կը գործածեն գաղափարախօսական լեզու՝ Օպամա, Օլլանտ, Քամերուն, Փութին: Հայաստանի եւ սփիւռքի քաղաքական ղեկավարները ոչ մէկ ձեւով ետ կը մնան անոնցմէ:

Յօդուածիս համար ընտրեցի Հայաստանի սահմանադրական վերջին փոփոխութիւններուն առիթով Սերժ Սարգսեանի երկու յաջորդական ելոյթները՝ 7 Դեկտեմբեր 2015-ին (*ՀՀ նախագահ Սերժ Սարգսեանի խօսքը ՀՀ սահմանադրութեան փոփոխութիւնների հանրաքուէից յետոյ*) եւ 12 Փետրուար 2016-ին (*Նախագահ Սերժ Սարգսեանի խօսքը սահմանադրութեան փոփոխութիւնների կենսագործման վերաբերեալ*), որոնց բնագիրները կը գտնուին Հայաստանի Հանրապետութեան Նախագահ կայքէջին մէջ:

Սահմանադրական փոփոխութիւնները տեղի ունեցան Սերժ Սարգսեանի որոշումով, նախաձեռնութեամբ եւ ուղղակի ազդեցութեամբ, երբ ան արդէն կը բոլորէր իր նախագահութեան ութերորդ տարին: Ութ տարի ետք միայն պէտք զգացած է սահմանադրական փոփոխութիւններու, փոփոխութիւններ՝ որոնք իբր խորհրդարանական իրաւասութիւնները պիտի աւելցնեն, ուրեմն՝ պիտի պակսեցնեն նախագահական իրաւասութիւնները: Բնականաբար, Սարգսեան իր ձեռքով իր ունեցած իրաւասութիւններէն պիտի չհրաժարէր իր նախագահական փայլուն տարիներուն: Թէ ճշգրիտ ինչ է իր բուն նպատակը եւ ինչպէս պիտի այս համակարգին մէջ տեղաւորուին օլիկարքական համակարգին թիկունք կանգնած կուսակցութիւնները, յստակ պիտի դառնայ երկու տարի ետք՝ իր նախագահական գահի ժամկէտը աւարտելէն ետք: Բայց փորձենք տեսնել թէ ինչպէս կրնայ գործել ճառերուն բառային մեքանիզմը:

Յիշեալ երկու ճառերուն մէջ չռայլօրէն գործածուած բառերէն մէկն է «նոր» ածականը, որ կրկնուած է 37 անգամ՝ «նոր հնարաւորութիւններ», «նոր հանգրուան», «նոր ուժ», «նոր միս», «նոր ճանապարհ», «նոր Ընտրական օրէնսգիրք» (3 անգամ), «նոր ճանապարհի սկիզբ», «նորանկախ Հայաստան», «նոր քաղաքական համակարգ», «նոր քաղաքական մշակոյթ», «նոր արագութիւն», «նոր շունչ», «նոր սկիզբ», «նոր թափ», «նոր գաղափարներ», «նոր Հայաստան», «նոր մակարդակ», «նոր լիցք», «նոր մարտահրաւէրներ», «նոր փիլիսոփայութիւն», «նոր դերակատարութիւն», «նոր մշակոյթ», «նոր համակարգ», «նոր օրէնսդրութիւն», «նոր ընտրութիւններ», «նոր ջանքեր», «նոր ներդրումներ» (3 անգամ), «նորի ստեղծման միջոցով նոր ազդակներ», «խաղի նոր կանոններ», «նոր եռանդ», «նոր շուկաներ եւ ուղղութիւններ» եւ «նոր տարբերակ»:

Որեւէ գաղափարական ու մշակութային առումով այսքան «նոր»-ը մտաւոր ձախողութիւն մըն է, «նորացնելու» անկարողութիւն մը: Բայց անիկա գաղափարախօսական լեզուի յաջողութեան բանալին է: Գաղափարախօսական լեզուին համար կարեւոր է անընդհատ ու անվերջ նորութեան պատրանքը ստեղծել, քանզի նորութիւնը հոմանիշն է յառաջդիմութեան, բարգաւաճումին, արդիականութեան, քաղաքակրթութեան եւ նման գեղեցիկ հասկացողութիւններու: Մինչդեռ քննական միտքը պիտի հարցնէր՝ թէ ինչպէ՞ս կարելի է այսքան առատ ու անսահման նորութիւններ ստեղծել անորոշ ժամանակի մը ընթացքին եւ թէ ինչո՞ւ Սարգսեան այս նորութիւնները չէ իրականացուցած իր նախագահութեան անցած ութ տարիներուն: Քննական միտքը պիտի տեսնէր՝ թէ այդ նորերու տեսակներուն միայն երկուքը ունին չօշափելի ազդակներ, որոնք սերտօրէն առնչուած են իշխանականներու շահերուն հետ: Մէկը կապուած է Քոչարեան-Սարգսեանի նէօլիպերալ քաղաքականութեան հետ՝ «նոր ներդրումներ» եւ «նոր շուկաներ», միւսը կապուած է սահմանադրական մեծապէս կասկածելի փոփոխութիւններուն եւ անոնցմէ բխելիք օրէնսդրական համակարգին հետ՝ «նոր Ընտրական օրէնսգիրք», «նոր օրէնսդրութիւն», «նոր ընտրութիւններ»: Մնացածը վերացական «նորութիւն»-ներ են, կապուած նոյն ինքը նորութեան գաղափարի ամրագրումին հետ: Գաղափարական լեզուն կը ջնջէ քննական մտածողութիւնը:

Հայութիւնը շեշտելը հայրենասիրութեան չափանիշ մըն է: «Հայ» բառը եւ «հայ» արմատը կրող բառերուն քանակը երկու ճառերուն մէջ հասաւ 54-ի՝ «հայրենակից» (3 անգամ), «հայկական պետականութիւն», «հայ ժողովրդի պատմութիւն», «Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն», «Բարգաւաճ Հայաստան», «Հայաստանի Հանրապետութիւն» (2 անգամ), «Հայաստանի պետութիւն», «Հայաստանի պատմութիւն» (2 անգամ), «Հայաստան» (29 անգամ), «հայրենասիրութիւն», «հայրենասէր», «հայրենիք» (5 անգամ), «հայութիւն» (3 անգամ), «հայ ժողովուրդ», «հայորդի» եւ «հայեր»: Չափազանց առատ է: Ինչո՞ւ պէտք է «հայ» բառը միշտ կրկնել, եթէ ինքնըստինքեան ճառախօսը Հայաստանի նախագահն է, եւ ինքնըստինքեան ենթադրուած է որ ամէն բան ընէ հայութեան համար: Պէ՞տք է շեշտէ՝ որ ան կը գործէ «հայ»-ուն համար: Հապա որո՞ւն համար պիտի գործէր: Բայց կրկնելով, շեշտելով, պնդելով, պնդացնելով, հոլովելով, յանկերգելով, բազմացնելով, բազմապատկելով «հայ»-ութիւնը, նախագահը կը մնայ անձեռնմխելի քանի որ հայութիւնն ինքը անձեռնմխելի հասկացողութիւն մըն է: Հայրենասիրութեան անձեռնմխելիութեան տակ Սարգսեան կը թաքցնէ իր «ոչ-հայրենասիրական» գործերը՝ օլիկարքական ենթարկուածութիւնը, ռուսական նոր-գաղութատիրութեան ձեռնբաց ընդունելութիւնը, ղարաբաղեան բանակցութիւններուն դիտաւորեալ կամ ոչ-դիտաւորեալ անյաջողութիւնը, անհաւատալի արտագաղթը, որ բոլորն ալ ենթադրուած են ըլլալ ոչ-հայրենասիրական դրսեւորումներ:

Ագդեցիկ տեղ կը գրաւէ «մեր» դերանունը, որ երկու ճառերուն մէջ գործածուած է ընդամէնը 85 անգամ, օրինակ՝ «մեր երկիրը», «մեր հասարակութիւնը», «մեր պատկերացումները», «մեր գաղափարները», «մեր պետութիւնը», «մեր պետականութիւնը», «մեր ժողովուրդը», «մեր զաւակները», «մեր հայրենակիցները», «մեր բոլորի», «մեր նախնիները», «մեր առջեւ», «մեր քաղաքական», «մեր իրականութեան», «մեր խնդիրները», «մեր կեանքը», «մեր փորձը», «մեր քաղաքացիները», «մեր հայրենիքը», «մեր մամուլը», եւ այլն, եւ այլն: Անկախ թէ «մեր»-ը ինչ կը ներկայացնէ՝ իշխանութիւն, ժողովուրդ, թէ երկուքը միասին, անոր կրկնութիւնը ինքնավստահութեան պատրանքն է՝ որ կը քօղարկէ իշխանական յաւակնոտութիւնը, ինքնագոհութեան երազանքն է՝ որ կը ծածկէ ժողովրդական դժգոհութիւնը, ինքնիշխանութեան ցնորքն է՝ որ կը թաքցնէ ռուսական հպատակութիւնը, անկախութեան հրապուրանքն է՝ որ կը սքօղէ նէօլիպերալ կախուածութիւնը: Մենք ենք ամէն բանի տէրը, մենք ենք մեր ճակատագիրը կերտողը: Անիկա յատկապէս հերքումն է ուրիշի գոյութեան կամ հաստատումն է ուրիշի բացակայութեան: Անիկա բացարձակացումն է անհարցական եսին:

Արդիական պետութեան կարգախօսն է ժողովրդավարութիւնը: Սարգսեան այս բառը

4




## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 19 Յունիս 2016

Ս. Պատարագ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:

Յաւարտ Ս. Պատարագի, հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի ***ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ*** հոգւոյն ի հանգիստ, որոնք կախաղան հանուեցան եւ նահատակուեցան 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ ԵՂԻԿ ՃԷՐԷՃԵԱՆԻ *ՄԵԾՆ ՄՈՒՐԱՏ* ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի Գիտութեան Ազգային Ակադեմիայի Պատմութեան Ինստիտուտին կողմէ, լոյս տեսած է Տոքթ. Եղիկ Ճէրէճեանի հեղինակած *Մեծն Մուրատ* գիրքը, իբրեւ «Հրասիրտները» մատենաշարի առաջին հրատարակութիւն:

248 էջ կազմող գիրքին 9-ը գլուխները կը ներկայացնեն Մեծն Մուրատի (Համբարձում Պոյաճեան) անձնական կեանքը՝ հարուստ արխիւային նիւթերով, որոնք կը տպուին առաջին անգամ:





### ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ՝ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐ

*e dall'Armenia: studi in onore di Gabriella Uluhogian*, Bologna: Università di Bologna, 2004:

- *Gli armeni in Venezia: dagli Sceriman a Mechitar*, Venezia: Istituto veneto di scienze, lettere ed arti, 2004:

- *Armenia: Imprints of a Civilization*, Cinisello Balsamo: Silvana, 2011 (հրատարակուած են նոյնին ֆրանսերէն եւ իտալերէն տարբերակները):

4. ՅՕԴՈՒԱԾՆԵՐ ԺՈՂՈՎԱԾՈՒՆԵՐՈՒ ՄԷՋ

- 'Ełišē as Witness of the Ecclesiology of the Early Armenian Church', *East of Byzantium: Syria and Armenia in the Formative Period*, ed. Nina G. Garsoian, T. F. Matthews and R. W. Thomson, Washington, 1982, pp. 187-197:

- 'The Armenian Community of Philippopolis and the Bishop Ioannes Atmanos Imperial Legate to Cilicia', *Between the Danube and the Caucasus*, ed. György Kara, Budapest, 1987, pp. 363-373:

- 'L'Armenia tra Bisanzio e l'Iran dei Sasanidi e momenti della fondazione dell'ideologia dell'Armenia cristiana (secc. V-VII): preliminari per una sintesi', *Crossroad of Cultures: Studies in Liturgy and Patristics in Honor of Gabriele Wikler*, ed. Hans-Jürgen Feulner, Elena Velkovska and Robert F. Taft, Roma: Pontificio Istituto Orientale, 2000, pp. 724-739:

- 'La formazione e gli sviluppi tra gli armeni di correntu ecclesiali simpatizzanti per la comunione romana', *Eukosmia: Studi miscellanei per il 75o di Vincenzo Poggi S.J.*, a cura di Vincenzo Ruggieri e Luca Pieralli, Rubbettino Editore, 2003:

- 'Christianity to Modernity', *The Armenians: Past and Present in the Making of National Identity*, ed. Edmund Herzig and Marina Kurkchiyan, London and New York: RoutledgeCurzon, 2005, pp. 41-64:

- 'Armenian Spirituality: Some Main Features and Inner Dynamics', *Worship Traditions in Armenia and the Neighboring Christian East: An International Symposium in Honor of the 40th Anniversary of St Nerses Armenian Seminary*, ed. Roberta R. Ervine, Crestwood, New York: St Nerses Armenian Seminary, 2006, pp. 263-284:

- 'Towards a "Discourse on Method" in Armenian Studies: A Survey of Recent Debates with Special Regard to the Problem of Textual Hermeneutics', *Armenian Philology in the Modern Era: From Manuscripts to Digital Text*, ed. Valentina Calzolari, Leiden, Boston: Brill, 2014:

Բաց աստի, ունի պարբերականներու եւ հանդէսներու մէջ ցրուած հարիւրաւոր գիտական յօդուածներ տարբեր լեզուներով:

Գրած է բառայօդուածներ *Dictionnaire de spiritualité*-ի զանազան հատորներու մէջ: Հեղինակն է նաեւ բազմաթիւ գիրքերու նախաբաններու:

Ապրիլեան դաստախօսութիւնը գեղեցիկ խառնուրդ մըն է գիտականութեան եւ մարդկային անկեղծ յուզումներու: Ահաւասիկ բնական պոռթկումով արտասանած գաղափարներէն մէկը.

«Երկիր մը կայ որ միշտ վարանած է, տատամսած է հայոց ցեղասպանութիւնը ճանաչելու գործընթացին մէջ: Մանաւանդ իր բարձրագոյն կարգի, բարձրագոյն մակարդակի ներկայացուցիչը շատ փափուկ պահու մը ընթացքին՝ երբ ամերիկեան ծերակոյտը իր հերթական խոստումնալի ճանաչման գործընթացներէն (որոնք վերջին պահուն կը ջնջուէին) մէկուն հանգրուանին մէջ էր, կրցած է գտնել այն ժամանակի Ամերիկայի նախագահ Քլինթընը՝ մինչ Եգիպտոս կ'այցելէր (կարծեմ Եգիպտոսի անապատներուն մէջ հին յուշարձանները այցելութեան պահուն), եւ, անշուշտ միջնորդներու ճամբով, ձեռքը նամակ մը սպրդել, ըսելու համար՝ որ «կը խնդրենք, իբրեւ ձեր լաւագոյն դաշնակիցներէն մէկը, որ այս ճանաչումը տեղի չունենայ»: Այս նոյն անձը՝ երբ ինքը եւ իր երկիրը սկսան լուրջ խնդիրներ ունենալ Թուրքիոյ հետ, յանկարծ Թուրքիոյ վարչապետին զգուշացուց քիչ թէ շատ սա բանաձեւով. «Զգոյշ եղիր, եթէ խելօք չկենաս, ես իմ երկրիս մէջ հայոց ցեղասպանութիւնը ճանաչել կու տամ»: Այս վարքագիծը կը գտնուի մեր շատ մը հայրենակիցներուն մէջ՝ գոնէ Իտալիայի իմ հայ շրջանակիս մէջ, բայց նաեւ իմ հանդիպած ամերիկահայերու, ֆրանսահայերու, նաեւ Միջին Արեւելքէն բաւական հայերու մէջ, որոնք շատ խանդավառ են՝ որ այդ երկիրը վերջապէս ցեղասպանութիւնը պիտի ճանչնայ: Ես անկեղծօրէն շատ տխուր էի՝ որ մեր այդ սուրբ նահատակները յետին, ամենէն անարժէք, բարոյազուրկ եւ անողոք քաղաքականութեան գործիքներ դարձած են եւ չահագործութեան առարկայ:»

Մէկ կողմէն՝ եգիպտահայերուս համար հետաքրքրական դէպք մը կը պատմէ, որուն առեղծուածը տակաւին պէտք է լուսաբանել, միւս կողմէն՝ ինչպէս Հրանդ Տինք, դէմ է մէկ ու կէս միլիոն ահաւոր զոհերը դարձնել քաղաքական չահագործումի առարկայ:

Աւելցնենք, որ Հայր Զէքիեան այս տարուայ սկիզբը կը գտնուէր Գահիրէ, մասնակցելու Կաթողիկէ Եկեղեցիի եւ Արեւելեան Ուղղափառ Եկեղեցիներու Միջեւ Աստուածաբանական Երկխօսութեան Միջազգային Միացեալ Յանձնախումբի կազմակերպած տասներեքերորդ հանդիպումին, որ կայացաւ 2016 Յունուար 30-էն մինչեւ Փետրուար 6:

Սոյն գրքոյկը տպագրուած է սահմանափակ տպաքանակով: Ցանկութեան պարագային անվճար կը տրուի միայն *Ջահակիր*ի օրինական բաժանորդներուն: Ստանալու համար դիմել խմբագրութիւն՝ tchahagir@journalist.com:

### 3 ԳԱՂԱՓԱՐԱԽՕՍԱԿԱՆ ԼԵԶՈՒ

գործածած է 8 անգամ՝ «ժողովրդավարական հաստատութիւններ», «ժողովրդավարական պետութիւն» (2 անգամ), «ժողովրդավարական երկիր», «ժողովրդավարական ինստիտուտ», «ժողովրդավարութեան կառուցում», «ժողովըրդավարութիւն», «ժողովրդավարական»: Բնականաբար, ժողովրդավարութիւն՝ կանխապէս որոշուած նախագահով, կանխապէս համաձայնեցուած միջկուսակցական դաշնակցութիւններով, կանխապէս յայտնի սահմանադրական քուէարկութեան արդիւնքով, օլիկարքային մրցակցութեամբ, չմոռնալով լրատուական վերահսկուած միջոցներու եւ ոստիկանական հզօր գործիքի մը գոյութիւնը:

Ժողովրդավարութիւնը, բնականաբար, պիտի կապուէր ազատութեան գաղափարին հետ՝ ժողովուրդին «տրուած» ազատութիւն, մարդկային ազատ մտածողութիւն եւ արտաքին գործերը տնօրինելու պետական ազատութիւն: Ահաւասիկ գործածուած արտայայտութիւնները՝ «ազատ մտածելակերպ», «ազատ Հայաստան», «ազատութիւն» (5 անգամ), «ոչ ոք մեր տեղի չի դառնայ ազատ», «մենք ազատ ենք», «անազատութիւն», «ազատելու երկիրը», «ազատ ընտրութիւններ» եւ «ազատ ինքնորոշում»:

Կան նաեւ ուրիշ բանալի բառեր՝ «պէտք է», «մարտահրաւէր», «ազգային-համազգային-միջազգային-համաշխարհային», որոնք տարբեր անկիւններով կը նպաստեն գաղափարախօսական պաչարի ամրապնդումին:

Շնորհիւ բառապաշարային մասնաւոր ընտրութեան՝ ապահովելով նորը իր ամբողջ գեղեցկագիտութիւններով, հայը իր եսով եւ ժողովրդավարութիւնը իր ազատութեամբ, նախագահը երաշխաւորած կ'ըլլայ իր խօսքին (ոչ-)իմաստային վճռականութիւնը: Օրինակ, բոլորովին աներեւոյթ կը դառնայ հետեւեալ նախադասութեան երկդիմութիւնը. «Վստահ եմ, որ սահմանադրական փոփոխութիւնների արդիւնքում Հայաստանի քաղաքական համակարգը կը դառնայ առաւել բաց, ճկուն եւ ներքուստ բարդ:» Ուրեմն, իր նախագահած ութ տարիներուն Հայաստանի համակարգը եղած է նուազ բաց, նուազ ճկուն եւ ներքուստ պարզ: Բայց քանի որ բառերը գաղափարախօսական բնագիրներուն մէջ պատմութիւն չունին, այլ ունին ուղղահայեաց իմաստ, հետեւաբար բոլոր «նուազ»-ները դուրս կը մնան ընկալելի որեւէ հնարաւորութենէ:

Կամ հետեւեալ նախադասութիւնը. «Ինչպէս շատ ժողովրդավարական պետութիւններում, քաղաքական պայքարի առաջնորդները կը լինեն կուսակցութիւնները:» Եւ քանի որ անցեալ ութ տարիներուն քաղաքական պայքարի առաջնորդները կուսակցութիւնները չէին, ուրեմն, պէտք է եզրակացնել, որ Սարգսեան ղեկավարած է ոչ ժողովրդավար սկզբունքներով: Բայց վերջինս անյայտ է նախադասութեան ուղղաձիգ իմաստին մէջ:

Այսպիսի իմաստներ շատ դիւրութեամբ կարելի է գտնել յիշեալ ճառերու ամբողջ ընթացքին: Կրկնեմ, որ գաղափարախօսական լեզուն բնորոշ է աշխարհի բոլոր իշխանականներուն:

Հակիրճ վերջաբան մը:

Սահմանադրական *բարե*փոխութիւններու քուէարկութեան *բարե*յաջող աւարտէն ետք, ներկայ իշխանութիւններուն մերձ կանգնած կուսակցութեան մը ներկայացուցիչը Հ1 հեռատեսիլով յայտարարեց. «Մենք դարձել ենք ընդդիմութեան շահերի պաշտպան: ... Դժուար է պատկերացնել մի կուսակցութիւն գայ իշխանութեան մէջ բայց ընդդիմութեան շահերի պաշտպանի յանձնառութիւն վերցնի:» Նման լեզու արդէն բնորոշ չէ աշխարհի իշխանականներուն: Երկդիմութիւնը նախատեսուած չէ ըլլալ այսքան բացայայտ: Տակաւին շատ բան ունինք սորվելու Սերժ Սարգսեանէն:

ԵԳԻՊՏԱՀԱՅ ԴԷՄՔԵՐ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԸ ԴԷՊԻ ԵԳԻՊՏՈՍ ԺԹ. ԴԱՐՈՒՆ

ՏՈՔԹՈՐ ԵԷՀԻԱ ՄՈՀԱՄԷՏ ՄԱՀՄՈՒՏ ԱՀՄԷՏ
Արդի պատմութեան փրոֆեսոր, Քաֆր էլ-Շէյխի Համալսարանի Պատմութեան եւ Հնագիտութեան Բաժանմունք

## ՊՕՂՈՍԻ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ ՄՈՀԱՄՄԷՏ ԱԼԻԻ ՎՐԱՅ

Մոհամմէտ Ալիի տածած յարգանքն ու գնահատանքը Պօղոսի նկատմամբ կ'արտացոլեն վերջինիս վայելած համբաւը եւ հասարակութեան մէջ գրաւած գերագոյն դիրքը: Պօղոսի հետ ունեցած Ալիի թղթակցութեան մանրազնին դիտարկումը կը բացայայտէ իրեն տրուած առանձնաշնորհումները: Իր նամակներէն մէկուն մէջ՝ գրուած 1835 Ապրիլ 4-ին, Մոհամմէտ Ալի կը գրէ. «Այս գրութիւնը հասցէագրուած է քրիստոնէութեան հետեւորդներու փառաւոր իշխան, իր հաւասարակիցներուն մէջ ամէնէն իմաստուն, նորին վսեմութիւն, եգիպտական առեւտուրի եւ արտաքին գործերու տեսուչ՝ Պօղոս Պէյին»: Այս նամակը կը վկայէ նաեւ՝ թէ ըստ Մոհամմէտ Ալիի հրամանագիրին, Պօղոս Պէյ կը նշանակուի եգիպտական արտաքին առեւտուրի եւ գործարքի պատասխանատու. «Շնորհիւ իր նկատմամբ մեր ունեցած վստահութեան, արտօնուած է իրեն հրամանագիրեր արձակել եւ արտակարգ կացութիւններու ժամանակ արտօնութիւններ տրամադրել: Արտօնուած է իրեն ֆինանսական եւ պիւտճէի հարցերու կապակցութեամբ անհրաժեշտ որոշումներ կայացնել: Իրմէ կը պահանջուի ամէն շաբաթ տրամադրել գիներու ցանկ մը եւ գնումներու ու ծախսերու տեղեկագիր մը»(6): Իբրեւ պարգեւ իր ազնուութեան, համեստութեան եւ ջանասէր աշխատանքին, Մոհամմէտ Ալի իրեն կը շնորհէ Ամիր ալ-լէուա տիտղոսը:

Նամակի ձեւով գրուած այս փաստաթուղթէն պարզօրոշ կ'երեւայ՝ թէ Պօղոս որքան հաւատարիմ անձ մըն էր Մոհամմէտ Ալիի համար: Ըստ նամակին, Պօղոս կը հանդիսանար Եգիպտոսի քրիստոնեայ համայնքին փառքն ու պատիւը: Յայտնապէս, Մոհամմէտ Ալի Պօղոսին կը համարէր ազգային եւ ժողովրդական հերոս մը: Աւելին: Ան երբեք Հռոմի Պապին մասին չէր խօսած այն ձեւով ինչ խօսած էր Պօղոսի մասին, որուն ներկայացուցած էր առասպելական եւ դիցաբանական ոճով: Մոհամմէտ Ալի Պօղոսին կը տեսնէր իբրեւ քրիստոնեայ փոքրամասնութեան հոգեւոր առաջնորդ: Այսուհանդերձ, Մոհամմէտ Ալի քրիստոնեաները կը ճանչնար ոչ իբրեւ եգիպտացի քաղաքացիներ այլ իբրեւ կրօնական աղանդ կամ տարբեր էթնիքականութիւն: Բայց ասիկա այդ ժամանակուայ սովորական տրամասացութիւնն [discourse] էր եւ Մոհամմէտ Ալիի պատումը չէր միտեր թերագնահատել քրիստոնեայ փոքրամասնութիւնը կամ ստորացնել զայն: Իր իշխանութեան ժամանակ, քրիստոնեաները հասան պետական ամենաբարձր դիրքերու: Անոնցմէ շատերը արժանացան իշխանի վերաբերմունքի եւ ստացան բարձր կոչումներ: Նոյն ինքը Պօղոս 1818-ին Մոհամմէտ Ալիի հրամանագիրով ստացաւ Պէյի տիտղոս: Շնորհիւ իր համբաւին, Մոհամմէտ Ալի իրաւասութիւն տուած էր Պօղոսին օգտուիլ պիւտճէէն՝ առանց նախնական արտօնութեան: Նոյնիսկ Մոհամմէտ Ալիի որդիները չունէին այս հնարաւորութիւնը՝ անոնք իրաւունք չունէին յաւելեալ դրամ ընդունելու եւ իրենց ամսականներէն աւելի գումար ստանալու: Երբ իր զաւակներէն մէկը՝ Սայիտ Փաշա, Պոլսոյ դրամատունէ մը փոխառութիւն կը վերցնէր, Մոհամմէտ Ալի կը պարտադրէր վերադարձնել գումարը:

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ

Մոհամմէտ Ալիի իշխանութեան ժամանակ, Պօղոս Եուսուֆեան կը գտնուէր եգիպտական վարչակարգին գագաթը: Պօղոս իր անձնական պատասխանատուութեամբ կը գործադրէր հետեւեալ առաքելութիւնները.

1. Անընդհատ նախահաշիւը կը կազմէր օտար շուկաներու մէջ գտնուող եգիպտական արտադրանքներու գիներուն:

2. Օտար վաճառականներու հետ ունեցած իր յարաբերութիւններուն ընդմէջէն, ան կը գնահատէր բամպակի գինը, քանի որ եգիպտական բամպակի արտադրութիւնը կը կազմէր իր հետաքրքրութիւններէն մէկը: Բամպակը Եգիպտոսի ռազմավարական արտադրութիւնն էր եւ օտար դրամի գլխաւոր աղբիւրը:

3. Պօղոս պատասխանատու էր կանոնաւորելու տարբեր հունձքերու արտահանումը Եգիպտոսէն: Մշտապէս հետեւելով եւ վերահսկելով օտար շուկաները, ան յաջողեցաւ եգիպտական արտադրանքները արտահանել պատշաճ գիներով: Երբ 1827-ին ներմուծուած սուրճի գիները անկում ապրեցան, Պօղոս կարողացաւ անմիջական լուծել հարցը՝ նուազեցնելով կառավարական խանութներու եւ մթերանոցներու սուրճին գիները: Ան նաեւ վաճառականներուն կը տեղեկացնէր թէ ինչ քանակութիւն հունձք կ'ակնկալուի ուղարկել մթերանոցները որպէսզի պահպանուի շուկայի հաւասարակշռութիւնը:

4. Պօղոս կ'օգտագործէր աճուրդը՝ ըստ պատշաճի բարձրացնելու գիները: Ան յարաբերութեան մէջ էր վաճառականներուն հետ եւ անընդհատ իրենց տեղեակ կը պահէր շուկայական պայմաններու նորութիւններուն մասին(7):


Տոքթ. Եէհիա Մոհամէտ Մահմուտ Ահմէտ

5. Պօղոս պատասխանատու էր տեղ հասցընելու օտար վաճառականներուն բերած հունձքը եւ իրենց հետ բանակցելու գիներուն մասին: Ան կապի մէջ էր օտար առեւտրական նաւերուն հետ՝ որոնք Աղեքսանդրիոյ նաւահանգիստները կու գային եգիպտական արտադրանքը եւ հողագործական ապրանքները գնելու համար: Ան չահագրգռուած էր որ Աղեքսանդրիա հասնող բոլոր վաճառականական նաւերը իրենց ամբողջ կարողութեամբ բեռցուէին եգիպտական ապրանքով:

6. Պօղոսին թոյլատրուած էր կառավարական եկամուտները օգտագործել գնելու համար անհրաժեշտ օտար արտադրանքն ու ապրանքները:

7. Պօղոս կ'արձանագրէր երկու շաբաթուայ ընթացքին Աղեքսանդրիոյ մթերանոցները ուղարկուած հունձքը: Ան կը կազմէր նաեւ կառավարութեան հասարակական պարտքի արձանագրութիւնը: Այս արձանագրութիւնները կը պատրաստըւէին Պօղոսի գրագիրներուն եւ օգնականներուն կողմէ, որմէ ետք ան անձամբ կը վերանայէր զանոնք եւ կ'աւելցնէր իր կնիքը որպէսզի առաքուին պատկան մարմիններուն: Պօղոս կը պահէր նաեւ Եւրոպայի առեւտրական գործակալներուն արձանագրութիւնը:

8. Իր պետութեան ընդլայնումէն ետք դէպի Սուրիա, Մոհամմէտ Ալի Պօղոսին կը յանձնէ Սուրիոյ վարչական տեսչութիւնը: Պօղոս միջնորդ գործակալ կը դառնայ Մոհամմէտ Ալիի եւ Սուրիոյ կառավարիչ Իպրահիմ Փաշայի միջեւ:

9. Մոհամմէտ Ալի կ'օգտագործէ Պօղոսին որպէսզի համոզէ բրիտանացի վաճառականներուն վճարել մաքսային տուրքերը: Երբ բրիտանական հիւպատոսը եւ իր խնամակալութեան տակ գտնուող վաճառականները կը մերժեն վճարել մաքսային տուրքերը, Պօղոս կը միջամտէ եւ կը համոզէ իրենց գումարները ի պահ դնել կառավարական պանքաներուն մէջ:

10. Պօղոս կը միջամտէ նաեւ մեղմելու Եւրոպայի վաճառականներուն եւ հարաւային Լիբանանի Սայտա (Սիտոն) քաղաքի բնակիչներուն միջեւ ծագած անհամաձայնութիւնները:

Այս բոլորէն յայտնի կը դառնայ Մոհամմէտ Ալիի եւ Պօղոսի միջեւ գոյութիւն ունեցած սիրալիր եւ հաւատարիմ յարաբերութիւնը: Ասիկա չէր խանգարեր՝ որ կարեւոր որոշումներ առնելէ առաջ Պօղոս խորհրդակցէր Մոհամմէտ Ալիի հետ: Հակառակ որ Մոհամմէտ Ալի կը գնահատէր Պօղոսի փորձառութիւնն ու ողջամտութիւնը, երբեմն կը մերժէր իր առաջարկները: Օրինակ, ան կը մերժէ երբ Պօղոս կ'առաջարկէ կառավարութեան վճարել Եւրոպա արտահանուող բամպակին ապահովագրութեան ծախսերը: Ըստ օրէնքին, երկու միլիոն ոսկիի արժողութեամբ բամպակ գնող բրիտանացի վաճառականները իրենք պէտք է վճարէին ապահովագրութեան ծախսերը: Աւելին, տարբեր պատճառներով, Պօղոսի առաջարկած ոչ բոլոր գնումներուն հաւանութիւն կու տար Մոհամմէտ Ալի(8):

## ՊՕՂՈՍ՝ ԽՈՐՀՐԴԱՏՈՒ

Պօղոս կը ստանձնէ Մոհամմէտ Ալիի խորհրդատուի դերը բոլոր բնագաւառներուն մէջ: Ջգտելով զարգացնել զանազան ասպարէզներ եւ տարբեր կառավարական շրջանակներու տրամադրել գործակատարութեան աւելի լաւ պայմաններ, Մոհամմէտ Ալի պետական գործերու առնչութեամբ խորհուրդի եւ խորհրդակցութեան համար միշտ կը դիմէր Պօղոսին: Օտար շուկաներ կատարուող եգիպտական արտահանումներուն առումով, նախքան որեւէ որոշումի կայացումը, Ալի կը հարցնէր Պօղոսի խորհուրդը:

1827-ին, Պօղոս իր մասնակցութիւնը կը բերէ եգիպտական արտահանումներուն համար նոր շուկաներ բանալու գործողութեան: Առաջին անգամ ըլլալով եգիպտական մարգարիտը կ'արտահանուի Կրանատա (Սպանիա), մինչ սպանիական շուկային տակաւին անսովոր էին եգիպտական արտադրութիւնները: Պօղոս կ'առաջարկէ նաեւ բրինձի հունձքը վաճառել աճուրդի կամ մասնավճարի միջոցով: Իրմէ կը խնդրեն միաւորել կշիռքի եւ չափումի միաւորները, քանի որ Եգիպտոսի մէջ կը գործածուէին թէ՛ օսմանեան եւ թէ՛ եւրոպական տեսակները: 1835-ին, ան կը միջամտէ արգիլելու սուրճի ներմուծումը Եգիպտոս օտար վաճառականներուն կողմէ: Ան կարեւոր դեր կը խաղայ եգիպտացի վաճառականներուն քաջալերելու ներգրաւուիլ արտաքին առեւտուրի մէջ, որ կը հանդիսանար ոչ-եգիպտացիներուն մենատիրութիւնը:

Պօղոս կարծիքներ կը փոխանակէր օտար հիւպատոսներու, դեսպաններու եւ պատգամաւորներու հետ եւ վիճաբանութիւններուն ամփոփումները կը ներկայացնէր Մոհամմէտ Ալիին:

↳ 4

## ԹԷՈԴԻԿԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ ԱՐԱՐԱՏ ՔՐԻՍԵԱՆԻՆ (Երրորդ յաւելուած *Ջահակիր*ի)

Լոյս տեսաւ *Ջահակիր*ի Գ. յաւելուածը՝ *Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*: Ան կը բովանդակէ Թէոդիկի 16 ձեռագիր նամակները՝ հասցէագրուած մարմնամարզութեան ուսուցիչ եւ մարմնամարզական յօդուածներու հեղինակ Արարատ Քրիսեանին (1897, Պոլիս - 1965, Գահիրէ): Թէոդիկի նամակները գրուած են 1925-1928-ին եւ ուղարկուած Գորֆուէն, Նիկոսիայէն եւ Փարիզէն: Քրիսեանի ուղարկած նամակներն ու պատասխանները չեն յայտնաբերուած:

Ստանալու համար դիմել խմբագրութիւն՝ tchahagir@journalist.com:

## ԳՈՒՄԳԱԲՈՒԻ ՄԷՋ ԺՈՂՈՎՆԵՐ

1 ↳

դրումներուն առընչութեամբ, սակայն բոլորը համակարծիք գտնուած են, թէ համայնքէն ներս պառակտման մը տպաւորութիւնը պէտք է անպայման կանխուի: Կէս գիշերը անց զեկոյցներու վրայ տարուած աշխատանքը ընդհատուած է՝ գիշերուան յառաջացած ժամուն պատճառով: Այդ աշխատանքները վերսկսած են առաւօտեան: Ըստ երեւոյթին, Կրօնական ժողովը կը նախընտրէ իր զեկոյցը հրապարակել VADİP-ի յայտարարութեան բովանդակութեան վերահասու դառնալէ վերջ: Բայց եւ այնպէս, VADİP-ի զեկոյցի բովանդակութեան վրայ տարուած աշխատանքները, ըստ երեւոյթին, անկախատեսելիօրէն երկարած են: VADİP-ի արտահերթ ընդհանուր ժողովի արձակման փուլին, ժամը շուրջ 22.00-ին, զեկոյցը շարադրելու պատասխանատըւութիւնը ստացած ներկայացուցիչները ժողովականներուն խոստացած են Յունիս 14-ի առաւօտեան նախորդ օրուայ նիստի արդիւնքին շուրջ յայտարարութիւն մը փոխանցել մամուլին: Այդ կանխատեսումները չեն արդարացած՝ նկատի ունենալով, որ մինչեւ գրեթէ կէսօրուան ժամերը այսօր VADİP-ի անունով ոչինչ փոխանցուած է մամուլին: Հաւանական է, որ օրուան տեւողութեան Կրօնական ժողովին կամ VADİP-ին կողմէ հրապարակուին զեկոյցներ, սակայն ըստ դէպքերու ըն թացքին՝ այս պահու դրութեամբ ի զօրու ըլլալ կը թուի ամէն վարկած:

Երեքշաբթի, 14 Յունիս 2016

*Ժամանակ*

## ԿԱԽԱՂԱՆՆԵՐԸ
(հատուած)

ԱՐՍԷՆ ԵՐԿԱԹ

Ով անէծքի սիւներ, սիւնե՜ր ոճրակերտ,
Ալ յաղթապանծ կամարներու կը փոխուիք,
Աստղերն ահա՛ ծիրանեհոյլ կը պսակեն
Ձեր հերոսները մաքրափայլ ճակատով...
Արեւն անոնց աճիւնին մէջ հոսեցուց
Իր ջերմութիւնն անմահօրէն լուսացայտ
Եւ արտասուքը մայրերու սրգաւոր
Մարգարտացաւ չիթ առ չիթ
Յիշատակի սափորին մէջ քանդակուած
Դիւցազնափառ Արարատի մարմարէն:
Անոնց հոգին մահուան դանդիոը գրկեց
Աստեղավառ բաբախումով մ'անսահման,
Եւ թըռչանքով մ'արծիւի
Պարփակեց վեհ գաղափարի ջահերուն
Լուսափողփող պայծառութիւնը կարմիր...
Հոն ուր երբեմն բարձրացաք, ո՜վ սիւներ,
Արդ կը խիւսէ փառքին պըղինձն հոյաչուք,
Ազատութեան հայրենիքն,
Եւ չանթակուռ մուրճերն են որ կը կերտեն
Խորհըրդարձանն Անմահութեան երկնաթռիչ...
Արծիւ մ'հսկայ որուն թեւերը մաշկեղ
Եւ ճապուռները ծանրագարդ են համակ
Դափնիներով դրասանդուած,
Բարձունքին վրայ պիտի հըսկէ ձեր մահուան
Անդորրաւէտ եւ պանծալի թմբիրին,
Ով հերոսներ, վրէժխնդիրնե՜ր, մեռեալնե՜ր,
Անմահօրէն մահացած...
Եւ Մայր մը լուռ, իր սուգին մէջ խորասոյզ,
Մայր մը որ վիշտն անհունութեամբն իր գրկեց
Խաչի մը պէս Գողգոթայէ Գողգոթա,
Հոն պիտի կանգ առնէ, (Արեւն աղեխարշ
Անոր տուած ըլլալով
Յաւերժութեան գեղեցկութիւնն հոգեզմայլ),
Դափնիներուն մօտ գլըխացակ, ծնրադիր,
Մազերն արձակ հեղեղօրէն մռայլամած,
Պիտ' արտասուէ մեռած Յոյսերն, Արեւներն
Անցեալ, անցեալ Գարուններուն Կեանքերուն,
Ու տակաւին չի ծաթած
Աստղերն անթիւ ձեր ըղեղին բոցաճուռ,
Ո՛վ դեռատի անձնուրացներ, Փարամազ,
Վանիկ, Արամ, եւ ուրիշներ որ խըրոխտ՝
Գաղափարին արեւն իրենց գանկին մէջ,
Եւ ցոյց տալով արշալոյսներն ապագայ,
Դէպի Կըռիւ ու դէպի Մահ բարձրացան...

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2015-2016 ուսումնական տարեշրջանի Զ. Նախակրթարանի եւ Գ. Պատրաստականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

| | | |
|---|---|---|
| **Զ. Նախակրթարան** | | |
| Ճորճ Հանի Հէլմի | Գերազանց | 97.9% |
| Մարի Անտօնի Էլ Խուրի | Գերազանց | 97.2% |
| Նունէ Ճորճ Թորոսեան | Գերազանց | 96.8% |
| Միեր Արա Քէօհնէլեան | Գերազանց | 95.5% |
| Ռօնալտ Ճորճ Ատլի | Գերազանց | 95.5% |
| Սիլվիա Մակտի Պարէի | Գերազանց | 95.3% |
| Լիանորա Լեւոն Նիկոլեան | Գերազանց | 94.9% |
| Մարիամ Այման Սամիր | Գերազանց | 94.9% |
| Սեւան Արմէն Պալթայեան | Գերազանց | 93% |
| Արմէն Կարպիս Մինաս | Գերազանց | 92.3% |
| Սասուն Գառնիկ Կրպոյեան | Գերազանց | 90.6% |
| **Ջերծ Արաբական Նիւթերէ** | | |
| Անդրանիկ Յակոբ Յակոբեան | Գերազանց | 98.8% |
| Քրիստ Ռուբիկ Քէլլէեան | Գերազանց | 94.8% |
| **Գ. Պատրաստական** | | |
| Ռիթա Սիմոն Չամքէրթէնեան | Գերազանց | 97.6% |
| Նաթալի Գէորգ Կոտոլոշեան | Գերազանց | 96.6% |
| Ժօուէլ Իսքանտր Շաքարճեան | Գերազանց | 96.4% |
| Լիլիթ Յակոբ Սայեան | Գերազանց | 94.5% |
| Մարիդդա Ռոպէր Սալմօ | Գերազանց | 88.6% |
| Ալեքսան Ժորժ Ջերտելեան | Գերազանց | 87.2% |
| Սելա Վարուժ Չիլինկիրեան | Գերազանց | 86.3% |
| Ժիրայր Յակոբ Գարակէօզեան | Շատ Լաւ | 80.4% |
| Րաֆֆի Սաատ Նակիպ | Շատ Լաւ | 78.4% |
| Մակի Մակէտ Ատլի | Լաւ | 66.3% |
| Ալֆրէտօ Միշէլ Արուսեան | Գոհացուցիչ | 64.8% |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

ԽՈՀԵՐ

## ԻՆՔՆԱՀԱՍՏԱՏՈՒՄ «ՕՏԱՐ»-Ի ՀՄԱՅՔՈՎ

ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ

Գրաւչութիւն մը կայ «օտար»-ի հասկացողութեան մէջ: Հեռաւորութիւն մը, ուր ազգային ինքնը (self) կը դառնայ հմայիչ ու առինքնող: Իսկ ազգային ինքնի պատկերումը՝ որքան օտարացած (alienated) նոյնքան ցնորական, կ'ունենայ կախարդական ձգողականութիւն: Չէ՞ որ այսօր կ'ապրինք օտարացած յարաբերութիւններու (Քարլ Մարքս), ցնորական համայնքներու (Պենետիքթ Անտերսոն) եւ, շնորհիւ յետարդիապաշտութեան (postmodernism) յոգնատանջ ճիգերուն, այլերու վաւերացուած տարբերակի՝ գլխագիր Այլերու աշխարհի մը (աշխարհներու) մէջ, ուր ինքնը՝ անջատուած իր համայնավարական ենթակայականութենէն, կրնայ յայտնըւիլ որեւէ տեղ եւ ամէն տեղ, հեռացած իր շրջապատային փորձառութենէն: Մինչդեռ ենթակայականութիւնը, եթէ գոյութիւն ունենար, բնագդական պիտի դարձնէր ոչ թէ ինքնի պատկերումը «օտար»-ի ակնոցով, այլ ինքնի որոնումը նոյն ինքը սեփական գոյութեան, համակեցութեան, համայնականութեան, համայնքայնութեան մէջ:

«Օտար» բառը կը գործածեմ պայմանականօրէն: Բայց քանի որ զայն անընդհատ պիտի գործածեմ, աւելորդ խճողումէ խուսափելու համար պիտի հրաժարիմ չակերտներու գործածութենէն, թէեւ բառը միշտ պէտք է հասկնալ իր չակերտաւոր իմաստով:

Սփիւռքի մէջ, աւանդական-պաշտօնական կազմակերպութիւններուն կողմէ օտարին ներկայանալ-ներկայացնելու քանի մը, բայց ոչ բազմազան, միջոցներ կ'օգտագործուին: Պիտի փափաքէի մատնանշել անոնց գլխաւորներէն եւ ամենէն հրապուրիչներէն մէկը՝ հայկական կազմակերպութիւններու նախաձեռնութեամբ, միայնակ որոշումով եւ դրամական հովանաւորութեամբ իրականացուած օտար հեղինակներու գրութիւնները, ուսումնասիրութիւնները, ձեռնարկները, վաւերագրական ֆիլմերը: Այս ծիրին մէջ դժուար չէ գծագրել ընդհանուր ուրուագիծ մը: Ուրուագիծը թէեւ համատարած է, բայց, յատուկ պարագաներու կրնայ ունենալ նաեւ այլ ընթացքներ:

Այսպէս, հսկելով դրամական գործօնին վրայ, հայերը կը ստեղծեն այն բացարձակ պատկերը՝ զոր անպայմանօրէն կ'ուզեն արտացոլուած տեսնել օտարներուն մէջ: Երբ կ'ըսեմ հայերը, բնականաբար նկատի ունիմ կազմակերպութիւններու այն սակաւաթիւ պետերը եւ իրենց մտաւորական-մշակութային գործակատարները, որոնց ձեռքն է որոշումներուն կայացումն ու գործադրութիւնը եւ որոնք իրենք իրենց համարելով հայերուն ներկայացուցիչները, ամէնուր ինքզինքնուն արտօնութիւն կու տան ստանձնել հայութեան պատկերի ստեղծումի պարտականութիւնը օտարներուն մօտ:

Օտարները՝ որոնք պէտք է արտայայտուին հայերուն մասին, կ'ընտրուին ամենայն զգուշաւորութեամբ: Ուրիշ օտարներ՝ որոնք համարձակած են առանց հիմնարկային համաձայնութեան հայերուն մասին արտայայտուիլ, կա՛մ կ'անտեսուին, կա՛մ ուժեղօրէն կը քննադատուին (օրինակներ կան՝ անունով):

Իսկ օտարները տարբեր դրդապատճառներ կրնան ունենալ ընդունելու հրաւէրը.

ա. Դրամը: Անոնք մարդիկ են՝ որոնք դրամի համար կրնան քօղարկել ամէն անբաղձալի երեւոյթ, կրնան ներկայացնել ինչ որ կը թելադրուի իրենց, վերջապէս ինքզինքնին համոզելով՝ որ ասիկա միակ գիտականօրէն անաչառ ճամբան է:

բ. Անոնք կրնան մաս կազմել տուեալ օտար պետութեան չահադիտական ու տիրակալական ծրագիրին՝ ստեղծելու փոքրամասնութիւնները: Ինչպէս Հաքէմ Ալ-Ռուսթոմ կը նկատէ, կարեւոր է այն երեւոյթը՝ թէ «հնարելով փոքրամասնութիւնները, մեծամասնութիւնները իրենց համար կերտեցին եւ նուաճեցին գերակայական դիրք» (Hakem Al-Rustom, 'Rethinking the "Post-Ottoman": Anatolian Armenians as an Ethnographic Perspective', *A Companion to Anthropology of the Middle East*, Edited by Soraya Altorki, Wiley Blackwell, 2015, p. 453): Այստեղ խօսքը ոչ թէ փոքրամասնութիւններու գոյութեան մասին է, քանզի անոնք կրնան գտնուիլ որեւէ ժամանակ եւ որեւէ տեղ, այլ անոնց արդիւնաբերութեան (industry):

գ. Ուրիշ անձնականացուած պատճառներ:

Նկատի առնելով որ բոլոր պարագաներուն ալ այդ օտարները հայերէն լեզուին անտեղեակ են, անոնց ընտրողաբար կը տրամադրուին աղբիւրներուն թարգմանութիւնները: Կը գոյանան հայկական դրամով լոյս տեսած յօդուածներ, հատորներ եւ վաւերագրականներ, ուր կարելի է գտնել հարիւրաւոր փաստագրական սխալներ՝ հետեւանք դիտաւորեալ կամ ոչ-դիտաւորեալ սխալ թարգմանութիւններու (դարձեալ անուններով կարելի է մատնանշել): Բայց կարեւոր չեն սխալները՝ ոչ ոք կը ստուգէ զանոնք (ընդհակառակը, անոնց մատնանշումը հաւասար է դաւաճանութեան), կարեւորը հայը օտարին ներկայացնելն է:

Բացի այդ, բացակայելով ներքին կապը եւ համակողմանի յարաբերութիւնը գրողին եւ նիւթին միջեւ, կը վերացուի ու կը ոչնչացուի քննականութիւնը (քննականութեան եւ քննադատութեան միջեւ տարբերութիւնը չատ մեծ է, անոնք բոլորովին տարբեր մտածողութիւններ են), քննականութեան անյայտացումով կը վերանան դատողութիւնը, կշռադատութիւնը եւ ընտրութեան հնարաւորութիւնը: Արդիւնքը կ'ըլլայ նիւթարկուած (reificated) գիտելիքներու կոյտ մը, հայութեան բաւական աղքատ պատկերում մը, ինչպէս նաեւ կաղապարուած, չքեղացուած եւ լիովին վերահսկուած ինքնապատկերի մը հայելին, ուր ամէն բան նուազեցուած է մեղկ ինքնածանուցողականութեան օրէնքներուն:

Կը յաջորդէ ընթերցանութեան հարցը: Քանի որ նման արտադրութիւնները ունին ծանուցողական բնոյթ, անոնք ձրիաբար կը տրամադրուին ուզող-չուզող օտարներուն, որով անկարելի կ'ըլլայ ընդունելութեան չափանիչ մը սահմանել օտարներուն մօտ:

Հասցէագրուած ըլլալով օտարին, արդարեւ, ներհայկական ուժեղ ծանուցում մը կը սկսի տուեալ արտադրութեան համար: Այս տեսակ արտադրութիւնները լայն ուշադրութեան կ'արժանանան... հայերուն կողմէ: Շուրջդ կը նայիս ու կը տեսնես որ որքան հայեր ուրախութեամբ կը խօսին տուեալ հրատարակութեան կամ վաւերագրականին մասին: Հայեր, հայերէն իմացողներ, կը սիրեն կարդալ հայ բանաստեղծներու *մասին* օտար գրութիւններ առանց կարդացած ըլլալու անոնց հայերէն բանաստեղծութիւնները, կը սիրեն կարդալ հայ նկարիչներու *մասին* օտար կարծիքներ առանց յատուկ սէր մը ունենալու դիտելու անոնց կտաւները, կը սիրեն դիտել հայոց ցեղասպանութեան *մասին* օտար վաւերագրականներ առանց գիտնալու Մուշի ու Վանի տարբերութիւնը:

Վերջապէս, հայերէն լեզուով փառահեղ գրախօսական մը՝ գովաբանելով հայկական ձեռնարկին կարեւորութիւնը, անհրաժեշտութիւնը եւ բացառիկութիւնը եւ փառաբանելով ձեռնարկը գործադրողներուն անսահման հայրենասիրութիւնը եւ անձնազոհութիւնը:

Շրջանակը կը սկսի հայով եւ կը վերջանայ հայով, մէջտեղը պատրուակ ունենալով օտարը, օտար մը՝ որ անտեսանելի է ու անյայտ:

Ինչպէս նշեցի, կարելի է սահմանել նաեւ ուրիշ, դրական ուրուագիծեր: Օրինակ, Արա Սարաֆեանի Լոնտոնի Կոմիտաս Հիմնարկը եւ նմանները բոլորովին ուրիշ դասակարգումի տակ պէտք է ընդունիլ:

Դարձեալ բոլորովին այլ հարթութեան վրայ կը գտնուին, օրինակ, Սարոյեանի վէպերն ու պատմուածքները, Ազնաւուրի *Անոնք ինկան* երգը եւ *Յուշերը*, Վերնոյի *Մայրիկ* վէպը եւ ֆիլմը, Էկոյեանի *Արարատ* ֆիլմը: Այս բոլորին մէջ, եթէ օտարին ներկայանալու խնդիր մը գոյութիւն ունի, անիկա երբեք ինքնպատակ, ինքնավերահսկուած ու ինքնամէտ չէ, այլ ընդելուզուած է գաղափարական, գեղարուեստական, գեղագիտական ու համամարդկային համակեցութիւններու մէջ, առանց սեւեռումներու ու առարկայական բացարձակացումներու:

# ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ






## ՈՉ ԱՅՆՔԱՆ ԵՒՐԱՏԵՍԻՒԼԻ ՄԱՍԻՆ

պաշտօնական պատուիրակութեան ղեկավարները, այլապէս երգչուհին ստիպուած չէր լինի դրօշը կրելու համար գեղեցիկ, բայց Եւրատեսիլի համար չաշխատող պատասխան տալ, յետոյ էլ հնարաւոր է՝ պատժուածի կամ արդարացողի թեւ չտուող զգացումով դուրս գալ բեմ: Արդիւնքում մասնակցութեամբ տրուած երկխօսութեան հնարաւորութիւնը դառնում է մենախօսութիւն՝ ոչ առաջին անգամ: Ուրեմն, ոչ թէ Եւրոպան հերթական անգամ մեզ չհասկացաւ, այլ մենք հերթական անգամ չհասկացանք Եւրատեսիլը:

Անկեղծ ասած ու հէնց Եւրոպային ասած՝ ես դէմ չեմ, որ ծածանուի Ղարաբաղի դրօշը, ես աւելի կողմ կը լինէի, որ այն ծածանէինք վստահ հանգստութեամբ ու խաղաղութեամբ, ոչ թէ՝ խաղաղութեան համար: Առաւել եւս կ'ուզենայի, որ այդ հարցը լուծուած լինէր այլ հարթակում՝ մինչեւ Եւրատեսիլի բեմահարթակը: Բայց քանի որ այն չի լուծուել, այն ճաշը փչացնող կաթիլի պէս լցուելու է մեր առօրեայ խօսակցութիւններում, տրամադրութեան մէջ, երգելու մէջ, կեանքերի մէջ· ու միջմշակութային յարաբերութիւններում: Զարմանալի է ինձ, որ նման կանոնակարգ ունեցող մրցոյթը մինչ այժմ չի բացառում այնպիսի երկրների մասնակցութիւնը, ւրոնք որեւէ ձեւով կամ ծաւալով պատերազմական դրութեան մէջ են: Նոյնիսկ տնտեսական ցուցանիշները պիտի վերցուեն: Օրինակ, արդե՞օք պէտք է թոյլ տալ 75% աղքատութիւն ունեցող մի երկրի թէկուզ սիմվոլիկ, հպանցիկ մաս կազմել Եւրոպական տարածքի, որի բնութագրերից մէկը հէնց սոցիալական հաւասարութիւնն ու ապահովուածութիւնն է: Բայց Եւրոպան, ցաւօք, վաղուց պոստ-ֆակտում յայտարարութիւնները դարձրել է իր սիրած ու կարծես՝ միակ գործիքը «ոչ այնքան եւրոպացիների» հետ առնչուելիս: Մենք զարգացող երկրներ ենք՝ երեխաներ, որոնք իրենց պահել չգիտեն, ճիշտ չեն խաղում, ինչպէս ամէն անգամ պարզւում է նրանց՝ կասկածելի զարմանքով: Սա էլ ուրիշի հետ հաղորդակցուելու Եւրոպական մոդելն է՝ ոչ անթերի:

Այս ամէնից ելնելով՝ ինչու ուղղակի չգնալ Եւրատեսիլ ու ուղղակի չերգել լաւ կամ վատ երգ: Չէ որ սա երգի մրցոյթ է՝ Եւրոպայում: Սա ոչ շատ է, ոչ էլ՝ քիչ, մասնակցելու, առաջին կամ տասնչորսերորդ տեղ գրաւելու համար:

1. Ի դէպ, աւելորդ չէ աւելի կոնկրէտ լինելու համար ասել, որ ազգայինը բառիս բուն իմաստով կրելու, այն է՝ հագնելու եւ այդ սահմաններում մնալու պարտաւորութիւնը չի տարածուել մեր տղամարդ ներկայացուցիչների վրայ: Ազգային պահպանողականութեան դերը կնոջ վրայ դնելը եւս մէկ հարց է, որ գուցէ հետաքրքրի ֆեմինիստ ուսումնասիրողներին:

*Սոցիոսկոպ*





## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԸ ԴԷՊԻ ԵԳԻՊՏՈՍ ԺԹ. ԴԱՐՈՒՆ

Պօղոս խորհուրդ կու տայ Մոհամմէտ Ալիին մշակել նոր օրէնքներ եւ օրէնսդրութիւններ ըստ իսլամական օրէնքին (շարի'ա):

Պօղոսի խորհուրդը լսելի էր ոչ միայն վարչական եւ տնտեսական գործերու կապակցութեամբ, այլեւ կրթութեան եւ արտաքին քաղաքականութեան: Արտասահման ղրկուած կրթական առաքելութիւններուն կապակցութեամբ, Պօղոս իրազեկ էր օտար երկիրներու մէջ եգիպտացի ուսանողներուն դիմագրաւած դժուարութիւններուն: Ան իրազեկ էր նաեւ դպրոցամուտի եւ արձակուրդներու ժամանակացոյցին, եւլն.: Մոհամմէտ Ալիի հետ ունեցած նամակագրութիւններէն ակնյայտ է որ Պօղոս ճիգ չէ խնայած կրթական հարցերու կապակցութեամբ:

Բացի առեւտուրի զարգացումին մէջ իր խաղացած դերէն, Մոհամմէտ Ալի Պօղոսէն խնդրած է լուծել իրենց հողերը լքած եգիպտացի գիւղացիներուն հարցերը: 1834-ին, չափազանց շատ տուրքերու եւ պարտքերը վճարելու անկարողութեան պատճառով, եգիպտացի գիւղացիները կը ստիպուէին լքել իրենց հողերը: Պօղոս կը յաջողի համոզել գիւղացիներուն վերադառնալ իրենց հողերը եւ զբաղուիլ հողագործական արտադրանքով(9):

Նախքան 1822-ի Նեղոսի վարարումի եղանակը, Պօղոս Մոհամմէտ Ալիին կ'օգնէ հունձքը՝ մասնաւորապէս հացահատիկները, եգիպտացորենը, հատիկները եւլն., դուրս հանել Ռաշիտէն: 1834-ին, Պօղոսէն կը խնդրեն կարգաւորել նաւատորմը: Մոհամմէտ Ալիի հրահանգով, 1841-ին Պօղոս Եգիպտոսի օտար վաճառականներուն արտօնութիւն կու տայ կառուցել Նեղոսի վրայ երթեւեկող զբօսաշրջիկային շոգենաւեր, որոնք իրենց վրայ պարտաւոր էին բարձրացնել եգիպտական դրօշակը եւ տուրք վճարել կառավարութեան: Դարձեալ Մոհամմէտ Ալիի հրահանգով, 1827-ին Պօղոս արտօնութիւն կը ստանայ նոր խանութներ կառուցել՝ շինարարութեան նախարարութեան համագործակցութեամբ: Վերջապէս, Պօղոս արտօնութիւն ունէր 1840-ին ուղղութիւն տալ Ռաշիտի մէջ նոր առեւտրական նաւի կառուցումին հետ կապ ունեցող մասնագէտներուն(10):

### ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Գաղթական հայերը նպաստեցին զարգացնելու ԺԹ. դարու Եգիպտոսը: Անոնք կարեւոր գործօններ հանդիսացան կառուցելու նոր արդիական պետութիւնը: Եգիպտոսի արդի պատմութեան մէջ Պօղոս Պէյ Եուսուֆեան կը նկատուի իւրայատուկ անհատականութիւն մը, շնորհիւ Մոհամմէտ Ալիին մատուցած իր մեծ ծառայութեան եւ Եգիպտական Վերածնունդի ծրագիրին մէջ խաղացած դերին: Պետութիւն կառուցելու տաղանդ ունէր Պօղոս: Եգիպտական պատմութեան պարգեւած հանճարեղ ու աննախընթաց օժանդակութիւնները կը վկայեն իր ազգային զգացումներն ու ուղղամտութիւնը: Պօղոս՝ որ աւելի քան քառասուն տարի մնաց պետական վարչական համակարգին գագաթը, մահացաւ իբրեւ սովորական քաղաքացի: Պօղոս պայքարեցաւ վարչական փտածութեան դէմ: Ան կառավարութեան պիւտճէն չօգտագործեց իր անձնական արկածախնդրութիւններուն համար: Չկազմեց հսկայ հարստութիւն, հակառակ որ պետական պիւտճէի դուռները բաց էին իր համար: Պօղոսի անհատականութիւնը ցոյց կու տայ՝ թէ Մոհամմէտ Ալի որքան զգուշութեամբ կ'ընտրէր իր օգնականները:

Այս ուսումնասիրութիւնը տրամադրեց զանազան փաստեր՝ որոնք բացայայտեցին իսլամներու եւ քրիստոնեաներու միջեւ գոյութիւն ունեցած ազգային միասնականութեան կարեւորութիւնը Մոհամմէտ Ալիի ժամանակաշրջանին: Երկու կողմերը համագործակցեցան կառուցելու համար պետութիւնը եւ իրականացնելու Մոհամմէտ Ալիի երազանքը:

Իբրեւ Եգիպտոսի կառավարիչ, Մոհամմէտ Ալի խտրականութիւն չէր դնէր իսլամներուն եւ քրիստոնեաներուն միջեւ քանի որ երկուքն ալ կը համարէր իր քաղաքացիները: Նոյնիսկ աւագ պաշտօնատարներ, ինչպէս Պօղոս, շատ մօտիկ էին Մոհամմէտ Ալիին:

Կրօնական ազատութիւնը վերապահուած էր բոլորին: Քրիստոնեաները ներգրաւուած էին իսլամներուն հարցերը կարգաւորելով, իսկ իսլամները ստանձնած էին եկեղեցիներու շինութիւնը: Անկախ իր կրօնական հաւատքէն, Պօղոս ներգրաւուած էր զգայուն եւ ռազմավարական առաքելութիւններով՝ հողագործութեան, ճարտարարուեստի, ֆինանսի, տուրքի, արտաքին քաղաքականութեան, հանրային վարչութեան եւ նոյնիսկ բանակի բնագաւառներուն մէջ:

Իբրեւ Եգիպտոսի մէջ ապրող սփիւռքահայ, Պօղոս եւ իր ընտանիքը կարողացան աւագ եւ բարձրագոյն դիրքեր գրաւել կրթութեան, առեւտուրի եւ արտաքին գործերու նախարարութիւններուն մէջ: Հայերուն պատմութիւնը Եգիպտոսի մէջ հարուստ է եգիպտական պետութեան տրուած օժանդակութիւններով: Հայկական գերդաստանէ սերած էր, օրինակ, Եգիպտոսի արտաքին գործերու նախկին նախարար եւ ՄԱԿ-ի նախկին ընդհանուր քարտուղար Պութրոս Ղալի: Պօղոսի ժամանակաշրջանին, հայերը բարձր դիրքեր գրաւած էին արտաքին գործերու նախարարութեան մէջ: Հակառակ խորհրդային շրջանի Հայաստանի դժուարութիւններուն, որոշ հայեր գաղթեցին հայրենիք: Ուրիշներ թողեցին Եգիպտոսը՝ իրենց հետ տանելով եգիպտական մշակոյթը: Բայց բազմաթիւ հայեր մերուեցան եգիպտական մշակոյթին հետ եւ մաս կազմեցին Եգիպտոսի հասարակական խճանկարին:

Ելլելով իր անձնական փորձառութենէն, Մոհամմէտ Ալի գիտէր ֆինանսական գործօնին կարեւորութիւնը իշխանութեան համար: Ան անձամբ աշխատած էր հայ վաճառականի մը խանութը: Մոհամմէտ Ալի կառուցեց ֆինանսական յարաբերութիւններու ցանց մը, որ իրեն հնարաւորութիւն տուաւ հիմնել Եգիպտական Վերածնունդի իր ծրագիրը: Այս առումով է որ Պօղոս Իզմիրէն եկաւ Եգիպտոս, վայելելով Թուրքիա մնացած իր եղբօր աջակցութիւնը: Պօղոս օգտագործեց արեւելեան Միջերկրականի տարածաշրջանի հայ վաճառականներուն հետ ունեցած իր յարաբերութիւնները որպէսզի առաջ մղէ իր ծրագիրը: Այս վաճառականները կը գտնուէին Մոհամմէտ Ալիի ծառայութեան տակ: Անոնք կ'իրագործէին իր բոլոր ֆինանսական-առեւտրային պահանջները: Անոնք կ'աշխատէին թաքուն կերպով, մեծապէս օժանդակելով ԺԹ. դարու Մոհամմէտ Ալիի քաղաքակրթական ծրագիրին:

(Վերջ 2)

Անգլերէնէ թարգմանեց Հ.Ա.

(Dr. Yehia Mohamed Mahmoud Ahmed, 'The Armenian Immigration to Egypt in the 19th Century', *European Scientific Journal*, December 2013, Vol. 2, էջ 378-383)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ


6. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի Թղթակցութիւններու եւ Նամակներու Հաւաքածոյ, Թղթածրար Թիւ 3, փաստաթուղթ Թիւ 2311:

7. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի Թղթակցութիւններու եւ Նամակներու Հաւաքածոյ, Թղթածրար Թիւ 3, փաստաթուղթ Թիւ 2348:

8. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի Թղթակցութիւններու եւ Նամակներու Հաւաքածոյ, Թղթածրար Թիւ 3, փաստաթուղթ Թիւ 2325:

9. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի Թղթակցութիւններու եւ Նամակներու Հաւաքածոյ, Թղթածրար Թիւ 3, փաստաթուղթ Թիւ 2355:

10. Եգիպտոսի Ազգային Դիւան, Մոհամմէտ Ալի Փաշայի Թղթակցութիւններու եւ Նամակներու Հաւաքածոյ, Թղթածրար Թիւ 3, փաստաթուղթ Թիւ 2645:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1770 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ՅՈՒԼԻՍ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٧٠ الخميس ٢١ يوليه ٢٠١٦


## ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՓՈՐՁ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Յուլիս 14-ի գիշերը, Նիսի մէջ Պասթիյի Օրը նշող ամբոխին վրայ Մոհամէտ Լահուաէժ-Պուհլէլ կը վարէ բեռնատար մը՝ սպաննելով 85 եւ վիրաւորելով 202 անձ: Ֆրանսական հեռատեսիլի կայանները չուրջօրեայ հաղորդումներ կը յատկացնեն իրենց ողբը արտայայտելու եւ մանաւանդ իսլամին (իսլամն ու իսլամիզմը միշտ կը սիրեն խառնել իրարու) դէմ անգամ մը եւս իրենց փայփայած արհամարհանքները արտայայտելու համար:

Յուլիս 15-ի գիշերը, յեղաշրջումներով յայտնի Թրքական բանակի ինքնակալ մենատէրերը անյաջող յեղաշրջում մը փորձեցին կատարել ուրիշ ինքնակալի մը՝ Էրտողանի դէմ: Արդիւնքը՝ նուազագոյնը 290 մարդկային զոհ: Ամբողջ աշխարհի հեռատեսիլներուն համար պատկերաւոր աշխատանքի պատեհութիւն ստեղուեցաւ՝ Թրքական դէպքերը դարձնելով իրենց ուշադրութեան կեդրոնը: Ֆրանսական հեռատեսիլը շատ չախորժեցաւ ասկէ, քանի որ աշխարհի ուշադրութիւնը Նիսէն ամբողջապէս փոխադրուեցաւ դէպի Թուրքիա: Իսկ ֆրանսական հեռատեսիլը չէր գիտեր որուն վրայ կեդրոնանար՝ Նիսի՞ թէ Թուրքիոյ: Ֆրանսական իսլամոֆոպիայի ջանքերը կիսատ մնացին:

Յուլիս 17-ին, Իրաքի մէջ ծառայած ամերիկացի զինուոր մը (Իրաքի մէջ ծառայած ամերիկացի զինուորներուն յետ-վնասուածքային (post-traumatic) դրութեան մասին արգիլուած է հանրային խօսակցութիւն վարել), Լուիզիանայի մայրաքաղաք Պաթոն Ռուժի մէջ կը սպաննէ երեք եւ կը վիրաւորէ երեք ոստիկան սպաներ: Պարաք Օպամա յատուկ ելոյթ կ'ունենայ հեռատեսիլներէն, դատապարտելով ու մեղադրելով ահաբեկչական յարձակումը եւ կատարելով իր սովորապաշտ փոփիւլիսթական յայտարարութիւնները:

Պաթոն Ռուժէն քանի մը ժամ առաջ, Յուլիս 17-ի առաւօտեան, Հայաստանի Հիմնադիր Խորհրդարան քաղաքացիական շարժումին յարող Սասնայ Ծռեր զինուած խումբը (մօտաւորապէս 25-30 անձ) իր հսկողութեան տակ կը վերցնէ Երեւանի Էրեբունի Թաղամասի ոստիկանութեան պարեկապահակային ծառայութեան գունդը: Փոխհրացանաձգութեան պատճառով կը զոհուի մէկ ոստիկան եւ կը վիրաւորուի երկու գրոհային ու երկու ոստիկան (վիրաւորեալ ոստիկաններուն մասին կան հակասական տեղեկութիւններ): Սասնայ Ծռեր պատանդ կը վերցնէ վեց ոստիկան: Անոնցմէ մէկը հիփերթոնիք ըլլալուն (բժշկական քննութեան չե՞ն ենթարկուիր ոստիկանները) ազատ կ'արձակուի: Կը մնայ վեց պատանդ ոստիկան: Խումբը կը պահանջէ քաղաքական բանտարկեալներ Ժիրայր Սէֆիլեանի, Գէորգ Սափարեանի, Շանթ Յարութիւնեանի եւ ընկերներուն եւ Վոլոդիա Աւետիսեանի ազատ արձակումը, ինչպէս նաեւ Սերժ Սարգսեանի հրաժարականը:

Յուլիս 17-ի առաւօտեան Սասնայ Ծռեր կը տարածէ հաղորդագրութիւն մը, որ կը սկսի այսպէս.

«Տարիներ շարունակ Ժիրայր Սէֆիլեանը եւ նրա համախոհները փորձել են խաղաղ միջոցներով իրավիճակ փոխել Հայաստանում: Որպէս արդիւնք՝ Ժիրայր Սէֆիլեանին վերագրուեց զինուած ապստամբութիւն կատարելու կեղծ մեղադրանք եւ նա յայտնուեց բանտում, իսկ նրա համախոհները մշտապէս ենթարկւում են հալածանքի եւ բռնութիւնների:

«Տարիների դառը փորձն ի վերջոյ մեզ համոզեց, որ կառավարող վարչախումբն այն աստիճանի է կեղեքել, իրաւազրկել եւ ուժասպառ արել մեր ժողովրդին, որ նա այլեւս չունի երկարատեւ ու զանգուածային խաղաղ պայքարի համար անհրաժեշտ ռեսուրս: Դրան գումարւում է աղէտալի չափերի հասնող արտագաղթը, որը կայուն կերպով քայքայում է մեր դիմադրողականութեան վերջին մնացորդները: Այդ ամէնի հետ մէկտեղ՝ Սերժ Սարգսեանի աթոռը պահելու համար պայմանաւորուած պատերազմի միջոցով Արցախի ազատագրուած տարածքները յանձնելու դաւաճա-



Ազատութեան հրապարակ, 18 Յուլիս

նութիւնը կը դառնայ մեր պետականութեան դագաղի վերջին մեխը:

«Ուստի ազգի եւ Հայրենիքի ապագան փրկելու միակ տարբերակը զինուած ապստամբութեան ձեւով իրականացուող ժողովրդային ընդվզումն է:»

Բայց ո՞վ են այս մարդիկ:

Ժիրայր Սէֆիլեան, հայերէն *Վիքիպեդիայի* բնութագրութեամբ, կը հանդիսանայ «հայ ազատամարտիկ, զօրահրամանատար, պետական, հասարակական գործիչ»: Ծնած է 1967-ին, Պէյրութ: Դարձեալ քաղելով *Վիքիպեդիայէն*.

«1990 թ.-ին Արցախեան շարժմանը մասնակցելու նպատակով ընտանիքի հետ տեղափոխուել է Հայաստան: Սկզբնական շրջանում մասնակցել է հայկական ջոկատների կազմաւորման գործընթացին՝ որպէս ռազմական հրահանգիչ: 1991 թ.-ից եղել է ջոկի, 1992 թ.-ից՝ մարտկոցի, այնուհետեւ՝ Շուշիի առանձնակի գումարտակի, 1997 թ.-ից՝ Մարտակերտի դիվիզիայի հրամանատարի տեղակալ, 1997-1998 թթ.-ին՝ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան Պաշտպանութեան Բանակի 6-րդ պաշտպանական շրջանի հրամանատար:

«Անմիջական եւ կարեւոր դերակատարութիւն է ունեցել ՀՀ Գեղարքունիքի մարզի, Արցախի Շահումեանի, Հադրութի, Մարտունիի, Ջաբրայիլի, Զանգելանի, Ֆիզուլիի շրջանների, Շուշի, Ասկերան, Աղդամ քաղաքների, Կրկժան, Հասանաբադ, Կարմիրաւան, Թալիշ, Մաղաւուզ, Գիւլաթաղ, Ջլդրան, Կուսապատ, Ջառսլու, Լեսնոյ, Քէօսալար, Սէյդիշէն, Ալի Աղալի, Ալի Մադաթլի, Փափրաւենդ գիւղերի, Սարիբաբ բարձունքի ինքնապաշտպանական եւ ազատագրական մարտերին, ինչպէս նաեւ ՀՀ զինուած ուժերի կազմաւորման գործում:»

Յետագային հիմնած է զանազան քաղաքացիական կազմակերպութիւններ եւ շարժումներ՝ Ազատագրուած Տարածքների Պաշտպանութիւն, Միացում, Սարդարապատ, Նոր Հայաստան: Հանդէս գալով Քոչարեանի քաղաքականութեան դէմ, 2006-2008-ին ենթարկուած է բանտարկութեան: Անցեալ ամիս դարձեալ կը ձերբակալուի ու մինչեւ այսօր կը մնայ բանտարկուած՝ ապօրինի զէնք ձեռք բերելու եւ փոխադրելու մեղադրանքով: Ըստ Փարիզի Հայկական Վերածնունդ հասարակական կազմակերպութեան Յունիս 21-ի յայտարարութեան, վերջին «ձերբակալութեան պատճառը Ժիրայր Սէֆիլեանի վերջին ժամանակաշրջանում ծաւալած ընդդիմադիր քաղաքական գործունէութիւնն է, մասնաւորապէս ապրիլեան պատերազմի բացթողումների բացայայտումը, պատերազմի իրական կորուստների բարձրաձայնումը, կորցուած տարածքների վերականգնման համար նրա կողմից նախաձեռնուած կամաւորների հաւաքագրումը, ինչպէս նաեւ ազգային դիմադրութեան կոմիտէ ստեղծելու նախաձեռնութիւնը» («Կոչ ժողովրդին ի պաշտպանութիւն Ժիրայր Սէֆիլեանի», 21 Յունիս 2016, www.renaissance-armenienne-paris-fr/tag/ժիրայր-սեֆիլյան/): Արդե՞օք պետական-իշխանական ըմբռնումով այս բոլորը բաւարար պատճառներ չեն ձերբակալութեան համար: Բայց կայ նաեւ ուրիշ կարեւոր կէտ մը: Հայաստանի իշխանութիւնները

Ժիրայր Սէֆիլեան

չե՞ն որ անընդհատ ու անվերջ կը քարոզեն ազգայնականութիւն, հայրենագոհութիւն եւ Ղարաբաղի ազատագրում: Բայց երբ հանդէս կու գայ ազգայնական խումբ մը՝ որ կը քարոզէ միեւնոյն գաղափարները, բայց գործնականօրէն պատրաստ է իր ջոկատով երթալ եւ *իրապէս* հայրենագոհուիլ ապրիլեան կորսուած հողերը ետ վերցնելու համար, արդէն կը դառնայ վտանգաւոր գոյութիւն մը: Իշխանութիւնը առաջ կը նետէ մեծ պատումներ (grand narratives), բայց այն անձը որ այդ միեւնոյն պատումը կազմալուծելով կ'անցնի գործադրութեան եւ գործնապաշտութեան (pragmatism) փուլը, պատումը՝ որ միշտ պէտք է մնայ իր գերիրական վիճակին մէջ, կը դառնայ անվերահսկելի:

Իսկ ի՞նչ է Հիմնադիր Խորհրդարանը: 2012 Նոյեմբեր 15-ին, Սէֆիլեանի աշխոյժ մասնակցութեամբ սկիզբ կ'առնէ Նախախորհրդարան անունով քաղաքացիական շարժում մը, որ 2015 Յունուար 10-ին կը վերակազմաւորուի Հիմնադիր Խորհրդարան անունով, նախագահ՝ Գարեգին Ջուգասզեան, նախագահի տեղակալներ՝ Վարուժան Աւետիսեան եւ Հայկ Գրիգորեան, քարտուղարութեան համակարգող՝ Ժիրայր Սէֆիլեան, քարտուղարութեան համակարգողի տեղակալ՝ Ալէք Ենիգոմշեան: Յունուար 10-ին տարածած իր առաջին մամուլի հաղորդագրութիւնը կը սկսի այսպէս.

«Հիմնադիր Խորհրդարանը ժողովրդի կամքը ներկայացնելու յաւակնութիւն ունեցող այլընտրանքային մարմին է, որն իր ստեղծման օրուանից ստանձնում է ազգային շահերով առաջնորդուող պետական կառավարման իւրային համակարգի ստեղծման, ժողովրդավարական պետութեան ձեւաւորման, ՀՀ-ին Արցախին դէ-իւրէ (de jure) միաւորման եւ երկրի ապագաղութացման անցումային գործընթացի կազմակերպման պատասխանատուութիւնը:

«Առաջիկայ ամիսների ընթացքում Հիմնադիր Խորհրդարանը հանդէս է գալու որպէս «100-ամեակը առանց ռէժիմի» շարժման կառավարման մարմին եւ ռէժիմին հեռացնելու քայլերն սկսելու վերջնաժամկէտ է յայտարարում Հայոց ցեղասպանութեան 100-ամեակի օրը՝ 2015 թ. ապրիլի 24-ը» («Ստեղծուեց հիմնադիր խորհրդարանը», *Lragir.am*, 10 Յունուար 2015, http://www.lragir.am/index/arm/0/country/ view/108864):

Հիմնադիր Խորհրդարանը, բնականաբար, պիտի դառնար իշխանութեան հետապնդումներու թիրախը: 2015 Ապրիլ 7-ին Ազգային Անվտանգութեան, Յատուկ Քննչական Կոմիտէի եւ Ոստիկանութեան աշխատակիցները մուտք կը գործեն Հիմնադիր Խորհրդարանի շէնքը խուզարկութեան համար: Կը խուզարկուին նաեւ Երեւանի, Կապանի, Վանաձորի անդամներուն բնակարանները, բերման կ'ենթարկուին կամ կը ձերբակալուին Պաւէլ Մանուկեան, Ժիրայր Սէֆիլեան, Վարուժան Աւետիսեան, Թօրոս Սէֆիլեան, Յովհաննէս Ղազարեան, Գէորգ Գասպարեան, Արամ Յակոբեան, Գէորգ Սափարեան («Գարեգին Ջուգասզեանը, Ժիրայր Սէֆիլեանը, Վարուժան Աւետիսեանը, Պաւէլ Մանուկեանը, Գէորգ Սափարեանը ձերբակալուած են», *armtimes.com*, 7 Ապրիլ 2015, http://armtimes.com/hy/read/62223):

Սահմանադրական վերջին միակողմանի ու շահադիտական փոփոխութիւններուն ընդդիմանալու միտումով, 2015 Հոկտեմբերին կը ձեւաւորուի Նոր Հայաստան փրկութեան ճակատը, որուն մաս կը կազմեն Հիմնադիր Խորհրդարանը, Ժառանգութիւն կուսակցութիւնը, Ոտքի' Հայաստան քաղաքացիական շարժումը, Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութիւնը եւ ուրիշներ: Ճակատը բաւական

↪ 3

ԳԱՀԻՐԷ

# ԱՆՈՒՇՔԱ՝ ՌԱՄԱՏԱՆԻ ԸՆԹԱՑՔԻՆ ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԵՐՍ ԼԵՑՈՒՆ ԵՆ ԶԳԱՑՈՒՄՆԵՐՈՎ

Թէեւ այս Ռամատանին ան հանդէս եկաւ երկու ֆիլմաշարով, եգիպտացի արուեստագիտուհի Անուշքա [Անուշքա Զատրըճեան] տակաւին ուժգին տենչանք կը զգայ երգեցողութեան հանդէպ, կարօտելով հասարակութեան ուղղակի փոխազդեցութիւնը բեմին վրայ:

ՀԻՇԱՄ ԱԼ-ՍԱՅԷՏ

*Ալ-արապի* հետ իր զրոյցի ընթացքին, եգիպտացի երգչուհի եւ դերասանուհի Անուշքա բացատրեց վերջին շրջանին մեներգային բնագաւառէն հեռու մնալու պատճառները, որոնք կապուած էին մէկ կողմէն ընտանեկան ու գեղարուեստական հանգամանքներու, միւս կողմէն Եգիպտոսի քաղաքական եւ ապահովագրական սուր փոփոխութիւններու հետ:

Ան չեշտեց՝ թէ դերասանութիւնը երգեցողութենէն համեմատաբար աւելի դիւրին կը համարէ, որովհետեւ դերասանութեան պարագային կը ստանձնէ միայն ինքզինքին պատասխանատուութիւնը, մինչդեռ ուրիշները իրենց վրայ կը վերցնեն ֆիլմաշարին ամբողջ պատրաստութիւնը: Երգի պարագային անձամբ կը կրէ բառերու եւ եղանակի ընտրութեան ամբողջ պատասխանատուութիւնը:

Ներկայ Ռամատանին, Անուշքա երեւան կու գայ երկու ֆիլմաշարերու մէջ՝ *Սըքութ հորր* [Ազատ անկում], Թունիսցի Շաուքի Ալ-Մաճրիի բեմադրութեամբ, եւ *Կրանտ օթէլ* [Մեծ պանդոկ], Մոհամմէտ Շաքէր Խոտրիի բեմադրութեամբ:

Խօսելով իր երկու դերերուն մասին, Անուշքա *Ալ-արապի*ին հաղորդեց, որ իր մասնակցութիւնը միաժամանակ ցուցադրուող երկու ֆիլմաշարերու մէջ արդարացուած է այն հանգամանքով՝ որ անոնք թէ՛ պատմութեան եւ թէ՛ սենարիոյի առումով տարբեր են իրարմէ եւ ունին բեմադրական ու դերասանական տարբեր անձնակազմեր:

Ըստ իրեն, *Կրանտ օթէլ*ի ծաւալուող ժամանակաշրջանը կը յատկանշուի վայելչագեղութեամբ: Այս ժամանակաշրջանի բոլոր մանրամասնութիւնները արտացոլուած են բեմադրիչի աշխատանքին մէջ: Այս պատճառով, ըստ Անուշքային, ֆիլմաշարը կրնայ մրցիլ Թրքական եւ այլ ֆիլմերու հետ՝ որոնք իրենց պատկերի եւ թեքնիքի հրապոյրով գրաւեցին արաբ դիտողը:


Անուշքա՝ Կրանտ Օթէլի մէջ ստացած դերով

Անդրադառնալով ֆիլմաշարին մէջ իր մարմնաւորած պանդոկի սեփականատիրոջ չար դերին մասին, Անուշքա հաստատեց՝ որ իր դերին համարձակութիւնը թաքնուած է Քէսմաթի տիպարին ընդմէջէն քննարկուող բովանդակութեան մէջ: Այս տիպարը նորութիւն մըն է իրեն համար: Ան մօտիկ է իր իրական բնաւորութեան՝ իբրեւ ցանկութիւնները գիտակցող ուժեղ կին:

Այսուհանդերձ, եգիպտացի արուեստագիտուհին կը մերժէ հապճեպ գնահատում տալ իր մարմնաւորած Քէսմաթի տիպարին, քանի որ ֆիլմաշարը տակաւին կը շարունակուի: Ան կը նախընտրէ սպասել մինչեւ տիպարի յետագայ զարգացումներուն բացայայտումը որպէսզի կարողանայ տալ անոր առողջ գնահատումը:

Գալով *Սըքութ հորր* ֆիլմաշարին, այստեղ ան կը մարմնաւորէ գլխաւոր դերակատարուհի Նելլի Քարիմի մօրաքրոջ տիպարը՝ որ կը ներկայացնէ ընտանիքին խելամիտ եւ հաւասարակշռուած ձայնը: Ան նոյնիսկ իր քրոջը՝ Սաֆաա Ալ-Թուխիին (Նելլի Քարիմին մայրը) կ'առերեսէ իր սխալները, բան մը որմէ կը խուսափին բոլորը:

Խօսելով իր երկու դերերուն մասին, Անուշքա ըսաւ՝ որ անոնք յագեցած են զգացումներով եւ յոյզերով, իսկ զգացումի հետ կապուած երեւոյթները միշտ գրաւիչ եղած են իր համար: Ըսաւ նաեւ, որ *Սըքութ հորր*ի մէջ ստանձնած տիպարը իրմէ պահանջեց խոր մտածողութիւն եւ կեդրոնացում:

Ան խոստովանեցաւ՝ որ մասնաւորապէս *Կրանտ օթէլ*ի նախապատրաստական աշխատանքները այնքան երկար ժամանակ խլեցին, որ ստիպուեցաւ հրաժարիլ *Քաուաէտ ալ-էշք ալ-արպաուն* [Սիրոյ քառասուն կանոնները] թատերական ծրագիրէն:

⇨ 6

# ԾՈՎԻՆԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԴԵՐԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՀԵՌԱՏԵՍԻԼԷՆ

Ռամատան ամսուայ ընթացքին Եգիպտոսի եւ արաբական աշխարհին մէջ յատուկ սպառողական արժէք կը ստանան հեռատեսիլի ֆիլմաշարերը (serials, արաբերէն՝ մուսալսալաթ), որոնք յայտնի են նաեւ օճառային օփերա (soap opera) անունով: 2014-ի Ռամատանին Լէպլէպա (Նինոշքա Քիւբէլեան)՝ իր ետեւ ունենալով դերասանական երկար ու յաջող կենսագրութիւն մը, գլխաւոր հերոսուհիի դերով առաջին անգամ կը մասնակցէր ֆիլմաշարի մը՝ *Սահէպ ալ-սաատա* (Նորին գերազանցութիւն), խաղընկեր ունենալով Ատէլ Իմամ: Այստեղ, արեւելեան պարերու կատարումներով նկարահանուած էր նաեւ Սոֆինար (Ծովինար Գուրեան): 2016-ի Ռամատանին, վերջինս կ'ունենայ հեռատեսիլային ֆիլմաշարի իր առաջին լիարժէք դերասանական ելոյթը: Ֆիլմաշարը՝ *Ապու պանաթ* (Աղջիկներուն հայրը), կը սկսի ցուցադրուիլ 2016 Յունիս 6-ին, ունենալով 30 շարունակութիւն: Բեմադրիչն էր՝ Ռաուֆ Ապտէլ Ազիզ, հեղինակը՝ Ահմատ Ապտէլ Ֆաթթահ, դերակատարները՝ Մուսթաֆա Շաապան, Օլա Ղանէմ, Սալահ Ապտ Ալլահ, Էտուարտ, Ապտէլ Ռահման Ապու Զահրա, Սամիրա Ապտէլ Ազիզ եւ շատ ուրիշներ:

Հայաստանի քաղաքացի, Ծովինար կը նկատուի Եգիպտոսի ներկայ ամենայայտնի արեւելեան պարուհիներէն մէկը: Նախապէս հռչակուած իբրեւ Սաֆինազ, ան այժմ հանդէս կու գայ Սոֆինար (հընչիւնաբանական առումով Ծովինարին արաբերէն յարմարագոյն տարբերակը) անունով: Բացի յիշեալ երկու ֆիլմաշարերէն, թէ՛ իբրեւ արեւելեան մենապարուհի եւ թէ՛ իբրեւ դերասանուհի մասնակցած է ութ ֆիլմերու. *Ալ Քէշաշ* (Հաւաքարարը) (2013)՝ որուն մէջ ունեցած պարային ելոյթը համատարած հռչակ ապահոված է իրեն, *Ալ Պրէնսիսա* (Իշխանուհին) (2013), *Սալէմ Ապու Օխթու* (Սալէմ՝ իր քրոջը հայրը) (2014), *Օմար ուա Սալուա* (Օմար եւ Սալուա) (2014), *Անթար ուա Պիսա* (Անթար եւ Պիսա) (2014), *Հայաթի մըպահտելա* (Կեանքս թնճուկ մըն է) (2015), *Էիալ հարրիֆա* (Վարպետ երեխաներ) (2015) եւ *30 եոմ ֆիլ էզ* (30 օր չքեղութեան մէջ) (2016):



# ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ԵՒ ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐՈՒՆ ՄԱՍԻՆ ԵՐԿՈՒ ՅՕԴՈՒԱԾ

Հայաստանի Ազգային Գրադարանը 2015-ին սկսած է հրատարակել *Բանբեր Հայաստանի գրադարանների* խորագիրով հանդէս մը, որմէ ցարդ լոյս տեսած է երկու համար: Հանդէսի խմբագրական կազմին մաս կը կազմէ եգիպտահայ բժիշկ եւ մտաւորական Սուրէն Պայրամեան, որ հեղինակն է նաեւ երկու յօդուածներու:

Առաջին յօդուածն է՝ «Եգիպտահայ առաջին լրագիրը. *Արմաւենի*ի 150-ամեակը (1865-2015)» (*Բանբեր Հայաստանի գրադարանների*, 2015, թիւ 1, էջ 45-54), ուր կարելի է գտնել եգիպտահայ առաջին լրագիրին մասին մատենագիտական եւ պատմական մանրամասն տեղեկութիւններ, որոնք դիտուած են նաեւ ընդհանուր եգիպտական մամուլի բնաբանին մէջ:

Երկրորդ յօդուածն է՝ «Եգիպտահայ միութենական գրադարաններու մասին 1891-2016 (հիմնադրութեան 125-ամեակ)» (*Բանբեր Հայաստանի գրադարանների*, 2016, թիւ 1(2), էջ 15-28), ուր բովանդակ տեղեկութիւններով վաւերագրուած են 125 տարուայ ընթացքին գործած եգիպտահայ 29 միութենական գրադարաններու պատմութիւնները: Ըստ հեղինակի տեղեկութիւններուն, առաջին գրադարանը հիմնած է Գահիրէի Ընթերցասիրաց Ընկերութիւնը, 1891-ին: Գրադարանները տեղակայուած են/էին Գահիրէ (19 հատ) եւ Աղեքսանդրիա (10 հատ): Պայրամեան յօդուածը կը համալրէ ընթերցասիրութիւնը քաջալերող երկու եգիպտահայ ընկերութիւններու տուեալներով:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԱԿ-Ը ՀՐԱՊԱՐԱԿԵԼ Է ԱՅՍ ՏԱՐՈՒԱՅ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԲՆԱԿՒՈՒՄ Է 2 ՄԼՆ 994 ՀԱԶԱՐ ՄԱՐԴ

ԹԵՐԹ.am, 11 Յուլիս – 2016 թ.-ի Յունուարի 1-ի դրութեամբ Հայաստանի բնակչութիւնը կազմել է 2 միլիոն 998 հազար մարդ: Այս մասին Յուլիս 11-ին լրագրողների հետ զրոյցում ասաց ՄԱԿ-ի բնակչութեան հիմնադրամի հայաստանեան գրասենեակի ներկայացուցիչ Աննա Յովհաննիսեանը՝ ներկայացնելով ՄԱԿ-ի 2016 թ.-ի հետազօտութիւնը:

Այս ցուցանիշը նախորդ տարուայ Յունուարի 1-ի դրութեամբ նուազել է 14 հազարով: «Աւելին, այս տարուայ առաջին եռամսեակի տուեալներով՝ բնակչութեան թիւը նուազել է եւս 4000-ով: Այսինքն՝ բնակչութեան թիւը կազմում է 2 միլիոն 994 հազար մարդ», – նշեց Աննա Յովհաննիսեանը:

Նա նշեց, որ եթէ նոյն տեմպերը շարունակուեն, ապա յաջորդ տարի ՀՀ-ում բնակչութեան թիւը կը պակասի 16 հազարով եղած 2 միլիոն 994 հազարից:

«2011 թ.-ի մարդահամարից յետոյ թուերը նուազել են: Մարդահամարի արդիւնքներով եղել է 3 միլիոն 18 հազար մարդ, 5 տարում դարձել է 2 միլիոն 994 հազար մարդ», – նշեց գրասենեակի ներկայացուցիչը:

ՄԱԿ-ի բնակչութեան հիմնադրամի հայաստանեան գրասենեակի գործադիր ներկայացուցիչ Գարիկ Հայրապետեանն էլ ասաց, որ եթէ տեմպերն այդպէս շարունակուեն, իրենք 50 տարի անց կանխատեսում են նուազում:

«Այսօրուայ իրավիճակում, հաշուի առնելով ներկայիս գործօնները, Հայաստանում 2050 թուականին դրական առումով կարող է լինել 3 միլիոն 100 հազար մարդ, իսկ եթէ բացասականը դիտարկենք՝ 1 միլիոն 700 հազար մարդ: Բայց սա ընդամէնը կանխատեսում է: Երկրորդ՝ Ապրիլի 2-ի կրկնութեան ժամանակ ամէն ինչ կարող է փոխուել մէկ ժամուայ ընթացքում», – ասաց նա:

# ԹԵՂՈՒՏ ՓԲԸ-ՈՒՄ ԱՇԽԱՏԱՏԵՂԵՐԻ ԿՐՃԱՏՈՒՄԸ ՇՆՈՂ ԳԻՒՂԻ ՀԱՄԱՐ ԱՐԴԷՆ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ Է

Էկոլուր, 20 Յուլիս – Թեղուտ փակ բաժնետիրական ընկերութիւնում (ՓԲԸ) սկսուել է աշխատողների կրճատումը, ինչ որ ծանր է անդրադառնում Շնող համայնքի վրայ: Այս մասին Էկոլուրին յայտնեց Շնողի համայնքապետ Յովհաննէս Սահակեանը:

**Աշխատատեղերի խնդիր՝**

«Մեզ համար առանցքային հարցը եւ դժգոհութեան առիթը հասարակութեան մէջ, դա աշխատատեղերի խնդիրն է: Թեղուտ ՓԲԸ-ն շուրջ 1300 աշխատող ունէր, որից ընդամէնը 253-ը՝ Շնողից: Վերջին շրջանում, քանի որ շինարարական աշխատանքները աւարտւում են, բնականաբար կրճատումներ է գնում. մօտ 50 հոգի կրճատուել է: Ինձ մտահոգում ու զարմացնում է այն, որ այս նոյն կվալիֆիկացիայով աշխատող դրսի մարդը մնում է, իսկ տեղացին կրճատւում: Այն մասնագէտները որ մեզանում չկան, թող դրսից բերեն, բայց ոչ վարորդներ, էքսկաւատորչիկներ, բանուորներ...», – ասաց Յովհաննէս Սահակեանը:

«340 ընտանիքից ընկերութիւնը հող է վերցրել (Էկոլուրի նկատառում. հողերը վերցուել են Թեղուտի նախագծի

⇨ 6



# ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՓՈՐՁ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

գլխացաւ կը պատճառէ նախագահի եւ իր կուսակցութեան սահմանադրական նկրտումներուն, այն աստիճան՝ որ սահմանադրական հանրաքուէի «յաղթանակ»-ին յաջորդ օրը կարդացած փառապանծ ճառին մէջ, Սարգսեան Նոր Հայաստանի օգտագործած «ճակատ» բառին իմաստը՝ որ այս պարագային կը նշանակէ կողմնակիցներու ու գաղափարակիցներու միաւորում եւ համախմբում, դիտաւորեալ կերպով խեղաթիւրելով կը ներկայացնէ իբրեւ կռիւ ու պատերազմ, որպէսզի Նոր Հայաստանին կարողանայ ցուցադրել իբրեւ իր սեփական երկիրին դէմ պատերազմող անօրէն մարմին (Հ. Ա., «Սահմանադրութիւնը իբրեւ «կարեւորագոյն փաստաթուղթ»», *Ջահակիր*, 14 Յունուար 2016, թիւ 1758):

Սասնայ Ծռեր կը հանդիսանայ Հիմնադիր Խորհրդարանի զինուած խումբը, որ, բնականաբար, ոչ մէկ կապ ունի Նոր Հայաստանի հետ:

Յստակ է՝ որ ամուր նպատակ, կազմակերպուած ծրագիր եւ յստակ կառուցուածք ունեցող խումբի մը մասին է խօսքը, ուրիշ հարց՝ թէ կրնանք վերապահ մնալ ընդհանրապէս զինեալ ապստամբութեան գաղափարին նկատմամբ: Իսկ հաստատուն հակակառուցուածքները անհանդուրժելի պէտք է ըլլան իշխանութիւններուն համար: Յուլիս 17-ին տեղի ունեցածը կարելի չէ պատահականութեան կամ ահաբեկչութեան պիտակներով որակել:

Ի տարբերութիւն Ֆրանսական հեռատեսիլի կայաններէն՝ որոնք մինչեւ վերջ փորձեցին իշխանութիւններուն ի նպաստ օգտագործել Նիսի ահաբեկչական գործողութիւնը, Հայաստանի պետական ու պետականամէտ Հ1, Արմենիա եւ Շանթ կայանները՝ որոնք միաժամանակ Հայաստանի պաշտօնական դիրքաւորումներուն պատուհաններն են դէպի արտասահմանի հայութիւնը, բացի լուրերու կարճ ընդհատումներէ, շարունակեցին ամէնօրեայ «ազգային» երգն ու պարը, օրական ծրագիրները, սովորական ֆիլմաշարերը, եւ ամենակարեւորը՝ սպառողականութեան ծառայող ծանուցումները (գովազդները): Հայաստանի կառավարութիւնը փորձեց առաւելագոյն չափով մեղմել կացութեան լրջութիւնը եւ իր դէմ ուղղուած ապստամբութեան տարողութիւնը: Վերջապէս, ի տարբերութիւն Նիսի եւ Պաթոն Ռուժի դէպքերէն, բայց քիչ մը նման Թուրքիոյ ապստամբութեան, գործողութիւնը ուղղուած էր իշխանութեան դէմ:

Հետաքրքրական է նաեւ այն կէտը, թէ Թուրքիոյ բանակային ապստամբութեան առիթով հայկական իշխանական լրատուամիջոցները ջանք չէին խնայած Էրտողանին ներկայացնել իբրեւ տկարացած, վարկաբեկուած ու իր հեղինակութիւնը կորսնցուցած անձ: Թուրքիան ներկայացուցին իբրեւ յեղաշրջումներով ապրող երկիր, ուրեմն՝ իշխանական առումով անկայուն: Բաւական յաջող կերպով գործեց Թուրքիան սեւցնելու հայկական աւանդական մեքանիզմը: Նոյնը պիտի ըսէի՞ն արդեօք Յուլիս 17-էն ետք:

Լրագրութեան առումով, *Լրատուական պարադոքսը* վերնագիրով իր ֆէյսպուքեան 17 Յուլիս թուակիր գրառումին մէջ լրագրող Արմէն Դուլեան կը գրէ. «Երբ հասարակութիւնը կպած ուզում է գոնէ ինչ-որ բան իմանայ հէնց նոր կատարուած չատ կարեւոր իրադարձութեան մասին, լրատուամիջոցներից ձէնձուն չկայ ընդհանրապէս... Յետոյ, երբ արդէն բոլոր լրատուամիջոցները յատուկ թողարկումներ են կազմակերպում, այլեւս ասելու բան չկայ, ոչինչ չի կատարւում, բայց անընդհատ հաղորդում են այդ ոչինչ չկատարուելու մասին... Հաւատացէք՝ միայն մեր մօտ չի՝ ողջ աշխարհում էլ այդպէս է...»: Երբեմն, ոչ «ողջ աշխարհում»:

Ընդդիմադիր եւ անկախ լրատուամիջոցները, սակայն, փորձեցին մանրամասն հետեւիլ դէպքերու յաջորդականութեան: Ահաւասիկ դէպքերու ժամանակագրական համառօտագրութիւնը.

**17 Յուլիս**

– Զինեալ գրաւումէն ետք, պարբերաբար բերման կ'ենթարկուին Հիմնադիր Խորհրդարանի անդամներ կամ անոնց հետ կապ ունեցող անձեր՝ Նորայր Աւետիսեան, Յասմիկ Էվոյեան, Ժաննա Ժամհարեան եւ Գէորգ Մանուկեան, Ժողովրդական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մակէյեան, Ժառանգութիւն կուսակցութենէն Դաւիթ Սանասարեան, Ոտքի՛ Հայաստան նախաձեռնութենէն Անդրիաս Ղուկասեան, Հայկազն կուսակցութեան անդամները, աքթիւիսթներ՝ Վարդգէս Գասպար, Գագիկ Սարուխանեան, Ալբերտ Բաղդամարեան, Վաղինակ Շուշանեան:

– Յատուկ նշանակութեան ստորաբաժանումները կը պաշարեն տեղամասը, առանց յարձակում գործելու:

– Երեւանի ոստիկանապետ Վալէրի Օսիպեան ներս կը մտնէ բանակցութեան համար եւ կը մնայ այնտեղ իբրեւ պատանդ (հայկական երգիծանքը կը սկսի գործել. Էդգար Խաչատրեան կը գրէ. «Օսիպեանը հին գէլ ա, գիտէր, որ միտինգներ ա լինելու, արանքը ճղեց գնաց պատանդ դառաւ»: Շուշան Յարութիւնեան կը պատասխանէ. «Հիմա պատանդ լինելը աւելի անվտագ է» (Յասմիկ Բաբաջանեան, «Ռեկլամնայա պաուզա. ժողովուրդը հումոր է անում», *Հրապարակ*, 19 Յուլիս 2016, http://hraparak.am/?p=117865&1 =am/reklamnaya +pauza+goxovurdy+humor+e+anum)):

– Գրաւումէն շուրջ երեք ժամ ետք, ֆէյսպուքի միջոցով Սասնայ Ծռերի անդամները կը տարածեն շէնքի ներսը կատարած տեսանիւթ մը՝ ուր կոչ կ'ուղղեն ժողովուրդին իջնել փողոց, որպէսզի նեցուկ կանգնին իրենց խնդիրին, միաժամանակ յայտարարելով որ իրենք այս քայլին դիմած են ժողովուրդին համար (առանց ժողովուրդին կարծիքը հարցնելու անոր անունով խօսիլը հաճելի առաւելութիւն մըն է):

– Ազգային Ժողովի ընդդիմադիր պատգամաւոր Նիկոլ Փաշինեան կը մտնէ ներս ու կը զրուցէ խումբի անդամներուն հետ: Ելլելով դուրս, Փաշինեան կը հաստատէ խումբի անդամներուն յայտարարած պահանջները, աւելցնելով՝ որ անոնք կ'առաջարկեն երկիրի կառավարումը յանձնել Համազգային Վստահութիւն խորհուրդին կամ ժամանակաւոր կառավարութեան:

– Րաֆֆի Յովհաննէսեանի Ժառանգութիւն կուսակցութիւնը՝ իր ընդդիմադիր դիրքերէն ելլելով, կ'ընէ հետեւեալ յայտարարութիւնը.

«Ժառանգութիւն կուսակցութիւնը յայտարարում է, որ այսօր Երեւան քաղաքի Էրեբունի շրջանի ոստիկանական ստորաբաժանումում տեղի ունեցող իրադարձութիւնների համար մեղաւոր է համարում իշխանութիւններին, որոնք տարիներ շարունակ իրականացնող յանցաւոր եւ ապաշնորհ իրենց քաղաքականութեան արդիւնքում, թոյլ չտալով լուծել երկրում ծառացած խնդիրները ընտրական գործընթացով եւ օրէնքի շրջանակներում, անընդհատ գնացել են անօրինականութեան եւ բռնութեան ճանապարհով: Ժառանգութիւն կուսակցութիւնը վերահաստատում է դիրքորոշումը առ այն, որ միայն արտահերթ նախագահական եւ խորհրդարանական ընտրութիւններով է հնարաւոր իրավիճակը հիմնովին չտկել:

«Կոչ ենք անում Հայաստանի առողջ քաղաքական եւ հասարակական բոլոր միաւորներին միասնութեամբ եւ համախմբմամբ դուրս գալ ստեղծուած վտանգաւոր իրավիճակից:»

– Լուսաւոր Հայաստան կուսակցութիւնը եւ Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնը առանձին յայտարարութիւններ կ'ընեն, որոնք ներկայ ճգնաժամին պատճառը կը համարեն ներկայ իշխանութեան վարքագիծը՝ արդարութեան բացակայութիւն, մարդու իրաւունքներու ոտնահարում, յանցագործութիւններ, բռնութեան մշակոյթ, քաղաքական ատելութիւն:

– Պետական ներկայացուցիչներ բանակցութիւններ կը վարեն զինեալ խումբին հետ, համոզելու համար յանձնուիլ իշխանութիւններուն:

**18 Յուլիս**

– Պատանդ ոստիկաններէն երկուքը տարբեր ժամանակներ ազատ կ'արձակուին:

– Կը շարունակուին բանակցութիւնները:

– Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնը եւ Համախմբում կուսակցութիւնը կը կատարեն առանձին յայտարարութիւններ, որոնք՝ բացառելով ուժային լուծումները, կատարուած եղելութեան համար յանցաւոր կը համարեն իշխանութիւնները իրենց փտածութեան եւ գործադրած ապօրինութիւններուն համար:

– Բերման կ'ենթարկուին աքթիւիսթներ Մաքսիմ Սարգսեան, Կարէ Եղնուկեան, Անտոն Իւչենկօ, ինչպէս նաեւ Սասնայ Ծռերու անդամ Վարուժան Աւետիսեանի քոյրը:

– Ժամը 19:00-ին, Ազատութեան հրապարակի հանրահաւաքի մասնակցողները կը փորձեն քայլերթով ուղղուիլ Էրեբունի, բայց ոստիկանները պատ կազմելով կ'արգիլեն անոնց շարժումը եւ բերման կ'ենթարկեն քանի մը աքթիւիսթ: Կը շարունակեն իրենց ցոյցը հրապարակին մէջ, ուր ելոյթ կ'ունենայ նաեւ Հայաստանի Հելսինկեան Կոմիտէի նախագահ Աւետիք Իշխանեան:

– Ազատութեան հրապարակը հաւաքուած քաղաքացիներ երթ կը կազմակերպեն Երեւանի փողոցներով, ժողովուրդին կոչ ընելով իջնել փողոց:

– Մօտաւորապէս ժամը 22:00-23:00-ին, օփերայի շրջակայքը հաւաքուած ցուցարարները կը շարժին դէպի Էրեբունի:

– Էրեբունիի տարածքին մէջ, ոստիկանները պատ կը կազմեն իրենց վերահսկած տարածքի եւ քաղաքացիներուն միջեւ: Քանակով ոչ շատ ցուցարարներ կը շարունակեն մնալ ոստիկաններուն դէմ յանդիման տարածքին մէջ:

**19 Յուլիս**

– Ուղղակի բանակցութիւնները կը շարունակուին: Հայաստանի իրաւապահ մարմինները լարուած բանակցութիւններ կը վարեն, համոզելու համար զինուած խումբին լքելու զէնքը եւ ազատելու պատանդները:

– Ոստիկանութիւնը կոտրելով աքթիւիսթ Վարդան Գերաւետեանին դուռը, կը մտնէ ու խուզարկութեան կ'ենթարկէ բնակարանը:

– Գիշերուայ մօտ, Սարի Թաղի բնակիչները կը փորձեն ներս մտնել պահպանուող տարածքէն ներս: Բախումներ տեղի կ'ունենան իրենց եւ ոստիկաններուն միջեւ:

**20 Յուլիս**

– Կը ձերբակալուի Հիմնադիր Խորհրդարանի անդամ Կարօ Եղնուկեան:

– Բանակցութիւնները կը շարունակուին:

– *Armtimes.com* կը յաջողի յայտնաբերել Սասնայ Ծռերու ներսը գտնուող անդամներէն 17-ի անունները՝ Պաւլիկ Մանուկեան, Վարուժան Աւետիսեան, Տիգրան Մանուկեան, Գագիկ Եղիազարեան, Արեգ Կիւրեղեան, Արմէն Բիլեան, Էդուարդ Գրիգորեան, Արայիկ Խանդոյեան, Արմէն Լամբարեան, Յովհաննէս Յարութիւնեան, ազատամարտիկ Դեդ, Մխիթար Աւետիսեան, Սերգէյ Կիւրեղեան, Աշոտ Պետրոսեան, Յովհաննէս (ազգանունը յայտնի չէ), Արամ Մանուկեան եւ Թաթուլ Թամրազեան (վիրաւոր) (Տիրայր Մուրադեան, «Սասնայ Ծռեր խմբաւորման անդամներից 18-ի անունները յայտնի են (լուսանկարներ)», *Armtimes.com,* 20 Յուլիս, 2016, http:// armtimes.com/hy/read/89925):

Նոյն յօդուածին մէջ կը յիշատակուի նաեւ Սասնայ Ծռերու անդամի անուն մը եւս՝ Արամ Յակոբեան, որ չէ մասնակցած գործողութեան: Վահան Իշխանեան, մարդկային դիմագիծ մը տուած ըլլալու համար ապստամբներուն, *Armtimes.com*-ի յայտնաբերութենէն անմիջապէս ետք, ուշագրաւ յօդուածով մը կը բացայայտէ Արամ Յակոբեանի կենսագրական ու գաղափարական յատկանիշները: Ապստամբները (գոնէ անոնցմէ մէկուն ընդմէջէն) ընդհանրացուած գրոհայիններէ կը վերածուին ինքնուրոյն մարդկային դէմքերու (Վահան Իշխանեան, «Ո՞րն է հակամարտութեան գիծը. ապստամբներ եւ իշխողներ», *Հետք*, 20 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/69277/orn-e-hakamartutyan-gitsy-apstambner-ev-ishkhoxner.html/):

– Խումբ մը մտաւորականներ Ժիրայր Սէֆիլեանին կը յղեն հետեւեալ նամակը. «Ձեզ ենք դիմում, վստահ լինելով, որ Դուք գնահատում ու կարեւորում էք մտաւորականի խօսքը, խնդրանքն ու բարի խորհուրդը: Այսօր Ձեր ընկերները, ովքեր մեր հայրենակիցներն են, դիմել են ծայրայեղ քայլի՝ զինուած յարձակման եւ պատանդներ են վերցրել, սպանուել է ոստիկանութեան գնդապետ: Անսալով Ձեր բանականութեանն ու հայրենասիրութեանը, վստահ ենք, որ Ձեր խոհեմութեամբ ու յորդորներով կը միջամտէք ու կը կանխէք անպատասխանատու ու անհեռատես այս իրավիճակն ու դէպքերի յետագայ հետեւանքները՝ յորդորելով Ձեր ընկերներին վայր դնել զէնքն ու յանձնուել իրաւապահներին: Հաւատացած ենք, որ Ձեր եւ Ձեր ընկերների յետագայ խոհեմ ու զգօն քայլերն ուղղուած կը լինեն ազգային միասնութեանը, խաղաղութեանն ու անվտանգութեանը»: (Մտաւորականներ՝ որոնք իրենք իրենց իրաւունք տուած են ներկայանալ իբրեւ «բարի» խօսքի կրողներ: Ո՛չ մէկ խօսք, ո՛չ մէկ հեռաւոր ակնարկ իրավիճակի *բուն* պատճառներուն մասին, ո՛չ մէկ նշոյլ իշխանական քաղաքականութեան մասին՝ որ հասցուց այս անելանելի եւ ոչ-բաղձալի վիճակին: Նշէ՛ պատճառը, որպէսզի կարողանաս քննադատել հետեւանքը: Վտանգաւոր է քննադատել հետեւանքը, առանց բացայայտելու պատճառը: Բայց ինչպէ՞ս կրնային այս մտաւորականները խորքային քննադատութիւն կատարել, եթէ անոնք բոլորն ալ անխտիր կա՛մ կը պատկանին խորհրդային շրջանի օլիկարք-մտաւորականներուն՝ որոնք շատ հանգիստ բազմած էին խորհրդային բազկաթոռին վրայ, յաճախ ըլլալով խորհրդային գաղափարախօսութեան արտադրողներն ու պարտադրողները, կա՛մ կը հանդիսանան յետխորհրդային շրջանի շօու-պիզնէսի առաջամարտիկները՝ որոնց կը հետաքրքրէ միայն իրենց աստղային դրութիւնն ու անոր պահպանումը, եւ կա՛մ կը ներկայացնեն ներկայ իշխանութիւններուն շատ մօտիկ կանգնած, անոնցմէ օգտուող եւ անոնց շնորհիւ դիրքերու հասած մտաւորական-արուեստագէտներու մենաշնորհեալ խաւը (Անոնց անունները կարելի է կարդալ՝ «Սէֆիլեանին խնդրում են զինեալներին յորդորել զէնքը վար դնել», *Սիվիլնէթ*, 20 Յուլիս

➪ 4

3 ↪

# ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՓՈՐՁ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

2016, http://civlnet.am/2016/07/20/)։ Այս մտաւորականներուն մէջ չի գտնուիր (չէր կրնար գտնուիլ) Հայաստանի այն բացառիկ բանաստեղծները (Մարինէ Պետրոսեան, Վիոլէտ Գրիգորեան, Արմէն Շեկոյեան, Յովհաննէս Գրիգորեան), արուեստաբաններն ու արուեստի քննադատները (Վարդան Ազատեան, Նազարէթ Կարոյեան, Ռուբէն Արեւշատեան), մշակութաբանները (Վարդան Ջալոյեան, Հրաչ Բայադեան), փիլիսոփաները (Սերգէյ Ստեփանեան), ազգագրագէտները (Եղիշէ Թաթեւոսեան), 2008 Մարտ 1-էն ետք ձեւաւորուած ու կազմաւորուած մտաւոր հզօր, բայց դիտաւորեալ կերպով անտեսուած, շարժումի ներկայացուցիչները, Բնագիր, Ինքնագիր, Գրանիշ, Գրողուցաւ գրական-մտաւորական շարժումներուն մասնակիցները, *Արտերիա* ամսագիրի աշխատակիցները, Տարօրինակելով Երեւանը կիներու համախմբուածութեան գրողները, Սոցիոսկոպ հասարակագէտներու նախաձեռնութիւնը, 3-րդ յարկ, ԱԿՏ եւ նման գեղարուեստական շարժումներու հիմնադիրները, Ուտոպիանա.ամ մշակութային-ստեղծագործական հասարակական կազմակերպութեան, Արտ Լաբորատորիա հասարակական կազմակերպութեան եւ Ժամանակակից Արուեստի Ինստիտուտի պատասխանատուներն ու կազմակերպիչները, ինչպէս նաեւ հարիւրաւոր հայաստանեան մտաւորական-արուեստագէտները, որոնք կերտած են ու կը կերտեն իրենց ինքնուրոյն, ազատ ու ազատագրուած ուղին՝ առանց իշխանաւորական գեղծարարութիւններու, որոնք ստեղծողն են հայկական քաղաքացիական թարմ ու նոր մտաւոր-մշակութային շարժումներու։)

– Ոչ անպայմանօրէն այս նամակին իբրեւ պատասխան, այլ ընդհանրապէս նման մտաւորականներու ընտրած դիրքին եւ այս առիթով ունեցած ուրիշ յայտարարութիւններու նկատմամբ բաւական սուր քննադատութիւն կ'ուղղէ ազգագրագիտուհի Հրանուշ Խառատեան, ֆէյսպուքեան երէկուայ իր գրառումին մէջ. «Տարօրինակ, խիստ տարօրինակ է իրավիճակի շուրջ արտայայտուած հայ գրողների կարծիքը։ Երեքից (Է. Մելիտոնեան, Ռ. Դաւոյեան, Ա. Պետրոսեան) ոչ մէկը, նոյնիսկ ձեւի համար, չի խօսել Հայաստանի բնակչութեան կեղեքուած վիճակի եւ անօրինականութիւնների չարանի մասին, Ռ. Դաւոյեանը նոյնիսկ «դաւաճան» է անուանել նրանց։ Ալվարդ Պետրոսեանը, Ազգային Ժողովի մի քանի գումարումների պատգամաւոր, խոստովանում է, որ երկրի համար «մանր մունր հարցերով» չի զբաղուել եւ ոչ մի պատասխանատուութիւն չի զգում դրա համար։ Այդ «մանր-մունր» հարցերի ահագնացած թնջուկի լուծումը հանգիստ դրւում է այլոց վրայ, առանց նոյնիսկ խոստովանելու, որ իրենց կողմից չլուծուած հարցերը «լուծել» են օլիգարխները եւ ուրեմն իրենք են բուծել դրանց... Եւ երեքից ոչ մէկը ստեղծուած իրավիճակի լուծման ոչ մի, կրկնում եմ ոչ մի խնդիր չի ձեւակերպում իշխանութիւնների համար, միակ խեղճ ու անյարմար ձեւակերպումը Ռ. Դաւոյեանինն է՝ «հայ մարդիկ չպէտք է միմեանց վրայ կրակեն»։ Կարելի՞ է, օրինակ, եզդիների, ռուսների... վրայ կրակել, ո՞ր առիթներով է կարելի... Բայց կրակում են հայերը հայերի վրայ, ամէն օր են կրակում, եւ չի երեւում, որ սա երբեւէ անհանգստութեան առիթ է եղել։ Կրակում են բանակում՝ զինուորի վրայ, կրակում են ամուսինները, կրակում են օլիգարխները, կրակում է մի ողջ զինապահեստի տէր Լիսկան... Սրա դէմ են ըմբոստացել Ռ. Դաւոյեանի պիտակած «դաւաճանները»։ Գոնէ մի փոքր ջանային «գրող» բառի մարդասիրական տարողութիւնը պահել։ Այսօրով հօ կեանքը չաւարտուե՞ց։ Սերունդ է մեծանում։ Երկրի դառը ժողովրդագրութիւնը չի՞ անհանգստացնում մեր գրողներին։ Ոչ մի հարց չունե՞ն մեր իշխանութիւններին։ Երկրի, երկրի ապագայի, բնակչութեան, հասարակութեան անհատնում պրոբլէմների որեւէ լուծման առաջարկ։ Ղարաբաղի համար։ Համաձա՞յն են այսպիսի Հայաստանին, որտեղ երիտասարդ տղայի ձեռքերը փողոցում ոլորելով նստեցնում են ոստիկանական մեքենան, «բերման ենթարկում», հայհոյում, վրան թքում եւ առաջարկում իրենց կօշիկների ներբանները լիզել... Որտեղ երեխաները, բազմաթիւ երեխաներ սոված գիշերներ են լուսացնում։ Որտեղ գիւղացին այլեւս գիւղացի չի, այլ ճորտ, բանկի ստրուկը, ոտով-գլխով պարտապան... Որտեղ ԽՍՀՄ բռնութիւնների զոհերը եւ նրանց ժառանգ թոշակառուները իրենց խեղուած անցեալի ազդեցութիւնը չեն կարողանում կոմպենսացնել անհրաժեշտ դեղորայքով։ Օրէնքը չի գործում։ Բայց դէ սրանք «մանր-մունր» բաներ են, որոնց իշխանութեանը արտօնուած է ուշադրութիւն չդարձնել։ Այսպէս էլ ապրում ենք։»

– Վահան Իշխանեանի վերոյիշեալ յօդուածը եւս կը քննադատէ այս մտաւորականներուն դիրքաւորումը.

«Բոլորը հասկանում են, որ «Սասնա ծռեր»-ը զիջող չէ, որ զրոհը մեծ արիւնահեղութեան է յանգեցնելու։

«Ապստամբների դէմ զրոհից խուսափելու միակ ձեւն այսօր նրանց հասարակական համերաշխութիւն յայտնելն է, կչեռքի ապստամբների նժարը ծանրացնելը։

«Այո, ինչքան ծանր լինի ապստամբների նժարը, այնքան իշխանութիւնը կը զսպի իրեն եւ փոխզիջման կը գնայ։ Իսկ փոխզիջումների հնարաւորութիւն կայ, օրինակ՝ այն, որ իշխանութիւնը յայտարարի ապստամբների համաներում կամ ազատի Ժիրայր Սէֆիլեանին։

«Սակայն, մի շարք մտաւորականներ իշխանութեանը դուր գալու համար կրակի վրայ իւղ են լցնում ու միակողմանիօրէն մեղադրելով ապստամբներին՝ նպաստում արիւնահեղութեանը՝ եթէ յանցագործ են ուրեմն, գրոհ։»

Իշխանեան չեչտակի նպատակայնութեամբ դիտել կու տայ նաեւ՝ թէ ինչպէս այդ մտաւորականներէն մէկը եւ իր ընտանիքը չեն «իմացել, թէ ինչ է անհանգստութիւնը» (Վահան Իշխանեան, նչ. յօդ.ը)։

– Լեզուաբան Հրաչ Մարտիրոսեան Ֆէյսպուքի 20 Յուլիս գրառումին մէջ այդ մտաւորականներուն կու տայ «լեզուաբանական» պատասխան մը. «Երեւի մեր որոշ գրողներ յոգնել են իրենց կոչումն արտացոլող «գրող» բառի վսեմ իմաստից եւ ուզում են հասարակութեանը ներկայանալ այդ բառի բանահիւսականդիցաբանական ընկալմամբ։»

Այսպէս, վերջանալով Յուլիս 20-ը, տակաւին ոչ մէկ հանգուցալուծումի նշոյլներ չեն երեւիր։ Պրկուած ժամանակներ են։ Պատմութիւնը տակաւին պիտի ունենայ իր շարունակութիւնը։

Այս չորս օրուան ընթացքին կը նկատուի երկրի նախագահին եւ իր կուսակցականներուն տարօրինակ ու մտահոգիչ լռութիւնը՝ պայթյունաձուլմի ստանը։

Լրագրողներու եւ հասարակութեան կողմէ քառօրեայ կատարուածը շուտով կը համեմատուի Հոկտեմբեր 27-ի եւ Մարտ 1-ի հետ։ Իբրեւ կարեւորութիւն՝ անոնցմէ պակաս կրնայ չըլլալ։ Բայց իբրեւ բովանդակութիւն՝ երեքն ալ ունին տարբեր բնաբաններ։ Հոկտեմբեր 27-ը ներիշխանական միջվերնախաւային մաքրագործում մըն էր, որուն բուն գործիչները, բնականաբար, պիտի մնային չբացայայտուած։ Մարտ 1-ը ողբերգական վերջաւորութիւնն էր երկու շաբաթ առաջ սկսած ու անընդհատ աճող ժողովրդական ոչզինեալ ապստամբութեան։ Թէեւ ապստամբութեան առաջնորդը Լեւոն Տէր-Պետրոսեանն էր, բայց հասարակական ընդվզումը շրջանցեց առաջնորդը եւ դարձաւ ինքնուրոյն ու ինքնակազմակերպ շարժում մը։ Մարտ 1-ը իշխանութեան զինեալ յարձակումն էր իր սեփական ժողովուրդին վրայ։ Մինչդեռ Յուլիս 17-ը զինեալ խումբի մը ապստամբութիւնն էր իշխանութեան դէմ, յոյս ունենալով զայն վերածել համաժողովրդական ցոյցի։ Նպատակն էր զինեալէն անցնիլ ժողովրդականի։

Պատմաբան Արա Սանճեան Ֆէյսպուքի 19 Յուլիս թուակիր գրառումին մէջ կ'առաջարկէ փնտռել ուրիշ հետաքրքրական առնչութիւններ. «Համեմատական կամ բաղդատական պատմութեան յառաջադրանք քաղաքական պահանջներով պատանդառութեան հետ կապուած հայոց նոր ու նորագոյն պատմութենէն՝ Պոլսոյ մէջ «Պանք Օթոմանի» կեդրոնատեղիին գրաւում (1896) – Փարիզի մէջ թրքական հիւպատոսութեան գրաւում կամ «Վան» գործողութիւն (1981) – Երեւանի մէջ Էրեբունիի շրջանի ՊՊԾ գունդի կեդրոնավայրի գրաւում (2016)։ Որո՞նք են նմանութիւններն ու տարբերութիւնները։»

Բայց ինչո՞ւ տեղի ունեցաւ Յուլիս 17-ը։ Լրագրող Պետրոս Ղազարեան (Կեդրոն հեռատեսիլի *Ուրուագիծ* եւ *Հայկական Ուրբաթ* հաղորդաշարերու հեղինակ), իր ֆէյսպուքեան 18 Յուլիսի գրառումին մէջ կը նշէ՝ թէ որքան որ անընդունելի է զինուած յարձակումը, նոյնքան եւս անընդունելի են իշխանութիւններուն վարած քաղաքականութիւնները, որոնք հասցուցին այս վիճակին.

«Եթէ դու մտածում ես, որ իշխանութիւնը երկիրը էն վիճակի ա հասցրել, որ բացի զինուած պայքարը, այլ ճանապարհ չկայ, հակառակ պարագայում վտանգուած ա մեր, մեր երեխաների ապագան ապա հիմա պէտք ա դուրս գաս փողոց, փորձես միանալ զինուած պայքարին։ Բայց եթէ դու քո հով սենեակում նստած սառը սուրճի բաժակը կողքիդ, կոչ ես անում փրթել թափել իշխանութիւններին, շատ լաւ իմանալով, որ պատասխան փրթոցու թիրախը հաստատ դու չես այլ Սասնայ Ծռերի տղերքը՝ դու ով ես՞՞՞։ Ընդամէնը ֆէյսբուքեան աբիժնիկ, անպատասխանատու մարդ։

«Կարդացի մի քանի ՀՀԿ-ական պատգամաւորների հարցազրոյցը՝ ասում են զիջման չենք գնայ, պահանջները չենք կատարի։ Դէ հա։ Եթէ պետութիւնը կատարում ա զինուած գրոհայինների պահանջը՝ վերջ պետութեանը։ Բայց էս մեդալի մի կողմն ա։

«Եթէ իշխանութիւնը էսքան չնուաստացնէր, չզզուացնէր մարդկանց, եթէ չկեղծէր ընտրութիւնները, իշխանութիւնը չծառայեցնէր սեփական հարստացման համար, դատական, ուժային մարմինները որպէս գործիք չօգտագործէր ուժի դիրքերից մնացածին ճնշելու համար միգուցէ հակառակ կողմից ուժի կիրառումը մեր քաղաքացիների մի մեծ շերտի մօտ աջակցութիւն չստանար։

«Մարդիկ ուրախանում են որ վերջապէս իշխանութեան հետ իր լեզուով են խօսում։

«Ցաւօք մեր իշխող վերնախաւը ունակ չէ ադեկվատ լուծումներ գտնել։ Բթացել ա անընդհատ քծնելուց եւ ինքնուրոյնութիւնից խուսափելուց։

«Իսկ մարդ սպանելը, պատանդելը հէնց մարդասպանութիւն ա։ Վեհ նպատակների մասին պատմէք սպանուածի եւ գերեւարուածների հարազատներին։»

Արձակագիր Արամ Պաչեան ապստամբութեան պատճառը կը տեսնէ նաեւ իրական բարեփոխումներու բացակայութեան մէջ. «Վերջին ամիսներին Հայաստանի Հանրապետութիւնում խմորուող՝ շատ ժամանակ իրատեսական, պատճառահետեւանքային երեւոյթները բաւականին տագնապալի ու մռայլ ապագայ են կանխորոշում։ Ապրիլեան դէպքերից յետոյ, երբ իշխանութիւնները ղեկավարման ողջ համակարգում լրջագոյն բարեփոխումներ չարեցին, պարզ դարձաւ, որ անգամ, երբ խօսքն ազգային անվտանգութեան մասին է, խօսքը մեր պետութեան ներկայի ու ապագային մասին է, միեւնոյն է՝ դա որեւէ լրջագոյն ներազդեցութիւն չունեցաւ իշխանութիւնների համար։ Նրանք շարունակում են այնպէս, ինչպէս եւ շարունակել են՝ անդրդուելիօրէն կորցնելով իրականութեան զգացողութիւնը։ Բոլորն էլ գիտեն, որ, ահա, արդէն մէկ տասնամեակից աւել Հայաստանում որքան իր անմահութեան համար հող է նախապատրաստում իշխանութիւնը, այնքան սաստկանում է անվստահութեան, յուսահատութեան, անելանելիութեան զգացողութիւնը, եւ ջրի երես են ելնում հարցերը լուծելու չգրուած բոլոր օրէնքները։» Պաչեան կ'աւելցնէ՝ թէ «[պ]արզ է, որ եթէ բացակայում է քաղաքական ծանրակշիռ ընդդիմութիւնը, ուրեմն ժողովուրդը, քաղաքացիներն իշխանութեան դէմ պայքարի, իշխանութեան ամենաթողութիւնը զսպելու այլընտրանքներ են որոնելու» (Արամ Պաչեան, «Ներքին ցնցումների վաղեմութիւնը», *Հրապարակ*, 19 Յուլիս 2016, http://hraparak.am/?p=117815&1=am/nerqin+cncumneri+vaxemutyuny)։

Թէեւ փողոց իջան ոչ քիչ թիւով համախոհներ, բայց ինչո՞ւ զինեալ գրաւումը գոնէ տակաւին չվերածուեցաւ համաժողովրդական ապստամբութեան, ինչպէս Մարտ 1-ին նախորդող շրջանը։ Կը կարծենք՝ գլխաւոր պատճառը բռնութիւնն է։ Նոյնիսկ եթէ զինուած ապստամբութեան հետապնդած գաղափարները ըլլան լիովին ընդունելի, բռնութիւնը կը մնայ անշրջանցելի, գոյացած բռնութիւն մը՝ որուն վերացումին համար հանդէս եկած են նոյն ինքը ապստամբողները։ Իսկ բռնութիւնը կ'արտադրէ բռնութիւն։ *Աւելի* բռնութիւնը կ'արտադրէ *աւելի* բռնութիւն։ Ծանօթ է, որ խաղաղ ցոյցերու պարագային, իշխանութիւնները միշտ կ'աշխատին իրենց պատկանող խռովարար տարրեր մտցնել այնտեղ, որպէսզի արդարացնեն իրպենց կողմէ գործադրուելիք ոստիկանական բռնութիւնները։ 2011 Յունուար 25-ին յաջորդող օրերուն, ի դէմս Եգիպտոսի խաղաղ ու անզէն ցուցարար-աքթիւիսթներուն, այդ ժամանակուայ կառավարութիւնը իրեն յարող գործադիրներու ձեռքով դիմեց բռնութիւններու՝ հրդեհելով ու աւերելով հիմնարկներ ու առեւտրական կեդրոններ, որպէսզի իր գործադրելիք բռնութիւններուն պատճառը կարողանայ բարդել ցուցարարներուն վրայ։ 2011-2012-ի Գրաւել Ուոլ Սթրիթ խաղաղ շարժումին մէջ, ԱՄՆ-ի բարեպաշտ կառավարութիւնը խռովարարներ խցկեց եւ սկսաւ սեւցնել աքթիւիսթներուն դէմքը։ Երեւանի Մարտ 1-ի դէպքերուն համար իշխանութիւնները միշտ փորձեցին բռնութիւնը վերագրել անզէն ցուցարարներուն։ Սակայն ներկայ Յուլիս 17-ի պարագային բռնութիւնը արդէն ստեղծուած է խմբակին կողմէ։ Իշխանութիւնը պէտք չունի բռնութիւններ հնարել։ Հայաստանի քաղաքացիական հասարակութիւնը, ըստ էութեան, գիտակից է այս կէտին։ Ջանգուածային կերպով փողոց չիջնելով, ան ո՛չ կը հերքէր իր ընդդիմութիւնը իշխանութիւններուն նկատմամբ, եւ ո՛չ ալ կը մերժէր ապստամբներուն առաջարկները։ Ան պարզապէս կը խուսափէր բռնութենէն։ Դէպքերու յետագայ ծաւալումը այս առումով տակաւին շատ բան ունի բացայայտելիք։

*Ջահակիր*

# ԿԱՐԴԱԼ ԹԷ ՉԿԱՐԴԱԼ

## ՕՍԿԱՐ ՈՒԱՅԼԴ

Անգլերէնից Թարգմանեց Անի Յակոբեանը

Գրքերը իմ պատկերացմամբ կարելի է բաժանել երեք դասի.

1. Գրքեր, որոնք արժի կարդալ, այդպիսիք են՝ Ցիցերոնի *Նամակները*, Վազարիի *Նկարիչների կեանքի մասին*, Բենվենուտո Չելինիի ինքնակենսագրականը, Ջոն Մանդեւիլ, Մարկո Պոլօ, Սուրբ Սիմոնի յուշագրութիւնները, Մոմզէն եւ, մինչ աւելի լաւը կը գտնենք, Գրոտայի *Յունաստանի պատմութիւնը*:

2. Գրքեր, որ արժի վերընթերցել, օրինակ՝ Պլատոնի եւ Քիթսի գրքերը: Պոեզիայից արժի կարդալ վարպետներին եւ ոչ աշուղներին, իսկ փիլիսոփայութիւնից՝ մարգարէներին եւ ոչ գիտնականներին:

3. Գրքեր, որ ընդհանրապէս չ՚արժի կարդալ, օրինակ՝ Թոմսոնի *Տարուայ եղանակները*, Ռոջերսի *Իտալիան*, Փեյլի *Վկայութիւնները*, Սուրբ Օգոստինոսից բացի եկեղեցական Հայրերի բոլոր ստեղծագործութիւնները, Ջոն Ստիւարտ Միլլի բոլոր գործերը, բացի ազատութեան մասին էսսէից, Վոլտէրի բոլոր պիէսները առանց բացառութեան, Բաթլէրի *Անալոգիան*, Գրանտի *Արիստոտէլը*, Հումայի *Անգլիան*, Լիւիսի *Փիլիսոփայութեան պատմութիւնը*, տրամաբանական բոլոր գրքերը եւ նրանք, որոնք փորձում են ինչ-որ բան ապացուցել:

Երրորդ դասն ամենից կարեւորն է: Մարդկանց ասել՝ ինչ պէտք է կարդալ, որպէս կանոն, կա՛մ անօգուտ է, կա՛մ վտանգաւոր, քանի որ գրականութեան արժեւորումը խառնուածքի հարց է, եւ ոչ թէ ուսուցման, Պառնաս հասնելու համար դասագիրք պէտք չէ, եւ ոչ մի գիտելիք էլ այստեղ պէտք չի գայ: Բայց մարդկանց պատմել, թէ ինչ չ՚արժի կարդալ, չատ տարբեր բան է, եւ ես համարձակւում եմ առաջարկել, որպէսզի այն ընդգրկուի համալսարանական ընդլայնուած ծրագրում:

Վստահ եմ, դա միակ բանն է, որ մեր այս դարաշրջանում միանգամայն անհրաժեշտ է, մի դարաշրջան, որտեղ այնքան չատ են կարդում, որ ժամանակ չկայ հիանալու եւ այնքան չատ գրում, որ ժամանակ չի մնում մտածելու: Ով էլ որ ժամանակակից ուսումնական ծրագրի քաոսից ընտրի «Հարիւր ամենավատ գրքերը» եւ ցուցակ կազմի, երիտասարդ սերնդին իրական եւ տեւական օգուտ տուած կը լինի:

Այսպիսի տեսակէտներ յայտնելուց յետոյ, ենթադրում եմ, որ չպէտք է որեւէ առաջարկ անէի «Հարիւր լաւագոյն գրքեր»-ի առնչութեամբ, բայց, յոյս ունեմ, թոյլ կը տաք ինձ զգալ անհետեւողական լինելու հաճոյքը, քանի որ իմ պարտքն եմ համարում տէր կանգնել այն գրքին, որը տարօրինակ կերպով դուրս է մնացել բարձրակարգ գնահատողների մեծ մասի աչքից, ովքեր նպաստել են ձեր ցուցակները կազմելուն: Նկատի ունեմ *Յունական անթոլոգիան*: Այս հաւաքածուում ներառնուած գեղեցիկ բանաստեղծութիւնները, ինձ թւում է, նոյն դիրքն ունեն յունական դրամատուրգիայի հանդէպ, ինչ որ Տանագրայի նուրբ արձանիկները՝ Ֆիդիայի մարմարների համեմատութեամբ, եւ յունական ոգին լիովին հասկանալու համար քիչ բան չեն նշանակում:


6

# ՀԱՅՀՈՅԻՐ, ՈՐ ԸՆՏՐՈՒԵՍ

## ՈՍԿԱՆ ԵՐԵՒԱՆՑԻ

Հայաստանում արդէն քառորդ դար է՝ մեր քաղաքական գործիչները տարբեր կերպ են պատգամաւոր ընտրւում: Ասացինք՝ «քաղաքական գործիչներ», բայց իրականում մեր պատգամաւորներից քչերին կարելի է քաղաքական գործիչ համարել: Նրանց մի մասը օլիգարխներ ու մեծահարուստներ են եւ պատգամաւոր են դարձել հիմնականում մեծամասնական տարբերակով: Ընդ որում՝ առանց մեծ դժուարութեան: Ինչպէս ասում են՝ փողին մուննաթ: Սովորաբար մենք ընտրակեղծիքների ու ընտրակաշառքի հարցերում հիմնականում «ընտրուողներին» ենք մեղադրում՝ անտեսելով ու չնկատելու տալով ընտրողների հանգամանքը՝ մոռանալով, որ ընտրողների չարքերում կան մարդիկ, որոնք անհամբեր սպասում են ընտրութիւնների օրուան, որպէսզի ընտրակաշառքի արժանանան: Այսինքն՝ դարձեալ փողին մուննաթ: Մենք ընտրակաշառք վերցնողներին ու ընտրակաշառքից չհրաժարուողներին սովորաբար մանրակրկիտ չենք անդրադառնում՝ մտածելով, որ լաւ օրից չէ, որ մարդիկ ընտրակաշառք են վերցնում: Իսկապէս լաւ օրից չէ, եւ չատ դէպքերում գլանում ենք մարդկանցից պահանջել ընտրակաշառքից հրաժարուելու այդ պստիկ ինքնազոհաբերումը: Մենք աւելի յաճախ ու աւելի չատ անդրադառնում ենք ընտրակաշառք բաժանողներին, որոնք ոչ միայն անհատներ են, այլեւ կուսակցութիւններ: Այսինքն՝ համամասնական ընտրութիւնների դէպքում ընտրակաշառքը վերստին իր դերը կը խաղայ, եւ ֆինանսապէս հարուստ կուսակցութիւններն ակնյայտ առաւելութիւն կ՚ունենան: Իսկ ինչ պիտի անեն ֆինանսական ոչ հարուստ կուսակցութիւնները, որպէսզի իրենք էլ Ազգային ժողովում տեղեր ունենան: Ոչ հարուստ կուսակցութիւններ ասելով՝ բնականաբար, առաջին հերթին նկատի ունենք ընդդիմադիր կուսակցութիւններին ու կուսակցական դաշինքներին: Մեր կարծիքով՝ պիտի անեն այն, ինչ առաջներում արել եւ անում էին: Այսինքն՝ պիտի քննադատեն գործող իշխանութիւններին: Ընդ որում՝ պիտի անողոք քննադատեն: Ազատութեան հրապարակում եւ ամէնուր: Եւ ովքեր աւելի անողոք եւ աւելի սուր քննադատեն, նրանք էլ


6

**ԽՈՀԵՐ**

# ՄՏԱՒՈՐԱԿԱՆԸ ԻԲՐԵՒ ԿՐԿՆՕՐԻՆԱԿՈՂ

## ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Դատարանները, քաղաքական հաւաքոյթները պէտք ունին գրաւոր կրկնօրինակողներու: Վարժ, հմուտ եւ արագաշարժ ատենագրողներ տեղւոյն վրայ կ՚արձանագրեն ամէն բառ, ինչպէս որ արտասանուած է: Ասիկա կարեւոր եւ դրական երեւոյթ մըն է: Բանաւորի գրաւոր կրկնօրինակումը լիովին արդարացուած է, որքան որ արդարացուած են դատարանական ու քաղաքական ճշգրտութիւնները:

Խնդիրը կը սկսի՝ երբ ճշգրիտ վերարտադրութիւնը կը մտնէ մտաւորական-մշակութային դաշտ:

Դպրոցները, համալսարանները, տոքթորականները ենթադրուած են գրողներ պատրաստել: Քիմիայի, կենսաբանութեան, բանասիրութեան քննութիւնները աշակերտը կը պատասխանէ գրելով: Բայց այս գրելը ինքնուրոյն չէ: Ան կրկնօրինակումն է տարուան ընթացքին իրեն տրուածին, իրեն առաջարկուածին, իրեն պարտադրուածին՝ իբրեւ միակ ճշմարտութիւն: Տոքթորական աստիճանները ենթադրուած են տրուիլ գրուած թէզի հիման վրայ: Բայց այս թէզերուն մէջ մտածելը կը գտնուի մերժողական կամ առաւելագոյնը երրորդական-չորրորդական դիրքի վրայ: Աղբիւր, աղբիւր, աղբիւր անընդհատ կը բացագանչէ վերահսկիչը: Այնքան աղբիւր՝ որ մտածելու չատ քիչ տեղ կը մնայ: Քանակով որքան աւելի ըլլան աղբիւրները, այնքան աւելի բարձր գնահատականներ կը ստանան թէզերը:

Հակառակ «գիտականօրէն» չափագծուած, «գիտական» ձեւակերպում ստացած այս կրկնօրինակումներու գերառատութեան (դպրոցական քննութիւններէն սկսեալ մինչեւ տոքթորական), յետ-կրթական շրջանին գրողները խիստ կը նուազին: Եւ ճիշդ այս գրուած կրկնօրինակումներուն պատճառով է որ գրողները կը պակսին, քանզի դպրոցական-համալսարանական աշակերտներու պարտադիր գրութիւնները կը ծառայեն միակ նպատակի մը՝ ստանալ թուանշան եւ մասնագիտական աստիճան, բայց ոչ երբեք հաճոյք: Այս գրութիւնները արդիւնքն են ո՛չ մէկ մտաւոր գրգիռի, որ կը հանդիսանայ գրելու ամենահաճելի նախապայմանը: Կրկնօրինակումներուն չնորհիւ կը սպաննուի ամէն տեսակ մտաւոր հաճոյք եւ ինքնակերտ մտածելակերպ: Հաճոյքը՝ որ կը հանդիսանայ մարդկային բնազդին ամենագեղեցիկ եւ ամենադրական արտայայտութիւններէն մէկը, կը ջնջուի արդիական փրոֆեսիոնալիզմի եւ առարկայականապաշտութեան պատճառով, տեղի տալով նիւթական ու մտաւոր շահի եւ օգուտի: Աշակերտական ամենավաղ շրջանէն գրելը կը դառնայ արտաքին դրդապատճառ մը, որ տարբեր ձեւակերպումներով կը շարունակուի մինչեւ վերջ:

Կը պարզուի, որ իշխանութիւնները պէտք ունին կրկնօրինակող գրող-մտաւորականներու: Երբ Անգլիոյ թագուհիին գաւակը կամ թոռնիկը կ՚ամուսնանայ, մտաւորականներու ամբողջ հոյլ մը կը սկսի յուզումնառատ յօդուածներ «գրել», նկարագրելով ամբողջ արարողութիւնը՝ թագուհին այսպիսի գլխարկ դրած էր գլխուն, թագաժառանգին բաճկոնը այս գոյնը ունէր, եւ այս գլխարկին ու բաճկոնին վրայ կը բարդեցնէ իբր իր թագուհին պաշտող անգլիացի հաւատարիմ ժողովուրդին ապագան ու բարեկեցութիւնը: Սերժ Սարգսեան Վիեննայէն վերադարձին օդանաւին մէջ *լրագրող*ներուն կը պատմէ ապրիլեան պատերազմին մասին, եւ յաջորդ օրը իր խօսքերը գրուած կը գտնէ լրագրական ցանցերուն մէջ: Ֆրանսուա Օլանտ եւ Պարաք Օպամա անընդհատ մամուլի ասուլիսներ կը կազմակերպեն, ուր «մասնագէտներ»-ը մեծ ուշադրութեամբ մտիկ կ՚ընեն անոնց իւրաքանչիւր բառը, եւ ապա մեկնաբանութեան անունին տակ կը վերարտադրեն զանոնք: Ասիկա թէեւ քիչ մը տարբեր է Սերժ Սարգսեանի օդանաւային լրագրողներու ուղղահայեաց մօտեցումէն, բայց, միեւնոյնն է, վերարտադրութեան պատճառա-հետեւանքային (պատճառը՝ նախագահը, հետեւանքը՝ լրագրողը) խնդիրը կը մնայ էական ու վճռորոչ:

Մտաւորականը ենթադրուած է ըլլալ ինքնամտածող ու ինքնարտադրող եւ ոչ թէ հետեւող կամ որեւէ չափով վերարտադրող: Մտաւորականին քաջ յայտնի պէտք է ըլլայ որ վերարտադրութիւնը անկարելի բան մըն է, վերարտադրութեան ձգտողը ինքնաբերաբար կը նսեմացնէ ամէն բան՝ իրերն ու երեւոյթները վերածելով կմախքի, անչունչ ու անկենդան մարմինի:

Հայկական սփիւռքը եւս պէտք ունի վերարտադրող-կրկնօրինակող մտաւորականներու: Սփիւռքահայ «աւանդական» կառոյցներուն գլխաւոր դրսեւորումներէն մէկը ձեռնարկներն են՝ որոնք կը հանդիսանան անձնական դէմքը ներկայացնելու հզօր միջոց մը: Ձեռնարկները բացառիկ կարեւորութիւն ունին կազմակերպութիւններու արտաքին դիմագիծի ներկայացումին ու վաւերացումին համար: Երգ, պար, նուագ, արտասանութիւն, թատրոն, բանախօսութիւն, դասախօսութիւն, ցուցահանդէս, չնորհանդէս՝ կը ներկայացնեն այդ ձեռնարկներուն կորիզը: Բայց ոչ մէկ միտքի սալոն, գիրքի հաւաքական քննարկում, կարծիքի հանրային ու բաց փոխանակում: Ձեռնարկներու արձանագրութեան համար կառոյցները պէտք ունին գրողներու: Եւ առանց դժուարութեան միչտ կը յայտնուին այդ գրող-մտաւորականները: Իրենց պարտականութիւնն է նախ եւ առաջ բառերով վերարտադրել կատարուածը՝ այսինչը երգեց, այնինչը պարեց, երրորդը արտասանեց, չորրորդը բանախօսեց, իւրաքանչիւր պարագային, իբրեւ մտաւորական, աւելցնելով իրենց գնահատականը՝ որ կազմըւած է անփոփոխօրէն կրկնուող քանի մը գովաբանական ածականներէ: Այս պարտականութիւնը յաջողապէս կատարողը կը ստանայ մտաւորական կոչում: Ո՛չ մէկ խնդրականացում, ո՛չ մէկ մեկնաբանութիւն, ո՛չ մէկ գաղափար, այլ միայն ու միայն ածականաւոր վերարտադրութիւն: Կը պարզուի՝ որ թէ՛ այս մտաւորականները եւ թէ՛ իրենց հովանաւորողները գաղափար անգամ չունին ինչ կը նշանակէ խնդրականացում, գաղափար անգամ չունին՝ որ խնդրականացումը կապ ունի ո՛չ գովասանքի եւ ո՛չ ալ քննադատութեան հետ: Մինչդեռ ածականաւոր վերարտադրութիւնը կը տանի դէպի անչարժացում ու լճացում, խնդրականացումը կը մեկնաբանէ, կը տարբերակէ, կը չերտաւորէ, կը նորոգէ ու կը թարմացնէ գիտելիքը, գաղափարը կը դնէ շրջագայութեան մէջ:

Հետաքրքրական է չնորհանդէսի պարագան: Շնորհանդէս կը նշանակէ որ հրատարակուած է գիրք մը: Եւ փոխանակ այդ գիրքին գրախօսականը գրելու (սփիւռքի մէջ գրախօսականները մտահոգիչ կերպով քիչ են), մտաւորականը կը նախընտրէ գրել չնորհանդէսին նկարագրութիւն-վերարտադրութիւնը: Գիրքը կը վերածուի չնորհանդէսի: Շնորհանդէսը աւելի կարեւոր կը դառնայ քան գիրքը՝ որուն պատճառով տեղի ունեցած է չնորհանդէսը: Շնորհանդէսը՝ որ գիրքը ծանուցանելու միջոց մըն է (սփիւռքի մէջ հազուագիւտ կը գտնուին չնորահանդէսներ՝ որոնք ճառերէ եւ ինքնագովաբանութիւններէ անդին կ՚անցնին), կը դառնայ նպատակ եւ անոր գրաւոր վերարտադրութեամբ կը վերածանուցուի ծանուցումը: Գիրքը՝ միտքի ամենանուիրական արտայայտութիւններէն մէկը, կը կորսուի կրկնակի ծանուցումներուն մէջ:

Իսկ յետոյ կը զարմանանք՝ թէ ինչո՞ւ մարդիկ հայերէն թերթ չեն կարդար, թէ ինչո՞ւ արեւմտահայերէնը չի զարգանար, թէ ինչո՞ւ երիտասարդները կը հեռանան գաղութներէն:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՎԱՐԴԱՆ ԱՅԳԵԿՑԻԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ

### ԱՌԻՒԾԸ ԵՒ ԱՂՈՒԷՍԸ

Ծնաւ առիւծ կորիւն մը, եւ կենդանիները հաւաքուեցան կորիւնը տեսնելու եւ ուրախանալու:

Եկաւ աղուէսը եւ հանդէսին ժամանակ, բազմութեան մէջ առիւծին բարձրաձայն նախատեց եւ անարգեց՝ թէ ա՞յդ է քու զօրութիւնդ, որ ծնունդ կու տաս միայն մէկ կորիւնի եւ ոչ թէ բազմաթիւ կորիւններու:

Առիւծը հանդարտօրէն պատասխանեց եւ ըսաւ.

– Այո, ես ծնունդ կու տամ մէկ կորիւնի, բայց ծնունդ կու տամ առիւծի եւ ոչ թէ քեզի պէս աղուէսի:

..................

### ԻՄԱՍՏՈՒՆ ԶԻՆՈՒՈՐԸ

Իմաստուն զինուոր մը պատերազմի կ'երթար եւ ան երկու ոտքով կաղ էր: Եւ զինուորներէն մէկը իրեն ըսաւ.

– Ով ողորմելի, ո՞ւր կ'երթաս: Իսկոյն կը սպաննեն քեզի, որովհետեւ անկարող ես փախչիլ:

Եւ ան ըսաւ.

– Ով անմիտ, ես պատերազմի չեմ երթար փախչելու համար, այլ կանգնելու, եւ կռուելու եւ յաղթելու:

## ԱՆՇՈՒՔԱ՝ ՌԱՄԱՏԱՆԻ ԸՆԹԱՑՔԻՆ ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԵՐՍ ԼԵՑՈՒՆ ԵՆ ԶԳԱՑՈՒՄՆԵՐՈՎ

2



Շատերու մօտ այն տպաւորութիւնը յառաջացած է՝ թէ ան հեռացած է արուեստի դաշտէն: Անուշքա բացատրեց՝ որ երկար ժամանակ է հանրութեան կը ներկայանայ իբրեւ դերասանուհի, ինչպէս Ռամատանի երկու ֆիլմաշարերը կամ *Հերդա* ֆիլմը: Բայց քանի որ ոմանք իր ներկայութիւնը կը տեսնեն միայն երգեցողութեան մէջ, հետեւաբար կ'անտեսեն իր ներկայութիւնը:

Ըսաւ՝ թէ ինք կարօտցած է երգեցողութիւնը եւ ժողովուրդի հետ ուղղակի կապը: Երգը համարելով իր էութեան մասնիկը, ֆիլմաշարերու նկարահանումէն ետք պիտի վերստանձնէ երգերու ընտրութեան աշխատանքը որպէսզի փիթր տօնէն ետք կարողանայ ներկայանալ իր ունկնդիրներուն:

Անդրադառնալով 2011 Յունուար 25-ի յեղափոխութենէն ետք երեւան ելած նոր երգատեսակներուն մասին, ինչպէս՝ Underground-ը եւ ուրիշներ, ան ըսաւ որ կը հաւատայ ազատութեան եւ կ'ողջունէ բոլոր երգատեսակները, յատկապէս երբ անոնք կը պարունակեն գեղեցիկ եւ նպատակասլաց իմաստներ, իսկ ասպարէզը բաց է բոլորին համար:

Միւս կողմէն, արուեստագիտուհին հաստատեց՝ որ ասիկա չի հերքեր երգեցողական թերութիւններու գոյութիւնը այսօր, զորս կարելի է հարթել ոչ թէ դուռները փակելով որեւէ փորձի առջեւ, այլ վերջնական դատողութիւնը յանձնելով ունկնդիրին: Որքան որ արուեստի գործ մը յարգէ հասարակութեան եւ ընկալողին մտայնութիւնը, այնքան աւելի կ'արժանանայ յաջողութեան:

Վերջապէս Անուշքա կը հաստատէ՝ թէ վերջին շրջանին տեղի ունեցաւ թատրոնի, ինչպէս նաեւ հեռատեսիլի եւ սինեմայի ֆիլմերու վերածնունդ մը, որ դրական խթան մըն է բոլոր արուեստներու զարգացումին համար: Ըստ իրեն, ներկայացուած գործերուն մեծամասնութիւնը կը կրէ ազնիւ միտքեր: Ասոր ապացոյցն են Օսքարի համար մրցող եգիպտական ֆիլմերը: Վերջին տարիները Եգիպտոս երկու ֆիլմերով մասնակցեցաւ Օսքարի մրցավազքին, առաջինը՝ Ժիհան Նէկմի բեմադրած *Ալ-մայտան* [Հրապարակը] վաւերագրական ֆիլմը, երկրորդը՝ Մոհամմէտ Խանի բեմադրած *Ֆաթաթ ալ-մասնաա* [Գործարանի աղջիկը] ֆիլմը:

Արաբերէնէ թարգմանեց Հ. Ա.

(*Ալ-արապ*, օրաթերթ, Լոնտոն, 5 Յուլիս 2016, թիւ 10327, էջ 16)

## ԹԵՂՈՒՏ ՓԲԸ-ՈՒՄ ԱՇԽԱՏԱՏԵՂԵՐԻ ԿՐՃԱՏՈՒՄԸ ՇՆՈՂ ԳԻՒՂԻ ՀԱՄԱՐ...

2

իրականացման համար հանրային գերակայ շահի ձեւակերպմամբ, մասամբ էլ բնակիչների հետ պայմանաւորուածութեամբ): Իւրաքանչիւր ընտանիք, ով զրկուեց իր հողից, միջինը երեք աշխատող ունի: Եթէ բազմապատկենք ընտանիքների թուով, ապա կը ստացուի մօտ 1300 աշխատատեղ, ու հիմա նրանք կրճատւում են», – ասաց համայնքապետը:

**Շնող գետի աղտոտման խնդիր՝**

«Միւս խնդիրը Շնող գետի խայտառակ վիճակն է: Պոչամբարի անմիջապէս տակը՝ պատուարից ներքեւ, արհեստական ջրամբար է դրած, ջուրը փակ ցիկլով մատակարարելու համար: Բայց առանձին օրերին խայտառակ վիճակ է, յատկապէս գիշերներն են գետ բաց թողնում: Ջրի մէջ քարերից երեւում է այդ մնացորդների (պոչերի) հետքերը: Մենք թաղամաս ունենք, որ երբ ջուրը բաց են թողնում, մարդիկ չեն կարողանում տուն գնալ: Մարդիկ ծառը ջրում են, չորանում է» – ասաց Յովհաննէս Սահակեանը:

**Լալվարի անտառի հատուած տեղամարի խնդիր՝**

«Կառավարութեան որոշմամբ Թեղուտ ՓԲԸ-ն պարտաւոր է ամէն հատած 1 հեկտար անտառի դիմաց, տնկել 2 հեկտար՝ նախապատուութիւնը տալով Շնող եւ Թեղուտ համայնքներին: Եթէ մենք չունենք տարածք, կարող են տանել հանրապետութեան այլ համայնքներում տնկել: Բայց վնաս կրողը մենք ենք: Ընկերութիւնը հողատարածք էր ուզում անտառապատման համար, որոնք հիմնականում մասնաւոր տարածքներ են: Մենք ունենք տարածքներ ալպիական գօտում, որը կարելի էր անտառապատման համար տրամադրել, բայց այդ դէպքում էլ անասնապահութեամբ զբաղուողներին ենք վնասում, որովհետեւ անասունների արօտավայրի մակերեսը կրճատւում էր: Ես հարց բարձրացրի, որ Շնող եւ Թեղուտ համայնքներում անտառային ծառատեսակների փոխարէն մասնաւոր սեկտորի հողերի վրայ պտղատու ծառատեսակներ տնկեն: Արդէն 23 հեկտար տնկել ենք:

Անտառահատումները իրականացնում է Ռամիկ սահմանափակ պատասխանատուութեամբ ընկերութիւնը (ՍՊԸ): Հատուած փայտանիւթը յանձնում են անտառտնտեսութեանը, իրենք էլ այդ փայտը վաճառում են: Այդ տարածքը ցանկապատի մէջ է, աչհելի քանակութեամբ անտառ կայ, որ դեռ չի հատուել ու չգիտեմ կը հատուի, թէ՝ ոչ: Կայ բաւականին մեծ թափուկ, որը թոյլ չեն տալիս, որ գիւղացին գնայ, իր ուժերով հանի: Այդ փայտանիւթը բուլդոզերով լցնում են հողի տակ եւ գիւղացին իրաւունք չունի՝ այդ փայտը այդտեղից հանի: Դա աբսուրդ է: Վերջին հաշուով՝ ափսոս չի՞ այդ փայտանիւթը, որ լցւում է հողի տակ», – ասաց համայնքապետը:

**Բաց հանքի ազդեցութիւնը օդի վրայ՝**

Ըստ Շնողի համայնքապետի, համայնքը Թեղուտ ՓԲԸ-ից չի ստանում տուեալներ օդի աղտոտուածութեան վերաբերեալ. «Ես օդի աղտոտուածութեան վերաբերեալ չունեմ պաշտօնական տեղեկատուութիւն, բայց այդ տարածքի՝ հանքավայրին մօտ թաղամասերում, կանայք դժգոհում են, որ լուացք են փռում դրսում ու դրա վրայ փոշի է նստում: Բայց ինչ չափով է թոյլատրելի, ես չգիտեմ: Ես տուեալներ չունեմ», – ասաց Յովհաննէս Սահակեանը:

## ՀԱՅՀՈՅԻՐ, ՈՐ ԸՆՏՐՈՒԵՍ

5

Ազգային Ժողովում աւելի շատ տեղեր կ'ունենան: Որովհետեւ, ինչպէս միշտ, Ազգային Ժողովում ընդդիմութիւնն էլ պարտադիր պիտի որոշակի տեղեր ունենայ: Քիչ, բայց՝ պարտադիր: Դա նշանակում է, որ այդ պարտադիր տեղերի համար պարտադիր ու դաժան պայքար կը ծաւալուի ընդդիմադիր կուսակցութիւնների ու դաշինքների միջեւ: Նախընտրական շրջանում նրանք իրար հետ մրցելու են, թէ ով աւելի ուժեղ կը քննադատի ու կը հայհոյի գործող իշխանութիւններին: Ով աւելի ուժգին քննադատի ու հայհոյի, նա էլ կ'արժանանայ Ազգային Ժողովում ընդդիմութեանը յատկացուող տեղերին: Իսկ ով աւելի մեղմ քննադատի, կ'արժանանայ «կեղծ ընդդիմութիւն» պիտակին: Ընդ որում՝ այդ պիտակին կ'արժանանայ հէնց ընդդիմութեան կողմից, չնայած ընդդիմադիր բոլոր կուսակցութիւններն ու դաշինքներն էլ յայտարարելու են, որ իրենց պայքարը միայն ու միայն գործող համակարգի դէմ է: Ուշադրութիւն դարձրէք. ընդդիմադիրները բոլորն էլ գործող իշխանութեանն ու գործող համակարգն են քննադատելու, բայց իրականում իրար դէմ են պայքարելու Ազգային Ժողովում յատկացուող ընդդիմադիր տեղերի համար: Մի քանի խօսք «համակարգային» քննադատութեան մասին: Գործող բոլոր ընդդիմադիրներն էլ քննադատում են գործող համակարգը, եւ բոլորն էլ ասում են, որ պէտք է համակարգը փոխել: Բայց նրանցից որեւէ մէկը կէտ առ կէտ չի մատնանշում ներկայումս գործող համակարգի թերութիւնները, եւ նրանցից որեւէ մէկը չի յայտարարում, թէ իրենց իշխանութեան գալու դէպքում ինչ եւ ինչպիսի համակարգ է գոյութիւն ունենալու: Մենք մի անգամ արդէն համակարգային փոփոխութիւն տեսել ենք: Քառորդ դար առաջ Հայաստանում սոցիալիզմն աւարտուեց, եւ սկսուեց, այսպէս ասած, կապիտալիզմը: Համակարգային այդ էական փոփոխութիւնից շատերը շատ գոհ են, շատերն էլ՝ շատ դժգոհ: Համակարգային տուեալ փոփոխութիւնից յետոյ ամենից դժգոհն Արշակ Սադոյեանն էր, ով գործնականօրէն ու շատ ակտիւ մասնակցել էր սոցիալիզմի փլուզմանը: Բայց փլուզումից յետոյ մի գլուխ լափած մազութից էր խօսում, բողոքում, դժգոհում ու քննադատում էր գործող իշխանութեանն ու իր իսկ հարազատ ՀՀՇ-ին: Դժգոհում, քննադատում ու սիրւում էր ժողովրդի կողմից: Սիրւում ու պատգամաւոր էր ընտրւում: Այսօր մազութի թեման չկայ, թեմաները փոխուել են, բայց ընտրողների հանդէպ վերաբերմունքը մնացել է նոյնը: Եւ առաջիկայ ընտրութիւններում էլ ընտրողն իր ձայնը կը տայ այն ընդդիմադիրներին, ովքեր աւելի ուժգին կը քննադատեն ու կը հայհոյեն գործող իշխանութիւններին: Եւ վերստին խելացի եղոյթները քիչ կը լինեն եւ աղմուկը՝ շատ:

*Առաւօտ*, 9 Յուլիս 2016

## ԿԱՐԴԱԼ ԹԷ ՉԿԱՐԴԱԼ

5

Ես նաեւ զարմացած եմ, որ շրջանցել են Էդգար Ալան Պոյին: Անշուշտ ռիթմիկ արտայայտման հրաշալի վարպետը արժանի էր ինչ-որ տեղի:

Եթե նրան տեղ յատկացնելու համար, անհրաժեշտ լինի դուրս հանել մէկ ուրիշին, ես դուրս կը թողնէի Սաութիին(1), եւ կարծում եմ, որ Բոդլէրը կարող էր չահեկանօրէն փոխարինել Քեբլին(2):

Անկասկած, թէ՛ *Քեհամայի անէծքում*(3) եւ թէ՛ *Քրիստոնէական տօներում*(4) որոշ տեսակի բանաստեղծական որակներ կան, բայց գրականութեան ճաշակի բացարձակ ունիվերսալութիւնը վտանգաւոր է: Ի վերջոյ, միայն ակցիոներներն են հիանում արուեստի բոլոր դպրոցներով:

1.- Ռոբերտ Սաութի (1774-1843), անգլիացի բանաստեղծ:

2.- Ջոն Քեբլ (1792-1866), անգլիացի եկեղեցական, բանաստեղծ:

3.- *The Curse of Kehama* - Ռոբերտ Սաութիի էպիկական պոէմի անուանումն է:

4.- *The Christian Year* - Ջոն Քեբլի բանաստեղծական շարքի անուանումն է:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع


TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1771 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՅՈՒԼԻՍ 2016 ՀԱՏԸ ՁԵՐՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٧١ الخميس ٢٨ يوليه ٢٠١٦


## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝
## ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

*Ճահակիր*ի անցեալ թիւով փորձեցինք ակնարկ մը նետել Ժիրայր Սէֆիլեանի եւ Հիմնադիր Խորհրդարանի պատմական անցեալին վրայ, նշելով իշխանական մտաւորականներուն կարծիքը եւ անոնց նկատմամբ արտայայտուած ֆէյսպուքեան ժողովրդային հակակարծիքները, միաժամանակ համառօտագրելով առաջին չորս օրերուն դէպքերը:

Յիշեցնենք, որ Յուլիս 17-ին, Հիմնադիր Խորհրդարանին յարող Սասնայ Ծռեր զինեալ խումբը կը գրաւէ Էրեբունիի պարեկապահակային ծառայութեան (ՊՊԾ) գունդի շէնքը եւ պատանդ կը վերցնէ այնտեղ գտնուող ոստիկանները: Սասնայ Ծռեր կը պահանջէ Ժիրայր Սէֆիլեանի եւ այլ քաղբանտարկեալներու ազատագրումը, Սերժ Սարգսեանի հրաժարականը եւ կառավարութեան փոխանցումը ժողովուրդի վստահութեան կառավարութեան:

Ահաւասիկ դէպքերուն շարունակութիւնը՝ մեկնաբանութիւններով հանդերձ.

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 21 ՅՈՒԼԻՍ** (հինգերորդ օր)

– Յուլիս 20-21-ի գիշերը, ՊՊԾ-ի յարակից Խորենացի փողոցին մէջ բախում տեղի կ'ունենայ ոստիկաններուն ու ցուցարարներուն միջեւ: Կը վիրաւորուին շուրջ 40 ոստիկաններ եւ քաղաքացիներ, որոնք կը տեղափոխուին հիւանդանոց: Անոնցմէ երկուքը կը գտնուին վերակենդանացումի բաժին: Բերման կ'ենթարկուին 136 քաղաքացիներ: Տեղի կ'ունենան ոստիկանական բռնութիւններ:

– Գրող եւ հրապարակագիր Մարինէ Պետրոսեան կը փորձէ հասկնալ՝ թէ ինչու մինչեւ հիմա պաշտօնատարները չեն խօսած. «Հասկանալի ա ինչու չեն խօսում, եթէ խօսեն՝ աւելի են շիկացնելու մթնոլորտը: Սուտ ասեն՝ չեն հաւատալու, ճիշտն ասեն՝ էլի չեն հաւատալու: Էն որ ասում էին՝ ոչ լեգիտիմ, ոչ օրինակարգ, սրան էին ասում: Ոչ օրինակարգ նախագահը եթէ խօսի օրէնքի եւ կարգի պաշտպանութեան դիրքերից, կը ստացուի աբսուրդ, դրա համար էլ չի խօսում: Ամէն կեղծուած ընտրութիւնից յետոյ երբ խօսք էր գնում լեգիտիմութեան պակասից, հանրապետականները երեւի մտքներում անկեղծ խնդում էին՝ տօ ինչ լեգիտիմութիւն, ինչ ֆլան ֆեստան, ինչի էք բարդացնում, ում զօրն աւելի շատ ա, նա էլ յաղթում ա, վերջ: Հիմա տեսաք որ ամէն ինչ ձեր պատկերացրածի պէս չի եւ զօրը գլխաւոր սկզբունք դարձնելու դէպքում՝ զօռ բանեցնողի վրայ զօռ բանեցնող կը գայ, երկիրն էլ կը կանգնի ճգնաժամի առաջ» (Մարինէ Պետրոսեան, ***Փորձութեան ժամ***, 21 Յուլիս 2016, http:// marinepetrossian.com/hy/sasna-tsrer-action):

– Պետութիւնը առաջին անգամ ըլլալով պաշտօնապէս կը խօսի: Յուլիս 21-ի կառավարական նիստին, վարչապետ Յովիկ Աբրահամեան կ'ըսէ. «Այն, ինչ տեղի ունեցաւ գնդում, անթոյլատրելի է եւ դատապարտելի, որովհետեւ բռնութեամբ անհնարին է անցնել իրական փոփոխութիւններին: Այն վտանգաւոր եւ անհեռանկար գործընթաց է: Իրավիճակը խիստ մտահոգիչ է, իշխանութիւնն ամէն ինչ անում եւ անելու է հասնելու դրա խաղաղ հանգուցալուծմանը:»

– Տնտեսութեան նախարար Արծուիկ Մինասեան, կառավարական նիստէն ետք լրագրողներու հետ ունեցած զրոյցի ժամանակ կը շարունակէ Յովիկ Աբրահամեանի կողմէ «պաշտօնապէս» բացուած կառավարական մտակաղապարին հոլովումը. «Իրավիճակի լիցքաթափումը պահանջում է, որ հանդուրժողականութիւնը տիրի, ողջախոհութիւնը յաղթի եւ զինուած յարձակումը կազմակերպած անձինք ընկալեն, որ ՀՀ-ում պէտք է գործի օրէնքը, սահմանադրական նորմը եւ օր առաջ որոշում կայացնեն յանձնուելու մասին, ինչը թոյլ կը տայ յետագայ գործընթացներն իրականացնել օրէնքի շրջանակներում:»

– Քանի որ պետութիւնը հաստատեց խօսքային յարձակումը, նախորդ օրուայ համեմատութեամբ շատ աւելի մեծ թափ ստացան իշխանամէտ մտաւորականներուն ելոյթները, հաւանաբար ոչ առանց իշխանութիւններու թոյլտուութեան եւ նախնական համաձայնութեան: *Tert.am*-ի իր զրոյցին ընթացքին պատմաբան Էդիկ Մինասեան կը շեշտէ. «Դա անշուշտ ահաբեկչական ակտ է, եւ մասնակիցները պէտք է անպայման պատժուեն:» Բանաստեղծ Ռազմիկ Դաւոյեան *ArmeniaTV News*-ի լրագրողներու հարցումներուն պատասխանելով կ'ըսէ. «Համախմբում է պէտք, արիւնահեղութիւնը եւ քաղաքացիական պատերազմը կործանարար են»: Քաղաքացիական պատերա՞զմ...: Յիշենք Դաւոյեանի Յուլիս 20-ի յայտարարութիւնը Սասնայ Ծռերու մասին. «Նրանք մեզ համար թշնամու կուից աւելի մեծ սահման են ստեղծել, քան մեր եւ Թուրքիայի սահմանն է, աւելի երկար, աւելի սպառնալից: Չի կարելի, տեղի ունեցածը դաւաճանութիւն է, ահաբեկչութիւն կ'ասէք, թէ այլ ինչ, դա դաւաճանութիւն է» («Սասնայ Ծռեր խմբի գործունէութիւնը դաւաճանութիւն է. Ռազմիկ Դաւոյեան», ***ԹԵՐԹ****.am*, 20 Յուլիս 2016, http://www.tert.am/am/news/2016/07/20/razmikdavoyan/2084335): Սասնայ Ծռերը կը դառնայ աւելի թշնամի քան թշնամին՝ կը դառնայ դաւաճան:

Երաժշտահան Ռոբերտ Ամիրխանեան հեռատեսիլի զրոյցի ընթացքին կ'ըսէ՝ թէ «ես իրենց համար կը նստէի մի սիրուն երգ կը գրէի, իրենց հերոսապատումը բարձրացնող», եթէ իրենք զէնքը վար դնէին ու յանձնուէին:

Հմուտ լեզուաբան Հրաչ Մարտիրոսեան իր ֆէյսպուքեան էջին մէջ կ'արձագանքէ այս բոլորին. «Նոյն միակողմանի լոլոն՝ տղեքն ահաբեկիչներ են ու պիտի պատժուեն: Ոչ մի խօսք պատճառների, ոստիկանների, ժողովրդի վերաբերմունքի ու մնացածի մասին:»

– Կը մտնէ եկեղեցին: Արցախի Պարգեւ Սրբազան կը յայտարարէ. «Անկախ քաղաքական ճաշակից, կարգավիճակից, տարիքից՝ հայը հայի համար պէտք է սրբութիւն լինի: Հայը հայի հանդէպ պէտք է լինի սիրով, մեծագոյն յարգանքով:» Հայը հայի, բայց ոչ՝ մարդը մարդու:

– Հրանոյշ Խառատեան Ֆէյսպուքի 21 Յուլիս թուակիր գրառումին մէջ կը նշէ. «Իշխանութիւններն ապստամբների դէմ առայժմ կիրառել են աղեղնաձիգ նետերը (իշխանամերձ գրողներ), մոսին հրացանները (հեռուստաալիքներ), կալաշնիկովները (մտաւորականների խմբային նամակը, գրողներ Ռ. Դաւոյեանին, Ա. Պետրոսեանին, Է. Մելիտոնեանին, երգահան Ռ. Ամիրխանեանին, Պարգեւ սրբազանին, նախարար Ա. Մինասեանին), հիմա, թերեւս, պատրաստում են ծանր հրետանին եւ տանկերը:»

– Ցուցարարները հաւաքուած են Խորենացի փողոց: Համախմբում կուսակցութեան նախագահ, Մարտ 1-ի դէպքերու գլխաւոր պատասխանատուներէն՝ Վարդան Օսկանեան, կ'այցելէ Խորենացի փողոց: Կին մը կը թարմացնէ ցուցարարներուն յիշողութիւնը. «Էս Մարտի 1 սարքողները ստեղ ի՞նչ գործ ունեն: Քոչարեան համար երկրորդ յանցագործ: Սերժն իրենց շարունակողն է» (Հռիփսիմէ Ջէբէջեան, «Ինչպէս ցուցարարները ամօթանք տուեցին Վարդան Օսկանեանին», ***Առաւօտ***, 21 Յուլիս 2016, http://www.aravot.am/2016/07/21/718336/):

– Աթէնքահայութիւնը կը շարժի: Աթէնքահայեր բողոքի հաւաք կը կազմակերպեն Յունաստանի Հայաստանի դեսպանատան առջեւ, իբր զօրակցութիւն Սասնայ Ծռեր խումբին: Ներկաները մէկ վայրկեան լռութեամբ կը յարգեն զոհուած ոստիկանութեան գնդապետ Արթուր Վանոյեանի յիշատակը, որմէ ետք կը կազմեն հաւաքի բանաձեւը զոր կը յանձնեն Հայաստանի դեսպանին՝ երկրի իշխանութիւններուն փոխանցելու համար: Ահաւասիկ բանաձեւը.

«Այսօր, ի զօրակցութիւն Սասնայ Ծռեր խմբի հերոս ազատամարտիկների, ՀՀ դեսպանութեան շէնքի առջեւ «Ես էլ եմ ահաբեկիչ» կարգախօսով ինքնաբուխ բողոքի հաւաք կազմակերպուեց, որի արդիւնքում ընդունուեց հետեւեալ բանաձեւը՝



*Յոյցերում առաջին օրերը՝ բաց ձեռքերով*

1.- Դադարեցնել Սասնայ Ծռեր խմբի հերոս ազատամարտիկներին եւ նրանց զինակիցներին որպէս «ահաբեկիչներ» ներկայացնելը,

2.- Ազատել վերջին օրերին, Երեւանում եւ Հայաստանի այլ քաղաքներում բերման ենթարկուած, ձերբակալուած եւ առեւանգուած անձերին՝ դադարեցնելով քաղաքական հալածանքը նրանց նկատմամբ,

3.- Վերացնել ցուցարարների նկատմամբ ուժի գործածումն ու ստորացուցիչ վերաբերմունքը,

4.- Ազատ արձակել անհիմն պատճառներով՝ տօնածառ տնկելուց մինչեւ խաղալիք ատրճանակ ունենալու պատրուակով ձերբակալուած բոլոր քաղաքական բանտարկեալներին,

5.- Բացառել Սասնայ Ծռեր խմբի նկատմամբ ուժի կիրառումը եւ հարցերը լուծել բացառապէս բանակցութիւնների ճանապարհով՝ անսալով հասարակական պահանջները,

6.- Երկրում հաստատել օրինականութիւն, պատժել իշխանութիւնների բացայայտ հովանաւորութիւնը վայելող քրէաօլիգարխ տարրերին,

7.- Պահանջում ենք ՀՀ իշխանութիւններից, Ադրբեջանի հետ չկնքել որեւէ պաշտօնական համաձայնութիւն, որով կը զիջուի ազատագրուած ցանկացած տարածք:

21 Յուլիս 2016, Աթէնք

Հայաստան լրատու ցանց»

(http://hetq.am/arm/news/69338/boxoqi-ev-zorakcutyan-havaq-atenqum.html:)

– Կարեւոր յայտարարութեամբ հանդէս կու գան գրողներու եւ արուեստագէտներու ուրիշ խումբ մը՝ որոնք կը ներկայացնեն Յուլիս 20-ի յայտարարութիւնը ստորագրած իշխանամէտ մտաւորականներէն բոլորովին տարբեր չերտ մը: Ահաւասիկ անոնց յայտարարութիւնը.

«Սասնայ Ծռեր խումբը քաղաքական ապստամբութիւն է բարձրացրել, որի պահանջը հնչում է արդէն տարիներ: Իշխանութիւնների կողմից կատարուող անօրինականութիւնները, թալանը, յանցաւոր ու ապաշնորհ կառավարման հետեւանքով ժողովրդի աղքատացումը, արդարադատութեան բացակայութիւնն ու անարդարութեան մթնոլորտը՝ գումարած ընդդիմադիր ներկայացող կուսակցութիւնների ու մտաւորականների կողմից մշտապէս Հայաստանը ապոկալիպտիկ գոյներով նկարագրելը՝ Հայաստանը կործանւում է եւ այլն (կարծես խօսքերը միայն իշխանութեան հետ առեւտրի համար են), անխուսափելիօրէն մարդկանց մղելու էին մի օր զէնք վերցնել: Իսկ ապրիլեան պատերազմից յետոյ շատ աւելի տագնապալի դարձաւ մթնոլորտը, որ այս իշխանութեամբ իրօք երկիրը կանգնում է փլուզման եզրին:

«Ուրեմն, եթէ յանցագործութիւն է եղել, ապա պատասխանատուներին քաղաքական համակարգում փնտռէք՝ ե՛ւ իշխանութեան, ե՛ւ ընդդիմադիր ներկայացող կուսակցութիւնների, նաեւ հանրային դերակատարում ունեցող կազմակերպութիւնների ու անհատների մէջ: Այն մտաւորականներն ու քաղաքական գործիչները, ովքեր զրպարտում եւ մեղադրում են ապստամբներին, հիմք են ստեղծում արնահեղութեան համար՝ ազատելով իշխանութեան ձեռքերը:

«Իշխանութեանը զսպելու համար անհրաժեշտ է ցոյց տալ, որ իրենց որեւէ ուժային գործողութիւն

☞ 2



# ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

դատապարտուելու է:

«Այժմ ես իմ համերաշխութիւնն եմ յայտնում ապստամբներին եւ պահանջում իշխանութիւններից, որ կոնֆլիկտը լուծուի միայն ու բացառապէս խաղաղ բանակցութիւններով, որքան ջանք ու ժամանակ էլ դրա համար անհրաժեշտ լինի» («Գրողներն ու արուեստագէտները պահանջում են կոնֆլիկտը լուծել բացառապէս խաղաղ բանակցութիւններով», *Հետք*, 21 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/69298/groxnern-u-arvestagetnery-pahanjum-en-konflikty-lutsel-bacarapes-khaxax-banakcutyunnerov.html):

Ստորագրած են հետեւեալ անձերը. Սարգիս Յովսէփեան (գրող, սցենարիստ), Վիոլէտ Գրիգորեան (գրող), Շագա Եուզբաշեան (կինոգէտ), Վահան Իշխանեան (գրող, լրագրող), Կարէն Անտաշեան (գրող), Աննա Դաւթեան (գրող, թարգմանիչ), Գեմաֆին Գասպարեան (գրող), Յասմիկ Սիմոնեան (գրող), Վահրամ Դանիէլեան (գրականագէտ), Աշոտ Գաբրիէլեան (գրող), Արփի Ոսկանեան (գրող), Սագոյ Արեան (գրող, լրագրող), Թոնդրակ (գրող, պատմաբան), Կարինէ Աշուղեան (բանաստեղծ), Վահէ Բուղումեան (արձակագիր, արուեստագէտ), Արամ Մամիկոնեան (գրող), Լուսինէ Եղեան (գրող), Սօնա Մնացականեան (գրականագէտ), Մերի Երանոսեան (սոցիոլոգ), Բիւրակն Իշխանեան (գիտնական), Աննա Դաւթեան-Գէորգեան (արեւելագէտ, թարգմանիչ), Լուսինէ Խառատեան (ազգագրագէտ), Կարէն Ղարսլեան (գրող), Վահէ Օհանեան (պրոդիւսէր), Անուշ Քոչարեան (գրող, լրագրող), Յովհաննէս Թեքգէօզեան (գրող, դրամատուրգ), Մկրտիչ Մաթեւոսեան (նկարիչ, հրատարակիչ), Ծովինար Չիլինգարեան (բանաստեղծ, թարգմանիչ), Գայեանէ Այվազեան (պատմաբան), Անահիտ Ղազարեան (արուեստաբան), Շաքէ Ամիրեան (լրագրող), Քրիստինէ Արմէնակեան (լրագրող), Լիլիթ Ալեքս (սոցիոլոգ), Գէորգ Թումանեան (բանաստեղծ), Անի Ասատրեան (արուեստագէտ), Հայկ Ֆէլէքեան (թարգմանիչ), Թագուհի Ղազարեան (գրականագէտ), Սիրանոյշ Օհանեան (գրող), Մանէ Գրիգորեան (բանաստեղծ, մշակութաբան):

Այս ստորագրեալները դիւրութեան համար պայմանականօրէն պիտի անուանենք Բ. մտաւորականներ, պարզապէս զանազանելու համար առաջին յայտարարութեան հեղինակներէն՝ Ա. մտաւորականներ:

Բ. մտաւորականներուն այս յայտարարութիւնը կարելի է հակա-յայտարարութիւն մը նկատել Ա.-երուն (վերջիններուն յայտարարութիւնը տե՛ս *Զահակիրի* անցեալ թիւը):

Բ. մտաւորականները՝ առանց պանծացնելու եւ հերոսացնելու ապստամբները, ոչ ալ գովերգելով ապստամբութեան մը առաւելութիւնները ու քաջալերելով զայն, ամենայն յստակութեամբ կը մատնանշեն ապստամբութեան պատճառ հանդիսացած հանգամանքները: Մինչդեռ Ա. մտաւորականներուն համար ուղղահայեաց դէպքն է կեդրոնականը՝ առանց անոր նախորդած պատմական շարժումին, այսինքն՝ տարիներու ընթացքին կուտակուած պատճառներուն: Իսկ այդ պատճառները կը գտնուին այն իշխանութիւններուն գործելակերպին մէջ՝ որոնց միշտ պաշտպանած են Ա.-երը:

Կարեւոր է, որ Բ.-երը յանցագործութիւնները կը վերագրեն ո՛չ միայն իշխանութիւններուն այլեւ ընդդիմադիր կուսակցութիւններուն: Ամբողջ աշխարհի քաղաքական համակարգին մէջ ընդդիմադիր կուսակցութիւնները իշխանութեան անբաժան մասը կը կազմեն: Ո՛չ մէկ տարբերութիւն Միացեալ Նահանգներու Հանրապետական եւ Ժողովրդավարական կուսակցութիւններու ներքին ու արտաքին քաղաքականութիւններուն միջեւ՝ բացի սոփեստական բարձրաձայնութեան ատիճանին: Ո՛չ մէկ տարբերութիւն Ֆրանսայի Ընկերվարական (ընկերվարական՝ բայց յաճախ աւելի աջ քան աջերը) եւ Հանրապետական կուսակցութիւններուն իրական գործունէութիւններուն միջեւ: Բոլորն ալ քաղաքական փառահեղ չքահանդէսի մասնակցողներ են: Հայաստանի մէջ ընդդիմութիւնը քիչ մը տարբեր է ԱՄՆ-էն եւ Ֆրանսայէն՝ այն իմաստով որ ան կ՚ընդունի յաւերժ (ցկեանս...) մնալ ընդդիմութիւն կամ կիսաընդդիմութիւն, կամ ձեւական ընդդիմութիւն:

«Աւանդական» սփիւռքի կազմակերպութիւններու տեսանկիւնէն դիտելով, Ա. մտաւորականներն են որոնք անընդհատ կը հրաւիրուին այս կազմակերպութիւններուն կողմէ՝ ժամանակաւոր ելոյթներով կամ երկարաժամկէտ պայմանագիրներով, եւ անոնց մասին է որ մշտապէս կը գրեն սփիւռքահայ կազմակերպութիւններուն լրագիրները: Բ.-երը եւս երբեմն կը հրաւիրուին սփիւռք (անոնց մէջ կայ առ նուազն մէկ սփիւռքահայ մը՝ Սագոյ Արեան), բայց անոնց ուղեւորութիւնները մեծ մասամբ կը կատարուին ոչ «աւանդական» կառոյցներուն ընդմէջէն իսկ սփիւռքահայ հիմնահոսանքային մամուլը հազուադէպ (բացառութիւնները յարգելով) կ՚անդրադառնայ անոնց մասին: Արդէն սփիւռքահայ աւանդականներուն պաշտօնական յայտարարութիւնները բաւական մօտ էին Ա.-երուն:

Հակիրճ ակնարկ մը Բ. մտաւորականներու ընդհանուր գաղափարներուն վրայ կրնայ որոշ լուսաբանումներ կատարել այս հարցին շուրջ:

Օրինակ, 2010-ին լոյս կը տեսնէ Արփի Ոսկանեանի *Անտերուդուս* խրայատուկ գիրքը: Հեղինակը կողքին վրայ արդէն տեղադրած է երկար գրութիւն մը, որ կը սկսի այսպէս.

«Նախաբաններն ու վերջաբանները լինում են երկու տեսակի՝ նրանք, որ գրում են գրականագէտները, հրատարակիչները, կազմողները, թարգմանիչները, այլ «հեղինակաւոր» մարդիկ, ովքեր հանդէս են գալիս հեղինակի կամ ստեղծագործութեան ընտրեալ մերձաւորի բարձունքից, եւ նրանք, որ գրում են իրենք՝ հեղինակները: Երկրորդը չափազանց հետաքրքիր է հոգեվերլուծութեան տեսանկիւնից, քանի որ հեղինակն ինքն է հանդէս գալիս իր ընտրեալ մերձաւորի դիրքերից, արդէն ոչ թէ իբրեւ հեղինակ, այլ իբրեւ հեղինակութիւն: Նա փորձում է ընթերցողին յանձնել հէնց այն դռան բանալին, որով կ՚ուզենար, որ մուտք գործէին իր աշխարհ: Լրացնող, պարզաբանող, շտկող, մեկնաբանող այդ տեքստերի գլխաւոր նպատակն է աղաւաղել, կոծկել, թաքցնել ճշմարտութեան առկայծումները, որ թւում են կուրացուցիչ ու վախեցնում, քանի որ ստեղծագործութիւնը միշտ չէ, որ հասկանալի ու ենթակայ է լինում հեղինակին: Այդ պատճառով նախա(վերջա)բան գրելու ցանկութիւնը վկայում է ոչ այնքան ստեղծագործութեան միջոցով ասելիքն արտայայտելու անկարողութեան մասին, որքան այդպիսի առկայծումների առկայութեան:»

Արփի Ոսկանեան կ՚ընդունի որոշ արժէքներ՝ ինքնարտայայտում, ինքնահերքում, ինքնալրացում, (արտա)հեղինակաւորութենէն անցում դէպի (ինքնա)հեղինակութիւն, ընտրեալ մերձաւորի արտաքին բարձունքէն անցում դէպի ընտրեալ մերձաւորի ներքին դիրքերը, ուրեմն՝ արժէքի գնահատում իրերու ներսէն՝ ինչպէս որ կան, առանց միջնորդութեան: Ասիկա նաեւ Բ. մտաւորականներուն ուղղութիւնն է, ի տարբերութիւն Ա.-երէն, որոնք իրարու կը գնահատեն միջնորդութիւններու պանծացումով՝ «միջազգային» մրցանակներ, «մեծ» մարդոց կարծիքներ, «հեղինակաւոր» մարդոց քննադատութիւններ:

Ահաւասիկ նոյն կողքէն քաղուած ուրիշ հատուած մը.

«Գիրքս, իհարկէ, չի ունենայ պատշաճ ապրանքային տեսք եւ սպառողական յաջողութիւն: Բայց լաւ բան էլ կայ այս ամէնում՝ սա մի թիթիզ մարտահրաւէր է պատկերին, որ դարձել է տիրապետող եւ սեփական տիրոյթից դուրս մղել գիրը: Սա առաջարկ է, որ գիրը կարող է փոխարինել պատկերին: Նաեւ անհեթեթ մի յոյս է, որ ի վերջոյ գիրն է: Եթէ, իհարկէ, ի սկզբանէ բանն է եղել: Իսկ այն, որ ի սկզբանէ եղած բանը եղել է պոէզիան, գիտենք դասագրքերից: Յայտնի է, որ դասականները սկսել են պոէզիա գրելով, այնուհետեւ առաւել հասունանալով՝ անցել են արձակի: Այսպիսով, պոէզիան ընկալուել եւ շարունակում է ընկալուել որպէս մեկնարկային փուլ գրողական կարիէրայում, որը պսակւում է վիպասանութեամբ: Իրականում սա կարծրատիպ է: Դասականները պոէզիայով են սկսել իրենց քարքարոտ ուղին, որովհետեւ այդ ժամանակ պոէզիան համարուել է առաւել պատուաբեր, քան արձակը: Այսօր սկսնակները վէպով են գրականամուտ նշում, որովհետեւ սկսնակը միշտ չգիտակցուած մղումով, բնազդաբար եւ ճչգրիտ գտնում է հեղինակութեամբ ու պրեստիժով պաշտպանուած ժանրերն ու ձեւերը: Սա ասում եմ, որպէսզի պատկերանալի դառնայ նուաստիս մեծութիւնը. ես պոէզիա սկսեցի գրել այն ժամանակ, երբ պոէզիայի մահուան մասին չչուկները փոխուեցին հրապարակային քննարկումների, եւ պոէտները դարձան արձակագիր: Եւ արեցի դա այն տարիքում, երբ իրեն յարգող գրողը պէտք է անցնի արձակի: Այդպիսով անձնական օրինակով հերքեցի պոէզիայի՝ մեկնարկային փուլ լինելու վարկածը եւ վերջնականապէս խճճեցի առանց այն էլ ոչ միասնական կարծիքն իմ մասին մինչ այդ էլ պոէտները ինձ համարում էին արձակագիր, արձակագիրները՝ պոէտ, եւ նրանց կարծիքը կարող էր միայն օգնել՝ պարզելու, թէ ինչ են համարում իրենք իրենց: Նման տարաձայնութեան տեղիք տալիս էր իմ առաջին՝ *Ծիկ* գիրքը, որ արձակ բանաստեղծութիւնների եւ ժանրի սահմանները յաղթահարած, տեղտեղ փորձարարական գրութիւնների ժողովածու է: Այն կարող էր կասկածի տակ առնել նաեւ գրող լինելս, քանի որ որոշ գործեր դուրս են ոչ միայն որեւէ ժանրի, այլեւ գրականութեան սահմանից եւ մօտ են կերպարուեստին:»

Երկու գաղափար աչքի կը զարնէ: Առաջինը սպառողականութիւնն է: Ա. մտաւորականները իրենց արժէքային գնահատականները կու տան շուկայի մէջ իրենց ունեցած գինով: Անոնք գին ունին, առանց որոշեալ սակին չեն արտադրեր: Բ. մտաւորականները գին չունին՝ անգին են: Անոնք կ՚արտադրեն՝ առանց հաշուարկումներու, որքան որ կրնան, եւ ապա կը մտածեն ստացած-չստացած դրամին մասին: Իրենց շարժումը կ՚ընթանայ արժէքէն դէպի դրամը, մինչդեռ Ա.-իններուն մօտ ան կ՚ընթանայ դրամէն դէպի արժէքը, արժէքը արժեզրկելով ապրանքի նմանողութեամբ:

Երկրորդ գաղափարը սեռի (genre) սահմանն է: Ոսկանեան չի ճանչնար բնագաւառներու սեռական կտրուկ բաժանում-անջատումները, կը մտածէ ու կը ստեղծագործէ սեռերու փոխներթափանցումներու եւ փոխհերքումներու ընդմէջէն: Ան կը մերժէ սեռերու տիրակալութիւնն ու նախախնամութիւնը: Ա.-երուն համար ասիկա պարզապէս անընդունելի է: Ամէն արուեստի գործ պէտք է տեղաւորուի սեռի մը մէջ: Հաւանաբար Ա.-երը երբեք պիտի չձանձրանան նմանատիպ խորագիրով անվերջանալի ուսումնասիրութիւններէն՝ «Այսինչ գործին ոճական ու սեռային (ժանրային) առանձնայատկութիւնները»: Անոնք կ՚ընդունին սեռերու տիրակալութիւնը, ինչպէս որ ընդհանրապէս կը սիրեն տիրակալութիւնները, հեղինակութիւնները, բարձունքները:

Բ. մտաւորականներուն մէջ կը գտնուի լիբանանահայ Սագոյ Արեան: Ան մտաւորական մըն է՝ որ կը պաշտպանէ ճնշուած ազգերու իրաւունքները: Ի տարբերութիւն Եւրոպայի, Ռուսաստանի եւ Միացեալ Նահանգներու հայ գրականութենէն, արաբական աշխարհին մէջ հազուագիւտ կը գտնուի հայ արձակագիր մը կամ բանաստեղծ մը՝ որ իր գրութիւններուն մէջ ընդելուզած ըլլայ տեղական ժամանակակից պատկերներն ու մտահոգութիւնները: Արեան այս քիչ բացառութիւններէն է: Իր *Ողջ լեր Մահմուտ Տարուիշ* քերթուածը գեղեցիկ նմոյշ մըն է հայ-արաբ սահմաններու քայքայումին: Ա. մտաւորականները չեն ախորժիր նման ներթափանցումներէ, քանի որ «օտար»-ը (մանաւանդ երբ ան արաբական է) կրնայ խեղաթիւրել հայկականը: Այնքան դիւրին ազդուող ինքնութիւն մըն է հայկականը, այնքան փխրուն է հայկական նկարագիրը:

Բ. ստորագրեալներուն մէջ կը գտնուին Վիոլէտ Գրիգորեան եւ Վահան Իշխանեան՝ Ինքնագիր գրական հանդէսին, պլոկին եւ շարժումին նախաձեռնողները: Ինքնագիր խզում մըն էր աւանդականութիւններուն եւ գիտելիքային իշխանութիւններուն:

Վիոլէտ Գրիգորեանի *Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում* բանաստեղծական ժողովածուն (1991)՝ Արմէն Շէկոյեանի *Թուղթ ու գիր* բանաստեղծական ժողովածուին հետ (1991), սկիզբն էր բովանդակային առումով յետխորհրդային փուլի մը, ուր ինքնը (self) կը բաժնուէր իր խորհրդային միահամուռ ու կոթողային անհատապաշտութենէն, կազմալուծուելով տիալեքթիքականօրէն յարաբերակցուած մանրապատումներու: Ա.-երը մերժեցին այդ կազմալուծումը եւ խորհրդային գերիրական ինքնը փոխարինեցին դրամատիրական թերիրական ինքնով:

Նարինէ Դիլբարեան Վիոլէտ Գրիգորեանի մասին ըսած է՝ որ «[ն]ա խիստ տաբուաւորուած [taboo] բառերը գրականութիւն բերելու եւ գրական լեզուի մի մասնիկ դարձնելու հետաքրքիր փորձեր է անում» (««Մեր լեզուն, մեր սեքսը»՝ մաս երկրորդ», *Մեդիամաքս*, 17 Ապրիլ 2012, http://www.mediamax.am/am/news/SexLanguage/4666/): Իսկ այդ թաբուները՝ որոնք բաւական շատ են հայկական մտածողութեան մէջ (սփիւռքի մէջ այդ թաբուներուն բացայայտումը եւ մատնանշումը անձնասպանութեան համազօր գործողութիւն մըն է), յառաջացած են Ա. մտաւորականներու գլխաւորութեամբ, որոնց մտահոգութիւնը եղած է իրենց անձի արտաքին մաքրութիւնը, անաղարտութիւնը եւ հայրենասիրական նմանակումները:

Վիոլէտ Գրիգորեանի գաղափարական գործընկերը՝ Վահան Իշխանեան, եւս թաբուները յաղթահարող մըն է իր պատմուածքներուն եւ գրութիւններուն մէջ: Ան կը սիրէ անդրադառնալ Հայաստանի կրօնքի ազատութեան (կամ այդ ազատութեան խոչընդոտներուն), փոքրամասնութիւններուն, նէօլիպերալ համակարգէն տուժածներուն, անտեսուած մարդոց ու միտքերու մասին, միշտ համարձակութիւն ունենալով մատնանշել խնդիրին պատճառները, առանց գաղափարախօսական ընդհանրութիւններու, այն գաղափարախօսութիւնները՝ որոնք կը հանդիսանան Ա. մտաւորականներու

3

2 ⮊

## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

կեցութեան հենքը:

Վերջապէս՝ Կարէն Անտաշեան: 2009-ին լոյս տեսած *Անտաշատ* բանաստեղծական հատորին մէջ ստեղծած է սեփական աշխարհը՝ Անտաշատ քաղաքը, քաղաքի մը յատուկ նշանակութեամբ, տեսակով, խորհրդանիշով եւ այլն: Հատորը կ'աւարտի այսպէս.

«Անտաշատում երկար չես ձգի.
արտասուիր աշխարհի աղմուկը:
Մերկութիւնը պարտադիր պայման է
սէրը (Նրան) վայելելու –
արտասուելուց սկսիր... մերկանալ,
որ պոէզիան մենակ չմրսի
մինչ ժպտալու ժամանակը գայ:»

Չկայ բեւեռեալ ու կեդրոնաձիգ գաղափարական կեդրոն մը՝ ինչպէս խորհրդային հայ դասականները, այլ կայ շրջագայում մը մէկ միտքէն (բառէն) դէպի միւսը, միտքեր (բառեր)՝ որոնք երբեմն կը գտնուին բացասական տիալեքթիքական յարաբերութեան մէջ (մերկանալ – չմրսի), երբեմն իրենց իմաստները կը ստանան հակազուգորդումներու ընդմէջէն (արտասուելուց/ժպտալու): Կարելի՞ է երբեւէ նման մեկնաբանութիւն կատարել Ա. մտաւորականներու որեւէ արտադրութեան համար: Կարելի՞ է բանաստեղծութիւնը (պոէզիան) տարբերակային դիրքի վրայ դնել մերկութեան հետ:

Անտաշեան այսպէս կ'արտայայտուի իր բանաստեղծութեան մասին. «Իրականութիւնը իրական նշանագրերով խօսելու խնդրին յաջորդում է բանաստեղծելու իմաստի սահմանման խնդիրը: Բանաստեղծութիւնն ինքս ինձ համար սահմանելու հիմնախնդիրն ինձ տարաւ էլի մարդկութեան պատմութեան ակունքները, երբ լեզուի գոյացմանը զուգահեռ՝ ի յայտ է եկել իրականութիւնը լեզուի տիրապետմամբ կառավարելու բնազդը, այսինքն՝ գերբնական ուժերին ուղղորդելու հմայութիւնները: Հմայական այս բանաձեւերը բանաստեղծական առաջին դրսեւորումներն են, որոնք ծիսական եւ խորհրդաւոր լինելով, նաեւ կիրառական են, կենցաղածին են եւ կենցաղի կազմակերպման համար են, բայց նաեւ հոգեւորի ոլորտից են ու այնկողմնայինի հետ են առնչւում: Այսպիսով սահմանելով, որ բանաստեղծելն ըստ էութեան՝ հմայութիւն անել է, ես *Միլ-Մոլում* փորձեցի իրացնել այս մտայղացումը եւ այս փորձարարութեան ընթացքում հաճելի սիրախաղ ունեցայ հայոց լեզուի հետ» (Սամուէլ Դանիէլեանի հարցազրոյցը Կարէն Անտաշեանի հետ՝ ««Ես էշ գգող եմ»», *Առաւօտ*, 11 Փետրուար 2014, http://www.aravot.am/2014/02/11/430354/):

Այստեղ կոչ կայ վերադառնալու դէպի քաղաքակրթութեան ակունքները (մինչ Ա. մտաւորականները միշտ կոչ կ'ընեն վերադառնալու դէպի *ազգային* ակունքները եւ այդ ազգային կոչով կը դառնան *աւելի* ազգային)՝ փորձ մը վերականգնելու նախնապաշտութիւնը (primitivism): Իսկ այդ ակունքներուն մէջ ծիսական/կիրառականի, իրականութիւն/այնկողմնայինի սահմանազատումները տակաւին անտեսանելի առաւելութիւններ էին: Անտաշեան, ի տարբերութիւն Ա. մտաւորականներու փրոֆեսիոնէլ-թեքնիքական «կատարելութիւններուն», կը ձգտի դէպի բնազդը՝ զոր կը ներկայացնէ իբրեւ գերբնական ուժերուն ուղղորդելու հմայութիւն, եւ դէպի հաճոյքը («հաճելի սիրախաղ ունեցայ հայոց լեզուի հետ»), որոնք երկուքն ալ հիմքն են հաճոյապաշտութեան (hedonism)՝ արդի փրոֆեսիոնէլներու գլխաւոր թապույին:

Մարինէ Պետրոսեան՝ Բ. մտաւորականներուն յարող բանաստեղծ, արձակագիր եւ հրապարակագիր մը (իր ստորագրութիւնը չի գտնուիր յայտարարութեան մէջ, հաւանաբար տարբերակային, բայց ոչ հակադիր, կարծիք մը ունենալուն համար), 2000 թուականին, *Գրական թերթ*ին մէջ ստորագրած ուշագրաւ յօդուածի մը մէջ, խօսելով յետ-խորհրդային Հայաստանի առաջին տասնամեակի բանաստեղծութեան մասին, կը զանազանէ բանաստեղծներու երկու շերտ.

«Ալիբի [alibi] փնտրող եւ չփնտրող բանաստեղծների մասին միտքն ինձ յուշեց Միխայիլ Բախտինը, որն իր *Բառարուեստի գեղագիտութեան* մէջ գրում է. «Անհնար է ապացուցել սեփական ալիբին կեցութեան դիպուածում»: [...]

«Խօսել, – ասում է փիլիսոփան, – նշանակում է գտնուել իրականութեան խաչի կենտրոնում»: Ռոզենշտոկի իրականութեան խաչն ունի երկու առանցք՝ ներս-դուրս եւ յետ-առաջ: Դրանք կեցութեան տարածքային եւ ժամանակային առանցքներն են: Խօսելով՝ մարդը աշխատեցնում է այդ առանցքները: Ասելով «այստեղ», նա իր ներսի տարածքներից նայում է դուրս՝ դէպի արտաքին իրականութիւնը, եւ արտաքին իրականութիւնից դէպի ներս՝ իր ներքին գիտակցութիւնը: Ասելով «այժմ», մարդն իրեն տեղադրում է անցեալի եւ ապագայի արանքում:

«Կրկնենք ուրեմն՝ խօսել, նշանակում է գտնուել իրականութեան խաչի կենտրոնում: Իսկ պոէզիան խօ՞սք է, թէ խօսքի տարատեսակ: Ըստ Ռոզենշտոկի՝ վերջինը: Փիլիսոփայի պատկերացմամբ՝ պոէզիան խօսքի այն տարատեսակն է, որն իրականութեան քառաթեւ խաչի մի թեւն է ներկայացնում՝ դէպի ներս, արտայայտելով մարդու ներքինը, նրա ցանկութիւնները:



Երբ Խորենացի փողոցէն՝ բաց ձեռքերը փոխարինուեցան բռունցքի, Յուլիս 25

«Պոէզիայի մասին այս շատ տարածուած, աւելին՝ գերիշխող տեսակէտն է ահա, որ բանաստեղծին մղում է ստեղծելու իր ներքին տարածքներից շրջուելու դէպի դուրս, դէպի «կեղտոտ» իրականութիւնը, ընդգրկելու համար իրականութեան ողջ խաչը՝ ամբողջութեամբ:

«Այսքանը՝ իբրեւ տեսական նախաբան: Հիմա անցնեմ անտիպոէզիայի գործնական դրսեւորումներին:

«Նախ՝ ի՞նչ կատարուեց հայ բանաստեղծութեան մէջ վերջին տասնամեակում, այն բանից յետոյ, երբ պատմութիւնը կտրուկ շրջադարձ կատարեց եւ հասարակական կեցութեան կորը, որի կորութիւնն այնքան աննշան էր, որ այն գրոյին զուգահեռ քարշ եկող գիծ էր յիշեցնում, յանկարծ թռաւ վեր:

«Բանաստեղծների մի մասը պարզապէս թողեց բանաստեղծութիւնը եւ մտաւ քաղաքականութիւն: Սա ալիբի չփնտռելու ամենակարճ եղանակն էր: Միւս մասը, ճիշտ հակառակը, շարունակեց ապաւինել «յաւերժական ժամանակի մէջ ստեղծուող մաքուր պոէզիային, որն այսրոպէական ժամանակի հետ առնչութիւն չունի», այլ խօսքով՝ պնդեց իր ալիբին: Եթէ խորքին նայենք, թէ առաջին, թէ երկրորդ ուղիով գնացածներին միացնում է պոէզիայի նոյն ըմբռնումը, այն է՝ պոէզիան ալիբի է, թաքստոց: Պարզապէս առաջինները դուրս են եկել այդ թաքստոցից, երկրորդները աւելի են խորացել նրանում» (Մարինէ Պետրոսեան, «Անտիպոէզիա, կամ երբ բանաստեղծը չի փնտռում ալիբի», *Գրական թերթ*, Երեւան, թիւ 10, 2000: Համացանցային տարբերակը՝ http://marinepetrossian.com/hy/about-antipoetry):

Մարինէ Պետրոսեանի առաջին ուղիով ընթացողները (մեր յիշատակած Բ. մտաւորականները) անտիպոէզիայի (հակաբանաստեղծութեան) կրողներն են. «Անտիպոէզիայի «անտի»-ն ուղղուած է պոէզիայի ինքնավարութեան դէմ, որովհետեւ ինքնավարութեան երազանքը կեցութեան դիպուածում ալիբի ունենալու երազանքն է, կամ եթէ Վիոլէտ Գրիգորեանի օգնութեանը դիմելով ասենք՝ «իրականութեան ակնապատուած հարթակներին ոտքը չդնելու» երազանքը» (Անդ):

Այս անտիպոէզիային մէջ կը դնէ Վիոլէտ Գրիգորեանի *Քաղաքը* (1998) եւ Արմէն Շեկոյեանի *Անտիպոէզիա* (2000) բանաստեղծութիւններու ժողովածուները:

Ընդհանրապէս, Բ. մտաւորականները քաջ կը հետեւին Ա.-երու արտադրանքին, մինչդեռ Բ.-երուն համար Ա.-երը պարզապէս կա՛մ անգոյութիւններ են եւ կա՛մ թշնամանքի առարկայ: Բ.-երուն միջեւ գաղափարական կապը ենթակայական է, Ա.-երուն անհատական կապը դիրքային է ու երբեմն շահադիտական: Կարելի՞ է օր մը պատկերացնել՝ որ Ա. յայտարարութիւնը ստորագրածներէն ԽՍՀՄ Ժողովրդական Արտիստ փրոֆեսոր Յովհաննէս Չէքիճեան երբեւէ փորձէ իր տիրակալութեան տակ գտնուող Հայաստանի Պետական Ակադեմիական Երգչախումբին հետ երգելու հրաւիրել նոյն յայտարարութիւնը ստորագրած Ալլա Լեւոնեանին (ուշադրութիւն դարձուցէք կոչումներուն, որոնցմէ զերծ են Բ.-երը) կամ նոյնիսկ մտածէ գնահատական տալ անոր: Անոնց միջեւ հեռաւորութիւնները անսահման են: Կարելի՞ է օր մը պատկերացնել՝ որ ՀՀ Արուեստի Վաստակաւոր Գործիչ Սօնա Յովհաննիսեան՝ իր խմբավարած Հովեր պետական կամերային երգչախումբին հետ ընդունի ՀՀ Վաստակաւոր Արտիստ Նունէ Եսայեանի մասնակցութիւնը: Ա.-երը մասնագէտներ են՝ որոնք կը հաւատան իրենց մասնագիտութիւններու սահմաններուն, անոնց «համագործակցութիւնը» կապուած սեռի (genre) պահանջներուն (օրինակ, օփերա, ուր պէտք է մեներգիչ, խմբավար, նուագավար, պարուսոյց, բեմադրիչ, եւ այլն): Սեռը կը պարտադրէ անոնց համագործակցութիւնը՝ լոկ աշխատանքի տարածական ու ժամանակային սահմաններուն մէջ (անոնք փրոֆեսիոնէլներ են), եւ ոչ թէ իրենք կը պարտադրեն սեռը՝ ըստ մարդկային յարաբերութիւններուն եւ գաղափարական համոզումներուն: Մինչդեռ Բ.-երը բոլորն ալ կրնան համագործակցիլ իրարու հետ, քանի որ սահմաններ չեն ճանչնար: Ա.-երուն յարաբերութիւնները առարկայական են, Բ.-երուն յարաբերութիւնները՝ ենթակայական:

Ա. մտաւորականները այն փրոֆեսիոնէլներն են՝ որոնց մասին *Ջահակիր* յատկացուցած է յօդուածաշար մը («Փրոֆեսիոնէլը», *Ջահակիր*, 10 Յուլիս 2014, թիւ 1727, մինչեւ 13 Նոյեմբեր 2014, թիւ 1734): Անոնք կը ներկայացնեն Պղատոնի քարանձաւի երկրորդ փուլը՝ տակաւին կը գտնուին այդ քարանձաւին մէջ: Քարանձաւին մէջը գտնուիլը բացասական առումով պէտք չէ ընդունիլ, անոնք այնտեղ կ'արտադրեն, կը ստեղծագործեն եւ իրենք իրենց համար կ'ապրին կազմակերպուած ամբողջական կեանքի շրջանակ մը՝ օրէնքներու տիրապետութեան տակ: Բ. մտաւորականները անոնք են որոնք կոտրելով քարանձաւի պատերը դուրս կու գան բաց աշխարհ, ենթարկուելով ճնշումներու, հալածանքներու, անորոշութիւններու եւ բաց տարածութիւններու: Բնականաբար, քարանձաւէն դուրս գալով, Պղատոն նկատի պիտի ունենար Սոկրատէսի պարագան, թէեւ երբեք որոշակիօրէն չէ մատնանշած այս կէտը («Փրոֆեսիոնէլը», *Ջահակիր*, 4 Դեկտեմբեր 2014, թիւ 1735): Բ.-երը ժամանակին մենք պայմանականօրէն անուանած էինք նաեւ «յետ-աքատեմիք»-ներ («Հայ տպագիր գիրքի 500-ամեակ... գիտելիքի խզո՞ւմ. յետ-տպագրային ընթերցում մը», *Ջահակիր*, 14 եւ 28 Փետրուար 2013, թիւ 1697-8):

Բ. մտաւորականները կը հանդիսանան Էտուարտ Սայիտի հասարակականօրէն ներգրաւուած մտաւորականներու շերտը, կամ մօտ են Անթոնիօ Կրամշիի «կազմական» (organic) մտաւորականներուն՝ որոնք բխած են հասարակութեան ստորին շերտէն եւ զարգացած այդ հասարակութեան հետ:

Մտաւորականներու այս երկու ստորաբաժանումները կրնան յստակել Յուլիս 17-ի ապստամբութեան հետ առնչուելու երկու մօտեցումները: Առաջինը իշխանական ուղղահայեաց մօտեցումն է, որ ապստամբութիւնը կը հաւասարեցնէ ահաբեկչութեան, դաւաճանութեան եւ պետական քայքայումի հետ, մերժելով բացայայտել այդ ապստամբութեան բուն պատճառները: Երկրորդը՝ ոչ-իշխանական (կամ հակա-իշխանական) գծային մօտեցումն է, որ առանց հերոսացնելու ապստամբութիւնը, այնտեղ կը տեսնէ երկար տարիներ կուտակուած իշխանական անյաջողութիւններու եւ ձախողութիւններու արտացոլումը:

**ՈՒՐԲԱԹ, 22 ՅՈՒԼԻՍ** (վեցերորդ օր)

– Առաջին անգամ ըլլալով կը խօսի Հայաստանի Հանրապետութեան նախագահը: Ինչպէս Աւետիք Իշխանեան կը գրէ՝ «[վ]երջապէս հնգօրեայ լռութիւնից յետոյ, յուլիսի 22-ին նախագահ Սերժ Սարգսեանը երեւաց հեռուստաէկրանին: Երեւաց, բայց ոչ թէ ժողովրդի, հասարակութեան հետ խօսելու, այլ իր անվտանգութեան խորհրդի անդամներին հրապարակային յանձնարարութիւններ տալու համար, «ձեռի հետ էլ» լարուած իրավիճակին գնահատական տալու համար՝ «Այս ուղերձը հանրութիւն, քեզ բաւական է»» (Աւետիք Իշխանեան, «Պատուէրը կատարուած է՝ սպասենք մանդատներին», *Առաւօտ*, 25 Յուլիս 2016, http://www.aravot.am/2016/07/25/719413): Խորհրդակցութենէն առաջ, ներկաներուն առջեւ Սարգսեան կը կարդայ իր տեսագրուած ճառը, ուր, ի միջի այլոց, կ'ըսէ. «Այո՛, Հայաստանում ըժգոհներ շատ կան: Սակայն թող ոչ ոք չսխալուի եւ չմտածի, որ կարող է որեւէ առիթ կամ պատճառ չահագործել մեր պետականութեան հիմքերը քայքայելու համար:»

Ինչպէս ռեւէ միապետ, Սարգսեան ինքզինք կը ներկայացնէ իբրեւ պետութիւն: Սասնայ Ծռերու գործողութիւնը, որքան որ ըլլայ հարցական իբրեւ բռնութիւն, նպատակ չունի քայքայել պետութիւնը: Ան ուղղուած է ներկայ իշխանութիւններու քաղաքականութիւններուն դէմ: Սարգսեանի անկումով պետութիւն չի վերանար:

Բայց ո՞վ է իրապէս պետութեան հիմքերը քայքայողը: Հայաստանի ջուրը, ելեկտրականութիւնը, բնական կազը, հեռահաղորդակցութիւնը եւ այլ հիմնական ծառայութիւններ ամբողջութեամբ կը գտնուին բազմազգ ընկերութիւններու (multinational corporations) ձեռքը:

Բաց աստի, Հայաստանի Համախառն Ներքին

⮊ 4

3

## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

Արդիւնքի (ՀՆԱ) գլխաւոր եկամուտը կու գայ հանքային արտադրութենէն, որուն գլխաւոր մասը կը գտնուի «օտար»-ներու ձեռքը, ինչպէս ցոյց կու տան International Business Publications-ի հետեւեալ տեղեկութիւնները.

«Օտար ներդրողները կը վերահսկեն Հայաստանի հանքային արդիւնաբերութեան նշանակալի բաժինը: Արմենալ՝ որ Քանաքեռի մէջ գործող փայլաթիթեղագլանումի գործարան մըն է, կը հանդիսանայ Ռուսաստանի Ռուսալ Միացեալ Ընկերութեան դուստր ընկերութիւնը: Զանգեզուրի պղնձամոլիբդէնային կոմպինատը կը սեփականաշնորհուի 2004-ին, որուն սեփականատէրերը կը դառնան Գերմանիոյ Cronimet Mining GmbH՝ 60%, Երեւանի Մաքուր Երկաթ բաց բաժնետիրական ընկերութիւնը՝ 15%, Armenian Molybdenum Production ՍՊՀ-ն՝ 12.5% եւ Zangezur Mining ՍՊՀ-ն (որ կը հանդիսանար ձեռնարկութեան նախկին ձեռնարկատէրը)՝ 12.5%:

«GeoProMining Ltd՝ որ 2001-ին հիմնուած հանքային աղբիւրներու սեփական ընկերութիւն մըն էր, Հայաստանի մէջ ունի թողօններ [assets], որոնք կը պարունակեն Ագարակի պղնձամոլիբդէնային հանքաքարի արդիւնաբերող ու վերամշակող կոմպինատը, Սոթքի ոսկիի հանքը եւ Արարատ ոսկիի արդիւնաբերութեան ձեռնարկութիւնը: Ան Ագարակի կոմպինատը կը գնէ 2007 Դեկտեմբերին իսկ Սոթքի հանքային համալիրը 2008-ին: [...]

«Ալավերդիի պղնձաձուլական գործարանին սեփականատէրն է Armenian Copper Programme փակ բաժնետիրական ընկերութիւնը: Լիքթէնսթայնի մէջ արձանագրուած Vallex F.M. Establishment ընկերութիւնը կը սեփականատիրէ Armenian Copper Programme-ի 81%-ը եւ ռուս գործարար մը կը սեփականատիրէ մնացած 19%-ը: Armenian Copper Programme-ը՝ որ կ'արտադրէ ֆերրոմոլիպտէն, մետաղ մոլիպտէն եւ ռենիում աղեր, 51%ով սեփականութիւնն է Cronimet Mining-ին իսկ մնացած բաժնետոմսերը կը պատկանին հայ քաղաքացիներուն» (*Armenia: Mineral, Mining Sector Investment and Business Guide*, Volume 1, International Business Publications, USA, 2013, p. 28):

Հանքային արդիւնաբերութեան վաճառքը օտար ընկերութիւններուն խիստ ճակատագրական է Հայաստանի համար, քանի որ ան կը հանդիսանայ երկրի դրամատիրական տնտեսութեան գլխաւոր աղբիւրը: *Armtimes.com* 2016 Մարտին կը չեշտէ՝ թէ «Հայաստանի տնտեսութիւնը նստել է հանքարդիւնաբերութեան «ասեղ»-ի վրայ», եւ կը ներկայացնէ հետեւեալ կարեւոր հաշուարկումը.

«Մտավախութիւնները, թէ Հայաստանի տնտեսութիւնը նստում է «հանքարդիւնաբերութեան ասեղին», շատ աւելի սուր են, քան կարելի էր սպասել: ՀՀ Ազգային վիճակագրական ծառայութեան երէկ [իմա՝ 2016 Փետրուար 29-ին, Զ.] հրապարակած տուեալներից պարզ է դառնում, որ հանքարդիւնաբերութեան ոլորտում այս տարուայ յունուարին արձանագրուել է 76 տոկոս աճ այն դէպքում, երբ մշակող արդիւնաբերութիւնում 6.3 տոկոս անկում է եղել:

«Ընդ որում, մշակող արդիւնաբերութեան ամենա«ծանրակշիռ» ճիւղում՝ սննդի արդիւնաբերութիւնում արձանագրուել է աւելի քան 8 տոկոս նուազում: Եւ ահա հիմնականում հէնց հանքարդիւնաբերութեան ոլորտում արձանագրուած 76 տոկոս աճի շնորհիւ է, որ ամբողջ արդիւնաբերութիւնում ստացուել է 15.7 տոկոս աճ: Նշենք, որ միայն պղնձի խտանիւթի արտադրութիւնը աճել է 85 տոկոսով» («Հայաստանի տնտեսութիւնը նստել է հանքարդիւնաբերութեան «ասեղ»-ի վրայ», *armtimes.com*, 1 Մարտ 2016,http://armtimes.com/hy/read/80579):

Ուրեմն, եթէ Հայաստանի տնտեսութեան գլխաւոր արդիւնաբերութիւնը կը գտնուի բազմազգ ընկերութիւններու ձեռքը, կարելի է դիւրութեամբ եզրակացնել թէ երկիրի կառավարումին հանգոյցները կը գտնուին որուն ձեռքը:

«Բայց նաեւ հանքերի շահագործումը առանց շօշափելի օգուտ բերելու անխնայ սպառում է երկրի հարստութիւնը, իսկ եկամուտները ոչ թէ երկրին՝ երկրի քաղաքացիների բարեկեցութեանն է գնում, ոչ թէ բիւջէ է մտնում, այլ մի քանի հոգու գրպանը», կը գրէ Վահան Իշխանեան (Վահան Իշխանեան, «Հանքեր թէ՞ սահմանադրութիւն. ազատականների 25-ամեայ վերարտադրութիւնը ոչնչացնում է երկիրը», *ԹԵՐԹ.am*, http://www.tert.am/am/author/4/1778155):

Իրենց տնօրինութեան տակ գտնուելով Հայաստանի դրամատիրական տնտեսութեան բանալիները, բազմազգ ընկերութիւնները պետականութիւնը մեծապէս կը դարձնեն իրենց ենթակայութեան տակ: Սասնայ Ծռերու նպատակն էր երկիրը վերադարձնել *իր* սեփականատէրերուն, այսինքն, ուժեղացնել, եւ ոչ թէ տկարացնել, պետութիւնը:

Ահաւասիկ Սերժ Սարգսեանի ելոյթէն ուրիշ քաղուածք մը. «Յորդորում եմ մեր հանրութեան բոլոր ներկայացուցիչներին իրենց քաղաքական եւ քաղաքացիական իրաւունքները իրացնել բացառապէս խաղաղ եւ օրէնքի շրջանակներում:» Օրէնք բառին կը դիմեն իշխանաւորները ամէն ճգնաժամի: Օրէնք՝ որուն ընձեռած առաւելութիւններու հովանիին տակ կ'աճին Հայաստանի օլիկարքները, եւ օգտուելով օրէնքի մը մէկ երեսէն կը դառնան օրէնքի միւս երեսին առաջին խախտողները: Օրէնք՝ որ տակաւին չէ բացայայտած Հոկտեմբեր 27-ի բուն գործիչները, օրէնք՝ որուն շնորհիւ Մարտ 1-ը գործադրողները կը շարունակեն մնալ իշխանական դիրքերու մէջ: Օրէնք՝ որ չի պատժեր ներբանակային սպանութիւններուն բուն պատասխանատուները:

Քաղուածք մը եւս. «Անձնական վրէժխնդրութեան բոլոր փորձերը կասեցուելու են օրէնքի ուժով:» Դարձեալ օրէնք: Իսկ վրէժխնդրութիւնը տակաւին պէտք է բացայայտել՝ թէ ո՞վ իրապէս վրէժխնդիր է միւսէն: Սասնայ Ծռերու արարքը «անձնական վրէժխնդրութեան» նշոյլ չյայտնաբերեց ցարդ: Նախագահի մը կողմէ «վրէժխնդրութիւն» բառին գործածութիւնը ուժեղ, շատ ուժեղ արտայայտութիւն մըն է:

- Սերժ Սարգսեանի ելոյթէն ետք կը տարածուի Լեւոն Տէր-Պետրոսեանի անկայուն եւ հայրենաշունչ յայտարարութիւնը, յիշեցնելով հին օրերու իր նմանատիպ պոռչտուքները: Ան, ի միջի այլոց, կ'ըսէ. «Ապրիլեան քառօրեայ պատերազմից յետոյ հայ ժողովուրդն, ահա, կանգնած է [...] արցախահայութեան անվտանգութեան ապահովման եւ Ղարաբաղեան հակամարտութեան բարեյաջող կարգաւորման գերակայ խնդրի առջեւ, որն իր կարեւորութեամբ ստուերում է հայ ժողովրդին յուզող բոլոր մնացեալ հարցերը» («Լեւոն Տէր-Պետրոսեան. դատէք ինքներդ», *Lur.am*, 22 Յուլիս 2016, http://www.ilur.am/news/view/55064.html): Ուրեմն, ժողովուրդը իրաւունք չունի յուզուելու: Ժողովուրդը աղքատութեան մէջ է, հոգ չէ՝ Ղարաբաղն է կարեւորը, աղքատութեամբ զբաղուիլը կը վնասէ Ղարաբաղին: Ո՞վ ըսաւ որ Ղարաբաղը կարեւոր չէ: Բայց ո՞վ ըսաւ նաեւ որ ժողովուրդը պէտք է աղքատութեան մէջ ապրի, պէտք է երազներ, մտապատկերներ, յոյսեր, ձգտումներ, բարելաւուած կեանք չակնկալէ որպէսզի Ղարաբաղը աննկուն մնայ: Ո՞վ ըսաւ որ մէկը կը խանգարէ միւսին: Մինչեւ ե՞րբ կեղծ, մտացածին ազգայնականութեամբ պիտի թաղենք մարդկային խնդիրները եւ ճնշենք որեւէ այլընտրանք:

Ան նաեւ կ'ըսէ. «Այսօր անիմաստ է վերլուծել այն պատճառները, որ յանգեցրել են մի այնպիսի ծայրայեղ քայլի, ինչպիսին է պետական հիմնարկութեան դէմ ուղղուած զինուած գործողութիւնը» (Անդ):

Նիկոլ Փաշինեան, Խորենացի փողոցին մէջ ունեցած տեսագրուած իր ելոյթին ընթացքին կը պատասխանէ Տէր-Պետրոսեանին. «Եթէ նման յայտարարութիւն անէր քաղաքագիտութեան ֆակուլտէտի առաջին կուրսի ուսանողը, ես չէի զարմանայ: Բայց Հայաստանի Հանրապետութեան առաջին նախագահի անունից լսել նման յայտարարութիւն, առ նուազն տարօրինակ է, ես չեմ հասկանում: [...] Նման բան ասել նշանակում է հետեւեալը՝ թողենք հիւանդը մեռնի, յետոյ դիահերձումից կը վերլուծենք թէ ինչը դարձաւ նրա մահուան պատճառը: Ես համարում եմ որ սա ամօթալի յայտարարութիւն է» (տեսագրութիւնը կարելի է գտնել YouTube-ի մէջ):

- Երեկոյեան, գրաւուած տարածքին կից Խորենացի փողոցին մէջ տեղի կ'ունենայ մարդաշատ հաւաք: Շուրջ 35 վայրկեան ցուցարարներուն առջեւ ելոյթ կ'ունենայ Նիկոլ Փաշինեան, որ, ի միջի այլոց, կ'ըսէ. «Այստեղ, Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիների թիւը պէտք է տեսանելիօրէն եւ շօշափելիօրէն շատանայ, եւ բոլորին պէտք է ակնյայտ լինի որ Երեւան քաղաքը ոտքի կանգնէ:» Կոչ մըն էր ժողովրդական վերելքի, որպէսզի չէզոքանայ բռնութիւնը եւ անկարելի դառնայ հարցին լուծումը ոստիկանական բռնութեամբ: Ան քանիցս կը չեշտէ Սերժ Սարգսեանի հեռացումին կարելիութիւնը ժողովրդական ապստամբութեամբ՝ առանց բռնութեան: Փաշինեանի ելոյթը վարակիչ էր եւ ունէր քաղաքական հռետորի մը հրապուրանքը:

Ելոյթէն ետք Վիոլէտ Գրիգորեան Ֆէյսպուքի մէջ այսպէս կը ծանօթագրէ. «Նիկոլն էսօր լցրեց էն քաղաքական վակուումը, որ առաջացել էր Սասնայ Ծռերի ճահիճ նետած քարից յետոյ: Ու դա արեց փայլուն կերպով:»

**ՇԱԲԱԹ, 23 ՅՈՒԼԻՍ** (եօթներորդ օր)

- Կառավարութեան կողմէ նշանակուած բանակցող Վիտալի Բալասանեանի միջնորդութեամբ տեղի կ'ունենայ հանդիպում Սասնայ Ծռերու եւ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան տնօրէն Գէորգի Կուտոյեանի հետ: Սասնայ Ծռեր կը խոստանայ ազատ արձակել մնացած չորս պատանդները, պայմանով որ տարածքին մէջ ստեղծուի մամուլի մնայուն կէտ:

- Սասնայ Ծռեր ազատ կ'արձակէ երկու պատանդ ոստիկանի եւ ապա Երեւանի ոստիկանապետի տեղակալ Վալերի Օսիպեանին եւ Հայաստանի ոստիկանութեան պետի տեղակալ Վարդան Եղիազարեանին: Այլեւս պատանդ չկայ: Բայց Սասնայ Ծռերու հսկողութեան տակ կը մնայ Էրեբունի թաղամասի ոստիկանութեան պարեկապահային ծառայութեան գունդին տարածքը իր ամբողջ զինամթերքով:

- Լրագրող Գրիշա Բալասանեան *Հետք*ի մէջ կը գրէ. «Վերջին մի քանի օրերի ընթացքում Երեւան քաղաքի Խորենացի, Տիգրան Մեծ փողոցներում ծաւալուած բողոքի ակցիաները լուսաբանելու ժամանակ բռնութեան են ենթարկուել մի քանի լրագրողներ, խոչընդոտուել է նրանց մասնագիտական գործունէութիւնը: Նրանցից միայն մէկն է դիմել ոստիկանութիւն, միւսները նշում են, թէ հաւատ եւ վստահութիւն չունեն այդ իսկ պատճառով չեն դիմել:» Այդ լրագրողներն են՝ Արթուր Հայրապետեան (4news.am), Արտակ Համբարձումեան (Ազատութիւն ռադիոկայան), Թեհմինէ Ենոքեան (Lragir.am) եւ Գէորգ Թոսունեան (iravaban.net) (Գրիշա Բալասանեան, «Լրագրողները պնդում են, որ բռնութեան են ենթարկուել ոստիկանների կողմից», *Հետք*, 23 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/69370/lragroxnery-pndum-en-or-brnutyan-en-entarkvel-ostikaneri-koxmic.html/):

- Ժամը 16:00-էն ետք, ըստ Սասնայ Ծռերու եւ իշխանութեան միջեւ եղած համաձայնութեան, լրագրողները մուտք կը գործեն գրաւուած տարածք: Տեսագրութեան մէջ կը խօսի Հիմնադիր Խորհրդարան շարժումին փոխնախագահ Վարուժան Աւետիսեան, որ հանդարտօրէն (բնաւ ահաբեկիչի տեսք չունէր...) կը բացայայտէ հետեւեալ մտահոգիչ իրողութիւնը.

«Եթէ մենք ունենայինք ուժային համակարգ, եթէ մենք ունենայինք իրաւապահ համակարգ, եթէ մենք ունենայինք նորմալ աշխատող յատուկ ծառայութիւններ, հարիւրից աւելի մարդ, մօտ մէկ ամիս ժամանակ ներգրաւուած լինելով այսպիսի օպերացիա կազմակերպելու գործի մէջ, դա ինչպէ՞ս էք պատկերացնում որ կարող էր այսօրուայ թուային տեխնոլոգիաների, կամերաների, լսողական սարքերի դարաշրջանում չյայտնաբերուել, որեւէ մէկը չֆիքսուէր, որեւէ ինֆորմացիա դուրս չգար, եւ այլն, եւ այլն: Սա մի ապացոյց է, որ մենք չունենք յատուկ ծառայութիւններ, որ մենք չունենք իրաւապահպան համակարգ, որ մենք չունենք պետութիւն, ընդամէնը կայ բանդա, ընդամէնը կան ձրիակերներից բաղկացած ուղղակի ոստիկանական ստորաբաժանումներ, ովքեր ուղղակի իրենց քանակութեամբ եւ ֆիզիքական ուժով ճնշում են ժողովրդին: Ընդամէնը: Բայց օպերատիւ, հետախուզական եւ այլ աշխատանքների մէջ նրանք անձեռնահաս են: Խնդրեմ ապացոյցը...: Մեզ չի յաջողուել այսքան տարիների ընթացքում պետութիւն ստեղծել: Սա քվազի պետութիւն է: Այսպիսի պետութիւն չի լինի: Այստեղ ինստիտուտներ չկան, կուսակցութիւնները կուսակցութիւններ չեն, գործիչները գործիչներ չեն, պաշտօնեաները պաշտօնեաներ չեն, ոմանք ուղղակի սրիկայ են: Այսպիսով հնարաւոր չէ առաջ գնալ: Մենք կորցնում ենք ամէն ինչ:»

Աւետիսեան կը գանգատի նաեւ Նիկոլ Փաշինեանէն՝ հարցը իր քաղաքական ընդդիմութեան համար չահագործելու համար: Խնդրական հարց մըն է ասիկա, քանի որ Փաշինեանէն զատ, ցարդ ոչ մէկ ընդդիմադիր քաղաքական գործիչ յաջողեցաւ ժամանակակից քաղաքական գործիչի ճարտարութեամբ (ինչու չէ նաեւ ճարտասանութեամբ) ապստամբողներուն ձայնը բարձրաձայնել տարածքէն դուրս:

- Լրագրողները գրաւեալ տարածքին մէջ կը զրուցեն նաեւ բանակցութիւններուն իշխանութեան կողմը ներկայացնող Վիտալի Բալասանեանի հետ, որ կ'ըսէ. «Ես քիչ առաջ եղել եմ Ժիրայր Սէֆիլեանի մօտ [...], նախագահի ներկայացուցիչն ա եղել եւ եղել ա Ալեք Ենիգոմշեանը, մենք քննարկել ենք զէնքերը վայր դնելու հարցը: [...] Ես եւ Ժիրայր Սէֆիլեանը եւ այդ տղաները որոնք գտնւում են մեր կողքին, նրանք մեծամասնութիւնը հրաժարուել են Սերժ Սարգսեանի հրաժարականից: Բայց կան մարդիկ որոնք որ պնդում են: Ես կարող եմ ասել պաշտօնական, որ քիչ առաջ՝ կէս ժամ առաջ, Ժիրայր Սէֆիլեանը ասեց՝ ես հրաժարւում եմ Սերժ

5

4 

## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

Սարգսեանի հրաժարականից։»

– Երեկոյեան տեղի կ՚ունենայ բողոքի հաւաք Խորենացի փողոցին մէջ, բաւական ընդարձակ հասարակութեան մը ներկայութեամբ։ Շուրջ 25 վայրկեան ելոյթ կ՚ունենայ Նիկոլ Փաշինեան, ուր կ՚ըսէ, թէ իր հասցէին մեղադրանքներ կը հնչեն՝ թէ իբր այս գործընթացքը կ՚օգտագործէ ի շահ իրեն եւ իր կուսակցութեան։ Կը յայտարարէ՝ որ իր լիազօրութիւնները կը փոխանցէ ԱՍԱԼԱ-ի մարտիկ եւ Հիմնադիր Խորհրդարանի անդամ Ալեք Ենիգոմշեանին, հաստատելով՝ որ ինք եւ իր կուսակցութեան անդամները պիտի իջնեն վար եւ միանան ժողովրդական բողոքացոյցերուն, միշտ պահանջելով Սերժ Սարգսեանի հրաժարականը՝ որ կը հանդիսանայ իրենց գլխաւոր պայմանն ու նպատակը։

Փաշինեանին անմիջապէս կը յաջորդէ Ալեք Ենիգոմշեանի ելոյթը։ Ան նախ կը հերքէ պաշտօնական մարմիններուն այն վարկածը՝ թէ տղաքը համաձայնած են զէնքերը վար դնել։ Ապա կ՚անդրադառնայ Վիտալի Բալասանեանի այն յայտարարութեան՝ թէ Ժիրայր Սէֆիլեան հրաժարած է Սարգսեանի հրաժարականէն։ Ենիգոմշեան կ՚ըսէ՝ որ ինք եւս ներկայ եղած է այդ հանդիպումին, որով կրնայ հաստատել՝ թէ Սէֆիլեան նման բան չէ ըսած եւ Բալասանեան խեղաթիւրած է իր խօսքը ու դուրս հանած իր բնաբանէն (կոնտեկստ)։ Ան կ՚աւելցնէ. «Ժիրայր Սէֆիլեանը այս զարգացումների, ամսի 17-ին առաջին օրն իսկ առաջարկել է իր միջնորդութիւնը, որպէսզի այս ստեղծուած իրավիճակը առանց արիւնահեղութեան աւարտ ունենայ, եւ ինքը յայտարարել է որ ինքը համաձայն է եւ նոյնիսկ առաջարկում է հանդիպել բոլորի հետ ներառեալ Սերժ Սարգսեանի հետ եւ կոնկրէտ այս պահին խօսել այս ճգնաժամային իրավիճակից դուրս գալու մասին։ [Սերժ Սարգսեանի հրաժարականը իբրեւ առաջին եւ միակ պահանջ չունենալուն միակ պատճառը], այդ ճգնաժամային վիճակից դուրս գալու առումով [Սերժ Սարգսեանի հետ] հանդիպում ունենալն է եղել։ Նա երբեք չի ասել որ մենք ընդհանրապէս հրաժարւում ենք Սերժ Սարգսեանի հեռացման մտքից։ Նման բան չի կարող լինել եւ չկայ, ես ձեզ վստահեցնում եմ։» Ապա Ենիգոմշեան կը յայտարարէ համակարգող մարմին ստեղծելու ծրագիրը, որպէսզի համաձայնեցուած կերպով առաջ տանի բանակցութիւնները։

**ԿԻՐԱԿԻ, 24 ՅՈՒԼԻՍ** (ութերորդ օր)

– Կէսօրուայ մօտ Սասնայ Ծռեր կը տարածէ հետեւեալ հաղորդագրութիւնը. «Յայտարարում ենք, որ այսօր՝ 24.07.16-ին Սասնայ Ծռեր խմբաւորման անդամները զրկուած են ոչ միայն կապից, այլ նաեւ անջատել են ելեկտրականութիւնը եւ նրանց չեն ապահովել սննդով։ Յաւելենք նաեւ, որ ոստիկանութեան կողմից ճեղքման եւ գրոհի փորձեր են կատարուել։»

Ասիկա այն գինն է զոր կը վճարեն ապստամբները բոլոր պատանդները ազատելէ ետք։

– Զրկուած ըլլալով կապէ, ելեկտրականութենէ եւ սնունդէ, իբրեւ բողոքի ցոյց Սասնայ Ծռեր գրաւեալ տարածքին մէջ կ՚այրէ ոստիկանական մեքենայ մը («Սասնայ Ծռեր խմբաւորման անդամները ՊՊԾ գնդի տարածքում ոստիկանական մեքենայ են այրել ի նշան բողոքի», *Հետք*, 24 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/69395/sasna-tsrer-khmbavorman-andamnery-ppts-gndi-taratsqum-ostikanakan-meqena-en-ayrel-i-nshan-boxqi.html)։

– Սասնայ Ծռեր խումբի անդամ Պաւլիկ Մանուկեան կը տեղեկացնէ՝ որ բանակցութիւններուն համար Վիտալի Բալասանեանին պիտի փոխարինէ Սիսիանի Սիսական գունդի հրամանատար Աշոտ Մինասեան։

– Լրագրող Հայկ Կոնջորեան *Լրագիր*ի մէջ կու տայ դէպքերուն հետ կապուած բռնութեան գաղափարի մեկնաբանութիւն մը.

«Սասնայ Ծռեր ջոկատի կողմից Էրեբունու ոստիկանական զօրամասը գրաւելուց յետոյ, Հայաստանում ակտիւացել են ամենատարբեր քննարկումները բռնութեան մասին։ Այն, որ բռնութեան մշակոյթը Հայաստանի հասարակական-քաղաքական կեանքի անբաժան տարրերից է, անվիճելի է։ Մինչ այժմ, բռնութիւն գործադրելու մենաշնորհը Հայաստանում պատկանում էր հիմնականում իշխանութեանն ու նրա մերձաւոր շրջապատին. բռնութիւնը վերեւից դէպի ներքեւ էր։ Նորութիւնն այն է, որ այժմ բռնութիւնը կիրառուել է ներքեւից վերեւ՝ խախտելով համակեցական ստատուս քուոն եւ ուժերի յարաբերութիւնը։

«Եթէ առաջնորդուենք դասական վեբէրեան տրամաբանութեամբ, ապա պետութիւնն ունի բռնութիւն գործադրելու լեգիտիմ իրաւունք։ Բայց երբ պետութեան մէջ խախտուած են արդարութեան հիմնարար գաղափարները, ոտնահարւում են մարդու իրաւունքներն ու ազատութիւնները, բռնութիւնը դառնում է ոչ թէ պետութեան լեգիտիմ, այլ պետութեան ներսում փոքրաթիւ խմբի շահերը մեծամասնութեանը պարտադրելու ոչ լեգիտիմ իրաւունքի։ Ի վերջոյ, պետութեան գլխաւոր նպատակը համընդհանուր բարիքի ստեղծումն է, եւ միայն յանուն դրա՝ քաղաքացին կարող է ընդունել այդ բռնութեան իրաւունքը, որով հէնց ինքն օժտել է պետութեանը։ Բայց երբ իշխանութեան նպատակը դառնում է ոչ թէ համընդհանուր, այլ իր մասնաւոր բարիքի ստեղծումը, ապա նրա կողմից կիրառուող բռնութիւնը դադարում է լինել լեգիտիմ եւ հաւաքական արդարութեան կորուստը քաղաքացուն դրդում է անհատական արդարութեան հաստատմանը։

«Տասնամեակներ շարունակ Հայաստանում ոտնահարուել են արդարութեան եւ հաւասարութեան գաղափարները. բազմաթիւ աղմկայարոյց եւ չբացայայտուած սպանութիւններ, պետական միջոցների անխնայ շորթում, անարդար ու կաշառուած դատարաններ, ոստիկանութեան բիրտ եւ ապօրինի գործունէութիւն, սոցիալական խորը բեւեռուածութիւնը փոքրաթիւ հարուստների եւ մեծաթիւ աղքատների միջեւ։ Այս ամէնը բերել են մի վիճակի, երբ քաղաքացին չի զգում պետութեան ներկայութիւնը, իսկ աւելի ճիշտ՝ իր մաշկի վրայ զգում է պետութեան բացակայութիւնը» (Հայկ Կոնջորեան, «Բռնութեան բումերանգը հասաւ իշխանութեանը», *Lragir.am*, 24 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/society/view/136502)։

– Երեկոյեան հանրահաւաք Խորենացի փողոցին մէջ։ Ալեք Ենիգոմշեան կը յայտարարէ՝ որ բանակցութիւնները կը շարունակուին, առանց էական փոփոխութիւններու։ Ան կը հաստատէ Աշոտ Մինասեանի ընդգրկումը իբրեւ բանակցող («Տղաները պատրաստ չեն զիջել. Ալեք Ենիգոմշեան», *Lragir.am*, 24 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136500)։

**ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ, 25 ՅՈՒԼԻՍ** (իններորդ օր)

– Ոստիկանութիւնը տեսանիւթ կը տարածէ, ուր կը տեղեկացնէ տարածքը գրաւած Սասնայ Ծռերու անդամներուն անունները. 1. Պաւլիկ Մանուկեան, 2. Տիգրան Մանուկեան, 3. Գագիկ Եղիազարեան, 4. Արեգ Կիւրեղեան, 5. Արամ Յակոբեան, 6. Արմէն Լամբարեան, 7. Սմբատ Բարսեղեան, 8. Էդուարդ Գրիգորեան, 9. Արմէն Բիլեան, 10. Վարուժան Աւետիսեան, 11. Մխիթար Աւետիսեան, 12. Աշոտ Պետրոսեան, 13. Թորոս Թորոսեան, 14. Վարդան Գերաւետեան, 15. Գէորգ Իրիցեան, 16. Սեդրակ Նազարեան, 17. Արայիկ Խանդոյեան, 18. Սերգէյ Կիւրեղեան, 19. Մարտիրոս Յակոբեան, 20. Արթուր Սողոմոնեան, 21. Յովհաննէս Յարութիւնեան, 22. Յովհաննէս Վարդանեան, 23. Ռուբէն Գրիգորեան, 24. Արայիկ Յակոբեան, 25. Արթուր Մելքոնեան, 26. Էդգար Սողոմոնեան, 27. Գէորգ Մելքոնեան, 28. Գառնիկ Յովակիմեան, 29. Արամ Մանուկեան (Պաւլիկ Մանուկեանի որդին), 30. Տիգրան Սարգսեան։ 31-րդ անդամն է Թաթուլ Թամրազեան, որ վիրաւոր է եւ կը գտնուի հիւանդանոց («ՊՊԾ գնդում գտնուող Սասնայ Ծռեր խմբաւորման անդամների թիւն ու անունները», *Lragir.am*, 25 Յուլիսի 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136505)։

– Հիմնադիր Խորհուրդի անդամներու եւ Սասնայ Ծռեր խումբի գործողութիւնները համակարգող մարմինի առաւօտեան (ժամը 10:00) մամուլի ասուլիսը Խորենացի փողոցին մէջ։ Ալեք Ենիգոմշեան կ՚ըսէ. «Հիմա արդէն 34 ժամ է որ Սասնայ Ծռեր խմբին զլացւում է ելեկտրական հոսանք, սնունդ, բժշկական ծառայութիւն, եւ գիշերուանից սկսած նաեւ հեռախօսակապ, այսինքն արդէն այլ ձեւի կապեր նրանք չունէին եւ արդէն մօտաւորապէս (մօտաւորապէս ասում եմ, ճշգրիտ չէ) 10 ժամ է որ կապի միջոցները անջատուած են։ Սա ինքնին արդէն իշխանութիւնների կողմից սրացման քայլեր են, ուղիղ սրացման քայլեր։» Ենիգոմշեան կը նշէ, որ իշխանութիւնը կ՚ընթանայ սրացումի ուղիով՝ իր կողմէ քանդուած է տարածքին մէջ գտնուող պատ մը, ռազմական ուղղաթիռը թռչած է ցած բարձրութեան վրայ իսկ 10 վայրկեան առաջ դիպուկահարները նորէն անցած են իրենց գործին։

Ալբերտ Բաղդասարեան կարդալէ ետք Հիմնադիր Խորհուրդի յայտարարութիւնը, ժողովուրդին ժամը 20:00-ին կը հրաւիրէ հանրահաւաքի Խորենացի փողոցին մէջ, ըսելով. «Մենք կը սկսենք անհնազանդութեան գործընթաց։ Զինուած հակամարտութիւնը կը տեղափոխենք քաղաքացիական դաշտ, քաղաքական հարթութիւն։ Մենք Երեւան քաղաքում կը ստեղծենք բազմաթիւ օջախներ, Հայաստանի Հանրապետութիւնում կը ստեղծենք բազմաթիւ օջախներ։ Այսինքն՝ բազմաթիւ գլխացաւանք անձամբ Սերժ Սարգսեանի եւ իր վարչախմբի համար։»

– Սիվիլնէթ հարցազրոյց մը կը տեսագրէ լրագրող Թաթուլ Յակոբեանի հետ. «Իրավիճակը կտրուկ



*Հանրապետութեան հրապարակ, Յուլիս 25*

փոխուեց էն պահից յետոյ, երբոր Սասնայ Ծռերի անդամները որոշում կայացրեցին որ ազատ են արձակում բոլոր պատանդները։ Նայէք։ Մինչեւ էն պահը երբոր իրենց մօտ կային պատանդներ, Հայաստանի իշխանութիւնները նրանց հետ գնում էին բանակցութիւնների, չասեմ հաւասարը հաւասարի, բայց ամէն դէպքում Սասնայ Ծռեր խմբաւորման դիրքերը բաւականին ամուր էին քանի որ իրենց մօտ կային պատանդներ։ Եւ մենք բոլորս հասկանում էինք, որ էս մարդիկ ահաբեկիչներ չեն՝ ինչքան էլ որ յայտարարուի (թէեւ արդէն պաշտօնապէս անգամ հրաժարուել են էդ բանից), որովհետեւ տեռորիստները էդպէս չեն անում [...]։ Էն պահից երբոր իրենք բաց թողեցին բոլոր պատանդներին, էդ պահից իրենք դարձան պատանդ ինչ որ տեղ իշխանութիւններին, որովհետեւ էդ պահից երբոր բաց թողեցին՝ նրանց լոյսն են անջատել, նրանց սնունդ չի հասցւում, այսինքն իրենք են յայտնւում մի իրավիճակում երբոր արդէն, էսպէս ասեմ, բանակցելու, եւ եթէ կոպիտ բառ չասեմ՝ առեւտուր անելու, էլ տեղ չեն թողել։ Եւ իրենք յայտնուել են բաւականին ծանր վիճակի մէջ։ Ի հարկէ մենք բոլորս շատ ենք ուզում որ պատանդներին բաց թողեն, եւ ճիշտ են արել որ բաց են թողել որովհետեւ իրենց մօտ մարդիկ են որոնք որեւիցէ կապ չունեն էն տիրող իրավիճակի հետ ինչ որ կայ երկրում։ Այսինքն հիմա կարող ենք ասել՝ որ պատճառա-հետեւանքային կապ կայ, որ Սասնայ Ծռերը դուրս են եկել, արդարութիւն են պահանջում եւ այլն, եւ այլն, բայց էն պահից երբոր նրանք վնաս կը տային էդ մարդկանց արդէն այլ կը լինէր նաեւ հասարակութեան վերաբերմունքը իսկ մինչեւ էս պահը հասարակութեան վերաբերմունքը միանշանակ չէ որքան էլ որ իշխանական լրատուամիջոցները փորձեն այլ պատկեր ստեղծել։»

– Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը կը տարածէ յայտարարութիւն մը՝ ուր կոչ կ՚ընէ ապստամբներուն յանձնուիլ։

– Ժամը 18:00-ի մօտերը գրաւեալ տարածքին վրայ կը սկսին շրջիլ ռազմական ուղղաթիռներ, բորբոքելով փողոցի հաւաքուածներուն բարկութիւնը։

– Ժամը 20:00-ին տեղի կ՚ունենայ Խորենացի փողոցի հանրահաւաքը։ Ենիգոմշեան կը նշէ հաղորդակցական կապին խիստ դժուարութիւնը խումբին հետ, չեշտելով որ արդէն 48 ժամ է որ չունին սնունդ, ելեկտրականութիւն, բժշկական ծառայութիւն եւ կապ (հեռախօսային կապը կը տեւէ ընդամէնը քանի մը վայրկեան)։ Կ՚ըսէ՝ որ հակառակ նոր բանակցողի նշանակումին (Աշոտ Մինասեան), մէկ օր է արդէն ոչ մէկ բանակցութիւն կայացած է։ Իր բառերով՝ «ամէն ինչ սառած վիճակում է։» Կ՚աւելցնէ՝ որ այսօր Ժիրայր Սէֆիլեան կը գտնուի ամբողջական մեկուսացումի մէջ։ Բացի փաստաբաններէն, արգիլած են իր հետ հանդիպումները, նոյնիսկ իր հարազատներուն կողմէ։ Կը տեղեկացնէ նաեւ՝ որ վերջին ձերբակալուողներէն մէկն է ընդդիմադիր լրագրողուհի Սիւզան Սիմոնեան։

– Ոստիկանութիւնը կը յայտնէ՝ որ զինուած խումբը այսօր այրած է գունդի երեք ծառայողական մեքենայ» («Ոստիկանութիւն. զինուած խումբը այսօր այրել է գնդի 3 ծառայողական մեքենայ», *Հետք*, 25 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/69429/ostikanutyun-zinvats-khumby-aysor-ayrel-e-gndi-3-tsarayoxakan-meqena.html)։

– Հանրահաւաքէն ետք ցուցարարները կը սկսին բազմամարդ բողոքի երթ, վանկարկելով՝ «միացում», «Սերժի՛կ, հեռացիր», «Պաւլիկ», «Վարուժան», «Ժիրայր», «յաղթանակ», «տեռորիստը Սերժն ա», «Ազդամը մեր հայրենիքն է», «Հող յանձնողին յանձնել հողին», «Հայե՛ր միացէք։ Միացում, միացում»։ Երթի ուղերթը եղաւ՝ Նար-Դոս փողոց, Վարդանանց փողոց, Սախարովի անուան հրապարակ, Նալբանդեան փողոց, Աբովեան փողոց եւ Հանրապետութեան հրապարակ, որմէ ետք վերադարձ՝ Տիգրան Մեծի փողոց եւ Խորենացի փողոց (Խորենացի փողոց կը հասնին Յուլիս 26-ին)։ Իրենց հետ էին Հիմնադիր Խորհուրդի անդամները, Գերագոյն Խորհուրդի նախկին պատգամաւոր

➯ 6


5

## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

Ալբերտ Բաղդասարեան, Ժառանգութիւն կուսակցութեան փոխնախագահ Արմէն Մարտիրոսեան, Հիմնադիր Խորհրդարանի անդամ Ալեք Ենիգոմշեան, Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութեան վարչութեան անդամ Նիկոլ Փաշինեան, գրաւեալ տարածքը գտնուող Սասնայ Ծռեր խումբի Հայկ Կիւրեղեանի հայրը, Արձագանք ստուդիայի հիմնադիր Եղիշէ Պետրոսեան եւ ուրիշներ:

Փաշինեան կը նշէ՝ որ փոխուած է պայքարի խորհրդանիշը, ինք կողմնակից էր բաց ձեռքերու իսկ ցոյցին այժմ բռունցքներ կը բարձրանան, որ կը խորհըրդանշէ պայքարի տրամաբանութեան փոփոխութիւնը:

Լրագրողուհի Աննա Պապիկեան կը բացատրէ՝ որ այսօրուան հանրահաւաքը եւ բողոքի երթը դարձան իւրայատուկ. «[Ա]յսօր առաջին անգամ հաւաքուածները, որոնց թիւը քառակի, հնգակի անգամ չատ էր նախորդ հաւաքների համեմատ, երթով չարժուեցին Երեւանի կենտրոնական փողոցներով: Մօտ 5-6 հազար հոգի՝ մի մարդ դարձած «Պաւլիկ», «Ժիրայր», «Հայաստան», «Սերժ հեռացիր», «Սասնայ Ծռեր», «Հերոսներ» եւ նմանատիպ այլ վանկարկումներով, ոտքերը գետնին խփելով, քայլում էին առաջ» (Աննա Պապիկեան, «Սասնայ Ծռերի ապստամբութիւնը այս գիշեր դարձաւ հայ ժողովրդի ապստամբութիւնը», *Հետք*, 26 Յուլիս 2016, http://www.hraparak.am/?p=118536&l=am/sasna+crer-i+apstambutyuny+ays+gisher+dardzav+hay+goxovrdi+apsatmbutyuny+tesanyut+fotosharq):

Յուլիս 26-ի առաւօտեան վերադառնալով Խորենացի փողոց, Ալեք Ենիգոմշեան կ'աւարտէ հաւաքը. «Սիրելի ժողովուրդ, Սասնայ Ծռերի ապստամբութիւնը այս գիշեր դարձաւ հայ ժողովրդի ապստամբութիւնը: Յաղթանակի պահը մօտենում է, լինենք զգօն, լինենք վճռական, մենք արդէն յաղթում ենք: Խնդրում եմ, պահանջում եմ բոլորից՝ ոչ մի բախում չստեղծել ոստիկանների հետ, բացի, եթէ իհարկէ բախումը սկսուի իրենց կողմից, այդ ժամանակ կը տեսնեն, թէ ինչ կը լինի ժողովրդի ոխը: Ժողովուրդ, այս գիշեր ով կարող է, ցանկանում է, մնում է այստեղ: Կոչ եմ անում՝ բոլոր հայաստանցիներին վաղը երեկոյեան հաւաքուել այդ հրապարակում, վաղը այստեղ 50 հազար մարդ պետք է լինի...»:

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 26 ՅՈՒԼԻՍ** (տասներորդ օր)

– Վաղ առաւօտեան, Սասնայ Ծռերու անունով ֆէյսպուքեան էջը կը տարածէ հետեւեալ յայտարարութիւնը.

«Այսօր՝ 26-ի գիշերը եւ առաւօտեան Սասնայ Ծռեր խմբի ազատագրած տարածքում տեղի է ունեցել 2 պատահար: Գիշերը ժամը 2-ի սահմաններում տարածքին յարակից ոստիկանական պատնէշից դաւադրաբար կրակ են բացել, որի արդիւնքում ոտքերից վիրաւորուել են Սասնայ Ծռեր խմբի անդամներ Աչոտ Պետրոսեանը եւ Յովհաննէս Յարութիւնեանը: Նրանք տեղափոխուել են հիւանդանոց: Առաւօտեան ժամը 7-ի սահմաններում արիասիրտ մի հայորդի՝ Արթուր Սարգսեանը, իր անձնական օգտագործման մեքենան ամբողջութեամբ բեռնել է սննդով եւ ճեղքելով ոստիկանական արգելապատնէշը, հասել ազատագրուած տարածքի մուտքի մօտ, ոստիկանները բոլոր կողմերից կրակ են բացել Արթուրի մեքենայի վրայ: Բարեբախտաբար Արթուրը ոչ մի վնասուածք չի ստացել եւ բարեյաջող կերպով սնունդը տեղ է հասցրել: Բացի այդ գնդի տարածքում յայտնաբերուել են գաղտնի ցուցակներ, որոնց նախնական ուսումնասիրութեամբ ենթադրւում է, որ դրանք պատկանում են գործակալների եւ պոռնկութեամբ զբաղուողներին: Այդ տուեալների համադրութեամբ հիմնաւոր կասկածներ են առաջանում, որ այս տարածքում գտնուած ՊՊԾ գնդի սպաները, փաստօրէն զբաղուել են կաւատութեամբ: Նշուած ցուցակներում գրանցուած են 146 ենթադրեալ գործակալներ եւ 35 մարմնավաճառութեամբ զբաղուողներ:

«Կոչ ենք անում չարունակել համախմբման պայքարը: Յաղթանակը չատ մօտ է:»

– Առաւօտեան, քաղաքացիներուն կողմէ հաւաքուած սնունդը (մօտ 15-20 տոպրակ) Ժառանգութիւն կուսակցութեան անդամներ Արմէն Մարտիրոսեանի եւ Զարուհի Փոստանջեանի ուղեկցութեամբ կը հասնի ոստիկանական պատնէչի մօտ: Ոստիկանութիւնը կտրականապէս եւ վերջնականապէս կը մերժէ զանոնք հասցնել ապստամբներուն («Զարուհի Փոստանջեանը փորձում է սնունդ փոխանցել Սասնայ Ծռերին», *Lragir.am,* 26 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136567: Տիրայր Մուրադեան, «Ոստիկանները թոյլ չտուեցին Սասնայ Ծռերին սնունդ փոխանցել», *Armtimes.com,* 26 Յուլիս 2016, http://armtimes.com/hy read/90303):

– Հայաստանի Մարդու Իրաւունքների Պաչտպանի աչխատակազմը կը յայտարարէ՝ թէ 2016 Յուլիս 17-22-ի ընթացքին ստացած է բանաւոր եւ գրաւոր 114 հաղորդում: Անոնք գլխաւորաբար կը վերաբերին ոստիկանութեան ծառայողներու կողմէ քաղաքացիներուն բերման ենթարկելուն, իրենց նկատմամբ բռնութեան գործադրումին, քաղաքացիներուն անձնական իրերը սահմանուած ընթացակարգերու խախտումով վերցնելուն եւ չվերադարձնելուն, ոստիկանութեան բաժինները փաստաբաններու մուտքը խոչընդոտելուն եւ բերման ենթարկուածներու՝ հեռաձայնի իրաւունքը չապահովելուն:

– Կէսօրուայ մօտ Սասնայ Ծռերու անունով ֆէյսպուքի էջը կը հրապարակէ հետեւեալ հաղորդագրութիւնը.

«Մենք պահանջում ենք իչխանութիւններից տրամադրել մեզ լրատուամիջոցներ, ինչպէս նաեւ որպէս բանակցային կողմ ներգրաւել Աչոտ Մինասեանին (Աչոտ Երկաթ): Ինչպէս նաեւ տեղեկացնում ենք, որ Սասնայ Ծռերի անդամները չեն խախտել նէյտրալ գօտին եւ նրանք գտնուել են մեր կողմից վերահսկուող տարածքում:»

– Սասնայ Ծռերու երկու վիրաւոր անդամները՝ նկարիչ Աչոտ Պետրոսեան եւ Յովհաննէս Յարութիւնեան, Էրեբունի բժշկական կեդրոնին մէջ կ'ենթարկուին վիրահատութեան եւ այժմ կը գտնուին վերակենդանացումի բաժինը:

Սասնայ Ծռերու ֆէյսպուքի էջը կը չեչտէ Աչոտ Պետրոսեանի նկարիչ ըլլալու հանգամանքը, ատակօրէն մարդկային գոյն մը տուած ըլլալու համար անընդհատ կրկնուող զինեալ ապստամբութեան ռազմաչունչ գաղափարին:

– Ալեանս կուսակցութիւնը կը յայտարարէ՝ թէ այսօր պաչտօնապէս պիտի միանայ բողոքի չարժումին:

– Համախմբում կուսակցութիւնը որոչում կ'ընդունի մասնակցիլ հաւաքներուն եւ երթերուն:

– Ոստիկանութիւնը կը տարածէ հաղորդագրութիւն մը՝ ուր կը պահանջէ հաւաքը Խորենացի փողոցէն տեղափոխել ուրիչ վայր, իբր տեղի ունեցած անկարգութիւններուն պատճառով:

– Աչոտ Պետրոսեան եւ Յովհաննէս Յարութիւնեան կը կալանաւորուին եւ կը փոխադրուին դատապարտեալներու հիւանդանոց:

– Բերման կ'ենթարկուին Միհրան Ստեփանեան, Մհեր Մինասեան, Մելիք Դաւոյեան, Աչոտ Նաջարեան, որոնք կ'ուղեւորուէին դէպի Խորենացի փողոց («Քաղաքացիներ են բերման ենթարկուել», *Lragir.am,* 26 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136629):

– Հակառակ ոստիկանութեան պահանջքին, ժամը 20:25-ին Խորենացի փողոցին մէջ կը սկսի հանրահաւաքը:

Հանրահաւաքին բացումը կը կատարէ Ալեք Ենիգոմշեան, որ կը յիչեցնէ երէկուայ երթին յաջողութիւնը. «Գիտենք երէկուայ մեր ունեցած հզօր հանրահաւաքերթը, որը արդէն նոր իրավիճակ է ստեղծել Հայաստանում:» Ենիգոմշեան կը խօսի բանակցութիւններուն մասին, ըսելով՝ որ ըստ փոխադարձ համաձայնութեան, Սասնայ Ծռերու առաջարկներուն մասին բանակցութիւններ պէտք է կայանին պատանդներու ազատ արձակումէն ետք: Բայց ազատ արձակումէն ետք վարչախումբը մոռցաւ իր խոստումը եւ ըսաւ որ անմիջապէս պէտք է զէնքերը վար դնեն ու յանձնուին: Ենիգոմշեան կը յիչեցնէ նաեւ՝ որ համաձայնութիւններէն մէկն ալ այն էր, որ պատանդներու ազատ արձակումէն ետք տարածքին մէջ տեղադրուի տեւական լրագրողական կէտ: Լրագրողներու հետ տեղի ունեցած մէկ հանդիպումէն ետք, լրագրողները դուրս կը վտարուին տարածքէն եւ իչխանութիւնը կը մերժէ իր խոստումը չարունակել: Ուրեմն, կ'ըսէ, բանակցութիւն չկայ, այլ կայ բանակցութիւններու իմիտացիա: Կը չեչտէ, թէ իրենց պահանջքները նոյնն են՝ Սերժ Սարգսեանի հեռացում, վստահութեան կառավարութեան ձեւաւորում, ազատագրուած տարածքներու յանձնումի բացառում եւ Հայաստանի ինքնիչխանութեան հաստատում կամ վերահաստատում:

Առաջին ելոյթ ունեցողը կ'ըլլայ երգիչ եւ երգահան Ռուբէն Հախվերդեան: Հանրահաւաքի համար յառաջընթաց մը եղաւ արուեստագէտներու այս եւ յետագայ ելոյթները: Հախվերդեան կ'ըսէ. «Սերժ Սարգսեանին բերել են պաչտօնի ռուսական յատուկ ծառայութիւնները եւ նա պաչտպանում է ռուսական քաղաքականութեան չահերը: Ո՞րն է ռուսական քաղաքականութիւնը: Հայաստանն առանց հայերի [...]: Արդէն համարեայ դատարկուել է Լենինական-Գիւմրին: Նա ուզում է դատարկել Հայաստանը որպէսզի սա դառնայ իր պոլիգոնը: Իսկ դրան պլիւս մեր էդպէս կոչուած օլիգարխները եւ պաչտօնեաները նաեւ քանդում են մեր երկիրը էկոլոգիական իմաստով: Ամէն մէկը մի հանքի տէր ա, ամէն մէկը ուժ ա իրենից ներկայացնում եւ իրենցից ցածր գտնուած մարդկանց ստրկական վիճակում են տալի: Ի՞նչ է անում Սերժիկը: Մէկին մի բնակարան ա տալի, մէկին մի կտոր հաց ա տալի, նրանք էլ սուս են մնում: Էդ ա այսպէս կոչուած էդ չսիրածս բառը՝ մտաւորականութիւնը, որոնց մենք լաւ ճանաչում ենք: Բայց մտաւորականութիւնը մեր ազգն է, ազգն է մտաւորականութիւն: Ո՞նց կարող ա ինչ որ մէկը լինի մտաւորական, մէկը բանուոր: Սովետական տերմինոլոգիան ոնց որ ասես թէ ինձ համար չատ ճիչտ ա:»

Կը յաջորդէ Պարոյր Հայրիկեանի ելոյթը. «Ամբողջ մարդկութեան համար արտառոց է որ առաջին պահին ահաբեկիչ գնահատուած մարդիկ այսպիսի, կարող եմ ասել, համաժողովրդական աջակցութեան են արժանանում: Սա աննախադէպ բան է:» Ապա կ'աւելցնէ. «Մենք այսօր տեսնում ենք որ Կոմունիստական կուսակցութեան բարքերին փոխարինում է Հանրապետական կուսակցութիւնը, նոյն մօտեցմամբ, այն նրբերանգներով՝ որ ստեղծում կամ թոյլ է տալիս ստեղծուել նաեւ այլ կուսակցութիւններ որոնք դարձընում է իրեն ենթակայ:»

Հայրիկեան կը կարեւորէ Սասնայ Ծռերու սնունդի արգելումին խնդիրը. «Մենք գիտենք որ առօրեական խնդիրներից ամենակարեւորը այսօր Սասնայ Ծռերի մարդկանց, մեր ընկերների, մեր եղբայրների, մեր գաղափարակիցների սննդի հարցն է: Նրանք վեր կանգնելով ամէն ինչից, որոչեցին իրենց զոհաբերել յանուն նրա որ մեր աչքերը բացուեն: Եւ այդ հարցում նրանք յաջողութեան հասան: Նրանք այսօր զրկուած են սննդից: Ի՞նչ լուծում կայ: Միջազգային կազմակերպութիւններն ասում են նման իրավիճակներում մենք գործելու փորձ չունենք, հայաստանեան հասարակական կազմակերպութիւններին, նաեւ պատգամաւորներին արգելում են այդ ուղղութեամբ քայլ կատարել, մեր հոգեւորականները իրենց իրաւունք չեն վերապահում, կամ չեն կարծում որ դա իրենց հարցն է, դիմել Հայաստանի իչխանաւորներին ասելու՝ որ լսէ՛ք, այսպէս չի կարելի, մենք մի քանի տարի առաջ նչել ենք մեր աչխարհում առաջին քրիստոնէական պետութիւն լինելը, մեզ որպէս այդպիսին էլ ընկալում են, էս ի՞նչ էք անում. նրանք էլ չեն գործում:»

Ցուցարարները՝ Հայրիկեանի առաջնորդութեամբ կը վանկարկեն «Սերժի՛կ, հեռացիր»:

Ելոյթ կ'ունենայ 2013-ի նախագահական ընտրութիւններու թեկնածու Անդրիաս Ղուկասեան. «Այսօր ապստամբութեան տասերորդ օրն է: Եւ դուք տեսնում էք, մեր չարքերը մեծանում են: Ազնիւ մարդիկ դուրս են գալիս փողոց եւ պահանջում են թոյլ չտալ արիւնահեղութիւն, պահանջում են ուժ չգործադրել Սասնայ Ծռեր խմբի դէմ:» Կ'ըսէ՝ թէ կան մարդիկ որոնք կը պնդեն թէ զինուած ապստամբութիւնը սխալ ճանապարհ է: Ղուկասեան անոնց կը պատասխանէ. «Եթէ սա ճանապարհ չի (իհարկէ սա ծայրայեղ անհրաժեչտութեան գործողութիւններ են) ապա բոլոր նրանք, ովքեր ասում են, որ կայ այլ ճանապարհ, թող յետ վերադարձնեն մեզ Դեկտեմբերի 6-ին կեղծուած հանրաքուէն, թող յետ վերադարձնեն մեզ Միհրան Պօղոսեանի 800 միլիոնը Պանամայում կուտակուած, թող յետ վերադարձնեն մեզ 2013 թուականի կեղծուած նախագահական ընտրութիւնների արդիւնքները, թող յետ վերադարձնեն մեզ բազմաթիւ ոտնձգութիւններ որոնք արարուել են մեր քաղաքացիների նկատմամբ, եւ ամենակարեւորը՝ թող յետ վերադարձնեն Թալիչ գիւղին իրա հայրենիքում ապրելու հնարաւորութիւնը:»

Ելոյթ կ'ունենայ Ժառանգութիւն կուսակցութեան անդամ եւ Երեւանի աւագանիի անդամ Դաւիթ Սանասարեան, որ կոչ կ'ընէ ոստիկաններու ծնողքներուն խօսիլ իրենց զաւակներուն հետ, որպէսզի թոյլ չտան պաչտպանել «ազգի արիւնը ծծող եւ ոչնչացնող դաւաճաններին:»

Ելոյթ կ'ունենայ Հայկազն կուսակցութեան անդամ Արմէն Յովհաննիսեան. «Մենք պէտք է հասկանանք, որ հայ քաղաքական մտքի վերջին տարիների ամենակարեւոր պահանջներն են դրել տղաները: Դա հայ ազգի լինելու-չլինելու հարցն է:»

Ելոյթ կ'ունենայ դերասանուհի Թամար Յովհաննիսեան. «Էսօր ժողովուրդը խկապէս աւելի է քան երէկ, եւ երէկ ժողովուրդը աւելի էր քան դեռ առաջին օրը: Սա նչանակում ա որ պրոցէսը չատ արագ թափով բազմապատկւում է:»

Հանրահաւաքը կ'աւարտէ Ալեք Ենիգոմշեան՝ որ ժողովուրդին կը հրաւիրէ բողոքի երթի: Ան կը խնդրէ որ երթը ըլլայ խաղաղ եւ կը զգուչացնէ հեռու մնալ հրահրուած սադրանքներէ:

Հանրահաւաքին ներկայ էին Րաֆֆի Յովհաննիսեան եւ Նիկոլ Փաչինեան:

– Ժամը 21:50-ին կը սկսի բողոքի երթը, որուն 7

6

## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

կը մասնակցի աւելի քան հինգ հազար անձ: Երթը կ'անցնի Տիգրան Մեծ պողոտայով: Ոստիկանութեան շէնքին մօտ երթի մասնակցողները կը վանկարկեն «Սասնայ Ծռեր»: Երթի մասնակցողները Տիգրան Մեծ պողոտային մէջ կը բանակցին ոստիկաններուն հետ, որմէ ետք ժամը 00:25-ին կը վերադառնան Խորենացի փողոց:

Ականատեսներ կը պատմեն՝ որ Տիգրան Մեծ պողոտային մէջ քաղաքացիական հագուստով անձեր եւ ոստիկաններ կը ցրեն մարդոց՝ իրենց քշելով դէպի կայարան, իսկ ոմանց բերման կ'ենթարկեն («Հազարաւոր մարդիկ կրկին մասնակցեցին երթին», *epress.am*, 27 Յուլիս 2016, http://www.epress.am/):

Խորենացի փողոցին մէջ ելոյթ կ'ունենայ Ալբերտ Բաղդասարեան: Ան կ'ըսէ՝ թէ ընտրութեան առջեւ պիտի դնեն իշխանութիւններուն եւ կը յայտարարէ՝ որ շուտով պիտի ներկայացնէ իրենց յետագայ քայլերը:

Ելոյթ կ'ունենայ Անդրիաս Ղուկասեան, որ կոչ կ'ընէ ժողովուրդին իջնել փողոց թիկունք կանգնելու Սասնայ Ծռերուն:

Ելոյթ կ'ունենայ Պարոյր Հայրիկեան՝ որ ինքնակամ կոչ կ'ընէ հաւաքուածներուն երթալ տուն եւ հաւաքուիլ վաղը ժամը 19:00-ին: Այս յայտարարութիւնը դժգոհութիւն կը յառաջացնէ թէ՛ հաւաքուածներուն եւ թէ՛ հարթակին մէջ: Ասիկա Հայրիկեանի կողմէ զանգուածի տրամադրութիւնը չհասկնալու ցուցանիշ մըն էր: Երբ հազարաւոր մարդիկ ժամեր շարունակ հանրահաւաք կազմակերպած են՝ վերելքային ելոյթներով, ապա բողոքի երթ՝ ուժեղ վանկարկուներով, եւ վերադարձած Խորենացի փողոց բարձր տրամադրութեամբ ու շարունակելու վճռականութեամբ, հոգեբանօրէն կարելի չէ մէկ երկվայրկեանի մէջ անոնց առաջարկել ամէն բան վերջ տալ եւ տուն վերադառնալ: Ժամանակի ընթացքին զարգացած տրամադրութիւնները կարելի չէ յանկարծակի ու անսպասելի կերպով կոտրել: Ասիկա պատճառ կը հանդիսանայ՝ որ վէճեր յառաջանան նաեւ հարթակին վրայ Հայրիկեանի, Ենիգոմշեանի եւ Մարտիրոսեանի միջեւ: Թամարա Յովհաննիսեան Հայրիկեանին կը յորդորէ հեռանալ:

Հանդստութիւն պահպանելու համար, Ալեք Ենիգոմշեան կ'ըսէ որ հաճելի նորութիւն ունի, քանի որ իր ողջոյնի խօսքը ըսելու համար այստեղ կը գտնուի քանատահայ դերասանուհի Արսինէ Խանճեան:

Առաջին անգամ ըլլալով կ'ընդգրկուի սփիւռքը: Արսինէ Խանճեան կ'ունենայ աշխոյժ ելոյթ մը. «Երբ որ Երեւանի կեդրոնէն կ'անցնիմ եւ կը տեսնեմ լուսաւոր մեր մայրաքաղաքը, կը մտածեմ արդեօք մնացեալ ժողովուրդն ալ լուսաւորուած կը զգա՞յ այսօր: Ըստ երեւոյթին՝ ոչ: Պահանջքներ ունիք եւ ձեր պահանջքները ճիշդ են: Մեր երկրին մէջ պէտք է կարենայ մեր կառավարութիւնը յարգել ժողովուրդի խօսքը, պահանջքը եւ մասնակցի ոչ թէ միայն մէջտեղ բերելով ոստիկանութեան ուժը այլ մասնակցի յատկապէս ոստիկանութիւնը եւ ժողովուրդը եւ կառավարութիւնը մօտեցնելով:»

Արմէն Մարտիրոսեան կոչ կ'ընէ հաւաքուիլ վաղը: Ալեք Ենիգոմշեան կը յայտարարէ, որ ով որ կը ցանկանայ մնալ՝ թող մնայ, ով որ չի ցանկանար՝ կրնայ մեկնիլ, իսկ վաղուան հաւաքը տեղի պիտի ունենայ այստեղ, ժամը 19:00-ին: Ժամը 03:00-ին Խորենացի փողոցը դատարկ էր:

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 27 ՅՈՒԼԻՍ** (տասնըմէկերորդ օր)

Յուլիս 26-ի կէս գիշերէն ետք, Սասնայ Ծռեր անունով Ֆէյսպուքի էջը կը հաղորդէ. «Քիչ առաջ ոստիկանները յարձակւում են գործել գնդի տարածք, վիրաւորել են Պաւէլ Մանուկեանը, Արամ Մանուկեանը, Գէորգ Իրիցեանը եւ հաւանաբար խմբի այլ անդամներ: Ոստիկանները առեւանգել են Պաւէլին, Արամին, Գագիկ Եղիազարեանին եւ խմբի եւս մէկ անդամի:»

– Հայաստանի ոստիկանութեան խօսնակ Աշոտ Ահարոնեան կէս գիշերէն ետք Ֆէյսպուքի իր էջին մէջ կը գրէ.

«ՊՊԾ գնդի տարածքում իրաւապահներին են յանձնուել զինուած խմբի անդամներ Գագիկ Եղիազարեանն ու Արամ Յակոբեանը:

«Տեղի է ունեցել փոխհրաձգութիւն, որի հետեւանքով վիրաւորուել է իրաւապահներից մէկը, ինչպէս եւ Պաւէլ Մանուկեանն ու նրա որդի Արամը: Երեքն էլ անմիջապէս տեղափոխուել են հիւանդանոց:

«Այս պահին հրաձգութիւնը դադարել է եւ ընթանում են բանակցութիւններ՝ զինուած անձանց յանձնուելու գործընթացը աւարտին հասցնելու համար:»

– Սասնայ Ծռեր կը տարածէ հետեւեալ յայտարարութիւնը. «Քիչ առաջ ոստիկանները յարձակւում են գործել գնդի տարածք, վիրաւորուել են Պաւէլ Մանուկեանը, Արամ Մանուկեանը, Գէորգ Իրիցեանը եւ հաւանաբար



*Երբ Խորենացի փողոցէն, Յուլիս 25*

խմբի այլ անդամներ: Ոստիկանները առեւանգել են Պաւէլ Մանուկեանին, Արամ Մանուկեանին, Գէորգ Իրիցեանին, Գագիկ Եղիազարեանին եւ խմբի եւս մէկ անդամի:»

– Հայաստանի ոստիկանութեան խօսնակ Աշոտ Ահարոնեան Ֆէյսպուքի իր էջին մէջ կը գրէ.

«Իրաւապահների տուեալներով՝ զինուած խմբի եւս երկու վիրաւոր անդամ գտնւում են ՊՊԾ գնդի տարածքում: Բանակցութիւններ են ընթանում. իրաւապահները փորձում են համոզել, որ նրանց նոյնպէս բուժօգնութիւն ցուցաբերուի, բայց վիրաւորների ընկերները մերժում են:

«Յիշեցնենք, որ հէնց առաջին օրուանից գնդի տարածքում է եւս մէկ վիրաւոր, ու չնայած իրաւապահները բազմիցս յորդորել են թոյլատրել, որ նրան նոյնպէս բուժօգնութիւն տրամադրուի, զինուած խմբի անդամները մերժել են առաջարկը:»

– Էրեբունի բժշկական կեդրոնի բժիշկները ժամը 04.00-ի մօտերը կը յայտնեն՝ այսօր ընդունած են երեք վիրաւոր: Անոնք վաղ առաւօտեան կատարուած փոխհրացանաձգութեան վիրաւորեալներն են: Մէկը ոստիկանն է, որուն վիճակը միջին ծանրութեամբ է: Միւսները Պաւէլ Մանուկեանն ու իր որդի Արամ Մանուկեանն են, որոնք ստացած են ազդրերու հրազէնային վիրաւորումներ եւ վիրահատութենէ ետք այժմ կը գտնուին վերակենդանացումի բաժին:

Սասնայ Ծռերու միւս վիրաւորեալները կը մնան գրաւեալ տարածքին մէջ:

– Մամուլի ասուլիս Ալեք Ենիգոմշեանի հետ: Ասուլիսին սկիզբը Սասնայ Ծռերու Կիւրեղեան եղբայրներու հայրը՝ Արմենակ Կիւրեղեան, կը պատմէ կէս գիշերէն ետք Սասնայ Ծռերու եւ ոստիկանութեան միջեւ կատարուած հրացանաձգութեան մասին.

«Այսօր առաւօտեան, որդիս Արեգ Կիւրեղեանը հեռախօսազրոյց ունեցաւ իմ հետ եւ յայտնեց դէպքի մանրամասնութիւնների մասին: Ոչ մի յատուկ օպերացիա տեղի չի ունեցել, գրոհ տեղի չի ունեցել: Երէկ ուշ երեկոյեան Պաւլիկ Մանուկեանը փորձել է բանակցել ոստիկանութեան հետ որպէսզի իրենց տրամադրեն բժիշկ կամ վիրաւորին տանեն բուժելու: Եւ այդ ժամանակ կրակ է բացուել Պաւէլ Մանուկեանի վրայ ծանր գնդացրից, գնդացրային զինատեսակից, եւ Պաւէլ Մանուկեանի որդին տեսնելով դա վազել է օգնութեան եւ նրա վրայ նոյնպէս կրակ է բացուել, [որից յետոյ Գէորգն է օգնութեան հասել եւ վիրաւորուել, ապա Սասնայ Ծռերից երկու անդամներ եւս եկել են ու վիրաւորուել]:»

Ենիգոմշեան կը տեղեկացնէ՝ որ գիշերուայ դէպքերուն հետեւանքով դուրս բերուեցաւ Սասնայ Ծռերէն չորս վիրաւոր: Ըստ իր հաղորդածին՝ այնտեղ տակաւին կը մնայ գործողութեան առաջին օրը վիրաւորուած անդամը [Սմբատ Բարսեղեան, Ջ.] եւ գիշերուայ դէպքերուն հետեւանքով թեթեւօրէն վիրաւորուած անդամը [Գէորգ Իրիցեան, Ջ.]: Կը հասկնանք, որ այնտեղ կը մնան շուրջ 25 զինեալ անդամներ:

Երէկուայ դէպքերը կը վերագրէ արտաքին սադրանքներու, թէեւ չի նշեր անուններ. «Այն ինչ որ տեղի ունեցաւ երէկ հետեւեալն էր. երբ մենք նկատեցինք որ կայ նման սադրանք, մենք ուզեցինք աւելի ստուգել վարչախումբի մտադրութիւնները եւ մեզ յստակօրէն պարզուեց որ բացի այն ինչ որ տեղի ունեցաւ խմբի ներսում եւ որի մասին այստեղ խօսուեց, կայ յստակ միտում սադրանքների միջոցով բախումներ եւ ծեծ ու ջարդ եւ բռնութիւններ հրահրել եւ իրագործել նաեւ այնտեղ հաւաքուած ժողովուրդի շրջանակներում: Եւ մենք այդ պահի դրութիւնը, պահի լրջութիւնը հաշուի առնելով, մենք գնացինք այնպիսի քայլի որ այդ բախումը, վարչախումբի նպատակադրած այդ բախումը եւ սադրանքը չիրականանայ, եւ մենք երէկ գիշերը այդ առումով անցկացնենք ժողովրդական ուժերի համար նուազագոյն վնասներով եւ այդ պայքարը կանգ չի առել եւ շարունակուելու է:» Յետագային կը նշէ՝ որ ուժային կառոյցներու սադրանքներէն խուսափելու համար էր որ որոշեցին աւարտել Խորենացի փողոցի երէկուայ հաւաքը:

Ենիգոմշեան կը տեղեկացնէ՝ որ արդէն չորրորդ օրն է որ սնունդ, կապ եւ ելեկտրականութիւն չունին: Իսկ այժմ, Սասնայ Ծռեր երկու պահանջք ունի՝ մնայուն բժշկական հերթապահութեան սահմանում (բժիշկ կայ, բայց հերթափոխութիւն չկայ) եւ հանդիպում պատգամաւորներու հետ գրաւեալ տարածքին մէջ:

– Սասնայ Ծռեր անունով ֆէյսպուքեան էջը յաւելեալ բացատրութիւններ կու տայ գիշերը կատարուածին մասին.

«Պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել ոստիկանութեանը յանձնել վիրաւոր ապստամբին: Յանձնելու գնացել է Պաւլիկը: Ոստիկանութիւնը կրակ է բացել, վիրաւորել նրան: Արամը՝ Պաւլիկի որդին, վազել է դէպի հայրը, նրան էլ են վիրաւորել: Երկու միւս տղաները՝ Գագիկն ու, կարծես, Արամը, պատգարակներ են հանել՝ վիրաւոր ընկերներին տանելու: Նրանց ձերբակալել են: Գնդում հիմա կայ մի թեթեւ վիրաւոր, որին գնդի տարածքում բժշկական օգնութիւն է ցուցաբերւում: Տղաների տրամադրութիւնը մարտական է:»

Հաւանաբար մարտականի գաղափարը լրացնելու կամ մեղմելու կամ չեչտելու կամ մարդկայնացնելու բազմակի միտումներով, Սասնայ Ծռերու Ֆէյսպուքի էջին մէջ պատճէնահանուած կը տարածուի Պաւլիկ Մանուկեանի բանաստեղծութիւնները, տպագրուած Երեւանի *Գարուն* ամսագիրին մէջ (թիւ 4, 1989): Ահաւասիկ անոնցմէ մէկը.

Նոր մայրամուտ,
Նոր արահետ,
Նոր հանդիպում
Նոր պարտէզում
Նորակոկոն շուշանների:
Ցնցուեց վարագոյրը քնքշութեամբ,
Եւ քարէ լճից մի զոյգ սեւ աչքեր,
Անհնարինութիւն յայտնելու համար փաղաքշանքով լի,
Եւ նուիրական մի հայցուոր ժպիտ՝
«Ախ, քիչ էլ, էլի»:
Ու մեն-մենակ ենք՝
Ես՝ պարտէզի մէջ,
Երկնում՝ լուսնկան,
Աղբիւրը խշշաց, ծաղկունքն հազաւ չող,
Ծղրիդը կողքիս երգեց չարական,
Ու զեփիւռի մեղմ փաղաքշանքի տակ,
Տաք գիրկս մտաւ կիզող մի տեսիլք,
Թրատեց երկնի անյայտ մի մասը
Մեռնող աստղը կեռ դաշոյնի պէս:
Բացուեց մի բորբ վէրք,
Ու փակուեց անտես...
Եղրիդը կողքիս, թեւին՝ չարական...
Նորից մենակ ենք,-
Մենք՝ պարտէզի մէջ,
Երկնում՝ լուսնկան:

– Պատասխանելով Սիրանոյշ Պապեանի հարցումին երէկ գիշեր կատարուածի մասին, Ժառանգութիւն կուսակցութեան փոխնախագահ Արմէն Մարտիրոսեան կ'ըսէ. «Բացի այդ, երէկ շատ կոպիտ սխալ կատարուեց մեր կողմից, յամենայն դէպս ես փորձել եմ անել ամէն ինչ, բայց որոշումը ժողովրդի ձեռքն է, եւ ես ասացի, որ երեկոյեան անպայման հաւաքուեն, եւ եթէ քաղաքացիները ցանկանան լուծում, այդ լուծումը կը լինի: Հարթակում կանգնած մարդիկ սխալ թոյլ տուեցին, բայց եթէ մեր քաղաքացիները երեկոյեան գան, ինչը ասել ենք ես, Ալեքը եւ Ալբերտ Բաղդասարեանը, կարծում եմ, իրավիճակը շտկել կարելի է, հակառակ պարագայում երկիր ենք կորցնում» (Սիրանոյշ Պապեան, «Երէկ շատ կոպիտ սխալ կատարուեց մեր կողմից. Արմէն Մարտիրոսեան», *Lragir.am*, 27 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136658):

– Ոստիկանները կը փակեն Խորենացի փողոցը:

– Գիշերուայ երթէն ետք բերման կ'ենթարկուին 64 քաղաքացիներ, որոնցմէ 63-ը ազատ կ'արձակուին:

– Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Զարուհի Փոստանջեան կը տարածէ հետեւեալ յայտարարութիւնը.

«Երէկ՝ Յուլիսի 26-ին, Հայաստանի Հանրապետութեան իշխանութիւնները, չարձագանքելով իմ գրաւոր դիմումներին, փաստացի մերժեցին ապահովել մեր ապստամբած քաղաքացիներին սնունդ եւ ջուր փոխանցելու հնարաւորութիւնը: Նրանց կողմից իրենց պարտականութիւնները չկատարելու վերաբերեալ պարզաբանում չտրուեց՝ նրանք լռեցին: Նրանց լռութիւնը արխնոտ է եւ աղետալի: Հասկանալի է, որ Հայաստանի Հանրապետութիւնում չեն գործում իշխանութիւնները, սակայն հասկանալի չէ մեր հոգեւոր առաջնորդի՝ Ն.Ս. Օ.Տ. Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսի եւ Հայ Առաքելական եկեղեցու հոգեւոր բոլոր առաջնորդների 8

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Կիրակի 11 Սեպտեմբեր 2016

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ**

*Մանրամասնութիւնները յաջորդիւ*

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

### ԻՄԱՍՏՈՒՆ ԽՕՍՔԵՐ

«Կեանքը չի նշանակեր ինքզինքդ յայտնաբերել: Կեանքը կը նշանակէ ինքզինքդ ստեղծել:»

«Եթէ կ'ուզես մարդոց ճըշմարտութիւնը ըսել՝ ծիծաղ յառաջացուր իրենց մօտ, այլապէս կը սպաննեն քեզի:»

«Միայն իր եւ իր ժամանակի մասին գրող անձն է որ կը գրէ բոլոր ժողովուրդներուն եւ բոլոր ժամանակներուն համար:»

**ՃՈՐՃ ՊԵՐՆԱՐՏ ՇՕՈՒ**

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 14 Օգոստոս 2016

**Տօն է**

**ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երգ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն արարողութեան:

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

7 ➪

լութիւնը, ում ես նոյնպէս դիմել էի՝ մեր ապստամբած քաղաքացիներին հոգատարութիւն ցուցաբերելու խնդրանքով:

«Յարգելի՛ հոգեւոր առաջնորդներ, մեր ապստամբած հայրենակիցները ապստամբել են մեր ժողովրդի եւ ազգային իրաւունքների համար: Որպէսզի դուք չլքէք վանքերը՝ եկէք յիշենք մեր հայոց հովուապետին՝ Գէորգ Ե Ամենայն Հայոց Կաթողիկոսին, ով 1918 թուականին հրամայեց օր ու գիշեր հնչեցնել բոլոր եկեղեցիների զանգերը եւ ոտքի հանել ժողովրդին:

«Հնչեցրէ՛ք մեր եկեղեցիների զանգերը, կանգնէ՛ք պաշտպան մեր հայրենիքին» («Զարուհի Փոստանջեանի կոչ-դիմումը Ամենայն Հայոց Կաթողիկոսին», *Lragir.am*, 27 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136703):

– Գիւմրեցի խումբ մը երիտասարդ մտաւորականներ ինքնաբուխ կերպով երթ կը կազմակերպեն բողոքելու համար զանգուածային ձերբակալութիւններուն դէմ: Անոնց կը միանան անցորդները: Անոնք նախ կը հաւաքուին Գիւմրիի Թատերական հրապարակ, որմէ ետք կ'երթան Սայեաթ Նովա փողոց եւ շուրջ քսան վայրկեան կը փակեն զայն: Անոնց կարգախօսներն էին՝ «Միացէք», «Մենք ենք տէրը մեր երկրի», «Ոչ ապօրինի ձերբակալութիւններին», «Ոչ բռնութիւններին» եւ «Սասնայ Ծռեր»: Միաժամանակ կը բարձրացնեն դեղին քարթերը: Մամուլին կու տան հետեւեալ բացատրութիւնը. «Մենք հիմա դեղին քարտ ենք ցոյց տալիս երէկ ոստիկանութեան կողմից կատարուած ապօրինի ձերբակալութիւններին եւ զէնքի կիրառմանը ՊՊԾ գնդի տարածքում: Մենք յոյս ենք յայտնում, որ բոլոր անմեղ քաղաքացիները շատ արագ ազատ կ'արձակուեն, այդ թւում եւ մեր համաքաղաքացի Լեւոն Բարսեղեանն, ով ձերբակալուել է 72 ժամով:» Ապա քայլերթով կ'ուղեւորուին դէպի Վարդանանց հրապարակ («Գիւմրիում բողոքի երթ է տեղի ունեցել», *Lragir.am*, 28 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/136738: Երանուհի Սողոյեան, «Գիւմրեցիները «դեղին քարտ» են ցոյց տալիս ոստիկանութեանը, *Հետք*, 27 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/69500/gyumrecinery-dexin-qart-en-cuyc-talis-ostikanutyany.html):

– Սիվիլնէթ շուրջ քսան վայրկեան տեւող անգլերէն հարցազրոյց մը կը տեսագրէ Արսինէ Խանճեանին հետ: Խանճեան, ի միջի այլոց, կ'ըսէ (հայերէն թարգմանութիւնը մերն է). «Անշուշտ, իբրեւ ռեւէ սփիւռքահայ, բաւական վաղ տեղեկացանք Երեւանի կացութեան եւ դէպքերուն մասին: Այս տեղեկութիւններուն համար ստիպուած էինք յենուիլ մեծ մասամբ հայկական լրատուամիջոցներուն վրայ: Բայց անմիջապէս ըմբռնեցի, որ այս ընդվզումի ու դիմադրութեան իրական պատճառներուն մասին շատ քիչ վերլուծութիւն կը կատարուէր: Ըստ երեւոյթին գոյութիւն ունէր դիմադրութիւն եւ ծայրայեղ դժգոհութեան արտայայտութիւններ, բայց դժբախտաբար ոչ մէկ տեղեկութիւն կը շրջագայէր թէ ինչու անոնք տեղի ունեցան այսօր եւ թէ ինչ էին բուն պահանջքները:»

– Երեկոյեան ժամը եօթնի մօտերը ոստիկանները Խորենացի փողոցէն բերման կ'ենթարկեն Արսինէ Խանճեանին, որուն ազատ կ'արձակեն երեք ժամ ետք:

– Ոստիկանութիւնը մեծ ուժեր կը տեղադրէ Խորենացի փողոց, ուր աստիճանաբար ժողովուրդը կը հաւաքուի: Այսօր ամբողջ օրը ոստիկանները բերման ենթարկած են Խորենացի-Քրիստափոր խաչմերուկ եկող քաղաքացիներուն:

– Պաւէլ եւ Արամ Մանուկեաններուն մեղադրանք կ'առաջադրուի:

– Համակարգող Խորհուրդի անդամներ Ալեք Ենիգոմշեան եւ Արմենակ Կիւրեղեան հաղորդագրութիւն կը տարածեն՝ որ այսօրուայ հաւաքը տեղի պիտի ունենայ Ազատութեան հրապարակին մէջ:

– Սասնայ Ծռերու անունով Ֆէյսպուքի էջը հաղորդագրէ. «Անհասանելի են դարձել Համակարգող Խորհրդի անդամներից շատերը: Արմէն Մարտիրոսեանը, Եղիշէ Պետրոսեանը, Դաւիթ Սանասարեանը բերման են ենթարկուել:»

– Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը բերման կ'ենթարկէ Ալեք Ենիգոմշեանին:

– Ոստիկանութիւնը կրցած է արգիլել ժողովուրդին հաւաքուիլ Խորենացի փողոց: Ժամը 20:00-ին մօտերը ցուցարարները կը հաւաքուին Ազատութեան հրապարակ: Տեղեկութիւն կայ, որ հաւաքէն ետք կազմակերպիչները մտադիր են երթով մեկնիլ դէպի Խորենացի փողոց:

– Ազատութեան հրապարակի մէջ վէճ տեղի կ'ունենայ ցուցարարներուն եւ Պարոյր Հայրիկեանի միջեւ: Ցուցարարներէն ոմանք խստօրէն կը պահանջեն՝ որ Հայրիկեան ելոյթ չունենայ եւ հեռանայ, քանի որ երէկ ցուցարարներուն կոչ ըրած էր տուն երթալ:

– Զինուած խումբը ազատ կ'արձակէ բուժաշխատողներէն մէկը: Գունդի տարածքին մէջ կը մնայ երեք բուժաշխատող:

– Ազատութեան հրապարակ հաւաքուած քանի մը հարիւր ցուցարարներ կը շարժին դէպի Խորենացի փողոց: Համակարգող Խորհուրդի մեծ մասը, ներառեալ Ալեք Ենիգոմշեան, բերման ենթարկուած ըլլալով, բացակայ էին: Անոնց բացակայութիւնը իբրեւ համակարգող խմբակ, ինչպէս նաեւ երէկ Հայրիկեանի պատճառով յառաջացած անհամաձայնութիւնները, մեծապէս ազդած էին այսօրուայ ցուցարարներու քանակին վրայ:

– Խորենացի փողոցին մէջ ոստիկանութիւնը տեղադրած է մեծաթիւ ուժեր:

– Ժամը 23:30-ին երթը կը հասնի Խորենացի փողոց: Ցուցարարները մինչեւ 00.30 ժամանակ տուին իշխանութիւններուն ազատելու բերման ենթարկուածները: Քիչ մը հեռու կը գտնուին ոստիկանական մեծաթիւ ուժերը՝ յատուկ միջոցներով զինուած:

– Ոստիկանութեան ներկայացուցիչը Խորենացի փողոցը հաւաքուածներուն կը յայտարարէ՝ որ բոլոր բերման ենթարկուածները ազատ արձակուած են, բացի անոնք որոնք կ'անցնին քրէական գործով: Ցուցմունք տալէ ետք անոնք ալ ազատ պիտի արձակուին:

– Ոստիկանութիւնը ցուցարարներուն կոչ կ'ընէ հեռանալ Խորենացի փողոցէն:

– Ժամը 01:20-ին ցուցարարները հետզհետէ կը սկսին մեկնիլ: Ժամը 02:00-ին Խորենացի փողոցը կը դատարկուի:

– Խումբ մը երիտասարդներ կը յայտարարեն՝ որ յաջորդ հաւաքը տեղի պիտի ունենայ Յուլիս 28-ին, ժամը 20:00-ին, Ազատութեան հրապարակին մէջ:

* * *

Այսպէս, Սասնայ Ծռերու Յուլիս 17-ի զինեալ գործողութիւնը արդէն տասնըմէկ օր է որ մեծ անհանգըստութիւն կը պատճառէ իշխանութեան, շարժելով քաղաքացիական հասարակութեան կարեւոր շերտ մը: Պաշտօնական լրատուամիջոցները սկզբնական շրջանի լռութենէն կը ստիպուին անցնիլ մեծապէս վերահսկուած ու նպատակաուղղուած ոչ-երկար հաղորդումներու եւ տեղեկատուութեան, միշտ փորձելով կատարուածը ներկայացնել իբրեւ լուր ու դէպքային դրութիւն, այսինքն՝ ոչ իբրեւ շարունակաբար եւ հետեւողականօրէն զարգացող իրադարձութիւն:

Կացութիւնը տակաւին ենթակայ է լուրջ զարգացումներու:

*Արեւելք* լրագիրի համացանցային տարբերակի Յուլիս 28-ի վաղ առաւօտեան հրապարակուած հետաքըրքրական յօդուածի մը մէջ, գրող ու փիլիսոփայ Թոնդրակ՝ որ կը հանդիսանայ վերը յիշատակուած Բ. մտաւորականներու յայտարարութիւնը ստորագրողներէն մէկը, կը գրէ հետեւեալը.

«Յընթացս վերջին մի քանի տարիների եւ մասնաւորապէս Ապրիլեան եւ Յուլիսեան ճգնաժամերի ակնյայտ դարձաւ, որ առաջիկայ տարիներին մեր հասարակութեանը վիճակուած է անցնելու ամենադժուարին փորձութիւնների միջով, որոնք արդիւնք են սեփական կառավարութեան անտարբերութեան: Տարիներ շարունակ իշխանութիւնը, ստեղծելով ու ասպարէզ նետելով զանգուածային մարդուն, նպաստեց համազգային հաւատի ոչնչացմանը: Երրորդ Հանրապետութեան եւ ոչ մի կառավարութիւն այս տարիների ընթացքում երբեւէ հաշուի չնստեց կառավարման համակարգի եւ կառավարող մարդկանց «ժամկէտանցութեան» փաստի հետ եւ ոչ մի քայլ չձեռնարկեց դրանց նորացման համար պայմաններ ստեղծելու ուղղութեամբ... Ուստի՝ եթէ Ապրիլեան ճգնաժամը դիտարկելի է իբրեւ արտաքին քաղաքականութեան ճգնաժամ, ապա Յուլիսեան ճգնաժամը ներքին քաղաքականութեան ճգնաժամի ցուցիչ է: Զախողումն ակնյայտ է...» (Թոնդրակ, «Պատմութիւնը կա՛մ ձախողում են, կա՛մ էլ յաջողում», *Արեւելք*, 28 Յուլիս 2016, http://www.arevelk.am/):

Վերջապէս, *Ջահակիր*ի այս եւ նախորդ համարի յօդուածները գրուեցան ու մեկնաբանուեցան սփիւռքի մէջ, այստեղ՝ Գահիրէ: Կը ծագի էական հարցը: Որքան դիւրին (թէեւ շատերու համար անբաղձալի) եղաւ այստեղէն մեկնաբանել Հայաստանի դէպքերը, քննադատել իշխանութիւնները եւ իշխանամէտ մտաւորականները եւ փորձ կատարել ներկայացնել Հայաստանի քաղաքացիական հասարակութեան կարեւոր, հասուն ու գիտակից շերտի մը շարժումն ու շարժունակութիւնը: Արդե՞օք սփիւռքի մէջ կարելի է կատարել նմանատիպ համակարգային (եւ ոչ թէ ձեւական ու անվնաս) քննադատութիւն-մեկնաբանութիւն միութենական իշխանականներուն մասին: Սփիւռքի կառուցուածքային կազմը լիակատար երկիրի մը մանրապատճէնն է՝ կեդրոնական իշխանութիւն մը իր ղեկավար մարմիններով ու խորհրդարաններով (եգիպտահայութեան պարագային՝ Թեմական Ժողով եւ Քաղաքական Ժողով), ընդդիմադիր կուսակցութիւններ՝ իւրաքանչիւրը իր պաշտօնական մարմիններով ու մամուլով, եւ այս բոլորին ենթարկուող քաղաքացիական հասարակութիւն մը: Սփիւռքեան ինքնաքննադատութիւն մը մինչեւ ո՞ւր կրնայ հասնիլ: Բուրգային կառուցուածքի մինչեւ ո՞ր բարձրութիւնը կրնայ հասիլ: Իսկ ինչո՞ւ բացայայտ ապստամբութիւններ եւ յեղափոխութիւններ չեն կատարուիր սփիւռքի մէջ, իշխանափոխութեան պահանջքներ չի ներկայացներ հասարակութիւնը: Սփիւռքահայութեան մէջ բողոքողն ու չհանդուրժողը պարզապէս կը հեռանան կառոյցներէն, քանի որ կարելիութիւն ունին շնչելու ու ապրելու անոնցմէ հեռու, բուն հիւրընկալ երկիրի ոչ-հայկական կառոյցներուն մէջ: Հայաստանի մէջ բողոքողը կա՛մ կ'արտագաղթէ՝ որ այնքան ալ դիւրին բան մը չէ, եւ կա՛մ կ'ըմբոստանայ իշխանութեան դէմ: Եւ ճիշդ այս պատճառով է՝ որ կառավարութիւնը կը քաջալերէ արտագաղթը: Երեւակայեցէ՛ք՝ եթէ վերջին քառորդ դարու ընթացքին արտագաղթած միլիոնէ աւելի դժգոհները շարունակէին մնալ երկիրին մէջ եւ այսօրուայ ցոյցերուն որոշէին իրենց մասնակցութիւն բերել...:

Հայաստանի մէջ, հակառակ բազում դժուարութիւններուն ու վտանգներուն, տակաւին կարելի է վանկարկել «Սերժի՛կ, հեռացիր»: Կարելի՞ է սփիւռքի մէջ, առաւելագոյն դժգոհութեան պարագային, նման վանկարկում կատարել իր սեփական ղեկավարներուն նկատմամբ, օրինակ, ըսել՝ «..., հեռացիր» (տեսա՞ք, անկարելի եղաւ անուն տեղադրել): Հայաստանի քաղաքացիական հասարակութիւնը քանի մը քայլ առաջ է սփիւռքահայ (սփիւռքի կառոյցներուն ենթարկուող) քաղաքացիական հասարակութենէն:

*Ջահակիր*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1772 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՕԳՈՍՏՈՍ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٧٢ الخميس ١١ أغسطس ٢٠١٦


## ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ԱՒԱՐՏԸ

### (Համառօտ օրագրութիւն՝ 28–31 Յուլիս)

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ՅՈՒԼԻՍ** (տասներկրորդ օր)

– Երեկոյեան տեղի կ՚ունենայ հանրահաւաք Ազատութեան հրապարակին մէջ, առաջնորդութեամբ Ժառանգութիւն խմբակցութեան անդամ Արմէն Մարտիրոսեանին: Ժամը 21:00–ին, դարձեալ Մարտիրոսեանի առաջնորդութեամբ, կը կատարուի բողոքի երթ, որ թէեւ նախատեսուած էր հասնիլ մինչեւ Բաղրամեան պողոտայ, բայց յորդառատ անձրեւի պատճառով կանգ կ՚առնէ Ֆրանսայի հրապարակ, որմէ կը վերադառնայ Ազատութեան հրապարակ: Մարտիրոսեան կոչ կ՚ընէ հաւաքուիլ վաղը, ժամը 19:00–ին, Ազատութեան հրապարակ («Յայտարարուեց անհնազանդութեան փուլը. առաջին ակցիա», *Lragir.am*, 28 Յուլիս 2016, http://www. lragir.am/index/arm/0/country/view/136804):

**ՈՒՐԲԱԹ, 29 ՅՈՒԼԻՍ** (տասներրորդ օր)

– Հայաստանի ոստիկանութեան խօսնակ Աշոտ Ահարոնեան Յուլիս 27–ին յայտարարած էր՝ որ «ՊՊԾ գնդի տարածքում իրաւապահներին են յանձնուել զինուած խմբի անդամներ Գագիկ Եղիազարեանն ու Արամ Յակոբեանը:» Այսօր, Հայաստանի ոստիկանութեան Ձերբակալուածների Պահպանման Վայրերում (ՁՊՎ) վերահսկողութիւն իրականացնող հասարակական դիտորդի խումբի նախագահ Յասմիկ Սահակեան լրագրողներուն հետ ունեցած զրոյցին ընթացքին Յակոբեանի մասին կ՚ընէ հետեւեալ յայտարարութիւնը. «Քիչ առաջ առանձնազրոյցի ժամանակ նա յայտարարեց, որ երբ Պաւել Մանուկեանին եւ իր որդուն վիրաւորել էին, ինքը պատգարակով գնացել էր եւ վիրաւորներին տեղափոխում էր ՊՊԾ տարածքից դուրս, որպէսզի նրանց տեղափոխեն հիւանդանոց: Այդ ընթացքում նա անզէն է եղել: Տեղափոխելու ընթացքում 7 ոստիկաններ յարձակուել են իր վրայ, ՊՊԾ–ի տարածքում 7 հոգով ծեծել են: Ապա նրան նստացրել են աւտոմեքենան, Խորենացու փողոցից մինչեւ Նալբանդեան՝ ԱԱԾ շէնքի երրորդ յարկ բարձրացնելն անգամ իրեն ծեծել են» («Ես ինքնակամ չեմ յանձնուել, 7 ոստիկան յարձակուել են, ծեծել. Սասնայ Ծռեր խմբի անդամ», *NewsBook*, 29 Յուլիս 2016, http://newsbook. am/?p= 87516%2 Fes+inqnakam+chem+handznvel+7 vostikan+ hardzakvel+ en+cecel+sasna+crer+xmbi+andam):

– Բերման կ՚ենթարկուի Հակաճգնաժամային Խորհուրդի անդամ Ալբերտ Բաղդասարեան:

– Երեկոյեան փոխհրաձգութեան հետեւանքով կը վիրաւորուին Սասնայ Ծռերէն Արթուր Մելքոնեան եւ Արմէն Լամբարեան՝ որոնք կը փոխադրուին հիւանդանոց:

– Ազատութեան հրապարակի հանրահաւաքէն ետք, ժամը 21:30–ին մօտերը, ցուցարարներուն մէկ մասը ճեղքելով ոստիկանական պատնէշը կը մտնէ Սարի Թաղ, ուր ճանապարհ կայ դէպի գրաւեալ տարածք: Ոստիկաններուն մէկ մասը Խորենացի փողոցէն կը շարժի դէպի Սարի Թաղ: Ոստիկանութիւնը կը դիմէ բռնութեան եւ գործածէ յատուկ միջոցներ: Տեղի կ՚ունենայ քարկոծում, հրացանաձգութիւն: Քաղաքացիական հագուստով ոստիկաններ կը ծեծեն ցուցարարները («Կրակոցներ եւ պայթիւններ ՊՊԾ գնդի տարածքում եւ Սարի Թաղում», *Lragir.am*, 29 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/ 136886):

Ոստիկանութիւնը կը նետէ նաեւ պայթուցիկ նիւթեր, որոնց պատճառով թուփեր կ՚այրին եւ քարեր կը կոտրին ու կը թափին գետին (Դիանա Ղազարեան, «Սարի Թաղի բնակիչ. «Նենց իրավիճակ էր ստեղծուել, ոնց որ Ղարաբաղի բլինդաժներում պառկած լինէի», ***Հետք***, 30 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/ 69605/sari-taxi-bnakich-nenc-iravitchak-er-stextsvel-onc-or-xarabaxi-blindazhnerum-parkats-linei.html):

Ըստ Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլիայի Վանաձորի գրասենեակին, Սարի Թաղի եւ Խորենացի փողոցի մէջ վնասուածք կը ստանան 30–էն աւելի ցուրարարներ եւ բերման կ՚ենթարկուին 165 անձեր: 18–ամեայ Սայեաթ Յովհաննիսեան կը կորսնցնէ մէկ աչքը:

Քաղաքացիական հագուստով ոստիկաններ Սարի Թաղի մէջ կը յարձակին լրագրողներու վրայ («Ովքե՞ր էին քաղաքացիական հագուստով անձինք», *Lragir.am*, 30 Յուլիս 2016, http://www.lragir. am/index/arm/0/country/view/136928):

Լրագրական կազմակերպութիւններ կը տարածեն հետեւեալ յայտարարութիւնը.

«Յուլիսի 29–ի երեկոյեան Երեւանի Սարի Թաղում եւ Խորենացի փողոցում ցոյցերը ցրելիս ոստիկանական ուժերը կրկին թիրախաւորուած յարձակում են գործել լրագրողների վրայ: Բիրտ ուժի կիրառման հետեւանքով տուժել են մեր գործընկերները. Յովհաննէս Մովսիսեանը, Կարլէն Ասլանեանը եւ Գարիկ Յարութիւնեանը (Ազատութիւն ռադիոկայան), Ռոբերտ Անանեանը եւ Տիգրան Բադալեանը (Ա1+), Մարիամ Գրիգորեանը եւ Դաւիթ Յարութիւնեանը (1in.am), Գէորգ Ղազարեանը (ազատ ֆոտոլրագրող), Յովիկ Գրիգորեանը (Panorama.am), Աղուան Ասոյեանը եւ Ալբերտ Գալստեանը (Արմենիա հեռուստաընկերութիւն), Սարգիս Խարազեանը եւ Մկրտիչ Կարապետեանը (CivilNet.am), Մարութ Վանեանը (Lragir.am):

«Այս տուեալները նախնական են, գործողութիւնները զանգուածային բնոյթ են կրել եւ տուժածների թիւը կարող է աւելի լինել: Ընդ որում՝ ֆիզիկական բռնութիւնները զուգորդուել են տեսանկարահանող սարքերը եւ ֆոտոխցիկները ջարդելով, նկարահանուած կադրերը ոչնչացնելով եւ լրագրողական գործունէութեան այլ խոչընդոտումներով:»

Ստորագրութիւն՝ Խօսքի Ազատութեան Պաշտպանութեան Կոմիտէ, Երեւանի Մամուլի Ակումբ, Մեդիա Նախաձեռնութիւնների Կենտրոն, Բազմակողմանի Տեղեկատուութեան Ինստիտուտ - Հայաստան, Հանրային Լրագրութեան Ակումբ, Լրագրողներ Յանուն Ապագայի ՀԿ, Լրագրողներ Յանուն Մարդու Իրաւունքների ՀԿ, Գորիսի Մամուլիս Ակումբ, Ինֆորմացիայի Ազատութեան Կենտրոն, Հետաքննող Լրագրողներ ՀԿ եւ Ռեգիոն Հետազօտական Կենտրոն («Լրագրողական կազմակերպութիւնների յայտարարութիւնը՝ լրագրողներին բռնութեան ենթարկելու վերաբերեալ», ***Հետք***, 30 Յուլիս 2016, http://hetq.am/arm/news/ 69599/ltagroxakan-kazmakerputyunneri-haytararutyuny-lragroxnerin-brnutyan-entarkelu-veraberyal.html):

– Այս պահուն, Հայաստանի Ժամանակակից Արուեստի Ինստիտուտի հիմնադիր ու տնօրէն եւ արուեստի քննադատ Նազարէթ Կարոյեան Ֆէյսպուքի էջին մէջ կը գրէ ուշագրաւ մեկնաբանութիւն մը՝ *Քաղաքականն ընդդէմ իրաւականի ու բարոյականի.*

«Ո՞րն է Սասնայ Ծռեր զինուած խմբաւորման կողմից ՊՊԾ գնդի գրաւումով ստեղծուած հասարակական (խորանալու դէպքում նաեւ իշխանական ու պետական) ճգնաժամի առանձնայատկութիւնը:

«Ապստամբները խախտել են օրէնքներ: Աւելին, զանցել են իրաւական դաշտ. իրենց գործողութիւնը եւ դրա առանձին դրուագները տեղափոխել-իրականացնելով բարոյականի դաշտում եւ այդտեղից դուրս մղելով իշխանութիւններին: Վերջիններիս գործելու համար այժմ մնացել է միայն իրաւականը: Այսինքն՝ զոհաբերական այս գործողութիւնը յանգեցրել է իրաւական եւ բարոյական դաշտերի աննախադէպ բեւեռացման: Իրաւունքի ուժը միշտ առաջնային է՝ տեխնիկական ու կոշտ. այնինչ բարոյականութեան ուժը՝ երկրորդային է՝ մշակութային ու փափուկ: Սակայն իրաւունքը եւ բարոյականութիւնը չեն կարող լինել հակադրուած: Եւ մէկը եւ միւսը միայն փոխլրացման մէջ են գործուն: Բարոյական դաշտում ներկայութիւնը կորցնելը իշխանութիւնների համար լեցուն է ուժասպառ լինելու (կամազրկուելու) մահացու սպառնալիքով: Միւս կողմից իրաւական դաշտի անտեսումը, ոչ միայն Սասնայ Ծռերին, այլեւ մեզնից իւրաքանչիւրին եւ հասարակութեանն ամբողջութեամբ վերցրած, կարող է նետել ամենակուլ ու կործանարար՝ բոլորը բոլորի դէմ բռնութեան երախը:

«Ո՞րն է ելքը:

«Դադարեցնել վարչարութիւնը (իմաստների արտադրութիւնից մինչեւ իշխանութեան արտադրութիւն), որն իրականացուել եւ այժմ էլ իրականացւում է իրաւաբարոյական գետնի վրայ: Սահմանափակել նաեւ այդ նոյն գետնի վրայ արտադրուող դիսկուրսները՝ լինեն դրանք իրաւաբարին, իրաւապահին, իրաւապաշտպանին, թէ՝ բարոյագէտինն ու հանրային բարքերի պահապանինը (Ուրիշների չգիտեմ ինչպէս, բայց ինձ արդէն զզուեցրել են իրաւունքի ու բարոյականութեան լեզուներն ու բառարանները): Մոռանալ չքաղաքականացնելու յորդորները եւ վերադառնալ քաղաքական դաշտ, դնել միայն քաղաքական պահանջներ (քաղաքացիները, բոլորը, պէտք է դուրս գան փողոց եւ այլեւս չվերադառնան տուն, քանի դեռ իշխանութիւնները չեն կատարել ՆԳ նախարարին իր պարտականութիւնների մէջ թերանալու համար պաշտօնանկ անելու կամ, անգործունութեան համար կառավարութիւնը եւ Ազգային Ժողովը ցրելու իրենց պահանջը),

↳ 3

## ՍԱՐԳՍԵԱՆ-ՓՈՒԹԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԷՋ

Օգոստոս 10–ին Մոսկուայի մէջ կայացաւ Սերժ Սարգսեանի եւ Վլատիմիր Փութինի հանդիպումը: Հանդիպումէն ետք Փութին ըսաւ՝ թէ Հայաստան եւ Ատրպէճան իրապէս կը փափաքին լուծել ղարաբաղեան ճգնաժամը, եւ թէ Ռուսաստան շահագրգռուած է թուլացնել Երեւանի եւ Բաքուի միջեւ գոյութիւն ունեցող լարուածութիւնը եւ պիտի շարունակէ որոնել հանգուցալուծումի միջոցներ: Իր կարգին Սերժ Սարգսեան նշեց Ղարաբաղի վերաբերեալ պայմանաւորուածութիւններու կատարումին կարեւորութիւնը: Պատասխանելով Ատրպէճանին ռուսական զէնք վաճառելու հարցումին, Փութին կ՚ըսէ՝ թէ նաւթարդիւնահանող, ոսկիի եւ արժութային խոշոր ծաւալի պաշարներ ունեցող եւ աճող տնտեսութեամբ այնպիսի երկիր ինչպէս Ատրպէճանն է, կարող է զէնք գնել որեւէ տեղէ: Զէնքի ժամանակակից շուկայի մէջ, որեւէ երկիր կրնայ ուզած զէնքը գնել: Փութին կ՚անդրադառնայ նաեւ Սասնայ Ծռերու կողմէ ՊՊԾ գունդի գրաւումին մասին: Պատանդառութիւնը անօրինական գործողութիւններու միջոցով քաղաքական հարցեր լուծելու անընդունելի փորձ մըն է՝ կ՚ըսէ ան:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԻՆՉՈ՞Ւ Է ՀՐԱԺԱՐԱԿԱՆ ՏՈՒԵԼ ՀՀ ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶ ԳԷՈՐԳ ԿՈՍՏԱՆԵԱՆԸ

Լուրեր.com, 4 Օգոստոս - Այս հարցն այսօրուայ թերեւս ամենաքննարկուող թեման է դարձել ինչպէս պետական պաշտօնեաների շրջանում, այնպէս էլ հասարակութեան այլ հատուածներում: Հանրապետութեան նախագահի կողմից, ինչպէս արդէն յայտնի է, ՀՀ գլխաւոր դատախազ Գէորգ Կոստանեանի հրաժարականի դիմումն արդէն ընդունուել է եւ նա այսօրուանից վայր է դրել ՀՀ գլխաւոր դատախազի իր լիազօրութիւնները:

Հրաժարականի՝ ասպարէզում գոյութիւն ունեցող պատճառաբանութիւնը Գ.

↳ 4

# ՄԱՀՄՈՒՏ ՏԱՐՈՒԻՇ

Մահմուտ Տարուիշ (1942-2008)՝ Պաղեստինի եւ արաբական աշխարհի հռչակաւոր բանաստեղծ: Պաղեստինեան խնդիրի բարձրակիրթ ու նուրբ պայքարող մը, որուն համար խօսքն ու գիրը նոյնական էին փորձառութեան հետ:

Անցեալին ցեղասպանութիւն ապրած հայերը եւ այսօր ցեղասպանութիւն ապրող պաղեստինցիները, Անատոլիայի պարպումը հայ բնակիչներէն այսօր եւ Պաղեստինի պարպումը պաղեստինցիներէն այսօր, համընդհանուր իրադարձութիւններ էին/են՝ որոնք կրնային յատկապէս ձախ թեւի հայ եւ արաբ մտաւորականութիւնը համախմբել միատեղ դիմադրութեան համար: Մահմուտ Տարուիշ կրնար ելակէտ մը ըլլալ: Տեղի ունեցածը, սակայն, անհատական ճիգեր էին:

Միշտ նկատի ունենալով Մահմուտ Տարուիշ, հայերուն կողմէն կարելի է նշել Թալին Ոսկերիչեանին անունը, որ Քրիսթոֆըր Միլլիսի հետ անգլերէն թարգմանած է *Աթազաքքար ալ-Սայեապ* (I remember al-Sayyab) բանաստեղծութիւնը եւ հրատարակած *London Review of Books*-ի մէջ (24 Յունիս 2004, Vol. 26, No. 12, էջ 10):

Հալէպահայ ասմունքողուհի Սարբի Տարաքճեան 2010-ին խտասալիկի վրայ արաբերէն լեզուով ձայնագրած եւ հրապարակած է հայ եւ արաբ 15 բանաստեղծներու գործեր (հայերէն բանաստեղծութիւններուն արաբերէն թարգմանութիւնները կատարած են սուրիահայ Նազար Նազարեան եւ եգիպտահայ Վարուժան Գազանճեան), ուր կը գտնուի Տարուիշի *Սաութ ուա սաութ* (Ձայն եւ մտրակ) բանաստեղծութիւնը:

2014-ին *Գաձասարի* մէջ լոյս տեսած է Տարուիշի *Պոնտոքեյա ուա քաֆան* (Հրացան ու պատանք) բանաստեղծութիւնը հալէպահայ Նարինէ Գոնճայեանի թարգմանութեամբ (վերահրապարակուած թարգմանիչի պլոկին մէջ՝ https://narinekblog.wordpress.com/2014/04/12/hratsan-u-badank):

Եւ անշուշտ, Տարուիշ չէր կրող վրիպիլ Տէյվիտ Պարսամեանի ուշադրութենէն իր յայտնի Alternative Radio-ի հաղորդումներուն մէջ (www.alternativeradio.org/collections/spk_mahmoud-darwish/products/darm-poet001):

Տարուիշ ունեցած է հայ բարեկամներ, ինչպէս՝ նկարիչ Փօլ Կիրակոսեան: Բայց իր յայտնի *Ալ-Քարմէլ* հանդէսին մէջ ոչ մէկ հայու ստորագրութիւն կը գտնուի:


Մահմուտ Տարուիշ

Վերջապէս, ուշագրաւ է լիբանանահայ բանաստեղծ Սագօ Արեանի (ծն. 1972) *Ողջ լեր Մահմուտ Տարուիշ* հայերէն բանաստեղծութիւնը, զոր կը վերահրատարակենք ստորեւ: Այս բանաստեղծութիւնը ուրիշ հարց մը եւս կը բարձրացնէ: Ի տարբերութիւն Եւրոպայի, Ռուսաստանի եւ Միացեալ Նահանգներու հայ գրականութենէն, արաբական աշխարհին մէջ հազուագիւտ կը գտնուի հայ արձակագիր մը կամ բանաստեղծ մը՝ որ իր գրութեան մէջ ընդելուզած ըլլայ տեղական ժամանակակից պատկերներն ու մտահոգութիւնները: Օրինակ, Արսէն Երկաթի *Եգիպտականք* (Յուսաբեր Տպարան, 1956) արձակ բանաստեղծութիւններու ժողովածուին մէջ ընդամէնը եգիպտական շատ հին անցեալ մըն է որ կը գովերգուի: Կացութիւնը բոլորովին տարբեր է նկարչութեան պարագային, ուր տեղական երանգն ու զգացողութիւնը յաճախ առկայ են, հաւանաբար նկարչական արուեստի տեսողական նախապայմանի անխուսափելիութեան պատճառով: Սագօ Արեան այն քիչերէն է՝ որ համամարդկային ցաւի ու կորուստի նիւթերու արծարծումով, յաջողած է հայ-արաբական (աւելի ճիշդ՝ հայ-պաղեստինեան) ինքնութիւններուն միջեւ գտնել սերտ բաղադրիչներ: Մահմուտ Տարուիշին նուիրուած բանաստեղծութիւնը այս մտածողութեան հետաքրքրական նմոյշ մըն է:


Սագօ Արեան

Հ.Ա.

## ՄԽԻԹԱՐ ԳՕՇԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ
### ԱՆՄԻՏ ՄԱՐԴԸ ԵՒ ՅՈՒՆԱՊԻ ԾԱՌԸ

Անմիտ մարդ մը յունապի ծառը դժնիկ կարծելով զայն կը հատէ արմատէն: Ծառը զայրանալով կ'ըսէ.

— Ո՛վ անազորոյն, ծառը պտուղէն պէտք է ճանչնալ եւ ոչ թէ տեսքէն:

Առակս կը վերաբերի անմիտ դատողներուն՝ թագաւորներուն, իշխաններուն, դատաւորներուն եւ եկեղեցիի առաջնորդներուն, յանդիմանելով՝ որ անոնք անվարժ կերպով կը դատեն, որով կը գործեն բազում վնասներ, բարին կը խոշտանգեն իբրեւ չար:

## ԵԹԷ ԾՆԱԾ ԸԼԼԱՅԻՐ
### ՄԱՀՄՈՒՏ ՏԱՐՈՒԻՇ

Եթէ ծնած ըլլայիր աւստրալիացի կնոջմէ
Եւ հայ հօրմէ,
Եւ բնակավայրդ ըլլար Ֆրանսա,
Ի՞նչ կ'ըլլայ ինքնութիւնդ այսօր:
- Անշուշտ՝ եռակի,
Իսկ քաղաքացիութիւնս՝
Ֆրանսական,
Իրաւունքներս՝ ֆրանսական,
Եւ այլն...
- Իսկ եթէ մայրդ ըլլար եգիպտացի,
Մեծմայրդ Հալէպէն,
Ծննդավայրդ՝ Եաթրիպ,
Մինչ հայրդ Կազայէն,
Ի՞նչ կ'ըլլայ արդեօք ինքնութիւնդ այսօր:
- Անշուշտ՝ քառակի, նման մեր արաբական դրօշակին՝
Սեւ, կանանչ, կարմիր, ճերմակ:
Բայց քաղաքացիութիւնս կը խմորուի գործանոցին մէջ,
Գալով անցագիրիս,
Ան տակաւին՝ ինչպէս Պաղեստինը, խնդիր մըն էր հարցական,
Եւ տակաւին կը մնայ հարցակա՛ն, եւ այլն...

(Արաբերէնէ ազատ թարգմանութիւն՝ Հ.Ա.)

## ՈՂՋ ԼԵՐ ՄԱՀՄՈՒՏ ՏԱՐՈՒԻՇ
### ՍԱԳՕ ԱՐԵԱՆ

Իջիր աստիճաններէն,
Վար ու կամաց
Պիտի բռնես լոյսի թելէն
Ու տանիս հետդ յիշողութիւններդ.
Բարակ թել մը կը կապէ քեզ
Անցեալիդ:
Պիտի իջնես խորունկիդ մէջ,
Ըսես լեարդին, որ հանէ թոյները քեզմէ,
Ու մաքրէ քեզ,
Ապահովէ թռիչքդ...
Փրկէ աշխարհդ եւ
Արտօնէ որ թռչիս...
Խմբագիրները պիտի չհասկնան թռչելու ժամանակը
Եւ ամբաստանագիրներ պիտի փակցնեն
Այն թաղամիս ճակատին, ուր ապրեցար
Եւ ուր ապրեցաւ յոյսը քեզմէ առաջ:

Գաղափարը ողջ է դեռ,
Մահմուտ Տարուի՛շ,
Հայկական թերթերը ոչ իսկ տող մը գրեցին քու մասիդ.

Մեռած օրդ
Տղաս մեր պատշգամբը
Պայթուցիկներ արձակեց յիշատակդ ապրեցնելու համար:

Այդ օրը
Երկինքը լաց չեղաւ,
Տխուր էին աչքերը բոլոր արաբներուն,
Արիւն եւ մահ չէր հոտեր Կազան,
Եւ երկիրդ
Որ երազ էր միայն... խոնարհեցաւ,
Մտար յաղթանակի ձեռքերուն վրայ:
Կը պատուեն քեզ
Ձեռքիդ ձիթենի, եւ մահդ հին ու փառաւոր...
Մահդ որուն կիսանդրին հինէն փշրեցիր,
Որուն դէմ գրեցիր ու ապրեցար
Եւ ձիթենին որ աչքերէդ զերթ ծառ
Խոնարհ ու սուրբ աճեցաւ, բարեկամս...

Ըսիր ծառին՝ հպատակ եղիր,
Ու բնակեցաւ մէջդ
Հաստաբուն, վաւերական բառին ըսիր՝
Աղօթք դարձիր մօրս համար,
Ու դարձաւ,
Երգերդ ափէ ափ մագլցեցան...
Բառերդ ասուպներ, բարեկամս ու դուն յաղթական մտար
Քաղաքդ վիրաւոր եւ անօթի.
Անօթի քու սրբութեանդ.
Եւ կարօտ քու անունիդ:

Այլեւս մահուան մասին մի խօսիր,
Ես չեմ գիտեր,
Որ հայ բանաստեղծները ի՞նչ կը խորհին քու մասին.
Կ'ըսե՞ն արդեօք որ մեզմէ մասնիկ մը մեռաւ:
Սա յիմար սփիւռքի պորտին նստած գրողները,
Որ անպատկառ քէֆերու մէջ ջնջուած են, չկան,
Ի՞նչ պիտի ըսեն քու մասիդ...

Աչքերուդ ուղեծիրին վրայ
Կայ Պաղեստին արիւնը,
Կայ Կանան,
Կայ մասունք մը մեզմէ,
Կայ հաւատքը բառին
Եւ նախանձը կայ,
Բանաստեղծութիւնը ամէն օր պատէ պատ զարնողներուն.
Որոնք պիտի լռեն,
Լռեր են արդէն,
Մեռեալ են նոքա...

...
Դուն Ռամալլա կը մտնես
Հոգիդ քեզմէ առաջ կը ճամբորդէ ու կ'անցնի Թալլէթ Զաաթարէն.
Կը բարեւես Անդրանիկ քեռայրիս,
Ու սիկարէթ կը հրամցնես անոր.
Կը թեւածես Եունեսքոյի վրայէն,
Կը հարցնես Սարգիս Շահպեանին մասին,
Որ հիմա «Վրրճըն մէկա սթոր» *Սի Տի* կը ծախէ:
Իմ մասին ոչ մէկ տող,
Ապերախտ Մահմուտ,
Հին անճանաչ ընկեր,
Հին մոռացկոտ ընկեր,
Ձայն կը հանես մացառներէն,
Փշոտ ամայի վայրերէն...

Դուն մինչ Ռամալլա կը մտնես,
Մենք մեր գրողները
Ջիպիլի մեծ տոպրակներու մէջ կը թխմենք
Ու սանկ լաւ մը կը փակենք որ գլուխները դուրս չմնան

Հապա թէ մնան
Կրնան աղմկել...

Դուն Ռամալլա կը մտնես
Մինչ Վահէ Օշականը, Պետիկը, ծօ միւս Սարաֆեանը,
Բոլորը զիպիլի նայլոններու մէջ փակուած կը մնան
Սփիւռքի փուչ ոստաններուն մէջ...

Դուն յաղթող իբրեւ,
Մեծ վճիռին սեղանին առջեւ...
Ապրելու քաղաքիդ ջուրով
Ձիթենիին ձեռքիդ,
Վարդ ու ձիթենի,
Որպէսզի մեծնայ,
Որպէսզի աճի քեզմէ դուրս...
Ծառդ,
Ու աչքերդ չմնան չուար
Կարօտ սիրոյ:
Այդ բառը
Այսահար, խենթ ու կատաղի...
Նման Փետրուարի անձրեւին:

Ըսէ բարեկամս ի՞նչ կայ հոգիէն վեր,
Պատմէ Երուսաղէմիդ մասին...

Պատմէ...



# ՍԱՍՆԱՑ ԾՌԵՐՈՒ ԶԻՆԵԱԼ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ԱՒԱՐՏԸ

մինչեւ որ լղոզուած կամ չքացած քաղաքական դաշտի եզրագծերը կը սկսեն երեւալ: Միայն քաղաքական դաշտի յայտնուելու պայմաններում է, որ իւրաքանչիւր քաղաքացի կը վերատիրանայ ապրելու, աշխատելու եւ արտայայտուելու այժմ ոտնահարուող իր իրաւունքները: Իշխանութեան մէջ գտնուող անձինք էլ կը վերագտնեն ընդհանրապէս ապրելու եւ մասնաւորապէս Հայաստանում ապրելու բարոյական հիմքերը:

«Իսկ ապստամբ իրաւախախտներին պատժելն ու անպատիժ բռնութիւն գործադրելուց հաճոյք ստացող սադիստ ոստիկանների մեկուսացնելը մենք բոլորս դեռ կը հասցնենք:»

**ՇԱԲԱԹ, 30 ՅՈՒԼԻՍ** (տասնչորրորդ օր)

– Կը ձերբակալուին 2013-ի նախագահական ընտրութիւններու թեկնածու Անդրիաս Ղուկասեան եւ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Արմէն Մարտիրոսեան:

– Երեկոյեան ոստիկանութիւնը կը յայտարարէ ոստիկանական զօրքերու ծառայող Եուրա Տեպանոսեանի (30 տարեկան) սպանութիւնը Սասնայ Ծռերու «զինեալ դիպուկահարի» կողմէ: Սասնայ Ծռեր անմիջապէս կը ժխտէ իր ներգրաւումը այս սպանութեան մէջ: Առաջին Լրատուականի հետ հեռախօսազրոյցի ընթացքին, Վարուժան Աւետիսեան կ'ըսէ. «Տուեալ վայրը մեզ համար տեսանելի չէ, ամենայն հաւանականութեամբ, նա սպանուել է հէնց իրենց աջուձախ արձակած դիպուկահարի կրակոցից» («Ամենայն պատասխանատուութեամբ տեղեկացնում ենք՝ ոստիկանը մեր կրակոցից չի սպանուել. Վարուժան Աւետիսեան», *Առաջին Լրատուական*, 31 Յուլիս 2016, http://www.1in.am/1970410.html): Ոմանք կը յիշեցնեն Մարտ 1-ին զոհուած երիտասարդ ոստիկանին ցարդ չբացայայտուած հանգամանքները:

– Ազատութեան հրապարակին մէջ տեղի կ'ունենայ հանրահաւաք, որուն համակարգողն էր բերման ենթարկուած ու ազատ արձակուած Ալբերտ Բաղդասարեան: Այնտեղէն կը շարժի բողոքի երթը՝ Մաշտոց փողոց, Ամիրեան փողոց, Հանրապետութեան հրապարակ, Նալբանդեան փողոց եւ ժամը 00:35-ին կ'աւարտի Բաղրամեան փողոցին մէջ («Բաղրամեան փողոցում հաւաքն աւարտուեց», *Lragir.am*, 30 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/videos/view/136966: Նաիրա Հայրումեան, «Քիչ էր մնում ասուէր անունը», 31 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/comments/view/136982):

**ԿԻՐԱԿԻ, 31 ՅՈՒԼԻՍ** (տասնհինգերորդ եւ վերջին օր)

– Ժամը 12:00-13:00-ին գրաւեալ տարածքին մէջ կը լսուին պայթիւններ:

– Սասնայ Ծռերու անդամ Սեթօ (Սեդրակ) Նազարեան ստանալով կրծքային վիրաւորանք կը փոխադրուի հիւանդանոց: Նազարեան բնիկ Սպանդարեան գիւղէն էր: Իբրեւ բողոք, Սպանդարեանի գիւղացիները կը փակեն Երեւան-Մեղրի ճանապարհը:

– Ժիրայր Սէֆիլեան հանդէս կու գայ երկար յայտարարութեամբ, ուր կը բողոքէ՝ թէ մինչեւ հիմա իրեն չթոյլատրուեցաւ հանդիպիլ տղոց հետ, գտնելու համար ոսկէ միջին մը: Ան, ի միջի այլոց, կը պահանջէ վստահութեան կառավարութեան կազմութիւնը:

– Ամերիկահայ երաժիշտ Սերժ Թանկեան իր ֆէյսպուքեան էջին մէջ կը կատարէ գրառում մը, ուր, ի միջի այլոց, կը գրէ.

«Հայկական սփիւռքի լռութիւնը երկրի ներսում անարդարութիւնների վերաբերեալ վերջին մի քանի տասնամեակում դարձրել են մեր երկիրը աւելի վատը: Չկայ արդարացում յետագայ տարանջատմանը:

«Մենք այլեւս չենք կարող «փրկութիւն» ակնկալել առաջնորդից կամ նախագահից: Մեր կամքը եւ ապագայ քննարկումները պէտք է տեղի ունենան հայ ժողովրդի հետ: Դա նշանակում է իրական ժողովրդավարութեան տանող հանրային ֆորումներ» («Սերժ Թանկեանի կոչը», *Lragir.am*, 31 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/society/view/137003):

– Սասնայ Ծռերու անդամները երեկոյեան կը յանձնուին, կատարելով հետեւեալ յայտարարութիւնը.

«Ոստիկանութիւնը այս վերջին օրերի ընթացքում որդեգրել էր մարտիկներին շարքից հանելու մարտավարութիւն, ոտքից հարուածելու միջոցով, այսօր արդէն մեր ընկերոջը կրծքավանդակից վիրաւորեցին դիպուկահարի միջոցով: Մենք թուով էապէս նուազել ենք, մօտաւորապէս 20-ն ենք, երէկ գիշեր գրոհեցին, մեքենայով պատը ջարդեցին յետոյ կանգնեցրին, ինչ-ինչ նկատառումներով բանակցութիւն սկսեցինք: Այսօր ինտենսիւ կրակոցներ հնչեցին, ձայնային ռումբերից, գրահատեխնիկայով ներխուժեցին տարածք:

«Ունենք երկու տարբերակ՝ մարտի բռնուել ոստիկանութեան եւ այլ ծառայողների հետ, հեղելով այն մարդկանց արիւնները, որոնք քիչ առնչութիւն ունեն ռեժիմի հետ, միւսը՝ չգնալ արիւնահեղութեան, կամ մնալ ռազմագերու կարգավիճակում, ծանր որոշում էր մեր համար, ռազմագերու կարգավիճակը:

«Ժողովրդական ընդվզումը համարում ենք կատարուած, կայ ժողովրդական շարժում, նոր զոհեր չտալու համար, մեր դէմ կանգնած են մարդիկ, որոնք պարտականութիւն են կատարում, որոշեցինք, որ այդ մարդկանց արիւնը չենք ուզում, ռազմագերու կարգավիճակով շարունակում ենք պայքարել, ժողովրդական ընդվզումը շարունակւում է, մեր ժողովուրդը պէտք է պայքարի, չենք թողնի որ մեր երկիրը դառնայ ռուսական նահանգ: Զգում ենք, որ յաղթանակը մօտ է, կոչ ենք անում հայ ժողովրդին որոշումը ընդունել՝ դրական քայլ:

«Հայ ժողովրդի արգանդը չի չորացել, մենք ընդամէնը կայծն ենք տուել, ժողովուրդը կը շարունակի:

«Ցաւօք, այդպէս չեղաւ. ժողովուրդը դանդաղ շարժուեց: Հաստատակամ ենք: շարունակելու ենք մեր պայքարը: Յեղափոխականները յայտնւում են բանտերում, յետոյ յաղթանակած դուրս գալիս: Դա էլ է պայքարի մի ձեւ: Սիրում ենք ձեզ հայ ժողովուրդ, մեզ ոչինչ չի կարող բաժանել, չենք ուզում արիւն թափուի, չենք կարող զէնք բարձրացնել այն զինուորի վրայ, որ հրաման է կատարում, թէեւ սխալ հրաման է, թող այս պայքարը, մեր զոհաբերութիւնը դառնայ սնուցիչ այն արմատին որը ծիլ է տալու նոր պայքարի» (««Ընտրում ենք ռազմագերու կարգավիճակը». Սասնայ Ծռերը յանձնւում է», *Lragir.am*, 31 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/137015):

– Հայաստանի Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը կը յայտարարէ.

«ՀՀ Ազգային անվտանգութեան ծառայութիւնը յայտարարում է, որ սոյն թուականի յուլիսի 30-ին եւ 31-ին ՀՀ Ոստիկանութեան պարեկապահակային ծառայութեան (ՊՊԾ) գնդի տարածքի ազատագրմանն ուղղուած հակահաբեկչական օպերացիան աւարտուել է: ՀՀ իրաւասու իրաւապահ մարմինների յատուկ նշանակութեան ստորաբաժանումներն իրենց հետեւողական եւ համաձայնեցուած գործողութիւններով ստիպել են զինուած խմբի անդամներին վայր դնել զէնքը եւ յանձնուել իշխանութիւններին: Ձերբակալուել է 20 ահաբեկիչ: ՊՊԾ գնդի տարածքն ամբողջութեամբ ազատագրուած է («ՀՀ Ազգային անվտանգութեան ծառայութեան յայտարարութիւնը», *Lragir.am*, 31 Յուլիս 2016, http://www.lragir.am/index/arm/0/country/view/137017):

Նկատելի է, որ Հայաստանի իշխանութիւնը՝ որ մինչ այդ բաւական զգոյշ էր «ահաբեկիչ» բառի գործածութեան մէջ, այս փոքրիկ վերջաբանային յայտարարութեան մէջ արդէն երկու անգամ անվերապահօրէն Սասնայ Ծռերը կ'անուանէ ահաբեկիչներ:

* * *

Սասնայ Ծռերու ինքնայանձնումէն մէկ օր ետք կը լսուին նախագահին եւ կաթողիկոսին պաշտօնական յայտարարութիւնները, որոնցմէ ետք իշխանական լրատուամիջոցները կը փորձեն լռութիւն պահպանել երկու շաբաթ տեւած դէպքերուն մասին եւ մոռացութեան մատնել զանոնք, քանի որ որքան աւելի Սասնայ Ծռեր դառնայ հանրութեան ուշադրութեան կեդրոնը այնքան աւելի հանրութիւնը պիտի շարունակէ արտայայտուիլ գործողութեան իսկական պատճառներուն մասին, որոնք բնաւ նպաստաւոր չեն իշխանութեան համար: Արդարեւ, իշխանութիւններէն անդին, նոր փուլ մը կը սկսի հասուն քաղաքացիական հասարակութեան համար, որ կը փորձէ բացատրել ապստամբութեան տարբեր ու համակողմանի պատճառները, կը փորձէ աւելի համարձակօրէն ու համակողմանիօրէն բարձաձայնել՝ թէ ինչո՞ւ խնդիրը հասաւ ապստամբութեան:

Յուլիս 17-ը մասնայատուկ թուական մը պիտի մնայ ներկայ Հայաստանի պատմութեան մէջ եւ տակաւին բաւական պիտի գրուի ու խօսուի անոր մասին:

Սփիւռքի մէջ Յուլիս 17-ի իրադարձութեան մասին հանրային քննարկումներ տեղի չունեցան եւ ոչ ալ տեղի պիտի ունենան: Կարճ լուրեր եւ չափաձեւուած քանի մը մեկնաբանութիւն համարուեցան բաւարար: Մարտ 1-ի օրինակը կրկնուեցաւ: Սփիւռքը ինքզինք Հայաստանի մէջ կը տեսնէ չքանչաններու, շնորհաւորագիրերու, երկքաղաքացիութեան, նախագահական շարասիւներու, Համահայկական Հիմնադրամի, ձեռնարկային ելոյթներու, փառատօներու, բայց հազուադէպ՝ քաղաքացիական հասարակութեան մէջ: Միւս կողմէ, սակայն, սփիւռքի մէջ ե՞րբ հանրային քննարկումներ տեղի ունեցած են նոյն ինքը սփիւռքի խորքային (խորքային՝ եւ ոչ թէ ի վերուստ թելադրուած համընդհանուր ու անվնաս) խնդիրներու մասին:

Վերջապէս, կատարուածի մասին յատուկ մօտեցում կը ցուցաբերէ ընկերաբան Ժաննա Անդրէասեան.

«Ֆրանսիացի մտածող Դերիդան ասում էր, որ գիրը պարտիզանական կռիւ է տալիս լոգոցենտրիկ մտածողութեան դէմ՝ փորձելով կազմաքանդել, դեկոնստրուկցիայի ենթարկել այն: Յուլիսեան իրադարձութիւնները Երեւանում իրականացրին հասարակական սոլիդարութեան գաղափարախօսական հռչակուած շրջանակի դեկոնստրուկցիան: Ընդ որում, խօսքը թէ՛ իշխանական, թէ՛ ընդդիմադիր նարատիւների մասին է: Դեկոնստրուկցիայի հիմնական ռազմավարութիւնն ակնյայտ է. լինել Հռոմի պապից աւելի կաթոլիկ, ծայրայեղութեան եւ բացարձակութեան հասցնել այն, ինչը հռչակուել է իշխանութեան եւ/կամ ընդդիմութեան կողմից: Ինչ-որ առումով սա նշանակում է նաեւ հիպերիրականութեան վերածել այլոց հռչակած մտքերը: Այսպէս, հասարակական սոլիդարութեան իշխանական նարատիւն ազգայնականն է՝ հիմնուած հողերի ու ազգային անվտանգութեան գաղափարների վրայ: Պաշտպանենք մեր հողերը, խօսենք ու վարուենք այնպէս, որ չվնասենք մեր պետութեանը, ազգին, ժողովրդին: Ահա, զինեալները, հողերի պաշտպանութեան ու ազգային անվտանգութեան հարցերը դնում են շատ աւելի սուր, քան իշխանութիւնը՝ դէմ դուրս գալով նրան նոյն գաղափարների հռչակմամբ եւ ի ցոյց դնելով իշխանութեան կողմից դրանց հռչակուածութեան սին բնոյթը: Ընդդիմութեան հասարակական սոլիդարութեան նարատիւն իշխանափոխութիւնն է: Այս նարատիւը ապստամբները նոյնպէս բացարձակացնում են՝ դիմելով դրա ամենածայրայեղ միջոցին՝ զինուած ապստամբութեանը (Ժաննա Անդրէասեան, «Յուլիսեան ապստամբութեան շուրջ», *Սոցիոսկոպ*, http:// socioscope.am/):

*Ջահակիր*

## ԽՈՀԵՐ

# ԱՐԻՒՆԻ ՃՆՇՈՒՄԸ՝ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆ ՄԸ

## ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Հիւանդութիւններն ալ դասակարգային կրնան ըլլալ եղեր:

Եգիպտացի մօտիկ բարեկամ մը՝ որուն ճանչցած եմ քսանհինգ տարի առաջ, իր համախոհներու խմբակին հետ, անընդհատ զբաղուած է աղքատներուն, կարօտեալներուն եւ հիւանդներուն տարբեր տեսակ օգնութիւններ մատակարարելով: Իր անձնական փորձառութենէն ելլելով կը պատմէ՝ թէ աղքատները երբեք կարիք չեն ունեցած արիւնի ճնշումը կարգաւորող դեղերու: Անոնք արիւնի ճնշումի բարձրացում չեն ունենար: Փոխարէնը պէտք կ'ունենան մաշկի ու մորթի հիւանդութիւններ բուժող դեղերու, հիւանդութիւններ՝ որոնք կապուած են իրենց ապրած շրջապատի պարտադիր եւ անխուսափելի աղտոտութեան հետ, քանի որ կը բացակային միջավայրի մաքրութիւնը հոգացող կազմակերպութիւններն ու ընկերութիւնները:

Ինչո՞ւ աղքատներուն արիւնի ճնշումը չի բարձրանար: Պարզապէս որովհետեւ անոնք կորսնցնելու ոչինչ ունին: Անոնք չե՛ն մրցակցիր աւելի դրամ վաստակելու համար, չե՛ն մրցակցիր ինքնաշարժ գնելու եւ ապա BMW-ի վերջին արտադրութենէն ետ չմնալու համար, չե՛ն մրցակցիր պարահանդէսներու մէջ լաւագոյն զգեստը հագուելու համար, չե՛ն մրցակցիր անունն անգամ չյիշուող անդամներ ըլլալու չորրորդական, երրորդական, երկրորդական կամ առաջնային երգչախումբերու եւ նուագախումբերու մէջ, չե՛ն մրցակցիր Եգիպտոսի, Երեւանի թատրոններուն կամ Քոմէտի Ֆրանսէզի մէջ չորրորդական կամ առաջնային դերեր ստանձնելու համար, չե՛ն մրցակցիր պաշտօնի տիրանալու եւ ապա ցկեանս այդ պաշտօնը բարձրացնելու համար, չե՛ն մրցակցիր խորհրդարաններուն մէջ աթոռ գրաւելու համար, չե՛ն մրցակցիր քաղաքական դիրքերու տիրանալու համար, չե՛ն մրցակցիր խորհրդարանական եւ քաղաքական այդ դիրքերը պահպանելու համար սուտերով ողողել ժողովուրդին ուղեղները, չե՛ն մրցակցիր ատենապետ ըլլալու եւ այնտեղ ցկեանս կառչելու համար, չե՛ն մրցակցիր ցեղասպանութիւնը ամենացեղասպան ցեղասպանութիւնը դարձնելու համար: Անոնք չե՛ն մրցակցիր: Մրցակցութիւնը նախատեսուած է հացի շատութիւնը աւելի շատցնելու համար: Աղքատը հաց չունի որ մրցակցի: Մրցակցողները իրմէ խլած են հացի իրաւունքը: Հացի պակասը արիւնի ճնշումը չի բարձրացներ, անոր շատութիւնն է որ կը բարձրացնէ:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ 2016-2017 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամը 2016-2017 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Հելիոպոլսոյ գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով 2 լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը և վերջին երկու տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները՝ պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը:

Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանին ա. և բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր և վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է՝ Գահիրէի և Աղեքսանդրիոյ համար՝ 30 Սեպտեմբեր 2016:

Ծ.Ն. Յաւելեալ մանրամասնութիւններու համար հեռաձայնել 22916444- 24151127-24152478:

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի ՀԲԸՄ-ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2015-2016 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ կը բերեն որեւէ կրթական հանգրուանի աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին նախակրթական կրթութեան աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն, որոնք 90% եւ աւելի արդիւնք բերած են:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հանգրուանի համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Նախակրթարանի աւարտական դասարան | Ե.Ո. 200.- |
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 400.- |
| Երկրորդականի աւարտական դասարան | Ե.Ո. 1000.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| Ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 1500.- |
| Բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո. 2000.- |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անկէ պատճէն մը, պարտին ներկայացնել ՀԲԸՄ-ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ ՀԲԸՄ-ի վարչութեան:

Բոլոր դիմորդները ընդունելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2016:

Մրցանակներու յանձնումը թէ՛ Գահիրէի եւ թէ՛ Աղեքսանդրիոյ մէջ պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատանք թերթիս ազգօգուտ գործունէութեան, Գալինճեան ընտանիք (Պէյրութ) կը նուիրէ Ե.Ո. 2000:

### Ի ՍԻՐՏԷ ԲԽԱԾ ԽՕՍՔ

Խոնարհ սպասաւոր մնալով Հայոց Եկեղեցիին եւ Սրբութիւն Սրբոց Մայր Աթոռ Ս. Էջմիածինին, որդիաբար շնորհակալութիւնս կը յայտնեմ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսի մատչելով ի համբոյր Ձերդ Սրբութեան Սուրբ Աջոյն, ինչպէս նաեւ Եգիպտոսի Հայոց Թեմի Առաջնորդ Գերաշնորհ Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեանին ու Հոգեւոր դասին: Մասնաւոր շնորհակալութիններս՝ Գահիրէի Քաղաքական պատուարժան ժողովին, ատենապետութեամբ՝ Տոքթ. Գէորգ Երզընկացեանին, Ե.Գ.Մ. Հոգաբարձութեան, ատենապետութեամբ՝ Տիար Մարտիկ Թէրզիպաշեանին, նաեւ եկեղեցւոյ Շնորհալի երգչախումբին, ղեկավարութեամբ՝ Մօ. Միհրան Ղազէլեանին, ինչպէս նաեւ բոլոր անոնց, որոնք իրենց ներկայութեամբ, մասնակցութեամբ, հեռաձայնի եւ համացանցի միջոցաւ շնորհաւորեցին զիս Հայ Առաքելական Սբ. Եկեղեցւոյ «Սբ. ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ» պատւոյ բարձր շքանշան ստանալուս առիթով:

Աւագ Սարկաւագ
Պօղոս-Օննիկ Պօղոսեան

### ԻՆՉՈ՞Ւ Է ՀՐԱԺԱՐԱԿԱՆ ՏՈՒԵԼ ՀՀ ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶ ԳԷՈՐԳ ԿՈՍՏԱՆԵԱՆԸ

1

Կոստանեանի առողջական խնդիրներն են: Պարոն Կոստանեանը տարիներ առաջ իրօք ունեցել է առողջական խնդիր (2012 թ. Փետրուարի 3-ին, երբ դեռ ՀՀ զինուորական դատախազն էր, ուղեղի կաթուած էր ստացել ու տեղափոխուել Նաիրի բժշկական կենտրոն) եւ, չնայած դրանից յետոյ որակեալ բուժում է ստացել, գուցէ հիմա էլ ունի նշուած խնդիրները:

Սակայն, *ԼՈՒՐԵՐ.com*-ին հասած տեղեկութիւնների համաձայն, գլխաւոր դատախազի պաշտօնից Գէորգ Կոստանեանի հրաժարականի ետեւում իրականում այլ պատճառ կամ պատճառներ են, որոնք հասարակութեանը, մեր երկրում ձեւաւորուած «աւանդոյթի» համաձայն, թերեւս այդպէս էլ յայտնի չեն դառնայ:

## ԳԱՀԻՐԷ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 14 Օգոստոս 2016

Տօն է

ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

**Սկիզբ Ս. Պատարագի** առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն արարողութեան:

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ԵՒ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ ԳԱԼՈՒՍՏ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՈՒՍՈՒՄԻ ՀԻՄՆԱԴՐԱՄՆԵՐՈՒ 2016-2017 ուսումնական տարեշրջանի յատկացումներ

Այսու կը ծանուցանենք թէ 2016-2017 ուսումնական տարեշրջանի համար վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, Գահիրէի Ազգային Առաջնորդարանը պատրաստ է նոր յատկացումներ կատարել արժանաւոր ուսանողներու, որոնք կը փափաքին բարձրագոյն ուսման հետեւիլ <u>Եգիպտոսի</u> համալսարաններու եւ <u>Հայաստանի</u> բարձրագոյն ուսումնական հաստատութիւններու մէջ:

Թեկնածուները պարտին ներկայացնել պահանջուած հետեւեալ փաստաթուղթերը.

-Դիմումնագիր եւ երկու լուսանկար:

-Հայկական եկեղեցիի մէջ մկրտուած ըլլալու հաստատագիր (վկայական):

-Ինքնութեան թուղթ (եթէ եգիպտահպատակ չէ, ապա անձը հաստատող փաստաթուղթ եւ դիմումի թուականին նախորդող երեք տարիներուն վերաբերեալ մնայուն կեցութեան իրաւունքի հաստատագիր-փաստաթուղթ):

-Երկրորդական բաժինի աւարտական վկայական, ինչպէս նաեւ անոր նախորդող բաժիններու աւարտական կարգերու քննութիւններու յաջողութեան վկայականները:

<u>Ընդունելութեան ժամեր.</u>

Ամէն Ուրբաթ, առաւօտեան ժամը 10:00 - 14:00:

Դիմումնագիրերը ներկայացնելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2016:

Յաւելեալ մանրամասնութիւններու համար դիմել Գահիրէի Ազգային Առաջնորդարան

Հեռաձայն 25901385 - 25904219 - 25913686.

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ուրբաթ, 16 Սեպտեմբեր 2016-ին

ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ՓՈՐԹ ՍԱՅԻՏ

Նախաձեռնութեամբ՝
ԳԱՀԻՐԷԻ Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ

Մանրամասնութիւնները յաջորդիւ
Կը խնդրուի նկատի ունենալ եւ չխաչաձեւել:

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1773 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՕԳՈՍՏՈՍ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٧٣ الخميس ٢٥ أغسطس ٢٠١٦


## ԱՊԱՀՈՎ ԾԵՐՈՒԹԻՒՆ ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱԱՊԱՀՈՎ ՔԱՂԱՔՈՒՄ

**ՀՐԱՉ ԲԱՅԱԴԵԱՆ**

Վերջին տարիներին Երեւանի փողոցներում աւելի ու աւելի շատ են լսւում արեւմտահայերէն խօսակցութիւններ: Հիմնականում սիրիահայեր են, որ իրենց լեզուով, հագուստով, խոհանոցով, սովորոյթներով տարասեռութիւն են մտցնում երեւանեան հասարակութեան մէջ, եւ դա դուր է գալիս ինձ: Թւում է սակայն, որ նրանք միեւնոյն ժամանակ Հայաստանում աւելացնում են այն մարդկանց քանակը, որոնք հանգամանքների բերումով աւելի հակուած են յարմարուողութեան, ստիպուած են լինել աւելի լոեալ իշխանութեան նկատմամբ: Եւ արդէն ակնյայտ է նաեւ, թէ ինչպէս են հայկական հեռուստաալիքները չարաշահում այս մարդկանց՝ Հայաստանում բնակութիւն հաստատելու ծանր որոշումը՝ էլ աւելի գարկ տալով «հայրենիք»-ի (ազգային միասնութեան, համերաշխութեան եւ այլնի) վաղուց չարչրկուած թեմային:

Առհասարակ, կարելի՞ է Հայաստանում կատարուող տարատեսակ փոփոխութիւնների մասին մտածել այս տեսանկիւնից՝ դրանք աւելի՞, թէ՞ պակաս յարմարուողական կը դարձնեն հասարակութիւնը կամ, միւս կողմից՝ արդեօ՞ք դրանք հէնց խօսում են հասարակութեան աւելի կամ պակաս յարմարուողական լինելու մասին: Օրինակ՝ Ռուսաստան արտագնայ աշխատանքի գնալու դժուարութիւնները (գործազուրկների աճը) եւ դրսից եկող դրամական փոխանցումների կտրուկ նուազումը (շատերի կենսապայմանների վատացումը) կը մեծացնեն իշխանութիւնից դժգոհների՞, թէ՞ նրա ողորմութեանը համբերատար սպասողների թիւը: Կամ՝ հասարակութեան ծերացումը կը պակասեցնի՞ փոփոխութիւնների հասնելու եւ դրանց համար պայքարելու ցանկութիւնը: Տեղեկատուական տեխնոլոգիաների ոլորտի յետագայ զարգացումը (եթէ նման բան կատարուի) եւ բազմաթիւ մասնագէտների աւելացումը, որոնք ունեն լաւ կենսապայմաններ եւ շարժունութիւն, կարող են ցանկացած պահի հեռանալ Հայաստանից, աւելի՞ կը պակասեցնի երիտասարդների քաղաքական ակտիւութիւնը: Իսկ դպրոցական ծրագրերում հայրենասիրական շախմատի ու երգուպարի՝ որպէս պարտադիր առարկաների աւելացո՞ւմը...

Ինչ որ առաջին հերթին աչքի է զարնում «յուլիսեան ապստամբութեան» մասին Գէորգի Դեղուգեանի յօդուածում, հեղինակի նեղուածութիւն ու բարկութիւնն է: Իսկ նեղսրտում է յարգարժան պրոֆեսորը միանգամայն հասկանալի պատճառով. ոտնահարուել է հայ մարդու՝ ծերութեան տարիները Հայաստանում խաղաղ ապրելու նրա իրաւունքը: Մինչեւ վերջերս մարդիկ միայն երազում էին մահից յետոյ Հայաստանում թաղուելու մասին, հիմա արդէն ոմանք ցանկանում են Հայաստանում ապրել իրենց ծերութեան տարիները: Մի՞թէ լաւ չէ: Լաւ է, բայց դարձեալ միտքս է գալիս յարմարուողութեան թեման: Հասկանալի է, թէ ում շարքերն են համալրում սիրելի պապիկները: Նրանց պէտք է խաղաղ կեանք, Երեւանում զբօսնելու, շուկայ գնալու եւ ուրիշ պարզ բաների հնարաւորութիւն, այլ ոչ թէ զինուած ընդհարումներ ու խռովութիւններ:

Տեսական ընդհանրացումներից ու վերացական սխեմաներից խուսափելը (այսպիսի հաւաստիացումներով է սկսւում յօդուածը) գուցէ իսկապէս վատ չէ, բայց հազիւ թէ այն դէպքում, երբ դրան փոխարինում է «օթվէթ փրոսթոյ» [ռուսերէն՝ պատասխանը պարզ է, Ձ.] սկզբունքը, որը չի ապահովագրում պարզունակ ստերէօտիպների ծուղակը ընկնելուց: Յօդուածում յուլիսեան իրադարձութիւնների հիմնական հերոսներից մէկը՝ Ժիրայր Սէֆիլեանը, Բէյրութում փողոցային մարտերի իր փորձով եւ պաղեստինեան զինեալներից կրած ենթադրեալ ազդեցութեամբ, նկարագրւում է որպէս պոտենցիալ զինուած ապստամբ: Իսկ նախկին «կոմերիտմիութեան աշխատակից», «կոռումպացուած» Սերժ Սարգսեանը, պարզւում է, կրակելու հրաման չի տուել, քանի որ Հայաստանում գոյութիւն ունի ցեղասպանութիւն ապրած ժողովրդի տաբուն. իւրայիններին չի կարելի սպանել:


Հրաչ Բայադեան

Ցեղասպանութեան զոհը արեւմտահայութիւնն էր, եւ պէտք է զգուշութիւն ցուցաբերել՝ դրա հնարաւոր հետեւանքները արեւելահայութեան եւ յատկապէս՝ ղարաբաղցիների վրայ տարածելիս: 1990-ականներին Ղարաբաղ կռուելու գնացողները կարող էին ունենալ տարբեր դրդապատճառներ, եւ արեւմտահայ արմատներ ունեցողների ու սփիւռքահայերի համար առաջնային կարող էր լինել ցեղասպանութեան ժամանակ նահատակուած նախնիների (ոչ միայն առհասարակ արեւմտահայերի, այլեւ շատ որոշակի մարդկանց՝ ընտանիքի անդամների) համար վրէժ լուծելու ցանկութիւնը:

Ահա «տուեալ» Ժիրայր Սէֆիլեանին յօդուածագիրը մերժում է ցեղասպանութեան հետեւանքների հետ ցանկացած կապ: Նա գնացել է Ղարաբաղ կռուելու, իսկ յետոյ Ղարաբաղում կամ Հայաստանում այսքան տարի ապրել միայն որպէս «էկզոտիկ սփիւռքահայ», նախկին լիբանանցի զինեալ եւ պոտենցիալ ապստամբ: Եւ անցած Յուլիսին եւս նրա արարքները ոչ մի կերպ պայմանաւորուած չեն իւրայիններին սպանելու նկատմամբ գործող տաբուով, թէեւ լաւ յայտնի է, որ ի վերջոյ խաղաղ յանձնուած ապստամբները զէնքը վայր դնելու համար հէնց նրա հրամանին էին սպասում: Իսկ այ Սերժ Սարգսեանի վարքը բացատրելիս շատ յարմար է յիշել նման տաբուի գոյութեան մասին:

Իսկապէս հասկանալու համար, թէ որքան կասկածելի է այս տաբուի դերը այս իրադրութեան մէջ, բաւական է հարցնել, թէ ինչ կը պատահէր, եթէ նախագահը լինէր ոչ թէ Սերժ Սարգսեանը, այլ Ռոբերտ Քոչարեանը: Վերջինս մի անգամ համոզիչ կերպով ցոյց տուել է, թէ ինչ յօրինուած կամ իրական տաբուներով պէտք չէ բացատրել իր գործողութիւնները: Ահա այսպիսի զուարճալի "cultural profiling" կատարուած նոյն յաջողութեամբ, ինչ շատ երկրներում անում են յատուկ ծառայութիւններն ու դրանց համալսարանական խորհրդատուները:

➭ 3

## ՀՐԱՏԱՊ ԿՈՉ ՍՓԻՒՌՔԻՆ՝ ՊԱՀԱՆՋԵԼՈՒ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐԴՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Մինչ բազմաթիւ արտասահմանեան եւ արտաքին դերակատարներ կոչ էին անում Երեւանում ոստիկանութեան ՊՊԾ գունդը գրաւած զինուած խմբի ծայրայեղ քայլին արձագանքել առանց ծայրայեղ քայլերի դիմելու, Սփիւռքը հիմնականում լռում էր:

Հակառակ դրան, Հայաստանի ղեկավարութիւնը համատարած կերպով ձերբակալում էր բոլոր նրանց, ում կասկածում էր ընդդիմադիր լինելու մէջ, այդ թւում՝ խաղաղ ցուցարարներին, որոնք իրականացնում էին խօսքի արտայայտման իրենց սահմանադրական իրաւունքը՝ զսպուածութեան կոչելու կամ բողոքելու իշխանութեան քաղաքականութեան եւ գործողութիւնների դէմ:

Ընդհանուր առմամբ Սփիւռքը ադեկվատօրէն չի արձագանքել իշխանութեան այս գործողութիւններին: Այս պահին դժուար է գնահատել այդ լռութեան դրդապատճառները:

Գուցէ դրա պատճառը համոզմո՞ւնքն է, որ մեր՝ Սփիւռքում ապրողներիս գործը չէ միջամտել օտար երկրի ներքին գործերին, եթէ խօսքը չի վերաբերում Ղարաբաղի հարցին եւ Հայաստան-Թուրքիա յարաբերութիւններին: Իսկ գուցէ այն պատկերացո՞ւմն է, թէ Հայաստանի կառավարութեան խնդիրն է՝ սպասարկել իր ժողովրդի կարիքները միայն այն դէպքում երբ խօսքը չի վերաբերում հիւանդներին, կարիքաւորներին, աղքատներին, բանակին, տարեցներին, հանրակրթական դպրոցներին եւ երեխաներին:

Տպաւորութիւն է, որ սպասարկւում են միայն իշխող վերնախաւի կարիքները, ովքեր ապրում են շռայլ կեանքով՝ իրենց ընտանիքների անուններով անյաջող քօղարկուած միջոցների եւ օֆշորային ընկերութիւնների շնորհիւ:

Վերջերս Ամենայն հայոց կաթողիկոսն անձամբ պատշաճ համարեց դատապարտել Սասնայ Ծռերի բռնի գործողութիւնները, բայց այդպէս էլ չդատապարտեց իշխող կուսակցութեան անարդարութիւնները իր եկեղեցական հօտի նկատմամբ, այդ թւում՝ սիստեմատիկ ընտրակեղծիքներն ու ցցուն իրաւախախտումները, ինչպէս նաեւ գերազրեսիւ ոստիկանութեան եւ խայտառակ վայրի աւազակախմբերի սանձարձակումները:

Սփիւռքում համայնքների շատ առաջնորդներ են փակ դռներից ներս խոստովանում, որ նրանց համար գաղտնիք չէ Հայաստանի ծայրայեղ կոռումպացուածութիւնը, բայց չեն կարող բարձրաձայնել ճշմարտութիւնը, որովհետեւ դա կարող է վարկաբեկել իրենց արած բարի գործը՝ մարդկանց «աւելի բարենպաստ ապագայի յոյս» ներշնչելու ուղղութեամբ, սակայն ո՛չ այն դէպքերում, երբ այդ յոյսը վերաբերում է մաքուր իշխանութիւններին, որոնք հաւասար խաղի կանոններ են սահմանում տնտեսական դաշտում, թոյլ են տալիս ազատ ու արդար ընտրութիւններ եւ ամրապնդում են անկախ դատական իշխանութիւնն ու օրէնքի գերակայութիւնը: Հաւանաբար համայնքային առաջնորդները սրանք մանր հարցեր են համարում՝ աղքատութեան եւ սովի համեմատ: Մինչդեռ բոլորս ենք ականատես եղել, որ մարդիկ ոչ թէ աղքատութեան եւ սովի դէմ էին բողոքում, այլ պահանջում էին ժողովրդավարութիւն եւ մարդու իրաւունքներ:

Այսպիսով, մինչ մենք մեզ գովերգում էինք հայրենիքում յոյս ներշնչելու համար, մեր լռութիւնն ու կեղծաւորութիւնը սպանում էին այդ յոյսը, Հայաստանում մեր ծախսած ժամանակը, գումարն ու ջանքերը դարձնում անպտուղ եւ անարդիւնք՝ չնայած ➭ 2

## «ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԼՈՒԾՄԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ԱՌԿԱՅ Է ԼԻԴԵՐՆԵՐԻ ՄՐՑԱԿՑՈՒԹԻՒՆ». ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ ԱՆԴԱՄ

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Ռուսաստանի Դաշնութեան Հանրային Խորհրդի անդամ Դենիս Դվորնիկովը կարծում է, որ ղարաբաղեան հակամարտութեան լուծման համար առաջին հերթին պէտք է ճանաչել Արցախի Հանրապետութեան անկախութիւնը: Այս մասին նա ասել է *Ժողովուրդ* օրաթերթի հետ զրոյցում: Դվորնիկովը, անդրադառնալով Օգոստոսի 10-ին Սերժ Սարգսեանի՝ Մոսկուա կատարած այցի արդիւնքներին, ասել է. «Ես կարծում եմ, որ կոնֆլիկտի լուծման նախադրեալներ կան, սակայն դրանք կախուած չեն միայն Ռուսաստանից, Հայաստանից կամ նոյնիսկ Ադրբէջանից: Խաղաղ լուծման տարբերակը պէտք է ցանկանան խոշոր գերտէրութիւնների ղեկավարները միաժամանակ: Պէտք է հասկանալ, որ նոյնիսկ խաղաղ լուծման գործընթացում առկայ է լիդէրների մրցակցութիւն: Եւ եթէ գերտէրութիւններից մէկի մօտ ինչ-որ բան ստացւում է այս ուղղութեամբ, ապա միւսները սկսում են կրակի վրայ իւղ լցնել եւ դժուարացնել խաղաղ գործընթացը, որպէսզի մրցակցից խլեն յաջող խաղաղարարի անունը»»:

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԴԷՄՔԵՐ

# ՎԱՆ ԼԷՕԻ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐԸ ՄԱՍ ԿԸ ԿԱԶՄԵՆ ԱՒԵԼԻ ՔԱՆ ԿԷՍ ԴԱՐ ԵՐԿԱՐՈՂ ԵԳԻՊՏՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ. «ՍԵՂԱՆԻՆ ՎՐԱՅ ՀԱՐԻՒՐ ՈՍԿԻ ԴԻՐ ԵՒ ՓՈԽԱՐԷՆԸ ՍՏԱՑԻՐ ԳԼՈՒԽ-ԳՈՐԾՈՑ ՄԸ... ՍԵՒ-ՃԵՐՄԱԿ»

ԱՔՐԱՄ ՁԱԱԹԱՐԻ

Արաբերէնէ Թարգմանեց՝ Հ. Ա.

Քանի մը տարի առաջ [1997-ին, Յ.Ա.], խումբ մը սինեմայի գործիչներ եւ լուսանկարչական արուեստով հետաքրքրուողներ Պէյրութի մէջ հիմնեցին ծրագիր մը զոր կոչեցին Պատկերի Արաբական Հիմնարկ: Ինչպէս անոր հիմնադիրներէն Աքրամ Զաաթարի կ'ըսէ՝ ծրագիրը կը միտի «հաւաքել արաբական աշխարհի մէջ ԺԹ. դարէն մինչեւ Ի. դարու 60-ականները գործած արհեստավարժ լուսանկարիչներու գործերը, նպատակ ունենալով զանոնք պահպանել, ցուցակագրել եւ տրամադրելի դարձնել ուսումնասիրողներուն: «Հիմնարկին» յայտնաբերած» լուսանկարիչներէն մէկն էր Վան Լէօ, բուն անունով՝ Լեւոն Պոյաճեան, եգիպտահայ մը՝ որ իր ողջ գեղարուեստական կենսագրութեան արտադրած գործերուն ընդմէջէն կարողացաւ արձանագրել եգիպտական յիշողութեան կարեւոր մաս մը: Վան Լէօ Պոյաճեանի գործերը մաս կազմեցին Ֆրանսայի Արլ քաղաքի մէջ վերջերս բացուած ցուցահանդէսին, որ ապա փոխադրուեցաւ Մարսիլիա: Մաս կազմեցին նաեւ Actes Sud ֆրանսական հրատարակչատան լոյս ընծայած գիրքին՝ *Դէմքեր Գահիրէէն՝ Վան Լէօ, Արման, Ալպան* [երեք լեզուներով՝ ֆրանսերէն, հայերէն եւ արաբերէն, Յ.Ա.]: Ստորեւ Աքրամ Զաաթարի կը պատմէ Վան Լէօի հետ վերջերս ունեցած հանդիպումը Գահիրէի մէջ:

Լեւոն Պոյաճեան յաջողեցաւ երեւակայութեանս մէջ սերմանել եօթը տարեկան երկար մազերով երեխայի մը պատկերը՝ որ սպունգ մը բռնած կը վազէ դպրոցի բակին մէջ, մինչ միւս երեխաները ի զուր կը փորձեն ետեւէն վազելով հասնիլ իրեն: Չեմ գիտեր որքան ճիշդ է այս նկարագրութիւնը: Այս դէպքը՝ զոր ինծի պատմեց այսօր, կատարուած է 1927-ին Զակազիկի մէջ: Դժուար է ըսել՝ թէ այսքան տարուայ ընթացքին որքան անաղարտ մնացած է ան: Բայց Լեւոն այս տեսարանը պատմեց իր բոլոր մանրամասնութիւններով հանդերձ, կարծես սինեմայի տեսարան մը ըլլար՝ ուր կը լուէր չարժումին աղմուկը եւ երեխային հեւքը: Եօթանասուն տարի առաջ էր ասիկա: 1930-ին Լեւոն իր ծնողքին հետ վերջնականապէս հեռանալով այս հանդարտ քաղաքէն կը հաստատուի Գահիրէ, ուր կը յաճախէ տեղւոյն վարժարանները իսկ 1940-ին կ'ընդունուի Ամերիկեան Համալսարան: Յետագային կը հռչակուի Վան Լէօ անունով ինչպէս նաեւ իր համբաւը կը տարածուի իբրեւ Գահիրէի ամենալաւ լուսանկարիչներէն մէկը:

Այսօր այցելեցի Վան Լէօին, հետս ունենալով վիտէօ քամերաս: Լէօ յիսուն տարի անցուցած է նեկաթիւը սրբագրելով եւ հմտօրէն բիւրեղացնելով պատկերը: Ան լուսանկարչութիւնը համեմատեց կարի արհեստին հետ, նկատի ունենալով ոչ թէ երկուքին պահանջած մարդկային ճիգը այլ անոնց աստիճանական անհետացումը իբրեւ արհեստ: Թերեւս իրեն զայրացուց գունաւոր վիտէօն քանի որ անիկա կը հանդիսանայ սեւ-ճերմակ լուսանկարի նահանջի պատճառներէն մէկը: Ըսաւ՝ որ կարը ամէն գնով կը նահանջի պատրաստ հագուստին առջեւ, եւ աւելցուց՝ որ լուսանկարչութիւնը առաւելութիւն մը ունի, քանի որ զգեստի «ոճ»-ը անցողիկ է մինչդեռ լուսանկարը յաւերժական է: Իրօք, եթէ ենթադրենք որ լուսանկարին պարտականութիւնն է մարդուն հրաւիրել դիտելու, կը նկատենք որ ան իր այս կարողութիւնը կը պահպանէ երկար ժամանակ՝ առնուազն այնքան ժամանակ որ կենդանի է լուսանկարի սեփականատէրը: Այս խօսքը փաստելու համար Վան Լէօ ցոյց տուաւ իր եօթը տարեկան լուսանկարը Զակազիկի մէջ, զոր նկարած էր Վարժապետեան անունով հօրենական ընկեր մը: Լուսանկարին մէջ փոքրիկ Լեւոն կ'երեւայ իբր Յիսուսի ծնունդը ողջունող հրեշտակի մը տարազով ծպտուած, իսկ եղբայրը կ'երեւայ հովիւի տարազով ծպտուած: Մատնանշելով լուսանկարը Լէօ կ'ըսէ. «Առանց այս նկարին, երբեք պիտի չգիտնայի վաղ տարիքիս ունեցած տեսքս եւ ոչ ալ տեղեակ պիտի ըլլայի այս կացութենէն:»

### ՍԻՆԵՄԱՅԻ ԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Յետագային Վան Լէօ կը զարգացնէ դարասկիզբի լուսանկարներուն բնորոշ դիմակի գաղափարը, այնտեղ աւելցնելով սինեմայի ըմբռնումներ: Ընտանեկան բնակարանին մէջ աշխատած շրջանին՝ 1942-1946-ին, կը լուսանկարէ աւելի քան 40 ինքնանկար: Ապա կը գնէ Սթուտիօ Մեթրօ, զոր կը վերանուանէ Սթուտիօ Լէօ: Իր ինքնանկարներուն մէջ կը



*Վան Լէօ՝ Լեւոն Պոյաճեան*

ներկայանայ Հոլիուտի ֆիլմերէն ներշնչուած դերերու մէջ: Ան կ'ըսէ. «Լոյսի, բեմազարդարանքի եւ զգեստներու որոշ յատկանիշներ ուսումնասիրելու համար կը գնէի հանդէսներ եւ Հոլիուտի դերասաններու նկարներ»: Ապա կ'աւելցնէ. «Իր արտադրաձեւով ինքնանկարը կը տարբերի յաճախորդներուն համար նախատեսած լուսանկարներէս: Կը նայէի հայելիին մէջ եւ կ'ընէի ինչ որ կ'ուզէի: Լոյսը կը կարգաւորէի եւ բնական վիճակի մէջ կը լուսանկարէի ինքզինքս: Յաճախորդին հետ չունիմ այս ազատութիւնը: Ինքնանկարներուս մէջ կրնամ լուսաւորութեան կամ արտայայտութիւններուն հետ կապուած ոչ-սովորական բաներ ընել: Օրինակ, ճաղատ գլուխով լուսանկար ունիմ: Երիտասարդ էի եւ պատրաստ էի այնպիսի բաներու որոնք այսօր չեմ կրնար կատարել: Ուզեցի փաստել՝ որ գծելով լուսաւորութիւնը եւ դէմքի արտայայտութիւնները, կարելի է փոխել դէմքի դիմագիծը:»

Վան Լէօ մեծ կարեւորութիւն կ'ընծայէ տեսարանի կատարելութեան, այսինքն՝ տեղի պատրաստութեան, լուսաւորութեան, լուսանկարումի անկիւնին: Ան նոյնիսկ կ'ուսումնասիրէ դէմքի արտայայտութիւնները որպէսզի կարողանայ խլել նկարումի յարմար պահը: Կարծես իր լուսանկարածը սինեմայի տեսարան մը ըլլայ: Գործածած է նաեւ մէկ նկարի կրկնակի տեսարանի թեքնիքը: Ապա կու գայ գործատունի աշխատանքը որպէսզի նկարը ներկայանայ, իր բառերով, «հարիւր առ հարիւր» բիւրեղեայ վիճակով: Այս պատճառով, Վան Լէօ օգնականներ չ'ընդունիր, նոյնիսկ եթէ անոնք ըլլան վարպետ լուսանկարիչներ: Ան ուրիշներէն կը տարբերի իր բնածին վարպետութեամբ: Մինչդեռ իրեն ժամանակակից Գահիրէի ուրիշ յայտնի լուսանկարիչներ, յատկապէս Արման, Ալպան եւ Արշակ, վերածուեցան հիմնարկներու՝ ներգրաւելով լուսաւորութեան, մեծացումի եւ յղկումի [retouche] համար աշխատող բազմաթիւ օգնական մասնագէտներ, Վան Լէօ վճռած էր անձամբ կատարել ամբողջ գործողութիւնը:

Վան Լէօ նստած է առջեւս, Ֆուատ փողոցը դիտող պատուհանին առջեւ տեղադրուած աթոռին վրայ, յղկումի համար նախատեսուած սենեակին մէջ: Նայելով դիմացը գտնուող պատրաստ հագուստի խանութին, կ'ըսէ. «Արդէն սպիտակ մեծ ինքնաշարժ մը ունի: Եթէ կարողանամ վերադարձնել ժամանակը, իբրեւ արհեստ պիտի չընտրեմ լուսանկարչութիւնը:» Որոշ լռութենէ ետք կ'աւելցնէ. «...Թէեւ կը սիրեմ աշխատանքս, բայց լուսանկարիչը չի կրնար հարստանալ: Եթէ վաճառականը խելացի է, կրնայ երկու տարուայ ընթացքին դրամ կուտակել: Բայց տե՛ս, յիսուն տարի գործատան մէջ անցընելէս ետք ի՞նչ վաստակեցայ: Ոչինչ գումար: Գրեթէ ոչինչ:» Լուսանկարչական աշխատանքի իր ողջ տեւողութեան, Վան Լէօ երբեք չէ փնտռած նիւթական շահում եւ ո՛չ ալ ձգտած է մերձենալ Եգիպտոսի իշխանականներուն: Այն քիչերէն է՝ որոնք հետամուտ չեն եղած ստանալու «Թագաւորի լուսանկարիչ» կամ «նախագահի լուսանկարիչ» մականունը, ինչպէս, օրինակ, Ռիատ Շէհաթա կամ Արշակ՝ որոնք 30-40-ականներուն մօտ էին թագաւորական ընտանիքին: Լուսանկարիչներուն համար այս առաւելութիւնը հպարտութեան աղբիւր մըն էր, զոր կ'արձանագրէին իրենց սթուտիօներու դրօշմներուն վրայ, օրինակ՝ «Ռիատ Շէհաթա՝ Նորին Գերազանցութիւն Թագաւորին լուսանկարիչը»: Ասիկա նաեւ ինքնածանուցումի կերպ մըն էր: Լուսանկարիչները կը հպարտանան նաեւ աստղային արուեստագէտներու նկարներով: Վան ➩ 4

1 ➩

## ՀՐԱՏԱՊ ԿՈՉ ՍՓԻՒՌՔԻՆ՝ ՊԱՀԱՆՋԵԼՈՒ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԻՒՆ...

չքեղ հիւրանոցներին, ճոխ ռեստորաններին եւ ցուցադրական նորարար դպրոցներին:

Մեր մեծ մասը կարծում էր, թէ ժամանակը կը բուժի Հայաստանի վէրքերը, եւ որ ինչ-որ կերպ, ինչ-որ հրաշքով ղեկավարները խելքի կը գան ու հաւատարիմ կը լինեն նոր Հայաստանի իրենց խոստմանը: **Մինչդեռ երկու տասնամեակը քիչ չէ՝ ապացուցելու համար, որ կոռուպցիան սնում է կոռուպցիա, տանում դէպի ձախողուած պետութիւն եւ ցինիկ հասարակութիւն, որն այլեւս կորցնելու բան չունի: Ինչպէս Ջոն Քենէդին է իմաստուն կերպով զգուշացրել, «Ովքեր անհնար են դարձնում խաղաղ յեղափոխութիւնը, անխուսափելի են դարձնում բռնի յեղափոխութիւնը»:**

Եթէ իրօք ազնիւ լինենք, գուցէ արդէն չափազանց ուշ է՝ յաղթահարել բարձր ռիսկերն ու սպասուող վտանգաւոր ճանապարհը: Սակայն, եթէ Սփիւռքն իր իսկական աւիւնը երբեւէ ցոյց տալու հնարաւորութիւն է ունեցել, հիմա է այդ ժամանակը:

**Բոլորն, ովքեր գիտակցում են այս ճգնաժամային պահը, պէտք է յորդորեն մեր համայնքների ներկայացուցիչներին եւ կազմակերպութիւններին՝ բարեգործական, կրօնական եւ քաղաքական, հրապարակաւ պարսաւել մարդու իրաւունքների եւ արժանապատուութեան ահագնացող ոտնահարումների պատասխանատուներին եւ աջակցեն նրանց, ովքեր պահանջում են ընտրական բարեփոխումներ եւ ոստիկանութեան օրինականութիւնների համար պատասխանատուութիւն: Դա ներառում է ընտրողների ցուցակների հանրային վերահսկողութիւն եւ անցած Դեկտեմբերին սահմանադրական հանրաքուէի ժամանակ թոյլ տուած խախտումների առարկայական հետաքննութիւն, նաեւ՝ այդ ջանքերին խոչընդոտողների վերաբերեալ:**

Մենք այլեւս չպէտք է դիմենք այլընտրանքի, այն է՝ փորձել պահպանել օրէնքի եւ օրինականութեան կեղծ շղարշը, որն անդամալուծում է Հայաստանի կարողութիւնը՝ տանը եւ սահմանին դիմակայելու մարտահրաւէրներին, ինչը յարուցում է քաղաքացիական բռնութիւն:

Մարդու իրաւունքների եւ արդարութեան կողմում աներկբայ դիրքորոշումը վայրկենապէս չի լուծի խորն արմատներ գցած խնդիրները, որ ախտահարել են երկիրը: Բայց դա առաջին քայլն է նո՛ր ուղղութեան, որը մարդկանց յոյս կը ներշնչի ինչպէս երբեւէ, եթէ արուի համարձակօրէն, սրտանց, եւ անվարան:

Նրանք երկար են սպասել իրենց կոչի արձագանքին, բայց, ինչպէս ականատես եղանք վերջին իրադարձութիւններում, նրանք չեն կարող յավերժ սպասել:

Armenian Bar Association, Պրոֆ. Սիմոն Փայասլեան (Զարզ եւ Էլիզաբէթ Քէնոսեանների անուան Արդի Հայոց Պատմութեան եւ Գրականութեան Ամբիոնի վարիչ, Բոստոնի Համալսարան), Policy Forum Armenia, Վահէ Պէրպէրեան (ԱՄՆ. նկարիչ, գրող, դրամատուրգ, հումորիստ), Հայկական Վերածնունդ (Նիւ Եորքի մասնաճիւղ), Վահէ Թաչճեան (Գերմանիա. *Յուշամատեանի* գլխաւոր խմբագիր), Նորա Արմանի (դերասան, ռեժիսոր, ակտիւիստ, Նիւ Եորքի Սոցիալական կինոփառատօնի հիմնադիր եւ գեղարուեստական ղեկավար), Կարօ Ղազարեան (Իրաւունքի ժողովրդական Քոլէջի դասախօս եւ դեկան, Լոս Անջելէս), Նուրհան Պէճիդեան (ԱՄՆ), Րաֆֆի Յովսէփեան (Նիւ Եորքի Հայ Ուսանողական Միութեան նախագահ, New York University-ի դասախօս), Յարութ Զաթմաճեան (ԱՄՆ. դերասան, ռեժիսոր, ակտիւիստ), Ֆիլիպպէ (Րաֆֆի) Կալպայեան (Ֆրանսիա), Արմէն Դոնէլեան (դաշնակահար եւ կոմպոզիտոր), Justice Armenia, Դր. Անի Բալաքեան (Նիւ Եորքի Քաղաքային Համալսարանի (CUNY) Միջին Արեւելքի Կենտրոնի (MEMEAC) ասոցացուած տնօրէն), Հայ Գիտնականների եւ Ինժինէրների Ընկերակցութիւն (AESA) (Նիւ Եորքի եւ Նիւ Ջէրսիի մասնաճիւղ), Արա Տինքճեան (ԱՄՆ. երաժիշտ եւ կոմպոզիտոր), Հայկական Վերածնունդ (Լոս Անջելէսի մասնաճիւղ), Վիգէն Չէթէրեան (Շուեցարիա. գրող, դասախօս), Վիգէն Դարբինեան (Ֆրանսիա. երգիչ, կոմպոզիտոր), Մարօ Մաթոսեան (Կանանց Աջակցման Կենտրոն), Պերճ Արազ (ԱՄՆ), Մարիօ Եազիճեան (ԱՄՆ. իրաւաբան, Հայկական ցեղասպանութեան միջազգային ճանաչման իրաւական խմբի տնօրէն, Մարդու իրաւունքների միջազգային ֆեդերացիայի նախկին տնօրէն), Զարեհ Ուզունեան (Կանադա. Միջազգային բժշկական կոմիտէ), Արա Արազ (ԱՄՆ):

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆԸ ՇՆՉԱՀԵՂՁ Է ԼԻՆՈՒՄ. ՏՆՏԵՍԱԳԷՏՆԵՐԸ ՈՉ ՄԻ ԼԱՒ ԲԱՆ ՉԵՆ ԿԱՆԽԱՏԵՍՈՒՄ.

*ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Դեռեւս Յուլիսի վերջին *Ժողովուրդը* տեղեկացրել էր, որ Սասնայ Ծռեր զինուած խմբաւորման կազմակերպած գրոհի ու դրան հետեւած 15-օրեայ իրադարձութիւնների օրերին արդէն արձանագրուեց, որ ամռան երկրորդ ամիսը տնտեսութեան համար լաւ պատկեր չի ուրուագծել: Հայաստանի տնտեսութեան գրեթէ բոլոր ճիւղերում անկում կայ: *Ժողովուրդ* օրաթերթի այս լուրը երէկ հաստատուեց նաեւ պաշտօնապէս: ՀՀ ազգային վիճակագրական ծառայութեան հրապարակած տուեալների համաձայն՝ այս տարուայ Յուլիսին, անցած տարուայ նոյն ամսի համեմատ, տնտեսական ակտիւութեան ցուցանիշը նուազել է 4,3 տոկոսով: Այլ կերպ ասած՝ այս տարուայ Յուլիսին Հայաստանի տնտեսութիւնը անկում է արձանագրել: Ամենաողբերգականն այն է, որ տնտեսագէտները առաջիկայ ամիսների համար եւս ոչ մի լաւ բան չեն կանխատեսում: Իսկ ստեղծուած վիճակը, ըստ տնտեսագէտների, պայմանաւորուած է նրանով, որ ընթացիկ տարում Հայաստանում արտերկրից ներդրումները հասել են զրոյական վիճակի, դրա հետ միասին տրանսֆերտները եւս գնալով աւելի են նուազում: Այսինքն՝ արտերկրից աւանդաբար Հայաստան եկող գումարները այլեւս չեն գալիս, եւ տնտեսութիւնը սկսել է շնչահեղձ լինել»:

## ԱՊԱՀՈՎ ԾԵՐՈՒԹԻՒՆ ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱԱՊԱՀՈՎ ՔԱՂԱՔՈՒՄ

1

Միւս կողմից՝ ինչո՞ւ համեմատել Հայաստանը Ամերիկայի կամ Ռուսաստանի հետ մի իրադարձութեան համատեքստում, որը այս երկրներում կատարուելու դէպքում կը յայտնուէր գլխաւոր միջազգային լրատուամիջոցների ուշադրութեան կենտրոնում, իսկ այս դէպքում մնաց գրեթէ աննկատ: Տէրութիւններ, որոնք ունեն մեծագոյն ռազմական հզօրութիւն եւ մարդկանց ոչնչացնելու մեծ փորձ թէ երկրից դուրս, թէ երկրի ներսում: Թերեւս հեղինակի կենսափորձն է յուշում՝ օրինակներ փնտռել հէնց այս հասարակութիւններում, բայց, միւս կողմից, հէնց այս երկրների բարձրունքից է, որ Հայաստանում կատարուող իրադարձութիւնը դառնում է այսքան խղճուկ ու ծիծաղելի: Եւ այդ նոյն անհաւասարութիւնն է գործում յօդուածագրի ու նրա նկարագրած զանազան մարգինալների միջեւ (պատերազմից յետոյ հասարակութեան մէջ իրենց տեղը չգտած ազատամարտիկներ, «քաղաքացիական հասարակութեան» անունից խօսող աղջիկներ եւ հէնց ինքը՝ յետխորհրդային այս փոսի մէջ խորը թաղուած Հայաստանի Հանրապետութիւնը): Այս անհաւասարութիւնն է այդպէս անողոք ձեւով միակողմանի դարձնում հաղորդակցութիւնը, այդպէս անառարկելի դատավճիռ՝ յօդուածի ուղերձը՝ տեղ բացելով ստերէօտիպներ մանիպուլացնելու, սարկազմ ու հեգնանք բանեցնելու մետրոպոլիական շնորհների համար, որոնք ինձ յիշեցնում են ուշ խորհրդային տարիները: Այն ժամանակ նման յատկութիւններով փայլում էին զանազան՝ հիմնականում ռուսական կրթութեամբ եւ մոսկովեան կապերով ու առնչութիւններով տոգորուած անոբներ: Պատահական չէ, որ յօդուածի միակ դրական հերոսը «մեծ մուլտիպլիկատոր Ռոբ Սահակեանցն» է՝ իր հեգնական արտայայտութեամբ հանդերձ:

Հասկանալի է, ես չեմ առաջարկում յարգարժան պրոֆեսորին զրկել նախնիների երկրում խաղաղ ծերանալու հնարաւորութիւնից: Բայց գուցէ արժէ տեղափոխուել Ղարաբաղ, որը նոյնպէս այդ երկրի մի մասն է եւ որտեղ կարելի է գտնել Դիւրկհայմի տեսութեան էլ աւելի համոզիչ հիմնաւորում: Այստեղ ապստամբութիւններ չեն սպասւում, աղջիկներն աւելի աւանդապաշտ են եւ, որքան գիտեմ, տղամարդկանց գործերին շատ չեն խառնւում: Եթէ չեմ սխալւում, տարիներ առաջ Ամերիկայում կառուցած իր տան տանիքին Գէորգի Դեղուգեանը ցանկացել է կանգնեցնել Լեռնային Ղարաբաղի դրօշը: Գուցէ արժէ մի տուն էլ «գրաւեալ տարածքներում» կառուցել: Վստահ եմ՝ նրան ե՛ւ հողակտոր կը տրամադրեն ե՛ւ նոր դրօշ կը տան, որն այս դէպքում կը լինի ճիշտ իր տեղում:

***Հետք***, **15 Օգոստոս 2016**

ԽՈՀԵՐ

## ԱՐՍԻՆԷ ԽԱՆՃԵԱՆ՝ ՍՓԻՒՌՔԻ ՏԻՊԱՐ ՄԸ ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՄԷՋ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Արսինէ Խանճեան՝ գանատահայ յայտնի դերասանուհի, ֆիլմի արտադրիչ եւ աքթիւիսթ: Կինը Ատոմ Էկոյեանի:

Հայաստան ժամանած էր Յուլիս 26-ի գիշերը, ներկայ գտնուելու բարեկամի մը հարսնիքին: Արդէն տեղեակ ըլլալով Սասնայ Ծռերու ապստամբութեան եւ ժողովրդային հանրահաւաքներուն մասին, օդանաւակայանէն ուղղակի կ'երթայ Խորենացի փողոց՝ մասնակցելու ցոյց-հանրահաւաքին:

Խանճեանի համար նորութիւն չէր Հայաստանի քաղաքացիական հասարակութիւնը: Ան անցեալ տարի մասնակցած էր ելեկտրականութեան գիներու թանկացումին դէմ կայացած Բաղրամեան պողոտայի ցոյցերուն, թէեւ իր ներկայութիւնը անցած էր քիչ մը աննկատ: Սասնայ Ծռերու պարագային, Խանճեանի մասնակցութիւնը ստացաւ տարբեր հանգամանք:

Ներկայ գրութեանս համար հիմնուեցայ Խանճեանի երեք տեսագրութիւններուն վրայ: Առաջինը Յուլիս 26-ի գիշերը (ապստամբութեան տասներորդ օրը) Խորենացի փողոցի հանրահաւաքի երեք ու կէս վայրկեան տեւած ելոյթն է: Երկրորդը Յուլիս 27-ին ՍիվիլՆէթի հետ ունեցած անգլերէն հարցազրոյցն է: Երրորդը Օգոստոս 5-ի հայերէն հարցազրոյցն է Առաջին Լրատուականի (1in.am) հետ: Բոլորն ալ հասանելի են YouTube-ի միջոցով:

Ի դէպ, Յուլիս 27-ի երեկոյեան, մօտաւորապէս ժամը եօթին, ոստիկանները Խորենացի փողոցէն բերման կ'ենթարկեն Խանճեանին: Երեք ժամ ետք ազատ կ'արձակեն:

Յիշեալ երեք ելոյթներուն մէջ Խանճեան յստակ դիրքորոշում կը ցուցաբերէ իր եւ հասարակութեան յարաբերութեան նկատմամբ: Ինքզինք միշտ կը ներկայացնէ իբրեւ սփիւռքահայ: Չի վարանիր գործածել «մենք» (սփիւռքահայ) եւ «դուք» (հայաստանցի) դերանունները: Բայց «մենք»-ը եւ «դուք»-ը, իր խօսքերով, կը ներկայանան «միասին իբր ազգ»: Ասիկա շատ կարեւոր կէտ մըն է: «Մենք»-ը եւ «դուք»-ը հիմնականօրէն մշակութային տարբերութիւններ են, տարբերութիւններ մտածումի, կողմնորոշումի, բարբառներու, ոճի եւ այլն: Այս տարբերութիւնները իրարու հետ կապուած են ենթակայական ներքին յարաբերութիւններով եւ հաղորդակցութիւններով, որոնք կը կազմեն ազգը իբրեւ մէկ միաւոր: Կարելի է ըսել՝ մէկ ազգ, տիալեքթիքական տարբերութիւններով: Ուրեմն, Խանճեան կը խուսափի արհեստական միակցութիւններէ եւ կեղծ ու անգոյ համակցութիւններէ:

Այսպէս, Յուլիս 26-ի իր հանրային բացօթեայ ելոյթը կը սկսի հետեւեալ բացատրութեամբ. «Այսօր տասը օր է որ կը հետեւինք սփիւռքի մէջ ձեր գործունէութեան, ձեր ձայնին, ձեր պահանջքներուն, ձեր խօսքերուն: Բայց պէտք է ըսել որ սփիւռքի մէջ շուարած ենք որովհետեւ չենք գիտեր ճիշդ ինչ ձեւով կրնանք ձեզ օգտակար ըլլալ իբր մեր ժողովուրդը՝ մենք եւ դուք միասին իբր ազգ:»

Յստակելով իր դիրքային վիճակը եւ ելլելով անկէ, Խանճեան իր ելոյթներուն մէջ կը կեդրոնանայ երկու փոխկապակցուած գաղափարներու վրայ.

1. Հայաստանի իշխանութիւններուն փտածութիւնը եւ ժողովուրդի հարցերուն նկատմամբ ցուցաբերած անտարբեր վերաբերմունքը:

2. Սփիւռքի անտարբերութիւնը Հայաստանի ներքին խնդիրներուն նկատմամբ, որ մասամբ արդիւնքն է Հայաստանի իշխանութիւններուն կողմէ կատարուած դիտաւորեալ մեկուսացումին: Սփիւռքը իր հետաքրքրութեան ոլորտը շրջափակելով Ղարաբաղի, ցեղասպանութեան եւ դրամական նուիրատուութիւններու սահմաններուն մէջ (որոնց կարեւորութիւնը Խանճեան քանիցս կը շեշտէ), կ'անտեսէ ժողովրդական ներքին պահանջքները:

Առաջին կէտին առնչութեամբ Յուլիս 26-ի ելոյթի ընթացքին բացայայտօրէն կ'ըսէ. «Երբ որ Երեւանի կեդրոնէն կ'անցնիմ եւ կը տեսնեմ լուսաւոր մեր մայրաքաղաքը, կը մտածեմ՝ արդեօք մնացեալ ժողովուրդն ալ լուսաւորուած կը զգա՞յ այսօր: Ըստ երեւոյթին՝ ոչ: Պահանջքներ ունիք եւ ձեր պահանջքները ճիշդ են: Մեր երկրին մէջ պէտք է կարենայ մեր կառավարութիւնը յարգել ժողովուրդի խօսքը, պահանջքը եւ մասնակցի ոչ թէ միայն մէջտեղ բերելով ոստիկանութեան ուժը այլ մասնակցի յատկապէս ոստիկանութիւնը եւ ժողովուրդը եւ կառավարութիւնը մօտեցնելով:»

Այս ելոյթը կ'աւարտէ նոյնիսկ մեղմօրէն ակնարկելով Սարգսեանի հրաժարականի հրատապութեան մասին, քանի որ «ժողովուրդին ձայնը այն է կամ պահանջքը այն է որ այլեւս համեստ ձեւով հեռանաք»:

Սփիւռքի անտեղի լռութիւնը Հայաստանի ներքին ժողովրդային պահանջքներուն նկատմամբ կը վերագրէ երկու պատճառներու, ինչպէս ցոյց կու տայ Առաջին Լրատուականի հարցազրոյցը (բանաւոր խօսքը կը մէջբերեմ լեզուական սրբագրութիւններով).

«[Սփիւռքի] լռութիւնը այս պահուս Հայաստանի այլեւս չի ծառայեր: Մենք [իմա՝ սփիւռքը, Հ.Ա.] քսանհինգ տարուայ ընթացքին գործունէութիւնները տարինք երեք յստակ ծիրերու մէջ՝ ցեղասպանութեան նկատմամբ, Արցախի պատերազմի եւ հարցերու շուրջ՝ հողային հարցերու շուրջ, եւ նաեւ մասնակից դարձանք օժանդակութիւն բերելով, [դրամ] հաւաքելով սփիւռքէն: Ատկէ անդին, ես յստակ կրնամ վստահեցնել, որ երկու պատճառներով սփիւռքը հեռու մնաց: Առաջինը սփիւռքի վերաբերմունքն է, այսինքն իր մտահոգութիւնը՝ որ քանի որ այսօր վերջապէս կրցած ենք Հայաստանի տարածքին ստեղծել պետութիւն մը եւ իշխանութիւն մը, պէտք է թիկունք կենանք անոնց որպէսզի չվտանգենք Հայաստանի գոյատեւումը: Երկրորդ, որ նոյնքան կարեւոր իմաստ ունի, Հայաստանի իշխանութեան եւ պետութեան կողմէ սփիւռքը հեռու պահուեցաւ իր մասնակցութիւնը բերելու, բացի այս երեք բնագաւառներէն, երկրի մէջ պատահած որեւէ քաղաքացիական եւ կամ առօրեայ հարցերու: Մեր իրաւունքը չէր նկատուեր այդ մէկը:»

Խանճեանի նշած առաջին պատճառը կապուած է սփիւռքի գիտակցութեան մէջ պետութեան մը ոչ-իրական մտատիպարի ստեղծումի գաղափարին հետ: Բայց պէտք չէ մոռնալ նաեւ, որ սփիւռքի այն կառոյցները՝ որոնք իրենց խօսքը ունեցան Հայաստանի մէջ, ինքնահաստատումի զանազան պատճառներով ու պատրուակներով նախընտրեցին ինքզինքնին նոյնացնել Հայաստանի իշխանական համակարգին հետ (միանալով, կամ դառնալով ենթակայ, կամ ընդդիմանալով), եւ այդ դիրքերէն խօսիլ ժողովուրդի անունով՝ իբր մտահոգուած Հայաստանի բնակչութեան պահանջքներով: Հակառակ դիրքաւորումը՝ նոյնանալ ժողովուրդին հետ եւ դիմադրել իշխանական համակարգը իր քմահաճ համախոհներով եւ կեղծ ընդդիմադիրներով, տեղի չունեցաւ:

Կայ նաեւ ինքնամեկուսացումի միտումը: ՍիվիլՆէթի անգլերէն զրոյցին մէջ Խանճեան կը մեղադրէ միջազգային հողի վրայ աշխատող հայ փաստաբանները եւ լրագրողները՝ որոնք դիտաւորեալ լռութիւն կը պահպանեն Հայաստանի իշխանական անիրաւութիւններուն հանդէպ (անգլերէնէ հայերէն թարգմանութիւնը իմս է).

«Ինչո՞ւ սփիւռքը ինքզինքին չի հարցներ՝ թէ ուր է միջազգային համայնքին ուշադրութիւնը Հայաստանի վրայ: Հրաշալի փաստաբաններ ունինք ԱՄՆ-ի, Ֆրանսայի եւ ողջ աշխարհի մէջ, որոնք գիտեն մարդու իրաւունքներու խախտումներուն հետ կապուած հարցերը: Ինչո՞ւ անոնք չեն փորձեր նախ յայտնաբերել Հայաստանի մէջ կատարուածը եւ ապա հրաւիրել միջազգային համայնքին ուշադրութիւնը: Ինչո՞ւ կարեւոր լրատուամիջոցներուն համար աշխատող սփիւռքի լրագրողները առաջ չեն մղեր այս հարցերը: Կամ կարելի է առաջ կը մղեն՝ մարտահրաւէրները հաւանաբար մեծ են, բայց ինչ որ ալ ըլլայ պարագան, ճիշդ հիմա Երեւանի մէջ կատարուող իրադարձութեան մասին ոչ մէկ հասցէագրում կը լսենք սփիւռքի կողմէ: Այստեղ է որ սփիւռքը պէտք է դադրի զգալ՝ թէ ինք կարող է միջամտել մեր ազգային ինքնութեան միայն որոշ կողմերուն:»

Առաջին Լրատուականի հարցազրոյցին ընթացքին նշած երկրորդ պատճառը Հայաստանի վերաբերմունքն է սփիւռքի նկատմամբ: Իրօք, Հայաստան երբեք չէ քաջալերած սփիւռքի ներգրաւումը ժողովրդային ներքին ու խոր խնդիրներուն: Պետական չքանշաններ կը շռայլուին սփիւռքի բոլոր այն անձերուն եւ կազմակերպութիւններուն՝ որոնք երբեք չեն յստարարած, այլեւ դիտաւորեալ քողարկած են, ահռելի չափերու հասնող իշխանական փտածութիւնը, նախագահական եւ խորհրդարանական ընտրութիւններու անվերջ խարդախութիւնները, օլիկարքական համակարգի տիրապետութիւնը եւ

4

# ՃԱՆԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի ՀԲԸՄ-ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2015-2016 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ կը բերեն որեւէ կրթական հաստատութեան աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին նախակրթական կրթութեան աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն, որոնք 90% եւ աւելի արդիւնք բերած են:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հաստատութեան համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Նախակրթարանի աւարտական դասարան | Ե.Ո. 250.- |
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 500.- |
| Երկրորդականի աւարտական դասարան | Ե.Ո. 1000.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| Ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 1500.- |
| Բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո. 2000.- |
| Մագիստրական աստիճանի աւարտին | Ե.Ո. 2500. |
| Դոկտորական աստիճանի աւարտին | Ե.Ո. 5000. |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անկէ պատճէն մը, պարտին ներկայացնել ՀԲԸՄ-ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ ՀԲԸՄ-ի վարչութեան:

Բոլոր դիմորդները ընդունելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2016:

Մրցանակներու յանձնումը թէ՛ Գահիրէի եւ թէ՛ Աղեքսանդրիոյ մէջ պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԱՐՍԻՆԷ ԽԱՆՃԵԱՆ՝ ՍՓԻՒՌՔԻ ՏԻՊԱՐ ՄԸ ՍԱՍՆԱՅ ԾՌԵՐՈՒ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՄԷՋ

3

նոյն ինքը իշխանական օլիկարքութիւնը, ռուսական գաղութատիրութիւնը, բազմազգ ընկերութիւններու նէօլիպերալ գաւթումը, ինչպէս նաեւ պետական շնորհաւորագիրեր կ'ընծայուին անորակ հրատարակութիւններու, խումբերու եւ ֆիլմերու՝ կը բաւէ որ անոնք ծառայեն իշխանական նպատակներուն, նպատակն ու արժէքը ըլլալով օտարացած հասկացողութիւններ:

Եւ, անշուշտ, Սփիւռքի Նախարարութիւնը: Սիվիլնէթի հարցազրոյցին մէջ Խանճեան կը գանգատի.

«Ունինք Սփիւռքի Նախարարութիւն մը: Երբեք չեմ կրցած հասկնալ զայն բացի այս կամ այն համայնքին հանդիպումներուն ընթացքին կատարուած լուսանկարներէն, ինչպէս նաեւ լեզուական հարցերու, գրօսաշրջիկութեան եւ նման նիւթերու մասին տեղի ունեցած խօսակցութիւններէ: Ի՞նչ կ'ընենք իրականութեան մէջ: Սփիւռքի այդ նախարարութիւնը ինծի համար էական մարմին մըն է պատասխանատու հաղորդակցութիւն հաստատելու թէ՛ Հայաստանէն դէպի սփիւռք եւ թէ՛ սփիւռքէն դէպի Հայաստան, որ պէտք է գործէ ազգակերտումի իւրաքանչիւր աստիճանին:»

Պիտի աւելցնէի, որ Սփիւռքի Նախարարութիւնը՝ որ ենթադրուած է միացնել սփիւռքահայութիւնը, աւելի եւս մասնատեց զայն, շնորհիւ իր խիստ ընտրողական վերաբերմունքին սփիւռքի հայ կառոյցներուն եւ (ոչ-)մտաւորականներուն նկատմամբ:

Խանճեանի գոյութիւնը Սասնայ Ծռերու ապստամբութեան մէջ իբրեւ սփիւռքահայ աչքառու քայլ մըն էր՝ գոնէ գաղափարական առումով, Հայաստան-սփիւռք մերձեցումի համար: Մերձեցումը չի կրնար տեղի ունենալ ի վերուստ թելադրուած փառատօներով եւ համագումարներով, որոնցմէ ետք ամէն մասնակից տուն կը վերադառնայ ինքզինք գովելու մեծամտութեամբ տոչորուած՝ իր իւրաքանչիւր ինքնափառաբանումը քօղարկելով մտացածին հայրենասիրական բառերու յորդառատութեամբ: Խորքային մերձեցում կրնայ տեղի ունենալ միայն ու միայն ժողովուրդի *ներքին* շերտերու իրական շփումի եւ երկկողմանի մտահոգութիւններու փոխըմբռնումի միջոցով: Խանճեան յաջողապէս կատարեց այս քայլը:

## ՎԱՆ ԼԷՕԻ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐԸ ՄԱՍ ԿԸ ԿԱԶՄԵՆ ԱՒԵԼԻ ՔԱՆ ԿԷՍ ԴԱՐ ԵՐԿԱՐՈՂ ԵԳԻՊՏՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ.

2

Լէօ լուսանկարած է անոնցմէ շատերը, ինչպէս՝ Ֆարիտ Ալ-Աթրաշ, Տալիտա, Շատի Ապտ էլ-Սալամ, Մերվաթ Ամին եւ Թահա Հուսէյն: Թէեւ անոնք իրենց նախաձեռնութեամբ է որ եկած են նկարուելու իր մօտ, Վան Լէօ ինքզինքին չէ արտօնած աստղերու լուսանկարիչ մականունը տալ, թէեւ ոմանք սխալմամբ այս մականունով կը դիմեն իրեն: Վան Լէօ խուսափեցաւ մերձենալ իշխանականներուն եւ նախընտրեց ապրիլ ու գործել լուսարձակէ հեռու: Նման տիտղոսները պիտի սահմանափակէին իր գործերուն ընթերցումը՝ զանոնք շրջանակելով լուսանկարչական որոշ տեսակի մը սահմաններուն մէջ: Վան Լէօ կ'ըսէ. «Եթէ լուսանկարչական արհեստին համար նպատակդ դրամն է, պէտք է մոռնաս արուեստը: Իսկ ես ընտրեցի արուեստը: Ցուցահանդէսներու մէջ տեղ գտած լուսանկարներուս մեծամասնութիւնը կատարած եմ անվճար, հաճոյքի համար:» Այս հաճոյքն է որ մղեց իրեն որոնել նոր կառուցուածքներ ու ոճեր:

### ՁԱՓԱՒՈՐՈՒԱԾ ԸՄԲՈՍՏԸ

Ինչպէս իր ժամանակի փրոֆեսիոնէլ լուսանկարիչներուն մեծամասնութիւնը, Վան Լէօ իր աշխատանքը կատարած է սթուտիոյի մէջ: Այս պատճառով, լուսանկարներուն մեծամասնութիւնը կատարած է ըստ իր յաճախորդներուն յանձնարարութեան: Բայց ասիկա չէր արգիլեր որ կատարէր յաւելեալ լուսանկարումներ, ինչպէս ինք կ'ըսէ՝ իր «հաճոյք»-ին համար, առանց յաւելեալ վարձատրութեան: Հետեւաբար, իւրաքանչիւր լուսանկարին կը յատկացնէր կատարելագործումի համար անհրաժեշտ ժամանակը, եւ իւրաքանչիւր անկիւնի հետ կը վերաբերէր տարբեր մօտեցումով: Իւրաքանչիւր տեսարանի համար կը վերափոխէր լուսաւորութիւնը, ի տարբերութիւն այն ընդունուած չափանիշներուն զորս իր վարպետը՝ Արթինեան կը կիրառէր Սթիւտիօ Վենիւսի մէջ: Երբեմն, յատուկ տեսարան մը փորձելու համար կը խնդրէր իր ընկերներուն կանգնիլ քամերային առջեւ: Վան Լէօ ըմբոստացաւ Եգիպտոսի մէջ գերակայող լուսանկարչութեան արդիւնաբերութեան դէմ եւ քամահրեց միջին դասակարգի արժէքները, փորձելով փաստել իր լուսանկարչական տեսակէտին վաւերականութիւնը: Կը կարծէր՝ որ արեւելքցիները չեն գիտեր անցագիրի եւ գեղարուեստական լուսանկարի տարբերութիւնը, ինչպէս նաեւ քաջութիւն չունին դրամ վճարել նախքան արդիւնքին ծանօթանալը:

Ըստ եգիպտացի փրոֆեսիոնէլ լուսանկարիչներու գերակայող սովորութեան, յաճախորդը չի վճարեր փոխան «լուսանկարում»-ի, այլ փոխան լուսանկարին չափը մեծացնելու: Ուրեմն, լուսանկարիչի իրական եկամուտը կը գոյանայ նկարի մեծացումով, կարծես տեսարանի նկատմամբ ցուցաբերուած խնամքը ըլլայ անկարեւոր: Վան Լէօ կ'ըսէ. «Արեւելքի մէջ յաճախորդը կը պահանջէ 6x9 չափով լուսանկարներ եւ կ'ըսէ՝ «եթէ հաւնեցայ կը մեծացնեմ», տալով յիսուն ղրուշ կամ մէկ ոսկի: Մահուան պարագային, ընտանիքը կը վազէ մօտդ պահանջելու փոքրիկ, յաճախ զանազան կնիքներով դրոշմուած լուսանկարի մը մեծացումը: Բայց երբ կու գայ յաճախորդ մը որ սեղանին կը դնէ յիսուն կամ հարիւր ոսկի, ան քաջ գիտէ որ գործ ունի հռչակաւոր լուսանկարիչի մը հետ՝ որ պիտի ապահովէ գլուխգործոց մը:»

Վան Լէօ ցաւ կը յայտնէ 1952-ի յեղափոխութենէն ետք Գահիրէի մէջ կատարուած փոփոխութիւններուն նկատմամբ: Նախ առգրաւուեցան պելճիքական Երկաթուղիի Ընկերութեան հօրմէ ժառանգած արժեթուղթերը, որոնց արժէքին մէկ մասը ծանօթներու միջոցով յաջողեցաւ վերստանալ: Ապա կը նշէ եգիպտացիներուն պարտութիւնները Իսրայէլէն եւ կը հարցնէ. «Արդեօք Ապտ էլ-Նասէր պատերազմ հռչակած էր Իսրայէլի՞ դէմ թէ մեր դէմ:» Յոյներուն, իտալացիներուն եւ հրեաներուն մեկնումով, Վան Լէօ կորսնցուց իր յաճախորդներուն գլխաւոր մասը: Իսկ ծայրայեղական միտումներու սկզբնաւորութեան, վախնալով ապագայ հնարաւոր անհանդուրժողականութենէն, կը սկսի այրել ժամանակին լուսանկարած մերկ նկարները:

Սակայն նկարները եւս ժամանակի ընթացքին կը ծերանան ու կը վերանան: Պատճառներէն մէկը ամրագրումի համար օգտագործուած նիւթն է: Վան Լէօի որոշ նեկաթիւներ իրապէս ազդուած են տաք եղանակէն, քանի որ անոնք ի սկզբանէ չէին նախատեսուած տաք երկիրներու համար: Բայց ի՞նչ օգուտ ունի անոնց պահպանումը եթէ եգիպտացիները կը նախընտրեն գոյնը. «Երբ յայտնաբերեցին գունաւորը, մոռցան որ արհեստին հիմքը սեւ-ճերմակն է: Կը սխալին կարծելով որ արուեստը գոյներուն մէջ կը գտնուի: Անոնց 90 տոկոսը հետաքրքրուած է գոյներով եւ ոչ թէ լուսանկարիչով կամ լուսանկարով:» Հակառակ ասոր, իր եղբօր Անճելօի նման Վան Լէօ չի հեռանար Եգիպտոսէն որովհետեւ կը նախընտրէ չբաժնուիլ իր հիմնած եւ վարժուած սթուտիոյէն:

Վան Լէօ իր յիշողութեամբ կը վերադառնայ Ջակազիկ: Կը յիշէ իր շուրջը հնչող լեզուները՝ նախ եւ առաջ հայերէնը իր տան մէջ, թրքերէնը՝ երգի ժամանակ եւ ազգականներու այցելութիւններուն ընթացքին, յունարէնը՝ նպարեղէնի խանութներուն մէջ, անգլերէնը՝ թրամուէյի ընկերութեան մէջ աշխատող հօրը ընկերներուն հետ: Կը վերյիշէ Թուրքիայէն ժամանած մարդոց զրոյցները հայկական ջարդերուն մասին, որոնք, նկատի ունենալով իր անչափահաս տարիքը, այդ ժամանակ այնքան ալ չէին ազդեր իր վրայ: Կ'ըսէ. «Այդ օրերը երբեք չեն կրնար վերադառնալ: Երբ Գահիրէ եկայ եւ ընդունուեցայ Ամերիկեան Համալսարան, թէեւ հինգ ղրուշ անգամ չունէի գրպանս, բայց չափազանց երջանիկ կը զգայի: Այժմ ամէն բան ունիմ բացի երջանկութենէն:» Ըստ իրեն, Եգիպտոս անարդար վարուեցաւ իր հետ: Կը կարծէ, որ եթէ գաղթած ըլլար Գանատա՝ ինչպէս հայ լուսանկարիչ Եուսուֆ Քարշ, հաւանաբար անոր նման աշխարհահռչակ դարձած ըլլար: Բայց Վան Լէօ չի գիտակցիր՝ թէ ինք յաջողեցաւ ընել այն ինչ չկարողացաւ ընել Քարշ: Նախ, Եգիպտոսին ընծայեց աւելի քան կէս դար երկարող իր կենսագրութեան վաւերաթուղթը: Երկրորդ, փաստեց՝ որ իր բազմազանութեամբ հարուստ արաբական աշխարհի մէկ տարածութեան վրայ, յարատեւօրէն շարունակելով իր ուղին՝ լուսանկարիչը կարող է դառնալ գրող ու մտածող եւ ունենալ միայն իրեն յատուկ լուսանկարչական ինքնատպութիւն եւ լեզու: Ասիկա փաստելու համար Վան Լէօ ըմբոստացաւ՝ թէեւ չափաւորեալ կերպով, ընդդէմ զանազան արժէքներու, նոյնիսկ եթէ արդիւնքը եղաւ ի վնաս իրեն: Կը պատմէ՝ թէ ամուսին մը ուզեց ձեռք ձգել իր կնոջ նեկաթիւը, որպէսզի խուսափի լուսանկարի հնարաւոր ցուցադրութենէն: Եւ քանի որ ստացագիրին մէջ նշուած է որ նեկաթիւին սեփականութիւնը կը պատկանի սթուտիոյին, Վան Լէօ կը նախընտրէ զայն այրել յաճախորդի աչքերուն առջեւ:

Վան Լէօ կը վերյիշէ իր առաջին ըմբոստութիւնը Ջակազիկի դպրոցին մէջ երբ տակաւին եօթը տարեկան էր: Իր պահանջած կօշիկին փոխարէն հայրը գնեց տրեխ մը: Այդ օրը որոշեց չյաճախել դպրոց: Ամբողջ առաւօտը պահուըտելով ստորին յարկի մթութեան մէջ, մեկնումի ժամուն միացաւ աշակերտներուն: Ոչ ոք նկատեց իր բացակայութիւնը:

Այսպէս ըսաւ եւ խնդաց:

(*Ալ-Ուասաթ*, Թիւ 388, 5 Յուլիս 1999, Լոնտոն)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1774 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 8 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ԶԵՐՔԷ 75 Ե. Դիկ.

عدد رقم ١٧٧٤ الخميس ٨ سبتمبر ٢٠١٦


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԻԿՈՒՆՔՈՒՄ ԻՆՉ-ՈՐ ԾՐԱԳԻՐ ԷՐ ՀԱՍՈՒՆԱՆՈՒՄ. ԿԱՆԳՆԵԼ ԵՆՔ ԱՄԵՆԱՎՏԱՆԳԱՒՈՐ ԿԷՏՈՒՄ

**ՍԻՐԱՆՈՅՇ ՊԱՊԵԱՆ, Հարցազրուցավար**

Մեր զրուցակիցն է Քաղաքական եւ Միջազգային Հետազօտութիւնների Հայկական կենտրոնի տնօրէն, քաղաքագէտ Աղասի Ենոքեանը:

**Ռուսաստանի Դաշնութեան արտգործնախարարութեան պաշտօնական ներկայացուցիչ Մարիա Զախարովան յայտարարել է, որ եթէ ԱՄՆ-ն զիջի առաջնորդութիւնը Ղարաբաղի հարցում, ապա դա խսկական առաջխաղացում կը լինի: Ձեր կարծիքով, ի՞նչ ունենք այսօր ԼՂ խնդրի կարգաւորման հարցում:**

Կարծում եմ՝ տիկին Զախարովան կոկէտութիւն է արել, որովհետեւ առայժմ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման ղեկը գտնւում է Ռուսաստանի ձեռքում: Այդ մասին են վկայում այն հանգամանքները, որ երկու երկրների հետ վերջին հանդիպումները Ռուսաստանն է անցկացրել, առաջարկները Ռուսաստանն է ներկայացրել, անգամ երեւի թէ առանց ԵԱՀԿ Մինսկի խմբի միւս համանախագահների հետ համաձայնեցնելու կամ քննարկելու: Այնպէս որ, այսօր Ռուսաստանն ունի խնդրի լուծման ամենամեծ հնարաւորութիւնները, այլ հարց է, որ միգուցէ տուեալ պահին իրենց ձեռնտու չէ հարցը տանել մինչեւ կարգաւորման աւելի բարձր մակարդակ:

Ռուսաստանը ամբողջովին տիրապետում է իրավիճակին, մանաւանդ որ Զախարովան այդ մասին ասել էր Սիրիայում իրավիճակը սրուելուց առաջ, այսինքն Ռուսաստանը դեռեւս դիւանագիտական եւ այլ ռեսուրսներ չէր տեղափոխել սիրիական ճակատ:

**Ի՞նչ իրավիճակ է ռուս-թուրքական յարաբերութիւններում՝ հաշուի առնելով, որ վերջին շրջանում հնչում են տեսակէտներ, որ դեռ վաղ է երկու երկրների միջեւ տեղի ունեցողը մերձեցում գնահատել: Այդ յարաբերութիւնները, Ձեր կարծիքով, որ փուլում են:**

Իրականում դա մերձեցում է, պարզապէս, այսպէս ասած, սիրահարուածութեան պահն անցաւ, երբ գլխակորոյս իրար գիրկ էին նետւում: Հիմա կողմերն իրավիճակը մի փոքր աւելի իրատեսական ու ռացիոնալ են գնահատում: Այդուհանդերձ, երկու կարեւորագոյն խնդիր կայ, որոնց շուրջ Ռուսաստանն ու Թուրքիան ռազմավարօրէն ունեն տարբեր կարծիքներ: Խօսքը վերաբերում է քրդական հարցին, որտեղ ռուսները, ենթադրւում է, որ պէտք է օժանդակեն քրդերին, իսկ թուրքերը քրդերին, այդ թւում Սիրիայի քրդերին համարում են Թուրքիայի համար ազգային անվտանգութեան կարեւորագոյն սպառնալիք: Երկրորդն Ասադն է. Ռուսաստանն ակնյայտօրէն օժանդակում է Ասադին, իսկ Թուրքիայի համար Ասադին օժանդակելը կը նշանակի յարաբերութիւնների լրջագոյն վատթարացում ամբողջ մահմեդական աշխարհի հետ:

**Հայաստանը ստեղծուած իրավիճակում ինչպէ՞ս է կարողանում արձագանքել՝ հաշուի առնելով, որ վերջին ամիսներին կարծես թէ ՀՀ իշխանութիւնը հարկադիր պարապուրդի մէջ էր, այդ թւում ԼՂ հարցում:**

Լեռնային Ղարաբաղի հարցում բանակցողներն այնքան բարի կամ ռեալ գտնուեցին, որ Սասնայ Ծռերի հետ կապուած ճգնաժամի ընթացքում Հայաստանին թողեցին, որ իր ներքին խնդիրները լուծի: Այս առումով, իհարկէ, առերեւոյթ կարծես, խնդիրը նոյն մակարդակի վրայ է, որի վրայ կանգ էին առել: Այսինքն՝ կան առաջարկներ, կան տարածքները յանձնելու հետ կապուած առաջարկներ: Արդէն հասկանալի է՝ ինչ տարածքների մասին է խօսւում, ու անհասկանալի է, թէ դրա դիմաց Հայաստանն ինչ է ստանալու: Այս հանգամանքները հաշուի առնելով, չենք կարող ասել, որ լուրջ կոնկրետութիւն ունենք, հասարակութիւնը չգիտի, թէ ինչ առաջարկներ են դրուած բանակցային սեղանին: Յամենայնդէպս մեր իշխանութիւններն այլեւս չեն խուսափում խօսել տարածքային զիջումների մասին, իշխանութիւններն ասում են, որ տարածքային զիջումները չպէտք է միակողմանի լինեն, բայց չեն ասում, որ զիջումները պէտք է լինեն համարժէք: Կարծէք թէ այդ համարժէքութեան բանալին, կողը դեռեւս գտնուած չէ:

**Այսինքն՝ այն, որ պէտք է ԼՂՀ ինքնորոշման իրաւունքը ճանաչուի, նրա անկախութիւնը պէտք է ճանաչուի, մղւում է երկրորդ պլա՞ն:**

Ամբողջ հարցն այն է, որ բանակցային գործընթացի 20 եւ աւելի տարիների ընթացքում մենք հեռացել ենք խնդրի առարկայից, այսինքն՝ ԼՂ ժողովրդի ինքնորոշման իրաւունքից, եւ աւելի շատ կենտրոնացել ենք հետեւանքների վրայ՝ տարածքների վերադարձ, զինադադար, փախստականների վերադարձ: Քանի դեռ այս խնդիրներից չենք վերադարձել ինքնորոշման իրաւունքի հարցին, դա չի կարելի համարել ԼՂ խնդրի ամբողջական կարգաւորում: Միւս կողմից, ինքնորոշման իրաւունք ասելով, հիմա կարծես թէ կարգավիճակի հետ կապուած կիսատ-պռատ առաջարկներ կան: Ինքնորոշման իրաւունքն այն է, որ ԼՂ ժողովուրդն ինքը որոշի, թէ ինչպիսի կարգավիճակում է ուզում ապրել: Սրա փոխարէն հիմա մատուցւում է սահմանափակ ինքնավարութեան կամ այլ տարբերակներ:

**Մի կողմից ամերիկացի նախկին համանախագահ Մեթիւ Բրայզան է հանդէս գալիս ծաւալուն յօդուածով, միւս կողմից չեն դադարում «Լաւրովի պլանի» մասին խօսակցութիւնները: Ինչ ունենք այսօր, որքանով են կենսունակ այդ պլանի դրոյթները:**

Ես, անկեղծ ասած, մեծ արժէք չէի վերագրի Բրայզայի յօդուածներին, որովհետեւ նա հիմա բաւականաչափ հեռու է ԼՂ կարգաւորումից՝ գոնէ վերջին մի քանի տարիներին, եւ նրա կարծիքը որեւէ կերպ չի կարելի համարել ամերիկեան դիւանագիտական շրջանակների կարծիք: Նա պարզապէս չի մասնակցում այդ գործընթացներին: Ինչ վերաբերում է «Լաւրովի պլանին», այն ռուսական կողմից առաջարկուող բազմաթիւ անգամ ներկայացուած առաջարկների երեւի ինչ-որ տարբերակն է: Այն նշանակում է վերադարձուող տարածքների սահմանների ճշգրտում եւ ժամկէտների ճշգրտում: Նման բաներ կան, որոնց մասին բազմիցս խօսուել է: Այն կէտը, որտեղ մենք կանգնեցինք Սասնայ Ծռերի պատճառով, Հայաստանի համար բաւական սարսափելի կէտ էր, նոյն «Լաւրովի պլանի» հետ կապուած: Այսինքն երբ Լաւրովը, ապա Պուտինը Ալիեւի հետ բանակցութիւններից յետոյ յայտարարեցին, որ իրենք չափազանց մօտ են խնդրի լուծմանը, եւ դա այն պարագայում, որ դա կարծես չէր էլ քննարկուել ՀՀ նախագահի հետ: Այսինքն նշանակում էր, որ Հայաստանի թիկունքում ինչ-որ մի ծրագիր, պլան էր հասունանում, որը երեւի հէնց «Լաւրովի պլանն» էր:

Lragir.am

## ՀԱՅԱՍՏԱՆ

## ԻՆՉՈՎ Է ՊԱՅՄԱՆԱՒՈՐՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ՕՐԸՍՏՕՐԷ ՎԱՏԹԱՐԱՑՈՂ ՎԻՃԱԿԸ ԵՒ ՍՊԱՌՈՂՆԵՐԻ ԱՂՔԱՏԱՑՈՒՄԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Պաշտօնական աղբիւրներից *Ժողովուրդը* տեղեկացաւ, որ այս տարուայ Յուլիսին ֆիզիկական անձանց անունով բանկերի միջոցով արտերկրից Հայաստան ուղարկուած գումարը եղել է 89 միլիոն 229 հազար դոլար:

Անցած տարուայ նոյն ամսին Հայաստան ուղարկուած տրանսֆերտների զուտ ներհոսքը կազմել էր 114 միլիոն 740 հազար դոլար: Փաստօրէն, տրանսֆերտները այս տարուայ Յուլիսին եւս շարունակել են անցած տարուայ համեմատ նուազել:

Ի դէպ, այս տարուայ եօթ ամիսների արդիւնքներով տրանսֆերտների զուտ ներհոսքը կազմել է 343 միլիոն 332 հազար դոլար: Սա այն դէպքում, երբ 2015 թուականի եօթ ամիսների արդիւնքում տրանսֆերտների զուտ ներհոսքը կազմել է 447 միլիոն 116 հազար դոլար, իսկ 2014 թուականին՝ 695 միլիոն 763 հազար դոլար:

Ստացւում է՝ մէկ տարուայ կտրուածքով տրանսֆերտները նուազել են 103 միլիոն 784 հազար դոլարով, իսկ երկու տարուայ կտրուածքով անկումը եղել է կրկնակիից աւել:

Նկատենք, որ այս գումարների պակասութիւնով է պայմանաւորուած Հայաստանի տնտեսութեան օրըստօրէ վատթարացող վիճակը եւ սպառողների աղքատացումը»:

## ԲԱՆԱԿՈՒՄ ՎԹԱՐՆԵՐԻՑ ԵՒ ՍԱՀՄԱՆԻՆ ԶՈՀԵՐԻ ԹԻՒԸ ԶՈՒԳԱՀԵՌ Է ԱՃՈՒՄ

epress.am, 29 Օգոստոս – Վերջին հինգ տարում ոչ մարտական իրավիճակներում զինծառայողների մահերի պատճառների թւում ամենաշատը քաղաքացիական կամ մարտական մեքենաների վթարներն են՝ 76%: Դրա մասին է վկայում «Խաղաղութեան երկխօսութիւն» կազմակերպութեան ուսումնասիրութիւնը:

«Շատ դէպքերում վթարուել են ոչ թէ զօրամասին կցագրուած տրանսպորտային միջոցները, այլ անձնական աւտոմեքենաները: Պարզ չէ, թէ արդեօ՞ք այս դէպքերում մահացած զինծառայողները վթարի պահին կատարել են ծառայութեան հետ կապուած առաջադրանք:

Զոհերի զգալի մասը ռազմական մարդատար տեխնիկայի վթարների հետեւանք է: Յայտնի չէ, այդ վթարները ճանապարհային երթեւեկութեան կանոնների խախտման, թէ՞ ռազմական տեխնիկայի անսարքութեան հետեւանք են», – նշում են զեկոյցի հեղինակները:

Դժբախտ պատահարները կազմում են ոչ մարտական իրավիճակներում զինծառայողների մահերի միջադէպերի 33%-ը:

Համեմատելով 2010-2015 թթ. գրանցուած դժբախտ պատահարների եւ հրադադարի ռեժիմի խախտման հետեւանքով մահուան ելքով միջադէպերի թիւը, երեւում է, որ մինչեւ 2014 թ. զոհերի թիւը գրեթէ հաւասար է եղել, իսկ 2015-ին երկու պատճառներով էլ գրանցուել է զոհերի թուի աննախադէպ աճ:

«Եթէ հրադադարի ռեժիմի խախտման հետեւանքով զոհերի թուի աճը կարելի է բացատրել հայ-ադրբէջանական սահմանում եւ շփման գծում լարուածութեան աճով, ապա դժբախտ պատահարների թուի աճը որեւէ գործօնով պայմանաւորուած չէ», – ասուած է զեկոյցում:

# ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆԻ ՁԵՌԱԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ

1962 Յունիս 24-ին, Մաթարիէի (Գահիրէ) բնակարանին մէջ 83 տարեկան հասակին կը մահանայ բազմավաստակ պատմաբան եւ բանասէր Արշակ Ալպօյաճեան: Յունիս 26-ին կարդացած դամբանականին մէջ, եգիպտահայոց առաջնորդ Մամբրէ Արք. Սիրունեան արդէն կը բարձրացնէր Ալպօյաճեանի ձեռագիրներուն ու անտիպ գործերուն հարցը: Ան կ'ըսէր.

«Իսկ հրատարակութեան համար պատրաստ թողուցած է հանգուցեալը հետեւեալ 22 գործերը:

1. Հայերը Ռումելիի մէջ
2. Հայերը Բիւզանդական երկիրներու մէջ
3. Իրանի հայերը
4. Իրաքի հայերը
5. Պրուսայի հայերը
6. Տրապիզոնի հայերը
7. Սպանիա եւ հայերը
8. Ֆրանսա եւ հայերը
9. Ամերիկա եւ հայերը
10. Պատմ. Ս. Փրկչեան Ազգ. հիւանդանոցի 100ամեակին առիթով
11. Տպագրութեան արուեստը ի հայս
12. Հայ եւ թուրք յարաբերութիւնները
13. Պատմ. Հայ ազատագրութեան
14. Պատմ. Հայոց (մամուլի տակ)
15. Ժամանակակից պատմութիւն հայոց
16. Կարապետ Փանոսեանի կեանքն ու գործը
17. Կարապետ Իւթիւճեանի կեանքն ու գործը
18. Արմենակ Հայկունիի կեանքն ու գործը
19. Բիւզանդ Քէչեանի կեանքն ու գործը
20. Վահան Թէքէեանի հանրային գործունէութիւնը (մամուլի տակ Երուսաղէմ)
21. Յիշատակներ:»(1)

Ուրիշ հարց, թէ Մամբրէ Արք. կը նշէ 22 անտիպ գործերու գոյութիւնը բայց կը յիշատակէ 21 անուն գիրք:

Յուլիս 8-ին, Երեւանի *Սովետական Հայաստան* օրաթերթին մէջ, Սուրէն Քոլանջեան կը շեշտէր Ալպօյաճեանի ձեռագրական ժառանգութեան կարեւորութիւնը. «Ինչքան պատկառելի է նրա տպագիր վաստակը, նոյնքան բազմաբովանդակ եւ հարուստ է նրա թողած անտիպ ժառանգութիւնը: Աւելի քան քսան ծաւալուն մենագրութիւններ ունի նա տպագրութեան համար պատրաստի վիճակում:»(2) Բացառուած չէ, որ Քոլանջեան իր տեղեկութիւնը ընդունած ըլլայ Մամբրէ Սիրունեանի տպագրուած դամբանականէն:

Երեւանի *Պատմա-բանասիրական հանդէսի* մէջ գրած իր մահախօսականին մէջ, Գառնիկ Ստեփանեան եւս կը հաստատէր անտիպներուն արժէքը. «Նա թողել է բազմաթիւ անտիպ աշխատութիւններ, որոնք իրենց քանակով եւ պատմագիտական արժէքով կարող են մրցել հրատարակուածների հետ: Այնպիսի կարեւոր հետազօտութիւններ, ինչպիսիք են *Արմենակ Հայկունու կեանքը եւ գործը, Բիւզանդ Քէչեան, Վահան Թէքէեան* եւ այլ գրքեր, որոնք հարուստ ատաղձ կարող են տալ հայ մշակոյթի, յատկապէս լրագրութեան պատմութեան համար:»(3)

Յուլիս 31-ի *Արեւի* մէջ, Նիսէն գրած յօդուածի մը մէջ, Վահան Մալէզեան կը հրատարակէ եգիպտահայ հրապարակագիր Հայկ Ժամկոչեանէն ստացած 1962 Յունիս 11 թուակիր (Ալպօյաճեանի մահէն երկու շաբաթ առաջ) նամակը, ուր նամակագիրը Ալպօյաճեանի գիրքերուն ու ձեռագիրներուն մասին հետեւեալ տեղեկութիւնը կը հաղորդէր. «Վերջերս Պր. Ալպօյաճեանն ալ ձեռնարկեց իր մատենադարաններուն զտման եւ իր թուղթերուն դասաւորման: Դեռ կը շարունակէ: Կարեւորները պիտի ղրկէ Հայաստան, իսկ շատ մը գիրքեր, հաւաքածոներ կուտայ տեղւոյս ազգային հաստատութեանց, Թորգոմեան Մատենադարանին, Հ.Բ.Ը.Մ.ի Մատենադարանին եւայլն: Ուրիշ գիրքեր եւ նօթեր դեռ կը պահէ իր քովը, իր ուսումնասիրութիւններուն համար, անոնք ալ ի վերջոյ Հայաստան պիտի ղրկէ:»(4) Բնականաբար, տեղեկութիւնը ընդհանուր է, բայց կարելի է ենթադրել՝ որ տեղւոյն գրադարաններուն եւ հաստատութիւններուն բաժնածը իր անձնական գիրքերն են եւ ոչ ձեռագիրները:

1964-ին *Ջահակիրի* մէջ Հայկ Ժամկոչեան կը ստորագրէ Ալպօյաճեանին նուիրուած յօդուած մը, ուր հետաքրքրական մանրամասնութիւններ կու տայ ազգային կեանքէ ներս իր ենթարկուած դժուարութիւններուն մասին, իսկ անտիպներուն մասին կը բաւարարուի հետեւեալ տեղեկութեամբ. «Աւելորդ է թուել այստեղ իր գործերը. անոնք ծանօթ են բոլորին: Անոնցմէ 24 հատը տպագրուած են. մօտ 20 հատոր ալ կը մնան անտիպ: Ունի հարուստ արշիւ եւ մատենադարան, որոնք վայել են Հայաստանին:»(5)

Յօդուածի վերջաւորութեան, *Ջահակիրի* խմբագրութիւնը (խմբագիրն էր Սարգիս Պալաեան) իր կողմէն կ'աւելցնէ ծանօթագրութիւն մը. «Նիւթերու առատութեան պատճառով, խմբագրութեանս տրամադրուած *Անցեալի յիշատակներ* գրութիւնը (Ալպօյաճեանի 1900ի անտիպներէն) պիտի տանք յաջորդով:»(6) Յարգելով իր խոստումը, երեք համար շարունակ կը տպագրէ կենդանի վաւերագրութեան արժէք ունեցող Ալպօյաճեանի յօդուածաշարը՝ «Անցեալի յիշատակներ առ Պարոյր Բ. Քէչեան», գրուած Գում-Գաբու, 1900 Մայիս 8-16-ին(7): Ձեռագիրի ձեռք բերումի ուղին, արդարեւ, կը մնայ անյայտ:

Ալպօյաճեանի դիւանը եւ անձնական գիրքերու հաւաքածոն 1965-ին կը փոխադրուին Երեւան: Բանասէր Տիգրան Գէորգեան 1972-ին կու տայ մանրամասն բացատրութիւններ, աւելցնելով՝ որ Ալպօյաճեանի ձեռագիր օրագրութիւնը կը գտնուի Արտաշէս Գարտաշեանի մօտ.

«Հաւանաբար Հայաստան այցելութեան առիթով՝ Ալպօյաճեան կարգադրած ըլլայ յետ մահու իր անձնական գրադարանը եւ արխիւային ճոխ նիւթերը նուիրել Հայկական ՍՍՌ Գիտութիւնների Ակադեմիայի Ֆունդամենտալ Գրադարանին: Որպէս իրատես եւ գործնական մարդ, ան կտակը պատրաստած եւ կտակակատար կարգած էր իր ձեռնասուններէն՝ Պ. Արտաշէս Գարտաշեանը: Կարգադրութիւնը՝ նախատեսուածին պէս, ճիշտ եղած էր: Մահէն ետք, օրինական բոլոր ձեւակերպութիւնները վերջացնելով, կտակակատարը յաջողեցաւ գիրքերու ամբողջ հաւաքածոն ու ձեռագիրներու տրցակները 24 սնտուկներու մէջ տեղաւորել եւ ապահով Հայաստան փոխադրել տալ 1965ին, շնորհիւ Գահիրէի Ազգ. իշխանութեան նիւթական աջակցութեան: Պ. Գարտաշեանի անխոնջ ժանքերուն մասնակից եղաւ *Արեւի* նախկին խմբագիրը՝ Պ. Էտմոն Կոտալազեան (Երուանդ Ազատեան):

«Գիտական մշակումի ենթարկուելէ ետք, գիրքերը Արշակ Ալպօյաճեանի անունով պահուած են Ֆունդամենտալ Գրադարանի մասնաւոր սենեակներէն մէկուն մէջ. հաւաքածոն կ'ընդգրկէ 1855 գրադարանային միաւոր՝ որուն մէջ կան 1646 հայերէն գիրքեր, հանդէսներ, հին թերթերու կոմպլեկտներ, եւ 209 օտար լեզուով հատորներ: Հայագիտական գիրքերու մեծ մասը նուիրուած է հայոց պատմութեան, լեզուի, մամուլի, արուեստի եւ այլ հարցերու: Անոնք 19-20-րդ դարերու հրատարակութիւններ են, լոյս տեսած՝ Նիւ Եորքի, Պոսթոնի, Գահիրէի, Փարիզի, Շտուտգարտի, Կալկաթայի, Երուսաղէմի, Պէյրութի, Կ. Պոլսոյ, Իզմիրի, Երեւանի մէջ:

«Մաշտոցի անուան Մատենադարանի Ալպօյաճեանի Ֆոնդին մէջ կը գտնուին անտիպ ձեռագիրները, յօդուածները, գրախօսականները եւ դոկումենտալ նիւթերը:

«Ալպօյաճեանի ներքին կեանքը ցոլացնող հետաքրքրական էջեր պէտք է պարունակէ օրագրութեան տետրակը՝ որ Պ. Գարտաշեանին քով կը գտնուի: Կը խորհինք որ գրողին մահը տասնամեակ մը բոլորած ըլլալուն, կարելի է անկէ ընտրովի հատուածներ հրատարակել:

«Ե. Չարենցի անուան Գրականութեան եւ Արուեստի Թանգարանին Ֆոնդերէն՝ 207րդը Ալպօյաճեանինն է. դժբախտաբար քիչ նիւթեր կան այնտեղ: Ասոնց վրայ պէտք է աւելցնել Գահիրէի Թորգոմեան Ազգ. Մատենադարանին նուիրած՝ Ալպօյաճեանի ուղղուած ինը նամակներ, որոնք նոյն Թանգարանը ղրկուեցան այդ շրջանի պատուակալ մատենադարանապետ Պ. Արտաշէս Գարտաշեանի կարգադրութեամբ:»(8)

Գարտաշեան՝ որ արդէն գաղթած էր Փարիզ, *Արեւի* խմբագրութեան անմիջապէս կ'ուղարկէ «Հերքում» մը, պնդելով՝ որ օրագրութեան մասին Գէորգեանի տեղեկութիւնը «[ս]խալ է: Իմ քով այդպիսի տետրակ գտնուած չէ ու չի գտնուիր ալ:»(9) Ակնկալելի էր՝ որ Գարտաշեան, իբրեւ Ալպօյաճեանի կտակակատարը, յաւելեալ տեղեկութիւններ հաղորդէր այդ օրագրութեան մասին:

2002-ին, Մատենադարանի փոխտնօրէն Վարդան Գրիգորեան Երեւանի *Ազգի* մէջ կարեւոր տեղեկութիւններ կը հաղորդէ Ալպօյաճեանի Մատենադարանի դիւանի բովանդակութեան մասին.

 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# Ո՞ՒՄ, Ի՞ՆՉ Է ԱՍՈՒՄ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ

Մխտք.am, 1 Սեպտեմբեր - «Ոչ մի երիտասարդ չպէտք է կորցնի որակեալ կրթութիւն ստանալու հնարաւորութիւնը ոչ վճարունակ լինելու պատճառով»,- Սեպտեմբերի 1-ի առիթով յղած ուղերձում ասել է Սերժ Սարգսեանը:

Պարզ չէ, թէ ո՞ւմ է ասում Սերժ Սարգսեանը՝ երիտասարդների՞ն կամ աղքատ ընտանիքների երեխաների՞ն, որոնցից շատերը չեն յաճախել դպրոց հէնց փող չունենալու պատճառով, թէ՞ կառավարութեանը, որի անդամները դոլարային միլիոնատէրեր են:

Հնչեղ է, իհարկէ, երբ Սեպտեմբերի 1-ի առիթով յղւում է այդ ուղերձը, բայց առաւել հնչեղ է փաստը, իհարկէ՝ արդէն բացասական, իսկ որոշ դէպքերում էլ՝ ողբերգական իմաստով, որ Հայաստանում բազմաթիւ երեխաներ ու երիտասարդներ չեն ուսումնառում, որովհետեւ չունեն անհրաժեշտ միջոցներ՝ ոչ միայն ուսման համար վճարելու, այլեւ նոյնիսկ դպրոց յաճախելու համար հագուստ եւ գրենական պիտոյքներ գնելու: Այդ երեխաները կան, փոքրիկ, մի բուռ Հայաստանում են, եւ եթէ իշխանութիւնն իսկապէս ուզում է, որպէսզի ոչ ոք փողի բացակայութեան պատճառով չզրկուի ուսումից, ապա զրկուածներին գտնելը, մեղմ ասած, այնքան էլ դժուար բան չէ: Պարզապէս ցանկութիւն է պէտք:

Ու այդ տեսանկիւնից Սեպտեմբերի 1-ի առիթով Սերժ Սարգսեանը ոչ թէ պէտք է յայտարարի, թէ ոչ ոք չպէտք է ֆինանսների բացակայութեան պատճառով զրկուի ուսումից, այլ պէտք է յայտարարի, որ Հայաստանում չկայ մէկը, որը ֆինանսների բացակայութեան պատճառով զրկուած է ուսումից: Իսկ եթէ կայ այդպիսի մէկը, ապա պաշտօնից պէտք է զրկուեն թերեւս մի քանիսը, ընդ որում՝ բարձրաստիճան, որոնք թերացել են իրենց աշխատանքում:

Սակայն միեւնոյն ժամանակ հասկանալի է, որ այստեղ մի քանի պաշտօնեայի թերացման խնդիր չէ, այլ համակարգային արատ, համակարգային խափանում: Հայաստանի իշխող համակարգը հակասոցիալական համակարգ է, այն բացարձակապէս անտարբեր է մարդու հանդէպ, մարդը այդ համակարգի համար ուշադրութեան է արժանանում լոկ այն դէպքում, երբ վտանգ է ներկայացնում: Ընդ որում, այդ դէպքում էլ նրանով զբաղւում են ոչ թէ սոցիալական ծառայութիւնները, այլ ոստիկանութիւնը, դատախազութիւնը, քրէակատարողական հաստատութիւնները: Այլ պարագայում Հայաստանում իշխող համակարգի համար մարդ գոյութիւն չունի: Մարդ՝ այդ բառի արժէքային իմաստով, որովհետեւ մարդը համակարգի համար նշանակութիւն ունի նաեւ որպէս սպառող, այսինքն՝ նաեւ հարստութեան աղբիւր:

Ահա այդ իրականութիւնն է, որի պարագայում, բնականաբար, չի կարող լինել համակարգուած խնդիր՝ գտնել իւրաքանչիւր կարիքաւորի, որը չի գնում ուսման, եւ նրա համար ապահովել այդ նուազագոյն խնդրի լուծումը, արժանապատիւ եւ լիարժէք ուսման հնարաւորութիւնը՝ անկախ սեռից, սոցիալական կարգավիճակից:

Միայն այդ դէպքում երկրի վարչապետն իրաւունք կ'ունենայ իր թոռնիկի ձեռքը բռնած տանել նրան դպրոց, որտեղ տարեկան ուսման վարձը աւելի քան 2 միլիոն դրամ է: Բարի երթ թոռնիկին, ինչպէս նաեւ բոլոր աշակերտներին, որոնք պէտք է լինեն Հայաստանի վաղուայ քաղաքացիները: Բայց պապիկները, որ զբաղեցնում են բարձրագոյն իշխանութիւնը, պէտք է Սեպտեմբերի 1-ը «նշեն» միայն այն դէպքում, երբ այն տօնի են վերածել փոքր Հայաստանի իւրաքանչիւր երեխայի համար:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔԱՆԻ ԴՊՐՈՑ ԱՅԼԵՒՍ ԻՐ ԴՌՆԵՐԸ ՉԻ ԲԱՑԻ ԱՇԱԿԵՐՏ ՉՈՒՆԵՆԱԼՈՒ ՊԱՏՃԱՌՈՎ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Հայաստանի ուսումնական հաստատութիւնները Սեպտեմբերի 1-ին վերստին կը բացեն դռները իրենց սաների առջեւ: Մօտ 40 հազար երեխայ առաջին անգամ դպրոց կը յաճախի Հայաստանում: Իսկ թէ քանի դպրոց այլեւս իր դռները չի բացի աշակերտ չունենալու պատճառով, քանի գիւղ գէթ մէկ առաջին դասարանցի չի ունենայ, այս մասին պաշտօնական մարմինները համեստօրէն լռում են: Ճիշտ էլ անում են: Նրանք բոլորը ընդհանուր համակարգի մասն են կազմում, որի գործունէութեան արդիւնքում էլ Հայաստանում մէկը միւսի ետեւից դպրոցները փակւում են:

Այդպիսի համայնքներից է ՀՀ Վայոց ձորի մարզի Փոռ համայնքը, որի դպրոցը փակուել է առաջին դասարանի աշակերտ չունենալու պատճառով: Մնացած աշակերտներն էլ յաճախելու են Հարեւան գիւղի դպրոց: Սիւնիքի մարզի Տրվենանց համայնքում եւս դպրոցը փակուել է, մինչդեռ տարիներ առաջ այս համայնքը 400 աշակերտ է ունեցել: Արմաւիրի մարզի Կողբաւան համայնքը մի քանի տարի է, ինչ դպրոց չունի: Շիրակի մարզի Լեռնագիւղն էլ 14 տարի է՝ ո՛չ աշակերտ ունի, ո՛չ դպրոց»:





ԽՈՀԵՐ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ ԱՆՏԵՍՈՒՄՆԵՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Դրամատիրական աշխարհին մէջ գովազդանման կամ գովազդամէտ պատմութիւնը՝ առարկաներու կուտակումներով խճողուած, կ'արժէ միլիոններ, խնդրական-քննական (խնդրականութիւն-քննականութեան եւ քննադատութեան միջեւ տարբերութիւնը շատ, շատ մեծ է) պատմութիւնը՝ միտքով ու գաղափարով չարժուն, կ'արժէ ղրուշներ:

Եգիպտահայ գաղութի պատմագրութիւնը յաճախ կը ներկայանայ իբրեւ բարեպաշտ, համերաշխ, դպրոցաշէն, ստեղծագործ, հաւատարիմ (հաւատարիմ որո՞ւն) անհատներու պատմութիւն: Միլիոններ արժող պատմութիւն մըն է ան: Ան յատկապէս կը ներկայանայ իբրեւ երկիրի իշխանութիւններուն մօտիկ կանգնած մեծահարուստներու, մեծաւորներու եւ իշխանականներու կենսագրութիւններու արհեստականօրէն պատմականացուած շարք մը:

Ասկէ բխած են պարտադիր անտեսումներ.

ԱՌԱՋԻՆ ԱՆՏԵՍՈՒՄ

Մեծահարուստ-մեծաւորները ներկայացնելով իբրեւ բացարձակ ու անդրդուելի սրբանկարներ, Ռոպըրթ Հանթըրի կողմէ արտայայտուած խնդրական մօտեցում մը Նուպար փաշայի մասին պարզապէս կը մնայ անընդունելի.

«Չենք կրնար անտեսել Նուպարի խիզախութիւնն ու երեւակայութիւնը՝ զարգացնելու համար իր հանրային ասպարէզին ձեւ ու իմաստ ընծայող բարոյական տեսլական մը: Ոչ ալ կրնանք անտեսել վիճելու եւ նպատակները հետապնդելու իր համարձակութիւնը: Բայց ասիկա կը հանդիսանայ Նուպարին անձնական մասնայատուկ ճշմարտութիւնը, ճշմարտութիւն մը՝ որուն փափաքած է որ աշխարհը հաւատայ եւ որուն ինք անձամբ հաւատացած է: Ասիկա ոչ մէկ ձեւով կրնայ ներկայացնել Նուպարին եւ իր կեանքին ամբողջ ճշմարտութիւնը, որ որոշ չափով խեղաթիւրուած է բարոյական տեսլականի իր կարծեցեալ հետապնդումով: Նուպարի, ինչպէս նաեւ Եգիպտոսի վերափոխումին համար իր խաղացած դերին մասին աւելի տեղեկանալու համար պէտք ունինք ստուգել եւ քննել իր գործողութիւններուն *դրդապատճառները* եւ իր յուշագրութեան *իրական պատճառները*» (ընդգծումները իմս են, Հ.Ա.)(1): Այս մօտեցումով, Հանթըր իր յօդուածին մէջ նոր շերտեր կը բանայ Նուպարի կենսագրութեան ու գործունէութեան մէջ:

Այսօր, ոեւէ տոքթորական ունեցող պատմաբանի մը հարցուր «դրդապատճառ» եւ «իրական պատճառներ» հասկացողութիւններուն մասին, ան առանց մտածելու անվարանօրէն պիտի պատասխանէ. «Ես պատմաբան եմ, նման բաները իմ գործս չեն»: Հապա որո՞ւն գործն է: «Դրդապատճառներ»-ու եւ «իրական պատճառներ»-ու մասնագիտութիւն, որքան գիտեմ, գոյութիւն չունի:

Այսօրուան հիմնահոսանքային պատմաբանը (կը շեշտեմ՝ *հիմնահոսանքային* պատմաբանը, որ կը կազմէ պատմաբաններուն սովորական մեծամասնութիւնը, մինչդեռ կը գտնուին իրական պատմաբաններու կարեւոր շերտ մը, որ հարցերը կը քննէ ուրիշ, շատ աւելի ընդարձակ աչքով) ինքզինք կը ներկայացնէ իբրեւ անձ մը որ չի մտածեր, չի մեկնաբաներ, կարծիք չունի, այլ միայն գիտէ: Մտածելն ու գիտնալը տարբեր գործողութիւններ դարձած են: Մտածողը կը ստեղծէ փաստերը, պատմաբանը կը գիտնայ անոնց մասին եւ կը վերարտադրէ զանոնք՝ ինչպէս որ կան: Եթէ փաստերը կան՝ ինչպէս որ կան, ի՞նչ է վերարտադրութեան իմաստը:

Այս համատարած պատմաբաններուն համար մտածումն ու կարծիքը կը պատկանին ուրիշին, մտածումն ու կարծիքը տեղ մը գտնուող, պատմաբանէն անկախ ստեղծուած «փաստեր» են: Պատմաբանին դրամագլուխը այդ «փաստեր»-ն են, ինք հռչակաւոր կրնայ դառնալ ուրիշներուն կողմէ ստեղծուած այդ «փաստեր»-ուն շնորհիւ, մինչդեռ դրդապատճառն ու իրական պատճառը իր հասողութենէն (դրամագլուխէն ու շուկայէն) անդին գտնուող երեւոյթներ պէտք է մնան:

Արդարեւ, այդ փաստերը արտադրողները քաջատեղեակ են որ արդիական պատմաբանին համար դրդապատճառ գոյութիւն չունի, գոյութիւն ունի փաստ՝ առանց դրդապատճառի: Լաւատեղեակ ըլլալով այս կէտին, անոնք կը ստեղծեն «փաստեր»-ը ինչպէս որ պատշաճ է իրենց: Ինքնակենսագրականները եւ յուշերը մէկ մասն են այդ «փաստ»-երուն: Ձեռնարկներու եւ գործունէութիւններու ինքնափառաբանական «քննախօսական»-ները ուրիշ մաս մըն են: Այս տեսակ փաստերու ստեղծումին համար կարեւոր ներդրում ունին նաեւ պաշտօնեայ մտաւորականներու, լրագրողներու ու խմբագիրներու գրութիւնները: Չխօսելու համար ծիծաղելիօրէն տարածուած մամուլի հաղորդագրութիւններուն մասին, որոնք գրուած, սրբագրուած ու խմբագրուած են նոյն ինքը հաղորդակցութեան մէջ տեղ գտած «գործող անձեր»-ուն կողմէ: Եւ այս բոլորը «առարկայականօրէն» կ'օգտագործուի պատմաբաններուն կողմէ: Առարկայական պատմութեան տարափ մը ստեղծած է արդիական յառաջդիմութիւնը: Եւ անսահման դրամ՝ այդ առարկայական պատմութիւններու գրութեան եւ հրատարակութեան համար: Իսկ այս բոլորը ի շահ այդ փաստերը ստեղծողներուն, իրենց ձայնը տեղ հասցնելու խողովակներուն տիրապետող անձերուն եւ կազմակերպութիւններուն:

Բոլորովին տարբեր են տարեգրութիւններն ու մատենագիտութիւնները: Վերջին տասը տարիներուն լոյս տեսած են եգիպտահայ մամուլի եւ գիրքի երկու ամբողջական մատենագիտութիւններ: Ընդհանրապէս, նման աշխատութիւններ պատրաստողները երկար տարիներ կ'ապրին իւրաքանչիւր տուեալի հետ, կը հաւաքեն, կը դասակարգեն, կը վերադասակարգեն հսկայական քանակութեամբ նիւթեր, եւ այդ բոլորը կը ներկայացնեն ինչպէս որ կայ: Տարեգրութիւնն ու մատենագիտութիւնը՝ ինչպէս որ կան, շատ աւելի ինքնամեկնաբանական, ինքնաբացատրական ու ամբողջական են քան պատմութեան անունին տակ հրատարակուող բռնազբօսիկօրէն կուտակուած նիւթերու հատորները: Անոնք եգիպտահայութիւնը ներկայացնող *աւելի* պատմութիւններ են քան ներկայ տարածուած կուտակային պատմութիւնները: Անոնց բովանդակած տեղեկութիւնները կարելի է վերադասաւորել ու վերաիմաստաւորել, տեղեկութիւններուն միջեւ գտնել ներքին օրինաչափութիւններ եւ առնչութիւններ: Պահ մը երեւակայէ՝ որ այս նոյն հատորները, իրենց միեւնոյն բովանդակութեամբ՝ իբրեւ փաստեր, ներկայացուէին իբրեւ պատմութիւն: Փաստերու ամբողջականութիւնը պիտի փոխուէր փաստերու կուտակումի, լեցուած բառային առատ ու արհեստական շաղկապներով: Կապը՝ որ յստակօրէն կ'երեւայ մատենագիտութեան մը մէջ, պիտի դառնար անկապ՝ իր շաղկապներու շատութեամբ հանդերձ:

ԵՐԿՐՈՐԴ ԱՆՏԵՍՈՒՄ

Կա՞յ արդեօք որեւէ ժողովուրդի պատմութիւն առանց ներքին բախումներու եւ առանց ներունականութեան: Կարծեմ՝ չկայ: Ինչո՞ւ եգիպտահայկականը պէտք է ըլլայ հակառակը:

1865-ին արդէն մամուլին մէջ կը ներկայացուէր եգիպտահայ ներքին անհամաձայնութիւններու պատկերը: Ընդամէնը չորս համար լոյս տեսած եգիպտահայ առաջին լրագիրի՝ *Արմաւենի*ի երրորդ համարին մէջ, խմբագրութեան ուղղուած երկար նամակի մը մէջ Ռ. Ռ. ընդհանուր գաղափար կու տար եգիպտահայութեան վիճակին մասին(2), որմէ կը քաղեմ հետեւեալը (ուղղագրութիւնը պահած եմ անփոփոխ).

«Եգիպտոսի հասարակութեան մեծ մասը՝ ազգային զգացմունքէ բոլորովին զուրկ, ազգային պարտաւորութեան բոլորովին անզգայ կերեւան: Ազգը՝ ամեն յառաջանալու միջոցները ունի, բարեկարգ վիճակի մէջ դպրոց մը կարող է կառավարելու, եւ ազգին օգտակար պտուղներ հասցնելու. սակայն հո՛ս ալ՝ ատելութեան ոգին, որ Հայ ազգին յարակից բաժինն է, բաւական ժամանակէ ի վեր տիրած ըլլալով՝ ամեն բան երեսի վրայ մնացած՝ Ազգային Սահմանադրութեան շնորհիւը կյուսացուէր որ բարելաւութիւն մը գտնէ. սակայն ինչ ատեն Սահմանադրութեան կեդրոնը՝ իր ոտքին տակը եղածները հսկելու անբաւական կգտնուի, ինչ յոյս կրնայ ըլլալ Եգիպտոսի համար:»

Ասիկա գրելէ ետք Ռ. Ռ. կ'աւելցնէ.

«Եգիպտոսի վրայ ծանրացած ատելութեան ոգի մը կայ կըսեն, որով ամեն մարդ վհատած՝ անփոյթ կկենայ իր ազգային պարտաւորութեանցը մէջ. զարմանա՜լի բան, որ այսպիսի սակաւաթիւ ժողովրդի մէջ ալ անհնար եղեր է ատելութեան ախտը փարատելու, սէր եւ խաղաղութիւն հաստատելու:»

1865 Հոկտեմբեր 30-ին, Զմիւռնիոյ *Արշալոյս*

☞ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ ԱՆՏԵՍՈՒՄՆԵՐ

3

*արարատեան* օրաթերթը՝ «Բանասիրականք» խորագիրին տակ կը հրատարակէ իրեն հասցէագրուած նամակ մը(3): Նամակը անստորագիր է, փոխարէնը տողատակին նշուած է. «Այս նամակը՝ բանասէր պատուելի անձէ մի յուղարկեցաւ մեզ 'ի հրատարակութիւն:» Նամակի վերջաւորութեան յիշուած է վայրն ու թուականը՝ «Զմիւռնիա, 20 Հոկտեմբեր 1865»:

Նամակը կը սկսի Եգիպտոսի եւ եգիպտահայութեան մասին հակիրճ տեղեկութեամբ: Ահաւասիկ այս հատուածը ամբողջութեամբ (ուղղագրութիւնը պահած եմ անփոփոխ).

«Արժանապատիւ խմբագիր,

«Յետ դարձին իմոյ 'ի ճանապարհորդութենէս զոր ըրի դէպ 'ի Պաղեստին եւ յերուսաղէմ, կուզեմ երկու տողիւ նկարել ձեզ ինչ որ արժանի էին դիտողութեան եւ մասնաւոր նկարագրութեան: Առաջին քաղաքն ուրտեղ ոտք կոխեցի, էր Աղէքսանդրիան, արժանաւոր քաղաք իւր հիմնադրին, եւ պարծանք եգիպտական իշխանութեան: Եթէ ճամբորդ մի թէ՛ հոս եւ թէ՛ Գահիրէի մէջ ունի գանգատելու տեղիք մի, այն է ուտելեաց թանկութիւնը, որ որչափ արեւելցի ճամբորդի մի ուշը կրգրաւէ, այնչափ անտարբեր եղած է իւր բնակչացը աչքին. որոնց քով լուիճին Փրանքի մի արժողութիւն ունի, եւ ոսկին արծաթի տեղ կըվատնուի: Թէ՛ Աղէքսանդրիա եւ թէ Գահիրէ բաւական նկարագրական բաներ կըգտնուին. բայց իմ հոն ոտք կոխելուս՝ քոլէռան նոր ծագած ըլլալով, առանց մանր նկատելու զանոնք, ստիպուեցայ մեկնիլ 'ի Յոպպէ, ուրախանալով յիս՝ շուտով հեռանալուս այն Փարաւոնի քաղաքէն, ուրտեղ ազգային վէճերը իրենց սաստկութեանը մէջ կը մաքառէին բարեկարգութեան ու կանացի համեստութեան դէմ. ուր չահադիտական մրցմունքները զիրար կըմղէին եւ բարեպաշտ երկիւղածութիւնը իւր պարկեշտութեան վերարկուին ներքեւ ապաստանած սիրտ 'ի ցաւ հանդիսատես կլինէր. ուր կրօնական յարգն ու պատիւը անխոհեմաբար կըզոհուէր ոչ աւարի ձեռօք: Թէ՛ այս ազգակործան կռիւները եւ թէ՛ քոլէռային երկիւղը գիս փութացուցին 'ի չոգենաւն:»

«Ատելութեան ոգի», «Ազգային վէճեր»-ու սաստկութիւն, «ազգակործան կռիւներ». այսպիսի բառերով երկու նամակագիրները նկարագրած են 1865-ի եգիպտահայութիւնը: Ասիկա բաւարար ուղեցոյց մը չէ՞ վերանայելու եւ վերաւտումնասիրելու եգիպտահայութեան ԺԹ. դարու պատմութիւնը:

Յետոյ կու գայ եգիպտահայ մամուլի առատութեան ու բազմազանութեան շրջանը՝ ուր բաւական նիւթ կարելի է գտնել ներքին խնդիրներու մասին: Օրինակ, Գահիրէի *Լուսաբեր*ի մէջ 1905-1908-ին Արփիար Արփիարեանի ստորագրած բացառիկ խմբագրականները այս առումով կարեւոր ծառայութիւն կրնան մատուցանել:

Ապա աստիճանաբար կու գայ եգիպտահայ մամուլի հիմնարկայնացումի գործընթացը, որուն իբրեւ արդիւնք 1950-60-ականները կը տեսնեն ներհիմնարկային «պայքար»-ի թէժ շրջան մը, ուր մամուլի ուշադրութիւնը ներքին խնդիրներէն կը շեղուի դէպի միջմիութենական հակադրութիւնները:

Վերջապէս, 1970-ականներէն մինչեւ այսօր եգիպտահայերը կը կոչեն «համերաշխութեան» շրջան, ուր հիմնարկային մամուլը շատ կարեւոր որոշումով մը դադրեցաւ միջմիութենական փոխյարձակումներէ, առանց սակայն վերադառնալու դարասկիզբի ներքին խնդիրներու քննարկումին: Այս նոր եւ վերջին շրջանին ամէն բան այնքան յաջող, փառաւոր, խաղաղ, պայծառ ու համագործակցական է՝ որ պարզապէս կարելի է զարմանալ: Երբեք չի նշանակեր՝ որ ճիշդ հակառակը պէտք է «փաստել», այլ պարզապէս խնդիրներու *իսպառ* բացակայութիւնը անհաւատալի կը դարձնէ այդ նոյն «փաստեր»-ուն անաչառութիւնը: Բայց ահաւասիկ ասիկա պարարտ նիւթ կը հանդիսանայ «առարկայապաշտ» պատմաբաններուն համար, որոնք ոչ միայն կ'օգտուին անկէ՝ առանց փորձելու բացատրել անընդհատ գովաբանութիւններուն դրդապատճառները, այլ նախորդ շրջանները եւս կը վերածեն նոր շրջանի պատկերաւոր դրութեան, հակառակ այդ շրջաններու ինքնաբացայայտումներուն առատութեան:

ԵՐՐՈՐԴ ԱՆՏԵՍՈՒՄ

Առաջին եւ երկրորդ անտեսումներէն յառաջացած է երրորդ անտեսումը՝ պատմական անչարժութիւն, ինչպէս նաեւ պատմական իրադարձութիւններուն եւ բազմաշերտ կառուցուածքներուն նուազեցումը անհատներու եւ դէպքերու տարեգրութիւններու:

Միլիոններ արժող պատմութիւն:

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. F. Robert Hunter, 'Self-image and Historical Truth: Nubar Pasha and the Making of Modern Egypt', *Middle Eastern Studies*, London: Routledge, Volume 23, Issue 3, 1987, pp. 364-365:

2. Ռ. Ռ., «Ազգային», *Արմաւենի*, լրագիր կիսամսեայ, առաջին տարի, թիւ 3, 16 Ապրիլ 1865, էջ 2:

3. «Բանասիրականք», *Արշալոյս արարատեան*, օրագիր Զմիւռնիայ, քսանեւվեցերորդ տարի, թիւ 765, 30 Հոկտեմբեր 1865, էջ 1:

## ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆԻ ՁԵՌԱԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ

2

«Ա. Ալպօյաճեանի մահից յետոյ, նրա կտակի համաձայն, արխիւը տեղափոխուեց Հայաստան եւ յանձնուեց Մաշտոցի անուան Մատենադարանին, որի դիւանական փաստաթղթերի բաժնում ստեղծուեց «Ա. Ալպօյաճեանի ֆոնդը»: Այնտեղ մեծ խնամքով պահւում են անուանի գիտնականի աշխատութիւնների սեւագրութիւնները, ինչպէս նաեւ անտիպ երկասիրութիւնները, ուսումնասիրութեան համար հաւաքած նիւթերը, ստացած նամակները եւ առաքած նամակների որոշ մասի սեւագրութիւնը կամ մեքենագրուած երկրորդ օրինակը: Հին ֆոնդում են պահւում նաեւ նրա փաստաթղթերն ու լուսանկարները:»(10)

Գրիգորեան կը նշէ մինչեւ 2002 թուական անտիպ մնացած կարգ մը աշխատութիւններու անունները.

«Ստորեւ թուարկում ենք ֆոնդում եղած մի շարք աշխատութիւններ, որոնք մինչեւ հիմա մնացել են անտիպ. *Հայերը իբր գաղթական, Ստամբուլի եւ շրջակայից հայոց հոգեւոր վարչութեան սկզբնադրումը, Սպանիա եւ Հայաստան* (տպագրուել է համառօտ տարբերակը), *Տատեանները, իրենց ծագումը եւ գործունէութիւնը* (532 թերթ), *Թուրքիոյ հայերու կեանքին մէջ Տատեաններու կատարած դերը, Վրացի Տատեանք, Դրուագ մը Գ. Զօհրապի կեանքէն, Զուիցարացի մեծանուն հայասէր Քրաֆթ Բոնաո, Հարիւրամեակ ազգային սահմանադրութեան (1869-1960), Վահան Թէքէեանի կենսագրութիւնը, Կ. Պոլսի օտար հիւանդանոցները, Փորթուկալ եւ Հայաստան* (հնարաւոր է, որ տպուած է համառօտ տարբերակը), *Քաղաքական յարաբերութիւններ Սպանիոյ եւ Հայաստանի միջեւ, Նափոլէոնի հայազգի մեմլուկը, Եգիպտոսի կրթական անցեալը եւ վիճակագրութիւնը, Հայերը Մարոքքոյի մէջ, Յուշեր Կ. Պոլսի Եսայեան վարժարանի մասին, Ռուսահայ եւ Թուրքահայ խնդիրներ, Ռամկավարութեան դերը Կ. Պոլսոյ մէջ, Ծոփաց աշխարհ, Պատմական հնագոյն տեղեկութիւններ Զմիւռնիայի մասին, Գաւազան Պրուսայի առաջնորդներու (1617-1896), Աւստրալիա գաղթած առաջին հայերը*: [...]

«Ա. Ալպօյաճեանը *Անհետացող դէմքեր* շարքով գրել է բազմաթիւ յօդուածներ՝ նուիրուած իր ժամանակի գործիչներին (Կարապետ Իւթուճեան, Աւետիս Ա. Սուրէնեան, Ռոստանիկ Տէր-Մարգարեան, Արմենակ Հայկունի, Յակոբ էֆ. Մաթեւոսեան, Ալեք. Գառնիկեան, Յովհ. Սէթ, Գարեգին Սրուանձտեան, Ռէթէոս Պէրպէրեան եւ այլք): Դրանց մի մասը հրատարակուած է: Բայց անկախ դրանից, արժէ դրանք բոլորն ի մի բերել եւ զետեղել մի առանձին հատորի մէջ:»(11)

Վերջապէս, նամակները. «Ա. Ալպօյաճեանը զարմանալի խնամքով պահպանել է իր ստացած բոլոր նամակները, ինչպէս նաեւ իր ուղարկած նամակների սեւագրութիւնները կամ երկրորդ օրինակները: Նա նամակագրական կապեր է ունեցել տարբեր երկրներում ապրող բազմաթիւ հայագէտների, գրողների, ուսուցիչների, հոգեւորականների, քաղաքական գործիչների եւ այլ անձանց հետ: Նամակները պարունակում են ոչ միայն պատմական ու բանասիրական արժէքաւոր տեղեկութիւններ, այլեւ արտացոլում են քաղաքական կեանքը, գաղութների վիճակը, նշանաւոր գործիչների գործունէութիւնը տարբեր ասպարէզներում, պատկերացում են տալիս Եգիպտոսում եւ այլուր ապրող գործիչների հետ Ալպօյաճեանի կապերի մասին եւ այլն: Հրատարակութեան ժամանակ անհրաժեշտ կը լինի առատ տեղեկութիւններ հաղորդել նամակների հեղինակների, նամակագրութեան հաստատման պատճառների, նրանց պարունակած տեղեկութիւնների արժէքի ու նշանակութեան մասին:

«Ստորեւ բերում ենք ամենեւին ոչ լրիւ ցուցակն այն անձանց, որոնց հետ Ա. Ալպօյաճեանը նամակներ է փոխանակել եւ որոնք պահպանուել են նրա արխիւում՝ Ղեւոնդ արք. Դուրեան, Վարդան Հացունի, Վահան Թէքէեան, Արսէն Ղազիկեան, Վարդան Մելքոնեան, Վահան Մալէզեան, Թորգոմ արք. Գուշակեան, Գուրգէն Մահարի, Լեւոն Խաչիկեան, Վազգէն Ա կաթողիկոս, Ներսէս Կասաբեան, Ներսէս Ակինեան, Համազասպ Ոսկեան, Գարեգին կաթողիկոս Յովսէփեան, Արտաւազդ Սիւրմէյեան, Վահէ Վահեան, Սիմոն Վրացեան, Սենեքերիմ Տէր-Յակոբեան, Հրաչեայ Աճառեան, Յարութիւն Քիւրդեան, Սուրէն Գալենդէր, Մկրտիչ Ներսիսեան, Արման Կոթիկեան եւ շատ ուրիշներ:»(12)

Վարդան Գրիգորեանի ջանքերով եւ խմբագրութեամբ Երեւանի մէջ 2003-ին լոյս տեսնէ Ալպօյաճեանի *Իրաքի հայերը* աշխատութիւնը:

Հ. Ա.

(Շար. 1)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Դամբանականին ամբողջ բնագիրը տե՛ս՝ Գեր. Տ. Մամբրէ Արք. Սիրունեան, «Արշակ Ալպօյաճեանի կեանքն ու գործը», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 30 Յունիս 1962, ԽԸ. տարի, թիւ 13.246, էջ 3-4:

2. Քաղուածքը կատարած եմ *Արեւ*ի մէջ արտատպուած օրինակէն՝ Սուրէն Քոլանջեան, «Անուանի հայագէտը Արշակ Ալպօյաճեան», *Արեւ*, 17 Յուլիս 1962, ԽԸ. տարի, թիւ 13.260, էջ 3:

3. Գ. Ստեփանեան, «Արշակ Ալպօյաճեան», *Պատմա-բանասիրական հանդէս*, Երեւան, 1962, թիւ 3, էջ 274:

4. Վահան Մալէզեան, «Արշակ Ալպօյաճեանի յիշատակին», *Արեւ*, 31 Յուլիս 1962, ԽԸ. տարի, թիւ 13.272, էջ 3:

5. Հայկ Ժամկոչեան, «Արշակ Ալպօյաճեան (մահուան Բ. տարելիցին առթիւ)», *Ջահակիր*, շաբաթաթերթ, Գահիրէ, 2 Յուլիս 1964, թիւ 34, էջ 3:

6. Անդ, էջ 6:

7. Արշակ Ալպօյաճեան, «Անցեալի յիշատակներ առ Պարոյր Բ. Քէչեան», *Ջահակիր*, 9 Յուլիս 1964, թիւ 35, էջ 3. 16 Յուլիս 1964, թիւ 36, էջ 3. 23 Յուլիս 1964, թիւ 37, էջ 5-6:

8. Տիգրան Գէորգեան, «Ալպօյաճեանի պատմական եւ բանասիրական գնահատելի ժառանգութիւնը», *Արեւ*, 24 Յունիս 1972, թիւ 16.256, էջ 2-3:

9. Արտաշէս Գարտաշեան, «Հերքում», *Արեւ*, 19 Դեկտեմբեր 1972, թիւ 16.403, էջ 4:

10. Վարդան Գրիգորեան, «Արշակ Ալպօյաճեանի անտիպ աշխատութիւններն ու նամականին», *Ազգ*, օրաթերթ, Երեւան, թիւ 201, 5 Նոյեմբեր 2002:

11. Անդ:

12. Անդ:

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ

## ԳԱՅԼԸ, ԱՅԾԵԱՄԸ ԵՒ ԱՌԻՒԾԸ

Գայլը կը սպասէր որ այծեամը ննջէ, որպէսզի բռնէ իրեն: Կռահելով իր մտադրութիւնը, այծեամը չքնացաւ շատ օրեր, բայց յոգնելով նիրհեց գայլը:

Եւ գալով առիւծը՝ սպաննեց գայլին:

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ القاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1775 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ.

عدد رقم ١٧٧٥ الخميس ٢٢ سبتمبر ٢٠١٦


## ՕԼԻԳԱՐԽԻԱՆ ԵՒ ՆԵՕԼԻԲԵՐԱԼԻԶՄԸ

**ՎԱՐԴԱՆ ՋԱԼՈՅԵԱՆ**

Այս յօդուածը հրատարակուած է շուրջ վեց տարի առաջ՝ 2010 Դեկտեմբեր 23-ին, Երեւանի *Լրագիր*ին մէջ եւ նոյնքան այժմէական կը հնչէ անկախութեան 25-ամեակի ներկայ օրերուն: Այստեղ, Ջալոյեան կը փորձէ ներկայացնել յետխորհրդային Հայաստանի մէջ գործադրուած տնտեսական երեք տեսակները իրենց փուլային յաջորդականութեամբ: Յօդուածագիրի ներկայացուցած երրորդ փուլը՝ նէօլիպերալիզմը, նոյնքան կենդանի է նաեւ այսօր՝ եթէ ոչ աւելի արմատաւորուած ու տարածուած:

*Ջահակիր*

Տնտեսական խաղի կանոնները Հայաստանում ձեւաւորուել են 90-ականներին, ինչպէս բոլոր յետխորհրդային երկրներում: Բագրատեանի կառավարութիւնը կողմնորոշուած էր փոքր եւ միջին բիզնէսի վրայ, որոնք բուռն զարգացում ունեցան: Այդ դարաշրջանի խորհրդանշանական բառը «ստոլիկն» էր: Ոգեւորութիւնն այնքան մեծ էր, որ բոլորը համոզուած էին, որ ամէն մարդ, բացի բացառիկ դեգեներատներից, ընդունակ է ստեղծել սեփական բիզնէսը եւ յաջողութիւն ունենալ: Բիզնէսի հիմնական միաւորը նոյնիսկ ոչ թէ փոքր բիզնէսն էր, այլ միկրոսկոպիկը՝ «ստոլիկը»: Այս առողջ տեսակէտը՝ դեմոկրատական կապիտալիզմը հակասութեան մէջ էր պրակտիկայի՝ խոշոր ձեռնարկութիւնների սեփականաշնորհման հետ, նէօլիբերալ դեղատոմսերով արուած վաուչերացման գործընթացի հետ: Գործարանը «ստոլիկ» չէ, եւ պահանջում է այլ խաղի կանոններ, ներդրուած կապիտալի այլ մասշտաբներ:

Ընդհակառակը. Վազգէն Մանուկեանը եւ նրա կողմնակիցները համարում էին, որ տնտեսութիւնը հարկաւոր է փոխանցել մէկ-երկու տասնեակ ընտանիքների, որոնք «կը պահեն» միւսներին: Իհարկէ, մանուկեանական «օլիգարխականութիւնը» սկզբունքօրէն տարբերւում էր քոչարեանական «օլիգարխականութիւնից»: Վ. Մանուկեանը օլիգարխների դերում տեսնում էր խոշոր գործարանների խորհրդային տնօրէններին, որոնք մասնագիտական հմտութիւններ ունեն, իսկ Ռ. Քոչարեանը օլիգարխների դերում տեսնում էր «հաւատարիմներին», որոնք նեցուկ կը լինեն իշխանութիւններին: Վ. Մանուկեանի գաղափարներն իրենց կիրառումը գտան Արմէն Դարբինեանի «արհեստավարժ» կառավարութեան մէջ եւ ցուցադրեցին իրենց սնանկութիւնը՝ տնտեսութիւնը չյաջողուեց աշխուժացնել: Բայց նկատենք, որ զուտ տեսութեան առումով Վ. Մանուկեանի եւ Ռ. Քոչարեանի մօտեցումները համանման են. երկուսն էլ շեշտադրումը դնում են մասշտաբի էֆեկտի վրայ՝ խոշոր բիզնէսն աւելի արդիւնաւէտ է, քան փոքրը կամ միջինը, սուպերմարկէտն աւելի լաւ է, քան «բուդկան»:

Այսպիսով, ունենք երեք տարբերակ՝ դեմոկրատական կապիտալիզմ, սոցիալ օլիգարխիա եւ նէօլիբերալ օլիգարխիա: Անձամբ ինձ համար գերադասելի է առաջինը, եւ, կարծում եմ, անձնական նախաձեռնութեան նկատմամբ բագրատեանական կառավարութեան բարեհաճութիւնը շատերը ժամանակին գնահատեցին: Ռացիոնալ հատիկ գուցէ ունէր Վ. Մանուկեանի մոդէլը, որը պահպանում է խորհրդային ինստիտուցիաների հետ ժառանգականութիւնը, բայց միւս կողմից այն քիչ տեղ էր թողնում տնտեսական եւ սոցիալական նորամուծութիւնների համար, ընդգծուած պահպանողական էր եւ զարգացման հնարաւորութիւններ չէր կարող տալ: Այս լոյսի տակ երրորդը՝ նէօլիբերալ օլիգարխական մոդէլը թւում է ամենավատը: Նրա խաղի կանոններն են՝ «յաղթողը վերցնում է բոլորը», այսինքն տնտեսական կեանքի հիմնական միաւորը դառնում է օլիգոպոլիան:

Աւելի կոնկրէտ լինելու համար տանք օլիգարխի սահմանումը. օլիգարխը շատ հարուստ ձեռնարկատէր է, դոլարային միլիարդատէր է կամ համարեայ այդպիսին, հանդիսանում է ձեռնարկութիւնների որեւէ կոնգլոմերատի հիմնական սեփականատէրը, ունի լաւ քաղաքական կապեր, այդ թւում՝ անձնապէս կապուած է երկրի նախագահի հետ:

Ինչպէս գրում է Վադիմ Վոլկովը, յետխորհրդային համակարգի ամենախոր հետազօտողներից մէկը՝ «Քանի պետական բիւրոկրատիայի գործողութիւնները եւ օրէնսդրութեան կատարումն ապահովուած չէ, իսկ նրանց մատուցած ծառայութիւնների գինը բարձր է, մասնաւոր կառոյցները՝ փաստական մաֆիան շահում է պետութեան հետ մրցակցութիւնը եւ վստահօրէն զբաղեցնում է նրա տեղը»:

Բոլորն էլ իրաւունքներ ունեն, բայց փաստօրէն իրաւունք ունի միայն նա, ով կարող է պաշտպանել իր իրաւունքը: Հոբսը նշում է մի իրավիճակ, երբ «մարդը մարդուն գայլ է» եւ հասարակութիւնում տիրում է «բոլորի պատերազմը բոլորի դէմ» իրավիճակը: Հէնց այս պայմաններում է, ըստ Հոբսի, որ ձեւաւորւում է «ուժն է ծնում իրաւունքը» սկզբունքը: Քաոսի պայմաններում մի կողմում քրէականներն են, միւսում՝ հասարակութիւնը:

Օլիգարխները կարողացան դուրս պրծնել քրէական բեսպրեդէլի աշխարհից, մասնաւորապէս ստեղծելով իրենց սեփական անվտանգութեան ծառայութիւնները: Յաջորդ փուլում նրանց համար անվտանգութեան ծառայութիւններ մատուցող հիմնական օղակը դառնում է ոստիկանութիւնը: Այս եղանակով նրանք կարողացան ձեռք բերել իրենց սեփականութեան իրաւունքների պաշտպանութիւն: Բայց դա չյանգեցրեց նրան, որ միւս խմբերի սեփականութեան իրաւունքը եւս պաշտպանուած դարձաւ: Նրանք քաղաքական գործիչների միջոցով պայքարում են միւս բիզնէս խմբերի սեփականութեան իրաւունքները ոչնչացնելու համար: Յատկապէս նրանք շահագրգռուած են ոչնչացնել մանր՝ ինքնաշահագործման վրայ հիմնուած բիզնէսը (առեւտուր, գիւղատնտեսութիւն, մանր ցեխեր), պրոլետարականացնել նրանց, իսկ նրանց ունակութիւնները եւ աշխատասիրութիւնը ծառայեցնել իրենց խոշոր ձեռնարկութիւններում (սուպերմարկէտներում, պլանտացիաներում եւ այլն):

Պատմականօրէն օլիգարխների մասին առաջին յիշատակութիւնը վերաբերում է ԱՄՆ-ին, երբ *Նիւ Եորք Թայմզը* նոր խոշոր բիզնէսմէններին անուանեց «աւազակ բարոններ», նկատի ունենալով Հռենոսի ափի բարոններին, որոնք գումար էին կորզում իրենց տարածքով անցնելու համար: Բայց միայն 20-րդ դարի սկզբին Թ. Ռուզվելտը սկսեց պայքար նրանց դէմ:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՐԷՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐ ՎԱՐՉԱՊԵՏ

Սեպտեմբեր 13-ին Հայաստանի նոր վարչապետ նշանակուեցաւ Կարէն Կարապետեան (ծն. 1963): Մասնագիտութեամբ տնտեսագէտ, 2010-2011-ին եղած է Երեւանի քաղաքապետ: Հայկական եւ ռուսական իշխանութիւններուն շատ մօտ կանգնած մեծահարուստ մըն է: Իր նախորդին՝ Յովիկ Աբրահամեանի նման, իր, իր զաւակի եւ իր ընտանիքի անունով մեծածաւալ բաժնետոմսեր ունի զանազան ընկերութիւններու մէջ, ինչպէս նաեւ սեփականատէրն է օֆշորային ընկերութիւններու:



Հայաստանի նորանշանակ վարչապետ՝ Կարէն Կարապետեան

## ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻ ՆԱԽԱՇԵՄԻՆ ՅՈՎԻԿ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ՝ «ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԴԵՌ ՄՆԱՑ ԲԵՒԵՌԱՑՈՒԱԾ»

Սեպտեմբեր 8-ին վարչապետ Յովիկ Աբրահամեան յանձնեց իր հրաժարականը: Ինչո՞ւ խորհրդարանական գալիք ընտրութիւններէն 7-8 ամիս առաջ հրաժարեցաւ վարչապետը, դժուար է հասկնալ: Բայց դժուար չէ տեսնել՝ որ սարգսեանական եւ տակաւին չընտրուած բայց բաւականաչափ կերպով կանխատեսելի յաջորդ խորհրդարանական մեծամասնականներու կամ մեծամասնական դաշնակցութեան (coalition) քաղաքական խաղ մըն է ասիկա: Կը մնայ իր ժամանակին բացայայտել այս խաղը:

Հրաժարականի երկար բնագիրը, բնականաբար, ընդունուած քաղաքական ոճով գրուած հռետորախօսութիւն մըն էր, ուր վարչապետը «կը բացայայտէր» իր երկու ու կէս տարուայ նուաճումները: Դարձեալ սովորական դարձած քաղաքական բառախաղերով կ՚ըսէր՝ որ հակառակ իր ըրած այս եւ այն լաւութիւններուն, տակաւին ընելիք շատ բան կայ:

Բայց աչքի զարկաւ այն յայտարարութիւնը՝ ըստ որուն հասարակութիւնը այսօր կը գտնուի բեւեռացած վիճակի մէջ.

«Մեր որդեգրած անկեղծ եւ իրատեսական մօտեցումներն իրենց արդիւնքն ունեցան՝ սակայն հասարակութիւնը դեռեւս մնաց բեւեռացուած: Իմ կարծիքով, դրա հիմնական պատճառներից մէկն աշխարհաքաղաքական, արտաքին տնտեսական եւ ռազմական մարտահրաւէրներով սնուող առկայ տարաձայնութիւններն են: Դրանք են, որ դեռեւս հնարաւորութիւն չեն ընձեռում մեզ՝ ժողովելով բոլոր ուժերը, հրատապ լուծումներ տալ մեր առջեւ ծառացած կարեւորագոյն խնդիրներին՝ տնտեսական հաւասար պայմաններ ապահովելուց մինչեւ կոռուպցիայի դէմ պայքարը:»

Այս բեւեռացումը, ըստ նախկին վարչապետին, ունի միայն «արտաքին» պատճառներ: Հետեւաբար, յանցաւորը ո՛չ իշխանութիւնն է եւ ո՛չ ալ հասարակութիւնը: Յանցաւորը երրորդ կողմ մըն է, այն յայտնի-անյայտ երրորդ կողմը՝ որուն իշխանութիւն մը միշտ կը սիրէ դիմել իր ճգնաժամերուն ժամանակ (յիշենք Եգիպտոսի Յունուար 25-ի

↳ 3

## ՋԱՀԱԿԻՐ Ի ԵՐԵՔ ՏԱՐԻՆԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԿԱՅՔԻՆ ՄԷՋ

Քանի տարի է արդէն Հայաստանի Ազգային Գրադարանը սկսած է իր կայքէջին մէջ վերբեռնել ու անվճար հասարակութեան տրամադրել մամուլի իր հարուստ հաւաքածոն:

Վերջերս այնտեղ տեղադրուած է *Ջահակիր*ի երեք տարիներու (2013-2015) թուայնացած ամբողջական հաւաքածոն: Զայն կարելի է կարդալ այստեղ.

http://tert.nla.am/mamul/Jahakir 1948/NLA.html:

# ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆԻ ՁԵՌԱԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ

## ԳՐԻԳՈՐ ՊԱՍՄԱՃԵԱՆԻ ՄՕՏ ՊԱՀՈՒՈՂ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

Կը բացայայտուի, որ ոչ բոլոր ձեռագիրներն են առաքուած Երեւան: 1967-ին, երբ Ալպօյաճեանի ձեռագիրները արդէն ուղարկուած էին Երեւան, Գահիրէի մէջ «խաղաղաչտ» կը մտնէ Գրիգոր Պասմաճեան, հրատարակելով Ամասիայի, Մարզուանի եւ Սեբաստիայի հայկական տպագրութեան մասին անտիպ նիւթեր, օգտագործելով իր ձեռքին տակ գտնուող Ալպօյաճեանին հասցէագրուած երեք նամակներ(13):

Գրքոյկի «Երկու խօսք»-ը Պասմաճեան կը սկսի այսպէս. «Հանգուցեալ մեծանուն բանասէր ու պատմաբան Արշակ Ալպօյաճեան, իր ողջութեան, մեզի յանձնած էր, շարք մը ձեռագիրներու կարգին, տրցակ մը անտիպ նամակներ, որոնք անցեալին (1914–15) ան ստացած էր Թրքական նախկին հայաբնակ գաւառները գտնուող պատասխանատու անձնաւորութիւններէ, որոնց դիմած էր ինք, հայկական գաւառներէ ներս գոյութիւն ունեցող տպարաններու մասին տեղեկութիւններ հաւաքելու համար:» Ապա Պասմաճեան կ'աւելցնէ. «Ան [իմա՝ Ալպօյաճեան, Հ.Ա.], իր ողջութեան, մեզի յանձնելով այս անտիպ ու խիստ թանկագին նշխարները՝ մեզ առաջարկած էր զանոնք օր մը հրապարակել ու կորուստէ փրկել:»(14)

Ուրեմն, պէտք է հասկնալ, որ Ալպօյաճեան Պասմաճեանին վստահած է «շարք մը ձեռագիրներ» եւ յանձնարարած անոնց տպագրութիւնը:

1973 Յունիսին, վաղ հասակին կը մահանայ Պասմաճեան(15):

Իր մահուան առիթով գրուած յօդուածին մէջ, Հայկ Ժամկոչեան կը հաստատէ՝ որ իբրեւ կրտսեր մտաւորական Պասմաճեան մտերիմ եղած է Ալպօյաճեանին: Իսկ ձեռագիրներուն մասին կը հաղորդէ հետեւեալը. «Ալպօյաճեան, երբ ողջ էր, Պասմաճեանին տրամադրած էր գրեթէ իր ամբողջ արչիւը: Նաեւ ձեռագիրներ եւ նամակներ՝ հազարաւոր հին կամ նահատակուած մտաւորականներէ: 1963ին, Ա. Գարտաշեանի գլխաւորութեամբ (եւ կոտակակատարութեամբ) մեր կազմած Յանձնախումբը – որուն անդամ էր նաեւ Գր. Պասմաճեան – յաջողեցաւ Հայաստան ղրկել Ա. Ալպօյաճեանի արժէքաւոր գիրքերու քսաներկու սնտուկները եւ ամբողջ արչիւը, ջանքերովը՝ Սով. Դեսպանատան հայ պաշտօնատարներ ընկ. Պօղոս Ակոբովի եւ ընկ. Պարոյր Թալալեանի: Ինչ որ մնաց հոս՝ տրամադրուեցաւ Գր. Պասմաճեանին, որ զանոնք օգտագործելէ ետք կը ղրկէր Հայաստանի Թանգարանը, հետզհետէ:»(16)

Ժամկոչեանի յօդուածը ենթադրուած է տալ Պասմաճեանի դրական պատկեր մը: Արդարեւ, յիշեալ պարբերութեան վերջաւորութիւնը հարցադրումներ առաջ կը բերէ: «Ինչ որ մնաց հոս՝ տրամադրուեցաւ Գր. Պասմաճեանին», կը գրէ Ժամկոչեան: Ինչո՞ւ մաս մը մնաց հոս, ինչո՞ւ ամբողջ արչիւը չղրկուեցաւ Հայաստան: Ապա Ժամկոչեան կ'աւելցնէ՝ որ հոս մնացածները օգտագործելէ ետք Պասմաճեան «կը ղրկէր Հայաստանի Թանգարանը, հետզհետէ:» Իսկ ի՞նչ օգտագործած է Պասմաճեան: Իր կողմէն հրապարակաւ յայտարարած միակ օգտագործած ձեռագիրները Ամասիայէն, Մարզուանէն եւ Սեբաստիայէն Ալպօյաճեանի ստացած երեք նամակներն են(17): Ինչպէս ստորեւ բերուած տուեալները ցոյց պիտի տան, այս նամակները երբեք Հայաստան չեն հասած:

Պասմաճեանի մօտ գտնուող Ալպօյաճեանի ձեռագիրները կը դառնան եգիպտահայ երաժիշտ Եդուարդ Յակոբեանի սեփականութիւնը: 1975-ին, *Ջահակիրի* մէջ Յակոբեան հրատարակութեան յանձնելով անոնցմէ մէկը, այսպէս կը ձեւակերպէ զանոնք սեփականացնելու հարցը.

«Ինչպէս յայտնի է հասարակութեան, ողբ. Արշակ Ալպօյաճեանի ամբողջ արխիւը, յատուկ յանձնախումբի մը կարգադրութեամբ, քանի մը տարիներ առաջ փոխադրուեցաւ Երեւան: Վերջերս, Ալպօյաճեանի սաներէն ողբ. Գրիգոր Պասմաճեանի այրին՝ Տիկին Մարօ, մեզի կը յանձնէր իր մօտ գտնուող Ալպօյաճեանի արխիւին մաս կազմող քանի մը թղթածրարներ: Ըստ մեզի եղած հաւաստիացումին, այդ թղթածրարները՝ որոնք առաւելաբար կը պարունակեն մեծ պատմաբանին կենսագրականին վերաբերեալ բազմաթիւ նիւթեր, յանձնուած էին Գրիգոր Պասմաճեանին, որպէսզի այս վերջինը պատրաստէ իր վարպետին լիակատար կենսագրականը: Այդ արխիւին գոյութիւնը մենք տեղեկացուցինք առ որ անկ է: Մինչ այդ, խնդրեցինք բանասէր Պր. Տիգրան Գէորգեանէն, որ պատրաստէ այդ թղթածրարներուն պարունակութեան ցուցակագրութիւնը:»(18)

Յակոբեանի հրատարակածը Եղիա Տնտեսեանի (1834–1881) մասին ձեռագիր յօդուած մըն է(19): Ըստ Յակոբեանին, այս գրութիւնը նախատեսուած էր հրատարակուելու Ալպօյաճեանի «Հայ եկեղեցական երաժշտութիւնը եւ ձայնագրութիւնը» յօդուածաշարին մէջ (*Ծաղիկ*, հանդէս, Կ. Պոլիս, 1903, թիւ 5-8), բայց Տնտեսեանի անունը տակաւին անընդունելի ըլլալով օսմանեան կառավարութեան, գրաքննչութիւնը ջնջած էր այդ հատուածը(20):

1977-ին Տիգրան Գէորգեան կը հրատարակէ այժմ Եդուարդ Յակոբեանի մօտ գտնուող Ալպօյաճեանի նիւթերուն իր կազմած ցուցակը(21):

Գէորգեան հաւաքածոն կը բաժնէ ութ մասի՝ տալով իւրաքանչիւր նիւթի մանրամասն նկարագրութիւնը եւ նոյնիսկ հրատարակելով անոնցմէ կարեւոր պատառիկներ.

Ա.-Արշակ Ալպօյաճեանի ինքնագիր աշխատութիւնները (4 նիւթ):

Բ.-Արշակ Ալպօյաճեանի աշխատակցութեամբ երկասիրութիւններ (3 նիւթ):

Գ.-Նիւթեր (5 նիւթ):

Դ.-Օրագրութիւն, յուշագրութիւն (4 նիւթ):

Ե.-Նամականի (7 նիւթ):

Զ.-Տարբեր հեղինակներու աշխատութիւններ (8 նիւթ):

Է.-Արտագրութիւններ (6 նիւթ):

Ը.-Զանազանք (6 նիւթ):

1982-ին Գէորգեան իր յօդուածներէն մէկուն մէջ կը շեշտէր՝ որ այս նիւթերը տակաւին «առժամաբար ի պահ կը մնան Մօ. Եդուարդ Յակոբեանի մօտ:»(22) Հասկնալի է, որ այս թարմացած տեղեկութիւնը իր ներքին ծալքերուն մէջ կը պարունակէր պարսաւանք մը ձեռագիրներուն անտեղի սեփականացումին առնչութեամբ:

Յակոբեան կը մահանայ 2004-ին: Բացի Տնտեսեանի յօդուածէն, Ալպօյաճեանի ձեռագիրներէն ոչ մէկը կը ներկայացնէ տպագրութեան եւ ոչ ալ կ'անդրադառնայ անոնց մասին: Ձեռագիրները ցմահ կը մնան իր տնօրինութեան տակ: Յակոբեան իր կեանքի ընթացքին սեփականացուցած էր նաեւ ուրիշ կարեւոր դէմքերու ձեռագիրներ, որոնց բոլորին ճակատագիրը այսօր կը մնայ անյայտ(23): Այս անյայտներուն մաս կը կազմէ Ալպօյաճեանի հաւաքածոն:

Հ. Ա.

(Շար. 2)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

13. Գր. Պասմաճեան, *Անտիպ նիւթեր հայկ. տպագրութեան պատմութեան վերաբերեալ. Ամասիա, Մարզուան, Սեբաստիա*, Գահիրէ, Տպ. Արգոս, 1967:

14. Անդ, էջ 5:

15. «Գրիգոր Պասմաճեան ոչ եւս է», *Ջահակիր*, 7 Յունիս 1973, թիւ 482, էջ 2:

16. Հայկ Ժամկոչեան, «Երիտասարդ բանասէրը եւ քաղաքացին», *Ջահակիր*, 12 Յուլիս 1973, թիւ 487, էջ 3:

17. Գր. Պասմաճեան, նշ. աշխ.ը:

18. Եդուարդ Յակոբեան, «Արշակ Ալպօյաճեանի երաժշտական անդրանիկ յօդուածը», *Ջահակիր*, 24 Յուլիս 1975, թիւ 586, էջ 4:

19. Անդ, էջ 3-4:

20. Անդ, էջ 3:

21. Տիգրան Գէորգեան, «Արշակ Ալպօյաճեանի գիտական արխիւը համալրող նորայայտ նիւթեր», *Արեւ*, 27 Յունիս 1977, թիւ 17.720, էջ 2. 28 Յունիս 1977, թիւ 17.721, էջ 2. 29 Յունիս 1977, թիւ 17.722, էջ 2:

22. Տիգրան Գէորգեան, «Հայ ձեռագիր պարբերականները», *Արեւ*, 29 Ապրիլ 1982, թիւ 19133, էջ 2, Ծնթգր. 4:

23. Եդուարդ Յակոբեանի սեփականացուցած ձեռագիրներուն մասին ընդհանուր տեղեկութեան համար տե'ս Հ. Ա., «Հայ տպագիր գիրքի 500-ամեակ... գիտելիքի խզո՞ւմ. յետ-տպագրային ընթերցում մը», *Ջահակիր*, 28 Փետրուար 2013, թիւ 1698, էջ 3:

## ՆՄՈՅՇՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՐՐՈՐԴ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՆԷՆ

### ԵՐԿԻՐ ԻՄ, ԴԵՂԻՆ ԺԱՆԻՔԴ ՓՏԱԾ

ՎԻՈԼԷՏ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Երկիր իմ, դեղին ժանիքդ փտած
արդէն կոկորդիս մէջ է մխրճւում,
սեղմիր կամ հանիր, հէրիք թպրտամ
ասեղով գամուած թիթեռի յանգոյն:

Երկիր իմ, կրկէս-հրաձգարան,
բեմահարթակիդ՝ ես-քո թիրախը,
բաց աչքերիս դէմ՝ փողն հրացանիդ,
ձգանի վրայ՝ իմ ցուցամատն է:

Եւ հովհարաձեւ, փիւնիկի ռիթմով,
մեռնում-յառնում եմ ես՝ քո կենուորը,
մերթ հանց մսեղիք դրօշիդ ներքոյ,
մերթ իբրեւ տգրուկ երակիդ վրայ:

Եւ ջրի որպէս՝ տանում եմ խոնարհ
ժանգոտ անցեալդ եւ սիրելի թափօն,
բայց բզկտւում է մարմինս միակ,
մինուճար կեանքս չես խնայում դու:

Էլ չեմ սակարկի, ի՞նչ ունեմ ծախու,
կշեռքիդ թաթին կեանքս չնչին է,
մինուճար կեանքս տուեցի տանուլ,
բայց քեզ ներում եմ, մինուճար երկիր:
1992

### ԳԱՐՈՒՆՔԱՅԱՒ

ԿԱՐԷՆ ԱՆՏԱՇԵԱՆ

Սէրը երկար մազեր ունի, փափուկ է...
Եթէ աչքերս փակեմ ու կենտրոնանամ,
Նոյնիսկ կը յիշեմ աչքերի գոյնն ու... մնացածը:

Սէրը տարիներով կարող է զգեստը չփոխել՝
յատկապէս էն բաց-կապտամոխրագոյնը՝
մանր սպիտակ ծաղիկներով:

Սիրոյ մասին միշտ գարունից թաքուն եմ
մտածում,
որ յանկարծ գարունը չառիթաւորուի:

Եւ ամէն անգամ, երբ լսում եմ «L'histoire
d'un Amour»-ը,
սէրը քնքուշ գրկում է մէջքիցս եւ կծում աջ
ականջս:

Սէրը... երեք ամիսը մէկ... քսանհինգ րոպէ
կրծքամկանի սպազմատիկ կծկումներ,
որից չեն մեռնում:

Եւ ինչպէս Սիրոյ մասին աշխարհի բոլոր
պատմութիւններում,
ինչպէս աշխարհի մնացած բոլոր սէրերը,
Սէրն էլ եսիմ քանի տարի առաջ
ամուսնացել է հարուստ սփիւռքահայի հետ.
եւ մեկնել այս երգից հեռո՜ւ... հեռո՜ւ...
հեռո՜ւ...

(Փողոցներում լիքն են իր նմանները:
Փառք Աստծոյ, որ ինքը չկայ):

### ՓՈՔՐԻԿ ԲԱՆԱՎԷՃ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՏԱՆ ԲՆԱԿԻՉՆԵՐԻ ՀԵՏ

ՄԱՐԻՆԷ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Գերմանիան տարածք է ընդամէնը
Գերմանին յօրինել են
Բիսմարկն է Գերմանին յօրինել-
ասաց ինձ զրուցակիցս
կարծես թէ գերմանացի:
Ու ես մտածեցի մտքումս
յետոյ կրկին բարձրաձայն
որ աչքով տամ.
Հայաստանը տարածք չի ընդամէնը
Հայաստանը չեն յօրինել
որովհետեւ մեծով ու փոքրով
արդէն քանի դար յօրինում ենք
բայց չի յօրինում
Կարծես թէ:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՒԱՆԻ ԳՐՈՂՆԵՐԻ ՏՈՒՆԸ ՆԱԽԱԴԷՊ Է ՍՏԵՂԾԵԼ. *ԱՌԱՒՕՏ*

*Առաւօտ* թերթը գրում է. «Գէորգ Քոչարի եւ Միքայէլ Մազմանեանի կողմից 1932թ. նախագծուած Սեւանի գրողների ստեղծագործական տունը նոր շունչ կը ստանայ հանրայայտ Գեթթի Հիմնադրամի (Getty Foundation) շնորհիւ: Սեւանի գրողների հանգստեան տան վերականգնման նախագծի գիտական ղեկավար Ռուբէն Արեւշատեանի ձեւակերպմամբ, ինչպէս այլ մոդեռնիստական կառոյցներ, այդ շէնքը եւս բացակայում է յուշարձանների ցանկից: Նախագծի գիտական ղեկավարը փաստում է, որ առաջին անգամ է խորհրդային մոդեռնիզմի ճարտարապետական ժառանգութեան հանդէպ նման առանձնայատուկ վերաբերմունք դրսեւորւում: Պատահական չէ, որ երբ յայտարարուել են մրցոյթի արդիւնքները, Ռուբէն Արեւշատեանը բազմաթիւ զանգեր է ստացել խորհրդային մոդեռնիզմի հետազօտողներից եւ ճարտարապետներից»:

## ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻ ՆԱԽԱՇԵՄԻՆ ՅՈՎԻԿ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ՝ «ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԴԵՌ ՄՆԱՑ ԲԵՒԵՌԱՑՈՒԱԾ»

1

յեղափոխութեան անվերջանալի «երրորդ կողմեր»-ը): Բեւեռացումը արդիւնքն է նախ եւ առաջ իշխանութիւններու վարած քաղաքականութեան իրենց սեփական բնակչութեան դէմ: Բեւեռացումը կը գտնուի նոյն ինքը Աբրահամեանի արտասանած վերոբերեալ պարբերութեան մէջ: «Տնտեսական հաւասար պայմաններ»-ու բացակայութեան պատճառը երկրի հարստութեան սեփականացումն ու կուտակումն է օլիկարքական-իշխանական համակարգին կողմէ, որուն մաս կը կազմէ Աբրահամեան: Իսկ «կոռուպցիայի դէմ պայքար»-ի դերակատարները նոյն ինքը կոռուպցիան ստեղծողներն են:

Հետախուզող լրագրող Գրիշա Բալասանեան 2014-ին կը գրէր. «Վարչապետ Յովիկ Աբրահամեանի եւ նրա մերձաւորների հայաստանեան ընկերութիւններիթիւն անցնում է հինգ տասնեակից: Դեռ չենք հասցնում պարզել ընկերութիւններից մէկի տուեալները, վերջիններս հիմնում են նոր ընկերութիւններ» (Գրիշա Բալասանեան, «Վարչապետ Յովիկ Աբրահամեանի բիզնէսը սահմաններ չունի», *Հետք*, 20 Հոկտեմբեր 2014, http://hetq.am/arm/news/56953/varchapet-hovik-abrahamyani-biznesy-sahmanner-chuni.html): Յօդուածին մէջ, Բալասանեան մանրամասն փաստարկումներով կը նշէ Աբրահամեանի, իր տիկնոջ եւ ազգականներուն ունեցուածքները եւ եկամուտները, որոնք կը բացայայտուին ու կը հրապարակուին առաջին անգամ: Ցուցատախտակով մը կը համառօտագրէ նաեւ իր եւ տիկնոջ ամբողջական դրամական միջոցները եւ եկամուտները 2009-2013-ին: Օրինակ, 2013 թուականի Յովիկ Աբրահամեանի դրամական միջոցները եղած են 270.000.000 դրամ եւ 1.950.000 ամերիկեան տոլար, եկամուտը՝ 42.976.200 դրամ: Զուլիետա Աբրահամեանի (տիկնոջ) 2013-ի դրամական միջոցները եղած են 300.000.000 դրամ եւ 2.850.000 ամերիկեան տոլար, իսկ միայն գիւղմթերքէ ստացած եկամուտը՝ 45.000.000 դրամ:

Անկախութեան 25-ամեակի նախաշեմին բեւեռացում՝ «արտաքին» պատճառներով:

Զ.

ԽՈՀԵՐ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ ԱԶԱՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

1991 Սեպտեմբերին Հայաստան անկախացաւ: Անկախանալով, ան միաժամանակ իմացուց որ նախորդող շրջանը անկախ չէր: Անկախութիւն, ուրեմն նաեւ ազատութիւն:

Ընդհանրապէս, «անկախութիւն» եւ «ազատութիւն» բառերը (ազատ, անկախ Հայաստան) հանդէս կու գան իբրեւ հոմանիշներ: Մինչդեռ նոյն արմատը ունեցող երկու բառեր՝ «ազատութիւն» եւ «ազատագրութիւն», ըստ էութեան, հոմանիշներ չեն կրնար ըլլալ: «Ազատագրութիւն» բառով այստեղ նկատի չունիմ տարածքային ազատագրութիւնը, որ կը ներկայացնէ բառի իմաստներէն մէկը: Նկատի ունիմ մտաւոր-հոգեւոր ազատագրութիւնը: Այս վերջին իմաստով, ազատութիւնն ու ազատագրութիւնը տարբեր հասկացողութիւններ են:

Բոլորին ծանօթ է Ռընէ Տըքարթի խօսքը՝ «կը մտածեմ, ուրեմն ես կամ»: Կարելի է մեկնաբանել՝ որ «կը մտածեմ» կը նշանակէ ազատ եմ, իսկ «ես կամ»-ը ենթակայականացումն է այդ ազատութեան: Միասին կու տան մտաւոր ազատագրութեան մտատիպարը: Ազատագրութիւնը ենթակայական երեւոյթ մըն է, այն իմաստով՝ որ իւրաքանչիւր անհատ հասարակութեան մէջ եւ հասարակութիւնը իր բոլոր անհատներով *ինքն*ազօր եւ *ինքն*ահաս է իր սեփական ու համակեցական փորձառութիւններուն մէջ, կամ, ուրիշ բառերով՝ պատասխանատուութեան զգացումը միշտ վառ է մարդուս մէջ՝ եթէ մարդը մանաւանդ դրամատիրական առարկայականացումներու պատճառով չէ օտարացած իր միջավայրէն: Դրամատիրական-արդիականութեան շնորհած օտարացումները հիմք հանդիսացան որպէսզի այդ նոյն դրամատիրութիւն-արդիականութիւնը ստեղծէ իրաւական օրէնքներ՝ իրաւագէտներու եւ դատաւորներու ընտրեալ ընդարձակ ու ազդեցիկ դասակարգով հանդերձ, որոնք կ'որոշեն մարդու ազատութեան «սահմաններ»-ը:

Իրաւական օրէնքն է որ կը սահմանէ ազատութիւնը: Այդ օրէնքը, օրինակ, կ'արգիլէ մարդասպանութիւնը ու կը պատժէ մարդասպանը: Միաժամանակ, այդ նոյն օրէնքը անկարող է արգիլելու պետական մարդասպանութիւնները եւ մարդասպանական թատերաբեմը նախապատրաստող պետական քաղաքականութիւնները: Մոհամմէտ Ալի կրնար զանգուածային սպանութեամբ վերացնել Մեմլուքները, Ամերիկան կրնար բնաջնջել իր բնիկ ժողովուրդին (Native Americans) 90 տոկոսը, Ֆրանսան կրնար զինել Հութուներուն՝ ոչնչացնելու համար Թութցիները, Ամերիկան կրնար զաւթել Իրաք եւ զայն վերածել զանգուածային ոճրագործութեան բաց դաշտի, Իսրայէլ կրնայ գրեթէ ամէն օր սպաննել անզէն պաղեստինցի մը եւ պարբերաբար դժոխքի վերածել Կազան՝ մոռնալով որ ինք անձամբ եղած է ցեղասպանեալ ազգ մը:

Օրէնքը կ'արգիլէ պատերազմի ժամանակ գործադրուած ոճիրները, եւ արգիլելով զանոնք արտօնած կ'ըլլայ ԺԹ.-ԻԱ. դարերու ամենատարածուած ոճիրը՝ նոյն ինքը պատերազմը: Ան չ'արգիլեր պատերազմը, այսինքն՝ չ'արգիլեր մարդասպանութեան կարեւոր ձեւերէն մէկը, այլ կ'արգիլէ պատերազմական ոճիրը:

Օրէնքը, ինչպէս ըսի, կ'արգիլէ մարդասպանութիւնը: Ուրեմն, մարդ կարողական սպաննող մըն է, որ օրէնքի սարսափին առջեւ չի սպաններ: Եթէ միայն օրէնքին համար չի սպաններ, ինչպէ՞ս կարելի է գիտնալ տուեալ անձին կարողականութիւնը: Կը հետեւի ամենակարեւոր հարցը. մարդ արարածը ե՞րբ դարձած է սպանութեան կարողունակ: Պատասխան՝ երբոր դարձած է ազատ, առանց ըլլալու ազատագրուած: Ազատագրուած մարդը, կուսակցութիւնը կամ պետութիւնը բնազդօրէն չի կրնար սպաննել: Ազատագրուած մարդը օրէնքի պէտք չունի չսպաննելու համար: Ազատ մարդուն համար օրէնքը իրմէ դուրս տեղ մը գտնուի, ազատագրուած մարդուն համար օրէնքը կը բխի իր իսկ ներսէն:

Հասկնալի է, մարդասպանութիւնը ծայրագոյն օրինակ մըն է: Այս օրինակը կը տարածուի մարդկային գործունէութեան բոլոր ոլորտներուն վրայ եւ յատկապէս աչքառու կը դառնայ մշակութային բնագաւառներուն մէջ՝ արուեստ, արուեստաբանութիւն, գրականութիւն, գրականագիտութիւն, պատմագրութիւն, եւ այլն: Ազատ մարդը կը մտածէ իր եսին մասին՝ շահ, մրցակցութիւն, իշխանութիւն եւ սեփականացուած ինքնիշխանութիւն, ազատագրուած մարդը կը մտածէ համայնական ենթակայականութեան մասին՝ համատեղ բարիք, տիալեքթիքականութիւն եւ անիշխանականութիւն:

Պաղեստինցի մանկավարժ ու գրող Մունիր Ֆաշէ՝ Հարվըրտ Համալսարանի տոքթորականի ընթացաւարտ մը, որ շուտով հանդէս կու գայ իբրեւ աքատեմիզմի դիմադրող, ունի ազատագրումի (արաբերէն՝ «թահարրոր», ի հակադրութիւն ազատութեան՝ «հորրէեա») գեղեցիկ ձեւակերպում մը. «Միտքի եւ արտայայտութեան ազատագրութիւն կը նշանակէ սկսիլ կեանքով՝ իբրեւ մեր արտայայտութեան, մտածողութեան եւ գործողութեան մեկնակէտը, նիւթը, աղբիւրը, չափանիշը եւ նպատակը: Կը նշանակէ վերանայիլ հասկացողութիւնները, ըմբռնումները եւ բարքերը ըստ մեր ապրած շրջապատի յարաբերութիւններուն: Հետեւաբար խոկումը, արտայայտութիւնը, քննարկումը, մարդոց ներքին աշխարհի կերտումը եւ հասարակական ու բնական միջավայրի հետ հիւսուածքը գլխաւոր գործօններ կը հանդիսանան միտքն ու արտայայտութիւնը ազատագրելու գերիշխող քնաբեր գաղափարախօսութիւններէ եւ զանոնք վերամիաւորելու կեանքի, փորձառութեան, հմտութեան, միջավայրի եւ իրականութեան հետ՝ ինչպէս որ կ'ապրին ու կը զգան մարդիկ: Ասիկա մասնաւորապէս կը նշանակէ մտածել մեր օգտագործած բառերու իմաստներուն մասին՝ մարդոց եւ բնութեան հետ մեր փոխգործակցութեան լոյսի տակ, ինչպէս նաեւ մեր փորձառութեան, հմտութեան, քննարկումի եւ ընթերցանութեան լոյսի տակ, պայմանաւ որ համապատասխանէ մեզի համար ուղեծիր ընտրած բարքերուն եւ սկզբունքներուն: Միտքի եւ արտայայտութեան ազատագրութիւն կը նշանակէ ձերբազատուիլ սահմանումներու եւ նեղ, ճղճիմ ու աղաւաղուած ինքնութիւններու ստրկացնող մտաւոր շրջանակներէն: Կը նշանակէ վերականգնել ընթացիկ եզրոյթներուն իմաստներ տալու, ինչպէս նաեւ գերիշխող չափանիշներուն, վատնուած լուծումներուն եւ կաղապարներուն այլընտրանքներ գտնելու կարողութիւնը:»(1)

Հետեւաբար, ազատութիւնը եւ ստրկութիւնը հանդէս կու գան իբրեւ նոյն լումային երկու երեսները եւ կրնան դառնալ հոմանիշներ, քանի որ ազատութեամբ չէ որ կարելի է ձերբազատուիլ «ստրկացնող մտաւոր շրջանակներէն», այլ ազատագրութեամբ:

Այս բոլորի լոյսին տակ, արդե՞օք Հայաստանը 1991-էն առաջ ազատագրուած չէր եւ արդե՞օք ան ազատագրուեցաւ 1991 Սեպտեմբերէն ետք: Սեպտեմբեր 21-ին, մէկ հանրաքուէ մը (հանրաքուէն ապա սահմանադրութիւնը կը տանին դէպի իրաւական օրէնք) բաւարար էր ազատը (Սեպտեմբեր 21-էն ետք) անազատէն (Սեպտեմբեր 21-էն առաջ) զատորոշելու ու խստօրէն սահմանագծելու համար: Ի տարբերութիւն եւ ի հակադրութիւն ազատութեան, ազատագրութիւնը կարելի չէ ժամանակային եւ քանակական սահմաններով բաժնել:

Այս տեսանկիւնէն, բնաւ աւելորդ չէ արագ համեմատութիւն մը կատարել Խորհրդային Հայաստանի եւ անկախացած Հայաստանի Հանրապետութեան յատկապէս սկզբնական շրջաններուն միջեւ:

Խորհրդային Միութիւնը իր առաջին տարիներուն առաջ բերաւ ազատագրուած արուեստագէտ-մտաւորականութիւն մը՝ որուն արմատները կը գտնուէին նախախորհրդային շրջանի տարածուած ընկերվարական գաղափարներուն մէջ: Մշակոյթի այս գործիչները, աւելի քան իշխանութիւնը, խորապէս համոզուած էին նոր, հաւասար հասարակարգի մը ստեղծումի կարելիութեան: 1917-ին սկսան զանգուածային փառատօներ եւ ներկայացումներ կազմակերպել հասարակական տարածքներու վրայ, ներառնելով մասնակցող-հանդիսատեսներու լայն շերտեր: 1920-ի Մոսկուայի զանգուածային փառատօնին մասնակցած են 8.000 կատարողներ, իսկ շուրջ 100.000 հանդիսատեսներ միաժամանակ դարձած են մասնակցողներ, քանի որ կատարումի եւ հանդիսատեսութեան միջեւ չկային սահմաններ, իսկ տուեալ տարածութեան վրայ գտնուիլն ու շարժիլն ինքնին աշխոյժ մասնակցութիւն մըն էր:

Արսենի Աւրաամով խորհրդային քաղաքներու մէջ փառատօնային նուագահանդէսներով տօնակատարած է Հոկտեմբերեան Յեղափոխութեան առաջին տարելիցները՝ Նիժնի Նովկորոտ (1919), Ռոսթով (1921), Պաքու (1922) եւ Մոսկուա (1923), ուր կատարել տուած է *Շչակներու Համանուագ* (Symphony of Sirens) խորագիրով իր երաժշտական մտայղացումը: Պաքուի ներկայացումին, օրինակ, գործածած է հսկայ երգչախումբեր, մեծ նուագախումբ, նաւափողեր (foghorns), հրանօթներ, հետեւակային գունդեր, ջրօդանաւեր (hydroplanes), շոգիով լոքոմոթիւներ եւ սուլիչներ, քաղաքի բոլոր գործարաններուն սուլիչները, *Միջազգային*ի եղանակի ձայնանիշերուն համապատասխանող շչակներ (sirens) արտաբերող յատուկ սարքուած գործիք մը: Հանդիսատես չկար, հանդիսատեսը անձամբ կը մասնակցէր գործողութիւններուն:

Ինչպէս Ճէյմս վոն Կելտերն դիտել կու տայ, այս բոլոր մեծ նախաձեռնութիւններուն գործադրութիւնը եւ գեղարուեստական յղացումները կը պատկանէին արուեստագէտներուն եւ ոչ թէ քաղաքագէտներուն. «Փառատօներուն պատասխանատուութիւնը՝ իրենց ձեւին, բովանդակութեան եւ հանդիսատեսին ուղղուած պատգամով, կը պատկանէին աւելի արուեստագէտներուն եւ

4

ՁԱՂԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

«ՁԱՂԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատանք Թերթիս ազգօգուտ գործունէութեան, ՈՄՆ (ԱՄՆ) կը նուիրէ Ե.Ռ. 1250



## ՕԼԻԳԱՐԽԻԱՆ ԵՎ ՆԵՕԼԻԲԵՐԱԼԻԶՄԸ

Վրաստանում Սահակաշվիլին նրանց բանտարկեց եւ բաց Թողեց 300.000–1.000.000 դոլար փրկագնի դիմաց: Ուկրաինայում նարնջագոյն յեղափոխութիւնից յետոյ վերասեփականաշնորհուեցին մի քանի խոշոր ձեռնարկութիւն: Յայտնի է հայաստանեան «գունաւոր» յեղափոխութեան նկատմամբ մեր օլիգարխների ատելութիւնը:

Մեր օլիգարխներն իրենց իւրօրինակութիւնները ունեն: Հայկական օլիգարխները, ինչպէս ամերիկեանը, միայնակ են գործում, ի տարբերութիւն Ռուսաստանի, որտեղ յաճախ նախկին դասընկերները համագործակցում են. օրինակ, յայտնի Եուկոսում կային եօԹ միլիարդատէր: Հայկական օլիգարխները ռուսականներից տարբերւում են նաեւ նրանով, որ ունեն ցածր կրԹական եւ մշակութային մակարդակ:

Սեփականութեան իրաւունքի բացակայութիւնը քաղաքական կապերի շնորհիւ չահաւէտ է օլիգարխներին, բայց ցաւոտ կերպով հարուածում է մանր բիզնէսին, աղքատ խաւերին, որոնք գերշահագործման են ենԹարկւում: Այս առումով Հայաստանը համեմատելի է Լատինամերիկեան երկրների հետ:

Օլիգարխների ուժն այն է, որ քաղաքական համակարգը նրանց բազմաԹիւ ծառայութիւններ է մատուցում: Նրանք կարող են գնել որոշումներ նախագահից, նրա շրջապատի միջոցով, կարող են պառլամենտականներից գնել օրէնսդրական ակտեր, կարող են կաշառել կառավարութեան անդամներին, ծառայեցնել իրենց դատական համակարգը: Օլիգարխները ձգտում են վերահսկել մի որեւէ ազդեցիկ զանգուածային լրատուամիջոց, սովորաբար՝ հեռուստաալիք, եւ ազդել հասարակական կարծիքի վրայ: Օլիգարխիշխանութիւն յարաբերութիւններն այնպիսին են, որ կարելի է խօսել պետութեան զաւԹման մասին:

Օլիգարխները պարազիտային դասակարգ են, ի տարբերութիւն բուրժուազիայի, որն ապրում է կապիտալի բերած շահոյԹով, նրանք ապրում են ռեսուրսները իւրացնելու եւ ռենտայի շնորհիւ: Հայկական օլիգարխիան իր ռենտան ձեռք է բերել քոչարեանական կառավարման տարիներին, խոշոր օբիեկտների, հանքերի, անշարժ գոյքի սեփականաշնորհման շնորհիւ: Բայց եԹէ բոլոր խոշոր օբիեկտները սեփականաշնորհուած են, ապա հարկաւոր է գտնել ռենտայի նոր աղբիւրներ: Ամենահաւանականն այն է, որ մօտակայ ապագայում կ'աւելացուի ցածր խաւերի վրայ դրուած հարկային բեռը: Միւս կարեւոր աղբիւրը բնական ռեսուրսների շահագործումն է, բայց այնպիսինը, որ զերծ կը լինի բնապահպանական սահմանափակումներից:

Օլիգարխիան ձեւաւորուել է իրաւական քաոսի պայմաններում, սակայն դա կարեւորութեամբ միայն երկրորդ գործօնն է: Աւելի կարեւոր է կառավարութեան նէօլիբերալ քաղաքականութիւնը, որի էութիւնը, ըստ Ս. Եղիշեանցի, յանգում է հետեւեալ կէտերին.

– Ինվեստիցիաների ներգրաւուում ցանկացած գնով, նոյնիսկ, եԹէ դա արւում է սոցիալական եւ էկոլոգիական խնդիրների հաշուին:

– Սոցիալական ծրագրերի կրճատումը մինչեւ նուազագոյն փաԹեԹը. կրԹական, առողջապահական համակարգի անցումը համարեայ բացառապէս վճարովի սկզբունքին. առաջին անհրաժեշտութեան ապրանքների եւ ծառայութիւնների դոտացիայի (լրավճարման) վերացումը, սոցիալական համակարգի մասնաւորեցումը:

– Ազգային դրամական միաւորի կայունութեան ապահովումը ցանկացած գնով, այդ Թւում բիւջէտային կրճատումների հաշուին:

– Սահմանափակող դրամական քաղաքականութիւն:

– Սպառման սահմանափակում վալիւտային ռեզերվների մեծացման համար:

– Կապիտալների տեղաշարժի լիակատար ազատութիւն, այդ Թւում արտերկիր եւ ընդհակառակը:

– Մասնաւորեցում «բնական մենաշնորհների» բնագաւառում, ուր չկայ մրցակցութիւն:

– Հարկային «բազայի» ընդարձակում, ուղիղ հարկերի գերապատուութիւն անուղակիների նկատմամբ:

Դժուար չէ հասկանալ, Թէ ինչու նէօլիբերալ տնտեսագէտներն արդարացնում են օլիգարխիան, համարում, որ նրանց նկատմամբ բացասական վերաբերմունքը պոպուլիստական գաղափարախօսութեան արդիւնք է: Ըստ այդ տեսակէտի, օլիգարխները յաղԹել են մրցակցային պայքարում, ճիշտ է ոչ այնքան կոռեկտ, բայց առկայ իրավիճակին համարժէք եղանակով: Ըստ նրանց, տնտեսական փլուզման պայմաններում միայն օլիգարխները կարող էին աշխատեցնել խոշոր ձեռնարկութիւնները: Այն տալիս է մասշտաբի առաւելութիւն իրաւական պաշտպանութեան ցածր, կամ դրա իսպառ բացակայութեան պայմաններում: Միւս այլընտրանքը օտարերկրեայ ներդրումներն էին, բայց յետխորհրդային տարածքը չէր համարւում ներդրումների համար նպաստաւոր միջավայր: Այսպիսի փաստարկներ կարելի է հանդիպել նաեւ հայկական մամուլում:

Մի կէտում կարելի է նէօլիբերալների հետ համաձայնուել. օլիգարխների քննադատութիւնը Հայաստանում հիմնականում պոպուլիզմի դրսեւորում է: Նրանք զգուշացնում են, որ օլիգարխների սեփականութեան նկատմամբ ոտնձգութիւնը կարող է խարխլել սեփականութեան իրաւունքի նկատմամբ հաւատը, ինչը տնտեսական զարգացման վրայ բացասական ազդեցութիւն կարող է ունենալ:

Այս փաստարկները ունեն իրենց հակափաստարկները, որոնք բխում են տնտեսական ռացիոնալութիւնից: Գիտական աշխարհում դրանք լաւ յայտնի են: Այսինքն՝ հարկաւոր է տնտեսագիտական գիտելիք ունենալ, որպէսզի այդ համակարգի դէմ պայքարը արդիւնաւէտ լինի, չստեղծուի իրաւական քաոս: Բայց նկատեմ, որ բոլոր տնտեսագիտական ֆակուլտէտներում դասաւանդում են նէօլիբերալ հայեացքներն արտայայտող դասագրքերով եւ չեն ուսումնասիրւում այդ մօտեցման Թերի կողմերը, չգիտեն նրանց քննադատութիւնը: Սա տեղեկատուական շրջափակման մի ձեւ է, ինչը կարող է յանգեցնել հասարակութեան, քաղաքական գործիչների ապակողմնորոշմանը, իսկ վերջինների պոպուլիստական մօտեցումները խնդրին կարող են միայն վնասակար լինել:



## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ ԱԶԱՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԻՒՆ

բեմադրիչներուն քան քաղաքագէտ/հովանաւորներուն, որոնց միջամտութիւնը շատ քիչ էր: Բեմադրիչները պոլշեւիկեան ծրագիրը, գաղափարախօսութիւնը եւ պատմութիւնը կը մաղէին տարրերու՝ որոնք կրնան յարմարիլ փառատօնային աւանդոյԹին եւ պատշաճիլ Թատերական ներկայացումին: Անոնք կ'ընտրէին ինչ որ յարմար կը նկատէին յեղափոխական տօնախմբութեան համար, եւ այսպէս վարուելով՝ կը վերաձեւաւորէին Յեղափոխութիւնը: Ասիկա չի նշանակեր որ փառատօները ապաքաղաքական էին: Ընդհակառակը, ասիկա կը հաստատէ երկու արտաքին գործօններու էական ազդեցութիւնը՝ փառատօնային գեղագիտութիւնը եւ ռուսական գեղարուեստական աւանդոյԹը:»(2)

Արեւելահայութեան պարագային, այդ ժամանակ տակաւին գաւառային վիճակի մէջ գտնուող Հայաստանի մէջ զանգուածային տօնակատարութիւններ տեղի չէին կրնար ունենալ: Բայց վստահաբար Ռուսաստանի եւ Կովկասի փառատօներու հազարաւոր մասնակցողներուն մէջ հայեր գոյութիւն ունէին: Աւելի կարեւորը այն էր՝ որ նախախորհրդային եւ մանաւանդ խորհրդային շրջաններու իրադարձութիւնները վարակիչ շրջանառութիւն կ'ունենային շրջակայ տարածաշրջաններուն վրայ, ներառեալ Կովկասի: Իսկ բուն գաղափարային միջուկը՝ որ կը գտնուէր մտաւորականներու տնօրինութեան տակ, կը հանդիսանար վարէն դէպի վեր ընԹացող մշակոյԹի մը կերտումը եւ մշակոյԹէն դէպի քաղաքականութիւն ընԹացող շարժում մը:

Ռուսական եւ մերձակայ տարածքներուն վրայ նոյն մԹնոլորտն էր նաեւ գրականութեան մէջ: 1908-ին Ռուսաստանի մէջ Վելիմիր Խլեպնիքովի եւ Տաւիտ Պուրլուքի միջոցով սկսած էր ապագայապաշտութիւն (futurism) գրական շարժումը, որ համակեցաբար զարգացաւ ուրիշ աւանկարտիսԹական շարժումներու եւ -պաշտերու (-ism) հետ, ուժեղ դերակատարութիւն ունենալով նախայեղափոխական եւ յետյեղափոխական Ռուսաստանի մէջ, յաճախ նայելով դէպի վար՝ ժողովուրդն ու աշխատաւորութիւնը, եւ անոնցմէ վերցնելով իր ստեղծարար նկրտումները: Այս շարժումներուն հիմքը ընկերվարական յեղափոխութիւնն էր:

Նոյնպէս՝ երաժշտութիւնը, նկարչութիւնը, ճարտարապետութիւնը, եւ այլ բնագաւառներ:

Հայաստանի պարագային, գրականութիւնը, ճարտարապետութիւնը եւ այլ բնագաւառներ ունեցան իրենց ցայտուն աւանկարտիսԹական շարժումները: Գրականութեան մէջ Եղիշէ Չարենցի, Ազատ Վշտունիի եւ Գէորգ Աբովի յայտնի «Դեկլարացիա երեքի»-ն՝ հրապարակուած Խորհրդային Հայաստան լրագիրին մէջ 1922-ին, եւ ապա Չարենցի եւ իր համախոհներու 1924-ի *Ստանդարտ* հանդէսի միակ համարը, աւանկարտիսԹական-ապագայապաշտական ուղղութեան կարեւոր նմոյշներ էին, քիչ մը դժուար համատեղելի աւանդապաշտներով լեցուն հայ գրականութեան մէջ:

Ճարտարապետութեան մէջ յատկապէս աչքի կը զարնէին արդիապաշտ-կառուցողապաշտներ՝ Միքայէլ Մազմանեան, Գէորգ Քոչար, Յովհաննէս Մարգարեան, Կարօ Հալաբեան:

Բոլորն ալ իրենց աչքի առջեւ ունէին նոր հասարակարգի մը կառուցումը՝ համոզուած ժողովուրդէն բխած արդիապաշտ եւ գործնապաշտ արուեստի մը կարելիութեան:

Խորհրդային աւանկարտիսԹները կը բարձրաձայնէին ճիշդ նոյն գաղափարները՝ ինչ իշխանութիւնները կը քարոզէին եւ շարունակեցին քարոզել մինչեւ Խորհրդային Միութեան փլուզումը: Բայց անոնք իրենց աւանկարտիզմով շատ աւելի առաջ անցած էին իշխանութիւններէն: Խորհրդային իշխանութիւններուն մօտ ուժեղ ձգտում կը նկատուէր ընկերվարական-համայնավարական գաղափարները վերածել գաղափարախօսութեան, եւ այդ գաղափարախօսութեան ընդմէջէն իշխել ժողովուրդին վրայ, ինչպէս նաեւ քաղաքականութենէն անցնիլ դէպի մշակոյԹ: Աւանկարտիսթները խորապէս համոզուած էին ընկերվարական-համայնավարական գաղափարներով՝ առանց գաղափարախօսութեան, եւ կը ձգտէին մշակութականացնել այդ գաղափարները եւ զանոնք գործադրել կենդանի, աշխոյժ ու ազատագրուած մշակոյԹի միջոցով, այսինքն՝ մշակոյԹէն անցնիլ դէպի քաղաքականութիւն: Այս մտաւորականներն ու արուեստագէտները իրապէս համոզուած էին իրենց գաղափարներուն, որոնք համապատասխան էին իշխանութեան գաղափարներուն: Սակայն իշխանութիւններուն համար վտանգաւոր էին համոզուած ու ազատագրուած մտաւորականներ, որոնք ընդունակ ըլլային *իրենք* շարժել հասարակութիւնը: Իրենց պէտք էր Նաիրի Զարեանի նման անձեր՝ որոնք հրապարակաւ գովէին իշխանութիւնները, բանաստեղծութիւններ գրէին անոնց մասին՝ առանց ունենալու որեւէ գաղափարական խոր համոզում եւ առանց կարողանալու մօտ ըլլալ լայն հասարակութեան: Վտանգաւոր էին նաեւ զանգուածային հանդիսութիւնները՝ որոնք միշտ արԹուն ու շարժուն վիճակի մէջ պիտի պահէին հասարակութիւնը եւ աշխատաւորական դասակարգը: Ճնշուած դասակարգը պիտի ազատագրուէր, իսկ ազատագրուելով իրեն պիտի ենԹարկէր իշխանութիւնը:

Այս բոլորը կանխելու համար սԹալինեան վարչակարգը 1932-ին պաշտօնականացուց «Ընկերվարական իրապաշտութիւն» (Socialist realism) գաղափարախօսութիւնը՝ որուն ամբողջատիրական ճնշումին տակ կարելի եղաւ կասեցնել ամէն տեսակ հասարակական շարժում, հակառակ որ, ինչպէս ըսի, այդ շարժումները կը պնդէին ու կը կ'արմատաւորէին իշխանութեան քարոզած միեւնոյն ընկերվարութիւնը: Բռնաբարուեցաւ աւանկարտիզմը իր արուեստագէտ-մտաւորականութեան հետ միասին:

(Շար. 1/3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Մունիր Ֆաշէ, «Հորրէեաթ ալ-ֆէքր ուալ-Թաապիր ամմ Թահրիր ալ-ֆէքր ուալ-Թաապիր», *Ալ-ՄուլԹաքա Ալ-Թարպաուի Ալ-Արապի*, http://www.almoultaqa.com/news_view.aspx?NewsId=67:

2. James von Geldern, *Bolshevik Festivals, 1917-1920*, Berkeley, Los Angeles, London: University of California Press, 1993, p. 8:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly

P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1776 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٧٦ الخميس ٦ أكتوبر ٢٠١٦

## ՆՈՐԱՆՇԱՆԱԿ ՎԱՐՉԱՊԵՏԻ ՀԵՏ ԱՌՆՉՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԲԻԶՆԷՍՆԵՐԸ ԵՒ ՕՖՇՈՐԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ՔՐԻՍՏԻՆԷ ԱՂԱԼԱՐԵԱՆ

Մասնագիտութեամբ տնտեսագէտ Կարէն Կարապետեանը քաղաքական դաշտում առաջին անգամ յայտնուեց Երեւանի քաղաքապետի պաշտօնում՝ 2010-2011 թթ.: Մինչ այդ, ըստ նրա կենսագրութեանը, Կարէն Կարապետեանը եղել է՝ 1996-1998 թթ. «Հայէներգօ» ՊՁ (Պետական Ձեռնարկութիւն) գլխաւոր տնօրէնի տեղակալ, 1998-2001 թթ.՝ «Հայէներգօ» ՓԲԸ (Փակ Բաժնետիրական Ընկերութիւն) գլխաւոր տնօրէն, 2001-2010 թթ.՝ «ՀայՌուսգազարդ» ՓԲԸ վարչութեան նախագահ-գլխաւոր տնօրէն: Քաղաքապետի պաշտօնը թողնելուց յետոյ «Գազպրոմբանկ» ԲԲԸ (Բաց Բաժնետիրական Ընկերութիւն) առաջին փոխնախագահն էր, 2013 թուականից էլ՝ «Առէկսիմբանկ-Գազպրոմբանկի խմբի» խորհրդի անդամ:

Հայաստանում Կարէն Կարապետեանն իր անուամբ գրանցուած բիզնէս, կարծես թէ, չունի: Յովիկ Աբրահամեանի նման նա էլ է իր հարազատների անուններով ձեւակերպել իր բիզնէսները: Կարապետեանի ընտանեկան բիզնէսի «պաշտօնական ներկայացուցիչը» նրա աւագ որդին է՝ **Տիգրան Կարապետեանը**:

Տիգրան Կարապետեանը 50% բաժնեմաս ունի կանանց ներքնազգեստի **Women' secret խանութ-սրահի սեփականատէր «Էդ ընդ Թի Փարթնըրս» ՍՊԸ-ում** (Սահմանափակ Պատասխանատուութեամբ Ընկերութիւն): Բաժնետոմսերի մնացած կէսը Էդգար Խաչատրեանին է պատկանում, ով հանրայայտ «Դալմա Գարդէն Մոլի» տնօրէնն է: Էդգար Խաչատրեանը «ՀայՌուսգազարդ» ՓԲԸ Կոմերցիայի եւ արտաքին կապերի գծով գլխաւոր տնօրէնի նախկին տեղակալ Տիգրան Խաչատրեանի որդին է:

Կարապետեանները բիզնէս գործընկեր են ռուսաստանցի գործարար, «Տաշիր» խմբի սեփականատէր Սամուէլ Կարապետեանի հետ:

«Դալմա ինվեստ» ՍՊԸ-ում Տիգրան Կարապետեանը 1% բաժնեմաս ունի, իսկ 99% բաժնետոմսերը Բրիտանական Վիրջինեան Կղզիներում գրանցուած օֆշորային «Հոլթ Հոլդինգ ընդ. փայնենս» ընկերութեանն է:

Լայնածաւալ ներդրումային ծրագրեր իրականացնելու համաձայնագիրը «Տաշիր» գրուպ ընկերութեան նախագահ Սամուէլ Կարապետեանի հետ կնքուել է 2011 թ. Մարտի 1-ին: Մասնաւորապէս, դրա շրջանակներում ենթադրւում էր Դալմայի այգիների տարածքում աւարտին հասցնել «Դալմա Գարդէն Մոլ» առեւտրի ու ժամանցային համալիրի շինարարութիւնը: Համաձայնագիրը ստորագրել է անձամբ ինքը՝ քաղաքապետ Կարէն Կարապետեանը:

Կարէն Կարապետեանի որդու անունը երեւում է նաեւ **«Էրեբունի պլազա» ՍՊԸ**-ում: Այնտեղ, ճիշտ է, չնչին բաժնեմաս ունի, բայց բացառուած չէ, որ օֆշորային խոշոր բաժնետէր ընկերութիւնը՝ ԲՎԿ-ում (Բրիտանական Վիրջինեան Կղզիներ) գրանցուած «Քլիֆֆ Թրէյդ էնդ ինվ. Ինկ»-ը եւս Կարապետեանների ընտանիքինն է: Դա պարզել մեզ դեռեւս չյաջողուեց:

Կարէն Կարապետեանի անուան հետ մշտապէս կապուող, Հրազդանի կիրճում գործող **«Ֆլորենս» ռեստորանը** նոյնպէս որդու անուամբ է: «Գոլդ Ռեստ» ՍՊԸ-ում, որն աշխատեցնում է ռեստորանը, Տիգրան Կարապետեանը 65% բաժնեմաս ունի: 35%-ի բաժնետէրն էլ 26-ամեայ Լիլիթ Նիկոլայի Գաբրիէլեանն է:

Կարապետեանների «Ֆլորենս» ռեստորանն իր «քոյրն» ունի նաեւ Արցախում: Ստեփանակերտի կենտրոնական հրապարակում գործում է եւս մէկ «Ֆլորենս» ռեստորան:

Գովազդային գործակալութիւն «Բի Բի մեդիա»-ի յետեւում եւս Կարէն Կարապետեանի որդին է: **«Կատանա» ՍՊԸ**-ն, որտեղ վերջինս 50 տոկոս բաժնեմաս ունի, այդ գործակալութեան հիմնադիրն է՝ «Բազ ընդ Բադ» ՍՊԸ-ի միջոցով: Այս ընկերութեանը *Հետք*ն արդէն մէկ դրուագով անդրադարձել է: Տիգրան Կարապետեանի գործընկերն այստեղ ՍԴ (Սահմանադրական Դատարան) նախագահ Գագիկ Յարութիւնեանի եղբայր, ՀՀ ԱԱԾ (Հայաստանի Հանրապետութեան Ազգային Անվտանգութեան Ծառայութիւն) պետի տեղակալ Արզուման Յարութիւնեանի որդին՝ Հայկ Յարութիւնեանն է: Այժմ Հայկ Յարութիւնեանը էներգետիկայի նախարարի տեղակալ է: Յիշեցնենք, որ Կարէն Կարապետեանի դուստրն ամուսնացել է Հայկ Յարութիւնեանի հետ:

Գազի սպասարկում իրականացնող **«Էյ-Ի-Ջի-ՍԵՐՎԻՍ» ՍՊԸ**-ն եւս կապւում են Կարէն Կարապետեանի անուան հետ, որովհետեւ ընկերութեան հիմնադիր եւ բաժնետէր եղել է Կարէն Կարապետեանի եղբայրը՝ Վլադիմիր Կարապետեանը: Սակայն 2009-ին Վլադիմիր Կարապետեանը դուրս է եկել ընկերութիւնից: Այժմ «Էյ-Ի-Ջի-ՍԵՐՎԻՍ» ՍՊԸ-ում բաժնեմաս ունեն Արթուր եւ Լուսինէ Սուրէնեանները՝ 16 եւ 14 տոկոս բաժնեմասերով: Վերջիններս «ՀայՌուսգազարդ» ՓԲԸ իրացման գծով նախկին փոխտնօրէն Ռուբէն Սուրէնեանի զաւակներն են: Այս ընկերութեան ամենամեծ բաժնետէրը (42%) Արսէն Յարութիւնեանն է: Նա նոյն, ինչպէս նաեւ Կարապետեանի «Ֆլորենս» ռեստորանը կառավարող ընկերութեան՝ «Գոլդ Ռեստ» ՍՊԸ-ի գլխաւոր տնօրէնն է:

26% բաժնեմաս ունի նաեւ քաղաքացի Արթուր Գելեզարովը, եւս 2%՝ Սօնա Պիծակեանը: Վերջինս, ըստ ամենայնի, Արսէն Յարութիւնեանի կինն է, քանի որ գրանցուած են նոյն հասցէում:

**«Սփար բերիի» ՍՊԸ**-ն ամբողջութեամբ Կարապետեան կրտսերի տիրապետութեան տակ է: Ընկերութիւնը վարսաւիրանոցների եւ գեղեցկութեան սրահների ծառայութիւններ է մատուցում:

Կարապետեանների տան հասցէում է գրանցուած «Կրբեդանց» ՓԲԸ-ն, որը ժամացոյցների եւ ոսկերչական արտադրատեսակների մանրածախ առեւտրի մասնագիտացուած խանութ է: Այն մասն է Շուեյցարիայում գրանցուած եւ տարբեր երկրներում ներկայացուցչութիւններ ունեցող Kerbedanz բրենդի, որը զբաղւում է նաեւ ժամացոյցների արտադրութեամբ: Տիգրան Կարապետեանն այստեղ նաեւ տնօրէն է: Ընկերութեան անուանումը վերցուած է Կարապետեանների ազգանուան՝ ղարաբաղեան արտասանութեան տարբերակից (Կարապետանց, այսինքն՝ Կարապետի ժառանգները): **«Կրբեդանց» ՓԲԸ**-ն յայտնուել է ՊԵԿ-ի (Պետական Եկամուտների Կոմիտէ) պարտադիր աուդիտ չանցած խոշոր ընկերութիւնների ցանկում:

**«Արտսոլէի» ՍՊԸ**-ում Տիգրան Կարապետեանը հաւասարապէս կիսում է բաժնեմասը Արմէն Մկրտչեանի հետ: Ընկերութիւնը գազալցման կայաններում աւտոմեքենաների համար հեղուկ գազի եւ գազօլինի մանրածախ առեւտրով է զբաղւում:

Եւս երեք ընկերութիւն էլ Տիգրան Կարապետեանը գրանցել է վերջին տարիներին՝ **«Աղջառա 1»**, **«Աղջառա 2»** եւ **«Աղջառա 3»** ՍՊԸ անուններով: ՊԵԿ-ից տեղեկանում ենք, որ «Աղջառա 1»-ը զբաղւում է համակարգիչների, ծայրամասային սարքուածքների եւ ծրագրային ապահովման մեծածախ առեւտրով:

Սակայն ՊԵԿ-ը միւս երկուսի գործունէութիւնը չի դասակարգել՝ ներառելով «այլ ծառայութիւնների մատուցում, չներառուած ուրիշ խմբաւորումներում» կատեգորիայում: Տեղեկութիւններ այդ ընկերու-

↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԳԱՀԻՐԷԻ ՓՈՐՁԱՌԱԿԱՆ ԹԱՏՐՈՆԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ

Սեպտեմբեր 20-30-ին տեղի ունեցաւ ԻԳ. Գահիրէի Ժամանակակից եւ Փորձառական Թատրոնի Փառատօնը, հովանաւորութեամբ Եգիպտոսի Մշակոյթի Նախարարութեան եւ նախագահութեամբ թատերագիր Տոքթ. Սամէհ Մահրանի:



*20 Սեպտեմբեր, Օփերայի Մեծ Սրահ: Թուրանգ Եղիազարեան կը պագեւատրուի, ձախին՝ փառատօնի նախագահ Սամէհ Մահրան, մէջտեղը՝ Եգիպտոսի Մշակոյթի Նախարար Հէլմի Ալ-Նամնամ:*

Բացումի պաշտօնական արարողութիւնը կատարուեցաւ Սեպտեմբեր 20-ին, Գահիրէի Օփերայի Մեծ Սրահին մէջ, ուր պարգեւատրուեցան զանազան երկիրներէ ժամանած վեց արուեստագէտներ: Անոնցմէ մէկն էր Իրան ծնած եւ ԱՄՆ հաստատուած հայ գրող, բեմադրիչ եւ դերասանուհի Թուրանգ Եղիազարեան: Ան կը պարգեւատրուէր արաբական եւ միջին արեւելեան թատրոնին մէջ իր ունեցած երկարատեւ ներդրումին համար: Վերջին անգամ Եգիպտոս եկած էր 2004-ին, ներկայացնելու Եուսէֆ էլ-Կէնտիի *Քարիմայի քաղաքը* թատրերգութիւնը, բեմադրութեամբ Արլէն Հուտի:

1966-ին Սան Ֆրանսիսքոյի մէջ Եղիազարեան հիմնադրած է Ոսկեայ Թել Արտադրութիւն (Golden Thread Production) թատերախումբը, որուն գեղարուեստական ղեկավարն է մինչեւ այսօր: Ոսկեայ Թելը կը խթանէ թատրոնը իբրեւ մշակութային փոխանակումի հարթակ, բացայայտելով միջին արեւելեան մշակոյթը եւ ինքնութիւնը: Իր պաշտօնական կայքին մէջ Ոսկեայ Թելը կու տայ համապարփակ ինքնաբացատրութիւն մը (անգլերէնէ հայերէն թարգմանութիւնը մերն է, Ջ.). «Մենք կ'արտադրենք Միջին Արեւելքի գրողներու եւ Միջին Արեւելքի մասին կրքոտ ու

↳ 2

## ԾԻԾԵՌՆԱԿԸ ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԿԱՅՔԷՋԻՆ ՄԷՋ

Մեր յարգարժան ընթերցողներուն ուրախութեամբ կը տեղեկացնենք՝ որ *Ծիծեռնակի* (*Ջահակիր* շաբաթաթերթի եռամսեայ երաժշտական յաւելուած) թուայնացած ամբողջական համարները (2001-2008) ազատ ներբեռնումի համար տեղադրուած են Հայաստանի Ազգային Գրադարանի մամուլի կայքէջին մէջ՝
http://tert.nla.am/mamul/Cicernak2001/Table.html:

# ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆԻ ՁԵՌԱԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ

## ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ԱՐՈՒԵՍՏԸ ԵՒ ՀԱՅՔ

Հայաստանի մէջ կը գտնուի այս արժէքաւոր աշխատութեան երկու ձեռագիր՝ Մաշտոցի անուան Մատենադարանին եւ Չարենցի անուան Գրականութեան եւ Արուեստի Թանգարանին մէջ:

Նախքան անոնց մասին անդրադառնալը, կարեւոր է լրացնել Պասմաճեանի մօտ պահուող գաւառային տպարաններու նամակներուն մասին առկայ տեղեկութիւնները:

Ինչպէս նշուեցաւ, *Անտիպ նիւթեր հայկ. տպագրութեան պատմութեան վերաբերեալ* գրքոյկին մէջ Պասմաճեան կ'օգտագործէ ու կը հրատարակէ Ամասիայէն, Մարզուանէն եւ Սեբաստիայէն Ալպօյաճեանին հասցէագրուած երեք նամակներ:

Նոյն գրքոյկի «Երկու խօսք»-ին մէջ Պասմաճեան կ'աւելցնէ. «Մեզ մօտ կը մնան տակաւին Եւդոկիայէն, Պրուսայէն, Այնթապէն, Գոնիայէն, Սամսոնէն, Տրապիզոնէն եւ Տարսոնէն գրուած նամակներ, որոնք, մօտիկ ապագային ու պատեհ առիթի մը նոյնպէս հրատարակութեան պիտի տանք:»(24) Այս եօթը նամակները երբեք չհրատարակուեցան:

Արդեօք անոնց ձեռագիրները կը գտնուի՞ն Պասմաճեան-Յակոբեանի հաւաքածոյին մէջ: Իր կազմած վերոյիշեալ ցանկի «Նամականի» գլուխին տակ, Տիգրան Գէորգեան կը նշէ զանազան նամակներ եւ նամականներու հաւաքածոներ: Ութերորդ (եւ վերջին) նամակներու խումբին մասին կը գրէ. «Գրիգոր Պասմաճեան իր վերոյիշեալ աշխատութեան «Երկու խօսք»-ին մէջ կը խոստովանէր նաեւ՝ թէ «մեզ մօտ կը մնան տակաւին Եւդոկիայէն,... նոյնպէս հրատարակութեան պիտի տանք»:»(25) Գէորգեան ի՞նչ ըսել կ'ուզէ «կը խոստովանէր նաեւ» արտայայտութեամբ: Կը թուի, թէ Գէորգեան գործածելով «նաեւ» շաղկապը, ինչպէս նաեւ յիշատակելով *միայն* Պասմաճեանի տեղեկութիւնը՝ առանց ականատեսի իր վաւերագրութիւնը արձանագրելու, կ'ուզէ ցոյց տալ՝ որ անոնք կը բացակային հաւաքածոյէն:

### Ա. ՄԱՇՏՈՑԻ ԱՆՈՒԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ՁԵՌԱԳԻՐԸ

1965-ին Գահիրէէն Մաշտոցի անուան Մատենադարան ուղարկուած կարեւոր ձեռագիրներէն մէկն էր *Տպագրութեան արուեստը եւ Հայք* աշխատութիւնը:

1977-ին Մ. Բաբլոյեան կը նկարագրէ այս ձեռագիրը.

«Այն գրուած է Ալպօյաճեանի ձեռքով, բաղկացած է 878 թերթից, բաժանուած Ա-ԻԱ թուագրուած գլուխների: Այդ գլուխներից չկան Ժ-ն («Պոլսի տպարանների պատմութիւնը»), որ բարեբախտաբար պահպանուել է Գրականութեան եւ արուեստի թանգարանում պահուող ձեռագրում (աւելի քան 200 էջ), ԺԲ-ն, որ ամենայն հաւանականութեամբ պէտք է նուիրուած լինէր Թուրքիոյի հայաբնակ գաւառների տպարանների պատմութեանը (Պոլսի եւ Զմիւռնիայի հայ տպարանների պատմութեանը նուիրուած Ժ ու ԺԱ պատրաստի գլուխներից յետոյ) եւ ԺԸ ու ԺԹ գլուխները, որոնք ըստ երեւոյթին ծրագրուել, բայց չեն գրուել:

«Ալպօյաճեան իր այս ուսումնասիրութիւնը պատրաստել է 1912 թ. (առնուազն առաջին մասը), հայ գրերի գիւտի 1500-ամեակի եւ տպագրութեան 400-ամեայ յոբելեանի կապակցութեամբ:»(26)

Ուրեմն, Գահիրէի մէջ ձեռագիրէն անջատուած է Ժ. գլուխը՝ յատկացուած Պոլսոյ տպարաններուն: Հաւանաբար աւելորդ ըլլայ խորանալ այս խնդիրին շուրջ, քանի որ ձեռագիրին կրկնօրինակը կը գտնուի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տարբերակին մէջ: Բայց ցաւալին Թուրքիոյ հայաբնակ գաւառներուն նուիրուած ԺԲ. գլուխն է, որուն կրկնօրինակը չի գտնուիր Թանգարանին մէջ, քանի որ անոր վրայ Ալպօյաճեան սկսած է աշխատիլ Թանգարանի ձեռագիրի աւարտէն ետք (աւելի մանրամասն տե՛ս ստորեւ):

Բաբլոյեան յստակօրէն կը բացատրէ՝ որ ԺԲ. գլուխը պէտք է կազմէր Գրիգոր Պասմաճեանի տպագրած երեք (Ամասիա, Մարզուան եւ Սեբաստիա) եւ անտիպ թողած եօթը (Եւդոկիա, Պրուսա, Այնթապ, Գոնիա, Սամսոն, Տրապիզոն եւ Տարսոն) նամակները(27):

2013-ին, Վարդի Քէշիշեանի խմբագրութեամբ Երեւանի Նաիրի Հրատարակչատունը լոյս կ'ընծայէ Ալպօյաճեանի *Տպագրութեան արուեստը եւ Հայք* ծաւալուն աշխատութիւնը (432 էջ)՝ ըստ Մատենադարանի ձեռագիրին, առանց ոչ մէկ համալրումի Թանգարանի ձեռագիրէն կամ որեւէ այլ տպագիր թէ ձեռագիր նիւթերէ(28): Հրատարակութիւնը նախաբան չունի եւ, բացի Մատենադարանի ձեռագիրին վերագրուող կարճ յղումէ մը, ձեռագրական տեղեկութիւններ չի հաղորդեր: Հատորին մէջ հրատարակչութիւնը մոռցած է նաեւ բովանդակութեան (նիւթերու ցանկ) կազմութիւնը:

Ահաւասիկ անոր բովանդակութիւնը.

Առաջաբան (էջ 3-6)

Մուտք (էջ 7-12)

Ա. Տպագրութեան գիւտը եւ անոր տարածումը (էջ 12-22)

Բ. Սկիզբը հայ տպագրութեան (էջ 23-30)

Գ. Աբգար Դպիր (էջ 30-36)

Դ. Արեւելքի առաջին տպարանը (էջ 37-47)

Ե. Տպարանը գործիք կաթոլիկ քարոզչութեան (էջ 47-74)

Զ. Հայագիտական ձեռնարկներ (էջ 74-87)

Է. Հռոմի քարոզչութիւնը եւ անոր ազդեցութիւնը (էջ 87-124)

Ը. Ոսկան Երեւանցի եւ իր յաջորդները Ամստերդամի, Լիվոռնոյի եւ Մարսիլիոյ մէջ (էջ 125-182)

Թ. Հայ տպարաններ եւրոպական կաթոլիկ երկիրներու մէջ կրօնական հակակշռի տակ (էջ 182-404)

ԺԱ. Զմիւռնիոյ տպարանները (էջ 404-431)

Բովանդակութիւնը լիովին կը համապատասխանէ Բաբլոյեանի նկարագրութեան, ուր կը բացակային Ժ. գլուխը եւ գաւառներուն յատկացուած ԺԲ. գլուխը:

### Բ. ՉԱՐԵՆՑԻ ԱՆՈՒԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ ԹԱՆԳԱՐԱՆԻ ՁԵՌԱԳԻՐԸ

Այս ձեռագիրը Հայաստան հասած է բոլորովին այլ ճանապարհով: Դարձեալ Մ. Բաբլոյեան կու տայ անոր մանրամասն պատմականը.

«Ինչ վերաբերում է Ալպօյաճեանի ուսումնասիրութեան երկրորդ՝ Գրականութեան եւ արուեստի թանգարանում պահուող օրինակին, ապա դա ունի իր ուշագրաւ պատմութիւնը: Ժամանակին (1912 թ.) հեղինակն այն ուղարկել է Թիֆլիս, *Արօրի* խմբագրութեանը, ըստ երեւոյթին վերջինիս պատուէրով: Սակայն աշխատութեան տպագրութիւնը *Արօր*ում չի իրականացուել: ԳԱԹ-ում պահպանուել է *Արօրի* խմբագիր համբ. Առաքելեանի մի գրութիւնը, կցուած Ա. Ալպօյաճեանի աշխատութեանը, որտեղ ասուած է. «Համազգային մեծ յոբելեանի, այն է՝ հայկական գրերի գիւտի 1500-ամեակի եւ հայկական տպագրութեան 400-ամեակի միացեալ յոբելեանի առիթով, *Արօրի* խմբագրութիւնը որոշել էր այս 1913 թ. ընթացքում տալ մի շարք ուսումնասիրութիւններ պատմական այդ մեծ ակտերի մասին: Սակայն մի քանի ձախորդ հանգամանքներ ստիպեցին մեզ այս տարի չհրատարակել *Արօրը* իբրեւ ամսեայ հանդէս: Այնուամենայնիւ մենք որոշեցինք լոյս ընծայել այս տարի *Արօրի* երկու գիրք. Ա եւ Բ, առաջինը նուիրուած համազգային մեծ յոբելեանին, երկրորդը՝ նուիրուած հայկական հարցին, կազմուած սակայն այնպէս, որ ամէն մի գիրք պարունակէ իր նիւթի ամբողջական կամ լիակատար պատմութիւնը, որքան հնարաւոր է: Եւ գտնելով, որ պ. Արշակ Ալպօյաճեանի աշխատութիւնը *Տպագրութեան արուեստը եւ Հայք* վերնագրով հանդիսանում է հայկական տպագրութեան ➪ 6

ԳԱՀԻՐԷ

## ԹԱՒՖԻՔ ՏԱՃԱՆԻԻ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐՈՒ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ





Սեպտեմբեր 26-29-ին, Հայաստանի անկախութեան 25-րդ տարելիցին առիթով, Գահիրէի Միջազգային Մշակութային Համագործակցութեան Եգիպտական Կեդրոնին մէջ (Շակարէթ էլ-Տոր փողոց, Զամալէք) տեղի ունեցաւ եգիպտացի լուսանկարիչ Թաուֆիք Տաճանիի *Հայաստան-Եգիպտոս՝ գունաւոր զուգահեռներ* խորագիրով լուսանկարներու ցուցահանդէսը, հովանաւորութեամբ Եգիպտոսի մշակոյթի նախարարի առաջին տեղակալ Տոքթ. Այման Ապտէլ Հատիի: Ցուցահանդէսը նախաձեռնած էր Եգիպտոսի Հայաստանի Դեսպանութիւնը:

Թաուֆիք Տաճանի այցելած է Հայաստան եւ այնտեղ լուսանկարած զանազան վայրեր, յուշարձաններ, կառոյցներ, դիտարժան իրեր ու առարկաներ եւ ներքին ու արտաքին բնորոշ տեսարաններ՝ բոլորն ալ մեկնաբանելով իր անձնական դիտողական հայեցակարգին ընդմէջէն: Հայկական լուսանկարներու շարքը կարելի է դիտել ու գնել իր անձնական կայքէջէն՝ http://www.tawfikdajani.com:

Նշենք նաեւ, որ Գահիրէի ՀԲԸՄ-ի 2016 թուականի պատի օրացոյցը կը բովանդակէ Տաճանիի 12 հայկական լուսանկարներ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԳԱՀԻՐԷԻ ՓՈՐՁԱՌԱԿԱՆ ԹԱՏՐՈՆԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ

1 ➪

գրգռիչ թատրոններ, որոնք կը հռչակեն Միջին Արեւելքի հեռանկարներուն եւ ինքնութիւններուն բազմազանութիւնը: Իրենց ասպարէզի զանազան փուլերուն մէջ գտնուող արուեստագէտներու համար կը հանդիսանանք զարգացողական խթանիչ (catalyst) եւ հնչուն գեղարուեստական բնակավայր մը: Մենք Միջին Արեւելքը կը բերենք դէպի ամերիկեան թատերաբեմ, ամէն տարիքի եւ ծագումի ունկնդիրներու համար ստեղծելով հարուստ մշակութային փորձառութիւններ: Մենք համոզուած ենք՝ որ ուրիշին կարծիքը գնահատելու լաւագոյն միջոցն է ինքզինքդ ներքաշել ուրիշի փորձառութեան մէջ: Հետեւաբար, իւրաքանչիւր ներկայացում կը ծառայէ իբրեւ հրաւէր մը բացայայտելու անսպասելի յարաբերութիւններ, ինչպէս նաեւ ներգրաւուելու խորապէս գրաւիչ զրոյցներու մէջ՝ որոնք կը շարունակուին ներկայացումի կեանքէն բաւական անդին:»

Փառատօնի շրջանակներուն մէջ տեղի կ'ունենան վեց աշխատաժողովներ (workshops):

Սեպտեմբեր 24-ին կը կայանայ Եղիազարեանի աշխատաժողովը՝ յատկացուած թատերական բեմադրութեան: Կը քննարկուի ամերիկացի-եգիպտացի գրող Եուսէֆ էլ-Կէնտիի *Մեր թշնամիները... սիրոյ եւ սպանութեան կենդանի տեսարաններու* բնագիրը, որ կ'արծարծէ անցեալ քսան տարիներուն Միացեալ Նահանգներ ապրող ամերիկացի արաբ քաղաքացիին դիմագրաւած խնդիրները:

Փառատօնի ընթացքին տեղի կ'ունենան շուրջ 30 ներկայացումներ Գահիրէի եւ Կիզայի 10 թատերասրահներու մէջ: Սեպտեմբեր 28-ին, Ալ-Հանակէր Թատրոնին մէջ ելոյթ կ'ունենայ Երեւանի Քաղաքապետարանի Պատանի Հանդիսատեսի Թատրոնը, ներկայացնելով 70 վայրկեան տեւողութեամբ *Մերսեդէս* թատերախաղը, բեմադրիչ՝ Յակոբ Ղազանչեան, հեղինակ՝ Անուշ Ասլիբէկեան-Արծրունի, երաժշտութիւն՝ Վահան Արծրունի, բեմանկարիչ՝ Անտոն Քէշիշեան: Նիւթի կորիզը կը կազմէր հայոց ցեղասպանութիւնը:



28 Սեպտեմբեր, Ալ-Հանակէր: *Մերսեդէս*ի բեմադրութիւնը:

Փառատօնի ծիրէն դուրս, Հայաստանի Դեսպանատան միջնորդութեամբ եւ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի կազմակերպութեամբ, Յուսաբեր Մշակութային Ընկերակցութեան Գարագաշեան Սրահին մէջ, Հոկտեմբեր 1-ին, եգիպտահայ հանդիսատեսին համար Պատանի Հանդիսատեսի Թատրոնը կը կրկնէ իր ներկայացումը:



28 Սեպտեմբեր, Ալ-Հանակէր: *Մերսեդէս*ի բեմադրութիւնը:

## ՄԱՄՈՒԼԻ ՅԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ ԳԱՅԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ԱՐԱՔՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԵՐԿՐՈՐԴ ԱՆԳԱՄ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ԻՄ ՅԱՅԱՍՏԱՆ ՅԱՄԱՅԱՅԿԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆԻՆ

Հայաստանի Հանրապետութեան նախագահի բարձր հովանաւորութեամբ ՀՀ Սփիւռքի Նախարարութիւնը երրորդ անգամ ըլլալով կը կազմակերպէ Իմ Հայաստան համահայկական փառատօնը: Այս տարուան փառատօնը նուիրուած է Հայաստանի անկախութեան 25-ամեակին: Փառատօնի գերագոյն նպատակը հայրենի եւ սփիւռքի արուեստագէտ անհատներուն ու կատարողական խումբերուն համախմբումն է եւ հայարուեստի իրական տօնախմբութեան կազմակերպումը:

Գահիրէի Պատուարժան Քաղաքական ժողովի յատուկ որոշումով եւ Եգիպտոսի Թեմի Առաջնորդ Գերաշնորհ Տ. Աշոտ Ս. Եպիսկոպոս Մնացականեանի հովանաւորութեամբ, սոյն փառատօնի *Երգչախմբային Արուեստի Օրերուն* երկրորդ անգամ ըլլալով իր մասնակցութիւնը բերաւ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի Արաքս երգչախումբը՝ Միհրան Ղազէլեանի ղեկավարութեամբ (առաջին մասնակցութիւնը 2012-ին էր):

*Երգչախմբային Արուեստի Օրերուն,* որ տեղի ունեցաւ Օգոստոսի 5-10-ը, Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան երգչախումբերէն բացի փառատօնի մասնակից երկիրներու աշխարհագրութիւնը ներառած էր սփիւռքի հետեւեալ երկիրները. Վրաստան, Ռուսաստան, Իրան, Էստոնիա, Սուրիա, Լիբանան, Եգիպտոս:

Փառատօնի ձեւաչափը ոչ մրցութային էր: Ան կը նախատեսէր երգչախումբերէն իւրաքանչիւրին համար 10-15 վայրկեան տեւողութեամբ մասնակցութիւն՝ ամէն մէկ ելոյթին: Փառատօնի երգչախմբային օրերուն տեղի ունեցան չորս տարբեր երեկոյթներ, որոնց ընթացքին Արաքս երգչախումբի կողմէ կատարուեցան տասներեք երգ առանձին եւ մէկ երգ՝ բոլոր երգչախումբերուն հետ միասնական կատարումով:

Մասնակից երգչախումբերուն հետ աշխատանքային առաջին հանդիպումը 4 Օգոստոսին էր, ուր ՀՀ Սփիւռքի նախարարի տեղակալ Սերժ Սրապիոնեան եւ փառատօնի *Երգչախմբային Արուեստի Օրերու* գեղարուեստական ղեկավար Էդուարդ Եսայեանց ընդունեցին խմբավարները:



Յաջորդ օրը, տեղի ունեցաւ բացման հանդիսաւոր համերգը Հայֆիլհարմոնիայի Արամ Խաչատրեան մեծ համերգասրահին մէջ համերգավարութեամբ՝ սիրուած հաղորդավար եւ ասմունքող Սարգիս Նաճարեանի: ՀՀ Սփիւռքի նախարար Հրանուշ Յակոբեանի անունէն ողջունելով փառատօնի մասնակիցներուն՝ Նախարարի տեղակալ Սերժ Սրապիոնեան նշեց. «Շնորհակալ ենք, որ ընդունեցիք մեր հրաւէրը եւ այսօր մասնակցում էք փառատօնին: Համայնքներում կատարած ձեր հայապահպան գործունէութիւնը արժանի է ամենամեծ դրուատանքին: Երգը ժողովրդի սրտի խօսքն է: Մեր երգը ներկայացնելով օտար երկրներում դուք ոչ միայն նպաստում էք մատաղ սերնդի հայեցի դաստիարակութեանը, այլ հայ երգը դուրս էք բերում միջազգային հարթակներ, բեմեր: Իսկ հայրենիքում ձեր ելոյթները խրովի հաշուետուութիւններ են՝ կատարած եւ կատարուող աշխատանքի մասին»:

Հանդիսաւոր բացումին հետեւեցան մասնակից երգչախումբերու յաջորդական ելոյթները: Արաքս երգչախումբը ներկայացաւ Խաչատուր Աւետիսեանի *Հայոց հովիկի* եւ *Կենաց երգի* խուրօրինակ կատարումներով (երգչախմբային փոխադրումները Միհրան Ղազէլեանի), որոնք ընդունուեցան մեծ խանդավառութեամբ: Համերգի աւարտին ելոյթ ունեցաւ արդէն աւելի քան կէս դար խմբերգային արուեստի չափանիշ հանդիսացող Հայաստանի պետական ակադեմիական երգչախումբը՝ ղեկավարութեամբ ԽՍՀՄ եւ Հայաստանի ժողովրդական արթիստ Յովհաննէս Չէքիճեանի: Ապա, եզրափակիչ երգին, բոլոր մասնակից երգչախումբերը (աւելի քան 350 հոգի) միանալով Հայաստանի թիւ մէկ երգչախումբին, կատարեցին *Հայրենիքիս հետ* երգը (խօսք՝ Յ. Թումանեան, երաժշտ.՝ Ալ. Յարութիւնեան)՝ միասնաբար հնչեցնելով ամենայն հայոց բանաստեղծի *լոյսի եւ յոյսի հայրենիքի* պատգամը:

Յաջորդ համերգը 7 Օգոստոսին էր Գիւմրիի Ա. Բրուտեանի անուան թիւ 4 Արուեստի Դպրոցի սրահին մէջ, ուր Արաքս երգչախումբը հնչեցուց Խաչատուր Աւետիսեանի *Իմ Գիւմրի,* Առնօ Բաբաջանեանի *Զմրան սէր, Կանչէ գիս, Կիրակի* եւ Մարսէլ Խալիֆայի *Յօղիկ* (Աթր Ալ-Նատա) երգերը: Այստեղ երգչախումբը դիմաւորուեցաւ նաեւ Գահիրէի նախկին հոգեւոր հովիւ Տէր Նշան Քահանայ Յովհաննիսեանի կողմէ:

8 Օգոստոսին երգչախմբերու չարասիւնը ուղղութիւն վերցուց դէպի Վանաձոր: Ճանապարհին անոնք Սպիտակ քաղաքին մէջ պահ մը կանգնեցան խոնարհուելու համար 1988-ի երկրաշարժի զոհերուն նուիրուած յուշակոթողին առջեւ: Վանաձորի համերգը նախատեսուած էր Շարա Տալեանի անուան թիւ 1. երաժշտական դպրոցի շքեղ սրահին մէջ: Այստեղ Արաքս ներկայացաւ Շառլ Ազնաւուրի *Սիրուց մեռնել, Կեանք մը ծով սիրոյ, Նուագը ճամ* եւ Մարսէլ Խալիֆայի *Յօղիկ* երգերով:



Փառատօնի եզրափակիչ համերգը տեղի ունեցաւ 10 Օգոստոսին, Յակոբ Պարոնեանի անուան երաժշտական քոմետիայի թատրոնի սրահին մէջ՝ համերգավարութեամբ Սարգիս Նաճարեանի, ուր մասնակից երգչախումբերը իրենց կատարումներով վերջին անգամ ներկայացան հայրենի հանդիսատեսին: Արաքս երգչախումբը կատարեց Խաչատուր Աւետիսեանի *Հազարաթեւ Հայաստան,* Առնօ Բաբաջանեանի *Կանչէ գիս* եւ *Կիրակի* երգերը:

Համերգի աւարտին ՀՀ Սփիւռքի նախարարի տեղակալ տիար Վահագն Մելիքեան խօսք առաւ եւ իր գնահատանքն ու բարեմաղթանքները յղեց մասնակից երգչախումբերուն ըսելով. «Շնորհակալութիւն սիրելի հայրենակիցներ, համաշխարհայնացման այս բարդ ու հակասական ժամանակաշրջանում դուք հայ երաժշտութեան միջոցով ամենուրէք պահպանում էք ազգային նկարագիրը՝ նպաստելով հայապահպանութեանը: Դուք հայ երիտասարդների ազգային ինքնութեան, հայ ոգու սերմնացաններն էք. եւ այսօր մենք վայելեցինք ձեր աշխատանքի պտուղները:»

Ապա, նախարարի տեղակալը բեմ հրաւիրելով խմբավարները, նախարարութեան անունէն յանձնեց անոնց Իմ Հայաստան համահայկական Գ. փառատօնի մասնակցութեան մասին վկայող հաւաստագրեր եւ ինչպէս նաեւ յուշամետալներ՝ իւրաքանչիւր խմբավարին:

Յաջորդ օրը, կազմակերպութեամբ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանի, տեղի ունեցաւ ուխտագնացութիւն դէպի Հաղպատ, Սանահինի եւ Օձունի միջնադարեան վանքային համալիրներ, ուր խումբի անդամները ոչ միայն հաղորդակից եղան հնամեայ վանքի սրբութիւններուն եւ հայ ճարտարապետական մտքի թռիչքներուն, այլ, նաեւ իրենց ներդաշնակ երգեցողութեամբ հոգեւին միաձուլեցին հայոց պատմութեան անցեալն ու ներկան:

Արաքս երգչախումբի համար յիշարժան համերգներով, աշխարհի տարբեր անկիւններէն ժամանած երգչախումբերու միջեւ ստեղծուած հեռանկարային կապերով յագեցած այս ծրագիրը աւարտին հասաւ 12 Օգոստոսին:

Հայրենիքին մէջ համահայկական այս փառատօնին Արաքսի մասնակցութիւնը կարելի է բնորոշել որպէս արդէն աւանդական եւ միաժամանակ պատուաբեր, ուր հայրենի եւ սփիւռքեան շուրջ երկու տասնեակ արհեստավարժ ու սիրողական երգչախումբերու շարքին Գահիրէի երգչախումբը առանձնացաւ իր կատարողական մակարդակով եւ երգացանկային խուրօրինակութեամբ:



Սա եզակի առիթ էր մեր երգչախումբին եւ անոր իւրաքանչիւր անդամին համար սփիւռքեան եւ հայաստանեան այլ եւ այլ երգչախումբերու ունկնդրումով արժեւորել իր իրական տեղը եւ նորոգուած ոգեշնչումով շարունակել երաժշտակատարողական կատարելագործման անվերջ, դժուարին եւ միայն ամբողջական նուիրումով իրականացուող աշխատանքը: Այդ իմաստով, այս համերգային ուղեւորութիւնը եւս արդարացուած էր թէ՛ ակնկալիքներու եւ թէ՛ ձեռք բերումներու իմաստով:

Մարդու, հայ մարդու, սփիւռքահայ մարդու կեանքէն ներս անկարելի է թերագնահատել մշակոյթի, առաւել եւս երաժշտական եւ մասնաւորապէս հաւաքական ուժով, կամքով ու տաղանդով իրականացող երգչախմբային արուեստի ազնուացնող, կրթող ու համախմբող նշանակութիւնը:

Արաքս երգչախումբի իւրաքանչիւր անդամի համար պատիւ է ըլլալ այդ հաւաքականութեան մէկ մասնիկը, հնչեցնել հայ երգը մեր համայնքային ու եգիպտական բեմերէն: Եւ որքան առաւել հպարտութիւն, պատասխանատուութիւն ու գերագոյն պատիւ է, որպէս ընդհանուր հայութեան մէկ մասնիկը, եգիպտահայութիւնը ներկայացնել Հայաստանի մէջ, Իմ Հայաստան համահայկական փառատօնի ծիրէն ներս, Գիւմրիի եւ Վանաձորի ժողովուրդին առջեւ, հայոց հնամենի վանքերու կամարներուն տակ, Երեւանի Յ. Պարոնեանի անուան թատրոնի եւ Հայֆիլհարմոնիայի Արամ Խաչատրեան համերգասրահի ամենահեղինակաւոր բեմերէն: Դժուար է պատկերացնել աւելի մեծ պատասխանատուութիւն, դժուար է պատկերացնել աւելի մեծ պատիւ:

Վերջապէս, Ազգային Առաջնորդարանի Արաքս երգչախումբի համերգային այս ուղեւորութիւնը դէպի Հայաստան Գահիրէի Ազգային Իշխանութեան մշակութային ծրագրերէն մէկն էր եւ գործնական հաւաստումը մշակութային քաղաքականութեան այն կամքին ու ոգիին, որուն արժանի է մեր համայնքի իւրաքանչիւր անդամ՝ ի փառս եգիպտահայութեան եւ ի խրախոյս մեր ինքնութեան գլխաւոր կռուան հայ մշակոյթի:

ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

1

## ՆՈՐԱՆՇԱՆԱԿ ՎԱՐՉԱՊԵՏԻ ՅԵՏ ԱՌՆՉՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԲԻԶՆԷՍՆԵՐԸ ԵՒ ՕՖՇՈՐԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**Թիմների մասին Համացանցում եւս չկան:**

**Կարէն Կարապետեանը մեծաքանակ բիզնէս ծրագրեր ունի նաեւ Ռուսաստանում: Մոսկուայում նա գազալցակայանների ցանց է կառուցում: Համատեղ բիզնէս ծրագրեր է իրականացնում նաեւ յայտնի գործարար Սամուէլ Կարապետեանի հետ: Կարէն Կարապետեանի ռուսաստանեան բիզնէսին կ'անդրադառնանք առաջիկայում:**

*Հետք*, 9 Սեպտեմբեր 2016

Հայաստանի նոր վարչապետ Կարէն Կարապետեանի հետ կապուած Քրիստինէ Աղալարեանի բացայայտումները դուռ կը բանան զանազան մտորումներու.

1. *Զահակիր*ի անցեալ թիւին մէջ արտատպեցինք մշակութաբան Վարդան Ջալոյեանի յօդուածը Հայաստանի տնտեսութեան մասին («Օլիգարխիան եւ նէօլիբերալիզմը», *Լրագիր*, 23 Դեկտեմբեր 2010), ուր կը նշէր Հայաստանի անկախութենէն ի վեր գործադրուած տնտեսական երեք համակարգային փուլեր՝ «դեմոկրատական կապիտալիզմ, սոցիալ օլիգարխիա եւ նէօլիբերալ օլիգարխիա»: Երրորդը՝ նէօլիպերալ օլիկարքը, ստեղծած է Ռոբերտ Քոչարեան եւ կը շարունակուի մինչեւ այսօր: «Ռ. Քոչարեանը օլիգարխների դերում տեսնում էր «հաւատարիմներին», որոնք նեցուկ կը լինեն իշխանութիւններին», կը գրէր Ջալոյեան եւ կ'աւելցնէր՝ թէ նէօլիպերալ օլիկարքի «խաղի կանոններն են՝ «յաղթողը վերցնում է բոլորը», այսինքն տնտեսական կեանքի հիմնական միաւորը դառնում է օլիգոպոլիան»: Կարէն Կարապետեանի ընտրութիւնը կը հաստատէ ու կ'ամրացնէ նէօլիպերալ օլիկարքի հայաստանեան տիպարը եւ անգամ մը եւս կը բացայայտէ իշխանութիւններուն եւ իրենց արբանեակ համակիրներուն յամառութիւնը երկիրը տանելու նէօլիպերալիզմի վտանգաւոր ուղիով, ուր մէկ տոկոս վերնախաւը ոչ միայն իր ձեռքը ունի ամէն բան, այլ ըստ էութեան միտում ունի մօտ ապագային այդ ամէն բանը դարձնել կրկնապատիկ ու բազմապատիկ, այսինքն՝ առաւել եւս նեղցնել վերնախաւային շրջանակի սահմանները: Տուժողը միշտ ժողովուրդն է՝ մշակոյթի, տնտեսութեան, քաղաքականութեան, պետութեան, անկախութեան, ազգայնականութեան իսկական կերտողն ու կրողը:

2. Աջակողմեան մտածողութեամբ (դրամ, գործարք, հարստութիւն, շուկայ, սպառողականութիւն, տիալեքթիքի փոխարէն մրցակցութիւն) շաղախուած ներկայ հայկական հիմնահոսանքի անթիւ ներկայացուցիչներ ու մասնակցողներ կ'առարկեն՝ թէ ի՞նչ կ'ըլլայ, փտածութիւն (corruption) գոյութիւն ունի ամբողջ աշխարհի մէջ, ինչո՞ւ Հայաստան բացառութիւն պէտք է կազմէ: Ուրեմն, ըստ այս վարկածին, փոխանակ իւրաքանչիւր ազգ, կազմակերպութիւն կամ անձ՝ իր ապրած, սիրած ու գործնականօրէն կապուած տարածքին վրայ դիմադրէ փտածութիւնը, իր շրջապատի փտածութեան իմաստն ու գոյութիւնը պէտք է ընդունի ուրիշ տարածքի (տարածքներու) վրայ գտնուող փտածութիւններէն եւ նոյնիսկ նուազուրդային սկզբունքով մրցակցութեան մէջ մտնէ անոնց հետ՝ իբր մեր փտածութիւնը, տեսէ՛ք, նուազ փտած է քան ուրիշինը: Ասիկա փտածութեան վաւերացումն է համաշխարհային (global) մակարդակով, փտածութեան համաշխարհայնացումն (globalization) է:

Վտանգաւոր է երբ փտածութիւնը կ'ընդունուի իբրեւ փաստացի de facto իրականութիւն: Ընդհակառակը, անոր դէմ պայքարը անհրաժեշտութիւն մըն է, որ կրնայ ընթանալ երկու համատեղ ուղղութիւններով: Նախ, կարեւոր է համաշխարհային փտածութեան կազմալուծումը (deconstruction) տեղական տարածքներու, ուր իւրաքանչիւր տարածք գիտակցութիւն ունենայ դիմադրել *իր* փտածութիւնը: Այս առումով, Քրիստինէ Աղալարեանի նման հետախուզական լրագրողներու բացայայտումներուն արժէքը անգնահատելի է՝ որոշելու համար դիմադրութեան ուղղուածութիւնը եւ նպատակը: Երկրորդ, փտածութիւնը համաշխարհայնացնելու փոխարէն պէտք է համաշխարհայնացուի դիմադրութիւնը: Երիտասարդ Մարքսին եւ Էնկելսին կը պատկանի հանրածանօթ խօսքը՝ «Բանուորներ ամբողջ աշխարհի, միացէ՛ք»: Հասկնալի պատճառներով, այս նախադասութիւնը յետագային կարծրատիպային հանգամանք ստացաւ համայնավարական երկիրներուն մէջ՝ ուր բանուոր-փրոլեթարիա հասկացողութիւնը դրուեցաւ հնարաւոր իր ամենանեղ շրջանակին մէջ, միաժամանակ ան ծաղրանքի առարկայ դառնալով դրամատիրական արեւմուտքին մէջ: Արդարեւ, ուշադրութեամբ կարդալով հասուն Մարքսը, յատկապէս *Դրամագլուխ*ի երեք բացառիկ հատորները, կարելի է մեծապէս ընդարձակել «բանուոր» հասկացողութիւնը եւ զայն ըմբռնել իբրեւ յաւելեալ արժէքը (surplus value) արտադրող մարդկային զանգուած: Այս զանգուածին արտադրած յաւելեալ արժէքն է որ ամբողջութեամբ կ'իւրացնէ դրամատէրը: Իսկ յաւելեալ արժէքը բնորոշ է թէ՛ օլիկարքներուն եւ թէ՛ արեւմտեան գործարար մեծահարուստներուն: Դիմադրութիւնը, ուրեմն, կու գայ յաւելեալ արժէքը արտադրող մեծամասնականներուն կողմէ եւ ուղղուած է ընդդէմ յաւելեալ արժէքը իւրացնող փոքրամասնականներուն: Այստեղ արդէն «բանուոր»-ը կը շրջանցէ իր գործարանային սահմանները եւ կը ներկայացնէ բոլոր այն մարդիկ՝ որոնք աշխատելով իրենց ապրուստը հայթայթելու համար, ըստ էութեան, կը ծառայեն կուտակելու եւ յաւելելու դրամատիրոջ դրամական իշխանութիւնը: Բայց ոչ միայն յաւելեալ արժէքը արտադրողները, այլեւ բոլոր անոնք՝ որոնք նոյնիսկ առիթ ու իրաւասութիւն չունին յաւելեալ արժէք արտադրելու եւ կը գտնուին ծայր աստիճան չքաւոր, ճնշուած ու մեկուսացած վիճակի մէջ: Այս երկու տարրերու միաձուլումով՝ կազմալուծում եւ դիմադրութեան համաշխարհայնացում, կարելի է վերջ տալ փտածութեան:

Այս առումով, ինքնահակասութիւններով եւ ինքնաբացասումներով հարուստ արդի մտածողութեան մէջ կը գտնուի հետաքրքրական կէտ մը եւս: Այն ազգայինները որոնք կ'ըսեն՝ թէ փտածութեան առումով ինչո՞ւ Հայաստան բացառութիւն պէտք է կազմէ, ինքզինքնին միշտ հանրութեան կը ներկայացնեն իբրեւ ազգասէր, ազգային հարցերով մտահոգուած դէմքեր, կը խօսին հայկական ինքնութեան եւ մանաւանդ հայկական յատկութիւններու բացառիկութեան մասին: Անոնք՝ իրենց հանրային պատումներուն մէջ, անպայմանօրէն հայը կը դիտեն ոչ թէ աշխարհի ու կեանքի գեղեցիկ, ստեղծագործ ու անսահման տարբերութիւններուն, այլ բացառապաշտութեան պարտադրանքին ընդմէջէն: Եթէ հայկական ինքնութիւնը իրենց համար անհամեմատելի միակութիւն մըն է, ինչո՞ւ փտածութեան պարագային հայը պիտի դառնայ համաշխարհայնացուած եւ հայկական փտածութիւնը պիտի նմանի ուրիշներուն: Հայկական ինքնութիւնը չի նմանիր ուրիշներուն, բայց հայկական փտածութիւնը նման է ուրիշներուն:

3. Օլիկարքը միշտ կը հակադրուի արեւմտեան դրամատիրութեան գործարարին հետ: Օլիկարքը բացասական է, արեւմտեան գործարարը դրական: Այսքան կտրուկ դասակարգում: Հայաստանը այսօր կը կառավարուի օլիկարքական համակարգով: Ասիկա արդէն յստակ է: Իսկ հայկական սփիւռքի մէջ չկա՞յ արդեօք գործարարութեան ընդմէջէն կատարուող լիակատար վերահսկողութիւն միութենական գործունէութեան վրայ: Կայ: Պիտի բաւարարիմ մէկ ցայտուն օրինակով, ամբողջապէս խնայելով անունները:

ԱՄՆ-ի մէջ կը գտնուի ծանօթ հայ ընտանիքի մը սեփականութիւնը հանդիսացող Մ. ընկերութիւնը: Ըստ *LittleSis*-ի համադրած տեղեկութիւններուն (http://littlesis.org/org/), ան ներկայիս իրերահիւսուած է (interlocked) 38 կազմակերպութիւններու հետ, ինչպէս նաեւ կապուած է 16 իրերահիւսուած անձերու հետ՝ որոնցմէ իւրաքանչիւրը առնչութիւն ունեցած է այս 38 կազմակերպութիւններէն 7, 6, 5, 4, 4, 4, 3, 2, 2, 2, 2, 1, 1, 1, 1 եւ 1 հատի հետ: Բացի այդ, Մ. ունի 60 գլխաւոր մասնաճիւղեր եւ դուստր ընկերութիւններ Մեծն Բրիտանիոյ, Գերմանիոյ, Սպանիոյ, Հոլանտայի, Տանիմարքայի, Իտալիոյ, Պելճիքայի մէջ եւ այլուր (*Encyclopedia.com*, http://www.encyclopedia.com/topic/): Ուրեմն, ունինք դրամատիրական ժամանակակից տեսանկիւնէն կատարեալ անդրազգային ընկերութիւն (transnational corporation) մը:

Գանք անոր հայկական կողմին: Այս ընկերութեան սեփականատէրերը սփիւռքահայ միութեան մը (անուանենք՝ Ա.) առաջնորդներն են: Անոնք, իբրեւ ձեւական պաշտօնեայ, բարձր ամսականով կը պահեն հայ «մտաւորական» մը (անուանենք՝ Բ.), որ ուժեղ ազդեցութիւն եւ տիրական խօսք ունի սփիւռքահայ ուրիշ միութեան մը (անուանենք՝ Գ.) մամուլին եւ ամբողջ կազմակերպչական աշխատանքին վրայ: Դժուար չէ տեսնել կապը: Բ.-ը պիտի կատարէ Ա.-ին յանձնարարութիւնները՝ Գ. մամուլին մէջ գրելով ու տարածելով Ա.-ին նախասիրութիւնները, թելադրանքները եւ հրամանները: Ա.-ը՝ Բ.-ին միջնորդութեամբ, օգտագործած պիտի ըլլայ Գ.-ը, բազմացնելով մամուլի իր տարածութիւնը եւ ապահովելով «կողմ» գրութիւնները: Աւելի կարեւորը: Ա.-ը՝ անկախ իր հայկական պատկանելիութենէն, աշխարհի բոլոր դրամատիրական կեդրոններուն նման, նաեւ իր արժէքները պիտի թելադրէ Բ.-ին: Որեւէ դրամատէր պէտք ունի ստեղծել ու տարածել իր ինքնապատկերը: Բ.-ին պարտականութիւնն է անընդհատ ու անվերջ գովերգել Ա.-ը: Այլեւ միշտ թիկունք կանգնելով ընդհանրապէս հարուստ դասակարգի գործունէութիւններուն, Բ.-ը պիտի անտեսէ թէ ինչպէ՞ս կ'իրականացուի դրամատիրական կուտակումը, ինչպէ՞ս կը շահագործուին աշխատաւորները, ինչպէ՞ս յաւելեալ արժէքով կը կատարուին բարեգործութիւնները՝ աւելցնելով բուն ընկերութենական շահոյթն ու գերշահոյթը, այս պարագային՝ Մ.-ի շահոյթը: Բ.-ը պարտադրաբար պիտի անտեսէ ունեզրկուածը, մեկուսացուածը, եւ պիտի ստեղծէ հիմնահոսանքային անքննադատելի գաղափարախօսութիւն մը:

Այս բոլորը փտածութիւն չի նկատուիր, այլ կը նկատուի մրցակցութիւն: Բնականաբար, ասիկա օլիկարքութիւն չէ, քանի որ օլիկարքը իշխանութեան հետ սերտ կապեր ունեցող անձ մըն է կամ նոյն ինքը իշխանութիւնն է: Եթէ Մ.-ի դրութիւնը՝ իր իրերահիւսուած կազմակերպութիւններով եւ վարիչներով, ինչպէս նաեւ առեւանգուած մտաւորականներով, փտածութիւն չի համարուիր, ուրեմն փտածութիւն չէ նաեւ Հայաստանի օլիկարքութիւնը: Բանաձեւումը յաջող չէր: Աւելի ճիշդ պիտի ըլլար ըսել, եթէ Հայաստանի օլիկարքութիւնը փտածութեան չափանիշի կրողն է, նոյնպէս արեւմտեան անդրազգային ընկերութիւններն ու իրենց սեփականատէրերը, ներառեալ այդ ընկերութիւններուն հետ կապուած միութիւններն ու մամուլը, արեւմտեան դրամատիրութեան փտածութեան օրինաչափերն են:

Սփիւռքի եւ Հայաստանի յիշեալ փտածութիւններուն առնչութեամբ կը գտնուի կարեւոր տարբերութիւն մը: Հայաստանի մէջ, ինչպէս վերը տեսանք Քրիստինէ Աղալարեանի պարագային, կարելի է անուններով ու թիւերով բացայայտել օլիկարքականփտածութեան աստիճանը, նոյնիսկ եթէ տուեալ անձը կապուած է բաւական բարձր դիրք ունեցող պաշտօնատարներու հետ: Սփիւռքի պարագային, ինչպէս ցոյց կու տայ մեր բերած օրինակը, անկարելի է անուններու բացայայտումներ կատարել: Հայաստանի մէջ կը գտնուի այլընտրանքային շարժում մը՝ որ որոշ տարածութիւն ունի արտայայտուելու իշխանական պատումէն անդին, եւ երբեմն, *Հետք* լրագիրի պարագային, կը վայելէ միջազգային հետախուզական լրագրութեան պաշտպանութիւնը: Սփիւռքի մէջ այլընտրանքը պարզապէս վտանգաւոր է, հիմնահոսանքային պատումը կ'արգիլէ որեւէ հեռաւոր փորձ այդ պատումը դոյզն իսկ կասկածի ենթարկելու:

Զ

## ԱՐԱՐԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ 98-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԻԹՈՎ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս Սեպտեմբեր 19-ը անցաւ աննկատ: 1918 Սեպտեմբեր 19-ին, մեծ մասամբ Փորթ-Սայիտ (Եգիպտոս) ապաստանած մուսալեռցիներէ կազմուած շուրջ 600 Հայ լեգէոնականներ՝ ֆրանսական հրամանատարութեան ներքոյ, կը յարձակին ու գրաւեն Արարայի (Պաղեստին) դժուարամատչելի բարձունքը, որուն կը տիրապետէր գերմանա-թրքական բանակը: Անգլիական զօրքը նախապէս երեք անգամ ի զուր փորձած էր գրաւել բարձունքը: Արարայի գրաւումը ֆրանսացիներուն եւ անգլիացիներուն (անգլիացիները յետագային կը քաշուին ու տարածաշրջանը կը թողուն ֆրանսացիներուն) ճամբայ կը բանայ գաւթելու Կիլիկիան:



*Լեգէոնի մուսալեռցի մարտիկներ, 1919*

Հայ լեգէոնականները՝ որոնց գլխաւոր կորիզը կը կազմէին ցեղասպանութենէն ճողոպրած նախկին կիլիկեցիները, պատերազմեցան իրենց տունը վերադառնալու բուռն ու բնական ցանկութենէն մղուած եւ Կիլիկիան իբրեւ հայկական տարածք տեսնելու փափաքէն տարուած: Մարդկային այս ինքնաբուխ կիրքին եւ անարշիսթական փորձառութեան մէջ կը գտնուէր Արարայի յաղթանակի իրական բանալին:

Նախապէս, Հայ լեգէոնականներ հաւաքելու համար Ֆրանսան հայ մեծաւորներուն բանաւոր խոստում տուած էր Կիլիկիոյ համատեղ գրաւումէն ետք զայն յանձնել Հայերուն: Եւ արեւմտահայ հայ քաղաքական գործիչներ՝ որոնցմէ գոնէ երկուքը կը տենչային դառնալ Կիլիկիոյ կամ Արեւմտահայաստանի նախագահ, հաւատացած էին (կամ ուզած էին հաւատալ) այս բանաւոր խոստումին: Բանաւոր խոստումին հաւատալը կրնայ ցուցանշել հայկական դիւանագիտութեան «հասունութեան» աստիճանը: Եւ իրապէս, հիմնուելով այս բանաւոր խոստումին վրայ, հայ մեծաւորները յաջողեցան հաւաքել լեգէոնական խումբեր Եգիպտոսէն (Փորթ-Սայիտի մուսալեռցիներ), Ամերիկայէն եւ այլուր, եւ զանոնք յանձնել ֆրանսացիներու տնօրինութեան՝ ռազմապէս մարզուելու համար: Արարայէն ետք կատարուածը՝ ֆրանսացիներուն Կիլիկիոյ գրաւումը լեգէոնականներուն օգնութեամբ եւ ապա թուրք-ֆրանսական նոր շահերու բերումով ֆրանսացիներուն 6

### ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2015-2016 ուսումնական տարեշրջանի Գ. Երկրորդականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

**Թուաբանական ճիւղ**

| | |
|---|---|
| Քրիս Ռուպէր Նակիպ | 85.2% |
| Տանիէլ Նակի Գալալեան | 73.4% |
| Շատի Իսահակ Ղազարեան | 65.0% |
| Լեւոն Ալպէր Տէմիրճեան | 60.9% |

**Գիտական ճիւղ**

| | |
|---|---|
| Լորիկ Հրայր Տրդատեան | 69% |

**Գրական ճիւղ**

| | |
|---|---|
| Ռիթա Գէորգ Կոտոլոեան | 83.7% |
| Ժորժ Սարգիս Անդրանիկեան | 80.0% |
| Սիլվա Րաֆիք Պաթանի | 72.8% |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

**ԽՈՀԵՐ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ ԱԶԱՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԻՒՆ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Խորհրդային Հայաստանի սկիզբը այնքան ալ տարբեր չէր 1991-ի Հայաստանի Հանրապետութեան սկիզբէն: Այստեղ նոր, աւելի լաւ հասարակարգ ստեղծելու միտում կար, ուրիշ հարց՝ թէ Խորհրդային Միութեան փլուզումէն անմիջապէս ետք դրամատիրական հասարակարգը պատրաստ կը սպասէր փոխարինելու ուշ-խորհրդային հասարակարգին (խառնուրդ մը չիրականացած ընկերվարական (socialism) եւ գրեթէ իրական պետական դրամատիրական (state capitalism) հասարակարգերու), իսկ այդ դրամատիրական ներխուժումը ընդամէնը 8-10 տարուայ ընթացքին վերածուեցաւ ճնշիչ նէօլիպերալ հասարակարգի:

Կորպաչովեան Վերակառուցումի (Փերեսթրոյքա) շրջանի բնաբանին մէջ ծնունդ առաւ յետխորհրդային առաջին տարիներու մշակոյթը, ճիշդ այնպէս՝ ինչպէս խորհրդային շրջանի առաջին տասը տարիներու աւանկարտիզմը կազմաւորուած էր նախախորհրդային շրջանի մշակութային շարժումներուն ընդմէջէն: Գլխաւոր օրինակ մըն է Խորհրդային Հայաստանի վերջին տարիներուն ծնունդ առած նկարիչներու 3-րդ Յարկ անունով ծանօթ ցուցահանդէս-շարժումը, որուն մասին հետաքրքրական բացատրութիւն ունի Անժելա Յարութիւնեան.

«Գորբաչովեան Վերակառուցումը ոչ միայն հայկական աւանգարդին հնարաւորութիւն տուեց գործելու պետական ներկայացուցչական տարածութեան մէջ, այլ նաեւ առանձին արուեստագէտների մօտ նոր հասարակութիւն կառուցելու յոյսեր արթնացրեց: 3-ր Յարկ խմբի գաղափարախօս Արման Գրիգորեանը, ինչպէս իր ուշ խորհրդային երրորդյարկեան, այնպէս էլ յետխորհրդային յետերրորդյարկեան գործերում ակտիւօրէն արծարծում էր արուեստագէտի՝ որպէս նոր հասարակութիւն կառուցող շինարարի կերպարը: Գրիգորեանի համար Վերակառուցման քաղաքականութեան, իսկ յետագայում նաեւ՝ անկախութեան տնտեսական, քաղաքական ու մշակութային ազատականացումը առիթ հանդիսացաւ պատմական աւանգարդի՝ արուեստի ու կեանքի սահմանները քանդելու յետադարձ ու նոստալգիական ստրատեգիաների որդեգրման: 1980-ականների վերջի ու 1990-ականների սկզբի հայկական ռետրօ աւանգարդի համար նոր հասարակութեան կառուցումը, որ պէտք է «հին» հասարակութեան հակառակ համեմատակը լինէր, արուեստի խնդիրների սահմաններում էր լուծւում:»(3)

Ինչպէս խորհրդային առաջին տարիներուն նոր հասարակարգ կերտելու բնաբանին տակ կատարուող զանգուածային տօնակատարութիւններու խօսքի գերակայութիւնը կը պատկանէր արուեստագէտներուն (Ճէյմս վոն Կելտերն), նոյնպէս Վերակառուցումէն դէպի անկախութիւն անցնող Հայաստանի համար նոր հասարակարգի յառաջացումի միտումին առանցքը կը յայտնուէր արուեստագէտը (Անժելա Յարութիւնեան):

Լեւոն Տէր-Պետրոսեանի տարիներուն տակաւին կարելի էր աւանկարտիսթական արուեստը համաձայնեցնել քաղաքական պատումին հետ՝ դարձեալ մղուած նոր հասարակարգ ստեղծելու ձգտումով, պարուրուած նորանկախ Հայաստանի եւ ընթացող սահմանադրական ընտրութիւններու երազանքի ծրարումներով: Օրինակ, 1995-ին ստեղծուած ԱԿՏ արուեստային խմբաւորումը, ուր այլընտրանքն ու հիմնահոսանքը կը խառնուէին իրարու, ինչպէս կը փորձէ մեկնաբանել Վարդան Ազատեան.

«[Ե]թէ 3-րդ յարկը [...] կոչեցինք Վերակառուցման աւանգարդ, ապա ԱԿՏ-ը [...] կարող ենք կոչել Հայաստանի նորանկախ նէօլիբերալ գործողութեան աւանգարդը: Սուբիէկտիւացման ռազմավարութիւնները ինչպէս տեսնում ենք գործում են իշխող քաղաքական նարատիւների հետ նոյնացումների, հարումների ձեւով, եւ այս տեսանկիւնից, խզումը, որը պէտք է աւանգարդը, իր կոչման համաձայն, մտցնի իշխող գիտակցութեան մէջ, տեղի չի ունենում: Ինչո՞ւ:

Թերեւս այն պատճառով, որ նշուած պատմական իրավիճակում իշխանութիւններն իրենք էին «այլընտրանքային» գիտակցութեան կրողը՝ ստալինեան տոտալիտարիզմի ու դրա հետեւանքների համեմատ թէ՛ Վերակառուցումը, թէ՛ նէօլիբերալ պետութիւնը նման «այլընտրանքներ» էին: Աւանգարդի խնդիրը, այս առանձնայատուկ իրավիճակում բարդանում է. եթէ վերջինիս գործիչները չունեն համապատասխան տեսական ու պատմական գիտակցութիւն, որոնցով հնարաւոր է վեր ելնել անմիջական նոյնացման եւ հակադրման այս ռազմավարութիւնից, «աւանգարդ» դարձած իշխանութիւնների հանդէպ քննադատական վերաբերմունք պահպանելը, ըստ էութեան, կը մնայ անհնար:»(4)

Բանաստեղծութիւնը եւս, այլ բնագաւառներու նման, ունեցաւ իր նոր արտայայտութիւնները: 2000-ին տպագրուեցաւ Արմէն Շէկոյեանի *Անտիպոէզիա* բանաստեղծութիւններու ժողովածուն: Ելլելով Շէկոյեանի ինքնաանուանումէն, որոշ մեկնաբաններ յետադարձ հայեացքով հակաբանաստեղծութիւն (անտիպոէզիա) հասկացողութիւնը ընդհանրացուցին անկախութեան առաջին տասը տարիներու բանաստեղծական կարեւոր ուղղութեան մը համար: Մարինէ Պետրոսեան կը բացատրէ հակաբանաստեղծութիւնը.

«Ընդհանրապէս հակապոէզիան բանաստեղծութեան պատմութեանը լաւ յայտնի երեւոյթ է, քանի որ այդ պատմութիւնը միշտ առաջ է գնացել ինքն իրեն ժխտելով-յաղթահարելով-վերածնելով: Ընդ որում հակապոէզիան սովորաբար առաջ է մղւում պատմութեան շրջադարձային պահերին, երբ կեցութիւնը հերթական անգամ կորցնում է իր իմաստը եւ ներկայանում իբրեւ դիպուած: Նման պահերին իրականութեան մէկ թեւին փարուած մնացող պոէզիան դադարում է կենդանի խօսք լինելուց եւ դառնում է մեռեալ: Նորից կենդանանալու համար այն պէտք է ծնուի իբրեւ հակապոէզիա, պէտք է ձգտի ընդգրկել իրականութեան խաչի չորս թեւերը միաժամանակ, պէտք է շրջուի դէպի դուրս՝ դէպի «կեղտոտ» իրականութիւնը, դէպի դիպուածը, պէտք է փորձի պոէզիայից վերաճել խօսքի՝ իմաստ տալու համար դիպուածին եւ փրկելու համար խելագարութիւնից:»(5)

Ինչպէս Մարինէ Պետրոսեան կը գրէ՝ «[ա]նտիպոէզիայի «անտի»-ն ուղղուած է պոէզիայի ինքնավարութեան դէմ, որովհետեւ ինքնավարութեան երազանքը կեցութեան դիպուածում ալիբի ունենալու երազանքն է, կամ եթէ Վիոլէտ Գրիգորեանի օգնութեանը դիմելով ասենք՝ «իրականութեան ականապատուած հարթակներին ոտքը չդնելու» երազանքը:»(6)

Իսկ ասիկա դիտելով անկախութեան առաջին տարիներու բնաբանին մէջ, «[հ]ետաքրքիր է, որ 20-րդ դարավերջի հայ յեղափոխութիւնը, ի տարբերութիւն շատ այլ յեղափոխութիւնների, չստեղծեց իր յեղափոխական պոէզիան: Երեւի պատճառներից մէկն էլ դարասկզբի յեղափոխականների հակաօրինակն էր, հակաօրինակ, որովհետեւ դեռ երէկ պարտադրւում էր դասագրքերով, ուրեմն եւ՝ վանող էր: Փոխարէնը ծնուեցին Արմէն Շէկոյեանի *Անտիպոէզիան* եւ Վիոլէտ Գրիգորեանի *Քաղաքը*:

«Մնացած առումներով իրարից շատ հեռու այս երկու գրքերին միացնողը այն է, որ երկուսի մասին էլ ասում են՝ «Սա պոէզիա չի»:»(7) Խօսքը հակաբանաստեղծութեան (անտիպոէզիայի) մասին է:

Յասմիկ Յակոբեան, ընդունելով Մարինէ Պետրոսեանի հակաբանաստեղծութիւն հասկացողութիւնը, զայն կը մեկնաբանէ կայուն երեւոյթները դիմադրելու իմաստով, որ կարեւոր ուղի մըն է դէպի մտաւոր ազատագրութիւնը.

«Հակաբանաստեղծութիւնը կամ անտիպոէզիան, ըստ էութեան, տարբեր իրականութիւնների ու գեղագիտական հայեացքների հակադրութեան դաշտում առաջացող անցումային իրողութիւն է, որը կայանում է հէնց իր ընդդիմութեան՝ իրողութիւններն այլ կերպ, 6

ՔԱՂԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

2

## ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆԻ ՁԵՌԱԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ

մասին մինչեւ այժմ լոյս տեսած երկասիրութիւններից աւելի ընդարձակը եւ լիակատարը, մենք որոշեցինք լոյս ընծայել այդ աշխատութիւնը իբրեւ *Արօրի* 1913 թուի Ա գիրք: Յոյս ունենք, որ *Արօրի* ընթերցողներին եւ ընթերցող հայ հասարակութեան հաճոյք կը պատճառենք այս երկասիրութեամբ, միջոց տալով նրանց ծանօթանալ ի մօտոյ հայկական տպագրութեան եթէ ոչ ամբողջական, բայց ըստ հնարաւորութեան լիակատար պատմութեան հետ»:

«Աշխատութեան տպագրութիւնն սկսւում է, մօտ տասը մամուլ (152 էջ) տպագրւում, սակայն ինչ-ինչ պատճառներով կիսատ է մնում:

«ԳԱԹ-ում պահուող ձեռագիրը արտագրութիւն է, պատրաստուած տպագրութեան համար: Այն բաղկացած է 425 էջից եւ պարունակում է Ալպօյաճեանի ուսումնասիրութեան տասնմէկ (Ա-ԺԱ) գլուխները:

«Այժմ դժուար է ասել, թէ հեղինակը ինչ ամբողջականութեամբ է ուղարկել իր աշխատութիւնը *Արօրի* խմբագրութեանը 1912 թ.: Մի բան պարզ է, որ այդ օրերին աշխատութեան ԺԲ գլուխը (գաւառի տպարանների մասին) գրուած չի եղել, կամ շատ թերի է եղել, երեւի լիարժէք նիւթի պակասի հետեւանքով, քանի որ իր հարցումները Թուրքիայի հայաբնակ գաւառների գործիչներին Ալպօյաճեանը ուղարկել է երկու տարի յետոյ միայն՝ 1914 թ. վերջերին:»(29)

Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի ձեռագրի վերջին (ԺԱ.) գլուխը՝ «Զմիւռնիոյ տպարանները», 1964-ին հրապարակած է Մ. Ն. Յակոբեան(30):

Համեմատելով «Զմիւռնիոյ տպարանները» գլխի Մ. Ն. Յակոբեանի (Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի ձեռագիր) եւ Վարդի Քէշիշեանի (Մատենադարանի ձեռագիր) տպագրած տարբերակները, դժուար չէ նկատել՝ որ անոնք կը ներկայացնեն միեւնոյն բնագիրը: Մատենադարանի ձեռագիրի վերջաւորութեան Ալպօյաճեան ընդամէնը աւելցուցած է քանի մը նոր տեղեկութիւններ:

Այսպէս, մէկ կողմէ՝ Պասմաճեան-Յակոբեանի նիւթերուն անյայտ ճակատագիրը, միւս կողմէ՝ Մատենադարանի ձեռագիրներու մեծամասնութեան անտիպ վիճակը, երրորդ կողմէ՝ մամուլի մէջ ցրուած հարիւրաւոր չցուցակագրուած ու չյայտնաբերուած յօդուածները, ալպօյաճեանական ուսումնասիրութեան այնքան ալ նպաստաւոր պատկեր մը չեն ստեղծեր:

Հ. Ա.

(Վերջ 3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

24. Գր. Պասմաճեան, նշ. աշխ.ը, էջ 7:

25. Տիգրան Գէորգեան, «Արշակ Ալպօյաճեանի գիտական արխիւը համալրող նորայայտ նիւթեր», *Արեւ*, 28 Յունիս 1977, թիւ 17.721, էջ 2:

26. Մ. Բաբլոյեան, «Նիւթեր հայկական տպագրութեան պատմութեան վերաբերեալ (Ա. Ալպօյաճեանի *Տպագրութեան արուեստը եւ Հայք* աշխատութիւնը)», *Պատմա-բանասիրական Հանդէս*, Երեւան, թիւ 4, 1974, էջ 242:

27. Անդ, էջ 243-244:

28. Արշակ Ալպօյաճեան, *Տպագրութեան արուեստը եւ Հայք*, կազմող եւ խմբագիր՝ Վարդի Քէշիշեան, Երեւան, Նաիրի Հրատարակչութիւն, 2013, էջ 2:

29. Մ. Բաբլոյեան, նշ. յօդ.ը, էջ 242-243:

30. Արշակ Ալպօյաճեան, «Զմիւռնիոյ տպարանները», *Պատմա-բանասիրական Հանդէս*, 1964, թիւ 2, էջ 67-84:



## ՄԽԻԹԱՐ ԳՕՇԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ

### ՓԻՂԻ ՈՐԴԻՆ՝ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՆ ԱՇԱԿԵՐՏ

Փիղը իր որդին յանձնեց Պղատոնին՝ իմաստասիրութիւն ուսանելու: Եւ ուսուցիչը աշակերտին յանձնարարեց ծնրադրել լսարանի մէջ, իսկ ան չկարողացաւ: Պատուիրեց նաեւ որ գլուխը խոնարհի գետինը, սակայն եւս չկարողացաւ: Պղատոնը գայն ետ վերադարձուց հօրը եւ ըսաւ.

– Վայել է, որ որդիդ թագաւորի պալատի մէջ ըլլայ՝ միշտ ոտքի կանգնած, եւ ոչ իմ լսարանի մէջ, քանի որ ո՛չ նստիլ կարող է եւ ո՛չ գլուխ խոնարհել:

5

## ԱՐԱՐԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ ....

անսպասելի ու չուտափոյթ նահանջը Կիլիկիայէն, հետեւաբար՝ յանկարծակի կերպով անտէր մնացած կիլիկահայութեան նոր ու վերջնական եղեռնը քէմալականներուն կողմէ, անծանօթ էջեր չեն մեր պատմութեան համար: Իսկ այսօր, այս նոյն մարդասէր Ֆրանսան է որ կը ստանձնէ հայոց ցեղասպանութեան ճանաչումի առաջամարտիկային դերը: Ասպարէզ բանալ ցեղասպանութեան եւ ապա դատապարտել ցեղասպանութիւնը:

Բաց աստի, Արարայի յաղթանակը կը հանդիսանայ հայոց արդի ռազմական պատմութեան լուսաւոր էջերէն մէկը: Սակայն հակառակ իր պատմական կարեւորութեան, ան չէ դարձած տարեկան յիշատակութեան կամ տօնակատարութեան առիթ: Վերջապէս, ո՞վ պիտի նշէ զայն: Այսօր գոյութիւն չունի լեգէոնական միութիւն-կազմակերպութիւն-կուսակցութիւն մը՝ որ նախաձեռնէ տօնակատարութիւնները: Չէ՞ որ հայոց պատմութիւնը յաճախ դարձած է սեփականութիւններ...:

Ք.

ԳԱՅԻՐԷ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 23 Յոկտեմբեր 2016

### ՏՕՆ Է ԳԻՒՏ ԽԱՉԻ

Սուրբ Պատարագէն ետք պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն Եգիպտոսի Հայոց Թեմին մէջ քահանայագործած եկեղեցականներու

*Տ. ԳԱԲՐԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՐԱՇՑԻԻ*

*Տ. ՄԿՐՏԻՉ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՔԷՅՖՍԸԶԵԱՆԻ*

*Տ. ՄԵՍՐՈՊ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ*

*Տ. ՄԱՏԹԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԻԶՄԻՐԼԵԱՆԻ*

*Տ. ԳԷՈՐԳ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԻՒԹԻՒՃԵԱՆԻ*

*Տ. ՅԱԿՈԲ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՇՈՏ ՓԱՓԱԶԵԱՆԻ (Առաջ. Տեղ.)*

*Տ. ՅՈՎՍԷՓ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՅՎԱԶԵԱՆԻ*

*Տ. ՄԿՐՏԻՉ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՂԱՒՆՈՒՆԻԻ*

*Տ. ԹՈՐԳՈՄ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԳՈՒՇԱԿԵԱՆԻ*

*Տ. ՄԱՄԲՐԷ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՐՈՒՆԵԱՆԻ*

*Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՉԻՆՉԻՆԵԱՆԻ*

հոգւոցն ի հանգիստ:

Ինչպէս նաեւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Զակազիկի նախկին Ս. Խաչ Եկեղեցւոյ

ԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵՐԱՐՆԵՐ՝
*ԱՐՄԵՆԱԿ ՊԷՅ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԻ*
*ԵՒ ԶԱՒԱԿՆԵՐՈՒՆ*
*ԱՐԱՄԻ, ԵՐՈՒԱՆԴԻ, ՏԱՐԻԱՅԻ*

հոգւոց ի հանգիստ:

Հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի նաեւ *ՆԻԼԸ ԻՍԹ* ակումբի ողբացեալ անդամ-անդամուհիներու հոգւոցն ի հանգիստ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

5

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ
## ԱԶԱՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԻՒՆ

այլ աստիճանից արձանագրելու շնորհիւ: Սովորաբար հակաբանաստեղծական պոէզիայի համար հող են նախապատրաստում պատմական անցումային, յեղափոխական ժամանակաշրջանները: Եւ, ըստ էութեան, կանխատեսելի էր նաեւ անկախութեան հաստատումից յետոյ մեր գրական գործընթացի մէջ նրա յայտնութիւնը: Նոր իրականութիւնն ու հասարակական նոր յարաբերութիւնները երեւոյթներն արձանագրելու սկզբունքային այլ վերաբերմունք ու գեղագիտական հմտութիւններ էին պահանջում: Հակաբանաստեղծութիւնը դիմադրութիւն է պոէզիայի ընդունուած չափանիշներին, մանիֆեստային բնոյթ ունի եւ յստակ նպատակաուղղուած ծրագիր է իրականացնում:»(8)

Յակոբեան այս ուղղութեան մէջ կը դնէ անկախութեան առաջին տասը տարիներու կարեւոր բանաստեղծական ժողովածուներ, Վիոլէտ Գրիգորեան՝ *Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում* (1991) եւ *Քաղաք* (1998), Արմէն Շէկոյեան՝ *Անտիպոէզիա* (2000), Մարինէ Պետրոսեան՝ *Կանոնական պատմութիւններ* (1998), Գայեանէ Բաբայեան՝ *Մենապար* (2001), Նարինէ Աւետեան՝ *Փնթի տողեր* (2001) եւ Արփի Ոսկանեան՝ *Ծիկ* (2001)(9):

Արդե՞օք այս ազատագրուած բանաստեղծութիւններէն նմոյշներ երբեւէ հնչած են սփիւռքահայ աւանդական կառոյցներու բեմերէն:

(Շար. 2/3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

3. Անժելա Յարութիւնեան, «Տարածք եւ սուբիեկտ. ֆրագմէնտներ Հայաստանի ժամանակակից արուեստից», 17 Մարտ 2009, *Queering Yerevan*, http://queeringyerevan. blogspot. com/2009/03/ blog-post.html:

4. Վարդան Ազատեան, «Վերակառուցման եւ նէօլիբերալ պետութեան միջեւ», 2 Փետրուար 2012, *Արտերիա*, մշակութային քննադատական ամսագիր, http://www.arteria. am/hy/ 1328187975:

5. Մարինէ Պետրոսեան, «Անտիպոէզիա, կամ երբ բանաստեղծը չի փնտրում ալիբի», *Գրական թերթ*, Երեւան, թիւ 10, 2000. համացանցային տարբերակը՝ http://marinepetrossian. com/hy/about-antipoetry:

6. Անդ:

7. Անդ:

8. Յասմիկ Յակոբեան, «Հակաբանաստեղծութիւն (անտիպոէզիա)», *Գրանիշ*, 12 Մարտ 2016, http://granish.org/hakabanast eghtgutyun-antopoezia/:

9. Անդ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1777 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Ղիկ. عدد رقم ١٧٧٧ الخميس ٢٠ أكتوبر ٢٠١٦


## ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Մենք, որպէս Հայաստանում եւ Սփիւռքում բնակուող հայեր, հաւաքականօրէն հաւատարիմ ենք Հայաստանում անյապաղ փոփոխութեան եւ արդարութեան գործին:

Նկատի ունենալով 2016 գարնանը եւ ամռանը տեղի ունեցած ցնցումները եւ բողոքի ակցիաները, որոնք յանգեցրեցին մարդու եւ քաղաքացիական իրաւունքների կոպիտ խախտումների,

**Մենք ասում ենք Ո՛չ**

համակարգուած կոռուպցիային, մոնոպոլիաներին, դատական անհաւասարութեանը, ոստիկանութեան դաժանութեանը, քաղաքական կողմնակալութեանը, անհաւասար իրաւունքներին, արտագաղթին եւ ընտրակեղծիքներին, որոնք նպաստել են չարունակական անկարգութիւններին:

**Մենք ասում ենք Այո՛**

բոլոր մարդկանց հաւասարութեանը, մարդու իրաւունքների հիմնարար պահպանմանը եւ պաշտպանութեանը, արդար եւ թափանցիկ ընտրութիւններին ուղղակի ներգրաւուածութեանը, օրէնքի գերակայութեան նկատմամբ յարգանքին, արդար աշխատավարձերին, իշխանութեան հաւասարազօր տարանջատմանը, ազատ մամուլին եւ թշուառների պաշտպանութեանը:

**Մենք ասում ենք Այո՛**

չօշափելի, ժողովրդավարական փոփոխութիւններին, Հայաստանի քաղաքացիների հետ քաղաքացիական ներգրաւուածութեան միջոցով:

Որպէս հայերի համաշխարհային համայնք, մենք կը ցանկանայինք, որ Հայաստանի քաղաքական առաջնորդները մարմնաւորեն սկզբունքայնութիւն, հաշուետուութիւն, իմաստութիւն, խելամտութիւն, դիւանագիտութիւն, կարեկցանք, արդիւնաւէտութիւն եւ տեսլական մտածողութիւն, Հայաստանի ժողովրդի հրատապ եւ ակնկալուող կարիքները հոգալու համար եւ այդպիսով ապահովել հաւասար, արդար եւ կառուցողական ուղի դէպի իրական ժողովրդավարութիւնը որտեղ իւրաքանչիւր ձայն կարեւոր է:

«Արդարադատութիւն Հայաստանում»-ը դա մտահոգուած հայերի համաշխարհային կոալիցիա է, ովքեր հաւատում են Հայաստանի ժողովուրդի հետ համերաշխութեանը եւ նրան որ անհրաժեշտ է ներկայ լինելով հանդէս գալ որպէս ականատես եւ դիտորդ ազատ եւ արդար ընտրութիւնների, միեւնոյն ժամանակ ակտիւօրէն ներգրաւելով Հայաստանի բնակչութեանը, այսպիսով նպաստելով մեր ժողովրդի ներկային եւ ապագային: Մենք պէտք է պատկերացնենք մի իրաւահաւասար պետութիւն, որը արժանի է մեր ժողովրդի տոկունութեանը ու հասնել այդ նպատակին: Հաշուի առնելով մեր ազգի արժէքները եւ բնաւորութիւնը, Հայաստանը կարող է եւ պէտք է դառնայ հնարաւորութիւնների, ստեղծագործութեան, ժողովրդավարութեան եւ յոյսի երկիր, մի տարածաշրջանում որը յղի է քաոսով: Այլընտրանքը անհաւատալի է:

Առաջին ստորագրողներ՝

ՍԵՐԺ ԹԱՆԿԵԱՆ, ԱՄՆ (արուեստագէտ, աքթիւիսթ)
ՎԱՀԷ ՊԷՐՊԷՐԵԱՆ, ԱՄՆ (արուեստագէտ, գրող, դերասան, բեմադրիչ)
ԱՏՈՄ ԷԳՈՅԵԱՆ, Գանատա (ֆիլմի բեմադրիչ, գրող, արտադրող)
ԱՐՍԻՆԷ ԽԱՆՃԵԱՆ, Գանատա (դերասան, բեմադրիչ, աքթիւիսթ)
ԷՐԻԿ ՆԱԶԱՐԵԱՆ, ԱՄՆ (ֆիլմի բեմադրիչ, գրող)
ԱԼՊԵՐԹ ԿՈԴԱԳՈԼԵԱՆ, ԱՄՆ (բեմադրիչ, սինեմաթոկրաֆ)
ԱԼԵՔՍԻՍ ՕՀԱՆԵԱՆ, ԱՄՆ (Reddit-ի համահիմնադիր)
ԱՆԴՐԱՆԻԿ ԿՋԻՐԵԱՆ, ԱՄՆ (արուեստագէտ, աքթիւիսթ)
ԱՐԱ ՏԱՊԱՆՃԵԱՆ, ԱՄՆ (երաժիշտ, երաժշտահան)
ԱՐԱ ՏԻՆՔՃԵԱՆ, ԱՄՆ (երաժիշտ, երաժշտահան)
ԱՐԱ ՕՇԱԿԱՆ, ԱՄՆ (արուեստագէտ)
ԱՐԻԱՆ ԱՍՔԱՐԻՏ, Ֆրանսա (դերասան, գրող)
ՔԱՐԼԱ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ, ԱՄՆ (ֆիլմի բեմադրիչ)
ՔՐԻՍ ՊՈՀՃԱԼԵԱՆ, ԱՄՆ (գրող)
ՏԷՅՎԻՏ ԱԼՓԷՅ, Գանատա (դերասան, երաժիշտ)
ԷՐԻՔ ՊՕՂՈՍԵԱՆ, ԱՄՆ (դերասան, թատերագիր, վիպագիր)
ԷՐԻՔ Վ. ԽԱՉԻԿԵԱՆ, ԱՄՆ (երաժշտահան)
ՅԱՍՄԻԿ ՊԱՊԵԱՆ, Հայաստան (սոփրանօ)

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ ԵՐԿՈՒ ԱՌԱՋԱՐԿ ՈՒՆԻ ՎԱՐՉԱՊԵՏ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻՆ

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը *ilur.am* կայքում հանդէս է եկել նոր կառավարութեանն ուղղուած առաջարկութիւններով:

«Կասկած չունենալով, որ Կարէն Կարապետեանը վարչապետի պաշտօնն ստանձնել է երկրի տնտեսական վիճակն առողջացնելու ազնիւ մղումով, կարծում եմ, որ նա առաջին հերթին պէտք է նկատի ունենայ հետեւեալ անժխտելի իրողութիւնը:

Հայաստանի բոլոր չարիքների՝ սոցիալական ծանրագոյն վիճակի, բնակչութեան աղքատութեան, զանգուածային արտագաղթի, բանակի թերզինուածութեան, ապօրինի ընտրութիւնների, արդարադատութեան չգոյութեան, ժողովրդավարութեան եւ մարդու իրաւունքների ոտնահարման արմատը կոռուպցիան է՝ պետական պաշտօնեաների կողմից ազգային հարստութեան համատարած ու անյագ թալանը:

Ուստի կառավարութեան առջեւ կանգնած ամենահրատապ խնդիրը պէտք է լինի կոռուպցիայի դէմ պայքարի ոչ թէ ձեւական, այլ յիրաւի արդիւնաւէտ մեխանիզմների կիրառումը, ինչի համար անհրաժեշտ է.

1. Վերացնել նախարարութիւնների, պետական այլեւայլ գերատեսչութիւնների, ինչպէս եւ տեղական ինքնակառա- ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ԱՊՐԻԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ» ՕԳՆԵՑ ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻՆ ՅՕՐԻՆԵԼ ԶԻՆՈՒՈՐԻ ՄԱՀՈՒԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ

Epress.am, 13 Հոկտեմբեր – Ղարաբաղի ռազմաճակատում Ապրիլի սկզբին իրավիճակի կտրուկ թէժացումը զուգորդուեց տասնեակ զոհերի եւ մարտական գործողութիւնների միւս մասնակիցների հերոսացմամբ: Տեղական մեդիայի նման վարքագիծը յետին պլան գցեց այդ եւ միւս օրերին բանակում տեղի ունեցած մահացութեան դէպքերի հանգամանքների բացայայտումը: Ցայսօր լրատուամիջոցները չարունակում են ռազմական գործողութիւններով չպայմանաւորուած մահերը ներկայացնել իբրեւ «ապրիլեան պատերազմի» զոհեր:

Կոտայքի մարզի Նոր Հաճն քաղաքի բնակիչ, 20-ամեայ ժամկէտային զինծառայող Գէորգ Մղդէսեանը մահացել է Ապրիլի 7-ին Ղարաբաղի առաջնագծում: Պաշտօնական վարկածը՝ հրազէնային վիրաւորում դեռեւս չպարզուած հանգամանքներում: Զինուորի մահուան դէպքի հետ կապուած յարուցուել է քրէական գործ, որը դեռեւս նախաքննութեան փուլում է: Գործով ձերբակալուել է Մղդէսեանի համածառայակիցներից մէկը: Նա մեղադրւում է քրէական օրէնսգրքի 373-րդ յօդուածի 3-րդ կէտի համաձայն՝ «զէնքի, ռազմամթերքի եւ շրջապատի համար առաւել վտանգ ներկայացնող առարկաների, նիւթերի հետ վարուելու կանոնները խախտելը, որն անզգուշութեամբ առաջացրել է մարդու մահ»: Գործը քննւում է Լեռնային Ղարաբաղում, կալանաւորուած զինծառայողի անունը նախաքննական գաղտնիք է:

Ապրիլի 8-ին Պաշտպանութեան նախարարութեան մամուլի խօսնակ Արծրուն Յովհաննիսեանը Ֆէյսբուք սոցցանցի իր էջում ներկայացրել էր 44 զինծառայողների անունները՝ հետեւեալ գրառմամբ. «Ընդհանուր զոհերի ցուցակը՝ Ապրիլի 2-8-ը»: Այդ ցուցակում կար Մղդէսեանի անունը: Հոկտեմբերի սկզբին *Epress.am*-ի հարցմանն ի պատասխան Պաշտպանութեան Նախարարութիւնից ուղարկեցին «Ապրիլի սկզբին Լեռնային Ղարաբաղում զոհուածների» ցուցակը, որտեղ Գէորգ Մղդէսեանի անունը նշուած է «Ոչ մարտական կորուստներ» բաժնում:

44 զինծառայողների այս ցուցակն Ապրիլին հրապարակում էին հայաստանեան լրատուամիջոցները, որոնց զգալի մասը նշում էր, որ զինծառայողները զոհուել են մարտական գործողութիւնների ժամանակ, չնայած ՊՆ խօսնակը չէր նշել, թէ բոլոր այդ մարդիկ զոհուել են մարտերի ընթացքում:

Օրինակ, ըստ *panarmenian.net*-ի, ցուցակում նշուածները, այդ թւում՝ Մղդէսեանը, զոհուել են յանուն Հայրենիքի ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՓՈՐՁՈՒՄ Է ՔՕՂԱՐԿԵԼ ՏԽՈՒՐ ԻՐԱՎԻՃԱԿԸ. ԲԻՒՋԷԻ ՊԱԿԱՍՈՒՐԴԸ ԿԸ ՀԱՍՆԻ 70 ՄԻԼԻԱՐԴ ԴՐԱՄԻ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «ՀՀ պետական եկամուտների կոմիտէի հարկային ծառայութիւնը մինչ օրս դեռ չի հրապարակել, թէ Սեպտեմբերի ընթացքում պետական բիւջէ մուտքագրուած հարկերը եւ տուրքերը որքան են կազմել: Այս փաստն ամենեւին էլ պատահական չէ: ՀՀ կառավարութիւնն այսպիսով փորձում է քօղարկել առկայ, մեղմ ասած, տխուր իրավիճակը: Յիշեցնենք, որ ութ ամիսների արդիւնքներով հարկեր եւ տուրքերից պետբիւջէ մուտքագրուած եկամուտները կազմել էին 696 միլիարդ 100 միլիոն դրամ: Պետական բիւջէի եկամուտների գծով հարկեր եւ տուրքերի ինն ամսուայ պլանը 835 ↳ 4

ՖՐԱՆՍԱ

## ՈՉ ԵՒՍ Է ՌՈՒԲԷՆ ՍԵՒԱԿԻ ԴՈՒՍՏՐԸ՝ ՇԱՄԻՐԱՄ ՍԵՒԱԿ

*Շամիրամ եւ Լեւոն Սեւակներ, 2004*

102 տարեկան հասակին, Նիս քաղաքի մէջ կեանքէն հեռացաւ նահատակ մտաւորական Ռուբէն Սեւակի դուստրը՝ Շամիրամ Սեւակ:

Ծնած էր Պոլիս, 1914-ին: Իր մայրն էր գերմանացի գնդապետ Ֆրանց Ափէլի դուստրը՝ Եանի Ափէլ, որուն հետ Սեւակ ամուսնացած էր Զուիցերիոյ մէջ 1912-ին:

Շամիրամ միշտ հաւատարիմ մնաց իր հօրը անունին ու յիշատակին: Քանիցս այցելած է Հայաստան:

Ռուբէն Սեւակի անդրանիկ զաւակը՝ Լեւոն, մահացած էր 2004-ին:

# «ԵՐԵՒԱՆԸ ՀԱԼԷՊ ՉԷ՛», ՍԱԿԱՅՆ

ՄԱՆՈՒԷԼ ՔԵՇԻՇԵԱՆ

Յուլիս 20-21-ի գիշերը հասայ Երեւան: Թաքսիին մէջ ռատիոյէն սիրտ կսկծացնող ցաւով տեղեկացայ, թէ քիչ առաջ Խորենացի փողոցին մէջ ոստիկանութիւն-ցուցարարներ ընդհարման հետեւանքով վիրաւորուած են 45 հոգի: Վարորդը հայհոյեց ոստիկաններուն: Ինչո՞ւ ոստիկաններուն. որովհետեւ դժգոհ էր իշխանութիւններէն:

Սասնայ Ծռերու ողիսականը տեւեց տասնհինգ օր: Այս տասնհինգ օրերու ընթացքին փորձեցի հասկնալ թէ ինչո՞ւ Արցախեան ազատամարտիկներ դիմած են անցանկալի ողբերգական հետեւանքներով լի զինեալ ծայրայեղ այս քայլին, եւ որովհետեւ «եզրակացութիւններ կատարելու» ժամանակ է՝ համոզում գոյացուցի. ՈՐՈՎՀԵՏԵՒ ԱՅԼ ԵԼՔ ՉԷ՛ ՄՆԱՑԱԾ:

Ընդամէնը տաս օրեր առաջ Հալէպէն եկածս իրաւունք ունի՞մ գլխագրերով այսպիսի նախադասութիւն արձանագրել:

Անմիջապէս-ըսեմ, որ իմս պարզապէս արձանագրել է, արձանագրե՛լ այն՝ ի՛նչ եզրակացութեան հասած է Հայաստանի բնակչութիւնը. ՊՊԾ-ի գրաւման ամբողջ ընթացքին համայն ժողովուրդը կը ղրուատէր Սասնայ Ծռերու հերոսական արարքը, որ կ'արտայայտէր իր դժգոհութիւնը, դժգոհութիւնը տնտեսական, քաղաքական, սահմաններու պաշտպանութեան ողբերգական վիճակէն. արարք որ կ'արտայայտէր ժողովուրդի հաւատքին կորուստը հանդէպ երկրի ղեկավարները (իմա ԻՇԽԱՆԱՒՈՐՆԵՐԸ), որոնք տէրն ու տիրականը դարձած էին ազգաբնակչութեան, որոնք ժողովուրդին հետ կը վարուէին քմահաճօրէն եւ կը մնային անպատիժ՝ օրէնքէն վեր, մէկ խօսքով Կ'ԻՇԽԷԻՆ ԵՒ ՈՉ ԹԷ ԿԸ ՂԵԿԱՎԱՐԷԻՆ: Տեսայ, չօչափեցի նաեւ ժողովուրդի հաւատքին կորուստը ընդդիմութեան հանդէպ, քաղաքական բոլոր ուժերուն հանդէպ. կատարուած եւ կատարուելիք նախագահական եւ Ազգային ժողովի ընտրութիւններուն հանդէպ. ուրեմն այլ ելք չէր մնացած:

Տխրալի են այս բոլորը, նոյնքան տխրալի է այն որ այս դժգոհութիւնները համեմուած էին չյագեցող անարգալի հայհոյանքներով, որ սակայն մերժելի ըլլալով հանդերձ հասկնալի է. հայհոյանքը արդիւնք է կուտակուած մաղձի:

Եւ.

– Հայը հայուն դէմ զէնք բարձրացնելու իրաւունք չունի. – խօսքին պատասխանը համոզիչ էր.

– Հա՞յ է հայ ժողովուրդը ամէն րոպէ անարգողը, հա՞յ է հայաստանցին կեղեքողը, ամէն րոպէ անպատուողը, Հայաստանի քաղաքացին սպաննող անպատիժ մնացողը, «Իշխանաւոր» դարձած երկրին ծառայելու կոչուած պետական այրը հա՞յ է... ժողովուրդի հաշուին միլիարդներ դիզողը հա՞յ է՝ երբ երկրի պարտքերը նշող միլիարդներու թիւը կ'ուռճանայ... երբ երկիրը իր սահմանները պաշտպանելու համար զէնք գնելու հնարաւորութիւն չունի...

Հայաստանցին ինձմէ շատ աւելի լաւ գիտէ, եւ ես հալէպաբնակ «օտար»-ս վերջին մարդն եմ որ պէտք է գրեր այս մասին, մանաւանդ որ սովորութիւն չունիմ չգիտցածիս կամ չհասկցածիս մասին գրելու կամ խօսելու:

Սակայն. «...Երեւանը Պէյրութ կամ Հալէպ չէ. Նախորդ դարաշրջանի սառը պատերազմի տարիների լուծումները թող ոչ ոք չփորձի Մերձաւոր Արեւելքից ներմուծել Հայաստան...»:

..........................

Այս բազմակէտերը իմ չշմելուս արտայայտութիւնն են, անկեղծօրէն ըսեմ չհասկցայ հանրապետութեան ամենաբարձր ամպիոնէն արտասանուած այս բառերուն իմաստը. տարակուսեցայ՝ ճի՞շդ լսեցի արդեօք...

Երեւանը մայրաքաղաք է, Պէյրութը մայրաքաղաք է, Սուրիոյ պարագային Դամասկո՞ս պէտք է ըսուէր արդեօք: Ինչո՞ւ Հալէպ, որովհետեւ Հալէպը հայաշա՞տ քաղաք է, որովհետեւ բազմաթիւ հալէպահայե՞ր կան այսօր Հայաստանի մէջ. սակայն ի՞նչ գործ ունին հալէպահայերը նախորդ դարաշրջանի պաղ պատերազմի լուծումներուն հետ: Արդեօ՞ք ակնարկը կ'երթայ Հայկական հարցը կենդանացնելու միտումով զէնքի դիմած Գաղտնի Բանակի կամ Արդարադատութեան Մարտիկներու տղոց, եթէ այդպէս է, ապա անձամբ հպարտ եմ որ այդ տղոց մէջ քիչ չէր թիւը հալէպահայերուն, որոնք գիտակցաբար իրենց կեանքը զոհեցին բոլորին նաեւ մեզի՝ հայերուս ազդարարելու որ դատ մը ունինք, եւ թէ պահանջատէր պէտք է մնանք: Այդ օրերու հայկական պետականութենէ զուրկ Հայաստանի այսօրուայ անկախ մայրաքաղաք Երեւանի բոլոր փողոցներուն մէջ կը տեսնենք այդ տղոց ներդրումը՝ «Յիշում եմ, պահանջում եմ»-ին մէջ:

Հալէպահայը դեր ունեցա՞ծ է Սուրիոյ մէջ հինգ տարի առաջ ի խնդիր ընկերային, դասակարգային, համայնքային հաւասարութեան ազնիւ միտումով սկսած անզէն յեղափոխութեան մէջ: Ո՛չ, բացարձակապէ՛ս ոչ(*): Հալէպահայը չի հաւատար զէնքով հարցերու լուծումին, զէնքի գործածութիւնը աւելի շատ աւեր կը բերէ քան որեւէ այլ ինչ: Հալէպահայը չէզոքութիւն պահպանած է զարգացող դէպքերուն հանդէպ, յաւակնելով նոյնիսկ օր մը հաշտարար միջնորդի դեր խաղալ կողմերուն միջեւ, թէեւ այդ չէզոքութիւնը երբեմն սխալ թարգմանուած է կարգ մը ընդդիմադիրներու կողմէ եւ այսօր քաղաքացիական, շրջանային, համաշխարհային զինեալ բախումներու թատերավայրի վերածուած Սուրիոյ մէջ կան հինգ հարիւր հազարէ աւելի զոհեր, կան միլիոնաւոր գաղթականներ, քանդուած քաղաքներ եւ գիւղեր, այս բոլորին մէջ յանցաւոր է նաեւ իշխանութիւնը, որուն օդանաւերն ու թնդանօթները կ'աւերեն երկիրը եւ թէական կը մնայ Սուրիոյ նախագահին պնդումը՝ իբր, եթէ իշխանութիւնները չդիմէին առնուած քայլերուն զոհերուն թիւը շատ աւելի մեծ պիտի ըլլար:

Այս սարսափելի թիւերուն մէջ մեր տեղն ունինք նաեւ մենք, աւելին, ամէնէն շատ տուժողներէն մէկը հայն է՝ հալէպահայը, որովհետեւ հարցականի տակ է իր գոյութիւնն իսկ ապագայի Սուրիոյ մէջ, որովհետեւ այլեւս հալէպահայութիւնը դադրած է հզօր գաղութ ըլլալէ, եւ տակաւին օրեցօր կը նօսրանայ ու պիտի շարունակէ նուազիլ մեզի համար այնքա՜ն կարեւոր գաղութ կազմողներուն թիւը:

Հոս պէտք է շեշտել նաեւ որ հալէպահայերու գաղթով մեծապէս պիտի տուժէ նաեւ Հալէպը որ պիտի զրկուի մեղուանման այս փոքրամասնութեան ներկայութենէն:

Հալէպահայութիւնը ունի հարուստ պատմութիւն, Հալէպի մէջ Ս. Աստուածածին եւ Քառասուն Մանկաց եկեղեցիներուն կից դպրանոց ունեցած ենք դեռ 15-րդ դարուն (ուսումնասիրողներ կան որոնք կը նշեն 14-րդ դարը) ուր գրիչներ հայերէնով ձեռագրեր գրած են, «վաճառաշահ» Հալէպի մէջ գործած են Ջուղայեցի հայ վաճառականները, 16-րդ դարուն Պետրոս եւ Սանոս Չելէպի եղբայրները Հալէպի եւ Իզմիրի մէջ ներկայացուցիչները եղած են եւրոպական պետութիւններու: Նորագոյն պատմութեան մէջ արհեստները Հալէպ բերած են հայերը, քիչ չէ թիւը երկիրը կառուցող հայ ճարտարապետներուն, շինարարներուն. հիւանդանոցները արդիական գործիքներով օժտող առաջին բժիշկները հայեր եղած են, որոնցմէ մէկուն՝ բժշկապետ Ասատուր Ալթունեանի անունը կը կրէ հալէպեան կեդրոնական փողոց մը: Մշակութային բոլոր ասպարէզներու մէջ իրենց մեծ ներդրումը ունեցած են հալէպահայ արուեստագէտները:

Այս բոլորին հետ եւ այս բոլորէն անկախ պէտք է նշել որ սուրիահայերու, որոնց շարքին հալէպահայերու գլխաւոր յատկանիշն է ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆԸ՝ հաւատարմութիւնը ազգային իր աւանդութիւններուն, գործի մէջ իր անխարդախ ըլլալուն, ընկերային կեանքի մէջ անբասիրութեան պահպանման, հաւատարմութիւն իր եկեղեցիին, հաւատարմութիւն ՄԱՅՐ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ ԵՒ ԻՐ ԱՊՐԱԾ ԵՐԿՐԻՆ:

Այսօր, Սուրիոյ վեցերորդ տարին թեւակոխած պատերազմի օրերուն, տակաւին Հալէպի մէջ կան տաս հազարի չափ հայեր, որոնց մէջ քիչ չէ թիւը ամէ՛ն պարագայի հոն մնալ որոշողներուն, մնալ եւ տէր կանգնիլ հայու արիւնով ու քրտինքով կառուցուած մեր հարստութիւններուն, որոնք համահայկական ժառանգութեան անփոխարինելի մէկ մասնիկն են: Այսօր Հալէպի մէջ իրենց դռները բաց կը պահեն հայկական դպրոցները, ուր կը տիրէ խստապահանջութիւնը՝ հանդէպ ուսումնառութիւնը, հանդէպ կարգապահութիւնը, երբ պետական բազմաթիւ

➪ 3

ՀԱԼԷՊ

## ՀԱԼԷՊԻ ՄԷՋ ՄԷԿ ՇԱԲԹՈՒԱՆ ԸՆԹԱՑՔԻՆ 7 ԶՈՀ, 14 ՎԻՐԱՒՈՐ

*Գանձասար*, Հոկտեմբեր Ա. – Ուրբաթ, 30 Սեպտեմբեր 2016-ի առաւօտեան վաղ ժամերէն զինեալ ահաբեկչական խմբաւորումներու Հալէպի Նոր Գիւղ, Սուլէյմանիէ եւ Վիլլաներ հայաշատ թաղամասերու հրթիռակոծման հետեւանքով զոհուեցաւ 5, վիրաւորուեցաւ 11 հայորդի:

**Զոհերն են.–** Արման Հինտոյեան, Ծիլա Ճապաղջուրեան, Յասմիկ Կիրակոսեան-Պերճիքլեան, Միրէյ Հինտոյեան, Փիեռ Հարիրօ:

**Վիրաւորներն են.–** Գառնիկ Կարապետեան, Ծովիկ Գապլիքեան, Արա Արամեան, Մարի Կարապետեան, Արշակ Պերճիքլեան, Եագուպ Հարիրօ, Ճորճ Հարիրօ, Յարութ Աւագեան, Պէթի Լախոյեան-Հինտոյեան, Մովսէս Հինտոյեան, Նազար Զարմինեան:

Չորեքշաբթի, 5 Հոկտեմբերին Նոր Գիւղի հրթիռակոծման հետեւանքով նահատակուեցան Գասպար Շաթոյեան եւ Մովսէս Մովսէսեան, վիրաւորուեցան Շահէ Բանոյեան, Յակոբ Աբրահամ Զալաքեան եւ Վարուժան Տօնապետեան:

## ՔՈ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԻ ՏԷՐԸ ԴՈՒ ԵՍ ՖԻԼՄՆ ԱՐԴԷՆ ՀԱՍԱՆԵԼԻ Է ՀԱՄԱՑԱՆՑՈՒՄ

*Էկոլուր*, 14 Հոկտեմբեր – *Էկոլուր* տեղեկատուական Հասարակական Կազմակերպութեան նկարահանած *Քո իրաւունքների տէրը դու ես* ֆիլմն արդէն հասանելի է համացանցում: Ֆիլմի շնորհանդէսը տեղի ունեցաւ սոյն թուականի Հոկտեմբերի 14-ին:

Ֆիլմում արտացոլուած է Հայաստանի Լոռու, Սիւնիքի, Վայոց ձորի եւ Կոտայքի մարզերի էկոլոգիական թէժ կէտերում մարդկանց պայքարը յանուն իրենց իրաւունքների: Ֆիլմը ներկայացնում է Գառնի, Գլաձոր, Գնդեւազ, Սիւնիք, Արծուանիկ, Գեղանուշ, Քաջարան, Շնող համայնքներում անցկացուած հանրային թէժ քննարկումների հետագիծը, մարդկանց յուզող խնդիրներն ու պահանջները:

Կեանքի իրաւունքը ցանկացած մարդու իրաւունքների անբաժանելի մասն է: Նա չի կարող տարանջատուել հողի, օդի, ջրի հիմնական իրաւունքներից: Այդ բնական իրաւունքների վրայ է կառուցուած ամբողջ աշխարհի օրէնսդրական դաշտը: Այս իրաւունքների ոտնահարման խնդիրների շուրջ շնորհանդէսից յետոյ ծաւալուեց քննարկում: ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի տեղակալ Հրաչեայ Պալեանը ՀՀ Օմբուդսմէնի անունից պատրաստակամութիւն յայտնեց սերտ համագործակցել հասարակական կազմակերպութիւնների հետ՝ համատեղ գտնելու խնդիրների լուծման ուղիներ:

## ՖԷՅՍԲՈՒՔԵԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՆՍՏԵԼ Է «ԼԱՅՔԵՐԻ» ԵՒ ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՍԵՂԻ ՎՐԱՅ. *ԱՌԱՒՕՏ*

*Առաւօտ* օրաթերթը գրում է. «Դեռեւս 60-70-ականներին ամերիկացի հոգեբանները խորհուրդ էին տալիս չդիտել հեռուստատեսային նորութիւնները՝ արդարացիօրէն կարծելով, որ եթէ ինչ-որ մի լուրջ բան պատահի, դուք, միեւնոյն է՝ մի տեղից դրա մասին կ'իմանաք: Պատճառաբանութիւնն այն էր, որ լուրեր սարքողները, բնականաբար, նպատակ ունեն դրանք վաճառելու: Իսկ ո՞ր լուրերն առաւել լայն սպառում ունեն՝ իհարկէ, այն լուրերը, որոնք պատմում են որեւէ աղէտի, որեւէ չարիքի, որեւէ մէկի դժբախտ կեանքի մասին: Ընդհանուր առմամբ, ընդունելի խորհուրդ է, եւ ես դրան անպայման կը հետեւէի, եթէ այլ գործով զբաղուէի: Դա առաւել եւս ճիշտ է այսօր, երբ հեռուստատեսային դարաշրջանն աւարտուել է, եւ սկսուել է համացանցի դարաշրջանը, եւ լուրի, կարծիքի, վերլուծութեան հանդէպ պատասխանատուութիւնը պակասել է մի քանի տասնեակ անգամ: Ֆէյսբուքեան ժողովուրդը նստել է «լայքերի» եւ մեկնաբանութիւնների ասեղի վրայ, եւ միջին վիճակագրական օգտատէրն իրեն շատ վատ է զգում, երբ, ասենք, 10 րոպէ որեւէ ծանուցում չի ստանում, եւ տագնապի մէջ է ընկնում՝ «վայ, ուրեմն ինձ մոռացել են, արի մի բան էլ գրեմ, մի բան էլ մեկնաբանեմ, գուցէ ստացուի մի քանի ծանուցում ստանամ»»:

2 ➪

## «ԵՐԵՒԱՆԸ ՀԱԼԷՊ ՉԷ՛», ՍԱԿԱՅՆ

դպրոցներ դադրած են գործելէ, մնացածին մէջ ալ կը տիրէ բացարձակ անտարբերութիւնը հանդէպ կրթութիւնն ու ուսումը:

Հալէպի մէջ կը շարունակեն գործել մեր մշակութային միութիւնները՝ իրենց երգչախումբերով, պարախումբերով, թատերախումբերով, նկարչական եւ երաժշտական դպրոցներով: Այս բոլորը վկայութիւնը չե՞ն մեր աշխատասիրութեան, քաղաքակրթութեան պահպանման ձգտումին: Մինչեւ այսօր տակաւին հայկական գաղութներ Հալէպին կ'ապաւինին ապահովելու կրթական մշակներ:

Երկրին պայմանները մեծ թիւով հալէպահայերու ստիպեցին հեռանալ իրենց պաշտելի քաղաքէն, բարեբախտաբար, ըստ հայաստանեան պաշտօնական աղբիւրներու, անոնցմէ տասնեօթ հազարը բնակութիւն հաստատած են Հայաստանի մէջ: Անոնց մէջ կան ամենաբազմազան մասնագիտութեան տէր մարդիկ, սակայն մեծամասնութիւն կը կազմեն արհեստաւորները: Հալէպահայը աշխատասէր է, նախաձեռնող, խելացի, եւ Հայաստանը մեծապէս կը շահի եթէ տէր կանգնի անոնց: Այս մարդիկ ի վիճակի են ճարտարարուեստական փոքր արհեստանոցներով բաւարարել Հայաստանի բնակչութեան տնտեսական-կենցաղային անհրաժեշտ բազում կարիքներ. օրինակ մը տուած ըլլալու համար նշեմ, որ Հալէպի մէջ 20-30 մեթր քառակուսիի տարածքի մէջ հայերը կ'արտադրէին տարեկան 500-600 սառնարաններ:

Հալէպահայերէն շատեր Հայաստանի մէջ կ'աշխատին ամենատարբեր ասպարէզներու մէջ, անոնք արդէն հայաստանցիներ են եւ ոչ թէ սփիւռքահայեր, եւ Հայաստանի քաղաքացիներ կը վճարեն բոլոր հարկերը: Անոնց հնարաւորութիւն տուէք աշխատելու իրենց մասնագիտութեամբ. անոնք իրենց հետ Հայաստան բերած են իրենց բոլոր բարեմասնութիւնները, քաջալերեցէ՛ք զանոնք իրենց առաւելութիւնները ի սպաս դնելու հայրենի երկրի կառուցման եւ այդ ճանապարհով արդար քրտինքով շահելու իրենց ընտանիքի օրապահիկը, փոխանակ անտեղի «ներմուծում-արտածում» մեղադրանքներ ուղղելով վիհ յառաջացնելու հալէպցիներու եւ հայաստանցիներու միջեւ:

Հալէպահայերը կ'ուզեն լիիրաւ մասնիկը դառնալ Հայաստանին, ուստի եւ արդարօրէն կ'ակնկալեն փտածութիւնը վերացնելու խոստացուած արագ առնուելիք քայլերու գործադրումը, որովհետեւ նախ եւ առաջ անոնք չեն ուզեր Հայաստանի ժողովուրդին համբերութեան բաժակին յորդումին ականատես ըլլալ ի դիմաց անտանելի անօրէնութիւններու: Եթէ յորդի ժողովուրդի մը համբերութեան բաժակը աշխարհի որեւէ մայրաքաղաք կրնայ Դամասկոսի նմանիլ, ուր կրնան դէպքերը զարգանալ անցանկալի կերպով եւ նոյնիսկ առիթ կրնան տալ օտար միջամտութիւններու:

Սասնայ Ծռերու տասնհինգ օրերը սովորական օրեր չէին, անոնք բաւարար էին ցոյց տալու, որ Հայաստանի ժողովուրդը դժգոհ է իր ղեկավարներէն, գիտեմ որ սփիւռքահայերն ալ դժգոհ են իրենց ղեկավարներէն, դժգոհ են մանաւանդ երիտասարդները, որոնցմէ ոմանք վերջերս կը հնչեցնեն այսպիսի խօսքեր.

«Իսկական պայքարը Թուրքերուն դէմ չէ, ոչ ալ Ղարաբաղի համար է, ոչ իսկ հայապահպանման համար է: Իսկական պայքարը Հայաստանի Հանրապետութեան եւ սփիւռքի կառոյցներու (եկեղեցի, կուսակցութիւն...) ժողովրդավարացման պայքարն է: Շատ դժուար ճամբայ ունինք մեր առջեւ:»

Չեմ ուզեր որ ծայրայեղական այս մտայնութիւնը տիրէ մեր հայրենի թէ սփիւռքի հայ երիտասարդի մտածելակերպին վրայ:

Այս մասին միայն մտահոգուիլը չի բաւեր...

Երեւան, 5 Օգոստոս 2016

*Սիվիլնէթ*, 11 Օգոստոս 2016 (http://www.civilnet.am/news/2016/08/11/)

* Այս գաղափարի մասին Քէշիշեան աւելի յստակ կերպով կ'արտայայտուի լրագրող Թաթուլ Յակոբեանի հետ տեսագրած հարցազրոյցին մէջ (*Սիվիլնէթ*, 17 Օգոստոս).

«ՄԱՆՈՒԷԼ ՔԷՇԻՇԵԱՆ (պատասխան) – ...Մեզ համար վերականգնումը [Հալէպի մէջ, Ջ.] շատ դժուար է, որովհետեւ մենք նախ մեր հարեւանների հետ, նրանց հետ ում հետ որ ապրում ենք, մենք մնում ենք բարեկամ բայց իրենք մեզ արդէն տարբեր աչքով են նայում որովհետեւ մենք միշտ եղել ենք իշխանամէտ: Հաւատարիմ ենք եղել իշխանութեան, մեզ համար երկիրը, պետութիւնը, իշխանութիւնը հոմանիշ բառեր են: Մենք իշխանութեան ենք հաւատարիմ: Բայց դրանով մենք չընդունեցինք յեղափոխութիւնը, չընդունեցինք որ դա յեղափոխութիւն է: Մենք համարեցինք որ Ասադն է մեր պաշտպանը եւ Ասադի երկիրը լաւ երկիր է: Հայերը լաւ էին ապրում:

ԹԱԹՈՒԼ ՅԱԿՈԲԵԱՆ (հարցում) – Այսինքն Դուք ասում էք որ սխա՞լ ենք արել: Հայերը սխա՞լ արեցին որ միանշանակ կանգնեցին Ասադի եւ իշխող վարչակարգի կողմին, եւ ուզում էք ակնարկել որ պէտք էր նաեւ, չասեմ լեզու գտնել, բայց շփումներ գտնել ընդդիմադի՞ր խմբերի հետ:

ՄԱՆՈՒԷԼ ՔԷՇԻՇԵԱՆ (պատասխան) – Այո:» (Ծնթգր. Ջ.)

**ԽՈՀԵՐ**

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 25-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ ԱԶԱՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անկախութեան առաջին տասը տարիները բաւարար էին՝ որ խորհրդային ենթարկուածութիւնը փոխարինուէր նէօլիպերալ ենթարկուածութեամբ: Եւ, ինչպէս բնորոշ է Հայաստանի նման կիսա-ամբողջատիրական վարչակարգին (այդպէս էր Տէր-Պետրոսեանէն մինչեւ Սարգըսեան, եւ, ըստ երեւոյթին, այդպէս ալ պիտի մնայ, հակառակ խորհրդարանային կառավարչաձեւի անցնելու ձեւական ու ականներով լեցուն գալիք շրջանին), իշխանականութեան յենակ հանդիսացող եւ իշխանութիւնը իրենց յենակ դարձուցած (այս պարագային՝ խորհրդային ուշ շրջանին ձեւաւորուած մեծահասակ մտաւորականներու եւ շօու-պիզնէսի ներկայացուցիչներու գերակըշռութեամբ) մտաւորական-արուեստագէտներու ամբողջ հոյլի մը զուգահեռ զարգացաւ *այլընտրանք*ային միտքը: Այլընտրանքային միտքը ձեւաւորուեցաւ դիմադրութեան երբեմն յայտարարուած, երբեմն չյայտարարուած բնաբանի ներքեւ, բայց հաստատապէս տարբեր, ինքնուրոյն ըլլալու միտումով եւ, ինչպէս Ի. դարասկիզբի աւանկարտիսթները՝ մշակոյթը հասարակութիւնը շարժելու մղիչ ուժ դարձնելու համոզումով:

Մշակոյթ մը այլընտրանքային կը դառնայ՝ երբ երկու կողմերու ճանաչողութեան ենթակաները կը դառնան անճանաչելիօրէն տարբեր, երբ իշխանական ենթական կը հեռանայ իր գոյաբանական կեցութենէն, անկարող կ'ըլլայ իր իմաստը ստանալ մշակութային համակեցութիւններէ եւ կը պարտադրէ իր եսին գերակայութիւնն ու միակեցութիւնը:

Այլընտրանքային միտքը, շարունակելով աւանկարտիզմը կամ հակաբանաստեղծութիւնը, Հայաստանի մէջ աքթիւիսթական մտածողութիւն մը աւելցուց մշակոյթին մէջ, թէեւ վերահսկուած աքթիւիսթական տարրեր արդէն կը գտնուէին ԱԿՏ-ի եւ նմանօրինակ խմբակներու մօտ:

2001-2004-ին հրատարակուեցաւ այլընտրանքային վիճակով տարածուած *Բնագիր* հանդէսը (խմբագիրներ՝ Վահրամ Մարտիրոսեան եւ Վիոլէտ Գրիգորեան), 2005-էն մինչեւ այսօր, նախ տպագիր եւ ապա համացանցային հրատարակութեամբ լոյս կը տեսնէ *Ինքնագիր* հանդէսը (խմբագիրներ՝ Վիոլէտ Գրիգորեան եւ Վահան Իշխանեան), որոնք զուտ հրատարակչական ձեռնարկ մը ըլլալէ անդին հանդիսացած են եւ կը հանդիսանան մտաւորական քննարկումներու եւ տրամախօսութիւններու (discourses) ակումբային հաւաքատեղիներ՝ մտաւոր աքթիւիզմի կեդրոններ:

Հիմնահոսանքի եւ այլընտրանքի միջեւ ճեղքը նշանակալիօրէն բեւեռացաւ 2008 Մարտ 1-ի դէպքերէն ետք:

Մտաւոր աքթիւիզմին զուգահեռ, 2007-էն Հայաստանի մէջ սկսաւ եւ շատ շուտով ազդեցիկ թափ ստացաւ բուն աքթիւիզմը՝ ազատագրուած միտքի ամենացայտուն արտայայտութիւններէն մէկը: Խորապէս մտահոգուած իշխանութեան նէօլիպերալ քաղաքականութեան պատճառած վնասներով, աքթիւիսթները՝ մեծ մասամբ երիտասարդներ, իջնելով փողոց, ինչպէս նաեւ ֆէյսպուքի եւ այլ միջոցներով հասարակական կարծիք ձեւաւորելով, փորձեցին եւ յաճախ յաջողեցան կասեցնել քանի մը նէօլիպերալ ձեռնարկներ՝ ինչպէս Մաշտոց Պուրակի վերածումը առեւտրական կեդրոնի, խորհրդային 60-ականներու արդիականութիւնը խորհրդանշող բացօթեայ Մոսկուա Սինեմայի քանդումը եւ անոր փոխարինումը եկեղեցիի, եւ այլն: Հաւանաբար այս շարժումներուն ամենաերկարատեւը Թէղուտի հանքերուն դէմ մղուած աքթիւիսթական անվերջանալի պայքարն է, որ իր խորքին մէջ բաւական բարդ պայքար մըն է Հայաստանի հանքարդիւնաբերութիւնը գրաւած մեծ մասամբ ռուսական անդրազգային ընկերութիւններուն (transnational corporations) դէմ:

Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրային ժամանակաւոր վերադարձը 2007-2008-ին եւ ապա Սերժ Սարգսեանի գահակալութիւնը 2008-էն սկսեալ ցուցաբերեցին աքթիւիսթներու հետ առնչուելու երկու տարբեր մօտեցումներ, որոնք երկուքն ալ, բնականաբար, ուղղուած պիտի ըլլային իրենց իշխանութիւններու ամրապնդումին: Տէր-Պետրոսեան իր նախընտրական քարոզարշաւի ընթացքին փորձեց վերադարձնել իշխանական եւ աքթիւիսթական ճանաչողական ենթականերու համաձայնութիւնը, ինչպէս ժամանակին ըրած էր ԱԿՏ-ի պարագային. «Նոյն 2007 թ-ին իր գործունէութիւնը սկսեց «Սկսել ա» երիտասարդական նախաձեռնութիւնը: Նրանք հասարակական վայրերում անցկացրեցին մի շարք ակցիաներ, հիմնականում կրող կառնաւալային բնոյթ: Այս շարժումը քաղաքական նոր սուբիեկտի օրինակ է», կը գրէ Վարդան Ջալոյեան ու կ'աւելցնէ. «2007 թ. ի աշնանը քաղաքական գործունէութեան վերադարձաւ Հանրապետութեան առաջին նախագահ Լ. Տէր-Պետրոսեանը, մասնակցելու համար 2008 թ.-ի փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւններին: Հիմնականում նա փորձում էր յենուել հէնց այդպիսի նոր քաղաքական սուբիէկտների վրայ: Դա յատկապէս խթանեց երիտասարդական նախաձեռնութիւնների ակտիւացմանը, որոնք տարաբնոյթ ակցիաներ են անցկացնում քաղաքային տարածութեան առանցքային տեղերում:»(10)

Օրինակ, դարձեալ Ջալոյեանի համաձայն, աքթիւիսթական կողմնորոշում ունեցող DVD Յեղափոխութիւն շարժումին անունը «առաջին անգամ հնչեցուեց ընդդիմադիր առաջնորդ Լեւոն Տէր-Պետրոսեանի ելոյթներում՝ 2008 թուականին Երեւանում՝ նախագահական ընտրութիւնների նախաշեմին տեղի ունեցած հանրահաւաքների ընթացքում: Ըստ Տէր-Պետրոսեանի՝ նա այդ արտայայտութիւնը լսել էր ցուցարարների խօսակցութիւններից:»(11)

Քոչարեանական-սարգսեանական լուծումը բոլորովին տարբեր էր. ճանաչողական ենթակային դէմ ստեղծել հակադիր ենթակայ մը՝ որ գործէ ինքնուրոյն անունի տակ բայց ենթարկուած ըլլայ իշխանութեան: Մարտ մէկի արիւնալի դէպքերէն ետք, իշխանութիւնները ժամանակաւորապէս կը յաջողին սպաննել աքթիւիսթական շարժումները՝ հարիւրաւոր աքթիւիսթներ նետելով բանտ եւ արգիլելով բոլոր հանրահաւաքները: Ամենէն կարեւորը՝ «[ա]կտիւիստները տուժում են նաեւ իշխանութիւնների աջակցութիւնը վայելող ֆաշիստամէտ խմբերի գործունէութիւնից՝ ՄԻԱԿ, Հասարակական երիտասարդական կուսակցութիւն, «Մէկ ազգ», «Համերաշխութիւն», «Միասին», «Բազէ» եւ այլ», դիտել կու տայ Ջալոյեան(12):

Շատ վտանգաւոր իշխանական խաղ մըն է ասիկա: Իշխանութիւնը՝ պահպանելու համար իր գոյութիւնը, կը դիմէ իր սեփական ժողովուրդի առճակատումին (բոլորովին տարբեր բաներ են ժողովուրդի առճակատումը նոյն ինք ժողովուրդի ընդմէջէն եւ կուսակցական վերնախաւային առճակատումը): Ազատագրութեան խեղդումի փորձ մը՝ իր ամենաշարժուն ու ամենագործունեայ ժամանակ: Հայաստանի աքթիւիզմի ճնշումը, արդարեւ, երկար չի տեւեր: Իսկ այս ազատագրուած շարժումներուն հետ իշխանութիւնը ցարդ կը փորձէ կիրառել իր նոյն միջոցները՝ բռնութիւն եւ հակա-խումբերու ստեղծում:

Վերջապէս, անկախութեան 25-ամեակին առիթով՝ ազատութի՞ւն թէ ազատագրութիւն: Այսօրուայ դրութեամբ, ազատութիւնը՝ հիմնահոսանք, ազատագրութիւնը՝ այլընտրանք:

(Վերջ 3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

10. Vartan Jaloyan, 'New Political Subjects in Armenia and March 1 Events', *Red Thread*, No. 1, 2009, p. 37: Հայերէն թարգմանութիւնը՝ http://www.red-thread.org/dosyalar/site_resim/dergi/pdf/1586442.pdf:

11. Անդ, էջ 38:

12. Անդ, էջ 39: Տե՛ս նաեւ՝ Հ. Ա., «Աքթիւիզմը Հայաստանի մէջ (2007-2012-ի առաջին կէսը), *Ջահակիր*, 29 Մայիս 2014, թիւ 1725:

ՃԱՌԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԿՍՄԻԹՆԵՐ

Ոսկին ըսես նէ՝ հետը խօսք չըլլար. գլուխը առեր կ'երթայ:

Այսօր հարիւր ութսուն, վաղը երկու հարիւր, հետեւեալ օրը երեք հարիւր, օր մ'ալ եթէ իր կամքին թողուի, մինչեւ հինգ հարիւր պիտի երթայ բարեխնամ կառավարութեան կամացը հակառակ:

Տեսա՞ք ժողվելու եւ պահելու բանը, ոսկի պահելու է եղեր. բայց ո՞վ գիտեր, թէ այսչափ պիտի բարձրանար: Մենք ալ չատ անխոհեմութիւն ըրինք. ոսկի պահելու տեղ հին թատրոնները ժողվեցինք պահեցինք: Ապո՛ւշ, ըսեր մէկը, սա թատրոնները ոսկի չըլնե՞ս, ինչո՞ւ պահեր ես:

Ըսող չեղաւ ալ չէ, բայց մենք չհամոզուեցանք. մեր յամառութեան պատիժը քաշենք հիմա, որ սորվինք:

**ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆ**

(Եգիպտոսի մէջ տոլլարի (այսօրուայ ոսկիին...) սեւ շուկայի գինը աննախադէպ բարձրացումով հասաւ 16 Ե.Ո.-ի: Բայց եգիպտահայերս Պարոնեան կարդացած ըլլալնուս համար, իր խորհուրդը լսած ըլլալնուս համար եւ չատոնց է արդէն թատրոններու փոխարէն տոլլար հաւաքած ըլլալնուս համար, բաւական չահեցանք:)

## «ԱՊՐԻԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ» ՕԳՆԵՑ ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻՆ ՅՕՐԻՆԵԼ ԶԻՆՈՒՈՐԻ ՄԱՀՈՒԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ

1

«ղարաբաղա-ադրբէջանական հակամարտ զօրքերի չփման գծում տեղի ունեցած մարտական գործողութիւնների ժամանակ»:

Մինչ ռազմական գերատեսչութիւնը եւ նրան սպասարկող մեդիաները համոզում էին «պատերազմը լուսաբանելիս օգտուել միայն պաչտօնական աղբիւրներից», Պաչտպանութեան Նախարարութեան պաչտօնաթերթը նոյնպէս ապատեղեկատուութիւն է տարածում: *Հայ զինուորը* չարունակում է պնդել, թէ Մղդեսեանն այլոց թւում մահացել է մարտական գործողութիւնների ժամանակ. «2016թ. Ապրիլի 2-ից ղարաբաղա-ադրբէջանական հակամարտ զօրքերի չփման գծում տեղի ունեցած մարտական գործողութիւնների ժամանակ յանուն հայրենիքի մարտիրոսուել են ՊԲ զինծառայողներ»:

Սփիւռքի Նախարարութեան *Հայերն այսօր* պարբերականը «Կորստից ծնուած ապրելու ուժ» յօդուածում նոյնիսկ «պարզել էր» Մղդեսեանի մահուան հանգամանքները: Ըստ պարբերականի՝ Մղդեսեանը զոհուել է Ապրիլի 7-ին՝ «հակառակորդի դիպուկահարի կրակոցից»:

*Razm.info*-ն Մղդեսեանի անունը հրապարակել է «Հայրենիքը պաչտպանելիս զոհուած 44 զինծառայողների անունները. ՀՀ ՊՆ մամուլի քարտուղար» յօդուածում:

*Lratvakan.am*-ը, յղում անելով Լեռնային Ղարաբաղի Պաչտպանութեան բանակին, Մղդեսեանի անունը ներառել էր Ապրիլի 2-ից 5-ը մարտական գործողութիւնների ընթացքում զոհուածների թւում, չնայած զինծառայողը, ըստ ՀՀ ՊՆ-ի, 7-ին է մահացել:

Մղդեսեանին մարտական կորուստներին դասելիս՝ ՊԲ-ի ցուցակին են յղում անում եւս մի քանի կայքեր. *Mediamax.am.* «Փառք հերոսներին՝ յայտնի են զոհուած 44 զինծառայողների անունները»: *Ilur.am.* «Զոհուած զինծառայողների անունները. Ամբողջական. ՊԲ»:

ԱՄՆ-ում գրանցուած Հայրենասէր կազմակերպութիւնը, որն ապրիլեան մարտական գործողութիւնների ընթացքում զոհուած զինուորների ընտանիքներին գումար էր նուիրաբերում, Մղդեսեանի հարազատներին փոխանցել էր 500 դոլար եւ երախտագիտութեան նամակ, որում նչուած է, թէ Մղդեսեանի եւ նրա զինակից ընկերների ցուցաբերած «անհաւատալի քաջութիւնը ապչեցրել է եւ յուզել բոլորիս»:

«Իր անձնազոհութեամբ Գէորգը կեանք պարգեւեց բոլորիս, մեր զաւակներին, մեր ծնողներին: Նա զոհեց իր զգացած սէրը, որ մենք կարողանանք սիրել: Նա զոհեց իր կեանքի նպատակները, որ մենք կարողանանք մեր նպատակները իրագործել...», – մանաւորապէս նչում է Հայրենասէրը:

Հարկ է նչել, որ Մղդեսեանի «ապրիլեան պատերազմից» դուրս զոհուելու մասին գրուել էր արդէն Ապրիլի 8-ին *Հրապարակ* օրաթերթի կայքում: Պարբերականը հրապարակման մէջ իր տեղեկութիւններով յայտնել էր, որ զինուորը զոհուել է զէնքի անզգոյչ օգտագործման հետեւանքով. «Գէորգ Մղդեսեանը 20 տարեկան էր, Կոտայքի մարզի Նոր Հաճնից էր: Ի դէպ, մեր տեղեկութիւններով՝ երիտասարդ տղայի հետ տեղի ունեցածը դժբախտ պատահար էր, անզգուչութիւն զէնքը օգտագործելու ժամանակ: Նա չուտով պիտի զօրացրուէր»:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իր չատ սիրելի մօր՝ ողբ. Սեդա Մարտիրոս Յովակիմեանի (ծնեալ Թուֆայեան) մահուան տխուր առթիւ եւ անոր խնկելի ու քաղցր յիչատակին կը նուիրեն զաւակը՝ Տոքթ. Տիգրան եւ Տիկինը Տոքթ. Շողիկ Յովակիմեան ու դուստրը՝

| | |
|---|---|
| Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ պայծառութեան | 1000 |
| Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ պայծառութեան | 1000 |
| Ամենայն Սրբոց Ազգային Գերեզմանատան | 500 |
| Սուրբ Մինաս Ազգային Գերեզմանատան | 500 |
| «Այծեմնիկ» Հանգիստեան Տան | 500 |
| «Արեւ»ին | 500 |
| «Յուսաբեր»ին | 500 |
| «Ջահակիր»ին | 500 |

*(Վերոյիչեալ բոլոր նուիրատուութիւնները ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)*

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ ԵՐԿՈՒ ԱՌԱՋԱՐԿ ՈՒՆԻ...

1

վարման մարմինների արտաբիւջէտային հաչիւներն ու հիմնադրամները:

2. Անմիջապէս վաւերացնել ՄԱԿ-ի Հակակոռուպցիոն կոնվենցիայի՝ պետական պաչտօնեաների ապօրինի հարստացմանը վերաբերող 20-րդ յօդուածը»:

Ըստ Տէր-Պետրոսեանի, եթէ կառավարութեան ծրագրում այս երկու դրոյթները չընդգրկուեն, ապա Հայաստանի տնտեսական վիճակի բարելաւման ու զարգացման յոյս փայփայելն անիմաստ կը դառնայ, իսկ նոր կառավարութիւնը կ'արժանանայ նախորդ երկուսի բախտին:

«Այս առաջարկները թէեւ նորութիւն չեն ու բազմիցս արծարծուել են, բայց մինչ այժմ մնացել են «ձայն բարբառոյ յանապատի»:

Մինչեւ Հայաստանում կոռուպցիան արմատախիլ չարուի, ոչ մի վարչապետ, որքան էլ կարող, որեւէ յաջողութեան չի հասնի եւ կարճ ժամանակ անց կը դառնայ հերթական քաւութեան նոխազը», – գրել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՓՈՐՁՈՒՄ Է ՔՕՂԱՐԿԵԼ ՏԽՈՒՐ ԻՐԱՎԻՃԱԿԸ...

1

միլիարդ 600 միլիոն դրամ է եղել: Այսինքն՝ բիւջէն չթերակատարելու համար Սեպտեմբերին 139 միլիարդ 500 միլիոն դրամի հարկեր եւ տուրքեր պէտք է հաւաքուէին: *Ժողովուրդի* տեղեկութիւններով՝ հաւաքագրուած գումարը դրանից մօտ 40 միլիարդ դրամով պակաս է եղել: Այսինքն՝ ինն ամիսների կտրուածքով բիւջէի թերակատարումը կազմել է աւելի քան 40 միլիարդ դրամ: Սպասւում է, որ մինչեւ տարեվերջ պետական բիւջէի պակասուրդը կը հասնի 70 մլրդ դրամի»:

## Կ՛ՈՒԶՈՒԻ

Այսու կը ծանուցանենք, թէ Գահիրէի Ազգային Առաջնորդարանը կարիքը ունի կալուածոց բաժնի համար տնօրէնի մը:

Ցանկացողները կրնան դիմել՝ ղրկելով իրենց կենսագրական տուեալները (CV) հետեւեալ էլեկտրոնային հասցէին՝ armpatrcai@yahoo.com, առաւելագոյնը մինչեւ 30 Հոկտեմբեր, 2016:

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 23 Յոկտեմբեր 2016

**ՏՕՆ Է ԳԻՒՏ ԽԱՉԻ**

Սուրբ Պատարագէն ետք պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն Եգիպտոսի Յայոց Թեմին մէջ քահանայագործած եկեղեցականներու

*Տ. ԳԱԲՐԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՐԱՇՑԻԻ*
*Տ. ՄԿՐՏԻՉ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՔԷՅՖՍԸԶԵԱՆԻ*
*Տ. ՄԵՍՐՈՊ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ*
*Տ. ՄԱՏԹԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԻԶՄԻՐԼԵԱՆԻ*
*Տ. ԳԷՈՐԳ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԻՒԹԻՒՃԵԱՆԻ*
*Տ. ՅԱԿՈԲ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՇՈՏ ՓԱՓԱԶԵԱՆԻ (Առաջ. Տեղ.)*
*Տ. ՅՈՎՍԷՓ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՅՎԱԶԵԱՆԻ*
*Տ. ՄԿՐՏԻՉ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՂԱՒՆՈՒՆԻԻ*
*Տ. ԹՈՐԳՈՄ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԳՈՒՇԱԿԵԱՆԻ*
*Տ. ՄԱՄԲՐԷ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՐՈՒՆԵԱՆԻ*
*Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՉԻՆՉԻՆԵԱՆԻ*

հոգւոցն ի հանգիստ:

Ինչպէս նաեւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Չակազիկի նախկին Ս. Խաչ Եկեղեցւոյ

ԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵՐԱՐՆԵՐ՝
*ԱՐՄԵՆԱԿ ՊԷՅ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԻ*
*ԵՒ ԶԱՒԱԿՆԵՐՈՒՆ*
*ԱՐԱՄԻ, ԵՐՈՒԱՆԴԻ, ՏԱՐԻԱՅԻ*

հոգւոց ի հանգիստ:

Յոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի նաեւ *ՆԻՐԸՐ ԻՍԹ* ակումբի ողբացեալ անդամ-անդամուհիներու հոգւոցն ի հանգիստ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

**·Ծանօթ**

Եկեղեցւոյ բոլոր յայտարարութիւնները եւ ծանուցումները ընթերցելու համար հաճեցէք բանալ ԵԳՄ Հոգաբարձութեան դիմատետրի (Facebook)-ի հետեւեալ հասցէն՝

ԵԳՄ Հոգաբարձութիւն - Գահիրէ
**Armenian Church Council in Cairo**

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՅԱՅԱՍՏԱՆՈՒՄ

1

**ՀՐԱՆՏ ԹՈԽԱՏԵԱՆ**, Հայաստան (դերասան)
**ԺԱՔԻ ՆԵՐՍԷՍԵԱՆ**, Ֆրանսա (դերասան)
**ՄԱՐԻԱ ԱՐՄՈՒՏԵԱՆ**, Նիւ Զելանտ (գրող, ռատիոյի հաղորդավար, Օքլընտ Համալսարանի փրոֆեսոր)
**ՆԱՆՍԻ ԳՐԻԳՈՐԵԱՆ**, ԱՄՆ (վիպագիր, բանաստեղծ)
**ՆՈՐԱՅՐ ՔԱՍՓԷՐ**, Գանատա (սինեմաթոկրաֆ, լուսանկարիչ, ճարտարապետ)
R-Mean, ԱՄՆ (արուեստագէտ, OpenWounds1915)
**ՌՈՊԷՐ ԿԷՏԻԿԵԱՆ**, Ֆրանսա (ֆիլմի բեմադրիչ, արտադրիչ)
**ՍԵՊՈՒՀ ՍԻՄՈՆԵԱՆ**, ԱՄՆ (երաժիչտ)
**ՍԵՐԺ ԱՒԵՏԻՔԵԱՆ**, Ֆրանսա (ֆիլմի բեմադրիչ, դերասան, արտադրիչ)
**ՍԻԼՎԻՆԱ ՏԷՐ ՄԿՐՏԻՉԵԱՆ**, Գերմանիա (տեսողական արուեստագէտ, ֆիլմի բեմադրիչ)
**ԹԷՈՏՈՐ ՊՕՂՈՍԵԱՆ**, ԱՄՆ (բեմադրիչ, գրող, արտադրիչ)
**ՎԻԳԷՆ ՉԷԹԷՐԵԱՆ**, Զուիցերիա (պատմաբան, լրագրող)

(https://www.change.org/p/justice-within-armenia)

Այս խնդրագիրը (petition) համացանցի մէջ տեղադրուած է անկախութեան 25-ամեակի օրերուն: Հոկտեմբեր 20-ի տուեալներով, համացանցի վերոյիշեալ կայքին միջոցով խնդրագիրը ստորագրած է 3800 անձ, Ջ.:

دار شورشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1778 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՆՈՅԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ. ٣ نوفمبر ٢٠١٦ عدد رقم ١٧٧٨ الخميس


## ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 27-Ի ՈՃԻՐԸ՝ ՀԱՅՈՑ ՊԵՏԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԳԼԽԻՆ ԿԱԽՈՒԱԾ ԱՄՕԹԱԼԻ ԽԱՐԱՆ

*Լեւոն Տէր-Պետրոսեանի ելոյթը Ազատութեան Հրապարակում 2007 Թուականի Հոկտեմբերի 26-ին տեղի ունեցած Հանրահաւաքում*

**Հոկտեմբերի 27-ի խորհուրդը**

Ասուեց արդէն, որ Հայաստանի ներկայ յանցաւոր իշխանական համակարգի ձեւաւորման սկիզբն ուղղակիօրէն կապուած է 1999 Թուականի Հոկտեմբերի 27-ի ոճրագործութեան հետ: Չնայած անցած ութ տարիներին արտայայտուած հազարաւոր գնահատականներին ու վերլուծութիւններին, ինձ Թւում է, այդ սահմռկեցուցիչ իրադարձութեան էութիւնը դեռեւս ամենայն խորութեամբ չի լուսաբանուած: Հայ ժողովրդի եւ Հայոց պետականութեան շուրջ երեքհազարամեայ պատմութեան մէջ Հոկտեմբերի 27-ը յիշեցնող միայն երեք նախադէպ է արձանագրուել: 705 Թուականին Նախճաւան քաղաքի եւ մօտակայ Խրամ աւանի եկեղեցիներում արաբները ողջակիզեցին հայ նախարարների ողջ աւագանուն: 1915 Թուականի Ապրիլի 24-ին երիտԹուրքերը գլխատեցին արեւմտահայ քաղաքական եւ մտաւորական ընտրանուն: Իսկ 1930-ական Թուականներին Ստալինը ոչնչացրեց Հայաստանի ղեկավարութեան եւ մտաւորականութեան ամենակարկառուն դէմքերին: Սակայն տուեալ պարագայում համեմատութիւնը սոսկ արտաքին է ու մակերեսային: Հոկտեմբերի 27-ի սպանդը վերոյիշեալ եղեռնագործութիւններից արմատապէս տարբերւում է նրանով, որ իրականացուել է ոչ Թէ օտարների, այլ հայերի իսկ ձեռքով:

Մինչեւ բուն նիւԹին անցնելը, աւելորդ չեմ համարում ձեր ուշադրութեանը ներկայացնել յուշապատմական մի պատառիկ: Խորհրդարանական մղձաւանջի յաջորդ առաւօտեան ինձ զանգահարեցին Պաշտպանութեան նախարարութիւնից հրաւիրելով մասնակցել բանակի ղեկավարութեան եւ քաղաքական ուժերի միջեւ նախատեսուած մի խորհրդակցութեան: Ես կտրականապէս մերժեցի եւ, խօսակիցներիս խստօրէն սաստելով, ասացի մօտաւորապէս հետեւեալը. «Բանակի ի՞նչ գործն է խառնուել քաղաքականութեանը եւ միջամտել երկրի ներքին գործերին: Դուք բոլորովին ուրիշ առաքելութիւն ունէք, այն է՝ ապահովել Հայաստանի սահմանների անվտանգութիւնը եւ կանխել երկրին սպառնացող վտանգները»: Զբաւարարուելով այդքանով, ես անմիջապէս հրապարակեցի մի յայտարարութիւն՝ կոչ անելով համախմբուել նախագահի շուրջ եւ միասնաբար յաղԹահարել ծագած ճգնաժամը: Դրանից յետոյ Ռոբերտ Քոչարեանը զանգահարեց ինձ եւ շնորհակալութիւն յայտնեց այդ առԹիւ: Դա իշխանափոխութիւնից յետոյ իմ եւ Քոչարեանի առաջին ու վերջին խօսակցութիւնն էր: Իմ մտահոգութիւնն այդ պահին ոչ Թէ նախագահի դիրքի ամրապնդումն էր, այլ քաոսից խուսափելու եւ Ադրբէջանի հնարաւոր ագրեսիւ նկրտումները կանխելու անհրաժեշտութիւնը: Գաղտնիք չէ, որ Արցախեան պատերազմում հայկական կողմի ձեռք բերած յաջողութիւնները մեծապէս պայմանաւորուած էին իշխանութեան ՄուԹալիբովից-Էլչիբէյին եւ Էլչիբէյից-Ալիեւին անցման շրջանների քաոսային ու գրեԹէ անիշխանական իրավիճակներով: Ուստի Ադրբէջանը չէր կարող չմտածել Հայաստանի նմանօրինակ վիճակից օգտուելու հնարաւորութեան մասին: Այսքանն՝ ի միջի այլոց: Իսկ այժմ վերադառնանք օրուայ ողբերգական Թեմային:

Առաջին հայեացքից բոլորին Թւում էր, Թէ Հոկտեմբերի 27-ի գործի բացայայտումն առանձնապէս դժուարութիւն չպէտք է ներկայացնի: Ոճրագործութիւնը կատարուել էր հարիւրաւոր պատգամաւորների եւ միլիոնաւոր հեռուստադիտողների աչքի առջեւ, բուն կատարողները ոչ միայն յայտնի էին, այլեւ կալանաւորուած, ուստի անհնար էր պատկերացնել, Թէ ի՞նչը պիտի խանգարէր անաչառ քննութեանն ու դատավարութեան ընԹացքին: Այս ամէնը, սակայն, միայն առաջին հայեացքից: Շատ շուտով մենք ականատեսը եղանք չափազանց արտառոց մի երեւոյԹի: Հանրապետութեան նախագահն, իր բացայայտ միջամտութիւններով, ոչ միայն ամէն ինչ արեց հետաքննութեան եւ դատավարութեան բնականոն ընԹացքը

↳ 4

ԹՈՒՐՔԻԱ

## ՊԱՏՐԻԱՐՔ Ի ՀԱՆԳՍՏԵԱՆ

Պոլսոյ Պատրիարքական ԱԹոռի Եկեղեցական ընդհանուր համագումար ժողովը պաշտօնապէս հանգստեան կոչեց Թուրքիոյ Հայոց 84-րդ պատրիարք Տ. Մեսրոպ Արք. ՄուԹաֆեանը: Այսպէսով Պատրիարքական ԱԹոռը պաշտօնապէս հռչակուեցաւ Թափուր:

Հոկտեմբեր 26-ին, Պատրիարքարանի մէջ տեղի ունեցաւ Եկեղեցականաց ընդհանուր համագումարի նիստը, որ իր բնոյԹով եղաւ պատմական: Համագումարի արդիւնքին որոշուեցաւ դիմում կատարել յաչս պետութեան՝ խնդրելով արտօնութիւն, որպէսզի նո՛ր, ազգընտրիր գահակալի մը ընտրութիւնը կատարուի, ըստ մեր ընկալեալ աւանդական կանոններուն եւ գահ բարձրանայ Թուրքիոյ Հայոց 85-րդ պատրիարքը:

Այսպէսով բաւական երկար ժամանակաշրջանէ մը ի վեր շարունակուող անցումային շրջանի վերջ տալու տեսակէտէ շատ կարեւոր քայլ մը առնուեցաւ: Կրօնական Ժողովէն ներս եղած խմորումներու հիման վրայ համագումար ժողովը ընդունեց սոյն որոշումը: Եկեղեցականաց համագումարը հաստատեց Տ. Մեսրոպ Արք. ՄուԹաֆեանի «Պատրիարքական ուխտ»ի լուծումը՝ ընդգծելով, որ եկեղեցական ընկալեալ կանոններն ու աւանդութիւնը այս ուղղութեամբ բաւարար կը նկատեն եօԹ տարուան բացակայութիւնը: Միեւնոյն ժամանակ որոշման համար որպէս հիմք ծառայեց անցեալ տարի Տ. Մեսրոպ Արք. ՄուԹաֆեանի համար պատրաստուած դատաբժշկական

↳ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՈՐՈՇՈՒՄ Է ՈՉ ՄԻԱՅՆ ՀՀԿ-Ի ՑՈՒՑԱԿԸ. ՄԱՍՆԱԳԷՏՆԵՐԸ ԴԺԳՈՀ ԵՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՕՐԷՆՔԻՑ

2 Նոյեմբեր, epress.am - Սահմանադրական փոփոխութիւններով Հայաստանն անցել է բացարձակ կուսակցական իշխանութեան, իսկ կուսակցութիւնները ժողովրդավար չեն. կան կուսակցութիւններ, որոնց նիստերը անցկացւում են փակ՝ առանց լրագրողների, կան կուսակցութիւններ, որտեղ դուրս գալու իրաւունք չկայ. մարդիկ երդւում են ատրճանակի վրայ, եւ կարող են միայն հեռացուել: Այս մասին «Մեդիա-կենտրոնում» կուսակցութիւնների մասին օրէնքի քննարկման ժամանակ ասել է քաղաքա-

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ԱՌԻԹՈՎ ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆԻ ՀԵՏ

*Հոկտեմբեր 27-ին, իր զաւակի Ստեփան Դէմիրճեանի, հարազատներու եւ ընկերներու հետ Կոմիտաս ՊանԹէոն կ'այցելէ ոճրագործութեան զոհ դարձած Կարէն Դէմիրճեանի այրին Ռիմա Դէմիրճեան:* 1in.am *ՊանԹէոնին մէջ Ռիմա Դէմիրճեանի հետ կը տեսագրէ հարցազրոյց մը, որուն ամբողջական բնագիրը կը ներկայացնենք մեր ընԹերցողներուն:*

ՀԱՐՑՈՒՄ - 17 տարի անց, ինչո՞ւ չբացայայտուեց ըստ Ձեզ:

ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆ - Այս 17 տարի անցել է բայց գիտենք այդ գործի մասին էնքան ինչքան 1999 Թուի Հոկտեմբերի 27-ին: Ոչ մի բան չբացայայտուեց:

ՀԱՐՑՈՒՄ - Քաղաքական կա՞մք էր պէտք:

ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆ - Ես կարծում եմ որ նման յանցագործութիւնները չեն բացայայտըւում, նոյնիսկ երբ իմանում են: Քենէդիի սպանութիւնը բացայայտուե՞ց՝ չբացայայտուեց, բայց շատերը գիտեն ինչից է, կարելի է ենԹադրել: Ես օրինակ մի բան գիտեմ, որ ինքը շատերին խանգարում էր եւ դրսում եւ ներսում: Ընդհանրապէս սա գլոբալ հարց է, գլոբալ քաղաքականութեան հարց է, մերտեղի հետ այնքան չի կապուած ինչքան դրսի: Ճիշտ է, հայերի ձեռքերով են կատարել բայց հայերը շատ Թշնամիներ ունեն, երեւի տեսան որ յատկապէս միասնութիւնը՝ երբ միացաւ Վազգէնի հետ, դա հզօր ուժ էր, դրանից վախեցան:

ՀԱՐՑՈՒՄ - Ուրի՞շ Հայաստան կ'ունենայինք:

ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆ - Իհարկէ ուրիշ: Ես չեմ ասի, չեմ ստի որ ամէն ինչ լաւ կը լինէր որովհետեւ ժամանակները դժուար են, ղեկավարելը շատ դժուար է բայց զգալի չափով մի քիչ ուրիշ ձեւի կը լինէր: Գիտէք, Կարէն Սերոբովիչը ասել է էսպիսի խօսքեր մի ինտերվիուում՝ որ իշխանութիւնը ծանր բեռ է, դժուար գործ է, բայց եւ հաճելի եԹէ ուզում ես ծառայել ժողովրդիդ, երկրիդ: ԵԹէ ծառայում ես հաճելի է:



ՀԱՐՑՈՒՄ - Ի՞նչ ազդեցութիւն ունեցաւ մեր երկրի վրայ, տնտեսութեան վրայ ըստ Ձեզ:

ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆ - Ոչ միայն տնտեսութեան: Տնտեսութիւնը իր հերԹին բոլոր ոլորտների վրայ քայքայիչ ազդեցութիւն ունեցաւ, մինչեւ հիմա շարունակւում է: 17 տարի, օր չի լինում, հաղորդում չի լինում, գիրք չի լինում որ չյիշեն Կարէն Սերոբովիչին: Դա հոգեբանօրէն շատ ծանր է մարդկանց համար, ժողովրդի համար: Ուղղակի այդ յանցագործութիւնը խափանեց մեր ամբողջ կեանքը, ոչ միայն մեր անձնականը, այլ հասարակութեան հանգիստը, հաւատը, նպատակասլացութիւնը: Ամէն ինչը խաԹարուեցին:

ՀԱՐՑՈՒՄ - Ինչպիսի՞ Հայաստան էր երազում:

ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆ - Անկախ եւ հզօր: Նա ասում էր անկախութիւնը լաւ բան է բայց անկախութիւնը պէտք է ամրագրես եւ ապահովես, յատկապէս տնտեսական անկախութեամբ՝ որը շատ դժուար հարց է: Բայց նա այդպիսին էր տեսնում Հայաստանը:

ՀԱՐՑՈՒՄ - Կը յաջողուի՞ բացայայտել, ըստ Ձեզ, ինչ որ մի օր:

ՌԻՄԱ ԴԷՄԻՐՃԵԱՆ - Ինձ Թւում է չէ: Ես միշտ ասել եմ, որ դա կարող է միայն պատահականօրէն ստացուի որովհետեւ դա էնպիսի ուժեր են էստեղ խառնուած որ...: Նրանք շատ մտածուած են...: Դուք նկատեցիք, ինչո՞ւ պէտք է գային Ազգային Ժողով, ինչո՞ւ պէտք է ասէին Թէ պատահական ենք սպանել: Ո՞նց էք պատահական սպանել երբ ստուգողական կրակոց է եղել: Ամէն ինչ մտածուած էր մինչեւ վերջ: Սա շատ հմուտ կազմակերպուած քաղաքական սպանութիւն էր:

# ՄԱՃՆՈՒՆ ԼԱՅԼԱ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ

**ՍԱՄՀԱ ԱԼ-ԽՈՒԼԻ**

Եգիպտացի երաժշտագէտ Տոքթ. Սամհա Ալ-Խուլի (1925-2006) 2002-ին Գահիրէի մէջ կը տպագրէ իր յօդուածներու ժողովածուն՝ *Մըն հայաթի մա՛ա ալ-մուսիքա* (Կեանքս երաժշտութեան հետ), հրատարակութեամբ Տար Ալ-Շուրուքի: Գիրքի գլուխներէն մէկն է՝ «Մաճնուն Լայլա ֆի ալ-մուսիքա» (Մաճնուն Լայլա երաժշտութեան մէջ) (էջ 246-270), որ վերահրատարակութիւնն է *Աֆաք արապիյիա* պարբերականին մէջ 1988-ին հրատարակած յօդուածին:

Ընդհանուր նախաբանէ մը ետք, հեղինակը մանրամասն կը գրէ ու կը վերլուծէ *Լէյլի եւ Մէճնուն* նիւթին հիման վրայ Ուզէիր Հաճիպէքովի, Կարա Կարաեւի եւ Սարգիս Բալասանեանի յօրինած ստեղծագործութիւնները: Ստորեւ արաբերէնէ թարգմանելով կը ներկայացնեմ Բալասանեանին յատկացուած ամբողջ հատուածը:

Հ. Ա.

## ԲԱԼԱՍԱՆԵԱՆԻ *ԼԷՅԼԻ ԵՒ ՄԷՃՆՈՒՆ* ԹԱՏԵՐԱՊԱՐԻ ՆՈՒԱԳԱՇԱՐԸ

Սիրոյ հանրայայտ պատմութենէն ներշնչուած երրորդ գործը կը հանդիսանայ ժամանակակից երաժշտահան Սերգէյ Բալասանեանի թատերապարը [ballet](1): Թէեւ Բալասանեանի հռչակը բաւարար կերպով չէ տարածուած իր երկիրէն դուրս, բայց ան կը հանդիսանայ այն կարկառուն երաժշտական անհատականութիւններէն մէկը, որ կարեւոր դերակատարութիւններ ունեցած է իր երկիրի երաժշտական կեանքին մէջ՝ իբրեւ երաժշտահան, փրոֆեսոր եւ երաժշտական մշակոյթը տարածող գործիչ: Ծնած է 1902-ին: Հակառակ իր հայ արմատներուն, ան ծնած ու մինչեւ 1943 ապրած է Թաճիքիսթանի մէջ(2): 1935-ին աւարտած է Մոսկուայի Երաժշտանոցի յօրինողութեան բաժինը: 1948-էն սկսեալ, Մոսկուայի Երաժշտանոցին մէջ աստիճանաբար կը բարձրանայ իր մանկավարժական դիրքը՝ հասնելով մինչեւ յօրինողութեան փրոֆեսորի աստիճանին, որմէ ետք՝ 1965-1971-ին, կը նշանակուի յօրինողութեան բաժինի վարիչ: Կարեւոր երաժշտական գործունէութիւն ունեցած է խորհրդային ձայնասփիւռին եւ Մոսկուայի կեդրոնական Երաժշտահաններու Միութեան մէջ: Մահացած է 1970-ականներուն:

Բալասանեան յատուկ ուշադրութիւն ցուցաբերած է թատերական երաժշտութեան նկատմամբ: Յօրինած է օփերաներ, որոնցմէ մէկը՝ *Վոսէի ապստամբութիւնը*, կը հանդիսանայ թաճիքական առաջին օփերան: Թատերապարի բնագաւառին մէջ յօրինած է *Լէյլի եւ Մէճնուն* եւ *Շաքունթալա* (հնդկական ոճով) թատերապարերը: Սթալինապատի(3) օփերայի թատրոնի բացումին համար գրած է երգչախումբի եւ նուագախումբի քանթաթ մը: Իր ընդարձակ ճամբորդութիւնները արտացոլուած են նուագախումբի համար գրուած նուագաշարերուն մէջ՝ *Թաճիքական, Փամիրական*(4), *Աֆղանական պատկերներ, Հայկական Ռափսոտի, Սէմֆոնիք պատկերներ Ինտոնեզիայի կղզիներէն*: Յօրինած է նաեւ *Ռափսոտի Ռապինտրանաթ Թակորի երգերու թեմաներուն վրայ* նուագախումբի համար, եւս վեց երգ Թակորի երգերուն վրայ մեներգի եւ դաշնակի համար(5) եւ հինգ երգ սպանիական բանաստեղծութիւններու վրայ: Դաշնակի համար յօրինած է *Երեք փրելիւտ չինական թեմաներով*: Գրած է նաեւ *Օմար Խայեամի երեք քառեակները* երգի համար, ինչպէս նաեւ մեծաքանակ երգեր Թաճիքիսթանի, Փամիրի, Լատինական Ամերիկայի եւ այլ եղանակներու վրայ: Նշելով Բալասանեանի ստեղծագործութիւններուն այս «համառօտ» բազմազանութիւնը, նպատակ ունեցանք լաւագոյնս ներկայացուցած ըլլալ երաժշտահանը եւ ցոյց տուած ըլլալ իր երաժշտական մտահորիզոնի լայնախոհութիւնը՝ որ զուգահեռ ընթացած է իր ընդարձակ ճամբորդութիւններուն հետ, ճամբորդութիւննր՝ որոնց ընթացքին ներկայացուցած է իր երկիրի երաժշտական մշակոյթը, եւ որոնք արտացոլուած են իր բազմազան ստեղծագործութիւններուն մէջ՝ գեղարուեստական կապ ստեղծելով Հնդկաստանի, Լատինական Ամերիկայի, Ինտոնեզիայի եւ այլ երկիրներու հետ:

## *ԼԷՅԼԻ ԵՒ ՄԷՃՆՈՒՆԸ* ԹԱՏԵՐԱՊԱՐԻ ԱՇԽԱՐՀԻՆ ՄԷՋ

Լայլայի(6) պատմութենէն ներշնչուած Բալասանեանի թատերապարի ուղին միանշանակ չընթացաւ: 1947-ին յօրինեց անոր առաջին տարբերակը, որ ներկայացուեցաւ Սթալինապատի մէջ: Պետական մարմինները խստօրէն քննադատեցին զայն (մտաւորականներուն եւ կուսակցութեան կեդրոնական յանձնախումբին միջեւ եղած հակամարտութեան ոլորտին մէջ, որ իր բարձրակէտին հասաւ 1948-ի ծանօթ ճակատումով): Հետեւաբար, 1956-ին Բալասանեան յօրինեց անոր երկրորդ տարբերակը, որմէ ետք անգամ մը եւս վերախմբագրեց զայն: Այս վերջնական տարբերակը՝ որ կը հնչէ այսօր, ներկայացուեցաւ 1964-ին: Յաջողութեան արժանացաւ թատերապարի երաժշտութեան հիման վրայ յօրինած նուագախումբի նուագաշարը, որ շարունակուեցաւ կատարուիլ իբրեւ նուագախումբի ինքնուրոյն ստեղծագործութիւն՝ անկախ թատերապարէն:



*Գիրքին կողքը*

## ԹԱՏԵՐԱՊԱՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԼԻՊՐԵԹԹՈՆ

Շնորհիւ իր ճամբորդութիւններուն եւ Ռուսաստանի ու այլ վայրերու մէջ իր ստանձնած երաժշտական պատասխանատուութիւններուն, Բալասանեան առիթ ունեցաւ ծանօթանալու այս պատմութեան զանազան տարբերակներուն, ոչ միայն բանաստեղծութեան տեսանկիւնէն, այլեւ ուզպէքական, քազախական, թաճիքական, աֆղանական եւ հնդկական փոլքլորի առումով, այնպէս ինչպէս այս տուեալ ժողովրդական մշակոյթը եւ բանաստեղծները արտայայտած են՝ իւրաքանչիւրը իր սեփական ոճով:

*Սարգիս Բալասանեան*

Ակնյայտ է, որ թատերապարի լիպրեթթոյի պատրաստութեան համար նշանակութիւն ունին պարային թատերական ներկայացումի իւրայատուկ նկատառութիւններ՝ որոնք կը տարբերին օփերայէն: Թատերապարի լիպրեթթոն կը պահանջէ պատմութեան որոշ յարմարեցում մը թատրոնի պահանջներուն: Թատերապարի բնագաւառին մէջ երաժշտահանը կը շարժի պարուսոյցի (choreographer) մտապատկերացումի շրջանակին մէջ: Այս պատճառով, *Լէյլի եւ Մէճնուն* թատերապարին մէջ մուտք գործեցին հատուածներ ու պարեր որոնք չեն գտնուիր բնագիր պատմութեան մէջ եւ ոչ ալ Հաճիպէքովի օփերային մէջ: Այս յաւելումները մեզի համար կը յստակուին թատերապարէն քաղուած նուագախումբի նուագաշարի վերնագիրներէն՝ «Նախաբան եւ ստրուկներու շուկան», «Հովահարներու պար», «Մարոքուհիներու պար», «Ստրկուհիի պար», «Ատաճիօ» (դանդաղ քնարերգական եղանակ), «Ռազմիկներու պար», «Փաթտոցներու պար», «Սգոյ պար», «Լայլայի եւ Իպն Սալամի տեսարան», «Քայս անապատին մէջ», «Նոքթիւրն», «Տքախումբը»:

Բալասանեանի երաժշտական ոճը սահուն է, գունաւոր եւ ռոմանթիք շունչով յագեցած: Երաժշտահանը ներշնչուած է ժողովրդական երաժշտութենէ՝ զոր օգտագործած է պատշաճ դրսեւորումներով: Բայց ան փոլքլորային տարրերը չ'ընդունիր իբրեւ ինքնանպատակ գոյութիւններ, այլ անոնցմէ կը քաղէ թատրերգական արտայայտութեան համար անհրաժեշտ այն միջոցները՝ որոնք իր երաժշտական հիւսուածքին կ'ընծայեն կենդանութիւն ու բազմազանութիւն եւ կը յիշեցնեն թատերապարի նիւթին մշակութային ակունքները: Հակառակ ժամանակակից տարահնչիւնութեան [dissonance] առկայութեան, իր ոճը զգացախառն է եւ յուզումնալից, գլխաւոր յատկանիշ ունենալով նուագախմբային գունաւորումի վարպետութիւնը եւ «լոյսի եւ ստուերի» գերազանց տեղաբաշխումը՝ որ ցոյց կու տայ երաժշտահանին ընդարձակ երեւակայութիւնը եւ ստեղծարարութիւնը: Ան թատերապարը (ինչպէս նաեւ անկէ սերած նուագաշարը) կը հիմնէ երեք «նիւթեր»-ու կամ երաժշտական միտքերու վրայ՝ սիրոյ թեմա, սիրոյ անկեղծութեան թեմա եւ Լայլայի կարօտի եւ խանդագին զգացումներու թեմա: Բացի այդ, պատմութեան նիւթէն դուրս գտնուող բազմաթիւ պարերը՝ զորս լիպրեթթիսթը աւելցուցած է ըստ թատերապարի պահանջներուն, երկու գլխաւոր տիպարները երբեմն կը դարձնեն մթագնած եւ գլխաւոր դէպքերը կը շրջապատեն բազմաթիւ յաւելագրութիւններով որոնք ուղղակիօրէն չեն ծառայեր թատերական նիւթին:

Երաժշտական հաւասարակշռութեան օրէնքները թատերապարի երաժշտութեան եւ նուագախումբի նուագաշարին կը թելադրեն հակադրութեան սկզբունքը: Այս սկզբունքը կիրառուած է պարերու յաջորդականութեան կամ նուագաշարի շարժումներուն [movements] մէջ, ➩ 3



# ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ԲԱՑԱՅԱՅՏՄԱՆ ՀԱՄԱՐ ԿԱՄՔ Է ՊԷՏՔ. ՄԻԱՍՆԻԿ ՄԱԼԽԱՍԵԱՆ

Հոկտեմբերի 27-ը մեր ժողովրդի ամենաողբերգական էջերից մէկն է, որն առ այսօր բացայայտուած չէ: *ArmLur.am*-ի հետ զրոյցում նման տեսակէտ արտայայտեց Ազգային Ժողովի նախկին պատգամաւոր Միասնիկ Մալխասեանը, ով 1999 թուականի Հոկտեմբերի 27-ի ահաբեկչութեան օրը եղել է նիստերի դահլիճում: «Ամէն անգամ Հոկտեմբերի 27-ին գալով Պանթէոն, Եռաբլուր, այդ վէրքը նորից թարմանում է, առաւել եւս, որ բացայայտուած չէ: Չեմ կարող ասել՝ ինչն է խանգարում բացայայտմանը, բայց ժամանակին Ռոբերտ Քոչարեանն ասում էր ընդամէնը մի ուչաստկովի գործ է: Դա ուղղակի կարելի է հասկանալ, որ դրա բացայայտման համար շատ քիչ բան է պէտք, ընդամէնը քաղաքական կամք», - յաւելեց նա:

# *ԱՄՈՒԼՍԱՐ. ԿԵԱՆՔ, ԹԷ՞ ՀԱՆՔ.* ԲՈՂՈՔ ՀԱՆՔԱՐԴԻՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԾՐԱԳՐԻ ԴԷՄ

27 Հոկտեմբեր, epress.am - Հոկտեմբերի 27-ին մի խումբ բնապահպաններ *Ամուլսար. կեանք, թէ՞ հանք* խորագրով բողոքի ակցիա են անցկացրել ՀՀ Կառավարութեան շէնքի դիմաց՝ դատապարտելով Ջերմուկից 10 կիլոմետր հեռաւորութեան վրայ գտնուող Ամուլսարում ոսկու հանքի շահագործման ծրագիրը եւ պահանջելով դադարեցնել այն:

«Գնացէք ցիանիդի ծոցը», «Ջուր թէ՞ ցիանիդ», «No Mining at Amulsar» (Ոչ Ամուլսարի հանքին), «Hands off Armenia» (Ձեռքերդ հեռու Հայաստանից) գրառումներով պաստառներով բնապահպանները կանգնել են Կառավարութեան շէնքի մօտ եւ տեղեկատուական թերթիկներ բաժանել անցորդներին:

Դրանց մէջ ասուած էր, որ Ամուլսարում նախատեսւում է տարեկան վերամշակել 10 միլիոն տոննա հանքաքար, իսկ ոսկին հարստացուելու է խիստ թունաւոր նատրիումի ցիանիդի միջոցով, որից տարեկան ներկրուելու եւ օգտագործուելու է 1000 տոննա:

Բնապահպանները նշում են, որ այս հանքավայրի շահագործումը խաթարելու է Հայաստանի էկոլոգիական եւ ազգային անվտանգութիւնը, քանի որ այն վտանգում է երկրի քաղցրահամ ջրերի ռազմավարական պաշարներն ու Ջերմուկ առողջարանային քաղաքը: Ըստ ակցիայի մասնակիցների՝ անկառավարելի ռիսկեր են ստեղծուելու Որոտան-Արփայ-Սեւան ջրատար թունելի, Սեւանայ Լճի, Կեչուտի եւ Սպանդարեանի ջրամբարների, Որոտան եւ Արփայ գետերի համար:

Յիշեցնենք, որ Հայաստանում Ամուլսարի ոսկու հանքավայրի բաց շահագործման նախագծով զբաղւում է Լիդիան Արմենիա ընկերութիւնը: Գլխաւոր ներդրողներն են՝ Միջազգային Ֆինանսական Կորպորացիան (IFC) եւ Վերակառուցման եւ Զարգացման Եւրոպական Բանկը (EBRD):

ԳԱՅԻՐԷ

## ՄԻՏՔԻ ՅԱՒԱՔՈՅԹ ՅԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՑԱՍՐԱՅԻՆ ՄԷՋ

Գահիրէի Հայկական Ընթերցասրահը կը փափաքի տեղեկացնել, թէ պիտի սկսի սալոնային բնոյթ կրող մտերիմ հաւաքոյթ-երեկոյթներ՝ յատկացուած միտքի եւ մտածմունքի:

Ըստ մամուլին մէջ նախապէս յայտարարուած նիւթի մը, նախ տեղի պիտի ունենայ չարժանկարի (վաւերագրական կամ խաղարկային) ցուցադրութիւն, կամ երաժշտական կատարողականութիւն, կամ գրական ու մշակութային բնագիրներու ընթերցանութիւն, որմէ ետք բոլոր ներկաները՝ համադրողի մը մասնակցութեամբ եւ ուղեկցութեամբ, պիտի ստանձնեն երեկոյթին ղեկը, տուեալ նիւթին շուրջ ծաւալելով մտերիմ ու անկաշկանդ զրոյց:

Հաւաքոյթները դաստիարակչական-գիտուորագրական բնոյթ ունենալու նպատակ չունին, ո՛չ ալ բան մը սորվեցնելու կեղծ յաւակնութիւնը, ո՛չ ալ մանուկները կոփելու խաբկանքը, ո՛չ ալ երիտասարդները զարգացնելու պատրանքը, ո՛չ ալ «առողջ» հասարակութիւն կազմելու ցնորքը: Նպատակը գիտելիքային հաճոյքի յառաջացումն է՝ սիրելով ոչ թէ ուղղաձիգ երկխօսութիւնը այլ հաղորդական տրամախօսութիւնը (discourse):

Ողջունելի են բոլոր անոնք՝ որոնց համար գիտելիքը մտածումի, իմաստութեան, նորացումի, շարժումի, հասարակայնութեան աղբիւր է, որոնց համար գիտելիքը հակակաղապարային է, հակակարծրատիպային, հակաեսասիրական, հակաթանգարանային, հակացուցադրական, որոնց համար գիտելիքը չէ կապուած սեփական եսի գունազարդումի հետ:

Հաւաքոյթը չ'ախորժիր «հօծ բազմութեան» դիմակին տակ ծպտուած անխօս ու ծափահարող ամբոխի մը ներկայութենէն՝ իբրեւ երեկոյթի «յաջողութեան» տարածուած նշանաբան:

2 ☞

### ՄԱԵՆՈՒՆ ԼԱՅԼԱ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ

ուր կը նկատենք անցում քնքուշ հոգեկան եւ զգացական մթնոլորտէն դէպի ռազմաշունչ, կամ քաղցրութենէն դէպի դաժանութիւն: Ինչպէս նշեցինք, յաճախ աւելցած են երաժշտական նոր հատուածներ որպէսզի թէ՛ թատերապարին եւ թէ՛ նուագաշարին մէջ իրականացուի այս հաւասարակշռութիւնը: Անիկա պատճառ հանդիսացած է որ կարգ մը մանրամասնութիւններ եւ վերջաբանը տարբերին ընթացիկ տարբերակէն, թէեւ պահպանուած են այն գլխաւոր իմաստները որոնք կապուած են երկու սիրահարներուն զգացական տատանուող յարաբերութեան եւ անոնց շրջապատող հասարակական դաժանութեան եւ ընտանեկան պարտաւորութիւններուն հետ: Օրինակ, երբ Լայլայի ընտանիքը կը մերժէ զայն ամուսնացնել Քայսին հետ՝ ցանկալով անոր ամուսնութիւնը հարուստ Իպն Սալամի հետ, Քայս աննպատակ կը թափառի անապատին մէջ եւ սէրը զայն կը դարձնէ խելագար: Քաջարի ռազմիկ Նաուֆալ գթալով իրեն օգնութեան հասնի: Քայս Լայլային կ'ուղարկէ ափլոյ նամակ մը որ կ'իյնայ Իպն Սալամի ձեռքը: Տեղի կ'ունենայ արիւնալի կռիւ, ուր Նաուֆալ կը յաղթէ առանց սակայն յաջողելու կատարել Քայսին տուած իր խոստումը, քանի որ Լայլային հայրը՝ անկախ աղջկան կամքէն, արդէն զայն ամուսնացուցած էր Իպն Սալամի հետ: Լայլա չի կրնար դիմանալ իր վիշտին եւ անձնասպան կ'ըլլայ Քայսի նուիրած դաշոյնով, որմէ ետք Քայս եւս վերջ կու տայ իր կեանքին միեւնոյն դաշոյնով: Այսպէս, տիպարները կը հեռանան Նիզամիի գծագրածէն՝ որ վերցուած է արաբական սկզբնաղբիւրէն: Թատերապարին մէջ կը շեշտուի Իպն Սալամի բնաւորութեան չար կողմը (Հաճիպէքովի օփերային մէջ, ընդհակառակը, Իպն Սալամը ցոյց կը տրուի իբրեւ ըմբռնող ու համբերատար ամուսին), իսկ սիրահարները կ'որոշեն վերջ տալ իրենց դժբախտ կեանքին, որ կը բացակայի բնագիր պատմութեան մէջ:

Գլխաւոր թեմաները՝ որոնց վրայ երաժշտահանը կառուցեց իր երաժշտութիւնը (որոնց մասին նշեցինք վերը), ցոյց կու տան որ ան Լայլան դարձուցած է երաժշտական մեկնաբանութեան առանցքը՝ իր շուրջը ծաւալելով այլքերը, ի տարբերութիւն Կարա Կարաեւի՝ որ կը թուի թէ այդ գլխաւոր դերակատարութիւնը յանձնած է Մէճնունին: Նուագաշարի նախաբանին մէջ երաժշտահանը կը ցուցադրէ այս երեք թեմաները, որմէ ետք կը մշակէ զանոնք զանազան միջոցներով: Հաւանաբար Բալասանեանի ընդարձակ ճամբորդութիւնները աւիթ ընձեռեցին ստեղծելու հոգեկան եւ երաժշտական գունաւոր ոլորտներ, ինչպէս՝ «Հովահարներու պար»-ը ճաբոնական ոճով կամ «Մարոքուհիներու (կամ մորիթանուհիներու) պար»-ը եւ «Ստրկուհիի պար»-ը, որոնք բոլորն ալ ժողովրդական պարեր են՝ ունենալով աւելի ցուցադրական բնոյթ քան թատրերգական: Իսկ «Ատաճիօ» պարը՝ որ թատերապարերուն մէջ յաճախ կը ներկայացնէ զգացական բարձրակէտը, յօրինուած է քնարականութեամբ եւ նրբութեամբ, հակադրուելով «Ռազմիկներու պար»-ի (Նաուֆալի հետեւորդները) ռազմական սուր բնոյթին՝ իր կշռութային խստաշունչ բախումներով եւ պղինձայիններու փայլուն գունաւորումով: «Փաթտոցներու պար»-ին մէջ երաժշտահանը կը փորձէ գծել թատերապարի չար տիպարի՝ Իպն Սալամի, հոգեկան տարողութեան երաժշտական պատկերը: Այս պարը կը ցուցադրէ տիպարին նենգութիւնն ու խորամանկութիւնը: «Նոքթիւրն» պարին մէջ երաժշտահանը կը յառաջացնէ հրաշալի եթերային մթնոլորտ մը՝ որ կ'ակնարկէ անապատին մէջ ոլորապտոյտ թափառող Քայսին: «Սգոյ պար»-ին մէջ երաժշտութիւնը կը ձգտի արտայայտել վիշտը՝ միախառնուած ուժի եւ քաջութեան հետ: Այստեղ, ներշնչուելով Քայսի հանդէպ ունեցած իր խոր սէրէն, Լայլա քաջութիւն կ'ունենայ մերժելու Իպն Սալամը եւ չընդունելու իր ընտանիքի պարտադրանքը:

#### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

(Բոլոր ծանօթագրութիւնները իմս են, Հ.Ա.)

1. Այստեղ Սամհա Ալ-Խուլի կ'աւելցնէ իր միակ ծանօթագրութիւնը. «1971-ին Բալասանեան այցելած է Գահիրէ (իբրեւ Գահիրէի Երաժշտանոցի յօրինողութեան այցելու դասախօս), ուր ծանօթացած է Սայէտ Տարուիշի երգերուն, որոնց հիման յօրինած է մանկավարժական նպատակ հետապնդող դաշնակի գործերու ժողովածու մը (պարզ հարմոնիներով եւ փոլիֆոնիներով): Զայն հրատարակած է 1972-ին, իր երկիրը վերադառնալէն ետք:» Խօսքը հետեւեալ ժողովածուի մասին է՝ *80 Folk Songs from the Valley of the Nile (Egypt)* (Նեղոսի հովիտի (Եգիպտոս) 80 ժողովրդական երգեր), Փրոիզվոտսթվեննօկօ Քոմպինաթա Մուզֆոնտա ՍՍՍՌ, Մոսկուա, 1974 (ռուսերէն եւ անգլերէն վերնագիրներով): Ան հիմնուած է ոչ թէ Սայէտ Տարուիշի երգերուն վրայ, այլ Պահիկա Սէտքի Ռաշիտի հաւաքած ու ձայնագրած ֆոլքլորային երգերուն վրայ:

2. Ծնած է Թուրքմենիսթանի մայրաքաղաք Աշխապատի մէջ:

3. Սթալինապատ կը հանդիսանայ Թաճիքիսթանի մայրաքաղաքի անունը 1929-1961: Այժմ՝ Տուշանպէ:

4. *Պամիրական*:

5. Թակորի վեց երգերը գրուած են մեներգի եւ նուագախումբի համար:

6. Թատերապարի խորագիրը ռուսերէն բնագիրով կը գրուի *Լէյլի եւ Մէճնուն*: Մինչդեռ հերոսուհիին եգիպտական առոգանութիւնն է Լայլա, զոր նախընտրեցի պահել Ալ-Խուլիի բնագիրի թարգմանութեան համար:

ԽՈՀԵՐ

## ԱՌԵՒՏՈՒՐ՝ ՀՌՈՄԻ ՊԱՊԻ ՀԵՏ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Յունիս 24-26-ին Հռոմի Պապը այցելեց Հայաստան:

Ամէն հնարաւոր բան ըսուեցաւ ու գրուեցաւ.

– Պապը առաջին անգամ ըլլալով այցելեց աշխարհի առաջին քրիստոնեայ պետութիւնը:

– Պապը դարձեալ գործածեց ցեղասպանութիւն եզրը:

– Շուրջ 600 լրագրողներ հաւատարմագրուեցան լուսաբանելու Պապի այցելութիւնը Հայաստան:

– Աշխարհի յայտնի լրատուական միջոցները անդրադարձան եւ բարձր գնահատեցին Պապի այցելութիւնը Հայաստան:

– Պապի այցելութիւնը յայտնուեցաւ աշխարհի ուշադրութեան կեդրոնը:

– Պապի այցելութիւնը իւրայատուկ ուխտագնացութիւն մըն էր դէպի հնագոյն եկեղեցին եւ քրիստոնէական աւանդոյթները:

– Հռոմի Պապի այցելութիւնը եւ ցեղասպանութիւն բառին գործածութիւնը հարուած մը եւս եղաւ Թուրքիոյ հանդէպ եւ լարուածութեան նոր իւղ լեցուց Վաթիքանի եւ Թուրքիոյ յարաբերութիւններուն վրայ:

– Պապը իր երախտագիտութիւնը եւ յարգանքը յայտնեց այն մարդոց՝ որոնք դարեր շարունակ կերտուել են քրիստոնէական ոգիով:

– Պապի այցելութիւնը տարածաշրջանային այցելութիւն չէ, այսինքն՝ ան պիտի չայցելէ Ազրպէյճան ու Վրաստան, այլ պիտի այցելէ բացառապէս Հայաստան:

– Պապի այցը մեծ զայրոյթ առաջ բերաւ Ազրպէյճանի թէ՛ քաղաքական շրջանակներուն եւ թէ՛ հասարակութեան մէջ:

– Այցելութենէն ետք Պապը ըսաւ՝ որ երջանիկ է Հայաստան այցելած ըլլալու համար:

– Յուզուելով Պապի այցելութենէն, Անգլիոյ թագուհին եւս իր պարտքը համարեց երթալ առաջին քրիստոնեայ երկիրը:

– Պապի այցելութիւնը կարեւոր էր բարոյական եւ հոգեւոր առումով:

Այս բոլորէն ետք, շուրջ երեք ամիս ետք՝ Հոկտեմբեր 2-ին, նոյն Հռոմի Պապը կ'այցելէ Ազրպէյճան: Ինչպէ՞ս կրնար վերոյիշեալ բոլոր բնութագրութիւններէն ետք Պապը յայտնուիլ «թշնամի»-ին ծոցը: Բայց եկուր տես որ այս այցելութիւնը, չես գիտեր ինչու, ձախողութիւն մը եղաւ... հայկական տեսանկիւնէն.

– Պապին այցելութիւնը դէպի Ազրպէյճան կարճատեւ էր:

– Պապը մերժեց գիշերել Ազրպէյճանի մէջ, եւ այսպիսով Վաթիքանի ղեկավարն ու կաթողիկէներու հոգեւոր առաջնորդը որոշակի կերպով սառնութիւն ցուցաբերեցին Ազրպէյճանի իշխանութեան հանդէպ:

– Պապին այցելութիւնը Ազրպէյճան միանշանակ չընդունուեցաւ միջազգային համայնքին կողմէ:

– Ալիեւը աւելի քան մէկ տարի է որ բանակցութիւններ կը վարէր Հռոմի Պապի այցելութեան համար, բայց միշտ կը ստանար բացասական պատասխան:

– Պապը մասնակցեցաւ Պաքուի Սուրբ Մարիամ Աստուածածին եկեղեցիի արարողութիւններուն, որուն ընթացքին ճաշ սպասարկուեցաւ՝ առանց ազրպէյճանցիներու մասնակցութեան:

– Հակառակ Ազրպէյճան կատարած իր այցելութեան, Պապը կը մնայ Հայաստանի Հանրապետութեան մեծ բարեկամ:

– Ի տարբերութիւն Հայաստանին՝ որուն նախագահը դիմաւորեց Պապին, Ազրպէյճանի օդանաւակայանին մէջ իրեն դիմաւորեցին փոխվարչապետը եւ փոխարտգործնախարարը:

– Բրիտանական *The Tablet* կրօնական պարբերականը գրեց՝ թէ Ազրպէյճան անհամապատասխան վայր է Հռոմի Պապի այցելութեան համար:

– Տարածաշրջանի կայուն խաղաղութեան համար Պապը բոլորին կը յորդորէ օգտուիլ բոլոր հնարաւորութիւններէն՝ հակամարտութեան լուծում գտնելու համար:

Հարցում: Ինչո՞ւ մենք՝ հայերս, այսքան մտահոգուեցանք Պապի ազէրիական այցելութենէն...:

1 ☞

### ՊԱՏՐԻԱՐՔ Ի ՅԱՆԳՍՏԵԱՆ

տեղեկագիրը:

Տ. Մեսրոպ Արք. Մութաֆեանի հանգստեան կոչուելուն զուգահեռ քաղաքիս մէջ, մեր եկեղեցիներէն ներս մատուցուելիք սուրբ պատարագներուն ընթացքին փոփոխութիւն պիտի կատարուի նաեւ յիշատակութեան պահուն: Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցւոյ նուիրապետական աթոռներու գահակալներու անուններուն յիշատակման ժամանակ Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետէն, Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսէն եւ Երուսաղէմի Հայոց Պատրիարքէն վերջ, Տ. Մեսրոպ Արք. Մութաֆեանի անունը պիտի յիշատակուի որպէս հանգստեան կոչուած պատրիարք: Ըստ մեր ստացած տեղեկութիւններուն, Հոգեւորականաց համագումարէն վերջ ճշդուած է նաեւ Ս. Պատարագի ընթացքին կատարուելիք յիշատակութեան ձեւն ու բովանդակութիւնը:

Յարակից սիւնակին մէջ նոյնութեամբ կը ներկայացնենք Եկեղեցական համագումար ժողովի պաշտօնական զեկոյցը ամբողջութեամբ:

*Ժամանակ*, Հոկտեմբեր 27, 2016

ՔԱՀԱՆԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 27-Ի ՈՃԻՐԸ՝ ՀԱՅՈՑ ՊԵՏԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԳԼԽԻՆ ԿԱԽՈՒԱԾ ԱՄՕԹԱԼԻ ԽԱՐԱՆ

1

խոչընդոտելու ուղղութեամբ, այլեւ փաստօրէն վիժեցրեց դաւադրութեան հնարաւոր կազմակերպիչների բացայայտման գործը:

Նման հնչեղութիւն ունեցող ոճրագործութիւնների պարագայում ամէնուրեք, հասարակական կարծիքի տրամաբանութեամբ, կասկածները սովորաբար ընկնում են իշխանութիւնների վրայ: Ուստի երկրի նախագահն ամենաշահագրգռուածը պէտք է լինէր հեռացնելու համար իրենից այդ կասկածները: Եթէ նա չունէր որեւէ այլ մոտիւացիա, ապա պէտք է բացարձակ ազատութիւն տար քննչական եւ դատական մարմիններին, հրաւիրէր աշխարհի լաւագոյն փորձագէտներին եւ ապահովէր դատավարութեան լիակատար հրապարակայնութիւնն ու թափանցիկութիւնը: Սակայն տեղի ունեցաւ ճիշտ հակառակը: Նախագահը զինուորական դատախազին արգելեց հանդէս գալ խորհրդարանում, իսկ յետոյ ընդհանրապէս հեռացրեց գործի վարոյթից, աշխատանքից ազատեց գլխաւոր դատախազ Բորիս Նազարեանին՝ նրա փոխարէն նշանակելով ռեժիմի հաւատարիմ գործիք Աղուան Յովսէփեանին, հրապարակային ճնշումներ բանեցրեց տուժող կողմի պաշտպանների վրայ՝ նրանցից մէկին մասնաւորապէս կոչելով «բոմժ», վերեւների թելադրանքով դատարանը կարճեց կազմակերպիչների գծով գլխաւոր կասկածեալ Ալեքսան Յարութիւնեանի գործը, որից յետոյ համաներման պատրուակով ազատ արձակեց նաեւ վեց այլ ամբաստանեալների եւ այլն: Այսինքն՝ կամայ թէ ակամայ, Քոչարեանը բոլոր կասկածներն ուղղեց իր դէմ, ինչը նշանակում է, որ այդպիսի ռիսկի գնալու համար նա լուրջ պատճառներ պէտք է ունենար:

Հոկտեմբերի 27-ի գործում դատարանների թոյլ տուած ամենակոպիտ օրինախախտումները հետեւեալ երկուսն են.

Առաջին. 2001 թուականի Յունիսի 12-ին ընդունուած համաներման օրէնքում յստակօրէն նշուած էր, որ այն չէր տարածւում դատաքննութիւնն սկսուած գործերի վրայ: Եւ քանի որ, ինչպէս յայտնի է, Հոկտեմբերի 27-ի գործով դատաքննութիւնն սկսուած էր, ապա այդ օրէնքը չէր կարող կիրառուել տուեալ գործով մեղադրուող անձանց նկատմամբ: Հետեւաբար, դատաւոր Ուզունեանը, համաներման կիրառմամբ կարճելով վեց ամբաստանեալների գործերը, թոյլ է տուել օրէնքի աններելի խախտում, ինչը, բնականաբար, չէր կարող չազդել դատավարութեան յետագայ ընթացքի վրայ:

Երկրորդ. Օրէնքի շատ աւելի աղաղակող ոտնահարմամբ մի այլ դատաւոր կարճել է Ալեքսան Յարութիւնեանի գործը՝ հիմք ընդունելով Նաիրի Յունանեանի մերկապարանոց յայտարարութիւնն այն մասին, թէ իբր վերջինիս դէմ տրուած ցուցմունքներն իրենից կորզուել են խոշտանգումների միջոցով: Սակայն Յարութիւնեանի գործն այդպիսի հիմնաւորմամբ կարճելուց առաջ դատարանը պարտաւոր էր խոշտանգումների փաստն ապացուցել դատավճռով եւ խոշտանգողներին ենթարկել համապատասխան պատիժների՝ մի բան, որ չի արուել: Հետեւաբար, Յարութիւնեանի գործը կարճուել է ապօրինաբար, ինչը նշանակում է, որ Յունանեանի բոլոր ցուցմունքները դեռեւս ուժի մէջ են՝ ցուցմունքներ, որոնցում Ալեքսան Յարութիւնեանը ներկայանում է որպէս կազմակերպիչների գծով Հոկտեմբերի 27-ի գործի գլխաւոր կասկածեալ եւ հանգուցային ֆիգուր:

Չեմ կարծում, թէ յիշեալ դատաւորներն այնքան արհեստավարժ չէին, որ չհասկանային իրենց կայացրած վճիռների անօրինականութիւնը: Եթէ, այդպէս լինելով, նրանք այնուամենայնիւ վտանգել են իրենց պրոֆեսիոնալ համբաւը եւ յետագայ կարիերան, ապա դա նշանակում է, որ կա՛մ ենթարկուել են ճնշումների, կա՛մ էլ առաջնորդուել այլ շարժառիթներով: Երկու դէպքում էլ, սակայն, միեւնոյն է, նրանք վաղ թէ ուշ պատասխան են տալու օրէնքի առաջ:

Հոկտեմբերի 27-ի ոճրագործութիւնը յաւերժ մնալու է որպէս հայոց պետականութեան գլխին կախուած ամօթալի խարան, ինչը կարելի կը լինի որոշ չափով մեղմել միայն գործի լիակատար բացայայտման դէպքում: Ուստի այդ խնդրի լուծումը դառնալու է Հայաստանի ապագայ նախագահի ամենագլխաւոր պարտականութիւններից մէկը՝ մի բան, որ յաջառուած է Սերժ Սարգսեանի ընտրուելու պարագայում:

ՀԱՅԿԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՆԻ ԿԵՆՏՐՈՆ
23 Հոկտեմբեր 2016

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՈՐՈՇՈՒՄ Է ՈՉ ՄԻԱՅՆ ...

2

գէտ Ստեփան Դանիէլեանը:

Նա յաւելել է, որ կարելի է շատ կէտեր թուել, որ կուսակցութիւնների մասին նոր օրէնքում պէտք է լինեն, ու չկան: Օրինակ, կուսակցութիւնների մասին օրէնքով չկայ սահմանափակումներ, թէ ովքեր կարող են ընդգրկուել ընտրական ցուցակներում: «Կէսից շատը (ԱԺ պատգամաւորների, խմբ.) դատապարտուել են տարբեր քրէական յօդուածներով: Պատահական չի, որ այսօր մենք ունենք աւելի լիբերալ օրէնք, քան նախկինում, քան Եւրոպայում: Ինչի՞ համար, որ պատգամաւորները լինեն մանիպուլեացիաների ենթակայ, լինեն ոչ թէ ամբասիր, այլ լինեն կառավարելի», - ասել է Դանիէլեանը:

Քննարկման միւս մասնակից՝ Ռազմավարական եւ Ազգային հետազօտութիւնների հայկական կենտրոնի ղեկավար Մանուէլ Սարգսեանն ասել է, որ նոր օրէնքը ամենաթողութեան օրէնք է, դրանով կարելի է բանդա ստեղծել: Ըստ նրա, օրէնքը նաեւ չի պահանջում կուսակցութիւններին ունենալ գաղափարախօսութիւն, մինչդեռ դա պարտադիր է, դրանցման կնիքը բաւարար չէ կուսակցութիւն կոչուելու համար:

«Կուսակցութիւնը պէտք է ունենայ գաղափարական հենք՝ պարզ ու յստակ, այն էլ՝ համապատասխանող իրաւական պետութեան փիլիսոփայութեանը: Այդպէս չի, որ ամէն մէկը կարող է ունենալ կուսակցութիւն ու ասի՝ մենք Արամազդի որդիներն ենք: Այդպէս չի, կուսակցութիւնը կարող է լինել լիբերալ-դեմոկրատական, սոցիալ-դեմոկրատական, կամ պահպանողական: Այս օրէնքում էլ որեւէ պահանջ չկայ կուսակցութեանը՝ ինչ ուղղուածութիւն ունի, եւ համապատասխան ինչ շերտեր է ներկայացնում: Պարզ չեն գաղափարները, պարզ չեն ծրագրերը: Բոլոր կուսակցութիւնները մի ծրագիր ունեն՝ բարձրացնել աշխատավարձը այսինչ չափով եւ այլն», - ասել էր Սարգսեանը:

«Հիմա մամուլում տեղեկութիւն է լցուած, որ ամբողջ ՀՀԿ-ն սրտատրոփ սպասում է, թէ Սերժ Սարգսեանը երբ է ցուցակները կազմելու: Մենք ունենք անցած ընտրութիւններից օրինակներ, երբ ոչ միայն ՀՀԿ-ի, այլեւ այլ կուսակցութիւնների ցուցակներն են տանում համաձայնեցնում նրա հետ», - ասել է Դանիէլեանը՝ նշելով, որ անհրաժեշտ է, որ օրէնքով նուազեցուի ընտրական ցուցակների կազմաւորման գործում կուսակցական բիւրոկրատիայի դերը:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Կիրակի, 13 Նոյեմբեր 2016, երեկոյեան ժամը 8-ին

**ՄԻՏՔԻ ՄՏԵՐԻՄ ՀԱՒԱՔՈՅԹ**

**ԻՆՔՆԱՀՐԱՏԸ (ՍԱՄԻԶՏԱԹ) ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ**

(Ինքնահրատ կը կոչուէին Խորհրդային Միութեան այն ընդհատակեայ գրականութիւնն ու մամուլը՝ որոնց տպագրութիւնը արգիլուած էր պետութեան կողմէ)

**ՎԱՒԵՐԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ**

**ԿԸ ՅԱՋՈՐԴԷ ՑՈՒՑԱԴՐՈՒԱԾ ՇԱՐԺԱՆԿԱՐԻՆ ՇՈՒՐՋ ԱԶԱՏ ԶՐՈՅՑ *ԲՈԼՈՐ* ՆԵՐԿԱՆԵՐՈՒՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ**

Հասցէ՝ 66 Ռամսէս փողոց, չորրորդ յարկ, Հելիոպոլիս

Սիրալիր հրաւէր բոլորին

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եգիպտոսի մէջ Հայաստանի Մշակութային Օրեր

**Շաբաթ, 12 Նոյեմբեր 2016, երեկոյեան ժամը 8-ին**
**Կումիուրէյա թատերասրահին մէջ**

Ելոյթ պիտի ունենան

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐԻ ՊԵՏԱԿԱՆ**
**ԵՒ**
**ՇՈՂԱԿՆ**
ՀԱՄՈՅԹՆԵՐԸ

**ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է**

Այս առիթով կարգադրուած է ինքնաշարժի սպասարկութիւն
Հելիոպոլսոյ **ՅՈՒՍԱԲԵՐ** ակումբին առջեւէն **կ.ե. ժամը** 6.30-ին,
Ազգային Առաջնորդարանէն **կ.ե. ժամը** 7-ին:

**ԾԱՆՕԹ**: Նոյն օրը Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի խաղադաշտը պիտի տրամադրուի ինքնաշարժերը կայանելու համար:

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

## Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր

Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութիւնը կը տեղեկացնէ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի հայութեան, թէ Միութեանս «Սաթենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին 2016 տարեշրջանի անդամագրուիլ փափաքողները պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել յատուկ հարցաթերթիկներու վրայ 1 Նոյեմբերէն 2016-էն մինչեւ 10 Դեկտեմբեր 2016.

ԳԱՀԻՐԷԻ մէջ

Գահիրէի Ազգային Առաջնորդարան
179, Ռամսիս փողոց,
Ուրբաթ օրերը առաւօտեան ժամը 10-էն յ.մ. ժամը 2:

ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ Կեդրոնը

26, Մուրատ Բէկ փողոց – Հելիոպոլիս, Հեռ. 22916444 - 24151127
Առաւօտեան ժամը 10-էն յ.մ. 3, բացի Կիրակի եւ արձակուրդի օրերէն:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Գրասենեակը

Դիմել՝ Զուարթ Գարդալեանի
Հեռ. 01223110673

ԾԱՆՕԹ.- Ա) Նոր դիմումնագրերուն համար կը խնդրուի ներկայացնել ինքնութեան թուղթին պատճէնը, 2 նկար եւ հայ համայնքին պատկանելու փաստաթուղթ:

Բ) Նորոգութեան համար դիմողներէն կը խնդրուի ներկայացնել 1 նկար եւ 2015-ի ծրագիրին մասնակցութեան քարտին պատճէնը: Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին բարեփոխեալ կանոնագրութիւնը ստանալէ յետոյ, վճարել Ե. Ո. 180 մասնակցութեան սակը:

ՀԲԸՄ-ը ինքզինքին կը վերապահէ բոլոր կարգի դիմումներուն ընդունումը կամ մերժումը:

ԳԱՀԻՐԷԻ ՀԲԸՄ-Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1779 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٧٩ الخميس ١ ديسمبر ٢٠١٦


## ՍՐԱՆՔ ՍՊԱՍՈՒՈՂ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՅԹԻՒՆԻ ԱՌԱՋԻՆ ՎՏԱՆԳԱՒՈՐ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐՆ ԵՆ

ՅԱՍՄԻԿ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Երբ Կարէն Կարապետեանը Ազգային Ժողովի ամբիոնից երկրի սոցիալ-տնտեսական վիճակը ախտորոշեց ծայրայեղ ծանր, հանրութեան շրջանում դա չընկալուեց իբրեւ ահազանգ, այլ իբրեւ ինտրիգ: Նորանշանակ վարչապետը բարձրաձայնել էր այն, ինչի մասին գիտէին բոլորը, ինչի մասին տարիներ շարունակ լռում էին իշխանութիւնները, սակայն որի մասին փաստում էին մէկը միւսի յետեւից փակուող դռներն ու ընկերութիւնները:

Մենք հասել ենք մի կէտի, **երբ նոյնիսկ պաշտօնական վիճակագրութիւնն ի վիճակի չէ սարսափեցնող իրողութիւնը կոծկել:** Սա այն պահն է, երբ նոյնիսկ պաշտօնական վիճակագրութիւնն է ասում, որ 2015 թուականին 10 հազարից աւելի ձեռնարկութիւն է փակուել:

**Սակայն մի բան է, երբ այդ թուերը կարդում ես վիճակագրութեան թղթերում, այլ բան, երբ ականատես ես ինքդ: Վիճակագրութեան թղթերում դու չես առնչւում այդ 10 հազար փակուած ընկերութիւնների դրամատիկ ճակատագրին: Մինչդեռ, իրականում դրանք նախեւառաջ 10 հազար անյաջող բիզնէսի օրինակներ են՝ մեծ մասամբ դրամատիկ վերջաբանով: Դրանք այն 10 հազար պատմութիւններն են, որոնց մեծ մասը սեփական փորձով են զգացել արտաքին եւ ներքին անբարենպաստ բիզնէս-կլիմայի ազդեցութիւնը, հարկային խստաշունչ քաղաքականութիւնն ու մաքսային միջավայրի անբարենպաստ միջավայրը:**

**Զախողուած այդ 10 հազար օրինակներն այն շարժիչ ուժն են, որ պէտք է առաջ մղէին Հայաստանի տնտեսութիւնը: Հէնց նրանք են իրական միջին խաւի ձեւաւորողը, որոնց վճարած հարկերով է պետութիւնը կերակրում մեծահասակներին եւ կրթում երեխաներին, վճարում պետական ծառայողների աշխատավարձերն ու զարգացնում բանակը:**

Գործող իշխանութիւնների անողոք հարկային քաղաքականութիւնը եւ ստեղծած ոչ հաւասար մրցակցային պայմաններն են տարիներ շարունակ կոտրել այս ընկերութիւնների ողնաշարը՝ չթողնելով, որ երկրում կայանայ միջին խաւը:

Եւ այսօր վիճակն էլ աւելի վատ է, քան թւում է:

Մի բան է, երբ փակւում են ձեռնարկատիրական գործունէութիւն իրականացնող նորաբաց կամ փոքր ընկերութիւնները, մէկ այլ բան, երբ սնանկ են ճանաչւում շուկայում գերիշխող դիրք ունեցողները: Սրանք արդէն, սպասուող մեծ պայթիւնի առաջին ճառագայթներն են:

**Հայաստանում այսօր ստեղծուել է մի իրավիճակ, երբ յաջող գործունէութիւն չի կարողանում ծաւալել ոչ միայն փոքր եւ միջին բիզնէսը, այլեւ խոշորը:**

**Օրինակները բազմաթիւ են՝** ոչ վաղ անցեալում սնանկ ճանաչուեց Արմաւիա աւիաընկերութիւնը, մի քանի տարուայ գործունէութիւնից յետոյ Օրանժը հեռացաւ Հայաստանից, սնանկութեան եզրին է կաթնամթերքի շուկայում գերիշխող դիրք ունեցող Աշտարակ Կաթը, ոչ պակաս վատ վիճակում են նաեւ կաթնամթերք արտադրող միւս ընկերութիւնները: Սնանկ է ճանաչուել նաեւ յայտնի գործարար Միխայիլ Բաղդասարովին պատկանող Միկա Քորփորեյշնլ ընկերութիւնը, որը վաճառում էր դիզվառելիք եւ բենզին, սակայն 2014 թուականից այն չի գործում:

Փակուել են նաեւ բազմաթիւ խանութ-սրահներ, որոնք համաշխարհային բրենդների ներկայացուցիչներն էին Հայաստանում: Փակման եզրին է բոլորիս յայտնի Քարֆուրը, որը այդքան մեծ աղմուկով մտաւ Հայաստան: Մէկը միւսի յետեւից փակւում են համակարգչային տեխնիկա վաճառող խանութ-սրահները. նման խանութներով երբեւէ յայտնի Սայաթ-Նովա փողոցում այժմ դրանք հատուկենտ են: **Շարքը կարելի է անվերջ թուարկել:**

Եւ երբ Կարէն Կարապետեանը յայտարարեց, որ երկրի վիճակը ծայրայեղ ծանր է, չպէտք է դրան վերաբերել՝ որպէս ինտրիգ՝ չյաջողելու դէպքում արդարանալու միջոց: **Իրավիճակն իսկապէս պայթիւնավտանգ է, որի առաջին վտանգաւոր ճառագայթները, այո՛, փակուող խոշոր բիզնէսներն են:**

Zham.am

## 15,428,777 ՏՈԼԱՐ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԵՑԱՒ «ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ԹԵԼԵԹՈՆԻՆ

Նոյեմբեր 24-ին Լոս Անճելոսէն սփռուող 12 ժամուայ «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի տարեկան թելեթոնի ընթացքին հանգանակուեցաւ 15,428,777 տոլար:

«Հայաստան» Հիմնադրամի հաղորդագրութեան համաձայն՝ հանգանակութիւնները կը նպատակաուղղուին Լեռնային Ղարաբաղի տուժած բնակավայրերու վերականգնման, խաղաղ բնակչութեան անվտանգութեան ու պաշտպանութեան ուղղուած միջոցառումներուն, ինչպէս նաեւ Ղարաբաղի բազմազաւակ ընտանիքներուն համար առանձնատուներու կառուցման:

Դրամահաւաքին իրենց մասնակցութիւնը բերին այս առիթով ԱՄՆ ժամանած Արցախի Թեմի Առաջնորդ Տ. Պարգեւ արք. Մարտիրոսեան, ինչպէս նաեւ ԼՂՀ փոխ վարչապետ Արթուր Աղաբէկեան:

«Հեռուստամարաթոն 2016»-ի խոշոր նուիրատուներն էին՝ Անդրանիկ եւ Սեդա Պաղտասարեան (ԱՄՆ)՝ 5 միլիոն տոլար, Սամուէլ Կարապետեան (Ռուսաստան)՝ 1 միլիոն տոլար, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատ (Հայաստան)՝ 350 հազար տոլար, Ռէյ Հար- ↪ 4

## ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԻՐԱԿԱՆ ԴԷՄՔԸ. ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԸ ՎԵՐԱԴԱՌՆՈՒՄ Է

ՍԻՄՈՆ ՍԱՐԳՍԵԱՆ

Սերժ Սարգսեանը յայտարարել է, որ փոփոխութիւնների առումով առաջիկայ 2-3 տարիները լինելու են բեկումնային եւ, որ Կարէն Կարապետեանի հետ շատ երկար է զրուցել տարբեր խնդիրների, այդ թւում Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան (ՀՀԿ) «նոր ոգի» հաղորդելու մասին:

Դա ոչ այլ ինչ է, քան ՀՀԿ նոր մեծամասնութիւնն է, որովհետեւ ՀՀԿ ներկայիս մեծամասնութիւնն այլ բան չէ, քան՝ Հայաստանի տնտեսաքաղաքական փաթեթի բաժնետիրական ու հայաստանեան տնտեսական ստատուս-քվոյի դէ ֆակտօ համայնապատկեր: Հայաստանում իրավիճակ փոխելու համար ուզում են փոխել դրանք: Մինչդեռ ՀՀԿ-ն չունի անգամ կոմբինացուած մեծամասնութեամբ վերարտադրուելու հնարաւորութիւն: Ուրեմն՝ ինչպէ՞ս պէտք է լուծուի այս թնջուկը: Պարզւում է, այն միայն միամիտ[illegible]երիս համար է այդպիսին...

Ի՞նչ է իրականում կատարւում Հայաստանում, եւ ովքե՞ր են իրական տէրերը: Նախ՝ Մոսկուայից գործուղմամբ, Հայաստանի վարչապետ նշանակուեց Կարէն Կարապետեանն, ապա ՀՀԿ Նոյեմբերի 26-ի համագումարից առաջ՝ հանրապետականացուեց: Մինչ այդ Կարէն Կարապետեանը միակն է Հայաստանի 13 վարչապետների թւում, ով ամբողջովին ձեւաւորել է իր թիմը, Հայաստանի կառավարութիւնն ազատել Գագիկ Բեգլարեանից, Գագիկ Խաչատրեանից, Յովհաննէս Յովսէփեանից... միւս հեռացողները հիմնական դերակատարներ չէին եւ որոշիչ դեր չունէին: Յովիկ Աբրահամեանին էլ նախապէս հեռացրել էր գլխաւորը համարուող վոժդը: Զմոռանանք նաեւ, որ Հայաստանի նախագահի աշխատակազմի ղեկավար դարձաւ Արմէն Գէորգեանը, ինչո՞ւ, կը հասկացուի փոքր-ինչ ուշ...

Այս ամէնն իհարկէ թելադրուած եւ հետեւողականօրէն իրականացւում է Պուտինի կարգադրութիւններով ու իւրաքանչիւր քայլի համար յստակ թելադրմամբ: Եթէ շատերին թւում է, որ Պուտինը Մոսկուայում նստած չի պատկերացնում, թէ ով ինչ է շնչում Հայաստանում, ով ով է, կամ՝ ով որքան արժէ, ապա նրանք պարզապէս քաղաքական մոլորեալներ են, եթէ իհարկէ աւելի խիստ չարտայայտուենք: Միայն մի քանի օր առաջ, անգամ մանուկների հետ հաղորդակցութեան ժամանակ, երբ մեր ժամանակի Ստալին՝ Պուտինը յայտարարեց, թէ Ռուսաստանի սահմանները որեւէ տեղում չեն աւարտւում, ասուածներիս լիիրաւ հաստատումն է:

Ո՞րն է Ռուսաստանի փաստացի տարածք Հայաստանում Պուտինի նպատակն ու ինչո՞ւ է նա այդ ծրագիրն իրագործելու համար Հայաստան գործուղել Կարէն Կարապետեանին, իսկ նրա համար քաղաքական կուլիսներում վազվզողների աչքերով վերակարգ սահմանել, որքան էլ, որ զարմանալի է, ոչ թէ Սերժ Սարգսեանին, այլ՝ Սամուէլ Կարապետեանին:

Հայաստանը կտրուած լինելով միջազգային տնտեսական բոլոր հաղորդակցութիւններից, Ռուսաստանի ու մասնաւորապէս՝ Պուտինի համար հետաքրքիր է որպէս տարածք միայն: Զմանրանանք, թէ ինչու է հայաստանեան օդային տարածք մուտք գործում ռուսաստանեան մի աւիաընկերութիւն, որն անգամ 7 հազար դրամով կ'ապահովի Հայաստանի քաղաքացիների անվտանգ արտագաղթը: Այդ տարածքի ամբողջական ձեւաւորումն ապահովելու, իսկ մնացած քաղաքացիներին իբրեւ բազաների սպասարկուներ ծառայեցնելուն ընդառաջ՝ հարկ է, որ 2017 թ. խորհրդարանական ընտրութիւններից, այնուհետ նաեւ՝ 2018 թ.-ին Սերժ Սարգսեանի լիազօրութիւնների ժամկէտն աւարտելուց առաջ, Պուտինի ձեռքում կենտրոնացուի Հայաստանի ողջ քաղաքական դաշտը, կամ՝ գրեթէ ողջ, որպէսզի Արեւմուտքը սանկցիաներ չկիրառի նաեւ Հայաստանի հանդէպ, կը ձեւաւորուի խորհրդարանական փոքրիկ արեւմտամէտ խմբակցութիւն, որն էլ առերեւոյթ կը հաւասարակշռի երկու բեւեռները:

Այդ բաղձալի նպատակին հասնելու առաջին քայլերից մէկն արուել է, Կարէն Կարապետեանը հանրապետականացուել է, ու այլեւս այդ կուսակցութեան ներսում տեղի կ'ունենան վերադասաւորումները՝ այնտեղից հանրութեան աչքին փուշ դարձած օլիգարխանման տեսակների զտումը: Մինչեւ եկող տարուայ ապրիլ՝ խորհրդարանական ընտրութիւնները, ՀՀԿ-ում չեն լինի ոչ միայն քրէաօլիգարխիկ տարրերն, այլեւ՝ երբեմնի ազգայնական ներակայացող գործիչները: Եւ չկարծէք, թէ այդ նոյն օլիգարխների օձիքները բաց կը թողնեն: Նրանք, որպէսզի պահպանեն իրենց բիզնէսները, շատերը՝ մենաշնորհները, ապա համապատասխանաբար պէտք է մուտքեր ապահովեն կուսակցական գանձարան, այլապէս՝ կը կորցնեն ամէն բան:

Այսպէս՝ իրագործւում է Հայաստանը Ռուսաստանի ենթակայութեանը խաղաղ յանձնելու համար մշակուած ծրագիրը:

↪ 4

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԼՈՒՐԵՐ
## (Հոկտեմբեր-Նոյեմբեր)

– Հոկտեմբեր 8-ին, Գահիրէի Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ տեղի ունեցաւ համատեղ պատարագ արեւելեան քոյր եկեղեցիներու մասնակցութեամբ: Նախորդ համատեղ պատարագը մատուցուած էր անցեալ տարի, Ղպտի Ուղղափառ Եկեղեցւոյ Ս. Սինոտի գլխաւոր քարտուղար Անպա Ռուֆայէլի հովանաւորութեամբ, Անափորա վանքին մէջ:

– Հոկտեմբեր 18-19-ին, Գահիրէի Համալսարանի համագումարներու դահլիճին մէջ տեղի ունեցաւ համալսարանի Հայագիտական Կեդրոնի վեցերորդ համագումարը՝ *Հայկական ուսումնասիրութիւնները արաբական աշխարհին մէջ* խորագիրով, հովանաւորութեամբ Գահիրէի Համալսարանի տնօրէն Կապէր Կատ Նասսարի եւ Գրականութեան Բաժանմունքի վարիչ Մոթազ Սայէտ Ապտալլայի:

Center of Armenian Studies

تحت رعاية

الأستاذ الدكتور جابر جاد نصار رئيس جامعة القاهرة

والأستاذ الدكتور معتز سيد عبد الله عميد كلية الآداب

المؤتمر السنوى السادس لمركز الدراسات الأرمنية بعنوان

"الدراسات الأرمنية فى العالم العربى"

١٨-١٩ اكتوبر ٢٠١٦

قاعة المؤتمرات بكلية الآداب جامعة القاهرة

مُقرر المؤتمر أ.د. صلاح محجوب إدريس

مدير مركز الدراسات الأرمنية

Զեկուցումներ կարդացուեցան արաբերէն եւ անգլերէն լեզուներով, որոնց ամբողջական ցանկը կը ներկայացնենք ստորեւ (հայերէն թարգմանութիւնները մերն են, Զ.).

1. Ամմար Ալի Հասան, *Մշակութային բազմազանութիւն*
2. Արման Յակոբեան, *Հայկական Գարշունիի մասին*
3. Էսթեր Պետրոսեան, *Գահիրէի Ասորական Ձեռագիր թիւ 11՝ եռալեզու Գարշունի ձեռագիր*
4. Քնարիկ Աւագեան, *Հայերը Եգիպտոսի մէջ (սկիզբէն մինչեւ 1922 թուական)*
5. Մոհամմատ Ահմէտ Սալէհ, *Հայոց ցեղասպանութեան կիրառումը իբրեւ սիոնական տրամախօսութեան քննադատութիւն*
6. Զէյնա Ալ-Թուֆայլի, *Նէզար Խալիլի իբրեւ նմոյշ հայերէնի եւ արաբերէնի միջեւ թարգմանութեան*
7. Ֆէհր Մահմուտ Մոհամմատ Շաքէր, *Արաբական ձեռագիրի ճանապարհորդութիւնը Հայաստանի մէջ*
8. Նորա Ապտէլ Ազիմ Օսման Հէկազի, *Հայերուն քաղաքակրթական նպաստները Ֆաթիմեան Եգիպտոսի մէջ*
9. Սամէհ էլ-Կարհի, *Միրզա Մալքոմ Խան՝ լուսաւորչական միտքի առաջամարտիկը արդի Իրանի մէջ*
10. Վերժինէ Սվազլեան, *Իսլամ արաբներուն մարդասիրական վերաբերմունքը Արեւմտեան Հայաստանի հայոց ցեղասպանութենէն վերապրած քրիստոնեաներուն նկատմամբ*
11. Մահմուտ Ալաուի, *Նիկոլայ Յովհաննիսեան իբրեւ պատմաբան*
12. Ռատի Մոհամմատ Կուտա, *Պատմական ուսումնասիրութիւնները հայերուն մասին. տոքթոր Կամալ Քամալի ուսումնասիրութիւնը օսմանեան ժամանակաշրջանի հայերուն մասին իբրեւ նմոյշ*
13. Նարինէ Երանոսեան, *Արեւմտահայերու 1894-1896-ի կոտորածներուն արտացոլումը Եգիպտոսի արաբական լրագրութեան մէջ*
14. Շէրին Ապտէլ Նայիմ Հասանէյն, *Աղեքսանդր Մակեդոնացիի (Իսքանտար Զուլքարնայն) պատմութիւնը պարսկական գրականութեան մէջ*
15. Կամալ Քամալ Մահմուտ, *Արհեստները եւ հայ արհեստաւորները արդի Եգիպտոսի մէջ*
16. Ուաֆաա Մահմուտ Ապտէլ Հալիմ, *Հայերը Իրաքի մէջ ԺԹ. դարուն*
17. Արաքս Փաշայեան, *Ալ-Նահտան (Վերածնունդը) եւ հայերուն նպաստը. Ատիպ Իսհաք իբրեւ նմոյշ Ալ-Նահտա շարժումին*
18. Անդրանիկ Տաքէսեան, *Համագործակցութեան հեռանկարներ Պէյրութի Հայկազեան Համալսարանի եւ Գահիրէի Համալսարանի Հայագիտական Կեդրոնի միջեւ*
19. Թամէր Ապտէլ Պասէթ Ապտէլ Ֆաթթահ Ապտէլ Ռահման, *Մեծն Աղեքսանդրի պատմուածքները յոյներուն եւ հայերուն մօտ*
20. Սայէտ Աչմաուի, *Ֆաթըւան եւ հայոց պատմութիւնը. ոչ-աւանդական աղբիւրի մը հետազօտութիւնը*
21. Ֆարակ Քատրի Ալ-Ֆախարանի, *Սինտպատի հեքիաթներուն հրատարակութիւնը, Պոլիս, 1516*
22. Սօսի Գասպարեան, *Հայկական գաղութները արաբական աշխարհին մէջ՝ գաղթականութենէ դէպի ճգնաժամ*
23. Սօնա Տօնիկեան, *Քորանի իմաստներուն թարգմանութիւնը հայերէնի*
24. Սալէհ Զահր էլ-Տին, *Իսլամական-արաբական փաստաթուղթերուն կարեւորութիւնը ամրացնելու հայերուն եւ արաբներուն միջեւ պատական բարեկամութիւնը*
25. Հանի Մուսթաֆա, *Աղեքսանդրի կենսագրութիւնը եբրայերէն լեզուով*
26. Ալի Սապէթ Սապրի, *Հայկական հարցը եգիպտական աքատեմիք աղբիւրներուն մէջ*

– Հոկտեմբեր 28-ին, Գահիրէի Ամերիկեան Համալսարանի մասնաշէնքին մէջ (Թահրիր հրապարակ) տեղի ունեցաւ Հայաստանէն ժամանած նկարիչ Անատոլի Աւետեանի ստեղծագործութիւններու ցուցահանդէս-վաճառքը:

– Նոյեմբեր 10-14-ին տեղի ունեցաւ Հայկական Մշակոյթի Օրեր նախաձեռնութիւնը, կազմակերպութեամբ Հայաստանի եւ Եգիպտոսի Մշակոյթի Նախարարութիւններուն: Այս առիթով Եգիպտոս ժամանեց Հայաստանի մշակոյթի նախարարի տեղակալ Ներսէս Տէր-Վարդանեան: Այս ծիրին մէջ, Նոյեմբեր 10-12-ին, Գահիրէի Օփերային կից Ստեղծագործական Տան սինեմայի սրահին մէջ տեղի ունեցաւ հայկական ֆիլմերու ցուցադրութիւն: Իսկ Հայաստանի Պարի Պետական Համոյթը եւ Շողակն Համոյթը ունեցան երեք ելոյթներ՝ Կումհուրէյա Թատրոն (12 Նոյեմբեր), Տամանհուրի Օփերայի Թատրոն (13 Նոյեմբեր) եւ Աղեքսանդրիոյ Սայէտ Տարուիշ Օփերայի Թատրոն (14 Նոյեմբեր):




– Նոյեմբեր 17-ին, Գահիրէի օփերային կից Ալ-Հանակէր սինեմայի սրահին մէջ տեղի ունեցաւ *Մենք եգիպտացի... հայեր ենք* ֆիլմին առաջին ցուցադրութիւնը, որ մաս կը կազմէր Գահիրէի Ֆիլմի Միջազգային 38-րդ Փառատօնին: Ֆիլմը եգիպտական անկախ (ոչ-պետական) արտադրութիւն մըն է, բեմադրիչ եւ արտադրիչ՝ Ուահիտ Սոպհի, գրող եւ պատմող՝ Եւա Տատրեան: Ֆիլմը եգիպտահայութեան մասին է եւ հիմնուած է մեծ մասամբ եգիպտահայերու հետ կատարուած հարցազրոյցներու վրայ:




– Նոյեմբեր 25-ին, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի կազմակերպութեամբ, Յուսաբեր մշակութային ընկերակցութեան Գարագաշեան սրահին մէջ տեղի ունեցաւ Հայաստանի Միմոս տիկնիկային թատրոնի ներկայացումը՝ *Պույ-պույ մկնիկը*, գեղարուեստական ղեկավար՝ Նունէ Ջրբաշեան:




ՀԱՅԱՍՏԱՆ

# ԱՐՄԱՆԻՍԻ ՀԱՆՔԱՎԱՅՐԻ ՎՏԱՆԳԱՒՈՐ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ՝ ԹՈՒՉՆԻ ԹՌԻՉՔԻ ԲԱՐՁՐՈՒԹԻՒՆԻՑ

Էկօլուր, 25 Նոյեմբեր – Լոռու մարզի Արմանիսի ոսկի-բազմամետաղային հանքավայրն արդէն մէկ ու կէս տարի է՝ չի գործում, բայց չի դադարում աղտոտել շրջակայ միջավայրը:

Ստեփանաւան քաղաքից 7.5 կմ հեռաւորութեան վրայ գտնուող այս հանքավայրը 2011 թուականին սկսեց շահագործել Գլոբալ Մեթալզ (ԱՐՄ) Լիմիթեդ ընկերութիւնը՝ ի դէմս Սագամար ՓԲԸ-ի: 2015 թուին ընկերութիւնը բնապահպանական փորձաքննութեանը ներկայացրեց Արմանիսի հանքի ընդլայնման ծրագիրը, ստացաւ դրական եզրակացութիւն ու ինչ-ինչ պատճառներով դադարեցրեց հանքի շահագործումը՝ իր յետեւից թողնելով թափօնների մի լեռ անմիջապէս ճանապարհի վրայ, որը կապում է հանքավայրը Ստեփանաւան քաղաքին:

Ըստ Արմանիսի հանքավայրի ընդլայնման ծրագրի՝ հանքը պէտք է շահագործուէր բաց եղանակով 7 տարի, եւ փակ եղանակով 26.6 տարի: Շահագործումից յետոյ, որպէս բաց հանքի ֆիզիկական փակում, նախագծով նախատեսուել է բացահանքի եզրագծից 20-25մ հեռաւորութեան վրայ՝ վտանգաւոր վայրերում, նախազգուշացնող նշանների, իսկ ամբողջ եզրագծով արգելապատնէշների տեղադրում: Արգելապատնէշ պէտք է տեղադրուէր նաեւ բացահանքը սպասարկող աւտոճանապարհի վրայ: Ստորգետնեայ հանքի փակման ընթացքում բովանցքերի մուտքերը պէտք է փակէին մետաղեայ դռներով: Իսկ 83.4 հեկտար մակերես զբաղեցնող լցակոյտերը բացահանքի շահագործումը աւարտելուց յետոյ պէտք է ծածկուէին 157.46 հազար մ3 ծաւալով հողաբուսական շերտով:

Էկօլուրն այցելեց Արմանիսի հանքավայրի տարածք եւ առաջին անգամ իրականացրեց նկարահանում անօդաչու թռչող սարքով: Ակնյայտօրէն երեւում է, որ որեւէ վերականգնման աշխատանք այդ տարածքում չի իրականացուել: Տեղումների հետ թունաւոր թափօններից աղտոտուածութիւնը տարածւում է մօտակայ հողերում, որտեղ հէնց նկարահանման պահին գիւղացիներն արածեցնում էին իրենց անասուններին:

Արմանիսի հանքաքարում առկայ է՝ ոսկի՝ 11350կգ, 0.84 գ/տ, արծաթ՝ 149998.4կգ, 11.1 գ/տ, պղինձ՝ 145930.8 տոննա, ցինկ՝ 289456.7 տոննա, կապար՝ 168901.4 տոննա:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ՝ ԵԱՏՄ ԱՆԴԱՄԱԿՑՈՒԹԻՒՆԻՑ ՄԻԱԿ ԳՈՀ ՄԱՐԴԸ. ԻՆՉ ՁԵՌՔ ԲԵՐԵՑ ՏԻԳՐԱՆ ՍԱՐԳՍԵԱՆԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Երբ 2013 թուականի Սեպտեմբերի 3-ին մի գիշերում Հայաստանը դարձաւ Եւրասիական Տնտեսական Միութեան (ԵԱՏՄ) անդամ, պետական մակարդակով պրոպագանդւում էր, որ Ռուսաստանի, Բելառուսի, Ղազախստանի եւ Ղրղզստանի աւելի քան 200 միլիոն բնակչութեամբ շուկաներում ազատ մուտք ենք ունենալու, որը կ'աշխուժացնի մեր տնտեսութիւնը: Սակայն Հայաստանի ազգային վիճակագրական ծառայութեան հրապարակած տուեալներից *Ժողովուրդ* օրաթերթը տեղեկանում է, որ 2013 թուականին Հայաստանից Ռուսաստան արտահանուել է 334 մլն դոլարի ապրանք, իսկ 2015 թուականին՝ մօտ 244 մլն դոլարի, այսինքն՝ մօտ 110 մլն դոլարով պակաս: 2013-ին դէպի Բելառուս արտահանուել է աւելի քան 8 մլն դոլարի ապրանք, իսկ 2015-ին՝ մօտ 7 մլն: 2013-ին Ղազախստան արտահանուել է աւելի քան 7 մլն դոլարի, իսկ 2015-ին՝ մօտ 4 մլն դոլարի եւ, վերջապէս, Ղրղզստան է արտահանուել մօտ 1 մլն դոլարի ապրանք, իսկ արդէն 2015-ին՝ 370 հազար դոլարի: Այսինքն՝ ԵԱՏՄ անդամակցութիւնից յետոյ միութեան անդամ երկրներ ուղարկուած ապրանքների ծաւալը կտրուկ նուազել է: Ոչինչ չի փոխուել նաեւ ԵԱՏՄ անդամ երկրներ մուտք գործելու կարգի մասով. հայկական համարանիշներով բեռնատարները ինչպէս նախորդ տարիներին, այնպէս էլ ԵԱՏՄ անդամակցելուց յետոյ օրերով հերթ են կանգնում Վրաստան-Ռուսաստան սահմանային անցակէտում ադրբեջանցիների, թուրքերի, վրացիների եւ միւս երկրների

↳ 3

**ԳԱՀԻՐԷ**

## ՄԻՏՔԻ ՄՏԵՐԻՄ ՀԱՒԱՔՈՅԹ ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Կիրակի, Նոյեմբեր 13-ին, Գահիրէի Հայկական Ընթերցասրահին մէջ տեղի ունեցաւ *Միտքի մտերիմ հաւաքոյթ* բնաբանով երեկոյթ մը: Նիւթն էր՝ «Ինքնահրատը (սամիզտաթ) Խորհրդային Հայաստանի մէջ»: Ցուցադրուեցաւ Տիգրան Պասկեւիչեանի *Անկարելին՝ կարելի. նախատիպի որոնում* (շուրջ 45 վայրկեան) եւ *Սիվլինէթի Ոչ թէ ինչ, այլ ինչու* (շուրջ 10 վայրկեան) վաւերագրականները, որոնցմէ ետք համադրողի մը օգնութեամբ կատարուեցաւ ազատ զրոյց ընդհանրապէս դիմադրութիւն հասկացողութեան մասին (սամիզտաթը իբրեւ դիմադրութիւն):

Եգիպտահայութեան համար տարբեր, թէեւ խիստ համեստ, փորձ մըն էր խօսքի հաճոյքն ու իրաւունքը *բան*իմաց բանախօսէն փոխանցելու *ամէն*իմաց հասարակութեան:

Հայկական Ընթերցասրահը կը փափաքի յատուկ շնորհակալութիւն յայտնել ներկաներուն, որոնք ցուցաբերեցին աշխոյժ մասնակցութիւն եւ կարծիք յայտնելու բարձր մակարդակ:

## ՓԱՐԻԶԻՔՈՄԻՒՆԸ, ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸԵՒՀԱՅՈՑՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ. ՄԱՐՔՍԻՍԹԱԿԱՆ-ԱՆԱՐՇԻՍԹԱԿԱՆԸՆԹԵՐՑՈՒՄԸ Դ. ՅԱՒԵԼՈՒԱԾ *ՃԱՀԱԿԻՐԻ*

Լոյս տեսաւ *Ճահակիրի* չորրորդ յաւելուածը՝ *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ Հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը (Փարիզի Քոմիւնի 145-ամեակին առիթով)* (202 էջ): Ասիկա երրորդ յաւելուածն է՝ որ հայոց ցեղասպանութիւնը կը փորձէ դիտել այլընտրանքային (յաճախ՝ հակահիմնահոսանքային) տեսանկիւնէ: Առաջին երկուքը (Ա. եւ Բ. յաւելուածներ) յատկացուած էին Հրանդ Տինքի եւ Հայր Լեւոն Զէքիեանի գաղափարներուն:


ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆԸ,
ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ
ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

ՄԱՐՔՍԻՍԹԱԿԱՆ-ԱՆԱՐՇԻՍԹԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՒՄ ՄԸ

(Փարիզի Քոմիւնի 145-ամեակին առիթով)

ՃԱՀԱԿԻՐԸՆԹԱՑԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Դ.

ԳԱՀԻՐԷ
2016

Յաւելուածը կը տրուի անվճար փափաքողներուն համար: Ստանալու համար դիմել՝ tchahagir@journalist.com:

## ՎԱՐԴԱՆ ԱՅԳԵԿՑԻԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ
## ԿՏԱԿ ԳԱՆՁԻ ՄԱՍԻՆ

Իմաստուն եւ աղքատ մարդ մը ունէր ծոյլ որդիներ: Մահուան ժամուն կանչեց որդիներուն եւ ըսաւ.

– Ով զաւակներ, իմ նախնիները շատ գանձ թաղած են մեր այգիին մէջ, եւ ես ձեզի ցոյց չեմ տար անոր տեղը: Այդ գանձը կը գտնէ այն, որ շատ աշխատի եւ խոր փորէ:

Եւ հօր մահէն ետք որդիները սկսան աշխատիլ մեծ եռանդով եւ կը փորէին խորագոյն, որովհետեւ իւրաքանչիւրը կ'աշխատէր, որ ինքը գտնէ գանձը:

Եւ այգին սկսաւ աճիլ եւ զօրանալ եւ առատ բերք տուաւ եւ իրենց հարստացուց գանձերով:

## 15,428,777 ՏՈԼԱՐ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԵՑԱՒ «ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ԹԵԼԵԹՈՆԻՆ



Թունեան (ԱՄՆ)՝ 200 հազար տոլար, Սամուէլ Ալեքսանեան (Հայաստան)՝ 200 հազար տոլար, Վարուժան Գրիգորեան (Հայաստան)՝ 100 հազար տոլար, «Ֆլեչ» ՍՊԸ-ն (Հայաստան)՝ 100 հազար տոլար, Յակոբ Պաղտասարեան (ԱՄՆ)՝ 100 հազար տոլար, Գագիկ Ծառուկեան (Հայաստան)՝ 100 միլիոն դրամ, «Գրանդ Հոլդինգ» (Հայաստան)՝ 60 միլիոն դրամ, եւ Մաքուր Երկաթի գործարանը (Հայաստան)՝ 20 միլիոն դրամ:

Յիշեցնենք՝ որ անցեալ տարուայ «Հայաստան» հիմնադրամի հեռուստամարաթոնին հանգանակուած էր մօտ 10,4 միլիոն տոլար:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ՝ ԵԱՏՄ ԱՆԴԱՄԱԿՑՈՒԹԻՒՆԻՑ ՄԻԱԿ ԳՈՀ ՄԱՐԴԸ. ԻՆՉ ՁԵՌՔ ԲԵՐԵՑ ՏԻԳՐԱՆ ՍԱՐԳՍԵԱՆԸ.



ներկայացուցիչների նման: Թէեւ յայտարարուեց, որ Լարսի անցակէտում ԵԱՏՄ երկրների ուղեւորափոխադրումների ու բեռնափոխադրումների համար ստեղծուել է «կանաչ անցուղի», որի շնորհիւ մեր բեռնափոխադրողները եւ ուղեւորափոխադրողներն աւելի քիչ ժամանակ պէտք է ծախսէին՝ անցակէտը հատելու համար, այնուամենայնիւ, խոստացուած կանաչ միջանցքը այդպէս էլ չի գործարկւում: Իսկ ո՞վ շահեց այդ համաձայնագրի ստորագրումից. Հայաստանի նախկին վարչապետ Տիգրան Սարգսեանը, որը բարձր աշխատավարձով ազդեցիկ պաշտօն զբաղեց՝ Եւրասիական տնտեսական յանձնաժողովի կոլեգիայի նախագահ: Յիշեցնենք, որ 2008 թուականին Հայաստանի վարչապետի պաշտօնը ստանձնելիս Տիգրան Սարգսեանն իր անձնական հաշիւներում ունէր 17 միլիոն 247 հազար դրամ եւ 22 հազար դոլար, իսկ 2014-ին երբ ստիպուած հրաժարական տուեց, բացի մի քանի անշարժ գոյքերից, բաժնետոմսից ստացած գումարից՝ Սարգսեանը յայտարարագրեց 2 մլն 500 հազար դրամ եւ 955 հազար դոլար «քէշ գումար»: Սրանք պաշտօնապէս»:

**ԽՈՀԵՐ**

## ՀԱՅԱՊԱՀՊԱՆՈՒՄ՝ ԱՌԱՆՑ ԱՐԵՒՄՏԱՀԱՅԵՐԷՆԻ՞

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

2010-ին ԻՒՆԷՍՔՕ-ն արեւմտահայերէնը հռչակեց վտանգուած լեզու: Մենք՝ արեւմտահայերէնը իբրեւ պահպանողներս, քիչ մը տխրեցանք ու յուզուեցանք: ԻՒՆԷՍՔՕ-ի յայտարարութիւնը կարծես նորութիւն մը ըլլար մեզի համար:

«Մեր բազմաթիւ իրարանցումներուն, տեղայնութիւններուն եւ բարեսիրութիւններու ինքնագոհութեամբ գինովցած՝ խլացանք, չուզեցինք տեսնել ահագնացող վտանգը, անորակ երգ ու պարի, բարեսիրութեան աժան բաւարարութեան եւ երջանկացնող եւ անվաղորդայն գրօսաշրջութեան թմբիրին անձնատուր», ԻՒՆԷՍՔՕ-ի յայտարարութեան առիթով 2011-ին կը գրէր Յակոբ Պալեան եւ կ'աւելցնէր. «Այս [իմա՝ արեւտահայերէնի վտանգի, Հ.Ա.] հարցով հայ մարդիկ սկսած են զբաղիլ, երբ ԻՒՆԷՍՔՕ-ն արեւմըտահայերէնը համարած է վտանգուած լեզու: Ոչ այնքան ալ հեռու անցեալին, երբ խօսած են Բենիամին Թաշեան, Շաւարշ Նարդունի եւ Շաւարշ Միսաքեան, չենք ուզած լսել: Անոնց ձայնը չէր գար միջազգային համարուած ամպագոռգոռ ատեաններէ: Անոնք չէին գրած միջազգային եւ մեծ համարուած լեզուներով, մեր ինքնասիրութիւնը շոյելով:» (Յակոբ Պալեան, «Արեւմտահայերէնը անհետացման վտա՞նգ կ'ապրի», *Նոր Յառաջ*, Փարիզ, 29 Նոյեմբեր 2011, Բ. տարի, թիւ 295, էջ 5:)

Յակոբ Պալեան հմուտ գրիչի մէկ հպումով մը համառօտագրեց ամէն բան: Մէկ կողմէ արտաքին (միջազգային) խօսքը՝ իր հմայքով ու գրաւչութեամբ, միւս կողմէ ներքին խօսքը իր երկու երեսակներով՝ խիզախ կարծիքի լռեցումը կամ անտեսումը (Բենիամին Թաշեանի խօսքին անլսելիութիւնը իբրեւ լաւագոյն նմոյշ) եւ սահմանափակ ու կարծրատիպային մշակոյթի («երգ ու պարի») անորակութեան ու դրամագլուխի («բարեսիրութեան») աժան բաւարարութեան թմբիրը:

«Հայապահպանում»-ի մեծ պատումը մշտաներկայ է յետցեղասպանական սփիւռքի գաղափարախօսութեան մէջ: Այլեւ ան կը կազմէ սփիւռքահայ գաղափարախօսութեան գոյատեւումին գլխաւոր հենքը: Հայապահպանում բառը կը լսուի ամէն տեղ ու ամէն օր, իսկ ընտրելախաւը անընդհատ կը յիշեցնէ հայապահպանումի գործընթացին մէջ իր ունեցած դերը: Եւ ահաւասիկ, «միջազգային» ատեան մը հայապահպանումի ամենակարեւոր բաղկացուցիչը կազմող արեւմտահայ լեզուն կը յայտարարէ վտանգուած: Ասիկա Թաշեանի նման ձայն մը չէր՝ զոր կարելի ըլլար անտեսել, այլ միջազգայնասէր հայերուն փայփայած միջազգային ատեան մը, որուն դրոյթը կասկածի ենթարկելու պարագային վտանգի տակ դրուած պիտի ըլլար ուրիշ միջազգային ատեաններու «հայանպաստ» որոշումներուն արժանահաւատութիւնը:

Եթէ հայապահպանումի գլխաւոր չերտը՝ արեւմտահայ լեզուն, վտանգուած է, կը նշանակէ հարիւր տարուայ հայապահպանումի գործընթացը ձախողած է: Ասիկա դիւրաւ ըմբռնելի հետեւութիւն մըն է: Բայց ո՞վ կ'ընդունի իր ձախողանքը: Ամէն ինչ կը գտնուի հայապահպանողի եւ անոր պատումը արտադրողի ձեռքը՝ լրագրական ցանցերը, լուր կերտելու մեքանիզմները, լուրերը տեղ հասցնելու խողովակները: Ձախողանքը ընդունելու պարագային, ամբողջ համակարգեր կրնան տապալիլ, իրադարձային փոփոխութեամբ մը կրնան յայտնուիլ նոր ենթականեր՝ խանգարելով աւանդական հայապահպանողներուն անդորրութիւնը, հանդէս կրնան գալ տարբեր ուղղութիւններ՝ բազմազան, բազմաշերտ, բազմանպատակ, իսկ հայապահպանումը կրնայ փոխուիլ հայազարգացումի: Վերջապէս, զարգանալ-զարգացնելով է որ բան մը կը պահուի, մինչ անընդհատ պահպանելով ան կը նեխի ու կը թօշնի:

ԻՒՆԷՍՔՕ-ի վճիռէն ետք, հայապահպանումի պատում-գաղափարախօսութիւնը անխախտ պահպանելու համար, աւանդականները միաժամանակ ու փոխադարձաբար օգտագործեցին տարբեր մօտեցումներ.

1. Մտահոգութեան աստիճանի բարձրացում: Հայապահպանողները՝ յաւելեալ գրութիւններով, համագումարներով կամ ձեռնարկներով կը բացայայտեն իրենց մտահոգութիւնը արեւմտահայերէնի կորուստին նկատմամբ:

2. Անանուն, ամբոխավարային յանցաւորի մը մատնանշում: Չկայ աւելի անխօս ու անձայն պատասխանատու՝ քան նոյն ինքը հայապահպանուող զանգուածը: Հայապահպանողը հարիւր տարի է անձնուիրաբար կ'ընէ իր պարտականութիւնը, բայց, դժբախտաբար, ժողովուրդը անընդունակ է հայապահպանուելու: Իսկ ամբոխին չես կրնար պատժել, մէկ ամբոխ մը չես կրնար փոխարինել ուրիշով:

3. Զոհուածութեան ինքնադրութեան ուժեղացում: Հայապահպանողը իր ինքնակենսագրական ելոյթներուն մէջ միշտ կը շեշտէ իր եւ իր համակիրներուն կատարած զոհողութիւնները հայապահպանումի համար (մէկ կողմ ձգենք հայապահպան որոշ ուսուցիչ-գործիչներու ստացած ահռելի ամսականները): ԻՒՆԷՍՔՕ-ի յայտարարութեամբ ան ինքզինք կը ներկայացնէ իբրեւ զոհ, քանի որ հակառակ իր անձնուրաց զոհողութիւններուն՝ արտաքին, իրմէ անկախ, իր կամքէն վեր պատճառներով կործանուեցաւ իր նուիրական աշխատանքը: Զոհուածութեան գաղափարը շատ լաւ կը գործէ արդի մարդկութեան երկփեղկուած հոգեբանութեան մէջ:

4. ԻՒՆԷՍՔՕ-ի յայտարարութեան վերածումը լուրի դրութեան: Լուրը այն առարկայականացուած դէպքն է, որուն մասին մարդիկ կը գիտնան, կ'իմանան, կը տեղեկանան իբրեւ օտարացած դիտորդներ, առանց ենթակայական յուզումներու եւ այդ ենթակայականութիւնը իրական շարժումի ու գործնական ըմբոստութեան վերածելու գիտակցութեան:

5. Հայապահպանումի նախկին պատումին շարունակումը՝ նոյն անձերով եւ նոյն մեթոտներով, կարծես ԻՒՆԷՍՔՕ-ն գոյութիւն չունի:

Մշտաշարժութիւն՝ առանց իրական շարժումի, մշտափոխութիւն՝ առանց իրական փոփոխութեան: Տուժողը՝ արեւմտահայ լեզուն:

ԻՒՆԷՍՔՕ-ի «պաշտօնական» յայտարարութիւնը չցնցեց հայկական սփիւռքները, չյեղաշրջեց զանոնք, թէեւ յայտարարութիւնը անասելիօրէն ցնցող էր:

(Շար. 1)

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԸ ԿԸ ՍՏԱՆԱՅ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ՎԱՐԿԱՒՈՐՄԱՆ ՎԿԱՅԱԿԱՆ

### ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Այսու կը յայտարարենք, թէ մեր Վարժարանը ստացած է Որակի եւ Վարկաւորման վկայական՝ Ուսման Որակի Երաշխաւորումի Ազգային Հիմնարկէն Մանկապարտէզի բաժնին համար, 2015-2016 տարեշրջանին :

Ուստի, Ազգային Առաջնորդարանը եւ Վարժարանի Տնօրէնութիւնն ու Հոգաբարձութիւնը շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր ուսուցիչներուն եւ պաշտօնեաներուն՝ անցեալ տարուան ընթացքին իրենց տարած բացառիկ աշխատանքին եւ նուիրումին համար:

Յատուկ շնորհակալութիւն կը յայտնենք մեր սիրելի աշակերտներուն եւ ծնողներուն՝ իրենց անսահման քաջալերանքին եւ գործակցութեան համար:

Կ'արժէ նշել որ Գալուստեան-Նուպարեան Ազգ. Վարժարանի նախակրթարանը եւս արժանացած է այս նոյն վկայականին, 2013-2014 դպրոցական տարեշրջանին:

Յառաջ դէպի նորանոր յաջողութիւններ...

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր

Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութիւնը կը տեղեկացնէ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի հայութեան, թէ Միութեանս «Սաթենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին 2017 տարեշրջանի անդամագրուիլ փափաքողները պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել յատուկ հարցաթերթիկներու վրայ 1 Նոյեմբերէն 2016-էն մինչեւ 10 Դեկտեմբեր 2016.

ԳԱՀԻՐԷԻ մէջ
Գահիրէի Ազգային Առաջնորդարան
179, Ռամսիս փողոց,
Ուրբաթ օրերը առաւօտեան ժամը 10-էն յ.մ. ժամը 2:

ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ Կեդրոնը
26, Մուրատ Բէկ փողոց – Հելիոպոլիս, Հեռ. 22916444 - 24151127
Առաւօտեան ժամը 10-էն յ.մ. 3, բացի Կիրակի եւ արձակուրդ օրերէն:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Գրասենեակը
Դիմել՝ Ջուարթ Գարդալեանի
Հեռ. 01223110673

ԾԱՆՕԹ.- Ա) Նոր դիմումնագրերուն համար կը խնդրուի ներկայացնել ինքնութեան թուղթին պատճէնը, 1 նկար եւ հայ համայնքին պատկանելու փաստաթուղթ:

Բ) Նորոգութեան համար դիմողներէն կը խնդրուի ներկայացնել 1 նկար եւ 2016-ի ծրագիրին մասնակցութեան քարտին պատճէնը: Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին բարեփոխեալ կանոնագրութիւնը ստանալէ յետոյ, վճարել Ե. Ո. 180 մասնակցութեան սակը:

ՀԲԸՄ-ը ինքզինքին կը վերապահէ բոլոր կարգի դիմումներուն ընդունումը կամ մերժումը:

ԳԱՀԻՐԷԻ ՀԲԸՄ-Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԻՐԱԿԱՆ ԴԷՄՔԸ. ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԸ.....

1

Իսկ որքանո՞վ է ջագասէր Կարէն Կարապետեանն ամբողջովին վստահելի Պուտինի համար եւ որքանո՞վ նա կը կարողանայ աւարտին հասցնել այս ամբողջ գործընթացն ու ինչո՞ւ փոքր-ինչ վերեւում գրեցինք՝ քաղաքական կուլիսներում վազվզողների աչքերով: Որովհետեւ իրականում Պուտինի համար, ըստ մեզ հասած տեղեկութիւնների, առաւել վստահելի է ոչ թէ Հայաստանի վարչապետ Կարէն Կարապետեանն, այլ՝ Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը, եւ այս ամէնը պարզապէս նախապատրաստւում է նրա համար: Ինչպէս իւրաքանչիւր յեղափոխութիւնների ժամանակ այն իրագործողներից յետոյ, մաքրւում են կատարողներն, այնպէս էլ՝ յընթացս որեւէ տեղում ծրագրւում է Կարէն Կարապետեանի սայթաքումը: Եթէ այն լինի շատ ցաւոտ, ապա նա իրեն յատուկ ոճով կը հեռանայ Հայաստանից, եթէ՝ փոքր-ինչ սահուն, ապա հնարաւոր է գլխաւորի խորհրդարանը, ինչը հայաստանեան լրատուամիջոցներից մէկը լսել ու վերագրել էր Սամուէլ Կարապետեանի եղբայր՝ Կարէն Կարապետեանին:

Հայաստանում բոլոր տեսակի փոփոխութիւնների՝ լինեն դրանք լաւ, կամ՝ վատ, դիրիժորը Ռոբերտ Քոչարեանն է, ով, ի դէպ, եղել է եւ կայ այդ դերում, իսկ ամբողջը կարգաւորող պուլտի կոճակը Պուտինի ձեռքում է:

Ահա ծրագրուածն ամբողջացնելուց յետոյ էլ՝ կա՛մ 2017 թ. խորհրդարանական ընտրութիւնների արդիւնքում, կա՛մ՝ 2018 թ.-ին Սերժ Սարգսեանի լիազօրութիւնների աւարտից անմիջապէս յետոյ, Հայաստանի վարչապետ կը նշանակուի Ռոբերտ Քոչարեանն ու Հայաստանը կը շարունակի ղեկավարել՝ Պուտինի ամբողջական կառավարմամբ:

ՀՀԿ հերթական համագումարից առաջ այդ կուսակցութեան գիտակից խաւը կը հասկանա՞յ, կը գիտակցի՞, որ գրեթէ բոլորը վինտիկներ են Պուտին եւ Քոչարեան երկեակի ձեռքում, խիստ կասկածում ենք, որովհետեւ գիտակցելու դէպքում անգամ ոխկ չեն անի որեւէ քայլ անել, քանզի գոնէ անմեղսունակ չեն այնքան, որ չհասկանան՝ այս ամէնը կարող են կանգնեցնել միայն աշխարհի իրական տէրերը, որոնց սակայն Հայաստանը չա՜տ քիչ է հետաքրքրում, շատերն անգամ այդպիսի անուամբ պետութեան տեղն էլ չգիտեն:

Յ. Գ. – Սովորաբար անկախ լրատուամիջոցիս չսիրելու պատճառներից մէկն էլ այն է, որ հրապարակում ենք փաստեր, որոնք ուրիշները ջանում են գաղտնի պահել: Իրավիճակն էլ աւելի բարդ է դառնում, եթէ այդ գաղտնիքներն առնչւում են դիւանագիտական կամ քաղաքական ոլորտներին:

Միտք.am



## Հ Բ Ը ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ՀԲԸՄ-ի 110-ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

1906 - 2016

Հովանաւորութեամբ

Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց

եւ

Արհ. Տ. Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսանի

Վիճակաւոր Եգիպտահայ Կաթողիկէ համայնքին

Հանդիսութեան Պատուոյ Հիւր

Ն.Գ. ԴՈԿՏ. ԱՐՄԷՆ ՄԵԼՔՈՆԵԱՆ

Հ.Հ. Եգիպտոսի Արտակարգ Եւ Լիազօր Դեսպան

**Կիրակի 11 Դեկտեմբեր 2016, երեկոյեան ժամը 8:00-ին**

Heliopolis Association-ի հանդիսասրահին մէջ

28 Օրուպա փողոց - Հելիոպոլիս

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1780 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. عدد رقم ١٧٨٠ الخميس ١٥ ديسمبر ٢٠١٦


## ՍՓԻՒՌՔԸ ԵՒ ՈՉ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՈՒԺԵՐԸ՝ ԸՆԴԴԷՄ ԸՆՏՐԱԿԵՂԾԻՔԻ ՄԵՔԵՆԱՅԻ

### ՏԻԳՐԱՆ ԱՓՈՒՆՑ

Հայաստանում չատ է խօսւում, որ մենք Իսրայէլի պէս չրջապատուած ենք Թշնամիներով եւ պէտք է այդ նոյն Իսրայէլից օրինակ վերցնենք, թէ ինչպէս պայքարել Թշնամիների դէմ եւ դրա հետ մէկտեղ կառուցել տնտեսապէս հզօր եւ զարգացած պետութիւն: Սակայն, տարիներ չարունակ այս խօսակցութիւններն այդպէս էլ առարկայական չեն դառնում: Իսրայէլ պետութեան կայացման հարցում չատ մեծ դեր է ունեցել հրէական սփիւռքը: Այն ոչ միայն ֆինանսապէս էր աջակցում Իսրայէլին, այլեւ իր գործուն մասնակցութիւնն է ունեցել Իսրայէլի քաղաքական համակարգի կայացման մէջ, եւ այսօր էլ չարունակում է իր լուրջ ազդեցութիւնն ունենալ հրէական պետութեան զարգացման վրայ:

Գոնէ այս բաղադրիչով մենք կարող ենք նմանուել Իսրայէլին եւ Սփիւռքի հետ համագործակցութեան էֆեկտիւ մոդէլ կառուցել, որի առանցքում կը լինի ոչ թէ տարին մէկ անգամ մեծ դրամահաւաք կազմակերպել եւ ամբողջ աշխարհում սփռուած հայերից գումար ստանալ որպէս նուիրաբերութիւն, իսկ յետոյ դժգոհել, թէ իրենք տարեցտարի աւելի քիչ գումար են մեզ տալիս, այլ չահագրգռել սփիւռքահայերին, որպէսզի իրենք աւելի մեծ մասնակցութիւն ունենան հայկական պետականութեան կայացման գործում:

Սփիւռքից եկած հայկական կապիտալին պէտք է բացառիկ արտօնութիւններ տանք մեր երկրում: Պէտք է ստեղծենք այնպիսի պայմաններ, որ սփիւռքահայերը գալով Հայաստան ոչ թէ որպէս դրամապանակ ընկալուեն, այլ կարողանան ճանաչել Հայաստանը՝ որպէս մչակութային վայր եւ ինքնութիւնը վերագտնելու միջավայր:

Իչխանութիւնները պէտք է մչակէին նաեւ մի տարբերակ, որով Սփիւռքի մեր հայրենակիցները կարողանային իրենց մասնակցութիւնն ունենալ քաղաքական գործընթացների մէջ: Սակայն, քանի որ դա չարեցին իչխանութիւնները, դա արեցին իրենք՝ սփիւռքահայերը: Մասնաւորապէս՝ Արդարութիւն Հայաստանում նախաձեռնութիւնը, որի համահիմնադիրներից են Սերժ Թանկեանը, Ատոմ Էգոյեանն ու Արսինէ Խանջեանը, ուղղուած է նրան, որ ստեղծուի եւս մէկ լծակ, որի միջոցով հնարաւոր կը լինի վերահսկել ընտրական գործընթացները Հայաստանում:

Յատկանչական է նաեւ այն, որ նախաձեռնութեան հիմնադիրները դեռեւս Սեպտեմբերին յայտարարել էին, որ իրենք Հայաստանում ոչ մի քաղաքական ուժի չեն յարում եւ իրենց նպատակն է ապահովել ընտրական մեխանիզմների Թափանցիկութիւնը եւ պահպանել ժողովրդի քուէի իրական պատկերը: Համաձայնէք, որ սկզբի համար սա բաւական ռացիոնալ ծրագիր է, որը Թէ՛ մեզ Թոյլ կը տայ աւելի մեծ վստահութիւն ունենալ ընտրական գործընթացների նկատմամբ եւ Թէ՛ մեր սփիւռքահայ հայրենակիցներին աւելի մօտիկի ծանօթանալ ներհայաստանեան գործընթացներին եւ այն կարեւորագոյն խնդիրներին, որոնք առկայ են Հայաստանում: Բայց այս նախաձեռնութիւնն իր ստեղծման օրից դարձել է իչխանութիւնների եւ իչխանամերձ չրջանակների քննադատութեան Թիրախը, որի հիմնական Թէզն այն է, Թէ պէտք չէ, որ սփիւռքահայերը մեզ կեանք սովորեցնեն, դեռ մի բան էլ ասեն լաւ ենք ընտրութիւն իրականացնում, Թէ ոչ:

Ու հետաքրքիրն այն է, որ նման կարծիք յայտնում են նաեւ իրենց մտաւորական համարող Հեռուստատեսութեան եւ Ռադիոյի ազգային յանձնաժողովի անդամները: Այս տեսակէտը ի ցոյց է դնում առհասարակ իչխանութեան ներսում տիրող մօտեցումներն ու վերաբերմունքը հանրային կեանքի եւ գործընթացների նկատմամբ, որը կարելի է հետեւեալ կերպ բնութագրել. Հայաստանի բնակչութիւնը պարտաւոր է կանոնաւոր կերպով վճարել բոլոր հարկերն ու տուրքերը, Սփիւռքը պարտաւոր է ամէն տարի Հայաստան համահայկական հիմնադրամին գումարներ փոխանցել, բայց ոչ ոք իրաւունք չունի վերահսկել Հայաստանում քաղաքական գործընթացները, որովհետեւ դրանք գտնւում են միմիայն իչխանութիւնների ազդեցութեան գօտում: Եւ հետաքրքիրն այն է, որ այս տեսակէտն իչխանութիւնը լսեցնել է տալիս ոչ Թէ իր ներկայացուցիչների միջոցով, այլ ֆորմալ անկախ կամ ֆորմալ մտաւորական համարուող անձանց միջոցով, քանի որ իչխանութիւնները լաւ հասկանում են, որ ժողովուրդն այնքան էլ զզուած իրենցից, որ ինչի դէմ իրենք խօսեն, դրան աւտոմատ կողմ է արտայայտուելու ժողովրդի մեծամասնութիւնը:

Ամփոփենք:

Արդէն հիմա յայտնի է, որ Արդարութիւն Հայաստանում չարժումը կայացած է եւ նրա ներկայացուցիչները Ապրիլին գալու են Հայաստան՝ վերահսկելու ընտրական գործընթացները: Բոլոր ոչ իչխանական քաղաքական ուժերն այս ընթացքում պէտք է իրենց ուժերի ներածին չափով աջակցեն այս նախաձեռնութեանը եւ միասնական ուժերով փորձեն Ապրիլին սանձել իչխանութիւնների ընտրակեղծիքի մեքենան: Այլ ճանապարհ մենք չունենք:

http://zham.am/am/news/74842.html

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ՔԱՆԴՈՒԱԾ ԳԻՒՄՐԻՆ 28 ՏԱՐԻ ԱՆՑ ՎԵՐԱԿԱՆԳՆԱԾ ՉԷ

1988-ի երկրաչարժէն 28 տարի անցած է: Ըստ Շիրակ կեդրոնի տնօրէն Վահան Թումասեանի՝ երկրաչարժի հետեւանքով քանդուած Գիւմրի քաղաքը 28 տարի ետք դեռ վերականգնած չէ:

Անոր խօսքով՝ բնակարանային համալիրները մեծ մասամբ վերականգնուած են, բայց այսօր դեռ 3 հազար ընտանիքներ կ'ապրին ժամանակաւոր կացարանի կամ խարխուլ վակոնտնակներու մէջ:

«Կառավարութեան պատկերացումները բնակարանային համալիրի վերականգնման մասին իրարից տարբերւում են մի հասկանալի պատճառով՝ կառավարութիւնն ինքը որոշակի պահանջներ է ներկայացրել, որոշումներ է կայացրել եւ ասում է՝ «այս պա-հանջներին համապատասխանող ընտանիքներին մենք համարում ենք չահառու եւ փոխհատուցում ենք»: Բայց կան ընտանիքներ, որոնք Թէեւ կառավարութեան սահմանած նորմերի մէջ չեն մտնում, բայց նրանք անմիջական երկրաչարժի հետեւանքով աղէտեալ, անօԹեւան դարձած ընտանիքներ են: Ասէք, եԹէ պետութիւնը բազմաբնակարան չէնքից կորցրած բնակարան ընտանիքին է փոխհատուցում, բայց սեփական բնակարան կորցրածին չի փոխհատուցում, ասենք՝ մինչեւ սահմանուած ժամկէտում փաստաԹղԹեր ներկայացրած ընտանիքին փոխհատուցում է, միւսներին չի փոխհատուցում, եԹէ մէկը չի հասցրել ժամանակին բոլոր պահանջուող փաստաԹղԹերը ներկայացնել, չի նչանակում, Թէ ինքը երկրաչարժից բնակարան չի կորցրել եւ անօԹեւան չէ», - ըստ Թումասեան:

## ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԸ ԻՐԵՆՑ ՌԵՍՈՒՐՍՆԵՐՈՎ ԱՄԲՈՂՋԸ ԿԸ ՎԵՐՑՆԵՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹԵԱՆ ՏԱԿ

ՄԻՏՔ.am, 6 Դեկտեմբեր - Գագիկ Ծառուկեանի քաղաքական կարգավիճակի վերականգնումը, անկասկած, լուրջ մարտահրաւէր է այն ուժերի համար, որոնք իրենց գործունէութիւնը ծաւալում են ընդդիմադիր դաչտում:

Այստեղ իհարկէ կան տարբեր ուժեր, տարբեր խնդիրներով, այդ Թւում՝ իչխանութեան դրածոյ ուժեր, կամ ուժեր, որոնց այնտեղ լինելը խիստ ձեռնտու է իչխանութեանը, քանի որ դրանք բաւականաչափ խոցելի են եւ վերահսկելի, քանի որ նախկինում այս կամ այն Թելով կապուած են եղել իչխանութեանը:

Այդ տեսանկիւնից, Ծառուկեանի կարգավիճակի վերականգնումով առաջացող մարտահրաւէրը, իհարկէ, հաւասարապէս նոյնական չէ ընդդիմադիր դաչտում գործող ուժերի համար: Նրանք բոլորը կանգնում են խնդրի առաջ, բայց ամէն մէկի դէպքում այդ խնդիրը տարբեր է: Հնարաւոր է իհարկէ դիտարկել այդ ուժերի հիմնական սպեկտրի ներկայացուցիչներին եւ նրանց հանդէպ Ծառուկեանի բերած մարտահրաւէրը, սակայն, այստեղ երեւի Թէ առաւել կարեւոր է արձանագրել ընդհանուր իրավիճակի մի էական հանգամանք:

Գագիկ Ծառուկեանի քաղաքական կարգավիճակի վերականգնումը՝ լինի դա զուտ Բարգաւաճ Հայաստան Կուսակցութեան (ԲՀԿ) կուսակցական չրջանակով, Թէ աւելի լայն մոբիլիզացիա եւ տարբեր այլ ուժեր ներառող ֆորմատով, նչանակում է, որ այդպիսով իչխանութիւնը լիովին ծածկում է նախընտրական չրջանի, այսպէս ասած՝ սոցիալ-տնտեսական մասնաբաժինը: Իչխանութիւնն ու Գագիկ Ծառուկեանը իրենց ռեսուրսներով այս ամբողջ բաժինը կը վերցնեն վերահսկողութեան տակ, եւ այստեղ իհարկէ այլ ուժերի գործնականում չի մնում արդիւնաւէտ խաղի որեւէ հնարաւորութիւն: Սոցիալ-տնտեսական բաժինը Հայաստանում առաւելապէս Թիրախաւորում է բողոքական ընտրազանգուածը, որի համար համակարգային խնդիրները, դրանց քաղաքական ճիւղաւորումները, պատճառներն ու չերտաւորումները էական չեն: Այդ ընտրազանգուածի համար էական են կոնկրէտ սոցիալական եւ տնտեսական հեռանկարները: Իսկ այստեղ, իհարկէ, իչխանութիւնն ու Ծառուկեանը լինելու են մրցակցութիւնից դուրս, յատկապէս Ծառուկեանի ընդդիմադիր հռետորաբանութեան պարագայում: Դա նչանակում է, որ ընդդիմադիր դաչտում ծաւալուելու յաւակնութիւն եւ ծրագրեր ունեցող ուժերի համար, ըստ ամենայնի, բաց է մնում գերազանցապէս քաղաքական ասպեկտը, կամ իրաւա-քաղաքական: Այսինքն, այդ ուժերը կարող են որեւէ բան փնտռել այն քաղաքացիների չրջանում, որոնց մօտ բաւական բարձր է քաղաքացիական իրաւագիտակցութեան մակարդակը եւ նրանք քաղաքական գործընթացները դիտարկում են ինտելեկտուալ առաւել բարձր չափորոչիչներով եւ նչաձողերով, դիտարկում են համակարգային խորութեամբ եւ նրանց հետաքրքրում են երկարաժամկէտ, ռազմավարական քննարկումները, հարցադրումները եւ լուծումները: Դա ներառում է Թէ՛ իրաւական-քաղաքական ներքին

↳4

# ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒԻ ԳՈՅԱՎԻՃԱԿԸ

**ՈՍԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ**
Նախկին տնօրէն Լոս Անճելըսի
Մխիթարեան Վարժարանի

Մի քանի օրեր առաջ իրաւաբանական գործերուս բերումով կը գտնուէի Կլէնտէյլի դատարանի գրասենեակներէն մէկուն մէջ, ուր դէմ յանդիման եկայ վերը երեւցող ցուցատախտակին: Պարտաւոր էի սպասել որպէսզի դատարանի պաշտօնեան ինծի փոխանցէր յատուկ դատական թղթածրար մը: Մինչ այդ սակայն, հակառակ սենեակի գովութեան, սկսայ քրտնիլ եւ ահաւոր փոթորիկ մը կուտակուեցաւ մէջս: Ո՞վ կատարած է այս ոճիրը, հարց կու տայի ինքզինքիս: Այս հայահոծ գաղութին մէջ ինչպէ՞ս կրնայ նման ողբերգութիւն մը դրսեւորուիլ:

Ակներեւ է եւ չափազանցած չենք ըլլար եթէ յայտարարենք, թէ հայոց լեզուն կը նահանջէ, որովհետեւ կորսնցուցած ենք մեր բծախնդրութիւնը հայ լեզուի նկատմամբ: Զի՛ բաւեր որ խօսակցական լեզուն դարձած է խառնարան մը, ըլլայ ընտանեկան եւ կամ դպրոցական յարկերէն ներս, այժմ գրաւոր հայերէնն ալ դարձաւ ուրիշ ողբերգութիւն մը, որուն ակներեւ օրինակները կը տեսնենք մեր նօսրացող մամուլին մէջ նոյնիսկ: Այսուհետեւ ո՛չ արեւմտահայերէնը եւ ո՛չ ալ արեւելահայերէնը հպարտութեան ազդակներ են հանապազօրեայ:

Այնպէս կը թուի որ լաւատես ըլլալու իրաւունք չունինք, որովհետեւ ո՛չ հայրենի պետութիւնը եւ ո՛չ ալ սփիւռքի բանիմաց եւ նախանձախնդիր ղեկավարութիւնը մտահոգուած են այս հարցով: Հայաստանի՝ Սփիւռքի նախարարութեան կազմակերպած համաժողովները բարի կամեցողութենէն անդին որքանո՞վ գործնական քայլեր կ՚առնեն աբեղեանական խեղագրութիւնը ջնջելու, ալ ո՛ւր մնաց որ խօսինք արեւմտահայերէնի մասին իրենց ունեցած մտահոգութիւններու եւ ծրագիրներու մասին եւ արեւմտահայ ուսուցիչներու պատրաստութեան Հայաստանի մէջ…:

Յաճախ կը կրկնենք որ մայրենի լեզուն խարիսխն է ազգի մը գոյութեան, ինքնութեան պահպանման եւ գոյատեւման: Լեզուի կորուստը պատճառ կը դառնայ նաեւ մշակոյթի կորուստին, այլ խօսքով՝ մարդկային պատմութեան թատերաբեմէն անհետ կորստեան: Լեզուն է որ իր մէջ կ՚ամփոփէ եւ կը խտացնէ մշակոյթի մը բոլոր արժէքներն ու գանձերը:

Ցաւալի իրողութիւն է որ նամանաւանդ հայրենիքէն դուրս մեր ժողովուրդը նորաձեւութեան երկրպագու ըլլալով հայերէնը կը նկատէ երկրորդական լեզու: Գաղթականի մեր հոգեբանութիւնը մղած է մեզ հաւատալու որ եթէ չկարենանք տիրապետել մեր ապրած երկիրներու լեզուին՝ չենք կրնար յաջողիլ կեանքի մէջ: Ահաւասիկ այս սխալ հասկացողութիւնը պատճառ դարձած է որ նոր սերունդը տակաւ առ տակաւ հեռանայ իր մայրենի լեզուէն, ինքզինք դատապարտելով մշակութային անկման եւ կորստեան:

Հայրենիքէն ներս ալ արեւելահայերէնը ո՛չ միայն կորսնցուցած է իր երբեմնի փայլքն ու հմայքը, այլեւ դարձած է այլանդակութիւն մը օտարամուտ բառերու կուտակումով եւ փոխ առնուած չարահիւսութիւններով, որոնք կը բթացնեն մեր հազարամեայ մեսրոպաշունչ ոսկեղինիկ հարուստ լեզուն:

Այս տխուր իրողութեան պատճառներէն մէկը մեր ներազգային պայքարներն են, որոնք ջլատած են մեր ուժերը: Միասնականութեան թերացումին գլխաւոր պատճառներէն պէտք է նկատել Հայց. Եկեղեցւոյ ներքին պայքարները, որոնք դժբախտաբար կը շարունակուին մինչեւ այսօր մեր անհանդուրժողութեամբ եւ մերժողական հոգեբանութեամբ:

Նոյնքան եւ աւելի եւս մտահոգիչ եւ ազգակործան են մեր քաղաքական, միջ-կուսակցական պայքարները, որոնք տխուր անդրադարձ ունեցած են եւ ունին տակաւին մեր սփիւռքեան հաւաքական կեանքին մէջ, նամանաւանդ հայկական վարժարաններէն ներս, ուր չկրցանք արմատաւորել եւ չեշտել մշակոյթով մէկութիւն ստեղծելու կարեւորութիւնը:




*«Յեթե անկարող եք վճարել դատարանի ծախսերը, խնդրեք որ դատարանը չեզ թույլ տա շարունակել գործընթացը առանց ծախսերի վճարման: Աշխատաքցից խնդրեք թերթիկ դատարանի ծախսերի զեղջման տեղեկությունների վերաբերյալ եւ դիմում դատարանի ծախսերի զեղջման համար:»*

Այս դժբախտ կացութեան քաջատեղեակ ըլլալէ ետք ինչպէ՞ս մտածել ապագայի մասին, նամանաւանդ երազային Արեւմտահայաստանի մասին, ուր կ՚ապրին մեր թրքացած եւ քրտացած եղբայրները, որոնք անհամբեր կը սպասեն մեր օգնութեան: Եթէ լեզուն չէ որ մեզ պիտի միաւորէ, հապա ի՞նչն է որ մեզ իրարու պիտի շաղկապէ: Ինչպէ՞ս պիտի վերադառնան անոնք իրենց պապենական հազարամեայ մշակոյթին՝ առանց լեզուի, այլ խօսքով՝ եթէ հայերէն չգրեն ու չխօսին:

Դժբախտաբար կը փորձենք ուրանալ ա՛յն իրողութիւնը, որ հայրենիքի եւ սփիւռքի տարածքին տապալած ենք մեր էութեան մէջ հայութեան ինքնութեան գերագոյն զէնքը՝ մայրենի լեզուն, որուն բացակայութիւնը կը մաշեցնէ եւ կը յանձնէ մեզ բախտի յորձանուտի քմայքին:

Ինչպէ՞ս մոռնալ Տէր Զօրի անապատներուն մէջ խլեակ դարձած մեր մայրերուն անխորտակելի կամքը, որոնք իրենց թշուառութեան մէջ, պապակած շրթներով, անապատի կիզիչ աւազներուն վրայ գրեցին եւ արտասանեցին մեսրոպաշունչ այբուբենի տառերը, որպէսզի եաթաղանէն ազատուած իրենց երախաները չմոռնան մայրենի լեզուն:

Անտարակուսելի է եւ ճիշդ է այն իրողութիւնը, որ կը պայքարինք հոսանքն ի վեր, որովհետեւ նոր սերունդին համար ամենէն գործնական լեզուն անգլերէնն է, սակայն եւ այնպէս հաւաքական մեր կեանքին մէջ զգալի է մեծամասնութեան անտարբերութիւնը եւ նախաձեռնութեան բացակայութիւնը, որուն կարեւոր ցուցանիշներէն մէկն ալ վերեւ յիշատակուած ցուցատախտակն է: Եթէ այս հայահոծ գաղութը իր կազմակերպութիւններով եւ եկեղեցիներով բծախնդրութիւնը ունենար հայ լեզուի նկատմամբ, նման «ոճիրներու» դէմ յանդիման պիտի չգտնուէինք, ո՛չ դատարանի մէջ, եւ ո՛չ ալ մեծ մասով հայ հիւանդներով լեցուն հիւանդանոցներու մէջ, ուր բռնաբարուած է հայոց լեզուն:

Մեր առջեւ պարզուած այս տխուր իրականութիւնը մեծագոյն ազդարարութիւնը պէտք է ըլլայ արթնութեան եւ զգաստութեան: Հայ լեզուի նկատմամբ մեր անտարբերութիւնը կրնայ նաեւ խորտակել մեր ազգային ոգին, եւ չափազանցած չենք ըլլար եթէ ըսենք որ ժամանակի ընթացքին պիտի զգանք եւ ճաշակենք անոր աւերիչ եւ դառն հետեւանքները:

*Հայաստանի կրօնները*
23 Նոյեմբեր 2016

# ՍՓԻՒՌՔԻ ՆԱԽԱՐԱՐՈՒՀԻՆ ԿԸ ԿԱՏԱՐԷ ՇՓՈԹԵՑՈՒՑԻՉ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**ԱՐԻՍ ՆԱԼՃԸ**

Իմ խնդիրներս Հայաստանի Սփիւռքի Նախարարութեան հետ սկսան 2000-ականներու սկիզբը, երբ Համահայկական Լրատուական Համագումարի ամենէն երիտասարդ մասնակցողն էի սակայն իմ անունս չէր վերջանար «եան»-ով:

Քանի որ Թուրքիայէն ժամանած ամենէն երիտասարդ հայն էի, լրատուամիջոցները հարցազրոյցներ կը վարէին հետս: Առաջին հարցումը միշտ կ՚ըլլար. «Ինչո՞ւ ազգանունդ «եան» չի կրեր», եւ արդեօ՞ք ես իրօք հայ էի թէ պարզապէս հայերէն իմացող թուրք մը:

Ծիծաղելի էր որ այս հարցումները կը հարցնէին իրենց ազգանունները «ովա»-ով վերջացող Հայաստանաբնակ հայեր: Անոնք ռուս չէին: Իսկ ես թուրք չէի: Վերջ:

Վերջին 17 տարիներուն ես շատ սերտ յարաբերութիւններ մշակեցի Հայաստանի հետ: Իմ լաւագոյն բարեկամներս՝ դիւանագէտներ, տեղացիներ, գործարարներ եւ լրագրողներ, բոլորն ալ Հայաստանէն էին: Զմոռնալով նաեւ իմ բոլոր հրաշալի բարեկամներս՝ որոնք տակաւին այնտեղ են: Իմ բնակարանիս (ուր որ ալ ըլլար ան) դուռները միշտ բաց էին իրենց առջեւ:

Ես նոյնիսկ 2008-ին գրեթէ մէկ տարի աշխատեցայ Հայաստանի մէջ՝ յօդուածներ գրելով զանազան հրատարակութիւններու համար: Այստեղ էր ուր ձեռնամուխ եղայ յայտնաբերելու «Նոր Հայաստան» մտածելակերպը: Յետագային, Հայաստան կատարած յաճախակի այցելութիւններուս, ես միշտ կը դիմադրէի Սփիւռքի Նախարարութեան առաջ քաշած այս գաղափարը: Բայց առաջին սերմը արմատաւորուեցաւ 2000-ին, յաճախ հարցական երանգներով:

Առաջին, նախարարութիւնը որոշեց որ ռուսահայերը եւ մենք՝ Թրքահայերս, պէտք է դասակարգուինք իբրեւ «ներքին սփիւռք»: Հակառակ իմ հարցափորձերուս, ես երբեք չկրցայ հասկնալ թէ ինչպէս այս դասակարգումը տեղի ունեցաւ եւ ով էր այս որոշումը կայացնողը: Արդարեւ, անոնք տակաւին կը գործածուին իբրեւ կանոն:

Երկրորդ, ես միշտ համոզուած եմ, որ Հայաստանի սփիւռքի նախարարը պէտք է ըլլայ սփիւռքէն ընտրուած ուժեղ անձ մը՝ որ ընդունակ ըլլայ միացնել աշխարհի հայերը եւ ոչ թէ բաժնել զանոնք:

Հայաստանի նախագահը կը կառավարէ երկիրը, որ պաշտօնապէս ունի երեք միլիոն քաղաքացի եւ 2.5 միլիառ տոլարի արժողութեամբ պիւտճէ (ըստ 2017-ի նախագիծին): Միւս կողմէ, Սփիւռքի Նախարարութիւնը պատասխանատու է կարգաւորելու յարաբերութիւնները Հայաստանի եւ իր ընդարձակ սփիւռքեան համայնքներուն միջեւ, որոնք կը հաշուեն տարբեր քաղաքացիութիւններով եւ ծագումներով եօթը միլիոն անձ: Անոր պիւտճէն մաս կը կազմէ վերոյիշեալ գումարին:

Իր սկզբնաւորութենէն ի վեր, Սփիւռքի Նախարարութիւնը կը մնայ հիմնարկ մը՝ որուն միակ նպատակը կը թուի ըլլալ պատուել սփիւռքեան նուիրատուները եւ մշակութային ու բարեգործական դէմքերը:

Քանի մը շաբաթ առաջ, սփիւռքի նախարարուհին հանդիպում ունեցաւ պելճիքահայ պատուիրակութեան մը հետ: Երբ ականջիս հասաւ իր կատարած կարգ մը յայտարարութիւնները, անոնց հաւաստիութիւնը ստուգեցի տարբեր աղբիւրներէ:

…Եւ ան իրապէս այդպէս ըսաւ:

Նախարար Յակոբեանի ակնարկութիւնները կը պարունակէին երեք դրոյթներ, որոնք կ՚ազդանշէին նաեւ թէ ինչպէս Հայաստանի կառավարութիւնը կը դիտէ սփիւռքը: Ան նշեց.

1. Պահպանեցէք ձեր ազգանունները: Մի փոխէք ձեր վերջին անունները: Եթէ ձեր ազգանուններուն մէջ չունիք «եան», դուք հայ չէք նկատուիր:

2. Ձեր հարստութիւնը ժառանգ մի ձգէք ձեր զաւակներուն: Ձեր հարստութիւնը եւ գոյքը տուէք Հայաստանին որովհետեւ ձեր երեխաները իրենց ժառանգը պիտի սպառեն թմրեցուցիչներու եւ նման բաներու համար:

3. Եւ փոխարէնը, մենք ձեզի պիտի դաստիարակենք ինչպէս հայ ըլլալ:

Ես անիկա ստուգեցի երեք տարբեր ներկաներու հետ եւ երեքն ալ վաւերացուցին պրուքսելցի եղբայրներուն եւ քոյրերուն ուղղած սփիւռքի նախարարուհիի յիշեալ պատգամին ճշգրտութիւնը:

Իմ խոր մտահոգութիւններս կիսեցի բարեկամիս՝ Պետօ Կեսարացիի հետ, որ ըսաւ. «Ուրեմն, համաձայն սփիւռքի նախարարութեան անհեթեթութեան, կը թուի որ Թորոս Ռոսլին, Գրիգոր Տաթեւացի, Անանիա Շիրակացի, Մովսէս Խորենացի, Մխիթար Գոշ եւ Ֆրիկ հայ ՉԵՆ:»

Պելճիքահայերուն հետ ունեցած նոյն հանդիպումին ընթացքին, նախարարուհին նշեց նաեւ իր սէրը ➪ 4

ԳԱՀԻՐԷ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԼՈՒՐԵՐ

– Երուսաղէմի մէջ սկսած են Յիսուս Քրիստոսի գերեզմանի նորոգութեան աշխատանքները: Գահիրէի Ազգային Առաջնորդարանը, իբրեւ նախկին սաղիմապատկան թեմ, իր նիւթական աջակցութիւնը բերած է այս ծրագիրին:

– Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովը 2016-ի պիւտճէ մը վաւերացուցած էր՝ նպատակ ունենալով աջակցիլ Հայաստանի կրթական եւ բարեսիրական հաստատութիւններուն: Առաջին յատկացումը կատարուեցաւ Գիւմրիի Թուչունեան Տուն որբանոցին կից գտնուող Հրանդ Տինք գիչերօթիկ դպրոցին, ուր կ՚ուսանին որբանոցի 80 սաները ու յարակից թաղի 75 մանուկներ:




– Հայաստանի անկախութեան 25-ամեակին առիթով, Դեկտեմբեր 2-3-ին, Picasso Art Gallery-ի մէջ (Զամալէք) տեղի ունեցաւ Ռիհամ Աֆիֆիի ցուցահանդէս-վաճառքը: Ներկայացուած էին աւելի քան 80 աքուարէլ նկարներ եւ գծագրութիւններ, որոնք կը ներկայացնէին Հայաստանի տարածութիւնը, մշակոյթը եւ խորհրդանիշերը: Արուեստագիտուհին քանիցս այցելած է Հայաստան, տեղւոյն վրայ զգալու հայկական մշակոյթը: Ցուցահանդէսը կատարուեցաւ եգիպտահայ համայնքի հովանաւորութեամբ:




– Դեկտեմբեր 11-ին, Հելիոպոլիս Գրադարանի հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան հիմնադրութեան 110-ամեակի հանդիսութիւնը: Տեղի ունեցաւ խօսք, ժապաւէնի ցուցադրութիւն, վեթերանութեան վկայականներու տուչութիւն, երգ-պար եւ դասական երաժշտութիւն լարային քառանուագի կատարումով:

– Դեկտեմբեր 4-ին, Հելիոպոլիս Գրադարանին մէջ տեղի ունեցաւ Արաքս երգչախումբին (խմբավար՝ Միհրան Ղազէլեան) ելոյթը, նուիրուած Խաչատուր Աւետիսեանի ծննդեան 90-ամեակին: Մանրամասնութիւնները կարելի է կարդալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի մամուլի պաշտօնական հաղորդագրութեան մէջ (կը տպագրենք *Ջահակիրի* յաջորդ թիւով):

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՊԵՏՈՒԹԻՒՆՈՒՄ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ. ԻՆՉՈՒ ԵՆ ԱՃԵԼ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ ՅԱՆՑԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐԸ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «Այս տարուայ Յուլիսի 17-ին, երբ Սասնայ Ծռերի կողմից զէնքով գրաւուեց Հայաստանի ոստիկանութեան պարեկապահակային գունդը, երկրում շատ բան փոխուեց: Պարզուեց, որ Հայաստանի ազգային անվտանգութեան ծառայութիւնը եւ յատկապէս Հայաստանի ոստիկանութիւնը ուղղակի իրենց տեղում չեն: Ու այս գործելաոճը նոր բան չէ: Ողջ 2016 թուականի ընթացքում Հայաստանում գրեթէ բոլոր տեսակի յանցագործութիւնների ցուցանիշներն աճել են: Հայաստանի ազգային վիճակագրական ծառայութեան հրապարակած տուեալների համաձայն՝ չէչտակի աճել է նաեւ պետական իշխանութեան, ծառայութեան եւ կառավարման կարգի դէմ ուղղուած յանցագործութիւնների ընդհանուր քանակը. այս տարուայ Յունուար-Հոկտեմբեր ամիսներին կազմել է 2284, մինչդեռ անցած տարուայ նոյն ժամանակահատուածում գրանցուել է 880 դէպք:

Պետական իշխանութեան, ծա-ռայութեան եւ կառավարման կարգի դէմ ուղղուած այլ յանցագործութիւնների քանակը այս տարուայ Յունուար-Հոկտեմբերին 2047 է, իսկ անցած տարուայ նոյն ժամանակահատուածում 605 է եղել: Յիշեցնենք՝ «Ոստիկանութեան մասին» Հայաստանի օրէնքի երկրորդ կէտը յստակ սահմանում է, որ ոստիկանութիւնը պարտաւոր է նախականխել, կանխել եւ խափանել յանցագործութիւնները: Այլ ոչ թէ կատարուած յանցանքների յետեւից գնալ, նկարահանել, չօւ բեմադրել, թէ բացայայտում է արել: Իսկ ինչո՞ւ է աճել յանցագործութիւնների թիւը: Ըստ մասնագէտների՝ այդ աճն ուղիղ կապ ունի երկրի քաղաքական եւ տնտեսական իրավիճակի հետ, եւ որքան կառավարման համակարգում ճգնաժամը խորանում է, այնքան յանցաւորութիւնն աճում է:

Սակայն զինուած խմբի կողմից զէնքով գրաւած պարեկապահակային ծառայութեան գնդում 6 օր որպէս պատանդ պահուած Հայաստանի փոխոստիկանապետ Վարդան Եղիազարեանը *Ժողովուրդ* օրաթերթի հետ զրոյցում արձանագրուած պատկերը լաւատեսօրէն մեկնաբանեց. «Զարգանում է հասարակութիւնը, կան երեւոյթներ, կան դէպքեր, եւ ամենակարեւորն այն է, որ մենք երբեւիցէ չենք թաքցնում յանցագործութիւնները, եւ հէնց դա է հիմնական պատճառը, որ այդ աճը կայ: Դա էլ է տատանողական»: Բա որ էլի հակառակ տատանուե՞ց»:

ԽՈՀԵՐ

## ՀԱՅԱՊԱՀՊԱՆՈՒՄ՝ ԱՌԱՆՑ ԱՐԵՒՄՏԱՀԱՅԵՐԷՆԻ՞

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Արեւմտահայ լեզուի իրական վտանգը միանշանակ խնդիր մը չէ ողջ սփիւռքի համար: Եթէ կ՚ուզենք անոր պատճառները փնտռել, անհրաժեշտ է իւրաքանչիւր գաղութ ուսումնասիրել առանձին: Բայց ո՞վ պիտի ուսումնասիրէ: Սփիւռքը շատ բան կ՚անգիտանայ ինքն իր մասին: Մանաւանդ, սփիւռքի աւանդական կառոյցները պիտի դժուարանան իրենց մասին կատարել ընկերային-հասարակական հետազօտութիւններ, դիմելով հասարակագիտութեան ընդունուած հարցափորձի մեթոտին, ուր ներգրաւուած ըլլան թէ՛ կառոյցները յաճախողները եւ թէ՛, մանաւանդ, այնտեղ յաճախել մերժողները: Հաստատապէս, այս պարագային, երրորդ կողմ մըն է որ պէտք է ստանձնէ նման ուսումնասիրութեան մը իրականացումը, բախուելով բազում գործնական դժուարութիւններու:

Մնալով նման հետազօտութեան ծարաւին, ստորեւ աւելորդ չեմ նկատեր ուշադրութեան յանձնել հայապահպանումի եւ արեւմըտահայերէնի հետ կապուած քանի մը խնդիրներ, որոնք, կը կարծեմ, արժանի են մտորումի.

1. Հ1 կայանի *Մերոնք* հաղորդումին համար հրաւիրուած էր Հայաստան հաստատուած սուրիահայ մը: Գոհ էր Հայաստանէն (այլապէս ինչո՞ւ *Մերոնքը* պիտի հրաւիրէր զինք), քանի որ, ըստ իր խօսքերուն, Հալէպի մէջ զբաղուած էր հայապահպանութեամբ իսկ այստեղ, Երեւանի մէջ, կը զբաղուի գլխաւորապէս ստեղծագործութեամբ: Հայապահպանութիւնը իրական ստեղծագործականութենէն անջատելու միտումը սփիւռքեան չափանիշ մըն է: «Սփիւռքի պայմաններ» խօսքը լայն տարածում ունի եւ կարծէք շատ բաներ կը ձեւաչափուին այս «պայմաններ»-ու *պարտադիր* շրջանակներուն մէջ:

Հրատապութիւն մըն է հայապահպանումը ընկալել լրիւ ու ամբողջական ստեղծագործականութեան ծիրին մէջ, հայապահպանումը ինքը դարձնել առաւելագոյն ստեղծագործականութիւն՝ գրականութիւն, թատրոն, նկարչութիւն, քանդակագործութիւն, արուեստ եւ մշակոյթ, իսկ գաղափարապէս իր իմաստները բխեցնել գոյապաշտական (existential), գոյաբանական (ontological), բներեւութապաշտական (phenomenological), մարդաբանական (anthropological), մշակութաբանական (culturological), փիլիսոփայական փոխկապակից կեցութիւններէ եւ ոլորտներէ:

Բնականաբար, այս բոլորը միաժամանակ ու միահամուռ գործադրութեամբ չէ որ պէտք է ընդունիլ, այլ միշտ կարելի է ընտրել անոնցմէ պատշաճ տարրերն ու շերտերը իսկ ընտրութիւնները անընդհատ ու անսահմանօրէն փոխել ու փոփոխել ըստ կեցութեան, շրջապատի եւ ժամանակի հոլովոյթին, այլեւ հայապահպանութիւնը դարձնել նոյն այդ հոլովոյթի կերտողը եւ ոչ թէ հետեւողը:

2. Հակառակ հայապահպանումի պատումին մէջ գործածուող «արդիական» բառին առատութեան՝ «արդիական դասագիրքեր», «արդիական սարքերով պատրաստուած դասարաններ», «դպրոցի արդիական կառոյցներ», իրականութեան մէջ ժամանակի առումով անիկա կը գտնուի 50, 60, կրնայ ըլլալ 100 տարի ետ: «Արդիական» բառը կը գործածուի իր նիւթարկութեան (reification) իմաստով, երբ ամէն բանի սկիզբը կը դրուի նիւթն ու ապրանքայնութիւնը, որմէ կը բխին արժէքներն ու արժէքային գնահատութիւնները: Ասիկա այն արդիականութիւնն է՝ որ հիմքն է օտարացումի եւ ինքնօտարացումի, այն թեքնոլոժիական նորարարական պատկերն է՝ որ մարդկային յարաբերութիւնները կը դարձնէ գերիրական: Բոլորովին ուրիշ բան է հայապահպանութիւնը միաձուլել արդիական *շարժում*ներու հետ՝ իբրեւ անոնց բաղադրիչը, օրինակ, հայապահպանութիւնը դնել 1980-ականներուն հանդէս եկած լիբանանահայ Նոր Գրականութեան ծիրին մէջ, արդիական շարժում մը որուն մասին Մարուշ Երամեան հանգամանօրէն կը մեկնաբանէ սփիւռքահայ բանաստեղծութեան իր անհասկնալիօրէն անտիպ մնացած թէզին մէջ, շարժում մը՝ որ շուտով հանգեցաւ (կամ հանգեցուցին) հաւանաբար իր արդիականութեան ոչ-հայապահպան «արդիականութեան» պատճառով, կամ Հայաստանի 1990-ականներու բանաստեղծական շարժումին մէջ՝ զոր Մարինէ Պետրոսեան ժամանակին դրականօրէն անուանած էր «անտիպոէզիա» (հակաբանաստեղծութիւն), կամ չարենցեան աւանկարտիսթական ապագայապաշտութեան շրջանակին մէջ՝ հեռու *Ես իմ անուշ Հայաստանի* հեշտագրութենէն:

Ինչո՞ւ անձ մը պիտի սիրէ, հասկնայ, զգայ ու ինքն իր կողմէն կարողանայ մեկնաբանել, օրինակ, Փինք Ֆլոյտի *Պատ*ին գրական-երաժշտական-թատերական լեզուն (իր ամբողջականութեան մէջ ոչ-դիւրին ընկալուող գործ մըն է անիկա) եւ յանկարծ մտնելով գաղութահայ ծիրէն ներս իբրեւ հայապահպանուող ենթակայ, ոչ միայն տեսնէ իրեն հաճելի արդիական ռոք արուեստի մը հերքումը, այլ նոյնիսկ տեսնէ գերպարզուած Կոմիտաս մը, տեսնէ Թումանեան մը՝ զեղչուած իր համամարդկային իմաստներէն եւ վերածուած կաղապարեալ հեքիաթի մը, կամ տեսնէ Ահարոնեան մը՝ տեղադրուած ազգայնապաշտական փաթեթի մը մէջ, զերծուած իր ներմարդկային հրաշալի նրբութիւններէն: Ի՞նչ կ՚ըլլայ նաեւ եթէ ռոք, փոփ կամ ճազ երաժշտութիւնները մտնեն հայապահպանումի գործընթացին մէջ՝ ճիշդ, յստակ, գեղեցիկ, ազդեցիկ, կենդանի ու մշտանորոգ արեւմտահայերէն լեզուով:

Ֆրանսերէն, անգլերէն եւ այլ լեզուներ չտկարացան արդիական ուժեղ շարժումներուն պատճառով, այլ, ընդհակառակը, աւելի եւս զարգացան ու բազմազանուեցան:

3. Ձեռքի տակ ունիմ եգիպտահայ ձեռնարկներու 2000 Մայիս 4-ի, 2000 Դեկտեմբեր 7-ի, 2003 Մայիս 16-ի, 2012 Նոյեմբեր 22-ի, 2015 Դեկտեմբեր 11-ի տպագիր յայտագիրներ, ինչպէս նաեւ պաշտօնական յայտարարութիւններ եւ հաղորդագրութիւններ, որոնք կը ներկայացնեն ուղղագրական, քերականական եւ ոճական սխալներու շտեմարան մը, թէեւ բոլորն ալ արտադրուած են «հայապահպանում» բառը իրենց առօրեան դարձուցած հիմնարկներու եւ միութիւններու կողմէ:

Խնդիրը միայն սխալը չէ: Խնդիրը այդ սխալներուն նկատմամբ ցուցաբերուած վերաբերմունքն է: Սխալի գոյութենէն աւելի վտանգաւոր է երբ գիտակ սակաւաթիւ անձեր՝ որոնք ներկայ եղած են այդ ձեռնարկներուն, կարդացած են այդ յայտարարութիւնները, տեսած են այդ սխալները, բայց անտարբերութեամբ լռած: Ինքզինքնին ինքնահեռացուցած են այդ սխալներէն: Անոնց առարկութիւնն է՝ «Ես ինքս իմ գրութիւններս կը գրեմ անսխալ, ի՞նչ ընեմ որ ուրիշը կը գրէ սխալներով:» «Ի՞նչ ընեմ»-ի մէջ է վտանգը: Շատ բան կարելի է ընել: Եւ կարելի է ընել գիտակից, քաղաքակիրթ միջոցներով, առանց քննադատութեան, վիրաւորանքի կամ յանդիմանութեան:

Այս հեռաւորութիւնը, օտարացումը, յատուկ դէպքեր չմատնանշելը կը հանդիսանան սխալը հաստատող հանգամանքներ եւ պատճառներէն մէկն են արեւմտահայերէնի անկումային իրավիճակին:

(Շար. 2)

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 1 Յունուար 2017-ին, Կաղանդի եւ Տարեմուտի առիթով,
Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ պիտի մատուցուի Ս. Պատարագ:
Յաւարտ Սուրբ եւ Անմահ Պատարագի պիտի կատարուի Հայրապետական մաղթանք
ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏ
Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
Կենաց եւ Արեւշատութեան
եւ
ՄԱՅՐ ԱԹՈՌ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ ԱՆՍԱՍԱՆՈՒԹԵԱՆ
համար

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10.30-ին

Կը խնդրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ ըլլալու եւ Նոր Տարուոյ սկիզբը իր ուխտը նորոգելու եւ աղօթելու համայն աշխարհի խաղաղութեան, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի անսասանութեան, մեր հայրենիքի խաղաղ պայմաններու մէջ բարգաւաճութեան եւ Հայ ժողովուրդի բարեկեցութեան համար:

*Ե.Գ.Մ.ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ՍՓԻՒՌՔԻ ՆԱԽԱՐԱՐՈՒՀԻՆ ԿԸ ԿԱՏԱՐԷ ՇՓՈԹԵՑՈՒՑԻՉ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

2

Թուրքիայէն ժամանած Հայերուն նկատմամբ:

Իբրեւ Հայ մը որուն ազգանունը չի վերջանար «եան»-ով, կը փափաքիմ մեր յարգարժան Նախարարուհիին տեղեկացնել, որ մենք՝ Թուրքիոյ Հայերս, չենք անհանգստացած մեր որոշ ազգանուններուն մէջ «եան» վերջնածանցի բացակայութեամբ, որովհետեւ մեզի հայ դարձնողը ոչ թէ մեր անուններն են այլ մեր մշակոյթը եւ ուրիշ աւելի իմաստալից երեւոյթներ, զորս թերեւս նկատի չէ առած մեր Նախարարուհին:

Կ'ուզեմ յիշել քանի մը անուններ՝ Հրանդ Տինք, Յակոբ Այվազ, Կիւլիւ Ակոբ, Կարօ Փայլան (դիւանագէտ), Սելինա Տօկան Էօզուզուն (դիւանագէտ), Հայկօ Պաղտատ (գրող, լրագրող), Քարին Գարագաշլը (գրող), Յովհաննէս Գըլըչտաղ (աքատեմիք), Արուս Եումուլ (աքատեմիք), Արշալոյս Գայըր (աքատեմիք), Միսաք Թօրոս (արուեստագէտ), Տիրան Պաքար (փաստաբան) եւ շատ ուրիշներ: Այս անունները անմիջապէս կը մտաբերեմ երբ կը մտածեմ Թուրքիոյ մէջ ապրող Հայերուն մասին:

Մի կարծէք որ այս երեւոյթը յատուկ է միայն Թրքահայերուն: Եկէք ուրիշ ցանկ մը եւս պատրաստենք սկսելով Շարլ Ազնաւուրով...

Հետաքրքրական է, որ Նախարարուհին խօսած է նաեւ «իսլամացած» Հայերու կացութեան մասին, որոնց ցանկութիւն յայտնած է օգնել: Ասոր համար, արդարեւ, ան պէտք ունի վերագնահատել այն վերջամասը որ, ըստ իրեն, կը սահմանէ մեր ազգը:

Բայց, նախ եւ առաջ, համոզուած եմ որ սփիւռքի նախարարուհին պէտք է իր պաշտօնէն հրաժարի, քանի որ ան չի հանդիսանար «ոչ-եան»-երու նախարարը:

http://asbarez.com/157918/armenians-diaspora-minister-makes-puzzling-assertions/

Անգլերէնէ թարգմանեց Հ. Ա.

**Ծանօթ.** – *Ասպարէզ*ի անգլերէն կայքէջին մէջ տեղադրուած Դեկտեմբեր 8 թուակիր այս յօդուածը ունեցած է բազմաթիւ հետաքրքրական քննարկումներ, որոնք յաճախ կը լրացնեն յօդուածին միտքերը եւ նոյնիսկ կ'աւելցնեն անձնական փորձառութեան վրայ հիմնուած դիտարկումներ: Կ'արժէ կարդալ զանոնք:

## ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԳԱԳԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԸ ԻՐԵՆՑ ՌԵՍՈՒՐՍՆԵՐՈՎ ԱՄԲՈՂՋԸ ԿԸ ՎԵՐՑՆԵՆ...

1

շերտերը, թէ՛ արտաքին քաղաքականութեան եւ անվտանգութեան շերտերը: Այդ ընտրազանգուածը կազմող քաղաքացիների թիւը Հայաստանում առանձնապէս մեծ չէ, յամենայն դէպս այն կարծէք թէ մրցունակ չէ սոցիալ-տնտեսական առաւել կարճաժամկէտ թիրախների վրայ կենտրոնացած քաղաքացիներից: Սակայն, այդ թիւը այնքան էլ փոքր չէ, քաղաքական կշիռ չունենալու, շերտ չկազմելու համար:

Աւելին, մեծ հաշուով այդքան էլ ուսումնասիրուած չէ, թէ իրականում ինչքան է կազմում այդ քաղաքացիների թիւը, պոտենցիալ քանի տոկոս է կազմում այդ ընտրողների շերտը: Բայց, այն կայ, փոքր չէ, եւ անկասկած դրսնով իսկ հանդիսանում է քաղաքական աշխատանքի բաւական պարարտ տարածութիւն: Այստեղ շատ կարեւոր է հասկանալ խնդիրներն ու աշխատանքի անհրաժեշտ բովանդակութիւնը: Առանցքայինն այն է, որ այդ հանրային շերտը կամ շերտերը բաւական տարալուծուած են, ապակենտրոնացած: Աւելին, դրանք ներքին մի շարք հանգամանքների եւ գործօնների ազդեցութեան տակ նաեւ խմբաւորուած են, ինչ որ առումով կլանաւորուած, ինչում մեծ ազդեցութիւն են ունեցել նաեւ հէնց ընդդիմութեան դիրքերից հանդէս եկող քաղաքական ուժերի մի զգալի մասը: Հանրութեան այդ խմբերը քաղաքական կշիռ կարող են ստանալ մէկ ընտրական շերտ կազմելու դէպքում, հետեւաբար նախընտրական խնդիրը կարող է լինել այդ տարալուծուած, ապակենտրոն, բազմաթիւ ներքին բաժանարար գծերով յագեցած հանրոյթին մէկ նպատակի, խնդրի, բովանդակութեան շուրջ միաւորելը: Իսկ դրա համար պէտք է, որ մէկ միաւոր դառնան նաեւ այդ դաշտում գործող ուժերը՝ մէկ բովանդակային միաւոր: Ընդ որում, դա բոլորովին չի նշանակում բոլոր հարցերում համաձայնութիւն: Դա նշանակում է մէկ հարցում բոլորի համաձայնութիւն: Որը կարող է եւ պէտք է լինի այդ հարցը: Դա է խնդիրը, որ առաւել հրատապ է դառնում Ծառուկեանի կարգավիճակի վերականգնումից յետոյ:





## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Կիրակի, 25 Դեկտեմբեր 2016-ի
Յաւարտ Ս. Պատարագի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ազգային Բարերարներ
***ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ***
***եւ***
***ՊՕՂՈՍ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ***
Նուպարեան գերդաստաններու ամենայն ննջեցելոց հոգւոցն ի հանգիստ:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՅՆՔԻՍ ԲԱՐԵՊԱՇՏ ԶԱՒԱԿՆԵՐՈՒՆ

Դեկտեմբեր 31-ին, երեկոյեան ժամը 12:00-ին, Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Առաջնորդանիստ եկեղեցւոյ մէջ պիտի կ.ատարուի տարեմուտի միասնական աղօթք մեր երկրի եւ մեր ժողովուրդի խաղաղ եւ անվրդով կեանքին համար:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ զաւակները ներկայ գտնուելու տարեմուտի այս աղօթքին:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք թէ Ազգային Բարերարուհի Մարկրիթ Պայծառ Յակոբեանի յիշատակին հաստատուած հիմնադրամի 2016-ի եկամուտները, որ կը կազմեն 3,450 Ե.Ոսկի, պիտի բաշխուին հետեւեալ կերպով.

| | Ե.Ո. |
|---|---|
| 1- Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ հոգեւոր դասին | 345.50 |
| 2- Շնորհալի Երգչախումբին | 345.00 |
| 3- Ս. Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 207.00 |
| 4- Գալուստեան եւ Մերճանեան մանկապարտէզներու ուսուցչուհիներուն | 540.00 |
| 5- ԱՐԵՒ Օրաթերթին | 805.00 |
| 6- ՅՈՒՍԱԲԵՐ Օրաթերթին | 805.00 |
| 7- ՋԱՀԱԿԻՐ Շաբաթաթերթին | 402.50 |
| ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՈՒՄԱՐ | 3,450.00 |

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1781 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2016 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ՂՐՇ.

عدد رقم ١٧٨١ الخميس ٢٩ ديسمبر ٢٠١٦


## ԼՈՒՐՋ ԻՐԱՐԱՆՑՈՒՄ Է ՍԿՍԵԼ

### ՆԱԻՐԱ ՀԱՅՐՈՒՄԵԱՆ

**Քաղաքականութեան աբսուրդացումը**

2013 թուականի խորհրդարանական ընտրութիւնների ժամանակ Իտալիայում երրորդ տեղն է զբաղեցրել կատակերգու եւ բլոգեր Բեպէ Գրիլոյի Հինգ Աստղ կուսակցութիւնը: Այս տարի կուսակցութեան թեկածուն դարձել է Հռոմի քաղաքապետ:

Կատակերգու Բեպէ Գրիլոյին, որի դիրքորոշման հիմքում աւանդականութեան աբսուրդացումն է, շատերը պոպուլիստ են համարում: Նա ասում է այն, ինչ մտածում է մեծամասնութիւնը, նա սահմանափակուած չէ աւանդական կուսակցական շրջանակներով՝ լիբերալ, պահպանողական եւ այլն, չունի ոչ մի պարտաւորութիւն: Դա նրա առաջ անսահմանափակ հնարաւորութիւններ է բացում: Բեպէ Գրիլոն կարող է հանդէս գալ եւրոսկեպտիկ դիրքերից եւ յայտարարել է, որ Իտալիան Եւրոպայի կենտրոնն է: Վերջերս նրա կուսակցութիւնը տապալել է հանրաքուէն, որից յետոյ վարչապետ Ռենցիի կառավարութիւնը հրաժարական է տուել:

Հայաստանում 2017 թուականի խորհրդարանական ընտրութիւններից առաջ դերասան Սերգէյ Դանիէլեանը (Եոժ) եւ բլոգեր Արման Սուլէյմանեանը ստեղծել են Քաղաքացիական Ակտիւ Քայլ կուսակցութիւնը, որի յապաւումն էսթետիկ չի հնչում:

Այդուհանդերձ, կուսակցութիւնը, որի նպատակն է հռչակուել աւանդական քաղաքականութեան աբսուրդացումը, մեծ աժիոտաժ է առաջացրել: Ամենագլխաւորն այն է, որ ցոյց է տուել, թէ ինչ ծիծաղելի տեսք ունի աւանդական, լուրջ, «խիստ» քաղաքականութիւնը եւ որքան հեռու է այն իրականութիւնից:

Պոպուլիզմը Հայաստանում նորութիւն չի: Գագիկ Ծառուկեանի Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնը պոպուլիզմի տիպական օրինակ է: Կուսակցութիւնն իր գոյութեան տարիների ընթացքում ոչ մի անգամ յստակ դիրքորոշում չի ներկայացրել քաղաքական կամ տնտեսական որեւէ խնդրի շուրջ, եւ միայն հինգերորդ տարում է կողմնորոշուել՝ ընդդիմութիւն է, թէ իշխանութիւն: Սակայն դա չի օգնել, եւ Սերժ Սարգսեանը նրա գործունէութիւնը «կրկէս» է անուանել:

Ծառուկեանը պնդում է, որ ամէն ինչ անում է ժողովրդի համար, իսկ դա հէնց մաքուր պոպուլիզմն է: Հնարաւոր է, Ծառուկեանին հէնց սրամտութիւնն ու ինտելեկտը չի բաւարարել, որ պոպուլիզմը հասցնի աբսուրդի աստիճանի: Չնայած առ այսօր էլ շատերը Ծառուկեանի ներկայութիւնը լուրջ քաղաքական ասպարէզում գլխաւոր աբսուրդն են համարում:

Քաղաքականութեան աբսուրդացումը կարծես թէ տարածւում է ամբողջ աշխարհում: ԱՄՆ-ում Դոնալդ Թրամփի յաղթանակը, որը նոյնպէս քիչ ընդհանրութիւններ ունի աւանդական քաղաքականութեան հետ, շատերի կողմից աբսուրդ է գնահատուել: Անգամ կարծիքներ են եղել, որ ԱՄՆ-ն վերաֆորմատաւորելու համար անհրաժեշտ է նախ այն հասցնել աբսուրդի սահմանին, եւ դա արւում է Թրամփի միջոցով:

Աշխարհն իսկապէս անցում է կատարել քաղաքական ու տեղեկատուական նոր մակարդակի: Պատերազմները դարձել են հիբրիդային, տեղեկատուութիւնը դարձել է «յետճշմարտութիւն», Բրիտանիան փորձում է դուրս գալ Եւրամիութիւնից, Ռուսաստանն ու Թուրքիան բաժանում են Հալէպը, Թրամփը դառնում է ԱՄՆ նախագահ եւ պետքարտուղար նշանակում ExxonMobil նաւթային հսկայի ղեկավարին: Այդ պայմաններում Հայաստանում անգամ Ծառուկեանն աբսուրդ չի թւում, եւ պէտք է կուսակցութիւն, որն ամէն ինչ գլխիվայր շուռ կը տայ:

Պատահական չէ, որ Եոժի կուսակցութեան անուանման մէջ կայ «քաղաքացիական» բառը: Քաղաքական համակարգի աբսուրդացումը կարող է ցոյց տալ միայն քաղաքացիական հասարակութիւնը:

Վերջերս Հայաստանում ԱՄՆ դեսպան Ռիչարդ Միլզը յայտարարել է, որ Հայաստանը կարող է հպարտանալ կայացած քաղաքացիական հասարակութեամբ: Ամերիկեան վերլուծաբանների յօդուածներում ու զեկոյցներում նոյնպէս նշւում է, որ Հայաստանը եւրասիական երկիր չի դարձել կայացած քաղաքացիական հասարակութեան առկայութեան շնորհիւ, որն ունակ է ազդել որոշումների կայացման վրայ: Դա իրօք այդպէս է՝ չնայած Հայաստանի քաղաքացիական հասարակութիւնն ակնյայտօրէն թերագնահատում է ինքն իրեն:

Անցած տարիներին քաղաքացիական հասարակութիւնը վախենում էր քաղաքականութիւնից՝ ինչպէս կրակից՝ համարելով դա «կեղտոտ գործ»: Հիմա աստիճանաբար գալիս է այն ընկալումը, որ քաղաքականութիւնը ոչ թէ մասնակցութիւն է «կեղտոտ գործին», այլ մարդու հիմնարար իրաւունքի՝ որոշումների ընդունմանը մասնակցութեան իրացում:



**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԵԹԷ ՄՆԱՆՔ ԵՒՐԱՍԻԱԿԱՆ ՇՐՋԱՆԱԿՈՒՄ, ԻՇԽԱՆԱՓՈԽՈՒԹԻՒՆ ՉԻ ԼԻՆԻ. ԱԶԱՏ ԱՐՇԱԿԵԱՆ

Առաջին լրատուական, 26 Դեկտեմբեր – Խորհրդարան մտնելու, քաղաքական գործընթացներին մասնակցելու մեծ ձգտում չկայ: Ծրագիրը քաղաքական է, բայց մենք այդպիսի ամբիցիա չունէինք: Համահայկականութեան գաղափարը, թւում է, օրակարգային է: Համահայկական ծրագրեր կան, եւ այդ ծրագրերի կառավարիչները ընտրւում են՝ ինչպէս պատահի, մենք առաջարկում ենք, որ նրանք ընտրուեն ժողովրդավարական ձեւով՝ ըստ համամասնութիւնների: Առաջարկում ենք ստեղծել Վերին Պալատ, որը կը զբաղուի միայն համահայկական խնդիրներով: *Առաջին լրատուականի* հետ զրոյցում այս մասին ասաց Միացեալ Հայաստան շարժման խորհրդի անդամ Ազատ Արշակեանը:

Նրա կարծիքով՝ եթէ Հայաստան-Արցախ-Սփիւռք համախմբումը տեղի ունենայ, նուիրատուութեան գումարները կը մեծանան, որի կառավարմամբ կը զբաղուի նորաստեղծ պալատը: Արշակեանի խօսքով՝ մինչ այժմ էլ այդ գործընթացն իրականացւում է, բայց դա ինքնագործունէութեան մակարդակի վրայ է – անհրաժեշտութիւն կայ պրոֆեսիոնալ կերպով իրականացնել:

Ա. Արշակեանի խօսքով՝ եթէ Հայաստանը մնայ եւրասիական շրջանա- ↳ 4

**ԳԱՀԻՐԷ**

## ՄԵՆԵՐԳՉՈՒՀԻ ԹԵՀՄԻՆԷ ՋԱՐԵԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Դեկտեմբեր 31-ին Գահիրէի Օփերայի մեծ սրահին մէջ, եւ Յունուար 1-ին Աղեքսանդրիոյ Սայէտ Տարուիշ սրահին մէջ, Գահիրէի Սիմֆոնիք Նուագախումբին հետ ելոյթ պիտի ունենայ սոփրանօ Թեհմինէ Ջարեան: Ան Եգիպտոս ժամանած է նուագախումբի գեղարուեստական ղեկավար Ահմէտ էլ-Սայիտիի յատուկ հրաւէրով, իբրեւ միակ մենակատար մասնակցելու նոր տարուայ զոյգ նուագահանդէսներուն: Նուագավարն է մեքսիքացի երաժիշտ Ֆելիքս Քարրասքօ:

Թեհմինէ Ջարեան ծնած է Երեւան, 1984-ին: Ուսանած է Երեւանի Կոմիտասի անուան Երաժշտանոցին մէջ, ապա կատարելագործուած Սանթա Չեչիլիայի Ազգային Կաճառին (Accademia Nazionale di Santa Cecilia) մէջ՝ Ռենաթա Սքոթթոյի ղեկավարութեամբ:

Ելոյթներ ունեցած է բազմաթիւ նուագախումբերու հետ՝ Քիրովի Ֆիլհարմոնիք Նուագախումբ, Ռուսաստանի Ազգային Նուագախումբ, Մինսքի Սենեկային Նուագախումբ, Ուրալի Երաժշտանոցի Նուագախումբ, Նովկորոտի Սիմֆոնիք Նուագախումբ, Հայաստանի Սենեկային Նուագախումբ եւ այլն:



2010-ին իր առաջին ելոյթը կ'ունենայ Մոսկուայի Չայքովսքի Սրահին մէջ, Նոր Ռուսաստան Պետական Սիմֆոնիք Նուագախումբի մասնակցութեամբ եւ Եուրի Պաշմէթի նուագավարութեամբ:

Մասնակցած է զանազան փառատօներու՝ Aix-en-Provence (2011), North Aegean Music Festival (2014), Opera Apriori (2015) եւ Vyatka Spring (2016):

Լիոնի եւ Վիեննայի մէջ ելոյթներ ունեցած է Ցոսթաքովիչի, Վակների եւ Հայտընի օփերաներու բեմադրութիւններուն մէջ:

Ներկայիս ան կ'ապրի ու կը գործէ Վիեննայի մէջ:

# ԱԶԱՏ ՄԱՐՄԻՆ, ԱՆԿԱԽ ԵՐԿԻՐ

**ԿԱՐԷՆ ՅԱԿՈԲԵԱՆ**

Epress.am, 13 Դեկտեմբեր

*Կառավարման համակարգերի մասնագէտ, երաժիշտ Կարէն Յակոբեանը* boon.am*-ում խօսում է այսօրուայ Հայաստանի քաղաքացու, կրթութեան, վախի տարածքների, ազատագրուած մարմնից վախեցող պետական համակարգերի մասին։*

**Ինչպիսի՞ քաղաքացի է ուզում ունենալ այսօրուայ Հայաստանը։**

Կոմունիստական «պերեստրոյկայի» սկիզբը կտրուկ էր. գրականութեան, երաժշտութեան, եւ, առհասարակ, կրթութեան մատուցման պաթոսը յանկարծ անհետացաւ։ Մարդ գնում էր երեկուայ «սուտը» դասաւանդող տարածք, սակայն իրականութիւնն արդէն շրջադարձային փոփոխութիւն էր կրել։ Շարժումների տարիներին ի յայտ եկաւ աննախադէպ մի իրադրութիւն՝ ինքնակրթման անհրաժեշտութիւնը։ Իրավիճակի յեղափոխական իմպուլսը մեծ դեր խաղաց յետագայի համար։

Ի՞նչ նմանատիպ յեղաշրջում է կարող կատարուել ժամանակակից Հայաստանի երիտասարդի ուղեղում։ Օրինակները քիչ են. գաղափարախօսութեան անհետացումից յետոյ չստեղծուեց նորը։ Իշխանութիւնից ազատուած այդ մի քանի տարին աննախադէպ հնարաւորութիւն էր դրա համար. չկար փող վաստակելու հնարաւորութիւն, սակայն նոր արժէքներ, խնդիրներ ձեւաւորելու պահ էր ստեղծուել։ Իննսունականների ռադիկալ, շրջադարձային բնոյթը չափազանց հետաքրքիր էր ժամանակակից արուեստի համար։ Ցաւօք, այդ տարիներին հասկանալի եւ ընդունելի գործերն այսօրուայ հայեացքին սկանդալային են թւում...

Պատասխանատու քաղաքացին առաջանում է ազատ հասարակութիւնում, որտեղ ազատագրուած են մարմինները։ Այսօրուայ Հայաստանն ու հայկական պետական համակարգը վախենում են ազատագրուած մարմնից։ Արւում է ամէն հնարաւոր բան, որպէսզի ազատագրուած մարմինը լքի տարածքը։ Հեռացաւ ստի եւ պաթոսի վրայ հիմնուած գաղափարախօսութիւնը, բայց տեղն եկաւ պետական մակարդակի հասցուած «ֆոլկլորը»։ Ազգագրական նիւթն իմանալն ու հասկանալը շատ կարեւոր է, սակայն, երբ այն կենսակերպի թելադրանք է դառնում, հասարակութիւնը յայտնւում է «նախնադարեան» իրավիճակում, որը յղի է ֆաշիստական միակերպութեան վտանգով։ Բոլորս կարող ենք արթնանալ ազգային երգի եւ քնել օրհներգի հնչիւնների ներքոյ, անգիր իմանալ դրանք, բայց ազատ մարմինը միայն չարունակելու է հեռանալ։ Մենք ունենք եւս մէկ պատմական հնարաւորութիւն անկախ կոչուելու, բայց անկախութիւնը չենք հասցնում մարմնի մակարդակին։

Ազատ մարմինը չի ճնշւում բռնութիւն իրականացնող եւ պետականութիւնը կառուցող ինստիտուտների՝ բանտերի, անվտանգութեան ու ոստիկանական կառոյցների, հոգեբուժարանների, դպրոցի ու ընտանիքի կողմից։ Հարց է ծագում՝ ո՞րն է մեզ համար կարեւոր։ Ունենա՞նք, արդեօք, ուժեղ անվտանգութեամբ, հսկող պետութիւն, որտեղ քաղաքացիները զերծ են բռնութիւնից, ալկոհոլից, ծխախոտից եւ սեքսից, որտեղ երեխաները յարգում են մեծերին, հայեցի են դաստիարակւում, աղջիկները լաւ մայրեր դառնում, թէ՞ ազատ մարմին ունենանք։ Մարդկութեան պատմութեան ընթացքում փորձարկուել են թուարկուած բոլոր մոդէլները, ինկվիզիցիան մարդկանց այրում էր պետականութեան ու բարձրագոյն արժէքների տրամաբանութեան ներքոյ։ Հայերը, չունենալով այդ ամէնը ու երազելով պետականութեան մասին, ստացան այդ հնարաւորութիւնը, բայց շտապում են կրկնել պետութեան բացասական, ռեպրեսիւ, վերահսկողական մոդէլները։ Համեմատելով Հայաստանի եւ արտասահմանի երեխաներին՝ կարող ենք նկատել ազատ մարմնի տարբերութիւնները։ Արտասահմանում երեխան ազատ է տարածութեան մէջ, բաւարարուած է ինքն իր ներկայութեամբ, իսկ Հայաստանում երեխան միշտ սպասում է մեծահասակի թոյլտուութեան, խրախուսող հայեացքին. ծնողի, հասարակութեան համաձայնութիւնը շատ աւելի կարեւոր է քան իր սեփական «ես»-ն ու մարմինը։ Սա վախի տարածք է, եւ եթէ մենք ընտրում ենք երկու մոդէլների միջեւ, պիտի հասկանանք, որ վախը գալիս է ստեղծագործականութիւնը ճնշելու, իսկ «քիչ վախեցածը» նշանակում է «ստեղծագործող»։ Ստեղծագործող մարդը նոր իրավիճակներ է ստեղծում, դրանով իսկ՝ նոր յարաբերութիւններ։ Նոր իրավիճակներն ու յարաբերութիւնները մարդկութեանը տանելու են նոր ճանապարհով։ Ինչո՞ւ ենք վախեցնում երեխաներին եւ երիտասարդութեանը։ Չենք ուզում հասնել՝ ո՞ւր...

Մենք՝ որպէս հասարակութիւն, չունենք յեղափոխութեան փորձ։ Այսօրուայ Հայաստանը յեղափոխութեան արդիւնքում չի ձեւաւորուել. մենք չենք պայքարել գաղութատիրոջ դէմ։ Չի եղել որպէս երկիր անկախանալու պայքար, դրա ներքոյ չեն եղել տեսութիւններ, առաջնորդներ, արիւնահեղութիւն։ Այժմ մենք, առանց այդ ճանապարհն անցնելու, կառավարման մեր համակարգը կառուցում ենք փոխառուած մոդէլներից։ Եթէ անցնէինք այդ ճանապարհը, ազատութեան պայքար կը մղուէր ամէն դպրոցում, ամէն գիւղում, սակայն դրա փոխարէն մենք վերստեղծել ենք կեղծ արժէքների վրայ կառուցուած ֆէոդալականութիւն։ Հէնց այս, ստրկամտութեանը տանող յարաբերութիւնների մէջ, տեղաւորւում է ֆոլկլորը, որը կրկնում է իր պատմական գործառոյթը։

Պետութիւնը վախը որպէս մեխանիզմ է օգտագործում, եւ այդ վախի ինստիտուցիոնալ տարրերը մենք կարող ենք տեսնել կրթական համակարգում։ Պոտենցիալ ազատ մարմինը՝ երեխան, պիտի գնայ դպրոց եւ անցնի այդ ռեպրեսիւ համակարգով՝ դրուած դասագրքային տեքստերի, ուսուցչի խօսքերի մէջ։ Ուսուցիչն ու ծնողը չեն փորձելու մտածողութեան այլ տարբերակներ առաջարկել, որպէսզի երեխան «չտարբերուի»։

Լուծումներից մէկը կարող է լինել մի իրավիճակ, որում չկայ պետութիւն։ Մարդ ինքն է կառավարում իր տարածքը։ Պատանիները պիտի հորիզոնական յարաբերութիւնները փորձարկելու հնարաւորութիւն ունենան, որտեղ ծնողն ու ուսուցիչը չեն ազդում ստեղծագործականութեան արտայայտման վրայ։ Սակայն, կրթութեան մակարդակում իրականացուող այս գործողութիւնը չի բերում ցանկալի արդիւնքների։ Մարդ ձգտում է դուրս գալ այդ տարածքից եւ փոխել աշխարհը, մասնակցել կառավարմանն ու ընտրութիւններին, սակայն սահմանադրութիւնը ստեղծող պետութիւնն ասես մեծ մի խաղ է նախաձեռնել, որում խաղի կանոնները ոչ ոք չի պահպանում։ Հակառակ պատկերն է ստեղծւում. «ճիշտը» գիտակցող անհատը հիասթափւում է՝ տեսնելով, որ այդ ճանապարհով ապրելն անիմաստ է։

**ԾԱՆՕԹ.** – *Այս կարծիքներուն որոշ կէտեր լիովին կրնան վերաբերիլ նաեւ հայկական սփիւռքներուն։ Սփիւռքներուն մէջ չկա՞յ արդեօք ազատագրուած մարմիններու լքումի խնդիրը եւ անոնց հեռացումը հիմնահոսանքային մարմիններէն։ Ասկէ կը ծագին կարեւոր հարցեր.*

*1. Հայաստանը ինքն իր մասին խորքային (ոչ իշխանական-կուսակցական, ոչ պետական, այլ ազատագրուած գիտելիքի հետ կապուած) ինքնաքննադատական ելոյթներ կ'արտօնէ՝ թէեւ սահմանափակ, այլընտրանքային, բայց իրադարձային վիճակներ ստեղծելու տարողութիւն ունեցող շրջանակներու մէջ։*

*2. Սփիւռքները կը քննադատեն Հայաստանի որոշ կեցուածքներ, մեծ մասամբ իշխանութիւն-ընդդիմութիւն կուսակցական պաշտօնական դիրքերէ ելլելով, բայց ոչ քաղաքացիական հասարակութեան ընդերքէն բխելով։*

*3. Հայաստանը գրեթէ չի քննադատեր սփիւռքները, նոյնիսկ այլընտրանքային հոսանքները կը խուսափին նման քայլէ։*

*4. Սփիւռքները պաշտօնական ինքնաքննատութեան կը դիմեն չափանշուած, սահմանագծուած ու լիովին վերահսկուած սահմաններու մէջ, մեծ մասամբ արտասանուած դիրքեր գրաւող իշխանականներուն կողմէ եւ նոյն ինքը քննադատուող երեւոյթներուն տուն տուող անձերուն կողմէ, որոնց համար կարեւոր է անվնաս, ոչ-յեղաշրջող եւ* ↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ՝ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ ՀԱԿ-Ի ՆԱԽԱԳԱՀ

Հայ Ազգային Կոնգրէս (ՀԱԿ) կուսակցութեան Դեկտեմբեր 17-ին կայացած համագումարին, գաղտնի քուէարկութեամբ կայացաւ կուսակցութեան նախագահի ընտրութիւնը։

Այդ պաշտօնին համար առաջադրուած միակ թեկնածուն էր Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեան, որ ընտրուեցաւ ՀԱԿ-ի նախագահ։

Աւարտեցաւ նաեւ կուսակցութեան վարչութեան անդամներուն ընտրութիւնը։

## ՄԵՆԱՇՆՈՐՀԻ ԴԷՄ ԽՕՍՈՒՄ ԵՆ, ԲԱՅՑ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԸՆՏՐՈՎԻ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. ««Ես երբեք չեմ ակնկալում լրատուական դաշտի վերահսկողութիւն։ Ակնկալում եմ ազատ, անկախ եւ պատասխանատու աշխատանք», – Դեկտեմբերի 23-ին Ամանորի եւ Սուրբ Ծննդեան տօների առթիւ իր սիրելի լրատուամիջոցների ներկայացուցիչների հետ կայացած ընդունելութեան ժամանակ ասել է Սերժ Սարգսեանը։ Համապատասխանո՞ւմ են արդեօք այս խօսքերն իրականութեանը, իհարկէ, ոչ։ Յամենայն դէպս, զանգուածային լրատուամիջոցների ներկայացուցիչները միանշանակ կը փաստեն, որ այս դաշտում, ինչպէս տնտեսութեան շատ ճիւղերում, բոլոր խնդիրների պատճառը մենաշնորհն է կամ գերիշխող դիրքը։ Նպատակն էլ իրականում լրատուամիջոցներին ֆինանսական կախուածութեան մէջ գցելով՝ անկախութիւնը վերահսկելն է։ Իհարկէ, մենաշնորհի դէմ պայքարելու բարձրագոչ յայտարարութիւններ արել են բոլոր կառավարութիւնները, սակայն իրականութեան մէջ ոչինչ չի փոխուել։ Յիշեցնենք՝ այս տարուայ Սեպտեմբերի 15-ին Օրինաց Երկիր խմբակցութեան պատգամաւոր Մհեր Շահգելդեանը բարձրացրել էր գովազդային մենաշնորհների հարցը։ Այս առիթով *Ժողովուրդ* օրաթերթի հրապարակման հիման վրայ Հայաստանի տնտեսական մրցակցութեան պաշտպանութեան պետական յանձնաժողովն ուսումնասիրութիւններ էր սկսել, սակայն պարզեցինք՝ ուսումնասիրութիւնները կասեցուել են, հիմնաւորումն այն է, թէ փաստեր ↳ 4

## ԵԹԷ ՄՆԱՆՔ ԵՒՐԱՍԻԱԿԱՆ ՇՐՋԱՆԱԿՈՒՄ, ԻՇԽԱՆԱՓՈԽՈՒԹԻՒՆ ՉԻ ԼԻՆԻ. ԱԶԱՏ ԱՐՇԱԿԵԱՆ

Առաջին լրատուական, 26 Դեկտեմբեր – Խորհրդարան մտնելու, քաղաքական գործընթացներին մասնակցելու մեծ ձգտում չկայ։ Ծրագիրը քաղաքական է, բայց մենք այդպիսի ամբիցիա չունէինք։ Համահայկականութեան գաղափարը, թւում է, օրակարգային է։ Համահայկական ծրագրեր կան, եւ այդ ծրագրերի կառավարիչները ընտրւում են՝ ինչպէս պատահի, մենք առաջարկում ենք, որ նրանք ընտրուեն ժողովրդավարական ձեւով՝ ըստ համամասնութիւնների։ Առաջարկում ենք ստեղծել Վերին Պալատ, որը կը զբաղուի միայն համահայկական խնդիրներով։ *Առաջին լրատուականի* հետ զրոյցում այս մասին ասաց Միացեալ Հայաստան շարժման խորհրդի անդամ Ազատ Արշակեանը։

Նրա կարծիքով՝ եթէ Հայաստան-Արցախ-Սփիւռք համախմբումը տեղի ունենայ, նուիրատուութեան գումարները կը մեծանան, որի կառավարմամբ կը զբաղուի նորաստեղծ պալատը։ Արշակեանի խօսքով՝ մինչ այժմ էլ այդ գործընթացն իրականացւում է, բայց դա ինքնագործունէութեան մակարդակի վրայ է – անհրաժեշտութիւն կայ պրոֆեսիոնալ կերպով իրականացնել։

Ա. Արշակեանի խօսքով՝ եթէ Հայաստանը մնայ եւրասիական շրջանակում, իշխանափոխութիւն չի լինի։ Նա նաեւ նշեց, որ ինքնամաքրման հանգամանքը չի բացառում, եւ անդրադառնալով Ս. Օհանեանի հետ համագործակցութեանը եւ դիտարկմանը, որ նա հնարաւոր է լինի դաշինքի ղեկավար, սակայն երբեւէ կոշտ գնահատական չի հնչեցրել՝ կապուած Եւրասիական Տնտեսական Միութեան կամ Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան անդամ լինելու հանգամանքի կամ Ռուսաստանի վարած քաղաքականութեան հետ, Արշակեանը նշեց, որ առաջին դէմքը պէտք է հարմոնիկ լինի, պահպանի հաւասարակշռութիւնը։

## ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

# ԽԱՉԱՏՈՒՐ ԱՒԵՏԻՍԵԱՆԻ 90-ԱՄԵԱԿԸ ԱՐԱՔՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԿԱՏԱՐՄԱՄԲ

Մեր մեծերը արժեւորելով մենք մեզ կ'արժեւորենք: Ահա այս տրամաբանութեամբ կ'առաջնորդուի Գահիրէի Ազգային Առանորդարանի Արաքս երգչախումբը յաճախ իր համերգները ձօնելով հայ մեծանուն երգահաններու յոբելեաններուն: Այս ծիրէն ներս էր նաեւ սոյն թուականի 4 Դեկտեմբերի համերգը, որ նուիրուած էր հայ երգի մեծ երախտաւոր՝ երգահան Խաչատուր Աւետիսեանի ծննդեան 90-ամեակին:

Յոբելենական համերգը տեղի ունեցաւ Հելիոպոլիս Գրադարանի հանդիսասրահին մէջ հովանաւորութեամբ Եգիպտոսի Հայոց Թեմի Առաջնորդ Գերաշնորհ Տէր Աշոտ Եպիսկոպոս Մնացականեանին, կազմակերպութեամբ Գահիրէի Ազգային Առաջնորդարանին եւ ղեկավարութեամբ Միհրան Ղազէլեանին: Գլխաւորութեամբ Առաջնորդ Սրբազան Հօր, համերգին ներկայ էին Հոգեշնորհ Տ. Գաբրիէլ վարդապետ Սարգսեան, Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան նորին գերազանցութիւն Դոկտ. Արմէն Մելքոնեան եւ հիւպատոսական կազմը, Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի Ատենապետ Տիար Նուպար Սիմոնեան, Պատուարժան Քաղաքական Ժողովի ատենապետ Տիար Գէորգ Երզնկացեան, Ազգային Իշխանութեան անդամներ եւ արուեստասէր հասարակութիւն մը:

Մեծարանքի, սիրոյ եւ երախտագիտութեան այս համերգին Արաքս երգչախումբին կողմէ ներկայացուեցաւ ընդգրկուն եւ կատարողական նորութիւններով լեցուն յայտագիր մը, որ կը պարունակէր աւետիսեանական 13 խմբերգ, 1 մեներգ, 1 մեներգ երգչախումբի հետ, 1 զուգերգ, 1 զուգերգ երգչախումբի հետ, 3 վեցերգ, ինչպէս նաեւ հեղինակի կենսագրականն ու արուեստը ներկայացնող վաւերագրական 3 փոքրիկ տեսաժապաւէն: Արաքսի համերգին առաջին անգամ ըլլալով իր մասնակցութիւնը բերաւ նաեւ Գալուստեան-Նուպարեան Ազգ. Վարժարանի Արցախ երգչախումբը՝ կատարելով 3 խմբերգ:



Քսաներորդ դարու յիսունականներու վերջէն Խաչատուր Աւետիսեանը հայ ժողովրդական երգի ասպարէզ մտած է *Հնչիր տաւիղ* երգով: Այդ օրէն սկսեալ մինչեւ կեանքի վերջը անոր ստեղծագործական «տաւիղ»-ը արտադրեց շարունակական վերելքով եւ հարստացուց հայ երաժշտաշխարհը նորանոր երգերով ու պարեղանակներով: Ազգային-հոգեւոր այդ ժառանգութիւնը այսօր ալ բեմերու վրայ է, միեւնոյն ժամանակ նաեւ մեր կենցաղի մէջ: Եւ անուրանալի է թէ՛ հայրենիքի եւ թէ՛ սփիւռքի մէջ հայ հանրութեան կողմէ այն համաժողովրդական սէրը զոր կայ Խաչատուր Աւետիսեանի արուեստին հանդէպ:

Տօնական համերգը սկսաւ Տոքթ. Անի Օհաննէսեանի կողմէ բացման խօսքի ընթերցումով, ուր ան վեր հանելով սիրուած երաժիշտին կեանքն ու ստեղծագործական անցած ուղին, ի մասնաւորի արձանագրեց. «Ընդունուած է ըսել թէ Աւետիսեանի երգերը պարեր են եւ պարերը երգեր. իսկ մենք այսօրուան համերգի ընթացքին հնչելիք երգերու մեծ մասի խմբերգային առաջին կատարումներով կ'ուզենք յայտարարել, թէ Աւետիսեանի երգերն ու պարերը նաեւ հիանալի խմբերգեր են»:




Այնուհետեւ բեմը տրամադրուեցաւ Արաքս երգչախումբին, որն իր ելոյթը սկսաւ՝ կատարելով Խաչատուր Աւետիսեանի *Կռունկներ* եւ *Իմ լաւ, իմ լաւ* երգերու երգչախմբային տարբերակները (այդ եւ յետագայ երգչախմբային բոլոր փոխադրումները կատարուած էին խմբավարին կողմէ): Համերգի ընթացքին հնչած 20 երգերէն 15-ը առաջին անգամ ըլլալով ներկայացուեցան խմբերգային փոխադրումներով, որոնց առաջին կատարման պատասխանատուութիւնը դարձեալ դրուած էր այս գործին մէջ արդէն նշանակալի փորձառութիւն ունեցող Արաքս երգչախումբի ուսերուն, իսկ առաջին ունկնդրման իրաւունքը՝ մեր խստապահանջ ու նրբաճաշակ եգիպտահայ հանդիսատեսին:

Այնուհետեւ մեներգչուհի Սիլվա Թերզիպաշեան կատարեց *Անուշ տաւիղ* երգը երգչախումբին հետ: Ապա յաջորդաբար կատարուեցան հետեւեալ երգերը. *Երգ բարեկամութեան* (արաբերէն եւ հայերէն լեզուներով՝ ինչպէս որ ի սկզբանէ նախատեսուած եղած է), *Իմ Գիւմրի* (ըստ բնագրի՝ *Իմ Լենինական*) եւ «Հազարամեա Հայաստան» (*Մեծ Եղեռնի Զոհերի Յիշատակին* օրաթորիայի եզրափակիչ երգը): Յաջորդեց Աւետիսեանի կենսագրականը ներկայացնող տեսանիւթի ցուցադրութիւնը, որուն հետեւեցաւ *Միայն քեզ համար* երգի եռաձայն կատարումը Թալին Գալիչեան, Նանօր Աբիկեան, Ալին Ասլանեան, Սօսէ Կրպոյեան, Սերժ Սէտէֆճեան եւ Նակի Գալալեան վեցեակին կողմէ: Համերգի Ա. բաժնի վերջին բեմ բարձրացան Նուպարեան-Գալուստեան Ազգ. Վարժարանի Արցախ երգչախումբի պատանիները եւ կատարեցին *Ով հայոց աշխարհ*, *Մայրիկիս* եւ *Մեր աշխարհը* երգերը:

Համերգի երկրորդ բաժինը սկսաւ *Մախմուր աղջիկ* զուգերգով՝ Սիլվա Թերզիպաշեանի եւ Նորա Քէօհնէլեանի կատարմամբ: Հետեւեցան ⇨ 4

**ԽՈՀԵՐ**

# ՀԱՅԱՊԱՀՊԱՆՈՒՄ՝ ԱՌԱՆՑ ԱՐԵՒՄՏԱՀԱՅԵՐԷՆԻ՞

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

4. Որոշ ազդեցիկ հայագիտական կեդրոններու գոյութիւնը՝ առանց հայերէն լեզուի: Անոնց շնորհիւ ստեղծուած է անգլերէն լեզուով հայագիտութիւն: Խնդիր չկայ անգլերէն լեզուով հայագիտութեամբ զբաղուիլ: Որեւէ լեզուով կարելի է գրել որեւէ նիւթի մասին: Ընդհակառակը, նիւթն ինքնին կը ստանայ տարբեր տարողութիւններ տարբեր լեզուներու ընդմէջէն: Բայց շատ լուրջ խնդիր է, երբ «կարելի»-ն կը վերածուի «օրէնք»-ի, երբ անգլիագիր հայագէտներուն մէկ մասը, որոնց մէջ կը գտնուին նաեւ նշանակալի քանակով հայեր, ոչ մէկ հետաքրքրութիւն կը ցուցաբերեն հայերէն աղբիւրներուն նկատմամբ՝ հիմնուելով միայն անգլերէն աղբիւրներու վրայ, եւ ոչ մէկ կապուածութիւն կը զգան հայկական մտածելակերպի եւ փորձառութեան հետ: Երբ առարկան կը դառնայ նպատակը՝ առանց ենթակայի, կը սառի մտածողութեան կենսունակութիւնը:

Ուրեմն, սփիւռքի մէջ, սփիւռքի օգնութեամբ եւ սփիւռքի օրհնութեամբ կը ստեղծուի հայագիտութեան նոր շերտ մը՝ հիմնուած միայն անգլերէն աղբիւրներու վրայ: ԺԹ. դարու ֆրանսացի ու անգլիացի արեւելապաշտները (orientalist) պարտադրաբար հայերէն լեզուին կը տիրապետէին՝ գոնէ կարդալու մակարդակով, իսկ այսօր ստեղծուած է հայագէտներու նոր շերտ մը՝ հայերու նկատելի մասնակցութեամբ, որ պարտադրաբար անտեղեակ է հայերէն լեզուին:

5. Սփիւռքի մշակութային հետաքրքրութիւններուն կարեւոր մաս մը ուղղուած է ինքնավերարտադրութեան:

Ահաւասիկ Եգիպտոսի այս տարուան յիշատակած ամեակները: Գահիրէի հիմնարկներ փառաշուք տօնակատարութիւններով նշեցին *իրենց* ամեակները, երեւոյթ մը՝ որ դարձած է արդի աշխարհի բոլոր հիմնարկներուն ինքնավերարտադրութեան եւ ինքնապատկերի վերահաստատումի անխուսափելի մարտավարութիւնը: Պարտադրաբար նշուեցան նաեւ ոչ-արեւմտահայերէն արտադրողներու հերթական ամեակներ: Կը նշանակէ՝ որ եգիպտահայութիւնը ամեակներ նշելու կարողութիւն ունի: Անտեսուեցան եգիպտահայութեան ընդերքէն ծնած, արեւմտահայերէնը իրենց մտածելու եւ ապրելու տարերքը դարձուցած բացառիկ անձերու ամեակները՝ բանասէր Տիգրան Գէորգեանի ծննդեան 80-ամեակը, պատմաբան եւ գրող Աւետիս Եափուճեանի ծննդեան 85-ամեակը, լեզուագէտ ու գրող Բենիամին Թաշեանի ծննդեան 120 եւ մահուան 45 զոյգ ամեակները:

Մեծաշուք այս հանդիսութիւններուն զուգահեռ կարելի է գտնել եգիպտահայութեան բացայայտումին ուղղուած, արեւմտահայերէն լեզուով գրուած լոկ անհատական (թէեւ կարեւոր) փորձեր՝ Սուրէն Պայրամեանի «Եգիպտահայ միութենական գրադարաններու մասին» յօդուածը (*Բանբեր Հայաստանի գրադարանների*, 2016, թիւ 1(2), էջ 15-28) եւ Պերճ Թէրզեանի գրքոյկը՝ *Տիգրան Պալիկեան. դաստիարակ-տնօրէն 1908-1975* (Յաւելուած Գահիրէի ՀԲԸՄ-ի *Տեղեկատու* պարբերաթերթի, թիւ 80, Յուլիս 2016, 64 էջ): Արդեօք ի՞նչ կարելի է եզրակացնել ասկէ...

6. Հայաստանի՝ իբրեւ միտքի եւ գիտելիքի հիմնարար արտադրողի, նկատելի անտեսումը արեւմտահայ լեզուին:

Ունինք սփիւռքահայութեան նախարարուհի մը՝ որմէ մինչեւ այսօր մէկ բառ արեւմտահայերէն չենք լսած: Արեւմտահայութիւնը «հոգացող» պաշտօնատար մը՝ առանց արեւմտահայ լեզուի:

Ունինք երկիրի նախագահ մը, որ Փութինի հետ հանդիպումի ժամանակ կատարեալ ռուսերէն կը խօսի, իսկ սփիւռքի միութիւններ եւ ակումբներ այցելած ժամանակ անկարող է մէկ բառ արեւմտահայերէն արտասանել:

Ունինք Հայաստանի հեռատեսիլի կայաններ՝ ուր արեւմտահայերէնը ամբողջապէս կը բացակայի, բացի արեւմտահայ դէմքերու հետ *յատուկ* նպատակներով կատարուած հազուադէպ հարցազրոյցներէ:

Ազգասիրութեամբ ողողուած հայաստանեան հեռատեսիլի կայան մը ունի *Աշխարհի հայերը* հաղորդաշարը, ուր հայրենասիրութեամբ ծորող հաղորդավար մը հարցազրոյցներ կը վարէ «աշխարհի» հայերուն հետ: Այս ընտրեալ «հայերուն» մեծամասնութիւնը ո՛չ միայն արեւմտահայերէն այլ ընդհանրապէս հայերէն լեզուին անտեղեակ է, իր հայրենասիրական պատասխանները տալով ֆրանսերէն, ռուսերէն կամ անգլերէն լեզուներով: Միջազգային հայու՝ «աշխարհի» հայու, տիպարը պաշտօնական հովանաւորութեամբ կը հաւասարի ոչ-հայերէն լեզուին հետ: Հեռու պաշտօնականութենէն եւ անկախ հաղորդաշարէն, մտահոգիչ է այն կէտը՝ որ, բացի քանի մը կարեւոր բացառութենէ, «միջազգայնութեան» չափանիշներուն յարմարուող հայ անձերը անգիտակ են հայերէն լեզուին, եւ ասիկա այն պարագային, երբ հայերս ամէնուրեք կը հպարտանա՛նք բազմալեզու ըլլալու առաւելութեամբ: Բազմալեզու՝ առանց հայերէնի, առաւել եւս, առանց արեւմտահայերէնի:

Հայաստանի հեռատեսիլի կայաններուն մէջ կը յորդին սերիալները՝ լաւը, միջակը, վատը բոլորն ալ խառնուած են իրարու: Դերասանները, բնականաբար, Հայաստանի բնակիչներ պիտի ըլլան, լեզուն՝ արեւելահայերէն: Բայց, ահաւասիկ, USArmenia TV ընկերութիւնը՝ հայաստանեան ընկերութեան ամերիկեան թեւը, ԱՄՆ-ի մէջ երկարատեւ սերիալներ կը պատրաստէ *միայն* Հայաստանէն վերջնականապէս Լոս Անճելըս գաղթած դերասաններու մասնակցութեամբ, բնականաբար՝ արեւելահայերէն: Խտրականութեան անհասկնալի (երբեմն՝ լիովին հասկնալի) երեւոյթ մը, երբ դրամատիրական ուժ ունեցող կեդրոն մը (USArmenia TV)՝ իր անձնական գերշահոյթին համար, կը նախընտրէ հայ ժողովուրդի մը մէկ շերտը միայն՝ արտագաղթածը, ընտրութիւն մը՝ զոր կը կատարէ արեւմտահայերէն լեզուի չիջող եւ անգլերէնի աճող միջավայրի մը մէջ: Հայը՝ հայուն ձեռքով, ենթադրաբար արեւմտահայերէնը կրող սփիւռքի մէջ, ուժային կեդրոնի մը ընդմէջէն կ'անտեսէ «բնիկ» լեզուն՝ արեւմտահայերէնը, անգամ մը եւս փաստելով այդ լեզուին անկարեւորութիւնը: Այս սերիալները լայն տարողութեամբ կը ցուցադրուին թէ՛ Հայաստանի եւ թէ՛ ԱՄՆ-ի հայկական կայաններէն: Անոնցմէ կարելի է նշել՝ *Էմիգրանտներ*, *Վտանգաւոր խաղեր* եւ *Մեղաւորները*: Իսկ Հայաստանի պաշտօնական եւ պետականամերձ հեռատեսիլները զանոնք ցուցադրելով ոչ միայն վաւերացուցած կ'ըլլան արտագաղթը, այլեւ կրկին անգամ մեկուսացուցած արեւմտահայ լեզուն:

(Շար. 3)

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԽԱՉԱՏՈՒՐ ԱՒԵՏԻՍԵԱՆԻ 90-ԱՄԵԱԿԸ ԱՐԱՔՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԿԱՏԱՐՄԱՄԲ

3

*Ծաղկած բալենի* եւ *Երեւանի ջուր* երգերու եռաձայն կատարումները Թամար Սապրի, Լիւսի Սանճեան, Լուսածին Ղազելեան, Հոփսիմէ Մուրատեան, Ռիթա Կոտոլոչեան եւ Ռուպինա Սաատ կողմէ: Ապա հնչեց *Սիրուս կը սպասեմ* մեներգը Ռուբէն Սաատի կատարմամբ:

Այնուհետեւ ցուցադրուեցաւ տեսանիւթ մը, ուր Խաչատուր Աւետիսեան կ'արտայայտէ իր ստեղծագործական կեանքին հիմնական սկզբունքները եւ կը կատարէ իր թելադրութիւնները ուղղուած երիտասարդ երգահաններուն:

Ապա կրկին բեմ բարձրացաւ Արաքս երգչախումբը եւ յաջորդաբար կատարեց *Հայոց հովիկ*, *Իմ եղէգ*, *Իրիկնային*, *Առաւօտեան Երեւան* երգերը: Համերգին վերջին երկու աշխոյժ երգերը նոյնպէս երգչախմբային փոխադրումներ էին. նախավերջինը *Սեւ աչերով աղջիկ* երգի զուգերգն էր Ռուբէն Սաատի եւ Վարդան Թէրզիպաշեանի կատարմամբ եւ երգչախումբի ընկերակցութեամբ, իսկ համերգը եզրափակուեցաւ հեղինակի *Կենաց երգով*, որ հանդիսատեսը գնահատեց մեծ ոգեւորութեամբ:

Համերգի աւարտին բեմ բարձրացաւ Գերշ. Տ. Աշոտ եպիսկոպոս Մնացականեանը եւ երգչախումբի անդամներուն եւ երեկոյթի յաջողութեան վերաբերեալ իր գոհունակութիւնն ու գնահատանքը փոխանցեց: Ապա ան, որպէս իր խօսքերուն հաստատում, զոյգ երգչախումբերու ղեկավարին յանձնեց 2015թ. ՀՀ Սփիւռքի նախարարութեան եւ Համաշխարհային Հայկական Քոնկրէսի համատեղ կազմակերպած «Հայապահպանութեան Գործում Ունեցած Նշանակալի Աւանդի Համար» մրցանակաբաշխութեամբ «Լաւագոյն Գեղարուեստական Խումբ» անուանակարգով Արաքս երգչախումբի վաստակած առաջին կարգի վկայագիրն ու մետալը եւ Արցախ երգչախումբի երրորդ կարգի վկայագիրն ու մետալը: Ան նաեւ ուրախութեամբ արձանագրեց որ, Արաքս երգչախումբը սոյն մրցոյթով վաստակած հարիւր յիսուն հազար ՀՀ դրամ պարգեւավճարը փոխանցած է Հայաստան Հիմնադրամին: Իսկ Արցախ երգչախումբը նախորդ տարուան Cairo Uptown Stars 3rd Schools' Talent Show 2015 մրցոյթին Առաջին մրցանակով վաստակած յիսուն հազար եգիպտական ոսկի մրցանակը փոխանցած է Արցախի օգնութեան հիմնադրամին:

Անհրաժեշտ է նշել նաեւ, թէ յոբելենական այս համերգին առիթով պատրաստուած էր նաեւ 40 էջնոց նկարազարդ գրքոյկ-յայտագիր մը, որ կը պարունակէր խմբավարին խօսքը, մեծանուն երգահանին կենսագրականը, օրուան յայտագիրն ու կատարուելիք երգերուն բառերը, նշանաւոր արուեստագէտներու կարծիք-գնահատականները Խաչատուր Աւետիսեանի մասին, ինչպէս նաեւ զոյգ երգչախումբերուն մասին Սրբազան Հօր յիշատակած մրցանակներուն վերաբերեալ Ազգային Առաջնորդարանի Դիւանի հաղորդագրութիւնը:

Այս յոբելենական համերգով Արաքս երգչախումբը կը փորձէր ներկայացնել Խաչատուր Աւետիսեան երգահանի ստեղծագործական հնարաւորինս ամբողջական դիմանկարը անոր ամենասիրուած երգերու ընդմէջէն: Ապա, երգչախմբային կատարումներուն կողքին, մեներգերով, զուգերգերով ինչպէս նաեւ երկու տարբեր երգչային կազմի վեցերգերով կը փորձէր կատարողական նոր ուժեր բացայայտել: Եւ վերջապէս, կատարողական այլազան ձեւերով ու կարեւոր տեսագրութիւններու ցուցադրութեամբ կը ջանար գոհացնել հանդիսատեսի թէ՛ ճանաչողական եւ թէ՛ գեղարուեստական ամենատարբեր սպասումները: Մասնակիցներէն իւրաքանչիւրին համար յստակ էր, թէ մեր մեծերը ճանչնալը, անոնց ժառանգութիւնը կենդանի պահելը եւ պարբերաբար բեմ բարձրացնելն ու հանրութեանը վայելուչ կենդանի կատարումներ հրամցնելը մեր երախտաւորները արժեւորելու կարեւորագոյն ձեւերէն է, արժեւորում, որ արթուն կը պահէ ազգային եւ գեղագիտական ամենավսեմ ընկալումները նախ եւ առաջ մե՛ր մէջ:

Մեծարանքի այս իւրայատուկ գեղեցկութեան տօնակատարութիւնը նշանակալի իրագործում մըն էր թէ՛ մեր համայնքին մշակութային եւ թէ՛ Արաքս երգչախումբին համերգային կեանքին մէջ եւ յարգանքի արժանի տուրք՝ մեր արուեստի ամենաժողովրդական ներկայացուցիչներէն մէկուն՝ երգահան Խաչատուր Աւետիսեանին եւ անոր անմահ արուեստին:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԵԹԷ ՄՆԱՆՔ ԵՒՐԱՍԻԱԿԱՆ ՇՐՋԱՆԱԿՈՒՄ, ԻՇԽԱՆԱՓՈԽՈՒԹԻՒՆ ՉԻ ԼԻՆԻ...

1 

կում, իշխանափոխութիւն չի լինի: Նա նաեւ նշեց, որ ինքնամաքրման հանգամանքը չի բացառում, եւ անդրադառնալով Ս. Օհանեանի հետ համագործակցութեանը եւ դիտարկմանը, որ նա հնարաւոր է լինի դաշինքի ղեկավար, սակայն երբեւէ կոշտ գնահատական չի հնչեցրել՝ կապուած Եւրասիական Տնտեսական Միութեան կամ Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան անդամ լինելու հանգամանքի կամ Ռուսաստանի վարած քաղաքականութեան հետ, Արշակեանը նշեց, որ առաջին դէմքը պէտք է հարմոնիկ լինի, պահպանի հաւասարակշռութիւնը:

## ՄԵՆԱՇՆՈՐՀԻ ԴԷՄ ԽՕՍՈՒՄ ԵՆ, ԲԱՅՑ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԸՆՏՐՈՎԻ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

2 

չկան: Դէ, իհարկէ: Արտակ Ծաբոյեանի յանձնաժողովը չէր էլ կարող փաստեր ունենալ մի ոլորտի շուրջ, որտեղ գերիշխող դիրք ունի Սերժ Սարգսեանի փեսան՝ Վատիկանում Հայաստանի դեսպան Միքայէլ Մինասեանը: Նա փաստացի ունի մի ընկերութիւն, որը գովազդատուների առջեւ, ըստ էութեան, պայման է դնում՝ կա՛մ մեզ էք գովազդ տալիս՝ մի քանի հեռուստաընկերութիւն, ռադիօ եւ կայքեր, կա՛մ ուրիշներին: Շատ գործարարներ, նաեւ վախի գործօնով պայմանաւորուած, նախընտրում են փեսայի ծառայութիւնները»:

## ԱԶԱՏ ՄԱՐՄԻՆ, ԱՆԿԱԽ ԵՐԿԻՐ

2 

*դէպի բացառապէս ի վերուստ թելադրուած ազգայնականութիւն ու ազգայնապաշտութիւն (ազգայինը իր կենդանի փորձառութեամբ դրական երեւոյթ է, ազգայինի սեւեռումն ու բեւեռացումը՝ վնասակար) տանող քննադատութեան տարրը մտցնել իրենց պատումին մէջ, ապահովելու համար իրենց վերարտադրութիւնը, փաստելու համար իրենց հայրենասիրութիւնը եւ սպառելու համար հասարակական դժգոհութիւնները:*

*5. Սփիւռքները՝ ի դէմս Հայաստանի եւ ի տարբերութիւն անկէ, կը ստանան անձեռնմխելիութեան կարգավիճակ: Ինչո՞ւ հայկական սփիւռքները կը խուսափին Կարէն Յակոբեանի արծարծած նիւթի նման ինքնաքննադատութիւններէ, որոնք քննադատութիւններ ըլլալէ աւելի կը հանդիսանան ինքնամեկնաբանութիւններ եւ ինքնաբացատրութիւններ (Հ. Ա.):*